


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները*`

*Պաշտոնական կայք*` ***http://www.armin.am***

*Էլ. փոստ*` ***info@armin.am***

Բովանդակութիւն

էջ

Երկու խօսք ---------- 3

Յառաջաբան ---------- 5

Գլուխ Ա. Անուն եւ դաստիարակութիւն ---------- 8

Գլուխ Բ Տնային կեանքում ---------- 13

Գլուխ Գ Ամուսնութեան մէջ ---------- 29

Գլուխ Դ. Մայրութեան մէջ ---------- 79

Գլուխ Ե. Ընկերութեան մէջ ---------- 111

Գլուխ Զ. Վայելչագիտութեան մէջ ---------- 132

Գլուխ Է. Եկեղեցու մէջ ---------- 143

Գլուխ Ը. Բարեպաշտութեան եւ առաքինութեան մէջ ---------- 157

Գլուխ Թ. Չարութեան մէջ ---------- 180

Գլուխ Ժ. Բարեգործութեան մէջ ---------- 194

Գլուխ ԺԱ. Շինարարութեան մէջ ---------- 217

Գլուխ ԺԲ. Ուսումնասիրութեան մէջ ---------- 238

Գլուխ ԺԳ. Արուեստների մէջ ---------- 248

Գլուխ ԺԴ. Քաղաքական կեանքում ---------- 273

Գլուխ ԺԵ. Քաջութեան մէջ ---------- 301

Գլուխ ԺԶ Տառապանքների մէջ ---------- 311

Գլուխ ԺԷ Սգոյ մէջ ---------- 339

Գլուխ ԺԸ. Օտար պալատների մէջ ---------- 355

Ա Քրիստոնեայ յարկերի տակ ---------- 358

Բ. Այլակրօն յարկերում ---------- 416

Վերջաբան ---------- 433

Գործիս աղբիւրները ---------- 438

Անւանացանկ անձանց ---------- 446

Բովանդակութիւն ---------- 465

«Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ գրգեալք եւ գգուեալք էին յիւրաքանչիւր բաստեռունս եւ ի գահաւորակս, մոռացան զկանացի տկարութիւն, եւ եղեն արուք առաքինիք ի հոգեւոր պատերազմին»: - Եղիշէ:

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

***«Հայուհին պատմութեան առջեւ»*** *գիրքը տպուած առաջին անգամ Վենետիկում* 1936 *թուին, հեղինակութեամբ հայր Վարդան Հացունիի, իր ճոխ բովանդակութեամբ հայ կնոջ նուիրած ամենաշահեկան, լուրջ եւ պատմական տուեալներով ու սկզբնաղբիւրների վկայութեամբ հարուստ մի հրատարակութիւն է:*

*Անձնապէս բազմիցս կարդացած ու օգտագործած ենք այն եւ միշտ փափագ ունեցած այն ներկայացնել մեր հասարակութեանը:*

*Երեք տարիներ առաջ երբ Թեհրանի Հայ Կանանց Բարեգործական Ընկերութիւնը ուզում էր իր հիմնադրութեան հարիւրամեակը տօնել եւ այդ առիթով մտածում էր որոշ հրատարակութիւններով ամեակը առաւել եւս ճոխացնել, իրենց ուշադրութեան յանձնեցինք* ***«Հայուհին պատմութեան առջեւ»*** *պատմական արժէքաւոր գործը, յանձնարարելով դրա վերահրատարակութիւնը, յետ արեւելահայերէնի վերածման: Գաղափարը ընդունուեց: Տիկին Ցօղիկ Պուլուզեանն էլ՝ մեր գաղութի վաստակաւոր դաստիարակ եւ հայերէն լեզուի ուսուցիչ, սիրով յանձն առաւ այն վերածել արեւելահայերէնի եւ ահա այդպէս տեղի ունեցաւ ծնունդը* ***«Հայուհին պատմութեան առջեւ»*** *գրքի արեւելահայերէն հրատարակութեան:*

***«Հայուհին պատմութեան առջեւ»*** *գիրքը գեղեցիկ յուշարձան է հայ իգական սեռին՝ կանգնեցուած հայ պատմագրութեան անդաստանում, որտեղ ճառագայթում է հայ կնոջ, հայ մօր, հայ օրիորդի դէմքը իր առաքելութեամբ, քաջութեամբ, հաւատարմութեամբ, անձնուրացութեամբ, պարկեշտութեամբ, հայրենասիրութեամբ, նուիրուածութեամբ, ընտանեսիրութեամբ, քրիստոնէական հաւատքով, ծնողական գուրգուրանքով, գրական ստեղծագործութեամբ եւ մտքի ու հոգու արեգակնային պայծառութեամբ ու հարազատութեամբ:*

*Գրքի հեղինակը չէ մոռացած նաեւ պատմութեան դատաստանի առաջ հանելու այն կանանց, ովքեր նշանաւոր են եղած չարութեան եւ կեանքի մոլորութիւնների մէջ, սա պատմութեան արդար եւ ուղիղ դատողութիւնն է:*

*Մահուան ձորի միջից անցած եւ սակայն չմահացած մեր ժողովրդի պատմութեան ամբողջական իմացման տեսակէտից մի շատ կարեւոր աղբիւր է ներկայ հրատարակութիւնը, որով այն հայելու նման մեր առջեւ բաց է անում մեր պատմութեան լուսաւոր դէպքերն ու դէմքերը, որոնք իբրեւ փոքրիկ աստղեր լուսաւորել ու լուսաւորելու են մեր այսօրւայ կեանքը:*

Հայ մայրը դարերով եղել է՛, է եւ վստահաբար մնալու է՛ սիւնը հայ ընտանիքի, առանցքը հայ տան ու ներշնչման եւ զօրացման աղբիւրը նոր սերունդի եւ ինչու չէ նաեւ յենարանը իր ամուսնու: Հայ մայրը խորհրդանիշը եղել է գերագոյն զոհողութեան ու նուիրումի: Շնորհիւ հայ մօր ջանքերի հայոց մեսրոպաստեղծ լեզուն ու առաքելական հաւատքը կենդանի ու շնչող եղած են հայ պատանու-պարմանուհու հոգում եւ մտքում: Ահա այս ճշմարտութիւնների մասին է վկայում «**Հայուհին պատմութեան առջեւ**» գիրքը:

Այլազան ու բազմազան իր բովանդակութեամբ գիրքը հայ ընթերցողին է ներկայացնում հայ կինը, հայ մայրը, քաղաքական, ընկերային, գրական, արուեստի եւ կեանքի բոլոր բնագաւառներում, աւելին՝ պալատական տիկիններից մինչեւ խոնարհ դասակարգի կանանց կեանքի բոլոր երեսները գեղեցկօրէն բնութագրող գիրք է «**Հայուհին պատմութեան առջեւ**» գիրքը, այլ խօսքով հայոց աշխարհի «փափկասուն տիկիններ»-ի վկայագրութիւնն է սա, որի վերահրատարակութիւնը կարծում ենք բարերար ազդեցութիւն է ունենալու նոր սերնդի հոգեւոր եւ բարոյական դաստիարակութեան վրայ:

Մեծապէս գնահատում ենք Հայ Կանանց Բարեգործական Ընկերութեան վարչութիւնը իր այս նախաձեռնութեան համար եւ աղօթում, որ ամենաբարին Աստուած առաւել ուժ եւ կարողութիւն տայ ընկերութեան բոլոր անդամներին որպէսզի կարողանան շարունակել իրենց բարեգործական-ընկերային եւ մշակութային օրհնաբոյր գործը ի վայելումն Թեհրանի թեմի մեր ժողովրդի զաւակներին:

Վերջում ուզում ենք մեր գնահատանքը յայտնել նաեւ պրն. Գէորգ Աբուլեանին, որ երկու անգամ եւ ուշի ուշով կատարեց վերջին սրբագրութիւնները:

ՍԵՊՈՒՀ ԱՐՔ. ՍԱՐԳՍԵԱՆ

ԱՌԱՋՆՈՐԴ ԹԵՀՐԱՆԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

1 Նոյեմբեր 2007

Թեհրան

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հին հայ կնոջ այս կենդանագիրը ընծայում եմ նոր հայուհուն, որպէսզի իմանայ թէ ո՞ւմ զարմն ու յաջորդն է ինքը եւ ո՞ւմն է ներկայացնում իբր ամուսին, մայր եւ անդամ հայախօսիկ ընկերութեանը՝ մեր ազգի ու քաղաքակիրթ մարդկութեան առջեւ:

Ընտանիքը կազմւում է տղամարդու ու կնոջ գործակցութեամբ: Ազգն էլ, որ մեծ մի ընտանիք է, նոյնպէս կնոջ նպաստին է կարօտում, որը նրա լրացուցիչ ու յաւերժացնող մասն է: Հետեւաբար չկայ ճշմարիտ քաղաքակրթութիւն այն ժողովուրդների մէջ, որտեղ արարչագործութիւնից տղամարդուն «օգնական» նշանակւած կինը չի գրաւել իր արժանաւոր դիրքը, չի բերել իր փափուկ ձեռքերի օժանդակութիւնն առնական կորովի բազկին եւ չի դրոշմել իր կրթիչ, ամոքիչ ու ազնւացուցիչ ազդեցութիւնը թէ առտնի եւ թէ ընկերային կենցաղի վրայ: Եւ ոչ էլ մենք առանց քաջ տեղեկանալու հայ կնոջ ունեցած դերն ազգի անցեալի մէջ, կարող ենք ճանաչել եւ ցոյց տալ օտարներին, մեր հինաւուրց քաղաքակրթութեան չափը, որով պարծենում ենք:

Հարկ էր ուրեմն ու մեր պարտականութիւնն էր հարցնել պատմութեանն. հայուհին, ասիացի եւ անդամ ասիաբնակ մի ցեղի, ապրել է նախ հեթանոս, ապա քրիստոնեայ կրկնակ քաղաքակրթութիւնների ազդեցութեան ներքոյ, նախքան այլակրօն տիրապետութիւնների այլասերող լծի տակ մտնելն, ի՞նչ զարգացում, ի՞նչ նկարագիր ու ձիրքեր, ի՞նչ դիրք կամ գործունէութիւն ունեցաւ իր յարկի եւ ընկերութեան մէջ: Ի՞նչ տարբերութիւն կար իր եւ միւս ասիացի սեռակիցների մէջ, որոնք ընդհանրապէս ոչ գործակից կամ ընկեր, այլ ստրուկ կամ ստացւածք էին համարւած այր մարդու ձեռքին եւ լցնում էին հզօրների կանանոցները անասունների պէս, առանց կամքով ու ցանկութեամբ եւ առանց ինքնութեան, առանց յիշատակելու իրենց անունը պատմութեան: Ոչ որպէս մարդիկ, այլ աներեւոյթ ստւերներ, որ եկան ու գնացին եւ ոչ ոք ճանաչեց կամ յիշեց նրանց:

Եթէ ուզէինք համեմատենք հին հայ կնոջը վերջին գաւառացի հայուհու հետ, - նկատի չենք առնելու ներկայ յեղաշրջման շրջանը,- որի բարիքների մէջ խտացած է

օտար բազմադարեան բռնութեան պարտադրած անձուկ եւ նկուն կեանքը, գրեթէ իբրեւ ամուսնու աղախին եւ ընկերութիւնից անջատ, երբեմն էլ ընտանեկան սեղանից, եւ կամ եւրոպաբնակ հայ կնոջ հետ, որ ընդօրինակեց արեւմտեան բարքը, եւ այն՝ իր ըմբռնած ձեւով ու չափով, մեծապէս սխալելու էինք մեր տեսութիւնների մէջ: Հարկ է իսկապէս հայուհուն որոնել պատմութեան մէջ եւ այնտեղ միայն:

Մեր հին մատենագիրներն, որոնք այնչափ խօսեցին ու գրեցին մեր Ներսէսների, Վարդանների եւ Աշոտների մասին, բնաւ կամ հազիւ նշմարեցին նրանց, որոնք կերտեցին այդ մեծերի մարմինն ու հոգին՝ իրենց մայրենի լուիկ, համբերատար ու ծանր պարտականութեան մէջ: Եղան նաեւ նորերը, որ մօտեցան նրանց, բայց իրենց ակնարկն Եղիշէի «փափկասուն տիկիններից» աւելի առաջ չգնաց, առանց անգամ կատարելապէս ըմբռնելու նրանց: Արդէն Աւարայրի երգչի էջերը չափազանց նեղ էին, հին եւ իր իսկ հայուհուն ամբողջապէս ամփոփելու համար, ուստի գրեթէ անծանօթ մնաց նա: Ես, որ յանձն եմ առել հայկական վաղեմի քաղաքակրթութեան լուսաբանութիւնը, ինձ վիճակւեց վերացնել անհրաժեշտ թերին, մխրճւելով հայ եւ օտար մատենագրութիւնների անտեսւած խորշերում, կորզելով այնտեղից հին հայուհու նկարագիրն եւ ազգայինների ձեռքը տալով մի պատմագրութիւն, որ բովանդակութեամբ բոլորովին տարբեր է ծանօթ պատմագիրներից եւ որի մէջ մտնում են նաեւ պատմութեան ծանօթ անձերը, բայց տարբեր հանգամանքներով:

Այս աշխատութեան մէջ դեռ չթեւակոխած, կարող եմ բաց ճակատով յայտարարել թէ իսկապէս ուշագրաւ ու պատկառելի է հին հայ կնոջ պատկերը, շատ աւելի քան կարելի է երեւակայել մեր մինչ այժմ ունեցած անկատար ծանօթութիւններով, կամ բնաւ երեւակայւած չէ: Մեծ եղաւ նրա մասնակցութիւնը թէ՛ ընտանեկան յարկի եւ թէ՛ ընկերային, առաքինութեան, բարեգործական ու քաղաքական բոլոր ասպարէզների մէջ եւ իր հմայքը նրան տարաւ հայրենի սահմաններից դուրս եւս: Նրա այդ բարձրութիւնն եթէ մասամբ պարտական ենք մեր տոհմային հնագոյն քաղաքակրթութեանն, առաւելագոյն չափով արդիւնքն եղաւ - փաստերն յետոյ խօսելու են - Աւետարանի լոյսին, որ մանաւանդ թարգմանութիւննից յետոյ՝ Ե դարում մաքրեց հեթանոսութեան աղէտներից ու արատներից հայ արքունիքը, հայ իշխանների ու ժողովրդի յարկերը, մեր ազգային ընդհանուր կենցաղը եւ միանգամայն ազնւացրեց, բարձրացրեց հայուհուն: Մահմեդականութիւնն էլ ճակատեց հեթանոսութեան դէմ, բայց այդ կրօնին հետեւող արաբուհին, պարսկուհին, մոնղոլուհին ու թրքուհին չունեցան իրենց պատւոյ էջը պատմութեան մէջ, իրենց ազգաշէն եւ աշխարհաշէն գործունէութիւնը, որով քրիստոնեայ հայուհին դրանով կարող է նրանց նախանձը

*չարժել եւ ըմբերանել նրանց տգիտութիւնն, որ ուրանում են Աւետարանի փրկարար դերը մեր անցեալում եւ որի արդիւնքն են իրենք՝ ժխտողներն իսկ, յետոյ աղաւաղուած՝ ի դժբախտութիւն իրենց:*

*Մեր այս նկարագրութեան մէջ մեծ է, անշուշտ, ազնուական քան ռամիկ դասի բաժինը, շնորհիւ իր առաւելագոյն զարգացմանը, պատւին, հարստութեանն ու գործունէութեան, որ ռամկուհին չէր կարող մրցել ազատ սեռակցի հետ: Այսպէս է եղել բոլոր ազգերի մէջ: Մենք փորձելու ենք երեւան հանել երկու դասակարգն էլ, ըստ իւրաքանչիւրի պայմանին ու չափին: Իսկ հայ կնոջ մեծութեան բուն շրջանն եղաւ Դ - ԺԴ դարերի միջեւ: Դրանից յետոյ հայ ազնուականութիւնը կամ կոտորուելով եւ կամ փախչելով դէպի օտարութիւն բարբարոսների բռնութիւնից, մեր ազգը զրկուած մնաց այդ բարգաւաճ, շինարար եւ առաջնորդող դասակարգից եւ ազգի հետ նուազեց հայ կնոջ փայլն էլ:*

*Եւ արդի հայուհին, որ կարդալու  է իր նախամայրերի այս նկարագիրը, տեսնելու է իր ցեղի ու սեռի բարձրութիւնը եւ հպարտանալու նրանով, միանգամայն պարտաւոր է լինելու հմտանալու եւ փարելու նախանձով իր տոհմային առաքինութիւններին, որ իր դասի պարծանքն են կազմում եւ դրանից մեր ազգը ցիրուցան իր սեւ ճակատագրի բերումով, եւ կանգնած խամրող խորշակների հանդէպ, որ սպառնում են  իր գոյութեանը, պէտք է կարողանայ պահպանել իր թարմութիւնն ու սեփական նկարագիրը եւ աւանդել այն հետագայ սերունդներին:*

*Բարդ է մեր քննութեան նիւթը, ինչպէս եղաւ հայուհու կեանքն էլ: Հետեւաբար ես ստիպուած եմ այն բաժանելու այլ եւ այլ խնդիրների ու գլուխների եւ դրանց մէջ ցրուելու պատմական անձերի կենսագրական տեղեկութիւնները, որովհետեւ նպատակն է նկարագրել՝ ոչ ծանօթ հայուհիների անհատական վարքերն, այլ հայ կնոջ ամբողջ կենցաղն իսկ: Ովքեր որ ցանկանում են վերակազմել մէկ կամ միւս յայտնի հայուհու պատկերը, բաւական է որ դիմեն այս գրքի յատուկ անւանացանկին եւ ամփոփեն նոյն անձի ծանօթութիւնները: Անւանացանկին պէտք է դիմել նաեւ տեղեկութիւնների լրացման կամ լուսաբանութիւնների համար: Իսկ այն կանանց անունները, ցրուած յիշատակարաններում եւ արձանագրութիւններում, որոնց մասին կենսագրական կարեւոր տեղեկութիւնները պակսում էին եւ հնարաւոր չէր իբր օրինակ ծառայէին, - եւ նրանք թւով անհամար են,- դուրս մնացին այս աշխատութիւնից, որ յատուկ անունների բառարան չէ, այլ պատմութիւն եւ նկարագրութիւն:*

*Այսքանը թող բաւական համարուի իբր յառաջաբան:*

## ԳԼՈՒԽ Ա

### Սնունդ եւ դաստիարակութիւն

Մօտենանք նկատելու համար հայ դստրիկին, որ նոր է ոտք դրել կեանքի սեմին եւ սկսել է ընդունել նախ նիւթական սնունդն, որին պիտի յաջորդի նաեւ բարոյականն էլ: Քաղաքակրթութեան առաջին պահանջն ու լաւ ապրելու արուեստն է դաստիարակութիւնն, որը պարտականութիւն ունի սերնդէ սերունդ փոխանցել ընկերային ու տոհմային գեղեցիկ աւանդութիւնները, բարոյականը, զարգացումը եւ ուսումն, որոնցով անհատները զարգացած՝ պէտք է շարունակեն պահել ցեղն իր բարձրութեան վրայ: Երկու սեռերն էլ կարօտ են այդ պատրաստութեան, սակայն պատանին, որ կոչւած է իր ուսերին բառնալու ընտանեկան ու մանաւանդ հանրային կեանքի ծանրութեան մեծագոյն բաժինը, բոլոր ազգերի ու մեր մէջ եւս, առաւելագոյն խնամքով է պատրաստւել: Առանձին մի հատոր եմ նւիրել հայ պատանու դաստիարակութեան պատմութեանն[1]: Իսկ այստեղ մեր գործը միայն հայ աղջկայ հետ է:

1. - Ասացինք, որ նիւթական սնունդը կանխում էր, ինչպէս բնական է, քան բարոյականը: Մեր տիկնայք սովորութիւն չունէին անձամբ դիեցնելու իրենց զաւակներին, այլ նրանց յանձնում էին ստնտուներին: Նորածին հայ դստրիկն, եթէ ծնւում էր տոհմիկ յարկի ներքոյ, առաջին անգամ փարւում էր մի լանջի, որ իր մօրը չէր, այլ օտար մի կնոջ՝ ռամիկ դասից: Այս մասին աւելի ընդարձակօրէն խօսելու ենք յետոյ[2]: Իսկ դայեակի փոխանորդաբար կատարած այդ մայրական պաշտօնը նրա եւ սանի միջեւ բնական սերտ կապ էր ստեղծում, որը օրիորդի ամբողջ կեանքի ընթացքում անխզելի էր մնում:

Զանազան են դրա օրինակները: Ռշտունեաց **Համազասպուհի** տիկինը, Դ դարում, որը Մամիկոնեան Համազասպի քոյրն էր, իր «դայեակն» ունէր «մի կին»[3], որ նրա եղերական մահւան ժամանակ մօտենալու է սանին ու գթութեան մի գործ կատարի[4]: Եղիշէն ակնարկում է իր նկարագրած տիկնանց «բնակասնունդ դայեակներին», որոնք նրանց լիութեան ժամանակ նրանց շրջապատել եւ կարօտութեան շրջանին, թողել ու հեռացել էին[5]: Դայեակների այս դրութիւնը միշտ մնում է, եւ ԺԳ

---

1. *Դաստ. հին Հայոց քով.* 430 էջով: — 2. *Աստ՝ Դ*, 6: — 3. *Փաւս.* 242, 178: — 4. *Աստ՝ ԺԶ*. 5: — 5. *Եղշ.* 156:

*դարի առաջին քառորդին, մի կին* ***Ամլքա*** *անունով, որ միաբանում էր Դսեղի եկեղեցուն, չի մոռանում պարծենալու, թէ «դայեակն է եղել* ***Խորիչահի*** *դստեր՝ Մարծպանի*[1]*», որի մականունը «Համազասպեանց ազգից Մամիկոնեան էր*[2]*»: Բայց ռամիկ դուստրը դայեակ չունէր, չունէր նաեւ նման կապեր. Նրա մայրը իր համար ամէն ինչ էր:*

*Դիեցմանը յաջորդում էր հաստատուն սննդեան շրջանը: Ազնուական օրիորդների սնունդը լի էր կերակուրների նրբութեամբ, որոնք յետոյ Վարդանանց պատմիչին որակել էր տալիս «փափկասուն» բառով*[3]*: Նրանց ուտեստի գլխաւոր նիւթը կազմում էին ընտանի անասունների ուղեղները, եւ ախորժելի պատրաստուած խորտիկները. վայրի կենդանիներից, որ իրենց հայրերն ու եղբայրները առատօրէն որսում ու բերում էին: «Եղիշէն իր տիկնանց համար ասում է, որ իրենց մանկութիւնից սնւում էին գւարակների ուղեղներով եւ երէների ամիճներով*[4]*»: Միւս ուտեստներն էլ սրանց համեմատ էին, որոնց մասին ընդարձակօրէն այլ տեղում խօսել եմ*[5]*:*

2.- *Անշուշտ կարեւորագոյն էր բարոյական եւ մտաւոր սնունդը, որը յաջորդում էր մարմնական սննդին: Հայ պատանու կրթութիւնը ինչպէս ուրիշ ազգերի, նաեւ մեզ մօտ կատարւել է, երբ հնարաւոր էր՝ պետական օժանդակութեամբ բացւած հասարակաց դպրոցներում, որոնցից ունեցանք Լուսաւորչի, Ներսէսի եւ Սահակի օրերում*[6]*: Սակայն հայ աղջիկը այդ ուսումնարանների մէջ մուտք չունէր. մի խտրութիւն, որին իմաստից մայր Եղլադայի մէջ անգամ հանդիպում ենք: Մեծ Աթէնքը զուրկ էր իգական վարժարաններից, եւ Տէոսի նման քաղաքները բացառութիւն էին կազմում, որոնք երկսեռ դպրոցներ ունէին: Մայրերին յանձնւած էր տալ իրենց դուստրերին ապրելու համար կարեւոր դասեր*[7]*:*

*Այս դրութեամբ՝ ռամիկ հայ աղջիկը ստանում էր իր անշուք կենցաղի պահանջած չափաւոր զարգացումը միայն: Իսկ ազնուական օրիորդը մեծագոյն խնամք էր վայելում, իր եղբօր պէս դաստիարակւելով հայրենի տան մէջ: Գիտենք, որ մօրից բացի նրա կրթութեան մէջ կարեւոր մի բաժին ունէր դաստիարակի հոգածու գործակցութիւնն էլ: Ղազարն է մեզ այս տեղեկութիւն տւողը, պատմելով որ 450-ին, երբ Պարսից մոգերն եկան դէպի Հայաստան, մեր տիկնայք «իրենց որդիներին եւ* ***դուստրերին*** *պատւիրեցին, ստէպ* ***դաստիարակներին*** *երբեք չանցկացնել նրանց մօտով*[8]*»: Եթէ որդիների դաստիարակները այրեր էին, շատ հաւանական էր, որ*

---

1. **Զալ. Ա**,117: — 2. ***Ագր***. 168: — 3. **Եղշ**. 156: — 4. **Անդ**: — 5. ***Ճառ***. 112, 178-85: — 6. ***Դասա***. 85-99: — 7. **Դրմբ. Բ**, 477: — 8. **Փրպ**. 174:

դուստրերի դաստիարակները իրենց սեռակիցներն լինէին, ինչ որ բնական հետեւանքն է աղջիկներին արական սեռից անջատ պահելու կենցաղին[1] եւ ոչ ազնուական, այլ լաւ կրթուած քաղաքացիներ էին:

Արքայազն օրիորդների համար պարագան փոխւում էր: Երբ բախտի բերմամբ արքայազդուստրը ծնողների պաշտպանութիւնից զրկւէր, պետութեան բարձր աւագանուց մէկը առաջ անցնելով, ստանձնում էր նրա հովանաւորութիւնը, որպէսզի գահի մնացորդները փրկէր: Այսպէս երբ Խոսրով արքան դաւադրութեամբ սպանւեց եւ Հայաստանը յանկարծ ընկաւ Պարսից իշխանութեան ներքոյ, այդ տագնապի մէջ սպանուածի որդուն՝ Տրդատին, արեւմուտք փախցրին[2], իսկ նրա քրոջը՝ **Խոսրովիդուխտին**, յանձնեցին Օտայ Ամատունի նախարարի հոգաբարձութեանը, որի համար Խորենացին նրան կոչում է «Խոսրովիդուխտի **սնուցողը**», եւ օրիորդը՝ նրա **սանը**: Յետոյ Տրդատը յաղթական վերադառնալով Հայաստան, «գտնում է Օտային՝ իր քրոջ սնուցողին» եւ պահած արքունական գանձը: Պատմահօր ուշադրութիւնից չի վրիպել Ամատունի իշխանի նկարագիրն էլ, «արդար եւ համբերատար, ժուժկալ եւ առաւել իմաստուն[3]», որ մեր աշխարհի լուսաւորութեան գործակիցներից մէկը եղաւ[4]: Խոսրովի դուստրը լաւ ձեռքերի էր յանձնուել:

Նման մի դիպուածի հանդիպում ենք նաեւ միջին դարում: Ռուբինեան առաջին պսակաւորը՝ Լեւոնը, երբ 1219-ին վախճանւեց, իր գահաժառանգը՝ **Զապէլը**, դեռ չորս տարեկան մի մանուկ էր. եւ արքան զանազան կարգադրութիւնների հետ «նրան դրեց իր տղայի **դաստիարակի** մօտ», Պաղրսի մեծ իշխանի սիր Ատանի, որ Հայոց սենեսկալն էր,- Հերակլի պատմութիւնից կոչւել էր «Աղամ գաստոնացի[5]» եւ «հոռոմ դաւանութեամբ[6]», - եւ նրա հետ իր քեռու որդին՝ Կոստանդին պայլեռոնացին, գունդստապլ ու պայլ թագաւորութեան[7], մինչեւ 1222-ին, երբ Զապէլն ամուսնացաւ Փիլիպի[8] հետ դուրս եկաւ դաստիարակների հոգաբարձութիւնից:

3. - Անկասկած, դաստիարակութեան առաջին բարիքը սրտի կրթութիւնն է: Ազնուատոհմ պատանին իր ժամանակի մեծ բաժինը նուիրելով մարզական ու զինուորական հրահանգներին[9], որոշ չափով պէտք է կարողանար իր զգացումների մէջ նրբանալ, - յարգելով միշտ բացառութիւնները: - Ընդհակառակն իր քոյրը մարմինն ու սիրտը պնդացնող այդ թարթափումներից զերծ, իր սեռի բնատուր փափկութեան հետ, զուգում էր հոգեկան նրբագոյն մի կրթութիւն էլ: Եւ այն սահմանը, որ պատմիչները

---

1. **Աստ՝ Բ**, 2: — 2. **Ագթ.** 42: — 3. **Խոր. Գ**, հէ, ձր: — 4. **Ագթ.** 167: — 5. **Հրկլ.** 347: — 6. **Կիր.** 94: — 7. **Նոյն՝** 97. **Հայ. յիշ.** 1222, **Գամ. Ալ.** 209: — 8. **Տրդ. Կիլ.** 312, 317: — 9. **Դաստ.** 305-415:

*տալիս են ԺԱ դարի գիտութեամբ ու բարեպաշտութեամբ նշանաւոր Պահլաւունի Գրիգոր մագիստրոսի դուստր՝ **Մարիամին**, «սնուած սրբութեամբ, աստուածապաշտութեամբ եւ Տիրոջ երկիւղով*[1]*», կամ յաջորդ դարի Զորտուանէլեան **Շուշան** օրիորդին, «ըստ հայրենի ազնուականութեանն եւ ըստ մայրենի աստուածապաշտութեանն որով սնուել էր*[2]*», պէտք է տարածենք բոլոր դարերի մեր ազնուական տոհմերի մեծագոյն մասի վրայ: Այդ կրթութեան պտուղն եղաւ հայ իգական դասի պարկեշտութեան, հոգեսիրութեան, բարեգործութեան, մարդասիրութեան եւ ամէն տեսակ առաքինութիւնների չքնաղ օրինակները, որ զարդարում են մեր պատմութեան եւ ներկայ աշխատութեան էջերը, եւ նրանցից որոշներին սիրով ընծայեցին օտար բազմաթիւ արքունիքներին: Այդ բոլորի մէջ մեծ է բաժինը նրանց գորովագութ մայրերի սիրալիր թելադրութիւնների ու գեղեցիկ կենցաղավարութեան, «մայրենի աստուածապաշտութեան», որով լաւագոյն դաստիարակները հանդիսացան իրենց նազելի դուստրերի, ինչպէս պիտի տեսնենք:*

4. - *Առաքինութիւնների գլխաւոր աղբիւր եւ ներշնչողը պիտի լինէր Աւետարանի վարդապետութիւնը, որը մեր օրիորդները ուսանում էին դաստիարակներից, մայրերից եւ առաւելագոյն չափով կղերական դասից: Ե դարուց, պարսկական լծին ենթարկւելուց յետոյ, մեր քահանաներին յատուկ էր, ասում է Եղիշէն, «իրենց տանը ժողովրդին ուսուցանում էին» եւ մանաւանդ երկսեռ մատաղ հասակին: Չենք մոռանալու, որ այդ շրջանում մեր քահանաները ստիպւած էին նախ իրենք ուսանել եւ պատրաստւել իրենց կոչմանը, ինչպէս վկայում են սահակեան կանոնները*[3]*, որովհետեւ քահանայական անուսումնութիւնը, դեռ մեր ազգին ընտանի չէր: Այդ պատճառով էլ, երբ պարսիկներն ուզեցին հայերին պարտադրել իրենց մազդեզական կրօնը, հրամայեցին որ «**ազատ եւ շինական դասի դուստրերն** եւ որդիները հաւաքւեն մոգերի հրապարակում եւ մոգերը նրանց ուսուցանեն» քահանաների փոխարէն*[4]*:*

*Յետոյ օրիորդները հետզհետէ զարգացնում էին իրենց ուսումը գրքերի ընթերցանութեան միջոցով, մանաւանդ Աստուածաշնչի, որի էջերը բացեց նրանց առջեւ Հացեկացի սքանչելի գիւտը՝ հայկական այբուբենը, որ խորապէս հրապուրեց եւ ազդեց ժամանակի պատանեկութեան վրայ, եւ նրանց ստւար մէկ մասին գրագէտ դարձրեց, առաւելապէս ազնուական դասից: Յաջորդ դարերում էլ ուսումը եղաւ նրանց հաճելի զբաղմունքը*[5]*: Դաստիարակութեան եւ ուսման արդիւնքն էր հայուհու ստացած եւ ամբողջ կեանքում պահած ընթերցասիրութիւնը, որը պիտի տեսնենք առանձին գլխով*[6]*:*

---

1. *Արծ.* 348: — 2. ***Հայս.*** 394: — 3. ***Սոփ.*** *Բ*, 88: — 4. *Եղշ.* 60: — 5. ***Դասխ.*** 152-61: — 6. *Աստ՝ ԺԲ*:

5. – *Մտաւոր կամ հոգեւոր խնամքից բացի, դաստիարակութիւնը պահանջում էր տոհմիկ ծնողներից, հոգ տանել նաեւ դուստրերի արտաքին վայելչութեանը, որպէսզի ապագայում կարողանային ընկերների առջեւ բարձր պահել իրենց սեռի եւ աստիճանի պատիւը: Այսպէս Ոսկեբերանի Թարգմանիչը, մի տեղ բնագրից հեռանալով, բացատրում է, թէ հայ ազնուականները իրենց դուստրերին զգեստաւորում էին «նուրբ **չապիկներով** ոսկեթել զարդարանքով ուռեցուած եւ գնդերով զարդարուած*[1]*». այսինքն գունագեղ պարեգօտներ, որոնց ստորոտից կախուած էին ուռած կամ գնդաձեւ զարդեր, ժամանակի հայկական սովորութեան համաձայն:*

*Ղազարը պատմում է, թէ հայրերն ու մայրերը «յանուն» իրենց դուստրերին շինում էին նաեւ «մեծ աշխատանք պահանջուած **ճանոցներ** (վզի զարդ, մանեակ), կամ մարգարտեայ թանկարժէք քայռ» եւ նրանցով զարդարում էին նրանց*[2]*: Այս ամէնը, կրկնում եմ, սահմանուած էին զարգացնելու նրանց վայելչագիտական ճաշակը, որի նկարագրութեան նուիրել եմ առանձին մի գլուխ*[3]*: Դարերն ու արտաքին զարդարուելու ձեւերը փոխւում են, սակայն դուստրերի պճնանքը մնում է միշտ իր նրբութեան մէջ. ինչպէս նկատում ենք նաեւ Լեւոն Բ-ի եւ **Կեռանի** զաւակների վրայ, իրենց ընտանեկան խմբանկարի մէջ, եւ պիտի տեսնէինք նոյնը ամէն ազնուական յարկերի ներքոյ:*

6. - *Վարդանանց պատմիչն ակնարկեց նոյնպէս «շինականների դուստրերի» կրօնական դասերին հետեւելուն: Իրապէս նրանց մօտ էլ գտնում ենք, գէթ այդ մասի մէջ, չափաւոր մի զարգացում, որ գերազանցում է քան նրանց ամուսիններինը, որոնք աւելի շատ զբաղուած էին կենցաղական զբաղմունքով քան մտաւոր կամ հոգեկան հարցերով: Փաւստոսը մեզ տալիս է գեղջուկ մի երիտասարդի նկարագիրը, որը զինուած զարդարուած ճանապարհին հանդիպում է տարօնցի Յովհան անունով աղուաշ եպիսկոպոսին: Վերջինս ցանկանալով նրա գեղեցիկ երիվարը, ստիպում եւ իջեցնում է երիտասարդին, նրան բռնի երէց է ձեռնադրում, աղաբողոն հագցնում, ձին առնում եւ նրան տուն է ուղարկում:*

*Տուն հասնելուն պէս, ասում է կնոջն ու ընտանիքին, որ ելէք աղօթենք, որովհետեւ ես երէց եմ. «իսկ նրանք զարմացած մերթ շիկնում էին, մերթ ծիծաղում»: Վերջապէս կինն ասում է. «Միթէ չէ՞ դու երեխայ էիր եւ չէիր մկրտուել»: Այդ գեղջկուհին սովորել ու գիտէր, որ ձեռնադրութիւնն անզօր է առանց մկրտութեան եւ որ ամուսինը չէր մտածել անգամ ձեռնադրուելու պահին: Կնոջ այդ ազդարարութեան վրայ, ամուսինը վերադառնում եւ յայտնում է եպիսկոպոսին: Նա մի դոյլ ջուր*

---

1. *Ոսկ. Պօղ. Ա*, 814: — 2. *Փրպ.* 363-64: — 3. *Աստ՝ Ջ*:

*վերցնելով թափում է նրա գլխին ասելով քեզ մկրտեցի, առանց նորից ձեռնադրելու: Պատմիչը չի ասում թէ կինը երկրորդ անգամ որչափ չիկնեց եւ ծիծաղեց*[1]:

*Կար ու մնաց եւ աւելին քան այդ, զարգացման մի աստիճան նաեւ քաղաքացի դասի դուստրերի մէջ, մանաւանդ Կիլիկիայում, Ռուբինեանների ժամանակ եւ նրանց չնորհիւ, որոնց օրինակները պէտք է տեսնենք իրենց հերթին*[2]*: Բայց բազմակերպ են հայուհու վրայ դաստիարակութեան արգասիքը, որ կանցնենք թւարկելու ու նկարագրելու հետագայ գլուխների մէջ, որ ամփոփում են նրա կեանքի զանազան դրւագները, որոնք ուշագրաւ են իրենց կարեւորութեամբ:*

## ԳԼՈՒԽ Բ

### Տնային կեանքում

*Հայ աղջիկը, իր մանկութեան ու դաստիարակութեան շրջանը անցկացրած, հիմա մտել, խառնւել է ընտանեկան կենցաղի մէջ՝ իբրեւ օրիորդ կամ տիկին եւ դարձել է տան գործօն անդամներից մէկը: Հասարակաց յարկն այժմ իրենն էլ է ուրիշներին հաւասար: Ինքը խնամում է իր անձը, ապրում եւ օժանդակում է նրանց՝ որոնց հետ մէկ ընտանիք է կազմում: Հայրենի ստացւածքից ունի իր բաժինը: Հետաքրքիր են նրան իր բնակարանը, ապրելու եղանակը, ուտեստը, զբաղումները, իրաւունքը, որոնց մասին ներածի չափով կակնարկենք ըստ կարիք եղած մանրամասնութեամբ:*

1. - *Որովհետեւ այստեղ նախ ու գլխաւորապէս ազնւական դասի հետ գործ ունենք, պատմիչներից սահմանւած «տիկնայք փափկասուն Հայոց աշխարհի*[3]*», կամ «փափուկ կանայք՝ նախարարների դուստրեր եւ աւագանու կանայք*[4]*», թողնենք անշուք գիւղերը եւ մտնենք մեր հին պարսպապատ* ***քաղաքներից*** *մէկի մէջ, որտեղ հաստատւած են «նրանց* ***ապարանքները****», որոնց բուն օրինակն է Եղիշէի տիկինններինը: Այդ պալատների հետ նրանք ունեն նաեւ իրենց դղեակները, կառուցւած դժւարամատոյց բարձրութիւնների վրայ, որոնք տօթ եղանակին նրանց դիւրազգաց մարմիններին հովանոց էին եւ օտարների յարձակման ժամանակ «ամուր ապաստաններ»: Վարդանանց պատմիչն ասում է, թէ 451-ի ձախորդ պատերազմի պատճառով այդ*

---

1. *Փաւս.* 266-68: — 2. *Աստ՝ ԺԲ*, 2 *ԺԳ*,6: — 3. *Եղչ.* 156: — 4. *Փրպ.* 331:

կրկնակ շինութիւնների առաջինները «ընկնելով կործանուեցին» եւ վերջինները «տապալուելով աւերուեցին» թշնամու ձեռքով[1]:

Քանդւում են բարբարոսների յարձակումից, երբեմն նաեւ մեր աշխարհի դղրդիչ երկրաշարժներից, բայց վերստին կառուցւում են: Այդ կրկնակի աւերիչ յամառութեան դէմ, կանգնած է միշտ հայկական շինիչ յամառութիւնը: Եւ նրանց չքեղութիւնն ու նրա ստեղծող նրբացած ճաշակն անփոփոխ է մնում դարեր շարունակ, վկայելով՝ թէ վայրագ բազուկն անբաւական էր նւաճելու հայկազեան քաղաքակրթութիւնը եւ բնութեան անդիմադրելի ոյժը՝ լքել տալու այն: Եւ նրա գեղազարդ կառուցւածները երեւում են դեռ Թ դարում, որտեղ Արծրունեաց պատմիչը ակնարկում է իրենց Դերենիկ իշխանի ու **Մլքի** տիկնոջ «հրաշակերտ ապարանքները[2]»: Շատ մանրամասն նկարագրւած են իրենց որդու՝ Գագիկ արքայի շինութիւններն եւս: Նախ Ռշտունեաց Ոստան աւանի մէջ, լճի ափին, որտեղ կերտեց «տաճարներ, սենեակներ եւ փողոցներ (նրբանցք) հրաշալի պատկերակերպներ եւ տեսակ-տեսակ յօրինւածներ, որը չեմ կարող պատմել», ասում է գրիչը: Նոյնպէս այնտեղ «ծովի դիմաց մի ճեմարանով տաճար ոսկեզարդ եւ բազմապիսի պաճուճաւոր գեղեցկութեամբ, արեգակնահրաշ ճառագայթաձեւ, աչքերը խտղտացնող եւ ուրախութիւն սրտի»: Զբօսնողների համար էլ մի փառահեղ տաճար կառուցեց Աղթամար կղզու մէջ, լերան լանջի վրայ, որի մասին պատմիչը մեծագոյն հիացմամբ է խօսում[3]:

ԺԱ դարում, Արիստակէսն ափսոսում էր, որ Բագրատունեաց գահի կործանմամբ, հայ ազատանին ցրւել էր եւ նրանց «ցանկալի տները բարձրաձեղուն եւ մեծամեծ» անմարդաբնակ էր դարձել[4]: Յաջորդ դարում, Սարգիս մեկնաբանը, հաւասարապէս տեսնում էր Հայաստանում անպակաս «պայծառ տներ տախտակամածներով», եւ մինչեւ իսկ «ոսկեզօծ տներ[5]»: Եւ Մովսէս Երզնկացին 1258 թւին դեռ կարող էր տրտնջալ «յարկերից, ապարանքներից, բարձրագոյն տներից, ոսկեզօծ ձեղուններից եւ յախճապակեայ (խճանկար) յօրինւածներից, կճէիւքով (մարմարով) եւ զանազան պատկերներով լցւած[6]», որ կանգնած էին նրա ժուժկալ եւ աններող աչքերի առջեւ:

Դրանց ճարտարապետական յօրինւածն ու նրբութիւնները անշուշտ ամէնի մէջ հաւասար չէին միշտ: Օրինակ՝ Դ դարում Արշակունեաց ապարանքը բաժանւած էր լայն սենեակների կամ **սրահների**, որոնք բաժանւում էին իրարից **փող** կոչւած «երկար

1. Եղշ. 156. — 2. Արծ. 300: — 3. Անդ.՝ 328, 331-32: — 4. Լաս. 35: — 5. Սրգ. 825, 657: — 6. Խար. Ժմգ. 404:

անցքով», իր լոյսն ընդունելով տանիքների վրայ բացւած «լուսանցոյց երդիկներից[1]»: Հաւանօրէն սենեակների լուսանցոյցներն էլ նոյնպէս էին: Նոյն ոճով ներքուստ բաժանւած տեսանք նաեւ Գագիկի Ոստանի մէջ շինւածքը: Ընդհակառակն, Դերենիկի պալատն ունէր «լուսանցոյց պատուհաններ» պատերի վրայ եւ սենեակների դռների վերեւ ագուցւած էին «ոսկեհուռ կամարաձեւ երանգով ճարտար յօրինւածքներ[2]», որ ոսկեհիւս պաստառից շինւած դրասանգներ էին: Բոլոր բնակելի սենեակները վայելուչ եւ հանգստաւէտ էին, բայց չէին կարող մրցել ընդարձակութեան ու փառաւորութեան հետ **տաճարի** կամ դահլիճի, որը տան ամենայարգի մասն էր:

Այդ շքեղութիւնների մէջ, ուրեմն բնակւում էին մեր տիկինները եւ սենեակները բաժանւած էին տանտիրոջ, տիկնոջ եւ ընտանիքի միւս անդամների միջեւ, իսկ **տաճարը** վերապահւած էր ազնւական դասի յաճախակի ընդունելութիւնների համար:

2. - Նրանց սենեակների դռները զարնելուց առաջ պիտի իմանանք որ հաւասար դիւրութեամբ չեն բացւելու մեր առջեւ եւ նրանց բնակիչների սովորութիւնները շատ տարբեր են իրարից: Բայց ժամանակի կարգով ընթանանք. Դ - Ե դարերում ենք այստեղ: Մինչ տէրն ու տիկինը մտնելու, ելնելու եւ բարեկամներ ընդունելու ազատութիւնն են վայելում[3], նոյն տանը պատկանող «օրիորդները» ու «մանկամարդ ամուսնացած կանայք» ընդհակառակն սահմանւած են ապրելու «դռնփակ սրահներում[4]», որտեղ տղամարդ հիւրերի հետաքրքիր աչքերը չեն կարող թափանցել: Նոյնը հաստատում է Ոսկեբերանի հայ թարգմանիչն էլ: Հերովդի դստրի նկարագրութեան մէջ դնելով այս յաւելւածը. «Կոյսն, որ իր սենեակից դուրս գալու իրաւունքը չունէր», բազմականաց առջեւ պարում էր լրբաբար[5]: Այս խստութեան մէջ զգալի է մեծ յարգանքը, որ հայ ընկերութիւնն ընծայում էր օրիորդին եւ առհասարակ նրա սեռի պարկեշտութեան ու պատւին: Ժամանակակից յոյն օրիորդն էլ նոյնպէս անջատ էր ապրում[6]:

Մինչ Ղազարը մանկամարդ կանանց ու օրիորդներին **սրահներ** է վերագրում, որոնք նրանց ընտանեկան ներքին կեանքում աւելի ազատութիւն ու շարժում են ապահովում, Եղիշէն իր հարսներին բնակեցնում է «առագաստների սենեակում[7]», որը նրանց ընտանիքի անդամներից էլ որոշ չափով զատում են, եւ աւելի եւս ազգականներից, որ չեն կարող հեշտութեամբ մօտենալ նրանց: Արշակունի Գնէլի հօրեղբօրորդին՝ Տիրիթը, դրսից լսելով նրա նորապսակ կնոջ՝ **Փառանձեմի**,

---

1. *Փաւս.* 204: — 2. *Արծ.* 300: — 3. *Աստ՝ Ե*, 1-3: — 4. *Փրպ.* 162: — 5. *Ոսկ. Մտթ. Բ*, 686: — 6. *Ոսկ. Պօղ. Ա*, 814: — 7. *Եղշ.* 156:

գեղեցկութեան համբաւը, «գաղտագողի ներս ընկաւ», որով միայն յաջողեց տեսնել նրան[1]. մի տեսութիւն, որ աղէտաբեր եղաւ երկուսի համար էլ: Եւ Արիստակէսը, վեց դար յետոյ, նոյն փակարանը դեռ պահուած է ցոյց տալիս, յիշելով «հարսների **սենեակի մէջ**» անցկացրած կեանքը[2]:

3. – Պէտք է խնդրենք ուրեմն մեր այդ տիկիններից եւ մանկամարդերից, որ ի սէր եւ ի շահ ազգային հնախօսութեան, մի պահ մեր առջեւ բացեն իրենց խստափակ դռները: Եւ այն ժամանակ պիտի նկատենք, որ բնակարանների չքեղութեան հետ, մրցում է նաեւ նրանց ներքին յօրինուածքը: Այնտեղ տիրում է ճախարակուած պաղպաջուն կարասիների ու սպասների ճոխութիւն եւ փափկութիւն: Մամիկոնեան երէցն Վարդանի կնոջն Երախանի ամրոցի մէջ, յիշում է նստած «**իր գահին**[3]», որ գետնից բարձր մի չքեղ նստարան էր: Այդպէս էր ու միշտ մնում էր տիկնանց սովորական բազմոցը, որով Սիւնեաց պատմիչն էլ մեր ուշադրութիւնը հրաւիրում է Ժ դարի - եւ միանգամայն իր ժամանակի - տիկինների «**փետրալի հեշտոցների եւ ոսկեթել գահերի**» վրայ[4]: Նաեւ ճաշարանի մէջ նրանց նստարանները «**բարձրագահ**» են, մինչ սեղանը զարդարում են թանկագին սպասներով, որոնց յետոյ ականատես պիտի լինենք:

Նրանց ննջասենեակների պերճութիւնն էլ պակաս չէ, որ փռուած են «**բազմագահի անկողիններ**[5]» կամ «**նկարուած պատշգամներ**[6]», զանազան ձեւերով ու գոյներով յօրինուած եւ իրենց առաւելագոյն ճոխութեան պարագային **գահոյք** էլ կոչուել է[7]: Այս կարասին կազմւում է երկու մասերից՝ **մահիճներ** կամ **մահճակ**[8], որ քառոտանիի ներքին ու բարձր մասն է, եւ ծանօթ բրդեղէն **անկողինն** որ տարածւում է նրա վրայ: Այս զանազանութիւնն զգալի է սաղմոսից «ելայ իմ **անկողնոյս մահճից**[9]» եւ Կորեանի այս բացատրութեան մէջ «գետնատարած **անկողիններից**[10]», ուր յայտնի է վերջինիս չարժականութիւնը. եւ որ յոյն ազնուական օրիորդների տակի փռուածքը չատ փափուկ է նկարագրւում. «փափուկ անկողնու մէջ գայռում էին[11]» կամ պառկում էին: Սրանց վրայ հաւանական էր, ինչպէս ուրիշների եւ մեզ մօտ, եղել է **պաստառակալ**[12] կամ սաւանը, իսկ սովորական **բարձը**[13] կամ **սնարը**[14] գլխի տակ եւ մարմնի վրայ **վերարկուներ** կամ վերմակը, որ ըստ անձի աստիճանին, կարող է լինել չատ հարուստ, օրինակ՝ «**ոսկեհուռ**», եւ գահոյքն էլ «ակներով եւ ոսկով պատած», ինչպէս

---

1. *Փաւս*. 110: — 2. *Լաս*. 39: — 3. *Փաւս*. 128: — 4. *Օրբ*. 140: — 5. *Փրպ*. 332: — 6. *Եղչ*. 97: — 7. *Նոյն*՝ 134. *Ոսկ. Պօղ. Ա*, 816: — 8. *Անդ*:— 9. ***Մզմ.*** *ԾԼԱ*, 3. *կամ «լուացի զամենայն գիշեր* ***զմահճիս*** *իմ, եւ արտասուօք իմովք* ***զանկողինս*** *իմ թացի»* *Զ*, 7: — 10. *Կոր*. 7: — 11. *Ոսկ. Պօղ. Ա*, 816: — 12. ***Հյկ. բռ***: — 13. ***Մրկ.*** *Դ*, 38. *Եղչ*. 156: — 14. *Եղչ*. 156:

արքունիքներում[1]: Ըստ Եղիշէի ակնարկութեան, տիկնանց գահի վրայից ցերեկը վերցնում էին անկողինը, նրանց գործածել կարողանալու համար, եւ երեկոյեան դարձեալ «անկողնարկ էին լինում[2]»: Ուստի կը պարզւի, որ նստելու եւ ննջելու սենեակները միշտ իրարից տարբեր չէին, մանաւանդ երբ տունը չատ ընդարձակ չէր:

Նորեկ հարսների սենեակների մէջ դրանց հետ տեսնւում են ***«սրահակներ եւ սրսկապաններ»*** կոչւած վարագոյրներ էլ[3], սրահակը կախւած էր դռան յետեւում[4], մեծագոյն զգուշութեան համար, դռան բացւելու եւ փակւելու ժամանակ եւ սրսկապանը խորանաձեւ ծածկելով նրանց մահիճը: Հայոց բանակի մէջ անգամ պատմիչը տեսնում էր «հովանոցը, սրահակը, գահոյքն եւ անկողինը[5]»:

4.- Տիկինների անձնասիրութեան եւ մեծ ուշադրութեան առարկայ էր մարմնի արտաքին խնամքն ու զարդարանքը: Սրա առաջին մասը լւացումն էր. եւ նախ ամբողջականը. այդ պատճառով, ազնւական տներում, յատուկ վայրն անպակաս էր այդ գործի սահէպ կրկնութեան համար եւ որի մէջ յոյն կամ հռոմէական բաղնիքների կատարելութիւնը տեսնելու կամ հերքելու բաւական փաստեր դեռ չունենք: Դ դարից մեզ մօտ յիշւում են լւացման երկու եղանակներ. մէկը՝ վերոյիշեալ Մամիկոնեան Վարդանի «հարում էր ձորի մէջ վրանաձեւ բերդի փոսում», որ նշան էր թէ ամառ էր եւ լւացումը պաղ ջրով եւ իշխանը դրա մէջ «մերկանդամ կանգնում էր խոնարհելով, որպէսզի սպասաւորները նրա վրայ ջուր լցնեն», գլխից մինչեւ մարմինն անցնելով[6]: Իսկ միւսը տեղում հաստատուն էր, յատուկ լոգարանով ու տաք ջրով, որ Դրաստամատի համար պատմում է Բուզանդը, թէ «լւաց գլուխը» բանտարկւած Արշակի եւ «լողացրեց նրա անձը[7]» ինչպէս թելադրում էր մեր իսկ սովորութիւնն: Այս վերջինը, թւում է, տիկնանց մկրտութեան յատուկ վայրն ու ձեւն էլ, նաժիշտների սպասաւորութիւնն ընդունելով: Հայաստանում գոյութիւն ունէր զանազան ջերմուկներ, որոնցից գիտէին օգտագործել օրինակ՝ Կաղանկատւացու յաւելւածը (Ժ դարից) ցոյց է տալիս Գեղամայ Վայունիք գիւղը, «որտեղ արքունական բաղանիքներն են», ասում է[8]. եւ որոնցից կամ նմաններից, անկասկած, օգտւում էր նաեւ մօտակայքի ժողովուրդը:

Ամբողջական լոգանքից բացի կար ձեռքերի սովորական լւացումը ճաշի եւ ուրիշ առիթներով, որի համար աղախինը ***նքոյրն*** ու ***աւազանագուրանն*** էր բերում: Նքոյրը ծակոտկէն, մի տաշտ էր եւ միւսն՝ յատուկ սափոր[9]. եւ ջուրը թափում էր տիկնոջ ձեռքերի վրայ, իսկ ընտանիքում, հաւակով կրտսերը ***գաւառական*** էր մատուցում

1. *Եղչ.* 134: — 2. *Նոյն՝* 156: — 3. *Անդ*: — 4. *Հմմտ. Ծնն. ԻՁ*, 36, *ԼԸ*, 18. *ԼԹ*, 38. *Խ*, 26, 31: — 5. *Փաւս.* 135: — 6. *Նոյն՝* 128: — 7. *Նոյն՝* 207: — 8. *Կղն.* 273: — 9. *Հմմտ. Ճառ.* 83-85:

մեծերին, սրբելու համար: Եւ այդ կրկնակի լուացումներին գործածում էին *օշնան*[1], որ նշանակում էր օճառ: Գանձակեցի պատմիչին եւս ծանօթ են գեղեցիկ Անիի բնակիչների «փափուկ մարմինները» որ միշտ «*օճառով* լուացած» էին[2]:

Սոյն մաքրութեանը յաջորդում էր վարսայարդարումը *սանդրով*, նրանց տալով հաճելի տարբեր ձեւեր, որ երեւում են հին քանդակների մէջ[3]: Յետոյ օծում էին անուշահոտ *իւղերով*[4], որ քամում էին Հայաստանի ծաղիկներից եւ բոյսերից: Այս ամբողջական կամ մասնական մկրտութիւններն ու օծումները յաճախ կատարւում էին տիկնանց կողմից, իսկ օրէնք էր իրենց ընդունելութիւնների առթիւ՝ «ի զւարթութեան եւ ուրախութեան[5]»: Եւ վերջը հագնում էին իրենց ազնիւ զգեստները, որ ըստ առիթին լինում էին նաեւ «ոսկեհուռ կերպասից[6]»: Եթէ ոչ նրանց նիւթը, բայց ձեւը միշտ անհաւասար է եղել մայրերի եւ դուստրերի վրայ, մեծագոյն ու տիկնավայել ճոխութիւն տալով մայրերի հագածին: Իսկ դուստրերի վրայ նկարագրուած են «փափուկ հանդերձներ եւ առաւել կակուղ քան մարմինները, չափիկը բարակ ճամկաւոր, ուռած գնդով պճնուած[7]», որոնց նախապէս տեսանք ու մեկնեցինք[8]: Երկու տարիքների կամ լաւ վիճակի զգեստի այդ զանազանութիւնը միշտ եղել է եւ երեւում է *Գեոսւան* Թագուհու եւ զաւակների վրայ եւս՝ իրենց ընտանեկան պատկերների մէջ: Իսկ փոշուց եւ ցեխից հեռու պահելու համար նրանց փակում էին յատուկ *սապատների* կամ *արկղների* մէջ եւ ստէպ հանում ու «թօթափում էին[9]»:

5. - Նրանց սննդի փափկութիւնը նաեւ մեծ էր: Եղիշէի տիկինների պալատի մէջ կային յատուկ «*հացարարներ*՝ որոշուած պէտքին սպասարկելու ըստ ազատների կարգի[10]», որոնց գործն էր պատրաստել *նաշիհ*[11] կամ ցորենի նորագոյն ալիւրից թխուած հացեր: Ուրիշ մասնագէտների ձեռքով յօրինւում էին «*խոհարարական* անուշարար համեմներ», որոնք խառնւում ու կարեւորագոյն տարրն էին կազմում խորտիկների կամ մսեղէն կերակուրների, որոնց ակնարկեցինք[12]: Իսկ իրենց ըմպելին էր իրենց այգիներից բերած զուտ կամ «պարզ գինին»[13]:

Մինչ այժմ մեր թւած բոլոր նրբաճաշակ հայթայթածների մէջ կայանում էր ազնուազգի հայուհու «մայրենի ազատութեան փափկութիւնը», որ նրանց «սովորական

1. Եղշ. 156: — 2. Կիր. 139: — 3. Փրպ. 332. *Պատ. արք*: — 4. Եղշ. 156. Փրպ. 332: — 5. Եղշ. 156: — 6. Փրպ. 331: — 7. Ոսկ. Պօղ. Ա, 814: — 8. Աստ՝ 11: — 9. *Պատ. տրք*. 139, 238: — 10. Եղշ. 156: — 11. Փրպ. 331: — 12. Աստ՝ 8 — 13. Փրպ. 331:

փափկութիւնն» էր[1] խառնուած իրենց ամենօրեայ կենցաղին, ինչպէս միշտ չեշտում են մեր պատմիչները:

6. – Կերակրի սնունդը պահանջում էր մարդ էակից նաեւ աղիքների պարբերական թեթեւացումը եւ այս գործը յատուկ եւ ըստ պատշաճի, նաեւ մի փակ տեղում, որ քաղաքակիրթ ազգերն՝ ինչպէս յոյներն ու հռովմէացիները պատրաստել էին արուեստով եւ առողջապահական կանոններով, առանձին էր տների մէջ եւ հասարակաց վայրերում քարեղէն ծակ նստարանով: Հայ ազնուականի յարկն էլ այդ դիւրութիւնից զրկուած չէր: Վարազդատ արքան, իր մէկ հրաւէրի պահին, ելաւ սեղանից «իբրեւ դէպի **ճեմիչ** գնալու պատճառով[2]», որի տեղը պալատի ներսում է եւ **պալարահեղ** էլ ասուած է[3] եւ գործը՝ «ապարահից զանց առնել[4]»: Այնքան մեզ մօտ ապահով է այդ ճեմիչի յօրինուածը, որ **Դատաւորների** թարգմանիչը բնագրի այս մութ բացատրութիւնը, «միթէ թափէ՞ց իր ոտքին ամրոցի սենեակի մէջ», պարզում ու հայացնում է այսպէս. «գուցէ **աթոռին նստեց** պէտքի ժամանակ սենեակի մէջ[5]»:

Իսկ փոքր կարիքների համար սովորական էր **միզաւան** կոչուած ամանը, յիշուած Ոսկեբերանի թարգմանչից եւ ենթադրում է սպասն էլ մեզ մօտ, ինչպէս յոյների, որոնց մեծատուն կանայք մինչեւ իսկ արծաթեայ էին գործածում, իրենց վրայ հրաւիրելով Անտիոքի մեծ բեմբասացի չանթերը[6]: Հայ տան նկարագրի ամբողջութեան պէտքն էր, որ մինչեւ այստեղ բերեց մեզ. այժմ դառնանք ուրիշ խնդիրներին:

7. - Ազնուականութեան վիճակը չէր ներում, որ տիկինները ենթարկուէին տան այնպիսի ծառայութիւններին, որոնք չէին համընկնում նրանց փափկակեցութեանը: Դրա համար Եղիշէի տիկիններն «իւրաքանչիւրն ունէին ձեռնասուն **սպասաւորներ»** կամ **նաժիշտներ**. ձեռնասուն, ըստ որում, մատաղ հասակից իրենց ձեռքի ներքոյ սնուած ու վարժուած էին: Եւ նրանք «սպասարկութիւն էին մատուցում[7]» նոյն ազնուահիներին ու օրիորդներին եւ կատարում էին բոլոր ծառայական գործերը, ինչպէս անկողիներ փռել եւ վերցնելը, տիկնոջ ձեռքի վրայ ջուր թափելը[8], «տունն աւլելը[9]», լուանալ, սրբել, խոհարարութիւն անել[10] եւ այլն: Դաւիթ Գանձակեցին ԺԲ դարում վկայում էր թէ խոհարարութիւնն աղախինների ձեռքն էր, տիկնոջ հսկողութեամբ[11]:

Ձեռնասուններից բացի, մեր տոհմիկ տներում հանդիպում ենք նաեւ քրիստոնէական շրջանում արծաթագին կամ գերի ծառաներին եւս, որը մնացել էր

1. Եղշ. 155, 156: — 2. Փաւս. 237: — 3. Ոսկ. Պօղ. Ա, 572: — 4. Փաւս. 237: — 5. Դատ. Գ, 24: — 6. Ոսկ. Պօղ. Ա, 603: — 7. Ոսկ. Պօղ. Ա, 814: — 8. Եղշ. 156: — 9. Ղկ. ԺԵ, 8: — 10. Փաւս. 123: — 11. Ալաւ. Գ:

*Հեթանոսութեան շրջանից: Ս. Ներսէսը, ազատում էր նրանցից շատերին համոզելով եւ կամ «փրկագնով[1]»: Զ դարի կէսին, Ներսէս Աշտարակեցու կանոններով, քահանաներին հրամայում են «մի՛ արծաթագնով աղախիններին ստանալ[2]», ինչպէս ունէին աշխարհականները, որոնց եւ չի համարձակւում արգիլել: Եւ դեռ ԺԲ դարում Մխիթար Գօշը վաւերացնում էր արծաթագին ծառաների եւ աղախինների դրութիւնը համաձայն մովսիսական օրէնքի եւ եթէ այլազգի լինէին վաճառելու իրաւունք էր տալիս[3]:*

*Կիլիկեան շրջանում կամ աւելի ճիշտ Ա Հեթումի երկար թագաւորութեան օրով, գտնում ենք ներքինիներ պահելու սովորութիւնն էլ, հաւանօրէն թաթարների օրինակով, որոնցից թւում է առնւել էր նաեւ նոյն արքայի հարճակալութիւնը[4]: Ժամանակակից մի անձ՝ Բրոկարդը՝ գերման դոմինիկեան ուղեւոր դէպի Պաղեստին, որ մէկ ամսւայ չափ հայ արքունիքում բնակւեց, պատմում է թէ մեր «ազնւական տներում սպասարկում են բազմաթիւ ներքինիներ» նաեւ «Հայաստանի թագուհին (որ Զապէլն էր), իր մօտ շատ ներքինի ունի՝ վաթսունի չափ», որոնք ներքինացւած էին պատժի համար եւ կարգւած էին ծառայութեան[5]: Նախքան այդ, նոյնպիսի պաշտօնեաների չենք հանդիպում մեր քրիստոնէական շրջանի պատմութեան մէջ:*

8. - *Բարի եւ երկիւղած տիկինները գիտէին շատ քաղցրութեամբ վարւել ու չծանրաբեռնել աղախինների ու ծառաների լուծը: Եղիշէն իր հինգ հարիւր ծանօթների համար վկայում է, թէ «ոչ ոք չէր երեւում նրանցից, թէ որն է տիկինը եւ որը նաժիշտը[6]»: Եթէ այդ հաւասարութեան մէջ իրենց ընդարձակ ազնւութիւնն ունի իր բաժինը, անշուշտ կար վերահաս կարօտութեան բերած հարկը, որ այն փափուկ անձնաւորութիւններին մղում էր տնային ծառայութեան եւ կեանքը մասամբ նոյնացւած աղախինների հետ:*

*Բայց իհարկէ բոլոր տիկինները նոյն խառնւածքն ու նրբութիւնը չունէին, այլ կային խստաբարոյ անձնաւորութիւններ, որ չարաչար էին վարւում սպասաւորների հետ: Այս, մասամբ շատ կարեւոր է Ոսկեբերանի մի ակնարկն, որ սրբազան պերճախօսը նկարագրում է յոյն դաժան տիկինների կերպն ու լեզուն աղախինների հետ «թեսաղացի[7], փախստական, նրան բոզ կոչես» ասելով: Հայ թարգմանիչը, որին ես համարում եմ մեծ Կողբացին, փոխում է այդտեղ հելլենուհու դէմքը, եւ նկարագրում է իր ազգի տիկինների ոմանց վարմունքն ու բարբառը, հետեւեալ կենդանի պատկերացումով: «Զանգտին եւ զսամտի[8] անուն կոչես, զբոզն եւ զպոռնիկն,*

---

1. *Փաւս.* 77: — 2. *Կան. լզ*: — 3. *Դատ. Ի, ԻԱ, ԻԲ, Լ (գրչ.)*: — 4. *Ասս՝ Գ, 9, բ*: — 5. *Բրկ. Բ, բ,* 9: —
6. *Եղշ.* 155: — 7. *Որ է կախարդ*: — 8. *Թերեւս [illegible] բառից, իբր արժանի անասունների լծին*:

զողողեալն եւ զբազմահոմեանն, զգայթակղականն եւ զանաչխարհիկն, զվարատականն եւ զամայն[1]»: Ակներեւ է, որ բարկացկոտ հայ տիկնոջ լեզուն աւելի երկար է, իր այբուբենի պէս, քան հելլենացիներինը:

Թարգմանիչը շարունակում է, «Եւ յետ այնչափ սանդաստականաց (Նախատինք) եւ թշնամաց անցեալ նստիցի իբրեւ զվիշապ եւ զխարամանի[2]»: Թարգմանչին ընտանի էին «սատանաների արհաւիրքը[3]»: **Զգօն** չար քրիստոնեաներից ոմանց կոչում է «օձեր հարամանիք[4]»: Եւ Եփրեմը՝ «ճանապարհի վրայ դարանակալ օձ» կամ «սատանայ օձ, որ արկանում է երիվարների գարշապարի տակ[5]»: Այդ օձի եւ վիշապի կերպարանքն էր տեսնում թարգմանիչն հայ ցասկոտ տիկնոջ վրայ, շարունակելով պատմել Ոսկեբերանի հետ աղախնու ընդունած ծեծն ու լուտանքը: Պէտք է նկատենք, որ հայուհին այդտեղ տակաւին գտնւում է Դ դարի հեթանոսախառն բարքերի ազդեցութեան ներքոյ, որոնք յետոյ պիտի ուղղւեն եւ ազնւանան Մաշտոցի եւ աշակերտների կենդանատու շնչով:

9. – Իշխանական պալատներից աւելի ընդարձակ էր արքունիքը, ընդարձակ նաեւ նրա ներքին կեանքը, այնպէս որ արքայի եւ թագուհու յարկաբաժինները իրարից բաժանւած էին, թագաւորն ունենալով իր յատուկ կցորդութիւնը պետական անձերի եւ աւագանու հետ: Դշխուհու այդ անջատ կենցաղը, մեծապէս զգալի է Արշակի արքունիքում, որտեղ միաժամանակ բնակւում էին նրա երկու կանայք՝ **Փառանձեմն** ու **Ողոմպին** (Ոլոմպին): Վերջինս կասկածոտ մրցակցից, պատմիչի ուշադրութիւնը գրաւում է, որ նկարագրում է նրա առանձին բնակութիւնն արքինում, յատուկ սպասաւորները, խոհանոցն ու կենցաղը, որով եւ «իր նաժիշտների» պատրաստած գինին ու կերակուրն էր ճաշակում[6]. այնպէս որ երկու տիկինները ոչ միայն բնակակից, այլ սեղանակակից անգամ չէին իրար, նաեւ ոչ էլ արքայ ամուսնու: Նոյն Արշակի տատը կար՝ Խոսրովի կինը, որը անպարկեշտ ընթացք ունէր եւ թագաւորը նրանից տեղեակ չէր[7]: Թագուհու ինքնավարութիւնն այնքան էր, որ Փառանձեմն կարող էր իր մօտ կանչել ու բանտարկել արքունի դրան երէցին՝ Մրջիւնիկին, եւ Արշակը չէր տեսնում եւ նրան անծանօթ էր մնում, ինչպէս նաեւ բանտարկութեան հետեւանքները[8]: Նոյն բաժանումը կար նաեւ Կիլիկիայի պալատում, ինչպէս ստորեւ տեսնելու ենք: Եթէ ոչ պալատի, բայց բնակութեան որոշ բաժանում զգալի է իշխանական մեծ պալատների մէջ էլ, ինչ որ պահանջում էր տիկնոջ եւ մանաւանդ օրիորդների ազատ երթեւեկութիւնն

---

1. Ոսկ. Պօղ. Ա, 833. վերջի բառն հմմտ. «իբրեւ զգերի եւ զամայի». անդ՝ 129: — 2. Ցն. «Եւ յետ այսր ամենայնի իբրեւ բռնաւոր մի նստիցի»: — 3. Ոսկ. Մտթ. Ա, 633. յն. չունի: — 4. **Զգօն** 370: — 5. Եփր. Ա, 128, 333: — 6. Փաւս. 123: — 7. Նոյն՝ 8: — 8. Աստ՝ Թ, 2:

աչքից զերծ մնալու հարկն ինքնաբերաբար[1]: Այս է ցոյց տալիս նաեւ **Շուշանիկի** Վկայագրի բացատրութիւնները. «**երէց դրան տիկնոջ**[2]»:

Ցիշեցինք դրան երէցներին: Արդարեւ թէ արքունի եւ թէ իշխանական պալատներում, կային այդպիսի քահանաներ, ներքին բնակիչների հոգեւոր պէտքերին հասնելու պաշտօնով: Իսկ մեր տիկիններից ու բամբիշներից բարեպաշտագոյնները, իրենց ամուսինների պահածից բացի, բնակութեան բաժանման պատճառով իսկ, ունէին իրենց սեփականն էլ, որից կարող էին հոգեւոր մեծագոյն մխիթարութիւնն վայելել: **Շուշանիկի** յիշուած երէցը, նրա տառապանքների մէջ, սփոփիչն ու քաջալերիչը եղաւ[3]: 1272-ի մի յիշատակագրից յիշւում է «արի, երջանիկ քահանայ՝ Գրիգորը, Կոստանդեայ իշխանի որդին, որ **դշխուհու տան մէջ էր» Կեռանի**,- որը նոյնպէս անջատ էր արքայի տնից, - «մեծի եւ փոքրի վրայ իշխող, որպէս հայր տածող եւ ամենին խնամող[4]»: Սա նոյն տիկնոջ հօրեղբօր՝ Օշինի, թոռն էր, եւ բնականապէս ազգակցութիւնն էր, որ նրան այդչափ լայն ասպարէզ էր տւել թագուհու տան մէջ:

10. – Հայ տիկինն իր յարկի ներքոյ, ինչքա՞ն իշխանութիւն եւ գործունէութիւն ունէր: Հեթանոսական շրջանից, որոշ տեղեկութիւն չի հասել մեզ: Սակայն Դ դարը, դեռ պահում էր հին **մարդպետը**, որ դիցապաշտ Արշակունիների կանանոցի վարիչն էր: Այդ պատճառով կոչւել է նաեւ ներքինի[5], կամ «որին հայրն էին կոչում ներքինիների[6]» եւ որի իշխանութեան ներքոյ կանայք մեզ մօտ չատ ու քիչ սարկական կեանք էին վարում ինչպէս ուրիշ ամէն տեղերում: Աւետարանը տապալեց կանանոցը, թեւաթափ արեց եւ պալատի միջից դուրս վտարեց մարդպետին եւ իշխանական պալատներից՝ մարդպետիկներին, առաջինին կապելով գաւառի մի վարչութեան հետ ու վերածելով արքունի քաղաքական մի պաշտօնատարի[7], իսկ հայ տիկինը դարձաւ իր տան տիրուհին: Եղիշէի բացատրութիւնն՝ «**նրանց** ապարանքը» եւ կամ «ամուր ապաստանը **նրանց**», այն է տիկնանց[8], որոնք սակայն նրանց սեփականութիւնը չէին, այլ նաեւ իրենց ամուսինների եւ զաւակների, զգացնում են տիկինների ընդարձակ իշխանութիւնը կամ գերիշխանութիւնը ընտանեկան սեմից ներս, մինչդեռ տղամարդիկ թաղուած էին արտաքին ու քաղաքական զբաղմունքների՝, վարչութեան, զինւորութեան եւ որսորդութեան մէջ:

Տիկնանց հսկողութեան ներքոյ էին գտնւում տնային կենցաղի հետ կապւած - եւ բոլոր ազնւականութեան մօտ անպակաս – ներքին կամ արտաքին վայրերն էլ նոյնպէս

---

1. *Հմմտ. տես*՝ 14: — 2. *Սոփ. Թ*, 15: — 3. *Անդ*՝ 15, 16, 17, 29, 37: — 4. *Հաւք. յշա*: — 5. *Փաւս.* 114, 115: — 6. *Նոյն*՝ 206: — 7. *Փաւս.* 114, 206: — 8. *Աստ*՝ 12-13:

իրենցն են յիշում: Այսպէս Վարդանանց պատմիչի աչքը հրապուրում էին «**Նրանց** այգիների գինեբեր որթերը», որտեղից բխում էին իրենց անուշ ըմպելիները: «**Նրանց** ծաղկանոցների բոյսերն», որ պճնում էին նրանց սրահներն ու սեղանները, գոյներով ու բոյրերով. «**Նրանց** տաճարները» կամ ճաշասրահները, ուր կատարւում էին ազնուական դասի ընդունելութիւնները[1]: Եւ նիւթականից աւելի բարձր ու ազնիւ մի պաշտօն՝ իրենք էին հսկում նաեւ զաւակների դաստիարակութեանը[2]: Վերջապէս հայուհին բացարձակ ու միահեծան տէրն էր իր տանը, այժմեան եւրոպական իմաստով եւ մասամբ աւելի եւս. եւ իր այդ իրաւունքը չեղչուած է արդէն Ե դարից, ինչ որ շատ նշանաւոր ու պատուաբեր է մեր ազգի համար:

11.- Երբ տան ծառայութիւնները կատարւում էին սպասաւորների ձեռքով, բնական է, որ տիկիններն ու օրիորդները իրենց առօրեայ կենցաղում պարապ ժամեր շատ ունենային, որոնց դատարկութեամբ անցնելը ոչ բարոյական եւ ոչ էլ հաճելի էր նրանց: Նրանք գիտէին այդ ժամանակը նւիրել պատշաճ մի զբաղմունքի, մանաւանդ այլ եւ այլ բարեգործութիւնների, որը տեսնելու ենք յատուկ գլխով: Նրանց մեծապէս հաճելի էր ձեռագործը, այն է ասեղնագործութիւն կամ նուրբ ոստայնանկութիւն, որն օգտակար էր լինում իրենց անձին, ընտանիքներին ու բարիք գործելու, իսկ նեղ օրերին էլ, որ անծանօթ չէր Հայոց աշխարհին, օգնում էր իրենց ապրուստին: Եղիշէն ակնարկում է նրանց այդ ճարտարութեանն, երբ իր կարօտեալ տիկինների համար ասում է թէ «իրենց մատներով վաստակեցին եւ կերակրեցին[3]»:

Մատների այդ վաստակն աւելի որոշ նկարագրւած է Վերին **Խաչէնի** կամ Հաթերքի տիկնոջ **Արզու Խաթունի** գործի մէջ: Իշխանի քոյր եւ ամուսինը իր փառքի ու լիութեան մէջ, իր դուստրերի հետ, ասում է Գանձակեցին, գեղեցիկ վարագոյրներ էր պատրաստում եւ նւիրում էր եկեղեցիներին[4]: Նրանց այդ աշխատութեանը յետոյ պիտի անդրադառնանք[5]: Նոյն պատմիչը Ներքին **Խաչէնի** տիկին ու Վախթանկի ամուսին՝ **Խորիշահի**, մասին եւս վկայում է թէ Երուսաղէմում, ուր 1216-ից առանձնացած էր «ինքն իր ձեռագործով էր կերակրւում» մինչեւ մահը[6], իրենց զաւակներին թողած իշխանավայել ճոխութեան մէջ եւ ինքը կամաւորապէս աղքատացած էր[7]:

Մեր տիկինների տնային հաճելի զբաղմունքներից մէկն էլ պիտանի գրքերի ընթերցումն էր, որի մասին առանձին[8]: Եւ ինչ գործով էլ զբաղւէին նրանց սենեակներին

---

1. Եղչ. 156: — 2. Ատ՝ Դ, 7: — 3. Եղչ. 157: — 4. Կիր. 111: — 5. Ատ՝ ԺԳ, 3: — 6. Կիր. 145: — 7. Ատ՝ Ը, 3: — 8. Ատ՝ ԺԲ:

մօտեցողը լսում էր նրանց բերնից մեղմաձայն նուագի գեղգեղանքը եւ բարեպաշտների շուրթերից Իսրայէլի թագապսակ երգչի հոգեշունչ եւ հոգեպարար գանգիւնները. «Նրանց բերաններում մշտնջենական Սաղմոսների մրմունջներն էին» Վարդանանց ամուսինների[1]:

12. – Որքան էլ մեր տիկինների պալատները շքեղ ու լի էին հանգստութեամբ, սակայն տեղափոխութեան կարիքն իրենք էլ զգում էին. մանաւանդ զգացնել էր տալիս Հայաստանի բնութիւնն իր կրկին խիստ եղանակներով՝ ամռան ու ձմռան մէջ: Այս պատճառով, արքունի եւ ազնուական տոհմերն ու բարձրաստիճան եկեղեցականները սովորութիւն ունէին ջերմ եղանակին «դէպի ամառանոց» ելնելու հիւսիսային կամ բարձր վայրերում[2] եւ ցրտին՝ «դէպի ձմեռանոց» իջնելու, աշխարհի նուազ ցրտաշունչ կողմերը[3]: Մեր տիկիններին եւ օրիորդներին աւելի հաճելի էր անկասկած ամառանոցը, որտեղ օդի գեղեցկութիւնը, թռչունների դայլայլանքը եւ բնութեան չռայլած բարիքները զգում էին նրանց քիմքն ու զգայնութիւնը:

Տարօնի Տաճատ իշխանի որդուն ու յաջորդին՝ Զորուանէլիի կտակը գոյութիւն ունի ԺԲ դարի սկզբին, որ յիշում է իրենց Բերդակ ամառանոցը յարելով թէ «զւարճանալու տեղեր էին բուսականութեամբ, ծառերի եւ անուշ մրգերի, իմ նախնիների՝ Մամիկոնեան իշխանների»: Նրանք ամռանը ընտանեօք այնտեղ էին տեղափոխւում եւ իշխանի համար մի յիշատակելի պարագայ, «իմ մայրը՝ Զարմանդուխտն, ասում է, նոյն գիւղի մէջ էր երկնել ինձ, եւ իմ ծննդեան վայրերն էր[4]», այդ պատճառով իր սրտին աւելի մօտ էր: Նաեւ յիշւում է Անդուլ անապատը, որ Հեթում Ա ու Զապէլ թագուհին 1238-ին «անւանեցին իրենց ամառանոցը», պատմում է մի յիշատակագիր[5]:

13. - Մինչեւ այստեղ ականատես եղանք ազնւազարմ հայուհիների ներքին կենցաղին: Մի վայրկեան անցնենք նկատելով նաեւ շինական կնոջ պարզուկ տնակը, քաղաքներից դուրս ընկած: Մեծ է տարբերութիւնն, որ գոյութիւն ունի երկու դասակարգերի տնային կենցաղավարութեան մէջ: Նախ՝ ոչ մի համեմատութիւն իշխանական հին պալատների մնացորդների եւ հայ գիւղացու աւանդութեամբ պահած կէս գետնաթաղ բնակարանների մէջ, որոնց Քսենոփոնը տեսնում էր 401 թւականին (Ն.Ք.), երբ անցնում էր Հայաստանից[6]:

1. Եղշ. 157: — 2. Ագթ. 38. Խոր. Բ, դ. Փրպ. 102, 174: — 3. Ագթ. 37. Փրպ. 197: — 4. Հյպ. 397: — 5. Մխ. 230: — 6. Քսեն. Նհյ. Դ, ե:

*Նրանց անշուք լինելու հետ զուգընթանում է դրանց մէջ ապրուած կեանքն էլ: Եղիշէն հայ գիւղացի կանանց սահմանում է «մարդիկ՝ որ սկզբից վշտով ապրել են շինական սովորութիւններով, տանջուելով վարել են աշխարհի կեանքը[1]»: Այդ տանջանքը կայանում էր նախ ընտանեկան բոլոր աշխատանքների մէջ, որ անձամբ էին կատարում, աղախիններից զուրկ լինելով: Լւացւում էին լոկ ջրով՝ առանց օճառի եւ իրենց համար անոյշ իւղերը գոյութիւն չունէին: Նրանց հացը հասարակաց պատրաստուածից էր, իսկ կերակուրը շատ պարզ էր, որն ուտում էին խեցեղէն պնակի մէջ: Մահիճ չունէին այլ «գետնախշտիք» էին, այսինքն պառկում էին գետնին, խոտեղէն փսիաթի վրայ, որ «գետնանկողին»էլ էին կոչւում[2] կամ «գետնատարած խշտիք[3]» եւ իրենց սնարին մի թուխ բարձ ունէին[4]: Ընդհանրապէս բոլոր ընտանիքը բնակւում եւ ննջում էին նոյն տեղում. այդ պատճառով էլ սենեակների զանազանութիւնը, պատմիչները, միայն վերագրեցին ազնուականներին[5] եւ ռամիկ տների մէջ նորապսակների անկողինը միւսներից բաժանւում էր «առագաստ» կոչուած մի վարագոյրով ինչպէս ցոյց եմ տուել այլ տեղում[6]:*

*Իսկապէս նեղ ապրող շինականների կեանքն էր այդ, որ չի ժխտում թէ գտնւում էին նաեւ ընչաւէտ եւ բարեկեցիկ գիւղացի ընտանիքներ, վարժ ամոքելու իրենց կենցաղը, ինչպէս միշտ եւ ամէն տեղ եղել է: Դիւրութիւնները քաղաքաբնակ ռամիկների մէջ անշուշտ աւելի զգալ էին, որ ազնուական դասի օրինակն ունէր իր դիմաց, եւ աւելի վայելուչ բնակարաններ ու հեշտ կենցաղ, ըստ իւրաքանչիւրի կարողութեան: Միանգամայն համեմատական էին Հայաստանի քաղաքական կացութեան, նրա անդորր կամ վրդովուած պայմանների հետ: Քսենոփոնն, որի անցնելը ձմռանը պատահեց, հայ շինականների տներում իսկ ընտանի անասունների, ցորենի, գարու, արմտիքի եւ գարեջրի առատութիւն տեսաւ. եւ ինքն ու զօրքը մեծարւեցին ճոխ ու պարարտ սեղաններով[7]: Ասողիկը շեշտում է, որ Աշոտ մեծի եւ իր որդու՝ Սմբատի, թագաւորութեան ժամանակ՝ «քահանաներն ու ժողովուրդը, մեծամեծներն ու փոքրերը, բամբասեցին հացի լիութեան ու գինու յղփութեան վերաբերեալ[8]»: Այսպէս դիւրութեան շրջանները պարբերաբար կրկնւում էին, հայ ռամկուհուն էլ ընծայելով աւելի հանգիստ ու վայելք: Սննդի հետ նաեւ հագուստների փափկութիւն[9], գետնախշտութեան փոխարէն, պարզ մահիճ կամ «մարճակ» ննջելու համար[10] եւ այլն: Փաւստոսի*

1. *Եղշ*. 155: — 2. *Նոյն*՝ 156, 97: — 3. *Ոսկ. Պօղ. Ա*, 815: — 4. *Եղշ*. 156: — 5. *Աստ*՝ 14: — 6. ***Թ. Տրցոյց*** 1912: — 7. *Քսեն. Նհշ. Դ, ե*: — 8. *Ասղ*. 162: — 9. ***Փամ. արզ***. 143-46 *եւն*: — 10. *Աստ*՝ 15 ***պամ.*** *Աք*. 6:

*նկարագրած չինական երիտասարդը, որ տեսանք*[1]*, ունէր սանրւած ու օծւած վարսեր, հերակապ ու զգեստի վայելչութիւն, որոնք չեն ներում, որ իր կինը բնութեամբ աւելի պճնասէր, համարենք քան այն անխնամ վիճակում, եւ քաղաքացի հայուհին՝ քան նրանք:*

14.- *Ամէն մարմին փափուկ թէ վչտամբեր, ենթակայ է տկարանալու եւ կարօտելու բժշկական խնամքի: Ի՞նչ դարման ունէր հայուհին իր կամ սիրեցեալի հիւանդութեան դէմ: Նախ՝ արւեստի սովորական միջոցները՝ որ մեզ մօտ ծանօթ են հին դարերից ի վեր: Բժիշկը գալիս ու քննում էր ախտացեալին: Առանց մերկացնելու նրան,- անշուշտ պարկեշտութեան համար,- այլ «ձեռքը ներս տանելով» հագուստի կամ վերմակի ներքոյ, «զննում է մարմինը, ասում է Եղիշէն, եթէ ջերմութիւն ունի, եւ եթէ սիրտն է, իր տեղում հանդա՞րտ է, եւ կամ լեարդն կակո՞ւղ է եւ կամ երակների շարժումը յարմա՞ր են». եւ ըստ այդ մատուցում էր դարմանը*[2]*:*

*Այսպիսով իր մօտ անպակաս էին «երագահաս ախտահալած սպեղանիները» վէրքերի համար, «եւ կամ արբմամբ» գործածելի դեղեր, որ ինքը կամ իր նման «ճարտարագէտ ստուգահմուտ բժիշկները» պատրաստում էին մեր աշխարհի եւ մանաւանդ Այրարատի բոյսերի բազմատեսակ արմատներից*[3]*: Հարկ եղած ժամանակ աւելի խիստ հնարներ էլ գործի էին դնում, ինչպէս «խարել, կտրել, արիւն թափել եւ բուժումը ըստ ցաւի մատուցել*[4]*» եւ կամ «ոմանց խարելով, ոմանց կտրելով եւ ուրիշներին կակղագոյն սպեղանիներով բժշկելով*[5]*»: Միջին դարում, մեր մէջ երեւացին յատուկ բժշկարաններ էլ՝ Մխիթար Հերացու եւ ուրիշների գրչից եւ զանազան թարգմանութիւններ, որ դիւրին դարձրին հայ բժիշկների պաշտօնը:*

*Իր սեռի ծածուկ տկարութիւնները, հայուհին քօղարկւած լեզւով էր բացատրում, պարկեշտութեան համար: Օրինակ՝ ծանօթ ախտով վարակւածին* ***տեռատես*** *էր կոչում*[6] *եւ ախտը՝* ***տեռատեսութիւն***[7]*, որ նշանակում էր յատուկ խնամք իր տեռի կամ հանդերձի վրայ, որ այդ առթիւ աւելի մաքրութեան է կարօտում որտեղ յոյն բնագիրը* ***հոռումն*** *է ասում: Ինչպէս հրէաները դաշտանի սովորական վիճակը անւանում էին «կանանց օրէնք (սովորութիւն)*[8]*». եւ մեր միջին դարում* ***անպատահագեալ*** *մակդիրն էր տալիս նման կանանց*[9]*, ուր հները* ***դաշտանիկ*** *էին ասում*[10]*: Դարձեալ կինը զաւակով հանդերձ, կոչւում էր* ***ողի****, որ կազմւած է հին* ***յոյլ*** *(այժմ յոյլ՝ ծոյլ) բառից եւ նշանակում էր դանդաղաշարժ: Երեք պարագային եւս արդիւպէս բացատրւում է պատճառը:*

---

1. *Աստ*՝ 11: — 2. *Եղչ.* 134: — 3. *Փրպ.* 24: — 4. *Մնդ.* 191: — 5. *Գր. Տղ.* 11: — 6. ***Չհա. ԺԵ***, 33: — 7. *Մրկ. Ե*, 25: — 8. ***Մնգ.*** *ԼԱ*, 35: — 9. *Աստ*՝ *Է*, 4: — 10. *Փաւս.* 76:

15.- Սակայն, որովհետեւ «կան ցաւեր՝ որ բժիշկները գտնում են առողջութեան հնարը, եւ կան որ ապստամբ են նրանց հնարքների դէմ[1]», հայուհին գիտէր դիմել նաեւ ուրիշ միջոցների, եւ նախ հոգեւորականներին ինչպէս խաչին, կամ իր մօտ պահած ու մեծարած մի սուրբ նշխարին[2], քահանայական աղօթքներին ու սուրբ իւղով օծմանը[3], որ սովորական էր յառաջագոյն եւ հայերի մէջ մինչեւ Ժ դար եւ յետոյ էլ[4]:

Սակայն չատ սնապաշտներ, փոխանակ այդ սրբութիւններին ապաւինում էին դիւթանքի, յուռութների, պահարանի, գրապանակների եւ նման այլ տեսակի սնոտիների, որոնց մասին ոգորել է Ցհ. Մանդակունի հայրապետը[5], եւ որոնց մասին ընդարձակօրէն գրել եմ այլուր[6], եւ այստեղ չեմ կրկնում: Ուզում եմ միայն կոչել Դաւիթ Գանձակեցու հետաքրքրական մի տեղեկութեանը ԺԲ դարից եւ յատկապէս կանանց, որն հետեւեալն է: «Ջեռնածութիւն առնեն, ասում է, իրենց տղայ մանուկներին», ասելով թէ այդ կերպով, նրանց մարմինը ցաւից զերծ է մնում: Թ-քով թրջում են իրենց ձեռները, եւ «մարձում են» կամ շփում են իրար, որպէսզի «նախանձից հիւանդացել է եւ նորից նախանձ չառնի»: Պառաւները «յօրանջում եւ ձգտումն առնում են» հիւանդ մանկան շուրջը: Կրակի կայծեր են գցում ջրի մէջ եւ ըմպել են տալիս մանուկներին եւ ուրիշ հիւանդներին, ուստի օգտւում է նա որ «աչքով տւած են կամ աչքով չտան»: Կապարը հալում եւ ջուրն են գցում եւ մանկան կրծքի վրայ են դնում, իբրեւ դեղ՝ «սիրտ խառնոցի եւ ատամնացաւի համար»: Դրսից ծլած արմատներ էին կտրում եւ կապում սենեակի մօտ գտնւող տանձենու կամ ուրիշ թփի, ասելով թէ «ջերմութիւն ունեցողի դեղ է[7]»: Ամիրտովլաթի բժշկարանում էլ հանդիպում ենք այսպէս սնոտի դարմանների[8], որոնց ընդհանրացումն յայտնի չէ եւ յիշելը աւելորդ եմ համարում:

Նոյն Դաւիթ վարդապետն աւանդել է նաեւ զանազան սնապաշտական նախապաշտպանական միջոցներ, որ կիրարկւում էին. ինչպէս զաւակների ծննդեան, հարսանեաց եւ յուղարկաւորութեան առթիւ, ճանապարհի վրայ, զգեստ կտրելու եւ հագնելու ժամանակ, իւղ չինելու եւ ամանից հանելու եւ դատարկելու ժամանակ, նորօտներկութեան եւ ոստայնանկութեան առթիւ: Երբ մէկը գիշերը ջուր էր խնդրում, երեք բեւեռով դանակ էին մխում մէջն ու յետոյ էին տալիս: Երեկոյեան զգուշանում էին մաղ կամ կրակ տալ խնդրողներին, եւ որեւէ բան Աւելեաց հինգ օրերում: Երեկոյեան աքաղաղի խօսելը հաճելի չէր, եւ եթէ մի հաւ աքաղաղի ձայնը

1. Եղչ. 134: — 2. Աստ՝ Ը, 2: — 3. Մնդ. 193: — 4. Կար. խնգ. 344, 525: — 5. Մնդ. 190-206: — 6. Երգ. 196-271: — 7. Ալաւ. ՂԶ: — 8. Անգ. 39, 40 եւն:

*հանէր գլուխը կտրում էին: Հմայութիւններ էին խառնում տարեկան տօներին, եկեղեցու նուէրներին, ժամհարի ձայնին, տնից դուրս գալու եւ մտնելու, հագուստը կամ գլուխը լուանալու մէջ եւ այլն*[1]*: Հաւանօրէն այս ամէնը աւելի ռամիկ դասում էին գտնւում քան զարգացած ազնուականների մօտ:*

16. – *Ընտանեկան կեանքում վերջին մի հարց ներկայանում է մեզ այստեղ: Հայ դուստրը հայրենի ժառանգութեան, ստացւածքի մէջ արդեօք իրաւունք ունէ՞ր, եւ ի՞նչ չափով, որից կախուած էր իր ընկերային կարեւորութիւնը: Այս խնդրի լաւագոյն պատասխանը որոնելի է անշուշտ հարսանեկան օժիտի մէջ, որ դստեր ժառանգութեան բաժինն էր, եւ որի մասին տիրող սովորութիւնները միշտ հաւասար չեն եղել, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ գլխում: Իսկ այստեղ իմանալու ենք, որ Հայաստանում, ամուսնական պարագայից անկախօրէն ճանաչւում էր դստեր իրաւունքը, որի համար կան օրինակներ:*

*Այսպէս, Խորենացին աւանդում է թէ Տիգրան Բ-ի որդին՝ Արտաւազդը, յաջորդելով հօրը, «**ժառանգում** է իր եղբօրը եւ **քրոջը**» Աղիովտի եւ Արբերանի գաւառներում*[2]*: Եթէ այս տեղեկութիւնները պատմականօրէն վստահելի չլինի իսկ, գոնէ մի վկայութիւն է Ե դարում տիրող սովորութիւնների, որը հաստատում է նաեւ օրինակը Կամսարական Սպանդարատի, որ Արշակունի տոհմից ամուսին ունենալով, բնակւում է «Նոր ժառանգութեան մէջ» Տարօնի եւ Հաշտենից կողմերում*[3]*, որը իր կինը ստացել էր ամուսնութիւնից առաջ: Անցնելով միջին դարին աւելի դրական փաստեր ենք գտնում:*

*ԺԱ դարի սկիզբին, ծանօթ են երկու քոյրեր՝ **Անի** եւ **Կամարա**, ազնիւ տոհմից.- թէպէտ իրենք անազնիւ,- որ «հայրենի ժառանգութիւնից երկու գիւղ ունէին», ասում է Արիստակէսը*[4]*:* 1234-*ին «տարաժամ» վախճանւեց Անբերդի Քուրդ իշխանի դստրիկը՝ **Մամա խաթունը**: Նրա ծնողները «նրա ունեցւածքը» այսինքն հայրենի բաժինը, որ պիտի նրան վիճակւէր գործածեցին շինելու ոսկէ խաչ, ոսկետուփ Աւետարան, նափորտ, վառ ու սրբազան զարդեր եւ ընծայեցին եկեղեցուն, վաղամեռիկ օրիորդի յիշատակին*[5]*: Այդ պարգեւները բաւականին թանկ էին եւ հաստատում են, որ դուստրերի բաժինը կարեւոր գումար է եղել, եթէ ոչ հաւասար եղբայրների ժառանգութեանը, որոնք հայրենի տունը պահելու եւ շարունակելու պարտականութիւնն ունէին:*

*Մխիթար Գօշը ճշտեց դուստրերի ժառանգութեան բաժինն էլ: Եթէ քոյրերն շատ են «երկու դուստր, ասում է, մի որդու բաժին է ստանում», իսկ «եթէ որդի չլինի*

---

1. *Ալաւ. ՂՋ*: — 2. *Խոր. Բ, իբ*: — 3. *Նոյն՝ Գ, լա*: — 4. *Լաս.* 101: — 5. ***Ալ.*** 163:

դուստրն է ժառանգում» ամբողջութեամբ: Իր բաժնով ամուսնացած դուստրը հօր մահից յետոյ, կստանայ երկրորդ բաժինն էլ, որով հաւասարւում է եղբօր ստացածին: Եթէ երկուսն են ամուսնացած, նրանց ստացածն հաւասարւում է եղբօր ստացածին, իսկ տանը մնացած, չամուսնացած միակ քոյրն «եղբայրներին հաւասար ժառանգում է հօրից»: Ամուսնացած տղամարդու ժառանգը՝ կինն է, եւ մեռնողի մայրն ու քոյրը, իրաւունք չունեն, բայց ժառանգելու են երբ կին չունենայ: Դստեր զաւակը ժառանգ չէ պապին, բացառապէս՝ եթէ իրեն նպաստող կտակ թողած լինի: Մօրը ժառանգն էլ որդին ու դուստրն են, նոյն համեմատութեամբ[1]:

Սմբատը, որ Գօշի աշխատութիւնից պատրաստեց Կիլիկիայի օրինագիրքը, կրկնեց դուստրերի ժառանգութեան նոյն սահմանը, աւելացնելով, որ եթէ արու զաւակից զուրկ մէկը տան փեսայ եկած լինի, սա իր կնոջ հետ, որդու տեղը կը գրաւի եւ կստանայ երկու քրոջ բաժնի հաւասարը[2]: Եւ այսպէս սովորութեան բերումով հաստատուած իրաւունքը, օրինագրքերի մէջ կանոնաւոր հանգամանք ստացաւ:

## ԳԼՈՒԽ Գ

### Ամուսնութեան մէջ

Տեսանք հայուհուն իր տանը որպէս տիկին ու վարիչ: Այժմ մօտենում ենք աւելի նուրբ ու կարեւոր մի խնդրին, այն է թէ ի՞նչ մաս ունէր նա ամուսնու ընտրութեան մէջ, եւ ի՞նչ հոգեկան կապ կենակցի հետ: Ի՞նչ իրաւակցութիւն եւ ազդեցութիւն նրա վրայ, շնորհիւ իր ստացած դաստիարակութեանն եւ նրբութեանն: Արդեօք ամուսնութիւնն եղե՞լ է նրա համար միշտ երջանկութեան աղբիւր եւ իր այդ միութիւնը ուրիշ տների հետ, ընկերական եւ քաղաքական առընչութեամբ ի՞նչ դեր է կատարել: Այս բոլորը պիտի զննենք ու տեսնենք այս գլխում, որը հարուստ է նիւթերով:

1. – Հայ աղջկայ ամուսնութեան մէջ, սովորաբար, սէրը պսակից առաջ, որեւէ բաժին չունէր: Սէրը՝ նրա միութեան արդիւնքն էր, ոչ թէ պատճառը: Իր կեանքի առաջին տարիներին ընկերներից արդէն անջատուած[3] եւ յաճախ բոլորովին խակ հասակում ամուսնութեան տարուած, չէր կարող նախապէս նոյնիսկ սիրոյ ծանօթութիւն ունենալ: Վրթանէս հայրապետի որդին եւ յաջորդը՝ Յուսիկը, տասներկու տարեկան էր,

---

1. Դատ. ԾԲ,ԾԳ,ԾԴ,ԾԶ: — 2. Սմ. Օր. ՂԳ, ՂԵ: — 3. Առա՝ 14:

*երբ «բռնադատուեց» արքայորդի Տիրանից նրա փեսան դառնալու[1]: Գրիգոր Դերէն Գ-ն՝ Աշոտ Արծրունու որդին, 857 թուին յաջորդում է հօրն «իբրեւ տաս տարեկան», իսկ յետոյ առաջին կնոջից այրի մնացած, - որի հետ ամուսնութեան տարին չի յիշատակւում, - 862-ին երկրորդ անգամ ամուսնանում է Բագրատունի **Սոփիայի** հետ, տասնհինգ տարեկան հասակում[2], ուրեմն առաջին պսակը աւելի շուտ էր: Եթէ պատանիներին այդքան շուտ էին ամուսնացնում եւ երբեմն էլ բռնի, դիւրին է գուշակել, թէ ինչպէս էին վարւում աղջիկների հետ: Մեծն Լեւոնի դուստրը՝ **Զապէլը**, եօթ տարեկան հասակում, ամուսնացւեց Փիլիպի հետ, քաղաքական պատճառներով եւ ապա բռնադատուեց ընդունելու Հեթումի փեսայութիւնը, ինչպէս պիտի տեսնենք:*

*Եկեղեցու հայրերը ջանացին խափանել այդ անտեղութիւնը, բայց մեծ յաջողութիւն չունեցան: Սահակեան կանոնները սահմանում էին, որ «տղաները կանանց հետ չխօսեն» եւ պսակ չօրհնւի «մինչեւ կատարեալ հասակի հասնելը» եւ պսակւողները նախ իրար տեսնեն, ցանկութիւն ցուցաբերեն ամուսնութեան, առանց որին, ասում են, «մինչեւ այսօր այդպիսի անկարգութիւններից բազմաթիւ վնասներ հասան աշխարհին՝ հոգեւոր եւ մարմնաւոր[3]»: Նոյնը պահանջում էր նաեւ 719 թւի Դւինի ժողովը, սահմանելով «միջնորդներն ու խօսնակները» կանխեն խօսեցեալներին «հաւանութիւն ստանալով նրանց յօժարութեանը[4]»: Ներսէս Շնորհալին կանոնեց, որ քահանաները «բռնաւորի բռնութեամբ, առանց տղամարդու եւ կնոջ կամքին» նրանց չպսակեն եւ ինչ որ ուրեմն պատահում էր, պատանին տասնհինգ եւ պարմանուհին տասներկուսից պակաս չլինեն[5]: 1246-ի Սսոյ ժողովը նշանակեց 14 փեսային եւ 12 հարսին[6]: Զագի վիճակային ժողովը 1270-ին պահանջեց տասնհինգ եւ տասնչորս, եւ «եթէ հարկ լինի, հարսը 12-ից աւելի եւ անպատճառ 10 տարեկան[7]»: Եւ Գր. Տաթեւացին վկայում է յիշեալ Սսոյ ժողովի սահմանը, որ մինչեւ իր օրերին պահպանւում էր[8]: Այս օրէնքները, իրենք իսկ արդէն թոյլատու էին խակ ամուսնութիւնների եւ այդպէս յաճախակի կրկնւած, հաստատում են թէ շատ քիչ էին յարգւում իրենց սահմանները: Եւ այդ զանցառութիւնների մէջ Դաւիթ Գանձակեցին գրում է (ԺԲ դարում), մեծ բաժին ունէին ամօթը, երկիւղը, կաշառքը եւ սնափառութիւնը: Ինքը տասնամեակից վար պսակող քահանաների համար նզովք ու կարգալուծում էր պահանջում[9], իսկ Զագի ժողովն «ընդ նզովքի» էր դնում պսակւողներին ու պսակել տւողներին:*

1. *Փաւս*. 12: — 2. *Արծ*. 226, 228, 233: — 3. *Սոփ. Բ*, 95: — 4. *Օձն*. 27: — 5. *Շն. Նմկ*. 164: — 6. *Կիր*. 170: — 7. *Կան* . *Գ*: — 8. ***Գրգ. Ժմ***. 90: — 9. *Ալաւ. ՂԳ*:

Մի խօսքով թէ օրիորդի եւ թէ ռամիկ աղջկայ ամուսնութիւններին առաջնորդն էին ընկերային պատշաճութիւններն ու շահերը: Այս է պատճառն, որ մեր պատմութեան մէջ չենք հանդիպում նախամուսնական մտերմութիւններին կամ յուզումնալի պատահարների, երկու սեռերի անձերի միջեւ: Եկեղեցական կանոնները, սկսած Շահապիվանի ժողովից (447ին) մինչեւ Շնորհալին ու Մխիթար Գօշը, ակնարկում են առեւանգութիւններին, որոնց դատապարտում, տուգանում են առեւանգողներին, նրանց կատարուած պսակն անվաւեր են հռչակում եւ պահանջում են աղջկան ծնողներին վերադարձնել, ապացոյց՝ թէ այդ հափափումների համար, աղջիկների կամքը միշտ չկար: Այդ պատահարները որոնելու ենք՝ ոչ ազնուական դասի մէջ, որտեղ գրեթէ անկարելի էր այդ[1], այլ ռամիկի, որոնց զաւակները իրար աւելի մօտ ապրելով, կարողանում էին հեշտութեամբ սրտի կապեր հաստատել միակողմանի կամ երկուստեք, եւ այդ գեղծմանը տեղի տալ:

Անշուշտ յարմար հասակների եւ յօժարակամ ամուսնութիւններ էլ շատ կային, թերեւս աւելի քան միւսները: Երբ մեր ժողովրդի դուստրերն սկզբից ուզում էին իմանալ թէ ինչպիսի կենակցի պիտի վիճակուէին, սնապաշտ գուշակութիւնների էին դիմում: Օրինակ Նոր տարւայ օրը, ասում է վերոյիշեալ Գանձակեցին, կժի մէջ երկաթ էին գցում, եւ «քարշեն ծիր գերդբնակովն» (այսպէս)[2]. եւ առաւօտեան գնում էին բաց տեղեր, քարեր էին շրջում ու նայում տակը: Եթէ սպիտակ մազ էին գտնում, նշանակում էր թէ իրենց բախտն էր ալեւոր մարդու գնալը, եւ եթէ սեւ գտնէին՝ երիտասարդի[3]: Որքան համակերպութիւն իրենց բախտին եւ հրաժեշտ սեփական կամեցողութիւնից:

2. — **Խնամութեան մէջ, մեծապէս նկատի էր առնւում դասակարգի հաւասարութիւնը**: Ազատների դասի ամուսինները, միշտ իրենց աստիճանակից տներից են եղել, շատերի տոհմերն էլ արդէն պատմութեան մէջ ծանօթ են: Այս սովորութեան զարտուղութեանը բնաւ քրիստոնէական շրջանում չենք հանդիպում, երբ ամուսնութեան մէջ մտաւ միակնութեան օրէնքը: Նպատակն էր ցեղային ազնիւ արիւնն անխառն պահել: կենակից ունենալ եւ իրենց տան կառավարութիւնը յանձնել ազգով եւ բարձր դաստիարակութեամբ ձեռքերի, եւ հուսկ ապահովել տնտեսական ու քաղաքական բարիքներն, որ պիտի տեսնենք: Նոյնպէս իշխանազն օրիորդներն էին, որ պսակւեցին Արշակունի, Բագրատունի, Ռուբինեան եւ այլ արքայական հայ թագերով: Այս հինաւուրց սովորութիւնը, մտաւ միջին դարում խմբագրուած օրինագրքերի մէջ: Կիլիկեան օրէնքը, ըստ Սմբատ սպարապետի շարադրութեան, յատկապէս արքայազն

1. Հմմտ. աստ՝ 14: — 2. Բնակարանի ե՞րդը (լուսամուտ): — 3. Ալաւ. ՂՋ:

օրիորդների մասին, այսպէս է ասում. «Դուստրերն իրաւասու են, որ (արքաներ) ի նահապետութեան տուն կարգեն, որ թագաւոր, իշխան, մարքիզ կամ այսպիսիները լինեն[1]»:

Այս սովորութիւնը կամ օրէնքը, ինչպէս նաեւ տոհմային իրաւունքներն իրենց ցեղի մէջ պահելու փափագը[2], պատճառ դարձաւ, որ մեր ազատանին յաճախ իրենց արիւնակիցների հետ ամուսնանային, անտեսելով եկեղեցական արգելող օրէնքը: Այսպէս Դ դարում, Ս. Յուսիկի որդիները, իրենց պապի քոյրերին առան եւ Արշակ Բ՝ իր եղբօրորդու կնոջը[3]: Աշտիշատի ժողովը, Մեծն Ներսէսի օրով, վկայում է եղելութիւնն եւ դատապարտում է միութիւնները «նուոց» հետ «եւ որ զամ մի այսմ նման լեալ ինչ էր[4]»: 447-ի Շահապիվանի ժողովից իմանում ենք «սրա նման» կապերը. օրինակ եթէ «մէկը իր հօր կինն է ունեցել», որ խորթ մայրն է կամ թէ «հայրը իր որդու կինն է ունեցել (որ իր նուն է) կամ եղբայր եղբօրը», որոնց հետ արգելում էր ամուսնանալ նաեւ «քրոջ (անդամ խորթ) հետ կամ քեռորդու կամ եղբօրորդու կամ հօրաքրոջ[5]», որոնք շատ ու քիչ կային: Է դարում Հարքի մի իշխան «կին ունէր, որն իր եղբօր կինն էր», որ հայր Թոթիկը խրատեց եւ ուղղեց[6]: Պարտաւի 771-ի ժողովը դեռ բողոքում էր «ազատների» դէմ, որ «անխտիր խառնում էին իրենց մերձաւորներին անօրէն ամուսնութիւններով[7]»: Սմբատ Բ Բագրատունին մեծ գայթակղութեամբ իր քրոջ դուստրն առաւ[8]: Կիրակոսը պատմում է թէ ԺԳ դարում արեւելեան Հայաստանում դեռ «հեթանոսաբար, ազգականների հետ ամուսնանալով, արիւնն արեան հետ էին խառնում[9]»: ԺԵ դարում, Թովմա Մեծոփեցին, օրինակներով վկայում է ազգախառն ամուսնութիւնների գոյութիւնն Արճիշում[10]: Բազմաթիւ են օրինակները ազնուականների մէջ երկու եղբայրների կամ քոյրերի զաւակների եւ այլ նոյնպիսի միութիւնների, որոնց դէմ առանձին բողոքներ չեն յարուցել, թէեւ շատ հաճելի չլինէին եկեղեցական իշխանութիւններին: Այսպէս Շնորհալու եղբայրը՝ Վասիլը, իր աներորդուն՝ լամբրոնացի Բ Օշինին, կենակցութեան տուեց իր Զօրավար եղբօր դուստրը՝ **Շահանդուխտը**, հայրապետից ծածուկ, «վասն խղճին, որ կայր վասն խնամութեանն[11]»:

3.- Հայկական հին հարսանիքը մեծ շուքով էր կատարւում, **խօսնակների** կամ **միջնորդների** կանոնաւոր բանակցութեամբ եւ յարակից արարողութիւններով, որ ուրիշ տեղում նկարագրել եմ[12], եւ պիտի այս գլխի վերջում համառօտեմ: Հայուհին մտնելով

1. Սմ. Օր. Ա: — 2. Խոր. Գ, ի: — 3. Աստ՝ Գ, 8: — 4. Փաւս. 76: — 5. Կան. ժբ, ժգ: — 6. Մամ. 29: — 7. Կան ժգ: — 8. Ասղ. 246: — 9. Կիր. 162: — 10. Մծփ. 112-17: — 11. Հրպ. 414: — 12. Թ. Տրցոյ. 1912:

իր նոր տունը, ստանում էր նոր ազգականներ, տարբեր կոչումներով քան հայրենի ու մայրենի տոհմակիցներից: Ամուսնու մօրն ունէր՝ իր **սկեսուրը**[1], հօրն՝ **սկեսրայրը**[2], կամ **սկեսրհայն**[3], եղբօրը՝ **տայգրը**[4], քրոջը՝ **տալը**[5], տայգեր կնոջ՝ **ները** կամ **նէր**[6], որի համար ինքը նոյնպէս էր, եւ բոլոր միւսների համար՝ **նու**[7] կամ **հարս**[8]: Իսկ իր ամուսնու համար իր մայրը՝ **զոքանչ**[9], հայրը՝ **աներ**[10], քոյրը՝ **քենին**[11], եղբայրը՝ նոյնպէս **աներ**[12], եւ նրա ընտանեկան պարագաները հաւաքաբար՝ **աներք**[13], իսկ ինքը նրա ծնողների **փեսան**[14] էր, եւ հօրը համար՝ **հոր**[15] եւ եղբայրների՝ **քեռայրը**[16]: Եթէ տղամարդը նախորդ ամուսնութիւնից զաւակներ ունէր, նոր կինը, նրանց **մօրու** էր լինում եւ նրանք իր **ուրջուքը**: Եթէ կինն ունէր զաւակներ, նոր ամուսինը նրանց համար լինում էր **յօրայ**, եւ նրանք իր համար **խորթք**[17]: Երկու կողմի զաւակներն իրար համար **մօրից եղբայր** ու **հօրից քոյր**[18] եւ այլն: Իսկ երկու կողմերի տոհմակիցները իրար հետ խնամիներ էին դառնում[19]:

Դարձեալ նոյն օրից նոր հարսը թողնում էր հայրենի ազգանունը եւ կոչւում էր ամուսնու տան կամ իշխած գաւառի անունով՝ ամուսնու հաւասար. այսպէս՝ «**Ռշտունեաց** տիկին» Համազասպուհի[20] (Դ դար). «Շուշանիկ աշխարհատիկինն **Աղուանից**[21]» (Է դար). «**Վասպուրականի** տիկին Հռիփսիմէ[22]» (Թ դար). «Ինձ Շուշանայ **Սիւնեաց** տիկնոջ[23]» (Ժ Դար) եւ այլն: Ուշագրաւ է Փաւստոսի մի տեղում գրածը, որտեղ Արշակի կնոջ համար ասում է «**Սիւնեաց** Փառանձեմ[24]» զուգէ ծագումը չեշտելու նպատակով, ինչպէս արել է մի ուրիշն էլ, «Մարեմ **Բագրատունի**՝ **Սիւնեաց** տիկին» կամ «Մարեմ **Սիւնեաց** տիկին[25]» (Թ դար): Եւ եթէ այստեղ խօսողները պատմիչներ են, պարագան տարբեր եւ աւելի որոշ է Կամսարական Արտաւազդի կնոջը, Է դարի վերջին, որ ամուսնու տապանագրի մէջ, կոչւում է լոկ հայրենի մականունով «Շուշանայ **Մամիկոնեանի**[26]». եւ կամ Օրբելեան Պածածի կնոջը, որի տապանագրի մէջ, գրած է նոյնպէս. «Այս է հանգիստ Դուղայ տիկնոջ՝ **Մամիկոնեան** ազգից[27]», ուր զուգէ երկուսն էլ ուզեցին յաւերժացնել իրենց վրայ, այդ փառաւոր անունը: Սակայն դրանք բացառութիւն էին, եւ մականուն փոխելը սովորական էր: Այսպիսով, Տրդատը, ամուսնանալով Աշխէնի դուստր՝ Աշխադարայի հետ, «հրամայում է գրել նրան **Արշակունի**[9]», որպէս ամուսնութեան բնական հետեւանք. եւ Պապի կենակիցը՝

---

1. **Հռմ.** **Ա**, 14: — 2. **Ծննդ.** **ԼԸ**, 13: — 3. **Ա Թագ.** **Դ**, 22: — 4. **Խոր.** **Գ**, **լբ**: — 5. **Յհ.** **Եզ.** **Քեր**: — 6. **Եփր.** **Ա**, 356. **Հռմ.** **Ա**, 15: — 7. **Ծննդ.** **Ա**, 31: — 8. **Տոբ.** **ԺԱ**, 19: — 9. **Մրկ.** **Ա**, 30: — 10. **Տոբ.** **ԺԳ**. 15: — 11. **Փրպ.** 148: — 12. **Փաւս.** 243: — 13. Նոյն՝ 12: — 14. **Ծննդ.** **ԺԹ**, 12: — 15. **Փիլ.** **Ճռ.** 187: — 16. **Խոր.** **Բ**, **խղ**: — 17. **Սբր.** 42: — 18. **Ծննդ.** **Ի**, 12 **Ղեւտ.** **ԺԸ**, 9: — 19. **Խոր.** **Բ**, **ԺԹ**: — 20. **Փաւս.** 178: — 21. **Կղն.** 46: — 22. **Արծ.** 234: — 23. **Օրբ.** 173: — 24. **Փաւս.** 155: — 25. **Հյպ.** 267: — 26. **Շիր.** 174: — 27. **Երզ.** 40: — 28. **Խոր.** **Բ**, **ձգ**:

Զարմանդուխտը, մի տեղ կոչւում է սոսկ «**Արշակունի** տիկին[1]»: Այսպէս ուրեմն, հայուհին ամուսնութեամբ, դառնում էր փեսայի տան անդամ. եւ եթէ ամուսինը **տէր** էր բերդի, կամ պալատի ու գաւառի, ինքն էլ **տիկին** էր՝ հաւասար կոչումով ու պատւով:

Բոլորովին բացառիկ է Զաքարեան մեծանուն Սարգսի դստեր՝ **Դոփիի**, պարագան, որ իր անձնական անունն իսկ տւեց իր սերունդներին: Մի սխալ յիշատակարան նրա ամուսնուն նշանակել էր Գրիգոր[2], որին հետեւեց նաեւ Հ. Ալիշանը[3]: Բայց Գրիգորը որդին էր. եւ 1244-ի մի յիշատակագիր, յետոյ յայտնւած, նրա կենակիցը դնում է Հասանին[4], որը ըստ իս՝ նրա ժամանակակիցն էր եւ նոյն անունով երկրորդը՝ տէրն էր Վերին Խաչէնի եւ զանազան բերդերի, որոնց մէջ եւ «Հանդաբերդոյ»[5], որ յիշւած Գրիգորի սեփականութիւնն էր[6]. ապացուցում է՝ թէ սա որդին եւ ժառանգն էր նոյն անձնաւորութեանը. «Գրիգոր՝ Հասանի եւ Դոփիի որդին[7]»: Հասանը պատերազմի ընթացքին վաղամեռիկ եղաւ, ըստ իր մօր վկայութեան[8], որի հետեւանքով Դոփը մնաց իշխանութեան վարիչը, մինչեւ որդու մեծանալը. այնպէս որ սրա Աւետարանի գրիչն ասում է «Գրիգորը՝ **Դոփի** որդին[9]», փոխարէն ասի Հասանի: Արդեօք ա՞յս պատճառով, թէ իր հօր կամ եղբայրների՝ Զաքարէի եւ Իւանէի, բարձր իշխանութեան եւ համբաւի պատճառով, իր անունը նաեւ մականուն դարձաւ նոյն տոհմի: Նախ իր որդու մի ականատեսը, յիշատակում է նրա որդու հանգստարանը «մեծ իշխանների **Դոփեան** ազգի[10]». յետոյ իր թոռը 1301-ին գրում է. «մենք Տէր Յովհաննէս **Դոփեանս**[11]». ապա 1333-ի տապանագրի մէջ յիշւում է՝ **Խաւշ**՝ «**Դոփենց** պարոն Վահրամի դուստրը[12]». 1384-ին վերջինի թոռը «**Դօփեանց** Հասան[13]»: Եւ իրենց տոհմն, ուղիղ գծով եւ բացառաբար հասնում է մինչեւ ԺԷ դարը. այնքան օրհնւած էր այդ տիկնոջ անունը:

4.- Ամուսնութեան մէջ օժիտն էլ մեծ կարեւորութիւն ունէր, որը զանազան ձեւեր ու կոչումներ ունէր: Հարսի կողմից փեսային տարած նւէրը **օժիտ** էր կոչւում[14]: «**Թախանձս եւ կտիրս**»[15], մէկը յունակերպ, որ խնդրւած պարգեւ է, եւ միւսը՝ կտրւած կամ սահմանւած տուրք, նոյնպէս ասւած հարսի կողմից բերւածին: **Պաշտառական**[16], որ կալւած կամ ուրիշ թանկագին բան էր, որ հայրը տալիս էր դստեր: Դարձեալ **վարձանք**[17] կամ «**զվարձանս եւ զօժիտս**»[18], որ փեսայի կողմից հարսի ծնողներին էր տրւած, որպէս վարձ ու նւէր, ընդունւած կնոջ փոխարէն: Մեզ մօտ սկզբից իշխողն, այս

---

1. **Փաւս**. 255: — 2. **Արց**. 206: — 3. **Շիր**. 175: — 4. **Խաչ**. 20: — 5. **Արց**. 196: — 6. **Անդ**՝ 290: — 7. **Խաչ**. 20: — 8. **Արց**. 204: — 9. **Անդ**՝ 290: — 10. **Անդ**՝ 290: — 11. **Անդ**՝ 408: — 12. **Սիս**. 148: — 13. **Հաւ. յշա**: — 14. **Զգօն**, 374: — 15. Ոսկ. Պօղ. Ա, 665. յն. լոկ **պրիկա** = **թախանձ**. — 16. **Ծնն. ԺԶ**, 10, յն. **փեռնէ** = բերեալ նւէր. Գ **Թագ. Թ**, 16. յն. **ապոստոլէ** = առաքեալ նւէր: — 17. **Սոփ. Ի**, 68: — 18. **Ծննդ. ԼԴ**, 12. յն. լոկ **փեռնէ**:

վերջինն էր. որով ասւում է թէ Արտաշէսը «շատ լալքա եւ բազում ոսկի է տւել, որպէս *վարձ» **Սաթենիկին*** առնելու համար[1]. եւ այս իմաստով Մամբրէն ամուսնութիւնը «տուրեւառիկ փոխանորդութիւն» է անւանում[2]: Աղջկայ այս տեսակ վաճառումը հօր կողմից , որ դեռ տեւելու էր մինչեւ Զ դարը, ատելի է երեւում յոյներին: Այնպէս որ Ցուստինիանոս Ա կայսրը. 536- ի հրովարտակով փորձեց խափանել հայ կանանց այդ «գնումը խօսնայրերից», պատուիրելով, որ աղջիկն օժիտ տանի իր հետ:

Բայց փեսային ււածի հետ, հարսի բերածն էլ մեզ մօտ Ե դարից յիշւում է. այսպէս Շահապիվանի 447-ի ժողովը կանոնում է, թէ երբ տղամարդը, ամլութեան պատճառով արձակում է կնոջը «նրա բերած կարասիները իր տուն» յանձնում է նրան[3]: Հետզհետէ աւելի է ընդարձակւում հարսի պաշտատականը: Թորոս Բ. Ռուբինեանն իր դուստր՝ **Ռիթային**, Լամբրոնի իշխանորդու՝ Հեթումի հետ պսակելու ժամանակ՝ «քսան հազար դեկան» պռոյգ է տալիս եւ այն հաչւում են փեսայի հօր՝ Օշինի պարտքի փոխարէն[4]: Մեծն Լեւոնն իր համանուն զաւակին՝ **Ռիթային**, Երուսաղէմի թագուհուն, օժիտ է տալիս քսան հազար ոսկի բիւզանդ սարակին[5]. եւ եղբօր դստեր՝ **Այծի**, ամուսնութեանը՝ Մսիս քաղաքը գաւառով հանդերձ[6]: Հեթում Ա-ն իր **Ֆիմի** դստեր՝ Սիդոնի տիկնոջը, տւեց քսանհինգ հազար սառակինեան բիզանդ ոսկի, կէսը դրամով, կէսն էլ թանկագին զարդերով, բոլորը դստեր սեփականութիւնը մնալու պայմանով[7]: Ոմն **Աւագ** տիկին, 1207- ին յիշւում է մի ձիթահանք, «որ իմ ծնողներից, ասում է, պսակի ժամանակ բաժինք էր հասել[8]», իրենց ընտանեկան վիճակի համեմատ: Խեթենիկ Արծրունին, ԺԳ դարում, իր դստեր՝ Սեֆեդին ազնւականի կնոջը տալիս է «Վարձք եւ բաժինք Աղթամարի կէսը[9]»:

Մխիթար Գօշը, լաւագոյն կերպով ճշտում է խնդիրը: «Տղամարդը ասում է, կնոջ անձին գին չի տալիս, բայց սակաւ իրեր, որ կոչւում են ***երես տեսնելու*** անունով» կամ ***«երեսատեսէք»***. եւ դա կնոջ սեփականութիւնն էր մնում, որպէս «իր անձի գինը»: Բացի այս «կինն իր բաժնով գալիս է տղամարդու տունը», որը լինում էր դրամ կամ անասուն, եւ որին մատակարար էր լինում տղամարդը[10]: Այստեղ խօսւում է ռամիկ դասի մասին, որովհետեւ ազնւատոհմ տիկնայք, տէր եւ տնտեսն էին մնում իրենց օժիտին, որով կարողացան բազմաթիւ ու կարեւոր բարիքներ գործել ինքնիշխանաբար, ինչպէս տեսնելու ենք: Սիւնի **Քուպղիդուխտը**, իր ամուսնուց մի կալւած է գնում (867-ին)[11]: Օժիտի մաս էին կազմում նոխ զարդեր եւ ազնւական գոհարեղէններ, ինչպէս **Ֆիմին**

---

1. *Խոր Բ, ծ*: — 2. *Մբր*. 42: — 3. *Շհպ. Ե*: — 4. *Սմ. Տրգ*. 96: — 5. *Սոկ*. 511: — 6. *Տրգ. Կկլ*. 275: — 7. *Ցչկ. Բ*. 471: — 8. *Բսմ. Հմ*. 173: — 9. *Արծ*. 262: — 10 *Գաա*. 289-90, 292: — 11. *Օրբ*. 160:

ունէր. եւ տոհմիկ **Խաւռազը** 1262-ին իր կնոջ **Խաթունի** «բաժինքը՝ ակն ու մարգարիտը» յատկացնում է բարեգործութեան[1]:

5.- Տիտղոսները, օժիտը եւ նրա սեփականութիւնը մի անգամ էլ վկայում են, որ հայ տիկինն իբրեւ աղախին չէր մտնում ամուսնու յարկի տակ, այլ իբրեւ «**կեանքի ընկեր եւ ունեցուածքի ընկեր**», - ինչպէս կոչում է Աւետիս գրիչը Լեւոն Բ-ի **կնոջը** համար[2], - աւետարանական հաւասարութեամբ, եւ լինելով միանգամայն տան տիրուհի, ինչպէս տեսանք նախորդ գլխում:

Ուշագրաւ են կոչումները, որ նրանք տալիս էին իրենց եւ ամուսիններին: Շատերը գործածում են **այր** եւ **կին** կամ **ամուսին** պարզագոյն բառերը. «Ես Սոփիա տիկին՝ Սմբատի **կինը**[3]» (936). «Ես Կատրանիդէ՝ Հայոց թագուհի ... **ամուսին** Գագիկի» (1008), եւ «իմ **ողամարդու**՝ Գագիկի հրամանով[4]»(1010). «Ես Շահանդուխտ՝ Գրիգոր թագաւորի **ամուսին**[5]» (1086). «Ես Նանա ... Աբբաս թագաւորի **կինը**[6]» (ԺԲ). «Ես Մամա թագուհի՝ **ամուսին** Հասանի ... ես եւ իմ **այրը**[7]» (1182): Ոմանք կիրարկում են **զուգակիցը**, որ հաւասարութեան գաղափարն էր ցոյց տալիս. «Ես՝ Շուշան, տիկնաց տիկին, **զուգակիցը** Գրիգոր իշխանի[8]» (994). «Ես Սեդա ... **զուգակիցը** Վահրամի[9]» կամ «ես Խուանդղէս՝ **զուգակիցը** աթաբակ Շահնշահի[10]» (1320): Կան տիկիններ, որ ունեն աւելի խոնարհական կամ աւելի եւս յարգելի ձեւեր, «Հրահատի իմ **տէրն**», ասում է Քուպղիդուխտը[11] (867). «**Իմ** երանելի **տիրոջ** Աշոտի» գրում է Սիւնեաց տիկին՝ Շուշանը[12] (910). «քրիստոսասէր **իմ գլխի** մեծափառ իշխանի՝ Գրիգորի» Ասփայ[13]. «**իմ արքայ**՝ Գագիկի» Մլքէ[14] (902). «**իմ** Սմբատ **թագաւորին**» Շահանդուխտ[15] (998): Իսկ տղամարդիկ կանանց հետեւեալ կոչումներն են տալիս. Գր. Եղուսարը՝ «Մարիամ իմ **կին**[16]» (636), Ներսէհ Կամսարականն՝ «Շուշանայ իմ **ամուսնու**[17]» (դր. է), որ ընդհանուր է. Վահրամը՝ «**զուգակից** իմ Թայիկ[18]» (1216). Լիպարիտն՝ «իմ **կենակից** Սոփիայի[19]» (1222), սակայ գործածուած. Հեթում Ա՝ «**կողակից** Զապէլ թագուհի[20]» (1253):

6.- Ինչ նպատակով ու ձեւով էլ հայուհին ամուսնական կեանքի մէջ մտնէր, գիտակցաբար կամ ոչ, իր կամ ծնողների կամքով, կարողանում էր համակերպուել իր նոր վիճակի հետ եւ բոլոր սրտով նուիրուել իր ամուսնուն: Իր ամենամեծ օժիտը եւ կամ պարգեւը, որ տանում էր նրա համար, զգաստութիւնն էր, որն այնքան խնամքով պահել

1. **Շիր**. 116: — 2. **Ազ. Հնդ**. 1910, Բ, 24: — 3. Օրբ. 190: — 4. **Շիր**. 133, 67: — 5. **Սսկ**. 296: — 6. Ջալ. Ա, 38: — 7. **Արց**. 204: — 8. **Շիր**. 52: — 9. Անդ՝ 113: — 10. Անդ՝ 62: — 11. Օրբ. 160: — 12. Նոյն՝ 173: — 13. **Արց**. 194: — 14. **Բզմ**. 1911, 128: — 15. Օրբ. 213: — 16. Շհխ. 591: — 17. Նոյն՝ 379: — 18. Նոյն՝ 405: — 19. Ջալ. Բ, 174: — 20. **Հւք. յշտ**.:

*ու մշակել էր հայրենի տան մէջ*[1]*: Բոլոր դարերի հայ կանանց համար կարելի էր կրկնել այն ինչ որ Արիստակէսը մի առիթով ասում էր իր ժամանակակիցների մասին՝ «Պարկեշտ եւ ողջախոհ կանայք, օրինաւոր ամուսնութիւնն մեծ թախանձանքով էին ընդունում*[2]*»: Այս իսկ գրաւականն էր նրանց անպայման հաւատարմութեան եւ սէրը ամուսնու հանդէպ:*

*Եղիշէի նկարագիրը գողտրիկ է այն տիկինների մասին, որոնց ամուսինները՝ ազնուականների մի բազմութիւն, Աւարայրի նահատակների զինակիցներից, դատապարտուած տասներկու տարի անցկացրին Ապար աշխարհի տօթին, մթութեան ու չղջիկների մէջ*[3]*, քաւելու համար սուրբ ապստամբութեան մեղքը: Նրանց կանայք, մարմնով հեռու, բայց սրտով ու մտքով նրանցից անբաժան էին ապրում: «Բազմաթիւ ձմեռների սառնամանիքը հալեց»,- երգում է քաղցրախօս պատմիչը,- իսկ Պարսից քարացած սրտերը, չկակղեցին: «Հասաւ գարունը եւ եկան նորեկ ծիծեռնակներ». գարունը յիշեցնելով նոյն տիկինների ամուսնութեան զւարթածաղիկ տարիները եւ ծիծեռնակներն նրանց քիւերի տակ, նկարագրելով նրանց ընտանեկան սիրոյ ջերմութիւնը, որով ապրել էին: «Կենցաղասէր մարդիկ տեսան եւ խնդացին», իսկ ձեր տիկինները «երբեք չկարողացան տեսնել իրենց անձկալիներին»: Երազում էին այն օրերը, երբ արագոտն բարակները սրարշաւ հասնելով, աւետում էին իրենց սիրեցեալների վերադարձը որսից, բեռնաւորուած երէներով ու թռչուններով: Նայում էին ճաշարանում նրանց թափուր թողած տեղերը եւ իրենց ճաշը արտասուքով էին շաղախում: Իրենց փափուկ ձեռները մխում էին աշխատանքի մէջ, ամոքելու համար իրենց սիրեցեալների աքսորի խստութիւնը: Որպէս «բազմաթիւ արձաններ կանգնել էին նրանց համար» իրենց ճակատին կրելով նրանց անունները, որ պատկանում էին միայն նրանց եւ նրանց համար էին ապրում*[4]*:*

*Այս մասին ուշագրաւ մի էջ է բացում մեզ համար Ղազարը: Մամիկոնեան Վահանի կռիւներից մէկում ընկաւ նրա հարազատը՝ Վասակը ու Սահակ Բագրատունի ասպետը: Մի օր էլ նենգաւոր մարդիկ լուր բերեցին թէ նրանք ողջ եւ թաքնուած էին վանքերում, եւ ասում էին որ իրենք նրանց տեսել էին եւ խնդրում էին որ իրենց ազատեն: Նրանց նպատակն էր բաժանել Վահանի զօրութիւնը: Միամիտները հաւատացին, մանաւանդ երկու անկելոց կանայք, որ այնուհետեւ հանգիստ չունեցան եւ օր ու գիշեր հանգիստ չտւեցին «ըստ սայթաք ու անհաստատ բնութեան տէր կանանց», ասում է Ղազարը, իր վանականի խիստ տեսութեամբ. եւ գրգռում էին իրենց*

---

1. *Աստ*՝ 14: — 2. *Լաստ*. 76: — 3. *Եղշ*. 150: — 4. *Նոյն*՝ 157-58:

ազգականներին ու սպասաւորներին, չտապել բերելու նրանց: Սպարապետը իզուր աշխատեց բացել նրանց աչքերը խաբէութեան դէմ, որ սէրը կուրացրել էր: Եւ տեսնելով կանանց «անդուլութիւնը, ճեպը եւ ժուժկալութիւնը որ նման բոցի տոչորում էին նրանց խորհուրդը եւ ոչ ոք չէր կարող ցած իջեցնել» պարտաւորուեց զիջել եւ իր տոհմակից Մուշեղ սեպուհին մի ընտիր գնդով ուղարկեց խաբեբաների հետ, որոնք ձմռանը երկար թափառումով անցկացրին, մինչեւ որ դաւի հեղինակը՝ Հազարաւուխտը, յանկարծ յարձակուեց կէս գնդով մնացած Վահանի վրայ եւ ստիպեց նրան փախուստի դիմել: Այնտեղ կիսամահ վիրաւորուեց նաեւ Յովհան Մանդակունի հայրապետը: Նոյն օրը վերադարձաւ Մուշեղը, ականատես լինելու հայ զինուորների ձախողումը[1], որի պատճառը հայուհու ջերմ ամուսնասիրութիւնը եւ պահանջելու համարձակութիւնն էր, որ յաղթեցին զօրավարի ամուր կամքին, որին պարսից ամբողջ զօրքը, չէր կարողացել նուաճել:

Սակայն չենք մոռանալու, որ քրիստոնեայ հայուհու համար մաքուր եւ ազնուական էր ամուսնական սէրը, երբ միացած էր Աստուածային ամենաազնիւ սիրոյ հետ: Այն օրւանից որ վերջինը չիջանէր փեսայի մէջ, բարեպաշտ հայուհու համար մեռնում էր սէր եւ ամուսին: Առաջինի Շուշանիկը իր ուրացող ամուսնուց՝ Վազգէնից, այնպէս զզւեց որ ասում էր, «ուրացողի մօտ ոչ միաւորուեցի եւ ոչ պղծուեցի»: Եւ երբ իրենց եպիսկոպոսը յորդորում էր նրան հաշտուելու «խստագոյն խօսքերով» պատասխանեց. «Եւ դո՞ւ ես այդ հրամայում միաբանել մի մարդու հետ, որ ամբարիշտ ու Աստծուն ուրացող է[2]». Նաեւ իր հօր սպարապետութեան օրով, տեսնուեցին կանայք, որ պատրաստուեցին սրով ու վահանով ընդունելու իրենց ուրացող ամուսիններին, որ վերադառնում էին Պարսկաստանից[3]: Բարեբախտաբար նրանց ուրացութիւնը կեղծ էր եւ Վազգէնը՝ ոչ հայ. իսկ բուն հայ ուրացողների կանանց մասին պատմութիւնը համր է, թէպէտ գուշակելը դիւրին:

7.-Հայուհու նուիրման եւ սիրոյն գիտէր լաւ փոխարինել իր ամուսինը, եւ երջանկացնել նրան: Արդարեւ շատ հին ու նշանաւոր է հայի ընտանեսիրութիւնը: Քսենոփոնը շնորհաց թւականից չորս դար առաջ, ներկայացնում է մեզ եւ տանում է Պարսից կիւրոս Բ. արքայի առջեւ, որտեղ ձերբակալւած գտնում էր հայոց Արմենոս արքան ընտանիքով, այսպէս կոչւած անձի եւ ազգի անունով: Կիւրոսը նրանից հարցնում է «կնոջդ փրկելու համար, ինձ ինչքան կը տաս»: - «Բոլոր ունեցածս», պատասխանում է Արմենոսը: - «Լաւ, իսկ զաւակների՞դ համար»: - «Դարձեալ, ինչ որ

1. Փրպ. 430-42: — 2. Մռփ, Բ, 20, 22: — 3. Աստ՝ ԺԵ, 2:

ունեմ»: Ապա դիմում է արքայորդուն. «Եւ դու Տիգրան, կնոջդ փրկելու համար, ի՞նչ պիտի տայիր»: Երիտասարդը, որ դեռ նոր էր ամուսնացել, պատասխանում է,- «Ես, Կիւրոս, պիտի վաճառէի կեանքս՝ գնելու համար կնոջս ստրկութիւնը».- «Ա՛ռ նրան, ուրեմն, քոնն է այն», ասում է մեծանձնութեամբ Պարսից արքան, նոյնպէս եւ հօրը: Տուն վերադառնալով, երբ խօսում էին Կիւրոսի չքեղութեան մասին. Տիգրանը հարցնում է կնոջը. «Կիւրոսը գեղեցիկ չթւա՞ց քեզ»: - «Բայց, Արամազդը վկայ, ես բնաւ նրան չնայեցի»: -«Ուրեմն, ո՞ւմն էիր նայում»: -«Նրան, որ ասում էր թէ՝ պիտի վաճառէր կեանքը, ինձ գերի չտանելու համար[1]»: Ահա հնութեամբ պատկառելի մի փաստ, հայուհու նւիրման վերաբերեալ:

Այս տեղեկութիւնը, աւանդական թէ պատմական, մեր առջեւ է դնում այս ճշմարտութիւնը՝ թէ հայի ընտանեսիրութեան համբաւը մեծ է եղել հնուց, շրջակայ ազգերի մէջ, եւ նրա այդ առաքինութիւնը շարունակում էր միշտ անխախտ մնալ, ինչպէս այն ցոյց է տալիս հետագայ պարագան, որի մէջ խօսւում է նաեւ մեր ազգի մասին:

Արշակ Բ-ն հայկական բանակով օգնութեան գնաց Պարսից՝ Յունաց դէմ, ճակատեց Մծբնի դէմ: Շապուհը ուշանում էր, «Ապա Հայոց զօրքը սկսեց անհամբեր դառնալ», ասում է պատմիչը եւ խնդրում էին չսպասել պարսիկներին ու զարկել, վերջացնել պատերազմը. «որովհետեւ լաւ էին համարում, մեռնել քան ապրել օտար երկրում», իրենց տներից ու ընտանիքներից հեռու: Արշակը ընդունեց եւ հայերը յարձակւեցին եւ խորտակեցին Յունաց բանակը: Շապուհը հասաւ եւ տեսաւ յաղթանակը, հիացաւ ու հրաւիրեց հայերին, Ասորեստան, նրանց մեծարելու եւ Արշակին իրեն փեսայ դարձնելու: Իսկ արքան ու բոլոր զօրքը, «տաղտապում էին հեռու ճանապարհ գնալ» կրկնում է պատմիչը, յարելով այս աւելի ազդեցիկ դիտողութիւնը. «Որովհետեւ, ամէն մէկը, **յանձնիւր տուն** յիւրաքանչիւր տեղի՝ **գործն բարուց Հայաստան մարդկան** անձկացեալ էին»: Սրա հետ Արշակի աներն՝ Անդովկ Սիւնին, խորհելով որ Շապուհի դստրի մօտ պիտի իր դուստրը անշուք դառնար, կաշառեց հայ աւագանուն, պարսիկ սուտ մի վկայ բռնեցին, Շապուհի նկատմամբ Հայոց արքայի միտքը պղտորեցին եւ գիշերով թողնելով, հեռացան, Պարսից բարեկամութիւնը փոխարինելով երկար թշնամութեան[2]:

Դեռ աւելին: Քաջ Վահանի ապստամբութեան ժամանակ իր հաւատարիմ ու առաքինի զինակիցների՝ Կամսարական Ներսեհի ու Հրահատի կանայք, գերի բռնւեցին

---

1. **Քսեն. Կիւր.** Գ, ա:— 2. **Փաւս.** 130-35:

*պարսիկների միջոցով, եւ բանտարկւեցին Բասենի Բողբերդ ամրոցում: Նրանք պարսիկներին խորհուրդ տւեցին, որ եթէ ուզում էք մեր այրերին նւաճել, նրանց ասել տւէք թէ «մենք խաղաղութեան մէջ ենք, ապա նրանց ինչ հրամայէք, կը լսեն ու կը կատարեն»: Եւ հպարտանում էին, որպէս պատիւ հայ ամուսնական սրբութեանը, թէ բոլոր հայերը գիտեն ու կարող են վկայել «որովհետեւ նրանք մեզնից բացի ուրիշ կին չգիտեն». եւ եթէ մեր մասին մի անպատիւ բան լսեն «նախատանքներից եւ ամօթից, մեղքերի եւ գարշութիւնից թողութիւն խնդրելով ըստ մեր օրէնքների, իրենց անձն աւելի են դնելու մահւան եւ ոչնչացման[1]»: Ընտանեկան պատիւ ու քրիստոնէական բարոյականութիւն. ահա հայ ամուսնութեան երկու մեծ հիմքերն, որոնց համար այր ամուսինը պատրաստ է մեռնել, նոյնիսկ ազնւականն էլ, որ մինչեւ իսկ, իր հարստութեան եւ ազատութեան մէջ մեծարում էր այդ առաքինութիւնները: Իսկ «ամենայն Հայոց» տեղեկութիւնը կամսարականների զգաստութեան, մի ապացոյց է, թէ ինչպէս հասարակութեան աչքը հետեւում, տեսնում ու մեծարում էր պարկեշտութիւնն ամէնի վրայ եւ մանաւանդ բարձր դասի:*

*ԺԲ դարի կէսին, Սասունի բիրտ լեռների վրայ ծաղկում էր փափկագոյն զգացումներով ճոխացած իշխանական մի տուն, նոյն գաւառի տէրերը, Վիգէն իշխանն էր՝ Ա Զորտւանէլի որդին, եւ քաջ Թոռնկայ Մամիկոնեանի թոռը, նոյն տեղի նախկին տիրոջ, որին պանծացնում էր Մտ. Ուռհայեցին. ամուսնացած մի Պահլաւունու հետ, որին «փեսայ» է կոչում Գր. Վկայասէրի[2]: Վիգէնը կենակից ունէր Մելքսեթին «Արծրունի ազգից», նրանց արքայական չիջած տնից, ուստի «թագաւորազն», միասին կազմելով սքանչելի ամուսնական մի յարկ, որոնց «ըստ հայրենի ազնւականութեան պատւին եւ ըստ աստւածային օրէնքների գեղեցիկ քաղաքավարութեան միմեանց նկատմամբ» վկայում է Արիստակէս՝ գրիչը, նոյն տիկնոջ Աւետարանի, աւելացնելով թէ «սուրբ եւ պարկեշտ ամուսնութեամբ մնալով միասին որպէս մի մարմին», ունեցան զաւակներ[3]:*

*Սրանց որդին էր Զորտւանէլ Բ, «ամենազովելին», գեղեցիկ, բարեպաշտ եւ ողորմած, որ պապի պէս փեսայացաւ Պահլաւունեաց, ամուսնանալով Ն. Շնորհալու եղբօր՝ Վասիլի (կամ Վասակայ) դուստր՝ Վանենէին, «որոնք միանալով միմեանց . . . սիրունք եւ սիրեցեալներ եւ ապրելով ըստ աստւածային օրէնքների», ծնեցին երեք*

1. Փրպ. 448: — 2. Ուռ. 130, 206-9: — 3. Հյշ. 391-93:

զաւակներ: Դժբախտաբար կարճատեւ եղաւ նրանց երջանկութիւնը, մահը խլելով առոյգ երիտասարդին սիրեցեալի գրկից[1]:

Նոյն Զորտւանէլի քոյրը՝ **Կատան**, ամուսնացաւ Դեգեաց գաւառի իշխանի՝ Շահինշահի, հետ: Գագիկ Բագրատունու ձեռքից 1046-ին նենգութեամբ խլած Անիի առաջին յոյն իշխանն եղաւ Կամէն կամ Կամենոս[2], որի հետ ժամանակակից եւ նոյնն է թւում մեր յիշատակագրին «Կամէն մեծն», որի որդին՝ Կատակալոսը, խնամի է դարձել Հայոց, ծնեց Գրիգորին, եւ սա մեր փեսայ՝ Շահինշահին, որ «ցանկալի» կեանքի ընկեր եղաւ Վիգէնի դստեր: «Սիրով համակրում էին միմեանց, բերկրանք էին զգում իրար տեսնելուց»: Սակայն նախորդների պէս «կարճակտուր եղաւ նրանց սէրը». անգութ մահն այս անգամ մթագնելով Կատայի արեւը[3]:

Ամուսնական գորովալի մի օրինակ է Դոփեան Բ Գրիգորի վարմունքը «փոքր Սիւնիքի տէր եւ պարոնը» եւ ուրիշ գաւառների, քրիստոնեայ եւ ազնիւ նկարագրի տէր մարդ, որի առաքինի զուգակիցն **Ասփան**, երբ 1311-ին վախճանւեց «կարճակեաց կեանքով», եւ թաղւեց Խադարի վանքում, իրենց ընտանեկան դամբարանի մէջ. իշխանը «նւիրեց նրա գերեզմանին բազմաթիւ ընծաներ», գիւղեր, այգիներ, անդաստաններ. զարդարում է մենաստանը «զանազան սպասներով եւ հանդերձներով», նրանց հետ պարգեւելով «նրա գերեզմանին» ոսկենկար կազմով մի Աւետարան էլ[4]: Սէր եւ ապացոյցներ արժանի իշխանական սրտի մեծութեան, որոնք ապրելու են նաեւ մահից յետոյ, վկայելով ամոլների մշտնջենական սիրոյն:

Նոյն գութն ու մեծարանքը տեսնում ենք նաեւ միջին դարու Տաշրաց կողմերն իշխող Մամիկոնեաններից Համազասպեաններ Ասլանբեգի կողմից իր կենակցի նկատմամբ: Դսեղի Ս. Գրիգորի մէջ 1245-ին գրում է նա՝ թէ «շինեցի երկու մատուռներ, մէկն իմ ամուսնու՝ **Մլքանայի** համար, եւ միւսն ինձ համար»: Նախ կնոջ եւ ապա իրեն. ի՛նչ նուրբ զգացում: Սահմանում է նաեւ տարեկան յիսուն դահեկան եկամուտ, նւիրելով նաեւ մի «մեծածախս Աւետարան՝ ոսկով, մարգարտով եւ պատւական ակերով զարդարւած[5]» արտայայտողն իր ոսկի եւ գոհար սրտի:

Հուսկ հայի ամուսնական գութը պատրաստ է կեանքը զոհելու սիրելիի համար, եթէ պէտք է: Վերեւում տեսանք կամսարական եղբայրների կանանց յայտարարութիւնն այս մասին, եւ որի գործնական օրինակն էլ պատմութիւնը պահել է մեզ համար: Երկու քաջեր՝ Գէորգ Ակեցին եւ Խոսրով Գաբայէլեանը, 891 թւին Վասպուրականի Աշոտ իշխանի եւ նրա տոհմակիցների հետ Բուղայի միջոցով ձերբակալւեցին, բանտարկւեցին

---

1. Հյպ. 393-94: — 2. Լստ. 43, 58: — 3. Հյպ. 494-95: — 4. Արց. 290: — 5. Ջալ. Ա, 108:

ու ճարտարութեամբ խոյս տւեցին: Եւ երբ տեսան, որ միւսները կապւած դէպի Պարսկաստան էին տարւում, եւ նրանց մէջ «իրենց կանանց եւ մանուկներին» նկատեցին, կիրճերի մէջ դարան մտնելով, յանկարծ սուր ի ձեռին յարձակւեցին թշնամիների վրայ, շատերին կոտորեցին, գերւածներից մէկ մասն իրենց ընտանիքների հետ ազատեցին ու ամուր կողմեր փոխադրեցին: Արաբները պաշարեցին նրանց, բռնեցին երկու քաջերին ու բերեցին Բուղայի առջեւ, որ ստիպեց նրանց փրկել իրենց կեանքն ուրանալով: Եւ այնտեղ Հայաստանն երկնքին երկու մարտիրոսներ պարգեւեց[1]:

8.- Մինչեւ այժմ նկատեցինք ամուսնութեան մէջ հայուհու համար նպաստաւոր մասունքը: Սակայն դրամի հակառակ երեսն էլ կայ, որ կարեւոր է տեսնելը, որպէսզի կատարեալ ծանօթութիւն ստանանք: Ամէն ժամանակ եւ ամէն ազգերի մէջ եղել են դժբախտ լծակցութիւններ, կենցաղական յատուկ պարագաների հետեւանք որոշների մօտ, եւ բարոյականի թուլութեան հետեւանքով ուրիշների մէջ. եւ որոնց վրդովեցուցիչ օրինակները, մեր պատմութիւնն աւանդել է մեզ, օրինակներ, որոնց մէջ հայ կինը կրաւորական ու տառապողի բաժինն ունի, սովորաբար: Տեսնենք նրանցից մի քանի ցայտունները:

Դ դարն է, հեթանոսութիւնից դէպի քրիստոնէութեան անցման շրջանը, ուր հին կրօնը դեռ մեծ մասամբ պահում է իր տիրապետութիւնն հայ բարքերի մէջ: Այդ դարից, ուրեմն, սկսում են, բայց այդտեղ չեն վերջանում, տարաբախտ ամուսնութիւնների ծանօթ օրինակները: Ակնարկեցինք Յուսիկի բռնադատ միութեան՝ արքայորդի Տիրանի դստեր հետ[2], որի անունն անյայտ է մնում: Պատանու խորշումը ամուսնութիւնից, խկոյն իր կապը հարսի հետ խզեց արքունիքի թշնամութիւնը չահելով: Յուսիկն իրեն ճգնութեան տւեց, իսկ լքեալ ու դժբախտ մանկահասակը շուտով վշտից դէպի գերեզման շտապեց: Իր ձախողւած միութեան պտուղ թողնելով երկւորեակներ՝ Պապը եւ Աթանագինէսը[3], եւ իր հետ թաղելով իր տան հակառակութիւնն էլ Յուսիկի դէմ, որ Տիրանը յետ գրաւելով հայրենի գահը բազմեցնելու էր Լուսաւորչի աթոռի վրայ եւ յետոյ սպանէր[4]:

Տիրանի յիշեալ զոյգ թոռները փորձանք դարձան նրա տանը: Սկզբում ակամայ սարկաւագ ձեռնադրւեցին՝ յետոյ Լուսաւորչի աթոռը գրաւելու նպատակով: Բայց «ստահակներն եւ չխրատւողները», նախընտրեցին զինւորական ասպարէզը եւ իրենց կեանքը կապեցին՝ - եթէ պատմիչը չի սխալւում - իրենց պապի երկու քոյրերին՝ Վարազդուխտի եւ Բամբիշայի հետ, սնապարծութեան մի կապ, ոչ սիրոյ: Այս պատճառով

---

1. Արծ. 156-57: — 2. Աստ՝ 29: — 3. Փաւս. 11-12: — 4. Նոյն՝ 29,32:

*իրենց ուխտը ծիրանազարդ ամուսինների հետ մոռացան շուտով եւ «բազում անառակութեան եւ անբարոյականութեան գնացին»: Մի օր էլ երբ նոյնպէս «բազում հատեալ յարբշռութիւն», զւարճանում էին իրենց համաբարոյ կանանց, վարձակների, գուսանների ու կատակների հետ՝ Աշտիշատի հայրապետանոցում, մի կայծակ ընկաւ սրբավայրի վրայ, որ պատմիչը պատուհասող հրեշտակ է համարում եւ զգետնեց այնտեղ երկու անառակներին, սարսափի եւ խուճապի մատնելով խրախճանակիցներին: Ամիսներով դիակները այնտեղ մնացին, որովհետեւ ոչ ոք չէր համարձակւում մօտենալ նոյն տանը: Լռութիւն է երկու տիկինների մասին, ինչպէս երեւում է, ընկղմած իրենց սրտի դառնութեան խորը: Աթանագինէսը Բամբշայի վշտին սփոփիչ թողեց մի մանուկ, որ Հայաստանի նորոգիչն ու փառքն էր լինելու[1]:*

*Մեծապէս ողբերգական եղաւ Սիւնեաց Անդովկ իշխանի դստեր՝ Փառանձեմի, ամուսնական կեանքը, «գեղեցկութեամբ եւ պարկեշտութեամբ» նշանաւոր[2], որ Արշակի եղբօրորդու՝ Գնէլի, հետ չնորհալի զոյգ էր կազմել: Փեսան բարեձոյն մի երիտասարդ էր, եւ իբրեւ Արշակունի սեպուհ առանձին բնակւում էր իր «դրամբն[3]» կամ պաշտօնեաներով: Ցոյժ սիրելի էր նախարարներին ու քաջավարժ էր զինւորութեան մէջ. այնպէս, որ ազատանին իրեն էին յանձնել իրենց զաւակներին կրթելու «զարդի եւ զէնքի[4]»: Նա չատ մօտ էր մեծն Ներսէսի սրտին: Ուրեմն, այսպիսի մի ամուսին ունէր Սիւնեաց օրիորդը: Սակայն, իրենց երջանկութիւնը չատ կարճ տեւեց: Երիտասարդի հօրեղբօրորդին՝ Տիրիթը, հրապուրւած հարսի անսովոր գեղեցկութեան, ուզեց ամէն գնով չորթել նրան: Սուտ վկաների մի խումբ վարձեց եւ խակ ու կասկածոտ Արշակի ականջին փչել տւեց, թէ Գնէլը խորհում է իրեն սպանել եւ յափշտակել գահը եւ իբր թէ բոլոր ազատանին դաւադրի հետ է: Արքան կատարելապէս համոզւած, նախ սկսեց հալածել երիտասարդին, եւ ապա մի ծուղակ պատրաստեց:*

*Նաւասարդի առիթով նրան կնոջ հետ հրաւիրեց Բագրեւանդ, մասնակցելու ազգային մեծագոյն տօնախմբութեան, եւ դրանով ցոյց տալու իր վստահութիւնը նրա հանդէպ: Գնէլը հաւատաց եւ հազիւ հասած, արքունի պահակները շրջապատեցին նրան, երիվարից տապալեցին, կապեցին ու տարան սպանելու: Դողաց Փառանձեմը եւ վազեց «եկեղեցու խորանը» ուր Ներսէսը մասնակցում էր առաւօտեան ժամերգութեան: Աղաղակելով գուժեց հայրապետին ասելով. Տէ՛ր հասիր, անմեղ ամուսնուս խողխողում են: Շփոթւեցին ամենքը, երգերը լռեցին եւ սուրբը հեւ ի հեւ ընթացաւ արքունի վրանը: Արշակը երբ լսեց, սամոյրը գլխին քաշելով, մտաւ կեղծ քնի մէջ:*

1. *Փաւս*. 43, 47-8: — 2. *Նոյն*՝ 116: — 3. *Նոյն*՝ 177: — 4. *Խոր. Գ, իբ*:

Ներսէսը բռնեց, ցնցեց նրան. բոլոր պերճախօսութիւնը թափեց՝ փոխելու նրա միտքը, բայց իզուր, նա չէր շարժւում: Եւ ահա հասաւ Երազմակ դահճապետը, աւետելով արքային՝ թէ Գնէլը մեռած էր: Այդտեղ մեծ պարթեւը փոխեց լեզուն եւ Արշակի գլխին սոսկալի անէծք տեղաց, որ իրեն յետոյ Անյուշ բերդը պիտի տանէր. ու դառնացած սրտով գնաց, հեռացաւ չարագործից յաւերժօրէ՛ն: Դաւն յետոյ յայտնւեց. Տիրիթը մահւամբ պատժւեց եւ Փառանձեմը հարկադրւեց փեսայի թագապսակ դահիճի հետ կապել իր կեանքը[1], որի դրւագները պիտի տեսնենք իրենց կարգին:

Սիւնեաց տէրը՝ Վասակը, որ յետոյ հայրենեաց մատնիչի սեւ անունը պիտի ժառանգէր, իր դուստրն ամուսնացրել էր Վարազվաղան տոհմակցի հետ: «Ըստ ոմանց լուրի», ասում է Ղազարը, երկու ամուսինները «մեծ ատելութեամբ» բնակւում էին իրար հետ. այնչափ, որ իշխանը «ծանր քէնով» էր նայում փեսային, եւ մտածում էր նոյնիսկ սպանութեամբ զաւակի վրէժը հետամուտ լինել: Սեպուհը չհանդուրժելով «աներոջ սաստիկ բռնութեանն», որ գործադրում էր մարզպանական իշխանութեամբ, թողեց ու փախաւ Պարսկաստան, հաւատքը ուրացաւ, եւ առաջին թելադրողն եղաւ պարսիկներին՝ հայերին մազդեզականութեան կոչելու գաղափարին: Յետոյ դիւահարւեց, ասում է, եւ այնպէս տարիներով տանջւեց[2]: Եթէ ստոյգ է այս տեղեկութիւնը, 451-ի ազգային մեծ ողբերգութիւնը պարտական ենք Սիւնեաց իշխանի դստերի ձախորդ ամուսնութեանն:

Բագրատունի Աշոտ իշխանապետի (ապա արքայ) դուստրը՝ **Սոփին**[3], 862-ին կոչւեց Վասպուրականի տիկնութեան, գրաւելով Աշոտ Գ-ի որդու՝ Դերենիկ Գ-ի հանգուցեալ կնոջ տեղը[4]: Տիկինը սահմանւած «համեստ եւ գեղեցիկ» բառերով[5], մեծ, ժուժկալ ու բարեգործ հօր զաւակն էր[6]. իսկ Դերէն՝ որդին էր աշխարհաշէն ու քաջարի, բայց միանգամայն գեղծաբարոյ եւ միայն մահւան անկողնում ապաշխարող մի ծնողի[7], որ Պարսկաստանի գերութեան մէջ ուրացողի անունն էլ ստացել էր, իր հօր օրինակով: Երկու ծառերի պտուղները համեմատ էին իրենց եւ Արծրունին - գրում է կեղծ Շապուհը - «կին սիրող» էր, այնչափ որ իր պարկեշտ ամուսնուն վիշտ պատճառելով, որը իրեն երեք սիրուն զաւակներ էլ պարգեւել էր, գնաց միացաւ Հեր կողմերում իշխող եւ իր մտերիմ արաբ Ապումսարայի գեղանի դստերի՝ **Կուլինարին**: Յաճախ էր գնում, երկար օրեր անց էր կացնում նրա մօտ ու վերադառնում, միանգամայն «իր կնոջը բաց թողնելով», այլեւս «նրան չէր սիրում»: Ի՛նչ հարւած Սոփիայի նրբազգաց սրտին:

---

1. Փաւս. 116-22: — 2. Փրպ. 107-15: — 3. կեղծ Շապուհ (64) զայդ կը չփոթէ Հրանոյշ քրոջը հետ: — 4. Արծ. 233 Շպհ. 64: — 5. Շպհ. 66: — 6. Յհ. կթ. 175: — 7. Հմմտ. Արծ. 118, 121-23, 177, 243-44. Շպհ. 50, 57-63:

Աշոտը իմացա՞ւ իր զաւակի այդ զրկանքը, կամ թէ խաղաղասէր լինելուն չուզե՞ց վրդովմունք առաջ բերել, պատմութիւնը լռում է: Նրան յաջորդեց որդին՝ Սմբատը, «գոռոզ, պատերազմող եւ մտաւոր կարողութեամբ զարգացած այր»- միչտ ըստ կեղծ Շապուհի,- որին քոյրը հասկացրեց ամուսնու անարժան ընթացքը, որ ամբողջ տարին գնում ու մնում է տարփածուի մօտ, այնտեղ կրելով Վասպուրականի հարստութիւնն էլ եւ անտեսելով իրեն ու որդիներին: Աղաչում էր հարազատին՝ «Թոյլ մի՛ տուր ինձ արհամարհի, որովհետեւ քո քոյրն եմ եւ ոչ մի ուրիշ տէր ունեմ»: Արքան սաստիկ տխրեց եւ խիստ մի յանդիմանութիւն գրեց Արծրունուն, ասելով թէ «ազատների բոլոր կանանց ապականել ես», յիշեցնելով Աստուծոյ երկիւղը: Դերենիկը «խիստ եւ բարկացող այր» յանդգնաբար պատասխանեց. «Դու ո՞վ ես, որ այդ ինձ ասում ես. իմ տան եւ իմ կեանքի տէրն եմ, որին սիրեմ նրան էլ կառնեմ. եթէ դու չես ցանկանում, ուղարկիր եւ քո քրոջը տար, եթէ ոչ ես նրան կուղարկեմ քեզ»:

Սմբատն անկարող լինելով նուաճել այդ խելառին, փորձեց գոնէ բաժանել նրանից արաբ ընտանիքը, նրանցից խստօրէն պահանջելով որ չընդունեն քեռայրին եւ եթէ չընդունի՝ սպանեն նրան: Ապումրւան Արծրունին, որ Դերենիկի որդու՝ Աշոտի, աներն էր, զգալով վտանգը, խրատեց խնամուն զգուշանալ հուլինարի տնից, «որովհետեւ չան բնութիւն ունեն» ասում էր: Դերենիկը նրա խոհեմ ձայնն էլ արհամարհեց. լուր ուղարկեց Ապումսարենց, թէ գնալու է նրանց մօտ ձմեռելու եւ բանտարկեց իր բարի յիշեալ խորհրդատուին, որ ներողամիտ հոգով նորից յորդոր յղեց նրան չգնալ դէպի Հեր «իժերի բոյնը, որովհետեւ չատ արիւն են այնտեղ հեղել». այլ եթէ ուզում էր, գնալ վայելել բանտարկւածի տան բարիքները: Վասպուրականի տէրը դարձեալ խուլ մնաց եւ մի գնդով գնաց հասաւ Հեր գաւառի դաչտին: Իր հոմանուհու եղբայրները՝ Ալին եւ Մահմէտը, պատրաստել էին դաւը, եւ մի մեծ գնդով իչխանին ընդառաջ եկան: Նրանց բազմութիւնից ուղեկից ազատանին կասկածեց եւ Դերենիկից խնդրեցին առաջ չգնալ: Նա կուրացած այլազգի կնոջ սիրուց, ձայն տւեց եւ մղելով երիվարը, միայնակ կտրեց անցաւ երեք վտակներ, մինչ զօրքը կանգնած մնաց հակառակ կողմը: Ալին մօտեցաւ իչխանին, ձախ բազկով փարւեց նրա վզին ու յուդայաբար համբուրեց նրան, մինչ նոյն վայրկեանին Մահմէտի նիզակը խրւում էր նրա կողքը: Վիրաւորւած խօլ Արծրունին փորձեց խոյս տալ եւ իր գնդին օգնութեան կանչեց, որը կանխեց իրեն եւ անապարեց փախուստի: Պաչարեցին Դերենիկին, նա ընկաւ դիտապաստ ու տարան դէպի Հեր: Այնտեղ իր վրայ միակ գթացողն եղաւ հուլինարը, որ գնեց նրա

մարմինն ու յղեց Հայոց աշխարհ[1]: Կենակցի ազնուական հոգին փոխանակ հրճուելու, ողբաց մոլորեալի մահը[2]: Այս ամէնը պատմում է կեղծ Շապուհը. նոյնպէս Ցհ. կաթողիկոսը. Արծրունին եւ իր շարունակողը[3], բայց սրանք իշխանի անպարկեշտ վարքը քօղարկելով: Իսկ Թովման այդ աղէտի ժամանակ դեռ կենդանի է համարում Աշոտ արքային[4]. մի խնդիր, որը կարօտ է ստուգման:

Եղան ուրիշ գեղծարարներ էլ, որոնք այդքան աղմուկ չստեղծեցին իրենց շուրջ, այլ իրենց դատախազը եղաւ պատմութիւնը, եւ ոմանք իրենց ուխտազանցութիւնը կենդանի յիշատակներ էլ թողեցին: Այսպէս յիշեալ Դերենիկի հայրն՝ Աշոտն, որին վերեւում ակնարկեցինք, եւ իր գործակից միւս իշխաններն ամբաստանւում են Թովմայի կողմից թէ ապրում էին «անառակութեամբ եւ հարբեցողութեամբ, խառն անկողնով եւ պղծութիւններով[5]». բոլորն էլ անհաւատարիմ: Աղւանի կողմից իշխող Բագրատունիներից Աբասը, Կիւրիկէի որդին, տասնուեօթ տարեկանում ամուսնացաւ Զաքարեան Նանայի հետ, եւ երկու տարի յետոյ մեռաւ, թողնելով «ստնդեայ մի մանուկ» (Աղսարթան) օտար կնոջից[6] եւ որին թւում է ներւած – քան թէ անտեղեակ մնացած – մեծահոգի թագուհին, դատելով իր գորովալից արձանագրողից, որ տեսնելու ենք[7]: Նոյն տիկնոջ եղբօր՝ Իւանէի որդին ու յաջորդն՝ Աւագը, իր ամուսին ունենալով Գոնցային, որ իր մահից յետոյ դեռ ապրում էր, թողեց «մի դուստր երեխայ, եւ պոռնկութիւնից մի որդի երեխայ[8]» (Սահիպ Դիւան): Մեծն Լեւոնի հօրեղբայրը՝ Մլեհը, նոյնպէս թողեց Գորգ անունով ապօրինի մի զաւակ, որ հօր պէս գոռոզ ու պատերազմիկ գրաւել էր շատերի սիրտը: Լեւոնն, որ անորդի էր, կասկածելով թէ նա կարող էր յափշտակել գահը, նրա աչքերը խաւարեցրեց[9], դարւայ բիւզանդական դժնդակ սովորութեամբ:

Եթէ մեծ մասամբ արք եղել են հաւատարմութեան դրժողները, ցանցառաբար – չեղագիր եմ գրում բառը ի պատիւ հայուհուն – կանայք եւս գտնւում են, նոյնիսկ շատ բարձր դասից, որոնց դէմ, սովորաբար, իրենց պատւախնդիր ամուսիններն են ծառացել: Մեծն Տրդատի որդին՝ Խոսրովը, թագաւորութիւնն սկսեց պատերազմներով եւ երբ խաղաղութիւնը հաստատւեց, անձնատուր եղաւ որսասիրութեան, որ ժամանակի զինւորական ու գովելի զբաղումներից մէկն էր պարսիկների ու հայերի մօտ[10]: Ընդարձակ որսանոցներ շինեց եւ նրանց մօտ էլ մի ապարանք որտեղում «կայր ի

---

1. Շպհ. 64-71: — 2. Աստ՝ ԺԷ, 1: — 3. Ցհ. ԿԹ. 178. Արծ. 255-57, 295-97: — 4. Արծ. 257: — 5. Նոյն՝ 243: — 6. Կիր. 72: — 7. Աստ՝ ԺԱ, 7: — 8. Կիր. 181: — 9. Տրգ. Կիլ. 302-3: — 10. Վահան Մամիկոնեան՝ Պարսից չնթող վատ հայերը Նիխորի առջեւ կ՚որակէր «լքեալք յորսոյ» (Փրպ. 511):

հանգստի» հայ աւագանու հետ[1]: Եւ երբ ինքը երէների որսով էր զբաղւած, իր կինը, որի անունն ու տոհմը ծածկել է պատմիչը, գուցէ ամօթից, Արտաշատ ոստանի մէջ սրբակեաց Աշխէնի գահի վրայ նստած, հոմանիներ էր որսում[2]: Երեւում է, թէ Խոսրովը անտեղեակ էր եւ նրա անունը խնդրի մէջ չկայ. մանաւանդ, որ կինը «գաղտնի» էր գործում: Թէ մինչեւ ուր՞ղ հասցրեց յանդգնութիւնը, յետոյ տեսնելու ենք[3]:

Նոյն ցաւով վարակւեց մեծն Լեւոնի ամուսինը՝ **Զապլունն** էլ, հայացած մի օտարուհի: Անտիոքի Բոհեմոնդ Գ իշխանի աներորդու դուստրը, որի վարքի մասին Յովհաննէս կաթողիկոսը չար լուրեր լսելով, գնաց արքայի ականջին հասցրեց: - Այս դէպքը պատահում էր 1205-ին: - Լեւոնը, որ «չատ զգացումային» էր խառնւածքով, հրամայեց իսկոյն կնոջ մերձաւորներից չատերին «ոչնչացնել» իբրեւ մեղսակից եւ թագուհուն սաստիկ գանակոծեց ու «ուզում էր անմիջապէս սպանել»: Իր քեռու որդին՝ Կոստանդինը, միջամտեց, կիսամահ ազատեց նրան արքայի ձեռքից եւ տարւեց բանտարկւեց Վահկայի բերդի մէջ, ուր եւ վախճանւեց[4], այդպէս չարաչար քաւելով իր յանցանքը եւ գահը թողնելով (1210ին) ուրիշ առաջինի մի տիկնոջ՝ **Սիպիլին**[5] (կամ **Զապէլին**[6]), որ դուստրն էր Կիպրոսի Ամորիկ թագաւորի եւ կեանք տւեց մեծ թագուհուն՝ **Զապէլին**:

Մեր թագուհիների մէջ երրորդ գայթակղութիւնն եղաւ Լեւոն Դ կինն՝ **Ալիծիկը**, որ ազգով հայ եւ Հեթում պատմիչի թոռն էր: Հաւանօրէն ազդւած հօր (Օշինի) եղերական վախճանից, որին ենթարկեց Լեւոնը[7], զայրացաւ ամուսնու դէմ ու անհաւատարմութեամբ ուզեց վրէժը լուծել ու «խառնակ վարքի» տէր երիտասարդուհու համբաւն սկսեց ստանալ: Լեւոնը լսեց Կոռիկոսի սեւանուն իշխանի դստեր անվայել ընթացքը, զայրացաւ առիծային բարկութեամբ: Եւ այն սուրը, որ պատժել էր նրա հօրը, խաղաց նաեւ չարաբաստիկ Ալիծի վրայ: Յետոյ 1331-ին Լեւոնն այդ հայուհու պսակը դրեց Կիպրոսի Հենրիկոս Բ արքայի այրիի՝ **Կոստանդիայի** գլխին, որ Սիկիլիայի Փրեդերիկ արքայի դուստրն էր, «համեստ եւ իմաստուն կին[8]»: Եւ ինքը քանմէկ տարեկանում վախճանւեց, իր կրկին ամուսնութիւնից ոչ մի ժառանգ չթողնելով[9]:

Եթէ արդար ու կարեւոր է ամուսնական պատւի նախանձը,- ոչ անչուշտ իր ծայրայեղ եւ կոպիտ արտայայտութիւնների մէջ,- նոյնը նաեւ քարոյական հիւանդութեան երեւոյթի ներքեւ ամէն ժամանակ եւ ամէն տեղ, յաճախ մտել է

---

1. **Փաւս**. 18, 20: — 2. **Նոյն**՝ 8: — 3. **Աստ**՝ **Թ**, 2: — 4. **Տրգ. կիլ**. 298: — 5. **Անդ**՝ 304: — 6. **Սմ. Տրգ**. 117: — 7. **Աստ**՝ **հմ**. 15: — 8. **Սմ. Տրգ**. 132: — 9. **Դրդ**. 27-31. **Սամ**. 158:

ընտանեկան յարկից ներս, առանց իրաւացի պատճառի, եւ դառնացրել է ամուսնական կենցաղը: Այդ հիւանդութիւնը մեր ազգի մէջ էլ պիտի լինէր անշուշտ ու կար: «Ոմանք մտքի պակասութիւնից եւ Աստուծուն աներկիւղ լինելուց», գրում է Մանդակունի հայրապետը, թէպէտ չէին մեղանչել հաւատարմութեան դէմ, բայց իրենց համարձակ վարմունքով եւ տուած կասկածներով «չարաչար նախանձով եւ թեթեւամիտ ցոփութեամբ» մաշեցնում էին իրենց կենակիցը, ուստի անպակաս էին մեղք եւ խռովութիւններ, քէն եւ աղաղակ. եւ երկուսին էլ վայ է կարդում իմաստուն բեմբասացը[1]:

9.- Ոչ թեթեւ մի վէրք, որ եղել է հայուհու ամուսնական կեանքի մէջ, **բազմակնութիւնն** էր, որ ամէն ազգերի մէջ նախանձի, ատելութեան ու վշտի աղբիւր է եղել նոյն յարկի տակ բնակող կանանց համար: Մեզ մօտ էլ գտնուեց այդ սովորութիւնն՝ սկսելով հեթանոսական շրջանից, թէպէտ շատ հնուց իսկ, ամփոփ սահմանի մէջ եւ մեծամեծներին յատուկ: Քսենոփոնը (401-ին Ն. Ք) միայն իր յիշած հայ թագաւորին ու արքայորդուն[2] ներկայացրեց, ինչ որ սակայն չի հերքում գոնէ հարճակալութիւնը դրա հետ: Բայց յետոյ յիշւում է բուն բազմակնութիւնն արքունիքների մէջ: Այսպէս Խորենացուն ծանօթ են - եւ հաւանական է- Արտաշէսի «կանայք եւ հարճերը[3]»: Նոյնպէս մեծն Տիգրանն ունէր իր կանայք, որոնց երկուսի անունները յայտնի են՝ **Կլէոպատրա** եւ **Զոսիմէ**[4]: Յիշւում է նաեւ Բակուր նախարարի հարճը՝ **Նազինիկն**[5], եւ այլն: Քրիստոնէութիւնը չյաջողեց բոլորովին ջնջել այս սովորութիւնը բարձր դասից, որը հիմնեց միակնութիւնը եւ որի հակառակ Ե դարում Պարսկաստանը հայերից պահանջում էր, որ «փոխանակ մի կնոջ (որ սովորական էր) շատ կանայք ունենան[6]»: Ի հեճուկս աւետարանական օրէնքների ու սովորութեան, պակաս չեն, մեզ մօտ, հարճակալութեան եւ մերթ բազմակնութեան դէպքեր եւս ամէն դարերի մէջ, բնականաբար զգայապաշտ մարդկանց կողմից:

ա. Նախ մեր եկեղեցական օրէնքն թոյլ էր այս խնդրի մէջ: Շահապիվանի ժողովը 447-ին խօսում է ոչ պսակով, այլ վարձով բռնուած ամուսինների մասին, որոնք կարող էին նաեւ վաճառուէին կամ կենակցութիւնից անցնել աղախնութեան: «Եթէ **կին** ոք **յառնէ ելանիցէ**, կըսէ, կալցին եւ անդրէն **յայլ այր** տացեն. եւ մանաւանդ զոր **վարձանօք իցէ վարձեալ** եւ ոչ բոզաբար», այսինքն գնուած է, որով եւ աւելացնում է «թէպէտ եւ **վաճառեսցէ**, թէպէտ եւ **յաղախնութեան կալցի** եթէ կամք իցեն (գնողին), հոգեւոր եւ

1. Մնդ. 161: — 2. Անա՝ 38 եւ Ե, 1: — 3. Խոր. Բ, կ: — 4. Պլտ. Գ, 558, Դ, 303: — 5. Խոր. Բ, կգ: — 6. Եղշ. 40:

*բարի խրատու եւ սիրով կալցի[1]»: Այդ անկարգութեան մէջ «հոգեւոր խրա՛տն» էլ հեչտութեամբ մտնում է. ի՛նչ մտայնութիւն: Միայն տեսնում է, որ այդտեղ բազմակնութիւն չկայ, -գոնէ յիշւած չէ- այլ փոխանակ ամուսնացեալ ամուսնու, վարձւած մի հարճ է պահւում: Արձագանքը թւում է տիրող մի սովորութիւն, - որը թոյլատրում էր հռոմէական օրէնքը, եւ մինչեւ հիմա պարսիկների մօտ մնացել է.- որը ժողովը չկարողանալով կամ չհամարձակելով ջնջել, ջանք է անում նրա անիրաւ մասերն կնոջ օգտին մեղմել:*

*Անբարոյութիւնը չարունակւում ու ընդլայնւում է, եւ օրէնքներն էլ դրա դէմ յաճախակի է դառնում: Այսպէս Մխիթար Գօշը արգելում է քրիստոնեայ արքաներին «հեթանոս թագաւորի օրէնքով հարճեր պահել[2]»: Վարդան, Յովհան ու Մովսէս երզնկացի վարդապետները դատապարտում էին նրանց, որ երկու կին ունէին, կամ օրինաւոր կնոջ հետ մի ուրիշ էլ պահում էին[3] իբրեւ հարճ: Վերջապէս Սսոյ 1342-ի ժողովն արեւմուտքի ամբաստանութեան ի պատասխան, ասում էր թէ բազմակնութիւն չկայ հայերի մէջ. «այլ չատ կին եւ պոռնիկ եթէ անգամ պատահի, միանգամայն օրէնքից դուրս է[4]»:*

*բ. Ինչ ձեւով էլ լինէր, մեզ մօտ բազմակնութիւն կար եւ նրա գործնական օրինակներն էլ ունենք: Մեր ազնւականութիւնը դեռ նոր ընդունած Յիսուսի կրօնը, Տրդատի եւ Գրիգորի բռնութեան ներքոյ, չեն ուզեցել թողնել իրենց հարճերը եւ այդ պատճառով ընդդիմանում են արքայի կամքին, «կանանց եւ հարճերի կամքով էին գնում», որի հետեւանքը լինում է Արչակունու հրաժարումը գահից եւ թունաւորումը[5]: Յաջորդ սերունդների մէջ նւազեց հարճակալութիւնը, բայց չանհետացաւ: Ս. Յուսիկի որդին՝ Պապը, իր կնոջ հետ «մի հարճ» եւս ունէր Տարօնից, որից Վրիկ անունով մի զաւակ թողեց[6]: Անցնելով դէպի միջին դար, Ռուբինեան Ա Թորոսի որդին՝ Լեւոնը, իր երկու զաւակների հետ «ոմն հարճից ունէր Ռուբէն անունով (մի զաւակ)», որ հօր հետ գերի է գնում Յունաստան[7]:*

*Աւելի ուչագրաւ է Հեթում Ա թագաւորի պարագան, որ ըստ Կիլիկեան Տարեգրի հարճերի խմբակ էր պահում: Եւ երբ 1272-ին վախճանւեց մէկը «Հեթում արքայի* ***հարճերից Մարիա*** *անունով, իմայելացիների սեռից»,- որ անունից դատելով քրիստոնեայ էր դարձել, արքայի աչքը մտնելու համար անչուտ,- միաբանելով իր ազգակիցների ոմանց հետ, խորհեց թունաւորել նրա որդուն ու յաջորդին, առաքինի*

---

1. Կան. Զ:— 2. **Դատ.** 305: — 3. Վրդ. **Շնք.** Յհ. եզ. **Խր.** Զ. Մ. եզ. **Խր**: — 4. Մնս. ԻԵ, 1265: — 5. **Խոր.** Բ, ղբ: — 6. Փաւս. 48-9: — 7. **Վաղ. Ռբ.** 215:

*Լեւոն Բ. որ երեւում է թէ հօր հարճերից երեւս դարձրեց եւ սպասում էին քինախնդրութեան յարմար ժամին: Բարեբախտաբար տասս տարեկան մի մանուկի միջոցով դաւը յայտնի դառնալով ազատւեց արքան, առանց փոխարէնը վրէժ լուծելու նրանցից[1]: Եւ չենք մոռանալու, որ Հեթումին ոչ միայն իր դուստր՝* ***Ֆիմեայի*** *Աւետարանի գրիչը գովում է, թէ «իր բարեպաշտութեամբ գերազանց գտնւեց բոլոր թագաւորներից[2]», այլ գործով էլ փաստեց այդ: Օրինակ իր որդիների սուգը մի մենաստանում հոգեւոր մտածմունքի մէջ անց կացրեց[3]: Եւ երբ որդին՝ Լեւոնը, վերադարձաւ գերութիւնից, գահը նրան թողնելով, ինքը թափառում էր վանքերում աղօթելով ու պահք պահելով, իսկ նախքան մահը կրօնաւոր եղաւ Մակար անունով[4], եւ նոյնիսկ «դասւեց սրբերի մէջ» ասւում է[5], գուցէ պատարագի մէջ նրա յիշատակութիւնը[6] չփոթելով տօնախմբութեան հետ:*

*Պէտք է եզրակացնել, որ այդ հզօր արքան պարզապէս թոյլ սեռի հանդէպ թոյլ էր, գոնէ երիտասարդ տարիներում: Իսկ ի՞նչ էր անում նրա պարկեշտ ու ծիրանածին կենակիցը՝* ***Զապէլը****: Նշմարում եմ լռութեան մի քօղ է փռւած այդ տիկնոջ կեանքի վրայ, հակառակ ուրիշ ժամանակակից ազնւական կանանց եւ թագուհիների մասին պերճախօսութեանն, որից ինքը՝ Հեթումը, չի հրաժարւել: Ոչ մէկ մագաղաթի կամ քարի հետ է կապել Լեւոնի այդ զաւակը իր անունն. եւ իր կառուցած հիւանդանոցի կարճ վերնագիրն անգամ մի ուրիշից է[7], շատ հաւանօրէն իր մահից յետոյ: Հեթումի տան սեմից դառնութեամբ ներս մտած[8], կարծես այլեւս չուրախացաւ եւ աշխարհից խորշելու զգացումը միշտ սրտի մէջ պահելով հանդերձ, լիովին կատարեց թագուհու, ամուսնու եւ մօր պարտականութիւնները: Ընկերութիւնից ուզեց անտես մնալ, իր ցաւերի թեթեւացումն թշւառների ցաւերը ամոքելու եւ իր հոգու հաւատարիմ փեսայի հետ անդուլ խօսակցութեան մէջ որոնելով[9]: Խորհում եմ, թէ հաւանօրէն Հեթումի հարճերն էին, որ այդ ազնւական հոգին թաղեցին իր տխրազգաց լռութեան մէջ. ամուսինն ուշ է զգաստացել, քանի որ քսան տարի առաջ Զապէլը թողել էր հեծութեան աշխարհն՝ 37 տարեկան առոյգ հասակի մէջ:*

*գ. Բացի հարճակալութիւնից, իսկական բազմակնութեան կամ աւելի ճիշտ երկակնութեան օրինակներ էլ պակաս չեն մեզ մօտ, թէպէտ եւ ցանցառ: Վերադառնանք նշանաւոր Դ դարը, ուր թողեցինք* ***Փառանձեմին*** *այրի առաջին ամուսնուց եւ կենակից*

---

1. ***Տրգ. կիլ.*** 365: — 2. ***Հւք. յլա.*** 1263: — 3. ***Հյպ.*** 474: — 4. ***Մաղ.*** 48 ***Փամ. Բր.*** 222: — 5. ***Դրդ.*** 16: — 6. ***Աստ՝ Է***, 4: — 7. ***Աստ՝ ԺԱ***, 4: — 8. ***Աստ՝*** 59: — 9. ***Աստ՝ Ը***, 1:

*դառնալով Արշակին*[1]*։ Ինչպիսի՜ դժնդակ հարկ տարաբախտ մանկամարդի համար, բռնել իր սիրած եւ անմոռանալի Գնէլի արեամբ շաղախուած այդ ձեռքը։ Բայց հրամայողը թագաւորն էր եւ իր հօր չահադէտ կամքը, եւ պէտք էր հնազանդել։ Սակայն Արշակունու ակնակուռ պսակը չկարողացաւ ամոքել նրա դառնացած հոգին, որ ատե՛ց Արշակին, ոչ միայն ներքնապէս այլեւ արտաքուստ, առանց ակնածելու նրա թագից։ Հայուհու տիկնութիւնն ա՛յդչափ համարձակութիւն էր տալիս իրեն կենակցի դէմ։*

*Բայց Արշակն իմացաւ լուծել իր անարգութեան վրէժը, մի կնոջ համար ամենաասարտուցիչ եղանակով։ Բիւզանդիոնից երկրորդ ամուսին՝* ***Ոլոմպին*** *բերելով, նստեցրեց նրա մօտ. ըստ Փաւստոսի «կայսերական տոհմից», եւ ըստ Ամմիանոսի կայսերական թիկնապահների պետ՝ Աբլաւոսի դուստրը, որ վաղամեռ Կոստաս կայսեր նշանադրուածն էր*[2]*։ Եւ Արշակը, աւելացնում է մեր պատմիչն, «նրան ուժգին սիրով սիրեց եւ նրանով գրգռում էր առաջին կնոջ նախանձը», որ մռայլւեց, փոթորկւեց նորեկ մրցակցի դէմ։ Հելլենուհին զգաց, որ լաւ տեղ չէր ընկել եւ բոլորովին զգոյշ էր ապրում Փառանձեմից։ Բայց խորամանկ Սիւնեցին հնարքը գտաւ ազատւելու հակառակորդից,- թէ ի՞նչպէս, յետոյ*[3]*,- վերստանալու իր միահեծանութիւնը։ Հաւանօրէն Արշակունին չիմացաւ նրա կատարած դերն այդ գործի մէջ եւ Ոլոմպիայի կորստեան վիշտը մեղմացաւ իր գահաժառանգ՝ Պապի, գալուստով, որ Փառանձեմը պարգեւեց նրան*[4]*, աւելի ամրանալով իր գահի վրայ։*

*Բաւական վրդովւեց նաեւ Սիւնեաց պատմիչի հօր՝ Օրբէլեան Տարսայիճի ամուսնական կեանքը։ Ընդարձակ մի երկրի իշխան, քաջ պատերազմիկ, իր կենակիցն էր Սիւնեաց կողմերն իշխող «խամայելացի» Սաղունի դուստրն՝* ***Արուզ խաթունն****, որ քրիստոնեայ էր դարձել «երեւելի հաւատով եւ երկիւղած Աստծուց», եւ կեանք էր տուել նոյն պատմիչ եպիսկոպոսին եւ երկու ուրիշ որդիներին*[5]*։ Հաւանօրէն քաղաքական շահի պատճառով, Տարսայիճը մի օր Վրաց Դաւիթ (Ե) թագաւորի հետ միասին, գնաց Ներքին Խաչէնի Աթաբակ իշխանի մօտ*[6]*, համոզեց եւ նրա քրոջը՝* ***Մինա խաթունին****, կնութեան առաւ «առաջին ամուսնու կենդանութեան ժամանակ»։ Զգիտեմ, բարեպաշտութեամբ երեւելի Հասան Ջալալի զաւակներն ի՞նչպէս զիջեցին այդ անկարգութիւնը, որի դէմ մինչեւ իսկ Տարսայիճի որդին բողոքում է, թէ «որ ոչ օրէնքն եւ ոչ եկեղեցու վարդապետներն ընդունեցին*[7]*»։ Հարուածն՝ Արուզիի համար խիստ էր, որ յայտնի չէ, իշխանը նրան թողե՞ց թէ միասին պահեց, որովհետեւ տապանագրի մէջ «Տարսայիճ*

---

1. *Աստ՝* 43։ — 2. *Ամմ. Բ*, 11։ — 3. *Աստ՝ Թ*, 2։ — 4. *Փաւս.* 122-23։ — 5. *Օրբ.* 305։ — 6. ***Արդ.*** 175։ — 7. *Օրբ.* 310։

իշխանի ամուսին» է: Բայց մահը արագացրեց զրկելով վշտի դարմանը, եւ Մինան անկանոն վիճակից դուրս գալով, մի որդու եւ երկու դուստրերի մայր եղաւ:

Քաղաքական պարագաներն էլ երբեմն հային բազմակին էին դարձնում: Աւագ Զաքարեանը՝ որդին եւ յաջորդն Իւանէ սպասալարի, 1240 թւին թաթարների խանի մօտ գնաց՝ յայտնելու իր հպատակութիւնը եւ հաճելի եղաւ նրան, որ ըստ իրենց սովորութեան «թաթար ազգից նրան կին տւեցին[1]», անշուշտ տարբեր իր **Գոնցա** կենակցից, որը ծանօթ է մեզ[2]: Նմանապէս երեւելի Սմբատ սպարապետը, ամուսին ունենալով **Թեֆանոյին**, որը երեք զաւակների մայրն էր, որ յիշւում են 1269-ի մի յիշատակարանում[3], երբ 1248-ին թաթարների Մանգու խանի մօտ իբրեւ դեսպան գնաց, խանը պատւելու համար նրան պարգեւեց մի թաթարուհի, որին ընդունեց եւ որից ծնւեց Թաթար Վասիլն, որը բաւական դեր ունեցաւ Կիլիկիայի մէջ ու կարճ կեանք ունեցաւ[4]: Լեւոն Բ արքայի որդին՝ Սմբատը, նախապէս ամուսնացած էր **Զապէլի** հետ[5], 1296-ին Հեթում եղբօրից յափշտակեց գահը, ինքզինքը թաթարների խանին ներկայացրեց եւ նրա ազգականուհուն իր երկրորդ կինն ընդունեց[6]: Այսպէս այդ երկու կին ունեցող ազնւականների համար քաղաքական հաշիւներն աւելի զօրաւոր էին քան Աւետարանի օրէնքը: Իսկ թէ ի՞նչ կերպարանք ստացաւ իրենց օրինաւոր ամուսինների ներքին կեանքը, Փառանձեմի օրինակը քիչ թէ շատ մեզ գուշակել է տալիս նրանցն էլ:

10.- Հայ կնոջ սրտին մի ուրիշ խոց եղաւ **ապահարզանի** գոյութիւնը նաեւ յետ քրիստոնէութեան, որի աղբիւրը՝ հեթանոսութիւնը, ցոյց է տալու մեր պատմութիւնը, որ որջացած էր մնում, ասացինք, Դ դարի Հայաստանի մէջ եւ զեղծաբարոյ Արշակունիների պաշտպանութիւնն էր վայելում: Սրա համար բաւական է յիշել, հետեւեալ յստակ վկայութիւնը: Մեծն Ներսէսի մահւանից յետոյ, գրում է Փաւստոսը. «այնուհետեւ ամէն մարդ հրաման եւ համարձակութիւն ստացաւ թագաւորից (Պապից)

1. Կիր. 142: — 2. Աստ՝ 45: — 3. Հւք. յշտ: — 4. Սիս.72: — 5. Անդ՝ 371: — 6. Զմչ. Գ, 296:

*ամուսիններն իրենց կանանց թողնեն. մի այր տասը կին էր փոխում*[1]»: *Նոյն արքայի հօր կառուցած Արշակաւանի համար էլ ասում է, թէ «շատ կանայք թողնում էին այրերին եւ այնտեղ էին ընկնում, շատ տղամարդիկ իրենց կանանց թողնում էին եւ ուրիշների կանանց առնելով այնտեղ էին ընկնում*[2]»:

*Ցայտնի է, որ այդ կնաթողութեան կամ այրաթողութեան մէջ որեւէ օրէնք չի նշմարւում բացի հեթանոսական անկարգութիւնից: Իսկ այդ շրջանի եկեղեցական օրէնքը բացէ ի բաց անխտիր հակառակ էր ապահարզանի: Ներսէսի Աշտիշատում գումարած ժողովը սահմանեց, ասում է նոյն պատմիչը, «ամուսնութեան մէջ օրինաւոր լինեն, որ ամուսնացածներն իրար չխաբեն, իրար դէմ դաւ չսարքեն». այնպէս որ նոյն հզօր հայրապետի օրով, «ոչ ոք, ասում է, համարձակւում էր ի նմանէ հանել կամ ամուսինն իր կնոջը թողնել, ամբողջ Հայոց երկրում ... եւ ոչ ոք չէր համարձակւում միւս անգամ մի ուրիշին էլ առնել»*[3]*: Ակներեւ է, որ Դ դարում հայ եկեղեցին դեռ ապահարզանը չէր ճանաչել եւ առաջին անգամ 447-ին Շահապիվանի ժողովի մէջ հաստատուեց այն երկու պարագայում,- եթէ կանոնները խանգարուած չեն- մէկը՝ ներելով «չնաբարոյ» տղամարդը իր կնոջն արձակի, թոյլ տալով վերջինն իսկոյն նոր ամուսնութիւն կնքելու. եւ արձակողին՝ մէկ տարուց յետոյ. ուրեմն ի քաջալերութիւն չնաբարութեան եւ միւսը՝ կնոջ ամլութեան պարագային, արձակել կնոջ եւ կրկին ամուսնանալ մի տարի յետոյ*[4]:

*Այնուհետեւ մեր եկեղեցու վարդապետներն երկու խմբի են բաժանւում. մէկը այդ նորութեան հակառակ, միւսը համաձայն: Հակառակորդներն աւելի բազմաթիւ ու հեղինակաւոր էին, մեծն Ներսէս եւ Աշտիշատի ժողովն, ինչպէս տեսանք. Եզնիկ Կողբացին՝ հաստատապէս այն մերժում է*[5]*. Ցոհան Մանդակունին, որ ամլութեան համար արձակումն էլ չի ներում*[6]*. Ցոհան Եզնկացին*[7]*, Զաքարիա Ծործորեցին*[8] *եւ*

1. **Փաւս**. 229: — 2. **Նոյն**՝ 107: — 3. **Փաւս**. 76, 229: — 4. **կան Դ, Զ**: — 5. **Կղբ**. 81: — 6. **Մնդ**. 138: - 7. **Ցհ. եզ. Մա**. 121: — 8. **Ծրծ. թղթ**:

Յակոբ Ղրիմեցին[1] որ թոյլատրում են բաժանումը կնոջ անհաւատարմութեան առիթով, բայց ոչ կրկին ամուսնութիւնը, յենւելով Աւետարանի ու Պօղոսի վարդապետութեան վրայ. Կիրակոս Երզնկացին մերժում է արձակումն առանց պայմանի[2] Գրիգոր Տաթեւացին բաժանման պատճառները նշանակում է ամուսնութեան նախընթաց արգելքները միայն[3] Ներսէս Շնորհալին[4] Ներսէս Լամբրոնացին[5] ու Սսոյ 1246-ի ժողովը[6] որ անհաւատարմութեան պատճառով արձակումը ներեցին, բայց առանց յաւելման՝ թէ կարող են նորից ամուսնանալ: Իսկ արձակման ու կրկնամուսնութեան համաձայն էին Շահապիվանի ժողովն՝ ինչպէս նշւեց վերեւում: Դաւիթ Գանձակեցին միայն հարսի մեղանչելու պարագային սկեսրայրի դիմաց[7] եւ Մխիթար Գօշը ներելով, մի ուրիշ կին ունենալ ամուլ կնոջ հետ, բայց առանց կենակցելու վերջինիս հետ[8] Սրանք Աւետարանի սահմանին չեն դիմել իբրեւ կուան նախորդների պէս, որովհետեւ այն իրենց նպաստաւոր չէին համարում:

Սակայն, գործնականում, սրանց կողմը զօրացաւ եւ աւելի թոյլ էին տալիս, ըստ որում համաձայն զգայութեանց, մանաւանդ միջին դարում եւ արեւելեան Հայաստանի մէջ: Կիրակոսը պատմում է թէ այնտեղ թաթարական իշխանութեան ներքեւ ապականւած «հեթանոսաբար» եւ «որին ուզում թողնում եւ որին ուզում առնում էին». եւ դրանց պատճառով դրւեց Սսոյ վերոյիշեալ սահմանը[9]: Վինկենտ բելըովակեցին, նոյն շրջանին դէպի Հայաստան ուղեւորութիւն կատարելով, այնտեղ տեսել էր, որ կնոջ մեղքերի պատճառով «անդէն եւ անդ եպիսկոպոսն նրան (տղամարդուն) հրաման է տւել ուրիշին առնել եւ առել է[10]»: Յովհաննէս Քռնեցին 1330-ի թղթում, ասում է, թէ այդ ժամանակւայ Հայքում «բաժանում են այրն իր կնոջից (նաեւ) առանց կարեւոր

1. Ղրմ. Պս: — 2. Կ. Եզ. Խր. 22: — 3. Քրզ. ամ. 195. Հրց. 610: — 4. Շն. Նմկ. 214: — 5. Տես. Առ. Ե: — 6. Կիր. 171: — 7. Կան. ՄԱ: — 8. Դատ. 106: — 9. Կիր. 162: — 10. Գլն. Ա, 372:

*պատճառի այլ արծաթի համար[1]»: Սոյ 1342-ի ժողովը վկայում է թէ «մեծն Հայաստանում դեռ շատ անգամներ այդպէս է լինելու», բայց Կիլիկիայում ասում է, «զայս այժմիկ ոչ առնեմք», եւ եթէ գեղծարար եպիսկոպոս գտնէր, պաշտօնանկ անելով, ստացւածքն ի շահ արքունիքին գրաւում էին[2]: Եւ պատմական մի օրինակ. Կուրիկոսի տէրը՝ Վահրամը, լոկ քաղաքական շահերի համար արձակեց իր կինն եւ մի ուրիշը առաւ[3]:*

*Այդ բոլորից իմանում ենք թէ ապահարզանը՝ հեթանոսութեան այդ պարգեւը մեր ազգին, ո՛րքան հայուհիներին իրենց զաւակներով միասին անիրաւ զրկանքների ու թշւառութեան մատնեց մեր անցեալում:*

11.- *Հայ օրիորդի ամուսնութիւնը, շատ անգամ, հօր ձեռքում մի միջոց է եղել ստանալու կամ ապահովելու ընկերական ու քաղաքական շահեր, կապելով իր տոհմն ուրիշ հայ կամ օտար տների հետ: Եւ այդ միութիւնները մերթ երջանկաբեր ու մերթ ցաւերի աղբիւր են դարձել օրիորդի համար: Օտարների հետ ամուսնացողներին այս գործի վերջին գլխի մէջ տեսնելու ենք, իսկ այստեղ հայկական խնամութիւններն, որ բաժանելու ենք այլ եւ այլ նպատակների եւ տւած արդիւնքները կը տեսնենք:*

*Կան ամուսնութիւններ, որոնց նպատակն էր բարձրաստիճան մի տան հետ կապակցել եւ դրանով փառաւորել եւ պարծենալ: Դ դարում Հայաստանի երկու պատւաւորագոյն տոհմերն էին Արշակունիներն ու Գրիգորեաններն, ազգի երկու պետերն, որոնց մէջ կատարւած կրկնակ ամուսնութիւնները տեսանք[4]: Նախ եւ առաջ արքունիքի կողմից է ուշադրութիւն տեսնւում այդ կամուրջը հաստատելու. այդ դիտաւորութեամբ Ս. Վրթանէսի որդիները՝ Գրիգորիսն եւ Յուսիկն, սկզբից «սնուեցին Հայոց թագաւորի աչքի առջեւ» եւ ուսանեցին: Առաջինը նրա ձեռքից թռաւ՝ Աղւանի եպիսկոպոս դառնալով, իսկ արքայորդի Տիրանը վախենալով կորցնել միւսին էլ, շտապեց ու բռնի «իր դուստրը» նրան տւեց[5]: Դերերը փոխւեցին Յուսիկի որդիների ժամանակ, որ իրենք «ընտրեցին երկրաւոր կեանք եւ ամուսնացան իրենց կանանց հետ, որոնք թագաւորի քոյրերն էին[6]», այն է իրենց պապի եւ հօր սպանողին, լոկ պարծենալու եւ հպարտանալու համար արքայական փեսայութեամբ, ըստ որի ազգականութեան շատ յարգ էին տալիս[7] եւ երկու հարսներին շատ թանկ արժեց:*

*Մանուէլ Մամիկոնեանը տարիներ պատերազմելով եւ պահպանելով հայրենիքն ու Պապ արքայի երկու որդիներին՝ Արշակին ու Վաղարշակին, իրենց մօր հետ, իրաւունք*

---

1. *Նոյն՝* 516: — 2. *Մնս. Իb*, 1265: — 3. *Աստ՝ ԺԸ, ժգ.* 1: — 4. *Աստ՝* 41-42: — 5. *Փաւս.* 10-11: — 6. *Փաւս.* 43: — 7. *Նոյն՝* 35:

տտացաւ իր դուստրին՝ **Վարդանդուխտին**, հարսնացնելու նրանց աւագին, իսկ Բագրատունի ասպետի դուստրին կրտսերին տալով: Եւ յետոյ իր փեսային ու զաւակին պսակեց արշակունի թագերով ու մեծ հանդիսաւորութեամբ[1]: Ազգի բարեկաւութեան համար իր թափած քրտինքն ու արիւնը դրանով վարձատրւեցին: Մամիկոնեան թագուհին ստիպւած է բախտակից դառնալ ամուսնուն նաեւ, ի հարկի, հայրենի աշխարհից տխրութեամբ հեռանալու դէպքում[2]:

Մեր միջին դարում շատ ծանօթ է Զաքարեանց տոհմը, Շիրակի եւ ուրիշ կողմերի տէրերին, որոնք արքայական իշխանութեամբ ու զօրութեամբ բռնել էին իրենց գահն ու սուրը: Նրանց մէջ նշանաւոր են Սարգիսը եւ որդիները՝ Զաքարէ եւ Իւանէ սպասալարք, որը նախապէս յիշւեց: Սարգիսն իր տունը երեք լաւագոյն տոհմերի հետ կապեց. դուստրերից **Նանային** Կիւրիկեան արքունիքին տալով[3], միւս երկուսին Փոքր Սիւնեաց կամ Արցախի մէջ տիրող երկու զօրաւոր իշխանութիւններին, **Դոփին** Վերին Խաչէնի գահաժառանգին՝ Բ Հասանին[4], եւ **Խորիշահին** Ներքին Խաչէնի տիրող որդուն՝ Տօնկիկ Վախթանկին[5]: Զաքարեանները կարիք չզգացին ու չստացան օգնութիւն այդ փեսայից, իրենց նպատակը ընտիր տների հետ խնամիանալն էր:

Նոյն դիտաւորութեամբ նաեւ հայացած Օրբելեանց տնից՝ Տարսայիճը[6], Սիւնեաց մէջ զօրաւոր եւ ընդարձակ իշխանութեան տէր, ինքն էլ կապւեց նոյն արցախցիների հետ, նախ Ներքին Խաչէնի տնից **Մինա խաթունին**[7] իր կենակիցն առնելով եւ ապա սրանից ունեցած դուստրերից երէցն՝ **Ասփային**, հարսնացնելով Վերին Խաչէնի յիշեալ Հասանի որդուն՝ Գրիգորին[8], որոնց նախապէս տեսանք[9]: Իսկ իր մահից յետոյ, կրտսերին՝ **Մամքանին**, Վրաց արքայական տանը տւեցին[10]:

12.- Բարեկամութիւնը կամ զինակցութիւնն է, որ երբեմն շահում է հայ օրիորդը: Դ դարում սպարապետական տան՝ Մամիկոնեան «փեսաներն» էին Արշաւիր Կամսարականն՝ իշխան Շիրակի եւ Արշարունեաց, եւ Անդովկ Սիւնին, առնելով Վաչէի քոյրերին: Սա մարտում ընկաւ, թողնելով «մի փոքրիկ մանկիկ» իր Արտաւազդ հօր անւամբ, որին Խոսրով արքան եւ Վրթանէս հայրապետը յանձնեցին նոյն փեսային նրան սնուցանելու, բնականաբար իրենց կենակիցների օգնութեամբ եւ ժառանգելու հայրենի գահը, ինչպէս եւ կատարեցին[11]: Եւ այս բարիքի արդիւնքն եղաւ երկու Մամիկոնեանների կամ մանուկի հօրաքրոջ ամուսնութեամբ:

---

1. Նոյն՝ 256: — 2. Աստ՝ Դ, 8: — 3. Աստ՝ 45: — 4. Աստ՝ 33: — 5. Կիր. 145: — 6. Աստ՝ ԺԸ, Է,2: — 7. Աստ՝ 50: — 8. Օրբ. 311: — 9. Աստ՝ 40: — 10. Աստ՝ ԺԸ, Ե, 2: — 11. Փաւս. 28,47:

Նոյն խնամիական կապն ունէր կրտսեր Արշաւիր Կամսարականն եւս մեծին Վարդանի հետ, փեսայացած նրա մի դուստրին[1], որին Ջամչեանը **Վարդանոյշ** է անուանում[2], չգիտեմ որտեղի՞ց, եւ որ մեծ պատերազմի ժամանակ աներոջ ամենից մտերիմ ու աջ բազուկն էր եւ խիզախ դատախազն էր մատնիչ Սիւնիի ու Վարդանի ջաղագովն Ցազկերտի առջեւ[3]: Նրա որդիները՝ Ներսեհն ու Հրահատը, նոյն ազգակցութեամբ կապուած էին Վարդանի եղբօրորդու՝ քաջին Վահանի հետ, նրա անբաժան ու հաւատարմագոյն նիզակակիցներն հանդիսացան, նրա դժւար կռիւներին ու յաղթանակների մէջ պարսիկների դէմ[4]: Եւ իրենց այդ կապն աւելի ամրացրին ապա, Հրահատի որդուն՝ Արտաւազդին, կենակից առնելով **Շուշան** Մամիկոնեանին, որ յիշւում է ամուսնու տապանագրում[5] եւ յայտնի չէ, որի դուստրն էր նոյն տոհմից:

Բագրատունի Աշոտ Ողորմածի որդին՝ Գուրգէնը, որ եւ Կիւրիկէ Ա, 980-ին հիմնեց Աղւանի հայկական գահը, որը մի ժամանակ տեւեց: Իր թոռը՝ Կիւրիկէ Բ «միշտ մնաց ընդդէմ Վրաստանի, հաստատ պահելով իր հայրենիքը»: Իսկ նրա մահով Վիրքում յաջողեցին ամփոփել նրա սահմանները եւ փոքր մի մասը նրա զաւակներին՝ Դաւթին եւ Աբասին թողեցին[6]: Դաւթի որդին՝ Կիւրիկէ Գ նոր վնասներից զգուշանալով չահեց երեք նշանաւոր տոհմերի բարեկամութիւնն, **Ռուսուդան** դուստրին տալով Օրբելեան Իւանէին[7]. Վերին Խաչէնի իշխանորդուն՝ Ա Հասանին, **Մամային**[8]. դարձեալ Խաչէնի տնից Արանին տւեց իր երրորդ զաւակը՝ Վանէին եւ իր Աբաս որդուն հարս բերեց Զաքարեան Սարգսի դուստրը՝ **Նանային**, որը վերեւում տեսանք: Վանէի վերաբերեալ 1172-ին մի յիշատակագիր է յայտնի «Խաչէն գաւառից . . . ազատանիներից» է կոչում Հաղբատի Բարսեղ արքեպիսկոպոսը[9], որ վերը յիշւած Արանի որդին՝ Դաւիթն նրան «հօրեղբայր» է անուանում, նաեւ ակնարկում է «իմ մօրն՝ Վանէի, Կիւրիկէի թագաւորի դուստրը[10]»: Արդ այս չորս խնամութեան մէջ Կիւրիկէն անդորր եւ ապահով մի կեանք ապրեց, ապա «բարով աշխարհը փոխեց[11]»:

13.-Հայուհին իր ամուսնութեամբ երբեմն ծառայում է ամրացնելու իշխանական եւ արքայական խախտուած տներ ու գահեր, աւելի կամ պակաս տեւողութեամբ ըստ բախտի: Աղձնիքի բդեշխը՝ Բակուրը (Դ դարում), ապստամբեց Խոսրով արքայի դէմ եւ Պարսկաստանի օգնութեամբ Հայոց բանակի դէմ պատերազմեց: Սակայն յաղթւեց եւ եղբայրների ու որդիների հետ սրամահ եղան: Նրա արիւնոտ գլուխն ու նորածին

---

1. Փրպ. 190: — 2. Ջմչ. Ա, 518: — 3. Փրպ. 190, 192, 245 եւն: — 4. Նոյն՝ 371, 377, 380 եւն: — 5. Աստ՝ 32: — 6. Կիր. 72. Վրդ. 119: — 7. Շիր. 100. Երզ. 21: — 8. Արջ. 203, 204: — 9. Հյպ. 382: — 10. Երզ. 25: — 11. Կիր. 72:

դուստրին միասին դրեցին Թագաւորի առջեւ. սոսկալի՜ զուգադիպութիւն: Խոսրովի սիրտը կսկծեց եւ դաւաճանի՝ միակ կենդանի մնացած նշխարին վերցրեց սնուցանեց եւ ապա կնութեան տուեց իր սիրելիին Վաղինակ Սիւնեցուն՝ Աղձնիքի տէրութեան հետ, եւ «նրան նշանակեց բդեշխ եւ յաջորդը տան» դաւադրին, մինչեւ որ նրա մի ուրիշ մանուկը՝ Խեշան, գաղտնապէս ապաստանել էր Մամիկոնեան Վաչէի մօտ, մի օր ժառանգեց հայրենի գահը[1] եւ Աղձնիքի Թագուհին դարձաւ Սիւնեաց տիկինը:

Տիրան արքան դըդմամբ անօրէն Հայր մարդպետի սպանում էր մեր անմեղ իշխաններին եւ ուզում էր երկու կարեւոր տոհմերին՝ Ռշտունեաց եւ Արծրունեաց, անզաւակ անել: Սրանց կոտորածից ազատուեցին երկու ծծկեր մանուկ, Ռշտունի Մեհնդակի որդին՝ Տաճատը, եւ Վաչէ Արծրունեաց Շաւասպը, որ դայեակների մօտ էին գտնւում: Նրանց էլ գտան եւ Տիրանի մօտ բերուեցին, որ հրամայեց նրանց էլ փողոտել: Հայոց սպարապետները՝ Արտաւազդ եւ Վասակ Մամիկոնեաններն այնտեղ էին, որ չհանդուրժելով այդ խժդժութեան, յարձակուեցին ու յափշտակեցին մանուկներին, դրեցին իրենց Թիկնոցի տակ եւ սուրերը հանած դուրս ելան եւ ոչ մի ընդդիմութիւն չգտնելով իրենց աններող զէնքերի առջեւ: Գնացին Տայոց աշխարհը. մնացին սնուցելով երկու երեխաներին: Լրացնելու համար իրենց պաշտպանութեան գործը, պսակեցին նրանց իրենց դուստրերի հետ «ուստի, դարձեալ այդ ազգը սերունդ ունեցաւ» այդ կրկնակ ամուսնութեամբ[2]:

Վասպուրականի վերջին Թագաւորը՝ Սենեքերիմ Արծրունին, զգալով իր անկարողութիւնը Պարսկաստանի յարձակման դէմ, իր աշխարհը կայսրին յանձնելով Սեբաստիան ստացաւ: Այնտեղ մեռաւ եւ նոր գահը իր Դաւիթ որդուն Թողեց, որն մի դուստր ունէր եւ անժառանգ էր: Անիի Բագրատունիների վերջին գահակալ՝ Գագիկը, որ Յունաստանի նենգութեան հետեւանքով տէրութիւնը կորցրել էր եւ մնացել էր նրանց մօտ անաթոռ, կայսրի հաւանութեամբ ամուսնացաւ Դաւթի դուստրի հետ եւ նրա մահւանից յետոյ «տիրէ նորին բաժնին[3]», չնորհիւ Արծրունի կենակցին չահելով կորցրած գահի փոխարէնը, որը սակայն իր եղերական վախճանին նոյնպէս անժառանգ Թողեց:

Սիւնեաց Թագաւորութեան վերջին ազնուականն Գրիգոր Բ եղաւ, որի միակ զաւակն **կասան** էր: Ազգի համար դառն ժամանակ էր, որովհետեւ պարսիկ յուղկահարները ջարդում էին ժողովրդին, վանքեր էին քանդում, իշխանութիւններ էին տապալում: Գրիգորը խորհեց իր աթոռն ամրապնդել: Խաչէնի իշխանական տներից

---

1. Փաւս. 21: — 2. Նոյն՝ 46-47: — 3. Լաս. 42:

բերել տուեց «մի մանուկ Հասան անունով» գեռաքարեցի, պսակեց իր դստեր հետ, եւ «իր թագաւորութեան ժառանգը դարձրեց»: Ինքն ու Սմբատ եղբայրը 1166-ին մեռան: Չորս տարի յետոյ իրենց Բաղաբերդ ամրոցը կապանում պաշարւեց: Պատանի արքան տեսնելով, որ ուժից վեր էր պահել Սիւնեաց գահը. դղեակի պաշտպանութիւնը բերդապահին յանձնելով, ինքը գիշերով կնոջ եւ ընտանիքին առած փախաւ իր հայրենի տնից: Այդ օրից Կատայի թագը մթագնեց եւ Սիւնեաց տոհմի արեւը մայր մտաւ[1]:

Մեծն Լեւոնը մնացած իր **Զապէլով**, Հունգարիայի Անդրէաս Ա թագաւորի հետ, որ 1219-ին այցելեց Կիլիկիա, դաշն կնքեց, որ նրա համանուն որդին ժամանակին փեսայ ու ժառանգ գար իր տէրութեան[2]: Իր մահւանից յետոյ փեսացուն չուզեց գալ[3], ուստի հայերը խնդրեցին Անտիոքի Բոհեմոնդ (Պեմունդ) Դ իշխանի որդուն՝ Փիլիպի (կամ Ֆիլիպի) թեկնածութիւնը, խորհելով «որովհետեւ մօտ է եւ լաւ կարող է օգնել մեզ եւ մեր կարիքներին»: Անմիջապէս պայմանաւորւեցին՝ «որ հայ ծէսով մնար, եւ եկեղեցին ու պատարագն էլ նոյնպէս եւ բոլորն իրենց իրաւունքը պահէին»: Եւ 1222-ին պսակեցին Զապէլի հետ, իբրեւ Հայոց թագաւոր[4], եւ Տարսոնի մէջ օծեցին[5]: Փիլիպն, երբ թեւակոխեց իր քսան տարին, իր հօր դրդումով սկսեց գոռոզանալ, արհամարհել հայ իշխաններին, նրանց պաշտօններն սկսեց անտիոքացիներին տալ եւ Ռուբինեանների հաւաքած հարստութիւնը սկսեց մաս-մաս իր հայրենի տունը փոխադրել: Հայրը նրան խաբեց, գրում է Գանձակեցին, «եւ վերցրեց Լեւոն արքայի թագի նմանը, եւ արքայական պաղատն (վրա՞ն), որը երեւելի օրերին կանգնեցնում էին, եւ այլ ոսկու ու արծաթի գանձը[6]»: Եւ եթէ կարելի է հաւատալ Ռուբինեան պատմութեան, հայրը, անտիոքացիները ու Տաճարի ասպետները ուզում էին «Հայոց եկեղեցին եւ իշխաններին ջնջէին[7]», բայց ուրիշներն այդ չեն յիշում: Հայ աւագանին չհանդուրժելով, բերդարգել արեց նրան, որտեղ եւ մեռաւ երկու տարուց յետոյ[8], որ արեւմուտքը յիշատակում է, թէ սպանուած է մեր իշխանների միջոցով[9]:

Այն ժամանակ Զապէլին նոր ամուսին տուեցին՝ իր հօր քեռու թոռան ու Կոստանդին պապեռոնացու – իր դաստիարակին[10], - որդուն Հեթումին, մեծ հանդէսով Տարսոնի մէջ պսակեցին արքայական թագով (1226-ին): Տաս տարեկան թագուհին, - իր զուգակիցն էլ նոյն տարիքին էր, - որ այդ հասակում լաւագոյնն էր հասկանում սրտի լեզուն քան քաղաքականութեանը, չկարողացաւ Փիլիպի տխուր վախճանը մարսել, որին

---

1. *Օրբ*. 245, 247: — 2. ***Տրգ. Կիլ***. 210-11: — 3. *Անդ*՝ 317: — 4. *Սմ*. ***Տրգ***. 121: — 5. ***Պատմ. Ռբ***. 210: — 6. *Կիր*. 94: — 7. ***Պատմ. Ռբ***. 210: — 8. ***Տրգ. Կիլ***. 317. ***Սմ. Տրգ***. 121: — 9. *Հրկլ*. 348. ***Տոհմք***, 445, 447: — 10. *Աստ*՝ 9:

սիրելի էր, եւ Հեթումի կենակցութիւնը չուզեց: Իր տագրը՝ Սմբատ սպարապետը, որ սրտի սահմանները սրի ծայրով էր չափում, «դիւական բարկութիւնը, գրում է, չարժեց թագուհի Զապէլի նկատմամբ» եւ տեսութեան պատրւակով Սելեւկիա գնաց իր մօր՝ **Միրիկի** մօտ, որը բնակւում էր Հիւանդանոցի ասպետների ամրոցի մէջ: Այնտեղ հասնելով «բարկացաւ թագաւորի եւ ամէն հայերի վրայ», եւ այլեւս չուզեց վերադառնալ: Կոստանդին արքայահայրը «հաւաքեց հեծեալներին, գնաց եւ իջաւ Սելեւկիա», պահանջելով թագուհուն: Ասպետներն որ վախենում էին Ալայետտին սուլթանից, չգժտւելու համար նաեւ Հայոց հետ, բերդն ու թագուհուն միասին նրանց յանձնեցին: Եւ Զապէլը համակերպւած իր վիճակին, ուստի չէր կարող խուսափել, վերադարձաւ եւ նւիրւեց աշխարհին ու Հեթումին, որին տասը տարի յետոյ նւիրեց Լեւոն գահաժառանգին[1]: Ռուբինեանց փառապանծ գահը Զապէլին զոհելով փրկւած էր:

14.- Կան իշխանապետ հայրեր, որ խնամիական կապերով փորձում եւ աշխատում են իրենց լծի ներքեւ պահել ըմբոստ իշխաններին կամ տոհմերին եւ դրանով ամուր կառչեն իրենց տիրապետութեան:

Այս մասի մէջ նշանաւոր է Աշոտ Ա, որը հիմնադիրն է Բագրատունեաց թագաւորութեան, որ խորագիտութեամբ իր ցանցի մէջ ամփոփեց Հայաստանի երկու մեծագոյն նահանգների -բացի Արարատի- Վասպուրականի եւ Սիւնեաց ազատանուն: Դրանք նախ թւով, զօրութեամբ եւ անկախութեան ձգտումներով գերազանցում էին բոլոր միւս տոհմերին: Աշոտը նախ ձերբակալեց նրանց իշխանապետին՝ Գրիգոր Դերենիկ Գ, իբրեւ անհնազանդ: Յետոյ միջնորդութեամբ նրա ազգական՝ Գուրգէնի, ազատեց, որ այդ առթիւ ըմբոստին կնութեան խնդրեց նրա դստեր՝ **Սոփիին**, «որովհետեւ, ասելով, քո եւ Դերենիկի միջեւ անկասկած միութիւն է եղել» : Աշոտի բուն ուզածն էր եւ խկոյն հարսանիքը կատարւեց[2], որ Բագրատունի օրիորդի քարւանը պատրաստեց[3]: Միւս եւ հաւանաբար **Հրանուշին** անդրանիկ դուստրին, պսակեց Դերենիկի տոհմակից Վահանի հետ[4], որի որդին Գագիկ Ապումրւան է կոչւում «Սոփի տիկնոջ քեռու որդին[5]»: Կարեւոր մի անձ է Վահանը Վասպուրականի պատերազմների ու քաղաքական պատահարների մէջ[6]: Իսկ երրորդ դուստրին՝ Մարիամին, Բագրատունին տւեց Սիւնեաց իշխան՝ Վասակ Գաբուռիին, որին ազգատոհմի գերագոյն գլուխն անւանեց[7]: Բայց նա չուտով կենակցուն այրի թողեց եւ իր յաջորդը՝ Գրիգոր Սուփան անդրանիկը եղաւ[8]:

---

1. ***Սմ. Տրգ.*** 121,122: — 2. *Արծ.* 233: — 3. *Աստ՝* 43-5: — 4. *Արծ.* 155-56: — 5. *Նոյն՝* 155, 302: — 6. *Նոյն՝* 121, 124, 148, 238, 239, 242: — 7. *Յհ. կթ.* 171. *Օրբ.* 132: — 8. *Յհ. կթ.* 173. *Օրբ.* 126:

*Աշոտի որդին Շապուհը, ինքն էլ իր տան եւ Արծրունեաց միջեւ մի կապ հաստատեց. իր դուստրին (անանուն) ամուսնացրեց Հրանուշ քրոջ վերոյիշեալ զաւակի հետ եւ պաշտպան կանգնելով նրան*[1], *ուստի գեղծաւ նաեւ ողբալի մի վերջ ունեցաւ*[2]: ***Իսկ երկրորդ զաւակին (նոյնպէս անանուն) տուեց Տարօնի իշխան՝ Բագրատունի Դաւիթ*** *կիւրապաղատի Աշոտ որդուն*[3]: *Շապուհի եղբայրը՝ Սմբատ Ա, յետոյ փորձեց Տարօնն ազատել եւ ապահովել իրենց փեսայի իշխանութիւնը, բայց չյաջողեց*[4]: *Սոփիի որդիներից երկրորդը՝ Գագիկը, կարողացաւ եղծանել իր հանգուցեալ մեծ պապի ծրագիրը. եւ իրականացնել Վասպուրականի անկախութիւնը, թագաւոր լինելով. Թէպէտ այսուհանդերձ երկու գահերի մէջ խնամիութիւնը նորոգւում է երբեմն. եւ Գագիկի յաջորդներից Սենեքերիմը կենակից ունէր, եւ* 981-*ին յիշւում է,* ***Խուշուշ խաթուն***՝ *Ա Գագիկի դուստրը*[5]:

*Ռուբինեան եւ Լամբրոնի Հեթումեանները «վաղուց ի վեր նախանձում էին միմեանց», վերջինների մտերմութեան համար յոյների հետ, որոնք Ռուբինեանների թշնամիներն էին*[6]: *Ռուբինեանները նախքան Լեւոնին հայկական տէրութիւն չէին ներկայացնում, այլ պարզ իշխանական մի տուն, որն եկել մտել էին կայսերական սահմանների մէջ եւ յոյների հետ ընդհարւում էին ի վրէժխնդրութիւն Բագրատունիների կրած անիրաւութեան համար, եւ ընդարձակում էին իրենց գրաւած երկիրը: Նոյնպիսի մի իշխանութիւն էր Հեթումեանը, նոյնպէս յունական սահմանների մէջ, բայց կայսերական հաճութեամբ եւ իշխանութեան ներքոյ եւ Բիւզանդիայի կողմից մեծարւած սեբաստական պատւով*[7], *մնալով հանդերձ ճշմարիտ հայեր, ինչպէս Գրիգոր Մագիստրոսն ու իր տունն էլ նոյն պայմաններում էր: Այս հանգամանքով էր, որ Տարսոնի առաջնորդի հայրը՝ Օշին Բ, կայսերական բանակի հետ միացած, բախւեց Ռուբինեան Բ Թորոսի հետ: Կայսերականները յաղթւեցին, Լամբրոնի իշխանի եղբայրը՝ Սմբատն, ընկաւ մարտի մէջ եւ Օշինը գերի ընկաւ. ազատւելու համար յանձն առաւ փրկանք վճարել՝ քառասուն հազար ոսկի. կէսը հատուցեց եւ միւս կէսի համար իր անդրանիկ որդուն՝ Հեթումին, պատանդ տուեց:*

*Թորոսն նրան ազատելուց առաջ ուզեց խնամիութեամբ կապել իր հետ պատանդ երիտասարդին ու նրա տոհմին: Նրա հօր հետ բանակցեց եւ փեսայ դարձրեց իր դստեր՝* ***Ռիթային***[8] *եւ «շատ սիրեց նրան, որովհետեւ տեսքով գեղեցիկ, զգօն եւ հանդարտ էր», բայց փոխադարձաբար առանց սիրւելու ոչ ինքը, ոչ զաւակը, որ լոկ «երեսանց» էր*

---

1. *Արծ*. 265: — 2. *Աստ*՝ 62: — 3. *Ցհ. կթ*. 219: — 4. *Աստ*՝ *Ժ*, 10: — 5. *Ն. Սրգ*. 257: — 6. ***Տրգ. Կիլ.*** 258: — 7. ***Հյպ.*** 414: — 8. ***Պատմ. Ռբ.*** 207:

ընդունել Հեթումին[1] եւ «իրք չիշխէր առնել» աներոջը կենդանութեան[2], որ իր հակառակորդների հետ կատակ չէր անում[3]: Երբ նա վախճանուեց, կնոջն արձակեց, որ արդէն իրեն պարգեւել էր երկու զաւակ՝ Օշին ու Կոստանդին[4]. եւ նրա այդ գործն «նորից պատճառ եղաւ նրանց խռովութեան»: Թորոսի եղբայրը՝ Մլեհը, զայրացած գնաց եւ պաշարեց Լամբրոնը (1170-ին) եւ «բազում նեղութիւն հասցրեց» նրա բնակիչներին՝ սրով ու սովով, խնդրելով իր եղբօրորդու վրէժը[5]: Ցայտնի չէ, թէ ինչպէս վերջացաւ ամուսնական երկպառակութիւնն, որին զոհ գնաց Ռիթան: Հեթումեան մի յիշատակարան 1198 թւականին, մի առ մի յիշում է Հեթումին, դեռ կենդանի, եղբայրներին ու որդիներին[6], եւ Թորոսի դստեր մասին - ողջ կամ մեռած – լռում է, որն անհաշտութեան նշան է: Հեթումը խնդիր ունեցաւ նաեւ Մլեհի եղբօրորդու՝ Ռուբէնի հետ, որ նրա ամրոցն երեք տարի պաշարեց եւ նեղութիւն պատճառեց[7]:

Զօրաւոր մի ընտանիք էին շնորհիւ իրենց լերանց եւ արիւնակցական կապերի՝ Սասունի Զորտւանէլեանները[8], որոնցից երկու եղբայրներ՝ Հեթում (կամ Վասիլ ըստ մի յիշատակագրի[9]) եւ Շահնշահ, որդիք Բ Զորտւանէլի եւ քեռորդիք՝ Գրիգոր Տղայ կաթողիկոսին, որին մանուկ տեսանք[10], - եւ որոնցից պատճառ չունենք նրանց բաժանելու Հ. Ալիշանի հետ[11], - 1188-ին, երբ գտնւում էին մեծն Լեւոնի մօտ, սա նրանց առաջինին ամուսնացրեց իր եղբօր՝ Ռուբէնի, երէց դստեր՝ Ալիծի հետ[12], մի քաղաք էլ փեսայի եղբօրն նւիրելով: Ամուսնութիւնից հինգ տարի յետոյ, տարօրինակ զուգադիպութեամբ հայրապետի մահացած ամսւայ մէջ, իր երկու քեռորդիներն էլ, նրան ուղեկից եղան դէպի լաւագոյն կեանքի: Ինչո՞ւ այդպէս շուտ ու միասին: «Այս, գրում է Տարեգիրը, թէ Լեւոնն եղաւ նրանց մահւան պատճառը. այլ ճշմարիտն Աստծուն է յայտնի[13]»: Բայց այն անշուշտ գիտէր - ինչպէս էլ լինէր - եւ սրտի մէջ խեղդեց մանկահասակ տարաբախտ Ալիծը, որ մի տարի յետոյ սեւ քօղը պիտի սպիտակացնէր Անտիոքի իշխանական պալատի մէջ:

15.- Վերջապէս խնամիութիւններ էլ կան, որոնց նպատակը կամ հետեւանքն էր՝ փեսաների ձեռքից կամ երեսից չունեցած իրաւունքներ կորզել, յենւելով իրենց ազգականութեան վրայ:

1. Տրգ. կկ. 229, 258: — 2. Սմ. Տրգ. 101: — 3. Հմմտ. տառ՝ 39. ԺԶ, 4: — 4. Հայ. յշտ. 1198: — 5. Տրգ. կկ. 258: — 6. Հայ. յշտ: — 7. Սմ. Տրգ. 103: — 8. Աստ՝ 39: — 9. Հրդ. 394: — 10. Աստ՝ 39: — 11. Հրդ. 393: 12. Աստ՝ 34: — 13. Տրգ. կկ. 275-76, 282:

Արծրունի Գ Դերենիկի եղերական վախճանն[1], որը եւ անտէր թողեց նրա մատաղ որդիներին իրենց մօր հետ: Այն ժամանակ իրենց քեռին՝ Շապուհը, գնաց նրանց պաշտպան եւ աշխարհին «ոստիկան» կարգեց իր միւս քեռորդուն՝ Գագիկ Ապումրւանին[2], Ճահուկ բերդի տիրոջը, որը վերեւում տեսանք եւ Վասպուրականի իշխանութիւնն յանձնեց մանուկների անդրանիկին իննամեայ Աշոտին: Ոստիկանն, որ իշխանասէր եւ նրանց հօր հակառակորդն էր եղել[3], զգաց, որ ժամանակն էր նահանգի իշխանապետութիւնը ձեռքը վերցնելու[4] եւ դրա լաւագոյն միջոցն համարեց իր դստեր՝ **Սեղային**, կապել Աշոտի հետ, որն եւ կատարեց եւ այն բռնեց «ահիւ ընդ ձեռամբ[5]»: Վրայ հասաւ մի ուրիշ նպաստաւոր պարագայ էլ. փեսան իրենց քեռու՝ Սմբատ արքայի դէմ, մի անհնազանդութիւն գործեց, որը յաջորդել էր հօրը: Նա զայրացած Վասպուրականի իշխանութիւնը բաժանեց Ապումրւանի եւ Գուրգէն Անձեւացու մէջ[6], որոնք բռնեցին ու բերդարգել արեցին երեք օրինաւոր ժառանգներին[7]: Յետոյ Սմբատն ամբողջ իշխանութիւնն յանձնեց Ապումրւանին[8], որի երջանկութիւնը սահման չունէր: Իսկ ի՞նչ զգաց եւ ի՞նչ օրեր անցկացրեց արդեօք Սեղան այդ պղտորութիւնների ու երկու սրերի մէջ:

Բայց Արծրունին ինքն իսկ պատրաստեց իր կորուստը մի ծանր սխալով. այն է բանտից հանելով եւ իր մօտ պահելով երեք հարազատներից միջնակ ու խորամանկ Գագիկին, որ օգուտ քաղելով այդ ազատութիւնից, մի դաւ նիւթեց անիրաւ մօրաքեռորդու դէմ: Երբ նա մի օր նժոյգը հեծած, սովորական արշաւն էր կատարում Վանայ ասպարէզի մէջ, իր չորս հետեւորդները՝ Ամատունիք Շապուհ, Վահան ու Սարա եղբայրներն եւ Ապուսակր Վահունի, որոնք Գագիկի դաւակիցներ էին, յարձակուեցին նրա վրայ, սրերը խրեցին մարմնի մէջ, գետին տապալեցին, գլուխը կտրեցին ու յղեցին բերդում բանդարկեալներին: Բռնութիւնը վերջացած էր: Սեղայի ամուսնութիւնն այս սեւ վախճանով փառախնդիր ծնողը չահեց. իրեն ուրիշ բան չէր մնում բացի որդիական գթով եւ արտօսրաթոր աչքերով նրա աղմկայոյզ մարմինը յանձնել Ձորոյ վանքի սրբանուէր լռութեանը[9]:

Արծրունեաց պատմիչը պանծացնում է նոյն տոհմից Գրիգոր Ապուհամզայ իշխանին, Արճուճք ամրոցի տիրոջն, որ իր պատմագրութեան մեկենասն էր եղել, իմաստութեամբ «հոյակապ եւ անուանի հայերի մէջ[10]»: Իր «ցանկալի» անո՞ւնը, դստեր՝

---

1. Աստ՝ 44: — 2. Արծ. 257: — 3. Արծ. 253-54, 295. Շպհ. 69: — 4. Նոյն՝ 261, 303: — 5. Նոյն՝ 271, 303, Շպհ. 64, 69: — 6. Արծ. 262: — 7. Նոյն՝ 264, 303. Շպհ. 71: — 8. Արծ. 265: — 9. Նոյն՝ 267-68: — 10. Արծ. 248:

**Թամար Մլքէի** գեղեցկութի՞ւնը, կամ թէ Վասպուրականի տէրերի փա՞ռքը պատճառ դարձաւ, յայտնի չէ, Գրիգորը յիշեալ երեք հարազատներից միջնակին՝ Գագիկին[1], իրեն փեսայ դարձրեց, որն ապա յաջորդեց վաղամեռիկ եղբօրն հայրենի գահի վրայ։ Աները յարմար ժամը գտաւ անկախութեան դրօշ պարզելու, իր սեփական ժառանգութեան մէջ, վստահելով փեսայի ու դստեր բարեացակամութեանը։ Բայց Գագիկը չհանդուրժեց. մի գունդ ուղարկելով, նրան ձերբակալեց որդիների հետ եւ բերել տուեց իր մօտ։ Ձեռնակապ, ամօթահար եւ անմռունչ կանգնած էր պատկառելի Ապուհամզան փեսայի առաջ եւ, մինչ զաւակները «աղաղակ էին բարձրացրել», արտասուքով եւ հառաչանքով աղերսում էին իրենց հայրենի ժառանգութիւնից չզրկել։ Որպիսի՞ ալեծուփ սրտով, պալատի մէկ անկիւնից հետեւում էր արդեօք Վասպուրականի տիկինն ու ապագայ թագուհին, իր հօր ու եղբայրների այդ աղիողորմ տեսարանին. ի՞նչ արեց, ի՞նչ խօսեց, յայտնի չէ։ Սակայն իր սէրն ապարդիւն չմնաց ամուսնու սրտի մէջ, որ «գթաց եւ խնայեց նրանց» եւ նրանց շնորհեց կեանքն ու գաւառը, «հիմքից տապալեց» նրանց ամրոցը միայն[2], որպէսզի ապագայ խլրտումներ չթելադրէր նրանց։

Կիւրիկեան Բագրատունիներից Աբասի որդին՝ Աղսարթանը[3], յաջորդեց հօրը։ Դաւիթը, Նոր բերդի իշխանը, որ Գանձակեցին «Բագրատունիների ազգից» է կոչում[4] եւ որ Աբասի եղբայրն էր,- ըստ վկայութեան իր Վասակ որդուն, որը ինքն իրեն «Կիւրիկէի արքայի թոռն» է անուանում[5], որի որդին Աբասն էր[6], - ուզեց դաւ գործել եղբօրորդու դէմ, որ դեռ տհաս էր։ Նրան նախ ամուսնացրեց իր դստրի հետ եւ այդ պատրւակով տիրացաւ նրա Մածնաբերդ դղեակին, որ Կիւրիկեան տոհմի արքունիքն էր Աղուանի մէջ «եւ ապա եհան զդուստրն ի նմանէ», գահից ու կնոջից նրան միանգամայն զրկելով։ Սակայն պատանի փեսան աւելի արթուն գտնուեց աներոջն արժանի դաս տալով։ Բերդապահների սրտերը հրապուրեց եւ նրանք յանկարծակի յարձակուեցին եւ յափշտակիչն ընտանեօք հանդերձ դուրս վտարեցին եւ ամրոցն Աղսարթանիին վերադարձրին։ Նա բարեպաշտ մարդ էր եւ մեծանձնութեամբ ներեց աներոջը, այդչափ խրատը բաւական համարելով[7]։

Տեսանք Ռուբինեանների եւ Լամբրոնացիների աւանդական հակառակութիւններն իրար հետ[8]։ Մեծն Լեւոնը յաջորդելով իր եղբօր՝ Ռուբէնին, թագով պսակւած եւ ինքնակալ Կիլիկիայի, Լամբրոնի ազատ ամրոցին խոժոռ էր նայում. «այն, որ երեւելի ճոխութեամբ նստի Տարսոնի գլխին յառաջնում

1 Նոյն՝ 313  2. Նոյն՝ 311-13։  3. Ասո՝ 45։  4. Կիր. 72։  5. Ն. Սրգ. 153։ – 6. Ասո՝ 56։ — 7. Կիր 73  8 Ասո՝ 60

*գահաւանդակի ահաւոր լերինն Տորոսի», ինչպէս գրում էր Ստ. Գոյն երիցանցը*[1]*: Արծուի թեւերը հասնում էին այնտեղ, բայց ոչ Առիւծի ճիրանները, որին չէին կարողացել Ռուբինեանների ուժեղ զէնքերն ստանաել: Նայում էր վեր եւ մխում էր: Մտածեց, մտածեց ու հնարքն գտաւ «իմաստութեամբ թեւերը փետտել» նրա տէրերի եւ «ցածրացնել նրանց մեծամիտ հպարտութիւնը»:* 1201 *թւին բանակցեց եւ Տարսոն հրաւիրեց Հեթումին՝ բերդի տիրոջն, եւ իր հօրեղբօր փեսային, որ յաջորդել էր իր հօր՝ Օշինին, իր եղբօր դուստրը՝* ***Զապլլին****, նրա Օշին որդուն հարսնացնելու առաջարկութեամբ: Ապագայ խնամին, ընտանեօք եւ իշխանավայել պատրաստութեամբ մեկնեց ամրոցից դէպի Տարսոն՝ հարսանիքի վայրը: Նոյն պահին արքունի զօրքերն նրանց ետեւից դիմեցին բերդն ի վեր, որ անպաշտպան էր թողնուած եւ այն գրաւեցին: Բանակցութիւնն ու պսակը՝ բոլորը կեղծ էր, որ ծառայեց նպատակին: Այդտեղ, առիւծը չէր որ գործում էր, այլ աղուէսը, որ այդպէս Հեթումեան ընտանիքը բռնեց ուռկանի մէջ, զրկեց Լամբրոնի սեփականութիւնից ու որոշ ժամանակ բանտարկեց Հեթումին: Նա զզուած ներքուստ*[2] *եւ արտաքուստ խռովայոյզ աշխարհից, աթոռն թողեց անդրանիկին եւ ինքն բանտի մէջ հագաւ վանականի տարազն ու խոնարհութիւնը, անունը Հեղի փոխելով: Արքայի հետ հաշտուեց, իրարից թողութիւն խնդրեցին, համբուրուեցին ու լացեցին եւ Տորոսի ժայռի խրոխտ իշխանը մտաւ Թրազարկի անշուք ու սրբանուէր որմերի մէջ, ուր եւ փակեց երկնապիշ աչքերը*[3]*:*

*Տարաբախտ* ***Ռիթան*** *տեսա՞ւ արդեօք իրեն լքող ամուսնու կեանքի այդ տխրազգեցիկ վերջաբանը, թէ վիշտը վաղուց կրծել ու գերեզման էր տարել իրեն, քաղաքական հաշիւների ու պայքարների այդ զոհը: Կոստանդին արքայահայրն յետոյ Լամբրոնը կրկին շնորհեց Հեթումի Կոստանդին որդուն, որի մէջ զգալի է նոյն Կոստանդինի քրոջ եւ իր կեանկցի՝* ***Առիւծի*** *ազդեցութիւնը, միանգամայն թագադիր կարգելով աներորդուն իր որդուն՝ Հեթում արքայի: Կոստանդինը վեր բարձրացած իր հարց ապառաժի վրայ, նորից բարձրացնելով յօնքերն «իր հայրենի սովորութեան համաձայն». հարուածեց եւ հարուած ստացաւ, կորցնելով բոլոր գիւղերը եւ ամփոփուեց իր անմատոյց բոյնի մէջ*[4]*, ուստի հարկադրուեց խնդրել Գրիգոր Թ պապի միջնորդութիւնն եւ նա յորդոր գրեց* (19 *յուն.* 1237) *նրա քեռայրին ու քեռորդուն, Լամբրոնի տիրոջը չնեղել*[5]*: Թւում է թէ Առիւծն այդ ժամանակ արդէն աշխարհից մեկնել էր եւ գահը յաջորդին էր թողել*[6]*, իր եղբօր վշտերին ականատես ու մասնակից չլինելու համար:*

---

1. ***Հաւ. յիշ.*** 1290: — 2. ***Աստ՝*** 61: — 3. ***Տրգ. Կիլ.*** 294-96: — 4. ***Կիր.*** 157-58: — 5. ***Սմբ.*** 554: — 6. ***Աստ՝***68:

Հեթումեանները մինչեւ ե՞րբ մնացին իրենց ամրոցի մէջ, յայտնի չէ: Նոյն Կոստանդինի կրտսեր որդին՝ Օշինն եւ սրա որդին՝ Հեթումը բնակւում են ուրիշ բերդերի մէջ եւ 1285-ին Լամբրոնի տէրը նշանակւած է Հեթում Բ արքան[1]: «Ափ՛սս անցած փառքերին», կարող էր կրկնել Ա Օշինի այդ վեհ դաստակերտը, որ չեմ կարծում՝ թէ նոր ձեռքերի մէջ, դարձած երկրորդական մի բերդ, երբեք տեսաւ նորոգումն իր նախկին մեծութեան:

Ռուբինեան գահի վրայ բազմող Օշին արքան երբ մեռաւ, Կոռիկոսի համանուն տէրն, որդին ծանօթ Հեթում պատմիչի եւ ազգականը վախճանւողի, իրեն կնութեան առաւ նրա վերջին այրուն՝ **Յոհաննա** թագուհու, Տարենտոնի իշխանադուստրը, որին հարսնածու էր եղել, եւ փեսայից առաջ տեսել ու հրապուրւել էր նրա գեղեցկութեամբ: Իրենց միութիւնից ծնւեց **Մարիւնն**, որ յետոյ Կոստանդին Գ Արքայի ամուսինը պիտի լինէր: Կոռիկոսի տէրը՝ խստասիրտ մի մարդ, աննման գրագէտ ու բարեպաշտ ծնողի եւ նշանակւած Օշինի ուԹամեայ որդու՝ Լեւոնի, չորս խնամակալներից մէկը, սրով կամ տարագրութեամբ ջնջեց նրանց, որ հակառակում էին իր ամուսնութեանն այրի թագուհու հետ: Դրանցից մէկն էր Յոհաննայի տալը՝ **Զապլունը**, նախկին տիկին Սիդոնի, որի տնում մի օր յանկարծ երեւացին անծանօթ մարդիկ գազանաբար յարձակւելով բռնեցին ու խեղդեցին նրան: Ձերբակալեցին ու բանտարկեցին նրա որդիներին էլ, այնտեղ կտրելով Հիւգոնի եւ Հենրիկի կեանքը: Իսկ միւսներին բռնաւորն արձակեց, գիջելով որոշ իշխանների աղաչանքներին եւ գնացին ապաւինելով Հռոդոսի ասպետներին:

Օշինն աւելի զօրանալու համար, իր առաջին կնոջից ծնւած դուստրին՝ **Ալիծին**, ամուսնացրեց պատանի Լեւոն արքայի հետ: Սա երբ գաւազանը ձեռք առեց, իր աներոջ հակառակորդներն սկսեցին գրգռել արքային նրա դէմ, ամբաստանելով իբրեւ հօր մահւան պատճառն է եղել, որպէսզի իր խորթ մօր հետ ամուսնանայ: Նրա միւս ոճիրներն օգնեցին Լեւոնին սրան էլ հաւատալու եւ աներոջն ու նրա Կոստանդին եղբօրը սրածեց[2]: Այսպէս աւարտւեց խռովայոյզ կեանքն ու խրոխտանքը Կոռիկոսի պարոնի, որ սպանողի հետ տոհմակցութեան ու կրկնակ խնամիութեան կապերը չկարողացան փրկել եւ որին հաւասարւեց իր դստրի վախճանն էլ[3]:

16.- Բազմաթիւ են մեր անցեալում ազգախառնութեամբ իրար հետ միացած տոհմերը՝ մէկ կամ միւս նպատակով: Բայց կան որոշներն, որոնց ընդարձակման, զօրացման ու տեւողութեան մեծագոյն չափով նպաստել է հայուհին իր ամուսութեամբ: Թէ իրենց հռչակով եւ թէ մեր ներկայ աշխատութեան մէջ, դրանցից մեծագոյն

1. Սիս. 85: — 2. Դրդ. 27-29. **Պամ. Թր.** 157, 158: — 3. Աստ՝ 46:

կարեւորութիւնն ունեն՝ Պահլաւունիները, Ռուբինեաններն եւ երկու Հեթումեան տները, որ չորսն էլ սկսում են երեւալ եւ փայլել ԺԱ դարից: **Պահլաւունիներն**, որ իշխեցին նախ Բջնոյ եւ ապա Տարօնի եւ Միջագետքի կողմերում, ընդունած հարսերից բոլորն էլ ծանօթ չեն: Ծանօթներից որոշների ազգատոհմն անյայտ է եւ որոշներն էլ իրենց տնից են: Իսկ ուրիշ հայ տոհմերին տրւած եւ ընդունւած յայտնիներից գիտենք անւանի Գր. Մագիստրոսի դուստրին ու Գր. Վկայասէր կաթողիկոսի քրոջը՝ **Մարիամն**, որ պսակւեց Աղթամարի եւ Ամիւկ ամրոցի տիրոջ՝ Արդլմսեհ Արծրունու հետ: Միւս քոյրը՝ **Տիկնաց տիկին**, կենակից գնաց երեւելի Վեստ Սարգիս իշխանին՝ եկեղեցիներ ու վանքեր կառուցող[1] եւ տէր զանազան բերդերի, որ նախ աչարձակ եւ ապա մատնիչ եղաւ Բագրատունեաց գահին[2]: Նոյն Մագիստրոսի թոռան՝ Ապիրատի որդին Վասակ կամ Վասիլ, Շնորհալու եղբօր, լծակից ունեցաւ Լամբրոնի տիրոջ՝ Ա Հեթումի, դուստրը՝ **Մարեմիկին**, որը Տարսոնի մեծ արքեպիսկոպոսի՝ Ներսէսի, հօրաքոյրն էր: Իսկ նոյն Մարեմիկի եղբայրն՝ Օշինը, փեսայացաւ նոյն տիկնոջ տագեր՝ Զօրավարի զաւակ՝ **Շահանդուխտին**[3]: Հուսկ՝ յիշւած Վասակի դուստրը՝ **Վանինէն**, ամուսին գնաց - մէկ ազգականուհուց յետոյ– Սասունի տիրոջ՝ Զորտւանէլեան Վիգէնի՝ որդի Զորտւանէլին[4]: Այս բոլոր խնամութիւնները հայ կարեւոր տոհմերի հետ էին եւ թերեւս այս էլ նպաստեց Պահլաւունիների երեք ամբողջ դարեր ապրելուն:

Միւս երեք երեւելի տները փայլեցին հայացած Կիլիկեայի մէջ, որոնց խնամութիւնները տարածւեց նաեւ արեւմուտքի մէջ, իրենց մերձաւորութեան պատճառով: Նրանց մէջ յանդգնութեամբ, զօրութեամբ ու տիրապետութեամբ գերազանցում էին **Ռուբինեանները**, որ նաեւ առաւել յարգանք կամ երկիւղ ազդեցին ուրիշ ազգատոհմից եւ լաւագոյն խնամիութիւններ կնքեցին Հայոց եւ աւելի օտարների հետ: Ծանօթներից գիտենք, թագաւորութիւնից առաջ, իրենց նահապետի որդին՝ Կոստանդին Ա, որ իր դուստրին (անանուն) տւեց Եդեսիայի կոմսին՝ Բ Ջոսլենին: Իր որդին՝ Թորոս Ա՝ **Արտա** զաւակին, հարսնացրեց նոյն քաղաքի յաջորդ իշխանին եւ Երուսաղէմի ապագայ թագաւորին՝ Ա Բալդւինին: Նոյն Թորոսի եղբայրը՝ Լեւոն Ա-ն, կենակից ունեցաւ Յունաստանի Ալեքսի կայսեր եղբօր՝ Սահակ Կոմնենիի, դուստրը՝ **Մարիամին**[5]: Իսկ իր զաւակն (անանուն) տւեց Քեսնոյ մեծազօր իշխանին՝ Գող Վասիլի որդեգիր եւ յաջորդ՝ քաջարի Տղայ Վասիլին[6], որի երկիրն յետոյ Լեւոնի յիշեալ եղբայրը՝ Թորոսը, նենգութեամբ յանձնեց Եդեսիայի յիշեալ Բալդւին կոմսին եւ երիտասարդը զօրքովն անցաւ կայսեր կողմը[7]: Նոյն Թորոսն ամուսնացաւ նախայիշեալ Ջոսլենի եւ իր

1. Կիր. 51: — 2. Լաս. 37-38: — 3. Աստ՝ 31: — 4. Աստ՝ 39: — 5. Սիր. 50: — 6. Ուռ. 324, 337: —7. Նոյն՝ 337:

քրոջ (անանուն) դուստրի հետ[1]: Լեւոնի որդին՝ Թորոս Բ, իր **Ռիթային** ամուսնացրեց Հեթում Լամբրոնացու հետ, որ տեսանք ձախորդ ամուսնութիւն էր[2]: Իր եղբայրն՝ Ստեփանէ, ամուսնացաւ Պապեռոնի տիրոջ Հեթումեան Սմբատի դուստր՝ **Ռիթայի** հետ: Սրանց որդին՝ Ռուբէն Բ, իր կեանքը կապեց **Զապէլի** հետ, դուստրը՝ Տոլոնի տիրոջ Համփրէի[3], որ Երուսաղէմի թագաւորութեան իշխաններից էր: Իսկ իր զաւակներն՝ **Ալիծը** Սասունի տիրոջ Զորտւանելեան Հեթումին[4], **Ֆիլիպը** Նիկիայի կայսեր Լաշքարին, եւ հաւանօրէն **Դոլեսը** Բիբլիոնի կոմս Հիւգոնին հարսնացան: Հուսկ Ռուբէնի կրտսեր եղբայրը՝ Լեւոն մեծն ու վերջին պայազատը գահին, ամուսին ունեցաւ նախ Անտիոքի Բոհեմոնդ Գ իշխանի աներորդու դուստրը՝ **Զապլունին**, եւ յետոյ Կիպրոսի Ամորիկ թագաւորի դուստրը՝ **Սիպիլին**: Իր զաւակներից **Ռիթային** հարսնացրեց Երուսաղէմի արքայի՝ Յոհաննէս բրիենացու, եւ **Զապէլին** խոստացաւ Հունգարիայի արքայորդուն, որ ապա ամուսնացաւ նախ Անտիոքի իշխանորդու՝ Փիլիպի հետ եւ ապա Հեթում պապեռոնացու հետ եւ Ռուբինեանների փառաւոր ցեղը մարեց:

**Հեթումեանների** նախահայրը յիշւում է Օշին Ա, եկած Արցախի նահանգից (ԺԱ դարում) եւ հաստատուած Կիլիկիայում, կայսերական իշխան Ապլխարիպ Արծրունու հետ, որ իրեն շնորհում է լքւած եւ ամայի Լամբրոնի դղեակը եւ նորոգում է իր բնակութեան համար[5], որի չքեղութիւնը տեսանք[6]: Իր ընտանիքը գնալով բազմացաւ, այնպէս, որ թոռը՝ Սմբատը, բաժանւեց Օշին Բ հարազատից եւ ստացաւ Լամբրոնի դիմացի ու նախապէս Ապլխարիպի սեփական Պապեռոն ամրոցն, իր եւ սերունդների համար, որոնք եւս հետզհետէ բաժանւեցին ու տէր եղան Ճանճիի, Կոռիկոսի, Նղիրի, Սարւանդիքարի եւ այլ բերդերի: Այդ բոլոր տոհմակից ճիւղերը հարսներ տւեցին եւ առեցին ամենաբարձր տներից եւ յաճախ իրարից եւս, ինչ որ լաւագոյն կերպով զօդում էր իրար հետ:

**Լամբրոնացիք** շնորհիւ յոյն կայսրութիւնից ընդունած պատիւների եւ տոհմային նուրբ դաստիարակութեանը, չատ բաղձալի խնամիներ եղան: Նրանց յիշւած նախահայրն՝ Օշինն, իրեն փեսայ դարձրեց Ապլխարիպի աւագանիից Սահակին, որ յաջորդեց Արծրունուն Տարսոնի ու Մամեստի վարչութեան մէջ[7]: Իր թոռն Օշին Բ ամուսնացաւ Շնորհալի հայրապետի եղբօր՝ Պահլաւունի Շահանի, դուստրի՝ **Շահանդուխտի** հետ, իսկ թոռնուհին՝ **Մարեմիկը**, նոյն Շահանի հարազատի Վասիլի

---

1. *Միխ. Աս.* 423: — 2. *Աստ՝* 60: — 3. ***Տոհմք.*** 453, 445: — 4. *Աստ՝* 61: — 5. ***Հյպ.*** 413. ***Սիս.*** 77: — 6. *Աստ՝* 63-4: — 7. ***Հյպ.*** 413:

հետ: Նոյն Օշինի որդին՝ Հեթում Բ-ը, կապւեց (ակամայ) Ռուբինեան Բ Թորոսի զաւակի՝ **Ռիթայի** հետ[1], իսկ դուստրը՝ **Թագէր** կամ **Մարեմ**, մայրն է Ներսէսի եւ **Մարիամի**, բայց կենակիցն անյայտ: Նոյն Հեթումի զաւակն՝ **Աւիծը**, հարս գնաց Պապեռոնի տիրոջ եւ իր թոռնակցին՝ Կոստանդին պայլին: Սոյն տիկնոջ եղբօրորդուն Հեթումի դուստրը՝ **Կեռանը**, պսակակից եղաւ Կիլիկիայի Լեւոն Բ արքային. դշխուհու քոյրն՝ **Ալիծն**, ամուսնացաւ Բերութի տիրոջ՝ Բալիանի հետ, իսկ երրորդ քրոջ՝ **Մարիւնի**, կենակից ու որդիները յիշւած չեն: Տիկնների երկու հօրաքոյրերը՝ **Կեռանն** ու **Շահանդուխտը** ծանօթ են իրենց զաւակներով միայն. առաջինի՝ Կոստանդին «թագադիր Հայոց», Օշին ու Սմբատ եւ երկրորդին՝ Լեւոն «հարբն իւրով»: Այս տիկինների եղբօր՝ Գ Օշինի, միակ դուստրը՝ **Թեֆանոյի** այրն էր Հեթումեան «քաջասիրտ Ճոֆրին», տէր Սարւանդի, որ 1274ին նշանակւում է իբր հանգուցեալ փեսայ նոյն Օշինի[2]: Պատմութիւնն անյայտ է թողել նոյն տիկին Կեռանի՝ մօր **Ստեփանեայի**, եղբօրն՝ Օշինի կնոջ **Ակացիին**, եւ Կեռան թագուհու մօր՝ **Թէւանուի**, հայրենի տոհմերն էլ: Այս անձերն ընդհանրապէս նշանակւել են նոյն 1274ի յիշատակարանի մէջ: Լամբրոնի օրիորդներից Մարեմիկը մայր եղաւ Գրիգոր Տղայ կաթողիկոսի: Աւիծը՝ Հեթում Ա արքայի, եւ կրտսերն Կեռանը՝ դշխուհի եւ մայր հինգ թագաւորների: Ի՞նչ չքեղ ներկայացուցիչներ այդ զարմի:

Աւելի բազմաթիւ էին **Փապեռոնացիներն** իրենց ճիւղերով եւ իրենց խնամիութիւններով էլ համեմատական: Ամրոցի առաջին տիրոջ Սմբատի դուստրը՝ **Ռիթային**, տեսանք Ռուբինեան Ստեփանէի կինը դարձած, որը կեանք տւեց նրանց արքայական գահի հիմնադրին՝ Լեւոնին: Նոյն Սմբատի թոռան՝ Կոստանդին պայլի կենակից եղան նախ **Աւիծ** լամբրոնացին, ապա **Փիադրիծն** անծանօթ տոհմից, եւ իր երէց որդին՝ Հեթումը, ամուսին ու թագակից ընտրւեց յիշեալ Լեւոնի դստեր՝ **Ջապէլին**, որոնց գահի վրայ նստեց իրենց տոհմը 175 տարի մինչեւ Կոստանդին Դ: Նոյն պայլի որդուն՝ Սմբատ գունդստապլի կնոջ՝ **Թեֆանոյի**[3], տոհմն անծանօթ է. նոյնպէս միւս որդու՝ սիր Լիկոսի կենակից՝ **Ակացիին** էլ, իսկ նրա պայլի դուստրն՝ **Ստեփանէին** կամ **Թեֆանոն**, թագուհի գնաց Կիպրոսի Ա Հենրիկի հետ. միւս դուստրը՝ **Կալամարին** կամ **Մարիամը**, կին եղաւ անւանի Յոհան իբլինացուն. եղբօրորդին՝ Ճոֆրին, տէր Սարւանդիքարի ամուսնացաւ **Թեֆանօ** լամբրոնացու հետ եւ սրանց որդու Օշինի դուստրը՝ **Ջապէլը**, հարսնացաւ Բերութի իշխանորդու Թորոսին: Յիշեալ պայլի թոռը՝ Պաղտին մարաջախտը՝ պսակւեց իր պապի թոռնորդու եւ Սմբատ գունդստապլի թոռան՝

1. Աստ՝ 60: — 2. *Հնգ. տոհ. ԺԲ*, 245: — 3. Աստ՝ 51:

**Մարիունին**[1] հետ. որոնց որդին էր Կոստանդին Գ թագաւորը եւ իրենց մէկ դուստրը՝ **Զիմիկը**, կենակից գնաց Լիւսինեան Բոհեմոնդին Կուրկոսի ամրոցի մէջ:

Ռուբինեանց գահի ժառանգ՝ **Հեթումեանններն** էլ տուեցին եւ ընդունեցին թագուհիներ եւ իշխանուհիներ: Հեթում Ա իր զաւակներից **Սիպիլին** լծակցեց Անտիոքի Բոհեմոնդ Է իշխանին. **Զիմիին**՝ Սիդոնի տիրոջ Ցուլիանին. **Ռիթային** յիշեալ Ճոֆրիի իշխանին, անդրանիկին՝ Կոստանդինին. **Մարիամին**՝ Գուիդոն Իբլինացուն եւ Լեւոն գահաժառանգին՝ Լամբրոնացի **Կեռանին**, ինչպէս վերը ասեց: Այս վերջին ամոլի զաւակներից **Ռիթան**՝ կենակից գնաց Անդրոնիկոսին եւ կայսերուհի Կոստանդնուպոլսի. **Զապլունն**՝ իր բախտը կապեց Կիպրոսի Հենրիկ Բ արքայի եղբօր՝ Ամորկանի հետ, Դ Լեւոնի յաջորդը տալով Հայոց գահի վրայ իր որդուն Կոստանդին Բ, եւ Դ Կոստանդինի յաջորդը՝ Թոռը Լեւոն Ե: Զապլունի եղբայրներից Թորոսը փեսայացաւ յիշեալ Հենրիկ Բ թագաւորի քրոջը՝ **Մարկրիտին**. Սմբատը՝ Գուիդոն Իբլինացու զաւակի՝ **Զապէլի** հետ. եւ Օշինը՝ նախ վերոյիշեալ Կոստանդին պայլի Թոռան՝ **Զապէլի** հետ, որը Հեթում պատմիչի դուստրն էր, եւ ապա Տարենտայի իշխանադստեր **Յոհաննայի** հետ, որը Սիկիլիոյ Ռոբերտ արքայի եղբօրորդին էր[2]: Նոյն Օշինի որդին՝ Լեւոն Դ, պսակւեց նախ նոյն պատմիչ իշխանի Թոռան՝ դժբախտ **Ալիծի** հետ, եւ յետոյ Կիպրոսի այրի Թագուհու **Կոստանդիայի** հետ[3]: Իսկ Օշինի եղբօր՝ Թորոսի որդին, Լեւոն Գ յիշեալ Ամորկանի եւ իր հօրաքրոջ դստեր **Ագնեսի** հետ:

Այսչափը բաւական եմ համարում ցոյց տալու համար Թէ հայ օրիորդի ամուսնութիւնն որքան մեծ դեր է կատարել ազնուական հայ կամ օտար տոհմերի ընտանեկան ու քաղաքական յարնչութեան մէջ: Հայոց հարս գնացողների կենսագրական տեղեկութիւնները փոքր ի չատէ նախապէս տեսանք եւ դեռ յաջորդաբար պիտի տեսնենք, իսկ օտարներինը, ինչպէս ասացինք, մեր վերջին գլխի մէջ:

Այս ներկայ գլուխը դեռ չփակելով նկատի առնենք ըստ իմ խոստմանը հայ հարսանեաց ամփոփ նկարագրութիւնն էլ, իբր լրացուցիչ յաւելած մեր նիւթին եւ հայուհու կեանքի կարեւոր դրւագներից մէկը: Դարերի ընթացքին փոփոխւեցին սովորութիւնները, որը խառը պիտի յիշեմ, աղբիւրներից տեղեկանալով նրանց գոյութեան ժամանակը:

---

1. **Սիս** 149: — 2. **Սմ. Տրգ.** 129: — 3. **Աստ**՝ 46:

# ՀԱՐՍԱՆԻՔ

Ըստ արմատի **հարսանիք**[1] նշանակում էր հարս բերելու հանդէսը: Եւ սկսում էր հարսնախօսութեամբ, որում **միջնորդներ** կամ **առիթներ**[2] կամ **խօսնակներ**[3], այրերը երիտասարդի կողմից եւ կանայք՝ կոյսի[4], գնում էին առաջինները աղջկայ եւ վերջինները երիտասարդի տունը, քննում էին նրանց ընտրածի դաւանութիւնն ու տոհմային աստիճանը, որ իրար հաւասար պիտի լինէին[5] եւ ստանում էին, երկուստեք, իրար հաւանութիւնն, իւրաքանչիւրն իր թեկնածուի գովքն անելով ըստ անձի եւ ընկերային վիճակին[6]: Արքայազանց ամուսնութեան մէջ անհրաժեշտ էր թագաւորի կամքն էլ եւ Տիրիթը հրաման խնդրեց Արշակից **Փառանձեմի**[7] հետ ամուսնանալու համար: Համաձայնութիւնից յետոյ երիտասարդը գնում էր կոյսի տունը, իրար տեսնում, հաւանում էին ըստ եկեղեցու կանոնների[8], եւ ապա կատարւում էր **դաշն ամուսնութեան**[9] կամ **խօսումն**[10] կամ **նշանադրութիւնը**,[11] որին միջին դարում ընկերակցում էր եկեղեցական արարողութիւնն էլ քահանայի ներկայութեամբ «խաչփոխ առնելով[12]» կամ իրար յանձնելով խաչն իբրեւ վկայ տրուած խոստման: Յետոյ կոյսի ձեռքն երիտասարդի ձեռքի մէջ դնելու սովորութիւնն էր կատարւում[13] եւ աւելի ուշ կամ գուցէ դրա հետ հարսնացուին իբր նշան տալիս էին «մատանի, ապարանջան կամ ականջօղ[14]»: Սրան յաջորդեց՝ ըստ 1342-ի ժողովին ու Տաթեւացուն՝ արեւմտեան փոխանակութիւնը կամ «մատանու աւանդումը» խօսեցեալներին[15], որը դնում էին «երկու տանուտէր եւ մի քահանայ» ըստ Գ. Երզնկացուն[16]: Կամ ըստ Տաթեւացու՝ խօսք տուածներն իրար մատին էին անցկացնում[17] եւ այնուհետեւ դառնում էին իրար երիտասարդն՝ **ընկալուչ**[18] կամ **խօսնայր**[19] եւ կոյսը՝ **խօսեալ** կամ **խօսեալ ընկալուչ**[20]: Այստեղ հարսնացուի ծնողներին «եւ կամ նրանց նմաններին» տրւում էր «մի թաս գինի» ժողովրդական սովորութեամբ, իսկ ամէն տօներին մինչեւ պսակը խօսք տուածի տունն էին գնում «ընծաներով եւ կերակուրներով[21]». ընծան փեսացուին եւ կերակուրն հարսնացուի կողմից:

---

1. **Մննդ. ԻԹ**, 22 եւն: — 2. Եփր. Բ, 311: — 3. Օձն. 27: — 4. **Քրգ. ամ.** 199: – 5. Անձ. 233: — 6. Լմբ. **Պտ.** 122: — 7. Փաւս. 122: — 8. Աստ՝ 29: — 9. Ձբր. 107: — 10. Եփր. Բ, 307, 309: — 11. Յհ. եղ. Խր. Ե, **Հրց.** 609: – 12. **Մշտ.** ԺԱ դարու: — 13. **Մշտ.** 1216-ի: — 14. Անձ. 233: — 15. Մնս. ԻԵ, 1264, **Քրգ. ամ.** 199-200: — 16. Գեւ. եղ. Պս: — 17. Քրգ. ամ. 199: — 18. Ոսկ. Մտթ. Ա, 53: — 19. Շն. Մտթ. 29: – 20. Ոսկ. Մտթ. Ա, 47, 53: — 21. Անձ. 233:

*Պսակի օրը որոշւում էր «ծնողների» կողմից[1] եւ ըստ եկեղեցական կանոնների պահոց, կիրակի, չինաց եւ ուրիշ տօնական օրերին չպիտի լինէր: Այնչափ, որ Դւինի 719-ի ժողովը մինչեւ իսկ անվաւեր հռչակեց այդ օրերի կատարուածը[2]: Արդէն Ջագայ ժողովի համեմատ (1270-ին) ամուսնացածներն էլ այդ օրերին իրարից հեռու պէտք է մնային[3], ինչպէս կարգադրւում կամ խրատում են նաեւ Դաւիթ Գանձակեցին[4], Յոհան[5] ու Մովսէս[6] Երզնկացիք եւ Յակոբ Ղրիմեցի[7] վարդապետներն երկու պարագայի համար: Պսակից առաջ, բոլոր ազգականների եւ բարեկամներին, հրաւէր էին ուղարկում եւ եթէ փեսացուն թագաւոր էր, ամբողջ հայ աշխարհին, ինչպէս աւանդւում է[8] եւ Գ Արշակի եւ նրա Վաղարշակ եղբօր հարսանիքներին ամբողջ նախարարութիւնը ներկայ էր[9]: Մինչ այն կոյսի (իհարկէ նաեւ երիտասարդի) հօր պարտականութիւնն էր «հարսի ու փեսայի գլուխներին պսակ դնել եւ տնտեսականն հոգալ[10]», որ հարսանիքի պատրաստութիւնը տեսնեն: Իսկ եկեղեցին պահանջում էր նախորդ երեկոյից պարկեշտութեամբ անցնել, որպէսզի խոսեցեալներն արժանի լինէին «պսակի օրհնութեան եւ աստուածային հաղորդութեան[11]»: Հետեւաբար պսակը կատարւում էր «առաւօտից մինչեւ ճաշի ժամը[12]»:*

*Առաւօտեան խօսեցեալներն ընդունում էին իրենց ծնողների օրհնութիւնը, ինչպէս կատարեց Կոստանդին պայլի որդու՝ Լեւոնինն, երբ Կիպրոս էր գնում ամուսնանալու[13]: Իսկ եկեղեցի չգնացած* ***փեսան ու հարսն*** *–ինչպէս այժմ կոչւում են[14] - զարդարւում էին. առաջինը «պաճուճանում, պճնում էին զարդերով եւ փեսայի զգեստը» եւ «զէնքերով[15]», որն էր «սուրը կապում էին մէջքին[16]». միջին դարում սովոր էին նրան նաեւ «խաչգօտի կապել՝ կարմիր յետոյ եւ առաջի[17]», կամ «խաչկոճ ուսովն էին կապում» երկուսին էլ[18]: Իսկ հարսին «զարդարեն պայծառ եւ հրաշալի երկար զգեստով, մաքրափայլ հագնելիքով եւ հոյակապ տեսքով, ոսկեհուռ զարդարած[19]». պարանոցին քառամանեակ, ականջներին գնդեր, ձեռքերին ապարանջաններ[20] կամ ըստ ԺԳ դարի մի գրիչի՝ պճնուած «ոսկով եւ մարգարիտներով եւ պատուական քարերով[21]» եւ թանկագին քօղն էլ երեսին[22]: Նրանց հանդերձի նախընտրելի գոյնը համարւում էր սպիտակը[23]: Հարսանեաց զգեստն ուրիշ տեղ մանրամասնօրէն նկարագրել եմ[24]: Իսկ*

1. ***Զքր***. 107: — 2. ***Օձն***. 24, 25: — 3. ***Կան. Դ***: — 4. ***Ալաւ. ԽԸ***: — 5. ***ՅՀ. եզ. Խր. Ե***: — 6. ***Մ. եզ. Խր***: — 7. ***Ղրմ. Փս***: — 8. ***Ագթ***. 114: — 9. ***Փաւս***. 256: — 10. ***Ոսկ. Պօղ. Ա***, 670. ***յն. չունի, իսկ պրս. ուղ՝ հանդերձանք է***: — 11. ***Օձն***. 25: — 12. ***Շն. Նմկ***. 167: — 13. ***Տրգ. Կիլ***. 238: — 14. ***Մաթ. ԻԵ***, 1 ***եւն***: — 15. ***Զքր***. 107: — 16. ***Գեւ. եզ***. 251: — 17. ***Անծ***. 233: — 18. ***Գեւ. եզ***. 252: — 19. ***Զքր***. 107: — 20. ***Օձն***. 1. ***Սոփ. ԺԵ***, 43: —21. ***Նրկ***. 532: — 22. ***Փաւս***. 229 ***եւն***: — 23. ***Սրգ***. 93. ***Անծ***. 233: — 24. ***Փամ. տրգ***. 296-300:

եթէ հարսնեւորները կարողութեան տէր չէին, տնից տուն փոխ էին խնդրում «չքեղ հանդերձներ[1]», որպէսզի հանդէսի փայլն ու չքեղութիւնը ապահովէին:

Այսպէս պատրաստուելուց յետոյ փեսան «զարդափայլ երիվարի» վրայ[2] հեծած եւ շրջապատուած «փեսաւերներով[3]» բոլորը նոյնպէս պճնուած «գեղեցիկ զարդերով» զինուած ու նստած «գեղեցիկ զարդարուած երիվարների» վրայ[4] գնում էին հարսի «դուռը» երգելով[5], ուր նախապէս հրաւիրեալները հասնում էին տեղեկացնելու փեսայի գալուստը, որին գեղջուկներն «աղուէս» էին կոչում, գաղտնի գալու համար[6]: Հարսը վարէր իջնում ու մեծ թափոր էր կազմւում: Փեսան առջեւից իր խմբով եւ միշտ ձիու վրայ, իսկ հարսն ետեւից նոյնպէս հեծած, ինչպէս ասում է Անծանօթն ընդհանուր կերպով «երիվարներով» եւ դեռ նոյնպէս տեսնւում էր Տուռնփորտ ի Հայս 1701-ին[7]: Հայ կանանց հեծնելու մասին հանդիպելու ենք նաեւ յետոյ: Բայց արքայական հարսանեաց մէջ հարսի համար «ոսկով պատուած գահաւորակ՝ սպասաւորներով» արքունիքից էին տանում[8]: Իսկ հարսին ընկերանում էին «հարսնեղբայրներ»[9] կամ «հարսնածուներ»[10], որոնց մէջ օրիորդներ եւ կոյսեր կային նոյնպէս զարդարուած ըստ իրենց վիճակին եւ արքայական հարսանեաց մէջ «ոսկեկուռ չքեղաչուք երփներանգ զարդերով»[11]. այս հետեւորդները ոմանք նոյնպէս ձիով եւ ոմանք հետիոտն էին[12]: Արքայական հարսանեաց մէջ հարսնածու էին «նախարարներն եւ մեծամեծ աւագներն», որ գնում էին իբրեւ «չքախումբ՝ պատիւ տալու» հարսին եւ բոլորն հեծեալ[13]: Այնտեղ մի խումբ ձիաւոր պատանիների «փառաւոր անապակ բաժակացն» եւ «փողփողացող դրօշներ» բռնած սկսում էին արշաւել ու կայթել առջեւից եւ ետեւից. ուրիշ դրօշակակիրներ ու տիգաւորներ փեսայի ու հարսի կողքերից էին գնում[14]: Եւ սրանց հետ միասին գուսանները՝ երգով ու նուագարանով կամ «չատ երգերով եւ նուագարանով, ծնծղաներով ու քնարներով[15]», որոնց հետ մոմեր էլ տեսնւում էին իւրաքանչիւրի ձեռքին Տուռնփորտ՝ վերջին սովորութեամբ:

1. Մշկ. 66: — 2. Զքր. 107: — 3. Ոսկ. Պօղ. Ա, 896. Եփր. Բ, 307: — 4. Զքր. 107: — 5. Գեւ. եզ. 251: — 6. Անծ. 233: — 7. Տուռ. Գ, 281: — 8. Ագթ. 131: — 9. Ոսկ. Պօղ. Ա, 896: — 10. Զքր. 108: — 11. Խոպ. 311: — 12.Տուռ. 281: — 13. Ագթ. 136, 139: — 14. Զքր. 107: — 15. Ճն. Նմկ. 162, 167. Անծ. 233:

Հասնելով եկեղեցու դռան առջեւ, իջնում էին ձիերից: Փեսան ու հարսն իրենց խմբերով մտնում էին գաւիթ[1], ուր քահանան պատարագի հանդերձով ընդունում էր նրանց[2]. հրապարակով հարցնում էր նշանադրուածների հաճութիւնն ամուսնանալու, եւ նրանց կեանքի կարեւոր խրատներ էր տալիս[3]: Գիտենք որ հարսանեաց հանդերձի օրհնութիւն չկար առաջագոյն եւ չենք տեսել Ս. Ղազարի 16 մաշտոցների մէջ, բոլոր դարերից, սկսած ԺԱ-ից մինչեւ 1647-ի օրինակը եւ երեւում է նախ 1674-ի եւ 1682-ի գրուածների մէջ: Իսկ կիլիկեան 1345-ի օրինակն արեւմտեան սովորութեամբ մատանիների օրհնութիւնն ու տւչութիւնն է դնում. եւ մի ուրիշը (1401-ից աւելի առաջ) նշում է պսակադրութիւնից յետոյ բաժակի հետ: Իսկ ըստ բնիկ սովորութեան, այստեղ կատարւում էր նշանածների ձեռքերն իրար հետ միացնելու արարողութիւնը[4]: Ապա բացւում էին տաճարի դռներն եւ բոլորը ներս էին մտնում[5] շարական երգելով[6]: Մտնելու ժամանակ հարսը փեսայի աջ կողմումն էր եւ փեսան աջով նրա ձախը բռնելով[7] եւ քահանայի առաջնորդութեամբ գնում ու կագնում էին բեմի առջեւ[8]:

Ըստ Յոհան ու Մովսէս Երզնկացիներին եւ Յակոբ Ղրիմեցուն պսակումը նախքան պատարագն էր կատարւում: Սոյն 1345-ի մաշտոցն ընդհակառակն արեւմտեան սովորութեամբ նրանց իրար է խառնում՝ քահանայական ձեռնադրութեան պէս. պսակի գլխաւոր արարողութիւնը դնելով վերաբերութեան ընծայից յետոյ եւ ճաշակման պահին էլ նորապսակները հաղորդութիւն էին ստանում: Իսկ ըստ սովորական արարողութեան՝ բուն պսակման մէջ շատ քիչ բան կար աղօթքներից եւ շարականներից: Նախ քահանան փեսայի ու հարսի գլուխները դնում էր «բեմի վրայ՝ իբրեւ սալի վրայ» իրար մօտ[9] եւ նրանց վրայ մի խաչ գետեղելով աղօթում էր[10]: Յհ. Երզնկացին՝ եւ միայն ինքը. խաչի հետ Աւետարանի դրութիւնն էլ յիշում է, իբրեւ նշան նրանց անխախտ միութեան:

Պսակումը յաջորդում էր, սկսած Դ դարից՝ յայտնի մեր ամբողջ անցեալի մէջ: Գլխի զարդը. զոյգ թւով. սովորաբար կոչւել է **պսակ**[11], եւ երբեմն էլ **թագ**[12] կամ **թագ պսակի**[13] եւ նրա նպատակն էր «թագաւոր դարձնել» ամուսնացողներին[14]: Հին ժամանակներից ամէնի համար շինւում էր դալար ծաղիկներից, ինչպէս ակնարկում է

---

1. **Մշտ.** 1216-ի, 1345-ի: 2. **Մշտ.** 1345-ի: 3. **Մշտ.** 1216ի, 1345ի. Ղրմ. Պս: — 4. Մշտ. 1216-ի, 1493 եւն. Ղրմ. Պս. 5. Մշտ. 1216-ի, 1345-ի, 1499-ի Ղրմ. Պս.: -- 6. Մշտ. 1345-ի: -- 7. **Արգ. ամ.** 197, 202. **Գեւ. եզ.** 251, 255: 8. **Մշտ.** 1338-ի, 1345-ի, 1436-ի, 1499-ի: 9. **Յհ. եզ. Խր. Ե**: — 10. **Մշտ.** 1338-ի, 1436-ի, 1499-ի: -- 11. **Փաւս.** 229 **Շհպ. Գ. Օձն.** 10 եւն: -- 12. **Օձն.** 11. Մշկ. 69. **Արգ. ամ.** 197. **Գեւ. եզ.** 254: 13. **Արգ. ամ.** 202: 14. **Օձն.** 11. **Արգ. ամ.** 203:

Եղիշէն, խօսելով տոհմիկ դասի մասին նոյնպէս[1], որ յաճախ յայտնապէս էլ յիշւած է, ուր միջին դարում ազնւականների համար փոխւել «ոսկեկուռ» էր եղել[2]: Քահանան դրանք նախ զետեղում էր բեմի եզերքին, օրհնում[3] եւ ապա դնում էր պսակւողների գլխին[4]: Միջին դարում կայ **նարօտը** կամ **առասանն** էլ, կարմիր ու ճերմակ գոյնով[5], որ ըստ Անծանօթին ոլորում էին երեք բամբակ թելերով՝ փեսեղբայրը քահանայի հետ եւ հարսի քոյրը նոյնպէս քահանայի հետ եւ նրանով խաչը կապում էին փեսայի վզից[6]: Գեւ. Երզնկացին նշում է պսակի հետ փեսայի մէջքին թուրը կապելու սովորութիւնը, որ վերը տեսանք իր վկայութեան մէջ[7] եւ երեւում է, որ նախապէս այն կրելը դադարել էր այդ դարում: Այս զարդերով լրանում էին նրա թագաւորական նշանները եւ այժմ «փեսան թագաւոր էր կոչւում» կամ ըստ 1507-ի մաշտոցին «փեսային թագաւոր էին անւանում»: Նրանից յետոյ քահանան մի բաժակ գինի էր օրհնում եւ ըմպել էր տալիս երկու պսակւողներին միայն[8], որպէս խորհուրդ Կանայի հարսանիքի[9], ուր Սսոյ 1345-ի մաշտոցը բաժակի մէջ նշխար էլ գցել ու պատարագից յետոյ ճաշակել էր տալիս:

Երկրորդ ամուսնութիւնն ու պսակը եկեղեցու համար յարգի չէին, որովհետեւ նրա մէջ առաջի սիրոյ եղծումն էր տեսնում: Այս պատճառով նւազ շուքով էր կատարւում: Դւինի 719-ի ժողովը «տխուր եւ անկատարեալ» էր անւանում այն[10]: Սրբազան բեմից հեռու «եկեղեցու մէջ» օրհնւում էր[11], իսկ ըստ բարսեղեան անհարազատ կանոնների նոյնիսկ «եկեղեցու դրան մէջ» էր կատարւում ամբողջ պաշտօնը[12]: Եւ կոյսերի օրհնեալ ծաղկեպսակի փոխարէն լոկ խաչակնքւած «ուռով» պսակում էին, ինչպէս սահմանել էր Շահապիվանի ժողովը. նոյնպէս այն ամուրիներին, որ պարկեշտ չէին ապրել եւ եթէ մէկը կոյս էր եւ միւսն այրի, առաջինը ծաղիկով եւ երկրորդն ուռենիով[13]: Գանձակեցին[14], Մաշկւացին[15] ու Տաթեւացին[16] չկուսանաց պսակի զանցառութիւնն են յիշում, բայց ոչ ուռը, որ բարսեղեանի յիշւած կանոնների մէջ կայ[17]:

Արարողութիւնից յետոյ տաճարից դուրս գալով պսակւողների աջ ու ձախ կողմերից սրեր բացելով[18], իսկ փեսան այդ ժամանակ հարսին իր ձախ կողմը թողնելով ձախ ձեռքովը նրա աջը բռնում էր[19]: Այստեղ նորապսակները «նստում էին եկեղեցու աստիճանին» եւ բոլորը նրանց շրջապատելով երկրպագում էին եւ փեսային թագաւոր

---

1. Եղշ. 157: — 2. Արծ. 191: — 3. Մշտ. 1499-ի: — 4. Շհպ. Գ. Մշտ. ԺԱ դարու եւ 1499-ի: — 5. Քրզ. ամ. 203. Մշտ. 1507-ի: — 6. Անծ. 233: — 7. Աստ՝ 71: — 8. Գեւ. եզ. 251: — 9. Քրզ. ամ. 197: — 10. Օձն. 11: — 11. Քրզ. ամ. 197, 203: — 12. Կան. մլէ: — 13. Կան. Գ: — 14. Ազաւ. ԾԱ: — 15. Մշկ. 69: — 16. Քրզ. ամ. 197: — 17. Կան մլթ: — 18. Անծ. 233: — 19. Գեւ. եզ. 252:

*էին կոչում[1], իսկ 1507-ի մաշտոցը ասում է «համբուրում ենք երկրպագելով» պսակւողներին: Եւ նոյն հանդիսաւոր ցնծութեամբ վերադառնում էին փեսայի հօր տունը[2], ճանապարհին շարական երգելով[3]: Արքայական հին հարսանեաց առթիւ, երբ թափորը հասնում էր արքունի տաճարի դրան առջեւ, թագաւոր փեսան դրամներ էր սփռում փեսաւէրներին եւ հարսը մարգարիտ՝ առագաստի մէջ եղած օրիորդներին[4]: Միջին դարում պսակւողները տան մէջ իրենց համար պատրաստ էին գտնում բարձր* ***մունդիտ***[5] *կամ* ***հաճլէք*** *կամ մի* ***թախտ***[6] *եւ հարսը փեսայի աջակողմը[7] բազմում էին նրա վրայ, որպէսզի «ակներեւ ամենքը տեսնէին[8]»:*

*Նւիրատւութեան հերթն էր եկել: Օժիտի զանազան մասերից բացի, որ տեսանք[9], կային նաեւ «բաժինք, օժիտք եւ պարգեւք». բաժինքն հարսի հօրից՝ «պսակի պէտքերի համար». օժիտքը՝ փեսայի կողմից էր տրւում նոր կենակցին. իսկ պարգեւները «բարեկամներից[10]», որ ծանօթ է նաեւ Մխիթար Գօշին. «միմեանց ազգականների ընծաները[11]»: Արշակունեաց օրով ազգն ինքը «օժտաբեր ընծայատար» կը լինէր արքայական հարսանեաց՝ «ըստ թագաւորների օրէնքներին[12]» եւ արքայ փեսան եւս իր կողմից տալիս էր «առատօրէն պարգեւներ բոլոր նախարարներին[13]»: Կար յատկապէս «կարգեալ բաժին» էլ պսակիչ քահանայի համար «ընծաներով» հանդերձ[14]: Այդ օրը նորապսակները չէին ուտում եւ խմում մինչեւ երեկոյ, ուր իրենց ընտանիքների առջեւ միայն մի թեթեւ բան էին ճաշակում[15]:*

*Հարսանիքի տեւողութիւնն անհաւասար էր ըստ ժամանակի, տեղի եւ կարողութեան. Գէորգ Երզնկացին եւ Անծանօթն «եօթն օր» են դնում, եւ Գր. Տաթեւացին «երեք օր[16]»: Այդ ուրախութեանց, գրում է Յհ. Սարկաւագը ԺԲ դարում, մի տաճարապետ էր նշանակւում փեսայի կողմից, իբրեւ նրա երկրորդն, որպէսզի «ինչ որ վայելուչ եւ արժանաւոր է սահմանի» առատօրէն մատակարարէր հիւրերին «հոգու ուրախութեան[17]»: Հանդէսի մէջ ըստ յիշւած Գէորգի կրում էին* ***ուռեր***, *որոնց վրայ 1507-ի մաշտոցը* ***դաստառակներ*** *էր կապել տալիս եւ որոնց զուցէ հարսանիքաւորները բռնում էին մանաւանդ եկեղեցի գնալու եւ վերադառնալու ժամանակ, ինչպէս երրայեցիները Յիսուսի շուրջը անում էին: Եւ ճաշակում էին, ասում է, յատկապէս*

---

1. **Անծ.** 233: — 2. *Նոյն՝* 233: — 3. **Մշա.** 1345-ի, 1499-ի: — 4. **Խոր.** **Բ**, **ծ**: — 5. **Գեւ. եզ.** 253: — 6. **Փրզ. ամ.** 202: — 7. **Գեւ. եզ.** 255: — 8. **Անծ.** 233: — 9. **Ասա՝** 33-34: — 10. **Փրզ. ամ.** 203: — 11. **Բուզ.** 98: — 12. **Ագթ.** 114: — 13. **Խոր. Գ**, **իբ**: — 14. **Կիր.** 172: — 15. **Անծ.** 234: — 16. **Գեւ. եզ.** 252. **Անծ.** 234 **Փրզ. ամ.** 204: — 17. **Սոփ. Գ.** 52-53:

ռւներ, կարմիր ու սպիտակ անուշահոտ խնձոր եւ կարմիր ձու[1]: Իսկ հարբեցութիւն եւ գեղխութիւն սովորական բաներ էին ամէն դարերի մէջ[2]:

Պարերն էլ անպակաս էին, որին մասնակցում էին գոնէ միջին դարում, «կոյսերը» կամ աղջիկները, բայց ոչ «ամուսնացած կանայք[3]». եւ սրանց հետ չարունակում էին «նւագարանները[4]» կամ փողերն ու սրինգները «յորդորելով պարը[5]»: Նոյնպէս երգեր, որոնց նիւթն արքայական ամուսնութեան առթիւ գովքն էր փեսայի աշխարհին ու տոհմին[6], իսկ ժողովրդի մէջ երգւածները, մեր խստաբարոյ տեղեկատուներից սահմանւում են «դիւական երգեր[7]» կամ «հեթանոսական» եւ «դիւական խաղեր[8]»: Ե դարում Ոսկեբերանը մեղադրում էր յոյն հարսանիքների մէջ անպարկեշտ կանանց մուտքը, հայ թարգմանիչն աւելացնում է «եւ վարձակների» ըստ մեր սովորութեան. եւ ուր նա յիշում է «զարս իգացեալս», հայը ասում է «եւ կանայք խեղկատակութիւն անում[9]»: Ուրեմն ակներեւ է գուսանաց ու վարձակների մասնակցութիւնն էլ հայ հարսանիքներում: Եւ այդ համարձակ զւարճութիւնները տեւում էր մինչեւ ԺԲ դար, ուր Շնորհալին տեսնում էր «անառակ տղամարդկանց կամ կանանց» ներկայութիւնն հարսանեաց հանդէսում, եւ «լսել եւ խօսել անուղղելի[10]»: Եւ ԺԴ դարում դեռ Բարսեղ Մաշկւացին գրում է «Այնտեղ տեսնում ես ամօթալի խօսք եւ ծիծաղ, հագուստները եւ քայլւածքը լի խայտառակութեամբ եւ բնաւ ուրիշ բան չկար բացի ծաղր ու կատակներ:... Որոշներն ձիու պէս խրխնջում եւ ուրիշներն իբրեւ էշ աքացի են տալիս եւ ըստ սատանայի կամքին ամէն ինչ կար. գուսաններ, փողեր եւ պոռնիկների երգեր եւ չնութեամբ լցւած[11]»: Եկեղեցու խստակրօն հայրերի պահանջած լուրջ ու բարոյալից հարսանիքը գուցէ երբեք գոյութիւն չի ունեցել մեզ մօտ:

Հարսանիքի երրորդ օրը վերցնում էին հարսի քօղը[12], իսկ ութերորդ օրն էլ պսակներն էին վերցնում[13], որը 1466-ի մաշտոցն «երրորդ օրւան» է դնում, Տաթեւացու վերեւը նշանակւած տեւողութեան համեմատ: Այս վերջի մասի համար էլ բոլոր հին մաշտոցների մէջ, սկսած ԺԱ դարի օրինակից, առանձին համառօտ մի կանոն կայ: Պսակւածները նորից եկեղեցի էին գնում[14], կամ քահանան նրանց տանում էր եկեղեցու

1. Գեւ. եզ. 252-53: — 2. Օձն. 24. Շն. Նմկ. 169: — 3. Մշկ. 65: — 4. Շն. Նմկ. 162: — 5. Խոր. 310: — 6. Խոր. 307: — 7. Շն. Նմկ. 167: — 8. Ալաւ. ԻԴ: — 9. Ոսկ. Պօղ. Ա, 664: — 10. Շն. Նմկ. 167, 169: — 11. Մշկ. 215: — 12. Գեւ. եզ. 256: — 13. Ժող. Զակայ. Դ, Գեւ. եզ. 257. Քրգ. ամ. 203: — 14. Քրգ. ամ. 204:

դռան մօտ[1] եւ կամ աւելի ինքն էր գնում նրանց տունը[2] եւ նշանակուած աղօթքը կատարելով հանում էր պսակները, հրաման տալով ամուսնութեան, որ մինչեւ այդ օրը չունէին[3]: Գուցէ, ասում է Յհ. Երզնկացին, այս իմաստով էլ թէ այդ «ութ օրը հարսն եւ փեսան զմիմեանց մի՛ տեսցեն[4]»: Երէցն այդ առթիւ նորապսակներին աւանդում էր կեանքի կարեւոր խրատներն ու եկեղեցական օրէնքները[5]: Ս. Ղազարի թ. 711 բոլորգիր հին մաշտոցը դիւրութեան համար եկեղեցու գաւթի խրատի տեղը դրել է Գեւ. Երզնկացու **Խրատ վասն պսակի**, այս վերնագրով, «Քարոզ պսակի համար եկեղեցու դռան մօտ, որ քահանան պարտականութիւն ունի ասելու փեսային եւ հարսին»:

Հարսանեկան սենեակի կամ առագաստի հանգամանքները նախապէս տեսանք[6], որը կոչւում է նաեւ «հարսնարան[7]»: Երբ հարսի հօր առաջնորդելու ժամը հասնում էր, հարսնածու աղջիկները «թմբուկներով եւ պարերով» առաջնորդում էին նրան[8]: Խորենացուն էլ ծանօթ էին «առագաստի երգերը», որն երգում էին նրա օրով[9]: Նշեցինք նաեւ հարսների փակուած կեանքը[10], որ տեւում էր այնչափ, որ նրանք իսկապէս «հարսներ» կամ աւելի ճիշտ «նորեկ հարսներ» էին[11]: Նոյնը հաստատում է նաեւ առագաստի համար եկեղեցու վարագոյրը փոխ առնելու սովորութիւնը, որ արգելւում է սահակեան կանոններով[12] եւ փոխ վերցնելը երկար չէր կարող տեւել: Այդչափ էր ուրեմն հարսնութեան վիճակի կամ փակման տեւողութիւնը:

Լրացնելով մեր տեղեկութիւնները՝ հետաքննելի է ամուսնութեան պարագան Դ - Ե դարերում այն հայերին, որոնք թոյլատւութեամբ ուշ էին մկրտւում, բայց վաղօրօք կերտում էին իրենց ամուսնական բոյնը: 451-ին Աւարայրի ճակատամարտի նախընթաց գիշերն հայ բանակի մէջ անձեր կային, - «եթէ գոյր ոք երախայ»,- որոնք այնտեղ մկրտւեցին «գիշերով բոլորը[13]». ապացոյց, որ թւով շատ էլ քիչ չէին: Եւ միթէ դրանք բոլորն ամուրինե՞ր էին, երբ ամուսնութիւնն այդչափ կանխաւ էր լինում[14]: Մենք նաեւ Փաւստոսի մի չինական երիտասարդի տեսանք, որ անկնունք եւ ամուսնացած էր[15]: Արդ դժւար է ըմբռնել, որ մինչեւ իսկ եկեղեցին պսակած լինի այդպիսիներին, որ քրիստոնէական դրոշմը դեռ չէին ընդունել իրենց ճակատին եւ որի համար ձեռնադրութիւնն էլ անվաւեր էր համարւում[16]: Միւս կողմից, ապահով է եկեղեցական

---

1. ***Մշտ***. 1499-ի: — 2. *Ժող. Զագայ, Դ. Ծրդ. Քրգ*. 308. *Յհ. եզ. Խր. Ե*: — 3. *Ժող. Զագայ, Դ. Ծրդ.* ***Քրգ***. 309. *Գեւ եզ*. 257. *Քրգ. ամ*. 203. *Ղրմ. Պս*: — 4. *Յհ. եզ.* ***Խր***. *Ե*. — 5. *Վրդ. Քրգ*. 309. *Յհ. եզ.* ***Խր***. *Ե*: — 6. *Աստ*՝ 14,16, 24: — 7. *Լստ*. 40: — 8. *Խոր*. 311: — 9. *Նոյն*՝ *Գ, կը*: — 10. *Աստ*՝ 14-5: — 11. *Եղշ*. 156: — 12. ***Սոփ***. *Բ*, 93: — 13. *Եղշ*. 88: — 14. *Աստ*՝ 29: — 15. *Աստ*՝ 11: — 16. *Անդ*. :

*ամուսնութեան գոյութիւնը մեզ մօտ այդ շրջանից, վկայութեամբ մեր չորրորդ դարի պատմիչի՝ թէ կատարւում էր «քօղով կամ պսակով Հարսանեաց **օրհնութեամբ**[1]»:*

*Պէտք է նաեւ իմանանք, որ Հայ անցեալի մէջ կային գաղտնի ամուսնութիւններ, որոնց հակառակ էին մեր եկեղեցական օրէնքները, գեղծութիւն տեսնելով նրանց մէջ: Այսպէս Լուսաւորչի երկբայական կանոններում արգելւում են «գաղտնի պսակը», պատուիրելով այդպիսիների պսակադիրը կարգալոյծ անել[2]: Նոյն արգելքը կրկնեց նաեւ Շնորհալին[3]: Օձնեցու օրով (Ը դար) մի ուրիշ անկարգութիւն էլ կար, որը որոշ քահանաներ պարսաւելի ծուլութեամբ զանց էին անում ամուսնութեան արարողութիւնն եկեղեցու մէջ եւ իրենց ձեռքով, թողնելով այն «առանց եկեղեցու եւ աղօթքի եւ առանց օրհնելու եւ հաղորդութեան» եւ հարսանիք գնացող մի անձի էին յանձնում պսակը՝ տանելու «ուր որ իրենց կամքն էր» այդպէս «ռամիկի ձեռքով թագաւոր էին դարձնում» եւ իրենց հաւանութիւնը բաւական համարելով, սակայն չմոռանալով գնալ եւ հարսանեկան սեղանի շուրջը տարածել իրենց բազուկները: Դւինի ժողովը ծանր թշնամանք համարեց այդ խորհրդին ու պսակին եւ դատապարտեց[4]: Դիտելի է, սակայն, որ անվաւեր չհամարեց այդպիսի պսակները: Արդեօք կարելի՞ է հին համարել այս ոճը, եւ սրա մէջ նշմարել երախայից պսակի եղանակն էլ:*

## ԳԼՈՒԽ Դ

### *Մայրութեան մէջ*

*Հայուհին ամուսնութեան մէջ միշտ նրա արարչադիր գերագոյն նպատակը՝ մայրութիւնն է նկատի առել եւ հետամուտ է եղել նրա քաղցրութեանը: Սիրել է ոչ միայն շրջապատուել զաւակներով, այլ ըստ կարողութեան շատ ունենալ, որքան նախախնամութիւնը սահմանել է իւրաքանչիւրին: Նա չի բաւականացել միայն նիւթական կեանք տալով, այլ նւիրուել է մի աւելի բարձր պարտականութեանն էլ, ծնունդների դաստիարակութեան գործին, ցանկանալով նրանց մէջ տեսնել իր տան եւ անւան արժանի ժառանգներ եւ ընտիր քաղաքացիներ: Եւ ճիշտ այդտեղ է, որ փայլում է Հայ մօր գիտակցութիւնը, նրա սրտի ու մտքի ազնւութիւնը: Բազմաթիւ են այս մասին*

---

1 *Փաւս.* 229: — 2.*Կան. Ը*: — 3. *Շն. Նմկ.* 162: — 4. *Օձն.* 10-11:

խօսող օրինակներ եւ աւելի տոհմիկ դասակարգի մէջ, ուր հայուհին կարող էր մեծագոյն դիւրութեամբ ու յաջողութեամբ կատարել իր պաշտօնի բոլոր պահանջները:

1.- Ամենից առաջ մեր ուշադրութիւնը դարձնելու ենք մի քանի ազնուազգի մայրերի բազմորդութեան վրայ, որոնց յիշատակը պատմութիւնը պահել է եւ չպահածների մէջ էլ կարելի է բազում հազարներ թուել: Այդ տիկնայք իմանում էին մայրական անսպառ նեղութիւնները հաշտեցնել իրենց սովորական փափկութիւնների հետ: **Մարիամ** Պահլաւունին՝ Աբդլմսեհ Արծրունու ամուսինը[1], եօթն արու եւ հինգ էգ զաւակների մայրը եղաւ[2]: Վասակ Պահլաւունու զուգակիցը՝ **Մարեմիկը**[3], իւր գրկի վրայ կրեց ծնունդների մի բազմութիւն, որոնցից տասներեքը յիշւում են, եօթ եղբայրներ եւ վեց քոյրեր[4]: Լամբրոնի տիրոջ՝ Բ Օշինի կինը՝ **Շահանդուխտը**[5], ամուսնուն ընծայեց հինգ ուստր ու երեք դուստր[6]: Պապեռոնի իշխանի՝ Կոստանդինի արքայահօր տունն, զարդարեցին ինն որդիներ եւ չորս դուստրեր. ութն **Աւծիկ** եւ հինգը **Պխաղրծիկ**[7] ըստ Հ. Ալիշանի[8]: Մեծն Լեւոնի ժառանգը՝ Զապէլը, գահի հոգսերի հետ չանտեսեց մայրական պարտականութիւնն էլ, ծնող դարձաւ երեք ուստրերի ու հինգ դուստրերի[9]: Աւետիս յիշատակագիր քահանան 1272-ին գովում է Թագուհուն, որ «առաւել ամէն բարիքների որ գործեց, ասում է, Հայաստան աշխարհին ժառանգ տուեց, որ անտէր եւ կամ տեղահան չլինէր[10]»:

Բայց ամէնից աւելի բազմածինը յիշւում է Լեւոն Բ արքայի կենակից՝ **Կեռանը**, որ քանմէկ տարւայ մէջ տասնեւհինգ զաւակների մայր եղաւ, ութն արու եւ եօթն էգ եւ որոնցից վեցը երկւորեակ ծնւեցին, ինչպէս աւանդում է նրանցից մէկն, որ Օշին արքայի ժամագրքի մէջ ընդարձակել է Հեթումի ժամանակագրութիւնը, խառնելով իրենց ծննդագրութիւնը: Ահաւասիկ նրանց ծննդական կարգն ու տարիներն, որ հետաքրքրական են հայ մօր գործունէութեան կողմից: **Զապլուն** 1262ին, Հեթում 1265ին, **Ֆիմի** 1266ին, **Մլեհ**՝ 1269ին, Թորոս՝ 1270ին, Ռուբէն՝ 1272ին, **Զապլուն** 1273ին, Սմբատ ու **Մլեհ**՝ 1276 ին, Կոստանդին՝ 1277ին, **Ռիթա** ու **Թեփանօ**՝ 1278ին, Ներսէս՝ 1279ին, Օշին եւ Ալինախ՝ 1283ին. երկու անունները կրկնւած են նախորդների մահւամբ[11]: Այս ցուցակն, որ նոր է, մասամբ սրբագրում է Հ. Ալիշանի կազմածը[12]:

Այդ ժամանակ ծանօթ սովորութիւն էր, զաւակների ծննդեան թւականները նշանակել ընտանեկան որեւէ մատեանի մէջ: Ըստ սրան նաեւ Նղիր բերդի տէրը՝

---

1. **Աստ**՝ 66: — 2. **Արծ**. 351: — 3. **Աստ**՝ 66 — 4. **Հաւ. քր**. 1174. Հյպ. 394: — 5. **Աստ**՝ 31: — 6. **Փառ. Թր**. 226, 234. **Հաւ. քր**. 1195 եւ այլ ժԲ դարու: — 7. **Աստ**՝ 68: — 8. **Սիս**. 75-76: — 9. **Փառ. Թր**. 261. **Հաւ. յիշ**. 1263: — 10. **Ազ. Հնդ**. 1910, Բ. 25: — 11. **ԺՄ. Օշին**. 99-100: — 12. **Սիս**. 45:

*Պաղտին, Հայոց զօրավար եւ **Մարիունի**[1] ամուսինը, իրենց ճաշոցի մէջ հետզհետէ արձանագրել են իրենց զաւակների գալուստը, որով անմոռաց են պահել իրենց ուրախութիւնների յիշատակը: Այսպէս. «Ծնւեց իմ անդրանիկ դուստրը՝ **Ալիծ**, Պաղտին զօրավարիս, Հայոց թւին ՋՃԿԱ, փետր. **Է** օրն». - «ՋՃԿԱ թւին, ապրիլ ամսին, **ԺԷ** օրը ծնւեց իմ որդին՝ Կոստանդինը», եւ այլն*[2]:

2.- *Զաւակների այդ պսակներից հեշտութեամբ նկատւում է թէ, ինչպիսի մեծ վիշտ էր հայուհու համար անզաւակութիւնը: Ը դարում յայտնի են Սահակ Արծրունին եւ իր ամուսին՝ **Սմբատուհին**, որը դուստրն էր Աշոտ Բագրատունու, որոնք զուրկ էին ծնողական մխիթարութիւնից: Մի օր էլ տիկինն ամուսնուց խնդրեց ուխտի գնան Աշտաայ վանքը, եւ ապաւինել սրբակրօն Գրիգոր վանահօր աղօթքին. «որովհետեւ կաղաչեն սուրբ վկաներին, որ Աստւած մեզ զաւակ տայ եւ մենք նրան փոխ կը տանք Տէր Աստծուն»: Հաւանեց իշխանն ու գնացին, նւէր տանելով սպիտակ եզներ ու սպիտակ գառներ, որոնց գոյնն ուշագրաւ է: Վանահօրը յայտնեցին մի արու որդի ունենալու իրենց բաղձանքը, եւ խնդրեցին գիշերային հսկում բոլոր եղբայրութիւնից: Սմբատուհին հասաւ նպատակին. ունեցաւ Գրիգոր Դերէնը, որին սնուցանեց ու ժամանակին կատարեցին իրենց ուխտը*[3]:

*Իսկ անհաւատ կանայք զաւակ ունենալու համար, կախարդական միջոցների էին դիմում եւ դրա արդիւնքն էր, ըստ Մանդակունի հայրապետին՝ «անզաւակութիւններ ծնունդների մէջ եւ երկար կապումն անլուծանելի*[4]»:

3.- *Միշտ եւ ամէն տեղ մայրեր են եղել, որ կեանք են տւել զաւակներին իրենց կեանքի գնով. պարտականութեան զոհեր եւ որոնցից պատմութիւնն օրինակներ է պահել: Դեզեաց տիկինը՝ Զորտւանէլեան **Կատան**[5], նախ ծնեց «գեղեցկատեսիլ մի մանուկ» Շահմելէք անունով, որ տան ցնծութիւնն եղաւ: Եւ մինչ մանկամարդը յոյս ունէր երկար ժամանակ վայելել այս աշխարհն, ասում է յիշատակագիրը, եւ «ծնել ուստեր եւ դուստրեր», երկրորդ մայրութիւնն արդէն քանդեց իր յոյսը: Մի երկւորեակ եկաւ եւ խաւարեցրեց իր արեւը եւ բարեպաշտուհին անվրդով եւ «ուրախութեամբ» աւանդեց հոգին, «ապահով աշխարհի պատրանքներից եւ դրանց զբաղումներից»: Վերին կամքի մի համակամութիւն, որ յատուկ է բարձր հոգիներին:*

*Իր սրտախոց մայրը՝ **Մելքաթին**, սիրասուն զաւակի յիշատակին մի Աւետարան գրել տւեց իբրեւ «նրա տեղը կանգնեցնել» այն, եւ նւիրեց նրա շիրիմին: Իսկ մատեանի*

---

1. *Աստ*՝ 68-9: — 2. ***Հւք. յլա***. 1319: — 3. *Շպհ*. 37-38: — 4. *Մնդ*. 204: — 5. *Աստ*՝ 40:

վերջին էջի վրայ, Նուրբ եւ զգայուն խորհրդով նկարել տուեց հէգ մանկամարդը, անշարժ եւ անշունչ տարածուած իր պատանքի մէջ եւ նրա մօտ նորեկ զոյգ որբերն, որոնք անբարբառ վկայում էին թէ մեր սիրուն մայրիկը մեզ կեանք տալու համար իրենը կորցրեց: Իսկ նկարի ներքեւ գրուած էր «Այս պատկերի ծրագիրը յանուն Կատային է՝ դստեր Վիգէնի, որ ծնունդի ժամանակ վախճանուեց ի տես մանկութեան, եւ սուգ թողեց իր անմխիթար մօրը, որին Տէրն իր գալստեանն ողորմելու է. ամէն[1]»: Տեսարանն ու բառերն, որոնց մէջ բնութիւնն ու սէրը խառնում են իրենց հեծութիւնը: Ու՞ր գնաց արդեօք այդ սրտաճմլիկ պատկերը:

Նոյն վախճանն ունեցաւ նաեւ Օշին արքայի կենակիցը՝ **Զապէլ** թագուհին, որ 1310ին ընծայեց ամուսնուն Լեւոն գահաժառանգը. «եւ ինքը հանգաւ ի Քրիստոս» մի քանի օր յետոյ[2], թափուր թողնելով իր գահը, որը վեց տարի յետոյ պիտի գրաւէր Տարենտայի իշխանադուստրը[3]: Այդքան ժամանակ պէտք եղաւ ամոքելու համար Օշինի վիշտը իր զուգակցի կորստեան:

Երկունքի տագնապն ու վտանգաւոր հետեւանքները ցնորքներով էին լցնում անհաւատ անձերի երեւակայութիւնը: Հայոց տների անկիւններում եւ անասունների ախոռների մէջ – ուրեմն ռամիկ դասի հետ գործ ունենք - բնակւում էին **ալք** ասուած դեւեր, ծանօթ միջին դարում, եւ այդպէս կոչուած իրենց ներքին կամ խոր տեղերում դադարած: Նրանց վարսերն նմանում էին օձերի, յօնքերը պղնձեղէն, արտեւանքն երկաթեայ, ժանիքը վարազի նման: Նրանցից մէկը մի օր ասել է թէ «նստեմ ծննդականի եւ յղի կանանց. ականջները խորովեմ, գխասալն (սիրտ, լեարդ, թոք) քաշեմ եւ խեղդեմ մօրն ու մանուկին». եւ թէ իրենց կերակուրը սաղմերն են[4]: Այս տեղեկութիւնը գտնում ենք **Կիպրիանոս** կոչուած մատեանի մէջ 1484 թուականից, որի մասին ընդարձակօրէն այլ տեղ գրել եմ[5]: Սիմէոն եպս. Աղձնեաց, միջին դարից, գրում է նոյնպէս՝ թէ դեւերը գալիս են «մտնում են յղի կանանց մէջ սպանելով անառակ կանանց մանուկներին», որոնք դուսանութեամբ էին զբաղւում[6]: **Կիպրիանոսն** յատուկ մի գիր ունի դնելու կնոջ ձեռքի մէջ «երբ դժուար է ծնում» եւ որով «Աստուծով հեշտ ազատւի», դրանից յետոյ պատւիրում է գցել կրակի մէջ: Բովանդակութիւնը հրեշտակների չլսուած անուններն են եւ աղաչանք նրանց, փութացնելու կնոջ ծնունդը[7]: Ալերի դէմ պահպանողական երդումներ էլ սահմանուած է, որը քահանան կարդում է ծննդականի վրայ: Հաւանօրէն

---

1. ***Հյպ***. 294-96: — 2. ***Սմ. Տրգ***. 128: — 3. ***Աստ***՝ 69: — 4. ***Երդ***. 229-32: — 5. ***Անդ***՝ 215-21: — 6. ***Աղձ***. 111: — 7. ***Երդ***. 234:

այդ գաղափարն էր, որ *Մաշտոցի* դուռն էլ բացեց ծննդականի կանոնի առջեւ, որ Ս. Ղազարի հնագոյն օրինակների մէջ չի տեսնուում, մէկը ԺԱ դարից եւ միւսն 1216-ից: Թողնենք ռամկուհուն իր գրի հետ, ալին եւ նրա պարզամիտ հալածողի հետ, եւ մենք վերադառնանք զարգացած դասի մօտ:

4.- Մնւելուց յետոյ պէտք էր մի անուն տալ նորածնին, այն տոհմային մականունի հետ կապելով եթէ ազնուական էր, որովհետեւ միայն նրանք ունէին հայրենի անուն եւ ռամիկն ոչ[1]: Մենք, որովհետեւ խօսում ենք հայուհիների մասին, պիտի նկատի առնենք միայն նրանց անուանակոչութիւնը, որ քրիստոնէական հին սովորութեամբ կապւած էր մկրտութեան հետ, որ Գր. Նարեկացին ասում է, թէ «աւազանից կոչւեցի Արթուն[2]» (մեկնելով իր անունը): Ընտանեկան մեծ ուրախութեամբ էր կատարւում այդ գործը, ինչպէս վկայում է *Յաճախապատումն* Ե դարի երկրորդ կէսից. «Բարեկամներով եւ մերձաւորներով, ասում է, ծննդեան եւ անուանակոչութեան տօն էին կատարում[3]»:

Հայոց անունները մեծապէս փոխւել են, թէ արանց եւ թէ կանանց, ըստ ժամանակի եւ մանաւանդ արտաքին զանազան ազդեցութիւնների, որոնց յաջորդաբար ենթարկւել է մեր ազգը: Կարող ենք երեք գլխաւոր շրջանների բաժանել. դասական՝ սկսած Դ դարից մինչեւ Ը. արաբ - թաթարական եւ կիլիկեան: Մնալով կանացի եւ ընդհանրապէս աշխատութեանս մէջ յիշւած անունները միայն, որոցից դուրս դեռ շատերը կան, բայց կրողները զուրկ են սրանց կարեւորութիւնից:

Առաջինին պատկանում է՝ *Աշխէն, Փառանձեմ, Հռիփսիմէ, Սանդուխտ, Շուշան, Հեղինէ, Մարիամ* եւն: Նոյն շրջանն ունի անուններ, որ կազմւած են հօր անունից, ինչպէս հռոմէացիների մօտ եւս. Յուլիոս՝ Յուլիա, Հոկտաւիոս՝ Հոկտաւիա եւն: Ըստ սրան Խոսրովի դուստրը կոչւեց *Խոսրովիդուխտ*. Ս. Սահակինը՝ *Սահականոյշ*. մեծին Վարդանինը՝ *Վարդենի*. Մամիկոնեան Համազասպի քոյրը՝ *Համազասպուհի* (թերեւս յանուն պապին). եւ Խորենացին հին Սմբատ Բագրատունու դուստրերին անւանում է *Սմբատուհի* ու *Սմբատանոյշ*, եւ Տիգրանի քրոջը՝ *Տիգրանուհի* (որ յարմար է թւում): Նոյն բարդ ձեւերը կան գործածւած եւ ուրիշների վրայ սովորութեամբ, եւ ոչ հօր անունից, թէպէտ որոշների ծնողներն անծանօթ են. այսպէս *Զարմանդուխտ, Վարդանոյշ*, կամ կարգի փոփոխութեամբ՝ *Անուշվռամ*, Դ - Ե դարերից: Աւելի ուշ՝ *Գորանդուխտ, Սահակդուխտ, Շահանդուխտ*՝ թագուհիներ եւ Շահան Պահլաւունու

1. *Աստ*՝ 32: — 2. *Նրկ*. 186: — 3. *Յճխ*. 126:

դուստրը **Խոսրովանոյշ**, **Համասպրուհի**՝ Բարդէնի դուստրը, **Սմբատուհի**՝ Աշոտի[1] դուստրը. եւ այլն:

Կան բնութիւնից առնուած անուններ. **Ձիւիկ**, **Բիւրեղ** (Ե, Է դ.), **Երնջիկ**, **Եղնիկ**[2] (1204). **Ածեամն**, **Արուսեակ**, **Աղբերանց**, **Գոհար**, **Ոսկի**, **Զմրուխտ**, **Շաքար** (ստորինք): Կամ հասարակ կոչումներից. **Բամբիշն**, **Դստրիկ** (Դ. Ե դ.), **Թագուհի**, **Տիկնաց**, **Տղայ**. եւ ածականներից՝ **Երանեակ**, **Զարմանուհի** (Ե. ԺԴ դ.):

Բաւական յաճախակի են **-իկ** յանգով փաղաքշական ձեւերը. **Սաթենիկ**, **Նազինիկ**, **Դստրիկ**, **Ձւիկ**, **Երնջիկ**, **Շուշանիկ** (Ե դ.). **Շուշիկ**, **Մարեմիկ**, **Եղնիկ**, **Սիրունիկ**[3] (1481), **Նուշիկ**[4] (1493):

Արար - թաթար շրջանից ունենք շատ անուններ, որոնց չափից դուրս թիւն զգալի է այս մատեանի մէջ եւս. մանաւանդ թաթարականից: Օրինակ՝ **Մլքէ**, **Մելքաթի**, **Ամիրքա**, **Արղու խաթուն**, **Արուզ խաթուն**, **Ազիզ**, **Թամամ**, **Խորիշահ**, **Խութլու խաթուն**, **Մինա խաթուն**, **Մամքան**, **Նուսաթի**, **Փաշա** եւն: Իսկ Կիլիկիայի մէջ ընդհանրացան եւրոպական անունները՝ հայացած ձեւերով, այսինքն կրճատուած կամ ծռնուած. **Ռիթա**, **Զապէլ**, **Ալիծ**, **Ֆիմի**, **Թեֆանօ**, **Փիլագրիծ** եւ նմանները: Ցետոյ յաջորդեցին պարսկաթուրք կոչումներ. նրանց իշխանութեան ներքոյ:

Միջին դարում մեր ազնուական տոհմերի մէջ յատուկ անունները տեսնում ենք, որոշ նախամեծութեամբ են գործածուած: Այսպէս Անիի Բագրատունեաց համար սովորական են՝ **Սմբատուհի**, **Հրանուշ**, **Մարիամ**, **Սոֆի**, **Հռիփսիմէ**, **Արուսեակ**, **Կատա**, **Խուշուշ**: Աղուանի մէջ տոհմակիցները կամ Կիւրիկեաններն ունեն՝ **Մամա**, **Ռուսուդան**, **Վանէ**, **Մարիամ**, **Թամար**, **Բաւրինա**, որոնք ընդհանրապէս վրացական են: Արծրունիները Վասպուրականի մէջ՝ **Սեդա**, **Մլքէ**, **Մարիամ**, **Սոֆիա**: Սիւնիք՝ **Կատրանիդէ**, **Բուպլիտուխտ**, **Համասպրուհի**, **Կատա**: Պահլաւունիները[5] **Շահանդուխտ**, **Մարիամ**, **Վանենէ**, **Սեդա**, **Տիկնաց տիկին**, **Թայիկ**: Ռուբինեանները[6] **Արդա**, **Ռիթա**, **Տաֆիթա**, **Ալիծ**, **Ֆիլիպ**, **Զապէլ**, **Գալեա**: Նրանց յաջորդը Զապէլի եւ Հեթումի զարմը՝ **Ռիթա**, **Մարիամ**, **Զապէլ**, **Ֆիմի**, **Թեֆանօ**, **Սպիլ**, **Զապլուն**: Լամբրոնի Հեթումեանները[7] **Մարեմիկ**, **Մարեմ**, **Աւիծ**, **Կեռան**, **Ալիծ**, **Մարիուն**, **Թեֆանօ**, **Թագէր**, **Շուշան**, **Տաֆիթա**, **Շահանդուխտ**: Պապեռոնի Հեթումեաններ[8] **Ռիթա**, **Մարգարիտ**, **Սանփանի**, **Մարիամ**, **Հռիփսիմէ**, **Ֆիմի**: Զաքարեաններ՝ տեարք Շիրակայ. **Խորիշահ**, **Դոփ**, **Նրջիս**, **Նանա**, **Թամթա**: Օրբելեաններ Սիւնիքում **Աստա**, **Մամքան**, **Փաղբա**: Տեարք Ներքին Խաչէնի՝

1. *Աստ*՝ 80: 2. **Թոր. պզր.** Բ, 279: 3. **Արց.** 307: 4. *Սեդի*. 124: — 5. *Աստ*՝ 65-6: — 6. *Աստ*՝ 66-7: 7. *Աստ*՝ 67-8: 8. *Աստ*՝ 68:

Արցախի մէջ, **Մարին, Մամա խաթուն, Մինա խաթուն, Ռուզուքան**: Տեարք Վերին Խաչէնի՝ կամ Հաթերքի՝ **Մամա, Փուրթուխան**: Վաչուտեաններ՝ իշխանք Կայէնի Գուգարսի մէջ, **Սահակդուխտ, Արզու խաթուն, Մամա խաթուն, Մամքան**: Այս անուններից շատերն ընդհանրացան ազգի մէջ, առանց խտրութեան ցեղի եւ վիճակի:

Երկանուն անձեր նաեւ եղել են, կամ նոյն անունը կրկին ձեւով գրուած է. օրինակ՝ **Վարդենի** եւ **Շուշանիկ** (դ. Վարդանայ). **Կատա** եւ **Կատարանիդէ** (թգհ. Բագրատունեաց), **Խոսրովանոյշ** եւ **Շուշան**[1] (թգհ. Բագր.), **Մլքէ** եւ ծննդեան անունով **Թամար** (ըստ Աղթամարի[2] կոնդակի). **Շուշան** կամ **Շուշիկ** (տիկին Պահլաւունեաց), **Մամա** եւ **Մամքան** (տիկին Հաթերքի), **Զապէլ** եւ **Զապլուն**, **Զապիլ** կամ **Սպիլ** (դք. Հեթումի թգ.), **Թեֆանո** կամ **Ստեփանի**, **Մարիամ** կամ **Կալա Մառի** (պապեռոնացիներ). **Մարեմ** եւ **Թագէր** (լամբրոնացի). **Խորիշահ** ու **Տաւրխուշահ** (դ. Մամիկ. Մարծպանի). **Մամա խաթուն** եւ **Թագուհի** (դ. Հասան Ջալալի):

Տան մէջ մահացած սիրելիների անունները աւանդում էին նրանց յաջորդներին: Այսպէս Գր. Մագիստրոսի հայրը՝ Վասակը, կարճ կեանքով ապրած **Սեդա** քրոջ անունը տուեց իր դուստրին եւ Լեւոն Բ թագաւորն ու **Կեռանն** իրենց վաղամեռիկ **Զապլուն** ու **Սպիլ** դուստրերի անունները նորոգեցին նրանց հետագայ քոյրերի վրայ[3]: Այսպէս եւ ուրիշ շատերը:

5.- Փափագներով եւ ուրախութեամբ կեանք տալ զաւակներին եւ երբեմն վտանգելով իր կեանքը եւ տոհմային մի սիրելի անուն կապել նրանց, այդ ամէնը հայ մօր սրտի մէջ առաջ էին բերում անհուն մի սէր, որը նրանց ծնունդի հետ էր զօդում: Սրա հետ հետաքրքրական է նրա հոգեբանական վիճակն, որ ամէն անգամ իր սիրոյ ծաղիկները ծաղկում կամ խամրում էին, ցնծութիւնն եւ վիշտն իրար հետ խառնւում էին նրանց հոգու մէջ: Մտնենք ամենից բազմորդի մօր՝ **Կեռան** դժխուհու յարկը[4] եւ այնտեղ տեսնենք մայրենի որդեսիրութեան այդ գեղեցիկ հանդէսն, որին մասնակցում է հօր գորովալից եւ ազնիւ սիրտն էլ, որը Բ Լեւոնինն է:

Աւետիսը 1272 թւին գրում է, երբ տիկինը դեռ մայր է միայն հինգ զաւակների: Վախճանւել են նրանց անդրանիկը՝ **Զապլունն** եւ չորրորդը՝ **Սպիլը**, երբ դեռ ծծկեր էր: Ողջ են Հեթումը, **Ֆիմին** ու Թորոսը: Ֆիմին մնացած միակ դուստրն է, վեց տարեկան, որի վրայ ծնողները դողում են. եւ նրանց զգացումների թարգմանը հանդիսանում է գրիչը, խնդրելով «առատութեամբ չնորհող պարգեւատուից կենդանի պահել սրա քրոջը

1. *Սսկ.* 518: — 2. *Բզմ.* 1897, 412: — 3. *Աստ՝* 80: — 4. *Անդ*:

անվրդով. նաեւ երկար ժամանակով տալ սրա հօրն ու մօրն», եւ «լիացնել եւ փարատել տրտմութեան սուգը, որ նրանց ծնունդին ընկալեցին»: Եօթ տարեկան Հեթումին ապահով են կարծում, ուր «դեռաբոյս» Թորոսը, դեռ երկու գարուն միայն տեսած եւ տրւած «պարգեւներն աստուածային» ծնողների «սրտի մխիթարութիւն», գրիչից ընդունում է երկար եւ արդիւնաւոր կեանքի ուղերձներ[1]: Նոյն 1272-ին ծնւում է իրենց վեցերորդը՝ Ռուբէնը, եւ երկու տարի յետոյ մեռնում է նա, «մեծ սուգ» թողնելով ծնողներին, որովհետեւ «շատ գեղեցիկ էր տեսքով» կամ դէմքով: Երկրորդ յիշատակողը խնդրում է, որ «սրբերամ դասը» աղօթեն, որ Ռուբէնը խառնւի «անմեղ մանուկների հետ» եւ հօրն ու մօրը «խորը տրտմութիւնից ազատել»: Նրանից յետոյ «մխիթարութեան որդին» ծնւեց Սմբատը, որի համար մաղթում է «երկար ժամանակով վայելել նրան տեսնելով, ուրախանան աստուածային վարձատրութեամբ»: Յիշատակում է «սրա դեռաբոյս քոյրը՝ Զապէլը», 1273-ին անդրանիկի տեղը գրւած, որ «պահեց, ասում է, Աստւած անվրդով երկար ժամանակ մնալ նմա, որովհետեւ շատ սիրելի եղաւ հօր ու մօր աչքին»: Նոյնպէս եւ «սրա միւս քոյրը» (Սպի՞լ), եւ թագուհու ծծկեր տղաները՝ Կոստանդին, Ներսէս, Օշին, Ըռոբէն (կամ Ալինախ), ամենայն պատահարներից անսասան մնան[2]»: Այսպէս, մեր յիշատակագիրներն ուշի ուշով հետեւում են այդ երկու ազնւական հոգիների ծնողական ցնծութիւններին եւ վշտերին, հաղորդ կը լինեն նրանց ընթերցողներն էլ:

Եթէ Կեռանը ժամանակին իր զաւակների մի մասի վրայ ողբաց, նրանք բոլորը իրենց հօր հետ միասին 1285-ին ողբացին իրենց սիրելի մօր համար, որ որբ թողեց նրանց ու մեծ մասամբ փոքր. վերջինն հազիւ երկամեայ եւ որոնցից մէկը, լրացուցիչը Հեթում պատմիչի ժամանակագրութեան[3], սիրոյ պնդութիւնն իրենց եւ մօրը մէջ զգացնելով այսպէս է գրում. «ՉԼԴ. փոխադրւեց ի Քրիստոս, հոգիով ամենագովելին եւ գեղեցիկ տեսքով իմ առաքինի մայրն՝ Կեռան թագուհին Հայոց[4]» մատաղ հասակի մէջ, մաշւելով իւր մայրական պարտականութեան եւ մանաւանդ քաղաքական դառնութիւնների ծանրութեան ներքոյ:

Բարի, երջանիկ, բայց ծնունդներով սուգով վշտահար մի ընտանիք էին Սասունի

1. Կղ. Հեր. 1910, Բ. 24-25: — 2. Կղ. Հեր. 26-27: — 3. Ասա՝ 80: — 4. ԺՄ. Օչին. 100:

*տեարք Վիգէն Զորտւանելեանն ու **Մելքոնթի** Արծրունին[1], որ ծնեցին «լուսածաղիկ որդիներ եւ դուստրեր գեղատեսիլ», եւ որոնք մեծ մասամբ կանխում են թողնել այս աշխարհը, «իբրեւ առաջին արմատների նոր պտուղը, որ որպէս ընծայ տեառն մատուցեալ». եւ «նրանց վախճանումից փոքր ինչ արտասուելով», մխիթարւեցին մնացած երկու զաւակներով՝ Զորտւանէլ ու **Կատաա**, որոնք իրենց փառքն ու ցնծութիւնն էին մինչեւ երիտասարդութիւնը, մինչեւ իրենց արեւն էլ մայր մտաւ[2] նախորդների պէս:*

*Բոլոր զաւակներն եթէ սիրելի էին ծնողներին, մանաւանդ մօրը, որ իւրաքանչիւրի համար տառապել էր, բայց լինում էին ծնունդներ, որ իրենց առաւելագոյն ձիրքերով մեծագոյն տեղն էին գրաւում ծնողների սրտի մէջ: Դրանցից էր յիշեալ **Կատան**, ճշգրիտ հետեւողն էր մայրենի բարքերին, «կատարեալ հասակով եւ գեղեցկութեամբ», որի համար «մօր աչքին շատ սիրելի էր, աւելի քան իր միւս երեխաներից», ասում է պատմիչը[3]:*

*Սա իր կարգին ամուսին Շահինշահի եւ «գեղատեսիլ» մի մանկան մայր, Շահմելիքի, միասին «զւարճանում էին իրենց զաւակի տեսքով», որ ողբացեալ մանկամարդը չկարողացաւ երկար վայելել[4]: Իր եղբայրը՝ Զորտւանէլ ու կենակիցը՝ **Վանինէ** Պահլաւունին, նոյնպէս երեք զաւակներ ծնեցին «գեղեցիկ եւ հրեշտակատեսիլ», Վասիլ, Շահինշահ ու Թոռնիկ[5]. «եւ կային բարեկարգութեամբ, լուսածաղիկ զաւակներով զւարճացած[6]»: Ծնողական գորովի ուրիշ օրինակներ եւս դեռ այս աշխատութեան մէջ կը տեսնենք:*

*Երանի նրանց, որ վայելեցին իրենց հօր ու մօր գութն ու խնամքը: Իսկ նրանք, որ հանդիպեցին խորթ հօր կամ մօր, գուցէ շատ քիչ անգամ ճաշակեցին ընտանեկան կեանքի քաղցրութիւնը: Եւ ամէն ժամանակի ու ազգի Սեբերիանոսի այս վկայութիւնը պատշաճում է. «Ե՛ւս դժնդակ (է) ծուխը, որ խորթ մօր եւ խորթ զաւակի մէջ ծխում է». եւ կամ «ե՛ւս չար աղմուկն այն է, որ խորթ հօր եւ խորթ զաւակների մէջ լինի[7]»: Անշուշտ առանց այսպիսի պատճառով չէր, որ Լեւոն երկրորդն ամուսնութեամբ իր առաջին կնոջ զաւակին՝ **Թիթային**, հեռացրեց արքունիքից եւ յանձնեց իր մօր (կամ աղջկայ տատի) խնամքին[8]:*

*Փակենք որդեսիրութեան այս հատւածը, եւ սկսենք խօսել ծնողական պարտականութիւնների մասին, որ զաւակների ծնունդով է սկսւում:*

---

1. *Աստ*՝ 39: — 2. *Հյպ*. 293-94: — 3. *Անդ*՝ 394: — 4. *Անդ*՝ 934-35. *աստ*՝ 59: — 5. *Աստ*՝ 61: — 6. *Հյպ*. 394: — 7. *Սբր*. 42. *բառերուդ սահման տես աստ*՝ 21: — 8. *Աստ*՝ 95:

6.- Իրենց մանկիկները դիեցնելու պաշտօնից միշտ ազնուական հայ մայրերը հրաժարուել են, նրանց կեանքի այդ ամենից նեղացուցիչ շրջանը չկարողանալով հաշտեցնել իրենց փափկակեցութեան հետ, ուստի այդ հոգսն օտարներին են յանձնել[1]: Եւ Եւ ոչ միայն մայրական գրկից, այլեւ տնից հեռու էր մնում երեխան, դայեակների մօտ, որ ոչ ազնուական, բայց ծնողների վստահութիւնը վայելող բարեկեցիկ մի ընտանիք էր լինում: Նոյն ընտանիքի հայրը պաշտօնական դայեակն էր, որ սանին դիեցնելու համար տալիս էր իր կամ մի ուրիշ կնոջ: Հայրենի յարկից այդ հեռացման շնորհիւ էր, որ Ռշտունեաց եւ Արծրունեաց երկու նշխարներն ազատուեցին Տիրանի կազմակերպած կոտորածից[2]: Վարդանանց ապստամբութեան շրջանին, երբ սպարապետը մի պահ հեռացաւ Հայաստանից, մատնիչ՝ Վասակը՝ Մամիկոնեանների, Կամսարականների եւ միւս հաւատարիմ իշխանների մանուկներին հաւաքեց «իւրաքանչիւրի դայեակից» եւ տարաւ ու փակեց Սիւնեաց բերդերի մէջ[3]: Այսպէս նաեւ Մամիկոնեան Հմայեակի երեք զաւակներին՝ Վահանին, Վասակին եւ Արտաշէսին, «որոնք յոյժ տղաներ էին», վերցրել էր «դայեակներից» ու տարել Պարսից պալատը, որպէսզի մեռնէին իբրեւ մահապարտների որդիներ, իսկ չորրորդը՝ Վարդը, «մնացել էր իր դայեակի մօտ Տայքում[4]»: Ռշտունեաց Համազասպուհու դայեակն սոսկական մի կին էր եղել[5] եւ Կամսարական Ներսեհի դայեակի որդին յիշւում է «Շիրմաց գիւղից[6]» այսինքն մի շինական:

Մեր տիկնայք մինչ զգուշանում էին իրենց զաւակները դիեցնելուց, Արշակունեաց օրով յօժարութեամբ ընդունում էին իրենց լանջերի վրայ թագաւորների զաւակները, որ իրենց տների եւ արքունիքների միջեւ այդ կաթով սերտ ու շատ յարգի կապ էին ստեղծում: Եղիշէն Յազկերտի անագորոյն վարմունքը մեր ազատունու հետ յիշելով, շեշտում է՝ թէ «որ բոլորից մեծն ըստ մարմնական կարգով է», նախարարների մէջ որոշները կային «որոնց եղբայրներն իրենց մօր կաթով էին սնուցել[7]». այսինքն իրենց մայրերն էին նրանց սնուցել: Գառների լանջերի վրայ կերակրելով գայլի կորիւններ: Մեր իշխանների դայեակութեան կապերը շատ են նաեւ հայ Արշակունեաց հետ, որոնց մասին ընդարձակօրէն խօսել եմ ուրիշ տեղ[8]:

Երբ մեր աշխարհի մէջ քաղաքական ապահովութիւնը խախտուեց բարբարոս տիրապետութիւնների ներքոյ, հայ տիկիններն ստիպուեցին փոխել իրենց նախկին ոճը, եւ կաթնատուն բերեցին իրենց մօտ, միշտ պահելով օտարի միջոցով դիեցնելու

---

1. Աստ՝ 7: — 2. Աստ՝ 57: — 3. Փրպ. 195: — 4. Նոյն՝ 323-24, 335: — 5. Աստ՝ 7: — 6. Փրպ. 454: — 7. Եղշ. 18: — 8. Գասա. 12-14, 25-29:

սովորութիւնը: Այսպէս է դարում Արծրունի Վարդ պատրիկի կինը՝ **Մարիամը**, իր Ստեփանոս մանկանը դեռ «յիստեան» եւ նրա «դայեակի» հետ միասին իր մօտ էր պահում[1]: 913 թւին Սմբատ Սիւնեցու ամուսինը՝ **Սոփիան**, իր հետ ունէր «ծծկեր» մանուկը նախ Երնջակի ամրոցի եւ ապա գերութեան մէջ[2]: Եւ ԺԲ դարում Դաւիթ Գանձակեցին վկայում էր թէ «մեծատուն կանայք նոր ծնւած մանուկներին տալիս էին ստնտուին (միշտ իրենց մօտ), իրենք կաթ չէին տալիս[3]»: Անշուշտ բացառութիւններ էլ կային. օրինակ՝ Սիդոնի հայ տիկինն, որդեսէր՝ **Ցիմին**, անձամբ էր դիեցնում իր զաւակներին. այնպէս որ նրա եղբայրը՝ Լեւոնն, գրում է թէ կրտսերը՝ Ճւանը, ծնւած քաղաքական ծանր պարագաների մէջ «սնւեց առանց իր մօր կաթով[4]», ուրեմն միւս որդիները սնւած էին:

Հայ տիկինները կաթնատու եղել էին հեթանոս Ցազկերտի եղբայրներին: Սակայն միջին դարի մեր սնապաշտ կղերը չէին ներում, որ հաւատացեալ կանայք սնուցիչ լինէին ոչ քրիստոնեայ մանուկներին: Ցիչեալ Գանձակեցին այսպէս է գրում. «Քրիստոնեայ կնոջ պարտքը չէ քուրդ տղային իր ստինքներով կերակրել», որովհետեւ իր կաթն, ասում է, սրբացած աւազանից, անպատեհ էր տալ անսուրբ հեթանոսին: Նրանց, որ անգիտութեամբ մեղանչեն այս սահմանի դէմ, մի տարի ապաշխարանք է սահմանում. իսկ գիտակցաբար «նզովեալ է լինելու եւ որոշելու եմ, ասում է, ամէն եկեղեցիներին[5]»: Հաւանական է, որ այս արգելմանը հպատակւողներ էլ եղան, բնականաբար ռամիկ դասի մէջ:

7.- Երբ դիեցման շրջանն անցնում էր, մայրենի գիրկը բացւում էր մանկան առջեւ, ուր նա գտնում էր գորով, գգւանք եւ մտքի ու սրտի սնունդ իր մօր շրթունքներից եւ առաջնորդութիւններից: Արիստակէսը հայ մօրը մանուկներն իր գրկի մէջ՝ նմանեցնում էր աղաւնու, որ միշտ թրթռում է նորափետուր ձագերի շուրջը[6]: Նրա առաջին մտածմունքն էր նորածինների կեանքի պահպանութիւնը, բացի բժշկական կամ սնապաշտական դարմաններից, որ գործածւում էին տկարութիւնների պարագային[7], ունէին նաեւ պահպանողական միջոցներ, որոնցից ոմանք սնապաշտական էին: Օրինակի համար մագաղաթի վրայ օտարախորթ անուններ էին խառնում սրբերի անունների հետ, զանազան սնոտի եւ Աւետարանից էլ քաղւած խօսքերով, դնելով «դրճի» կամ փոքրիկ տուփի մէջ. խաչանիշ կնքում էին եւ կապում իրենց մանուկների

1. *Մաժ.* 9, 11: — 2. *ՑՀ. կթ.* 302-3. *Օրբ.* 135, 140: — 3. *Ալաւ. ԿԸ*: — 4. *Հվք. յշտ.* 1249: — 5. *Ալա. ԻԱ*: — 6. *Լստ.* 38-9: — 7. *Աստ՝* 26-7:

բագուկներին ու պարանոցին իբրեւ «պահապան»[1]: Իսկ բարեպաշտ «շատ կանայք» դրանց փոխարէն, ուղղակի Աւետարանից մի կտոր օրինակում էին, որ «աւետարանակ» էր կոչւում, եւ քրիստոնէական հին մի սովորոյթ էր[2], եւ «կախում էին մանուկների պարանոցից» ասում է Յհ. Եզնկացին[3]:

Կային եւ մայրեր, որ բացի իրենց կապածից բաղձանք ունէին ու զաւակներին պատւիրում էին, Աւետարանի մի ամբողջ բաժին իրենց վրայ կրել նաեւ մանկութիւնից յետոյ ու միշտ: Այսպէս Բախտեար պատրիկը 1073 թւին մանր երկաթագրով օրինակել է տալիս Յովհաննու Աւետարանը, որ «քաջաջան մտքի յօժարութեամբ» իր մայրը «պատւիրել էր միշտ պահի» սիրելին «զգեստի գրպանի մէջ» եւ այս «նրա սրտի հանգստութեան համար եւ նրա կեանքի պահպանութեան, որ բանսարկուի խարէութիւնից անսայթաք մնայ»: Իր մօր այդ փափագն ազնւօրէն կատարեց, ծնողի հետ «մեծ ցանկութիւնով յոյս ունենալ Աւետարանի զօրութեանը[4]»:

Նոյն բարեպաշտները կարեւորութիւն էին տալիս եւ ջանում էին նաեւ իրենց զաւակների օրհնութիւնն առնելու: Այսպէս երբ տեսնէին «առաքինի այր եւ իմաստուն վարդապետ», իրենց մանուկները նրա մօտ էին տանում օրհնելու, որոնք կատարում էին նրանց խնդրանքն այս բանաձեւով. «Ողորմի՛ քեզ Աստուածն, որդեակ եւ օրհնի քեզ[5]», ինչ որ համեմատ է Ոսկեբերանի հին եւ անբնագիր մի հատուածի պահածին[6]:

8.- Գալով նիւթական պէտքերի եւ կրթութեան մասին, այստեղ հայ տիկնոջ մօտ անպակաս է պաշտօնեաների օժանդակութիւնն էլ: Նրանց առաջինը դայեակներն են, որոնք հատուցանելոյ կամ տղայոց կարկելոյ[7], կամ տղայոց հեռացնելոյ[8] կամ կաթից անջատելոյ[9] յետոյ, շարունակում էին իրենց հոգը երեխաների վրայ, այս պատճառով նրանք Ե դարում ներկայ եւ հաստատուած էին իշխանական պալատի մէջ իրենց սաների մօտ[10]: Արծրունեաց պատմիչը հաղորդում է թէ՝ **Սոփի** տիկնոջ սուգի հանգամանքները նրանցից է լսել, որոնք «մանուկներին իրենց գրկում էին կրում[11]», որ նրա հինգ փոքր զաւակներն էին՝ Աշոտը, Գագիկը, Գուրգէնը, **Սոփիան** եւ ուրիշ մի անանուն դուստր[12], որոնք դիեցման շրջանից հեռացած էին արդէն:

Գրկի մէջ կրելու շրջանն էլ անցնում է եւ հասնում է լսելու եւ ուսանելու ժամանակը, այսինքն դաստիարակութեան: Տիկնոջը պատկանում էր այս յոյժ կարեւոր գործն էլ, որը իր մտաւոր եւ մարզական մասերով շատ բարդ էր եւ որի համար տիկինն

---

1. Ալաւ. ՂՁ: – 2. Երզ. 221: – 3. Յհ. Եզ. Մա. 484: – 4. Հաւ. յշա: — 5. Մշկ. 66, 70: — 6. Ոսկ. Պօղ. Ա, 178: – 7. Մանդ. ԻԱ, . Ողջ. Ա, 8: — 8. Ոսկ. Մտթ. Ա, 668: — 9. Եա. ԻԸ, 9: — 10. Փրպ. 160: — 11. Արծ. 300: — 12. Նոյն՝ 245. Օրբ. 191:

իրեն օժանդակող մասնագէտ **դաստիարակներ** ունէր, արական սեռից՝ ուստերի, եւ իգականից՝ դուստրերի համար[1], որոնք աշխատում էին նրանց զարգացման խնդրով, ուղղակի նրանց մօր հսկողութեան եւ առաջնորդութեան ներքոյ, մինչ հայրերը թաղուած էին արտաքին զբաղմունքների մէջ[2]: Նրանք իրենց պաշտօնը շատ շուտ էին սկսում, երբ սաները դեռ «երեխայ» էին, ինչպէս նշում է Ղազարը, Վարդանանց պալատների մէջ[3]: Նոյն պաշտօնեաները նաեւ շրջապատում էին յոյն տոհմիկ մանուկին, «ուր նրա համար կար հայրն եւ մայրը, դաստիարակը, դայեակն եւ մի վարդապետ», ասում է Ոսկեբերանը. եւ որոնց գործերն էլ ճշտում է թարգմանիչը հայ ազնուական տան մէջ, նոյն վկայութիւնն այսպէս է ընդլայնում. «ուր **հայրն** ի վերայ կայցէ», մեզ մօտ շատ հեռուից. «եւ **մայրը** շուրջն է պատում» մօտից հսկելով զաւակին «եւ **դաստիարակն** օժանդակ կայցէ» ծնողներին, յարատեւ մանուկի հետ մնալով «եւ **դայեակն** մտածում է» նրա սննդի, առողջութեան եւ այլ արտաքին խնամքի «եւ **վարդապետն** հրահանգելով վարժեցնում է» մտաւոր ու մարզական գիտութեան մէջ[4]: Դրանցից դաստիարակի դերը կարեւորագոյնն էր, իբր ծնողներին փոխարինողի եւ աւելի բարոյական, ինչպէս հաղորդում է Ե դարի մի գրիչ: «Երեխային, ասում է, դաստիարակը հրահանգում է հեռու մնալ վնասակար խնդիրներից եւ օգտակարի մօտ կանգնել, իսկ անօգտակարով չզբաղուել[5]»: Ընկերանում էր նրան թէ տանն եւ թէ դրսում, վարւում եւ շարժւում էր ըստ մօր ցանկութեան, որ ցոյց էր տալիս նրան, մինչեւ իսկ որտեղ պէտք էր իր զաւակին տանել եւ որ վայրերից զգուշանալ[6]:

Այդ մայրենի իշխանութիւնը չափաւորւում էր արքայորդիների մանաւանդ գահաժառանգների դաստիարակութեան մէջ, որտեղ այդ պաշտօնը յանձնւում էր ազնւականներին գործելու մեծ ազատութեամբ: Այսպէս Տիրանի որդուն՝ Արշակի դաստիարակն եղան Արտաւազդ ու Վասակ Մամիկոնեանները[7]. եւ Արծրունի Սենեքերիմ արքայի պայազատին՝ Դաւթի, «մանկակալ եւ սնուցիչը» Շապուհն էր «քաջ եւ հզօր պատերազմող այր[8]»: Աւելի ստիպողական էր այդ, արքայի կամ իշխանի մահւան ժամանակ, որ դաստիարակն միանգամայն երկրի վարիչն էր դառնում մինչեւ սանի մեծանալը: Այսպէս վարւեց Մանուէլ Մամիկոնեանը, Պապի մանուկների՝ Արշակի ու Վաղարշակի հետ, որոնց

1. *Աստ*՝ 8: — 2. *Աստ*՝ 21: — 3. *Փրպ*. 160: — 4. *Ոսկ. Պօղ. Ա*, 315: — 5. *Ծճխ*. 79: — 6. *Աստ*՝8: — 7. *Փաւս*. 47: — 8. *Ուռ*. 48:

«իբրեւ սան սնուցանում էր[1]» մինչեւ թագաւոր դարձրեց նրանց[2]: Թորոս Բ Ռուբինեանը 1168-ին օրհասի պահին «իր տղայի՝ Ռուբէնի, դաստիարակ նշանակեց իշխան Թումասին, որ Թորոսի աշխարհը մի տարուց տէր կանգնեց», մինչեւ հանգուցեալի եղբայրը՝ Մլեհը, բռնակալեց[3]: Տեսանք նոյն կարգադրութիւնը նաեւ մեծն Լեւոնի դստեր ու յաջորդի վերաբերեալ[4]:

Այս պայմանի մէջ էր ապրում Պապն՝ Արշակի ժառանգն, որ իբր այդպիսին առանձին էլ արքունիքի մէջ էր բնակւում: Իր մայրը՝ **Փառանձեմը**, հեռուից նրան հետեւում էր: Նրա վարքի նկատմամբ շատ յոռի տեղեկութիւններ է ստանում, գնում եւ մտնում է նրա սենեակը. խրատում, յանդիմանում եւ լացում է, բայց իր ձայնն անլսելի է մնում[5] եւ չի կարողանում որդու մասին վճռական կարգադրութիւններ կատարել, այլ թողնում ու գնում է: Նրա բուն դաստիարակները չեն յիշւած, որոնք ինչպէս երեւում է փոխանակ չինելու քանդել էին նրա մէջ մարդը:

Բացառիկ դիպւածներ են դրանք արքունիքին յատուկ, իսկ սովորական պայմաններում, հայ տիկինը գիտէր սանձը բռնել թէ զաւակների եւ թէ դաստիարակների, որոնք պարզ ու կիրթ քաղաքացիներ էին[6]: Ոսկեբերանի ասածով թէ «ոչ ոք պատահաբար, դոյզն կերպով չէին ցանկանում դաստիարակ լինել, թէպէտ դրանից աւելի մեծ արւեստ չկար[7]»: Որոշներն այդ պաշտօնն եկեղեցական դասից էին նշանակում եւ սահակեան կանոններն արգելում էր ժողովրդական քահայային «ազատների տանը» կամ «իշխանի տանը դայեակութիւն...կատարել[8]» իրենց սեփական սպասաւորութեան խանգարման պատճառով:

Գեղեցիկ են արդիւնքներն այդ մայրական դաստիարակութեան, որ մեզ աւանդել է պատմութիւնը: Յիշւած Պապի որդիների՝ Արշակի ու Վաղարշակի, մայրը **Զարմանդուխտն** էր «որը կայսերական քաղաքից էր[9]». դատելով անունից հայազգի էր, բայց Բիւզանդիոնի բնակիչներից, զարգացած յունական կրթութեամբ, նրբութեամբ ու հաստատուն նկարագրով, ուստի աւելի բախտաւոր ու բարոյապէս բարձր քան իր սկեսուրը: Կարողացաւ նոյնպէս բարձրացնել իր զաւակներին էլ, որոնցից անբաժան էր ապրում[10], հսկում եւ նրանց սրտերը մաքուր պահեց իրենց ամբարիշտ հօր վատթար օրինակի ազդեցութիւնից: Նրա սպանութիւնից յետոյ Արշակը (Գ) հայրենի թագը կրեց[11], բայց իր քրիստոնեայ փափուկ խիղճը չհանդուրժեց «անաստւած» Պարսից ծառայութեան մէջ ապրել, մանաւանդ, որ մեր պարսկամոլ իշխանախումբն էլ իրեն

1 Փաւս. 244: — 2. Աստ՝ 54-5: — 3. Տրգ. Կիլ. 250: — 4. Աստ՝ 9: — 5. Փաւս. 155-56: — 6. Աստ՝ 9: — 7. Ոսկ. Մտթ. Բ, 26: — 8. Սոփ. Բ, 93: — 9. Խոր. Դ, խբ: — 10. Փաւս. 244: — 11. Աստ՝ 54-5:

Հակառակ էին, թերեւս նրա հելլենասիրութեան պատճառով: Եւ թողնելով իր պաշտելի Այրարատն նրանց ընտրած Խոսրով Գ արքային[1], վշտալի սրտով գահը փոխադրեց Հայաստանի յունական բաժնում «հաւատացեալ երկրում» քան թէ մնալով ժառանգութեան հարցի մէջ «տեսնել անվերջ հաւատքի սպանելը սուրբ եկեղեցու թշնամիների կողմից» եւ նրա պաշտօնեաներից[2]: Մայրենի կրթութեան ազնուական ներշնչումը, որ ընդունել էր եւ կառավարում էին իրեն:

Հայրենեաց պարծանք՝ «կարմիր Վարդան»ը, որ հաւատքի եւ աշխարհի փրկութեան համար, Աւարայրի դաշտն իր արեամբ ներկեց, Հմայեակի հարազատը, որ նոյն դատի համար ընկաւ եւ Համազասպեան՝ նախ մարտնչող եւ ապա կալանաւոր ի Պարսկաստան տարուեց նոյն սուրբ նպատակի համար, դաստիարակութեան պտուղներն եղան ոչ այնքան իրենց հօր՝ Համազասպի, որ ոչ մի յիշատակ չթողեց[3] իր կարողութեան եւ գործունէութեան, որքան Ս. Սահակի արեամբ ու շնչով կազմուած Սահականուշի, որ թէ վաղամեռիկ ամուսնու կենդանութեան եւ թէ յետոյ մայրական պարտականութեան մէջ իրեն թիկունք ունէր մեծահանճար եւ շնորհափայլ հօրը, որ մինչեւ իր հայրենի ստացուածքը, յետին օրհնութիւնն ու կտակը՝ «պահել սուրբ Գրիգորի պատուիրանի վարդապետութիւնը», թողեց իր թոռներին[4]:

Վարդանանց ամուսինները կամ պատերազմին իրենց դիւցազն կենակիցներին զոհ տուած եւ կամ մատնուած երկարատեւ գերութեան, «թէպէտ նեղութեան մէջ էին», սակայն չէին ուզում նմանուել «անփոյթ եւ անպիտան կանանց», այլ «իբրեւ քաջայրերի առաջիկայ չքեղաբար օգտաբեր հրահանգներին հոգացող լինեն մանուկներին[5]», գրում է պատմիչը, կատարելով իրենց սովորական պարտականութիւնը: Եւ այդ «չքեղաբար օգտաբեր հրահանգների» մէջ բարոյականի հետ տեսնում ենք մարզականն ու զինուորականն էլ, որոնց մեծ կարեւորութիւն էր տալիս մեր ազատանին[6]:

***Շուշանիկը***՝ Աւարայրի մեծ նահատակի դուստրը, եւ ձուլուած նրան ու ***Դաւթական*** աստուածասէր հոգիների կաղապարով, - որի համար կարող էր պարծենալ՝ թէ «որոնց ես եմ զարմ, որոնք սիրեցին քեզ որպէս ճշմարիտ Աստուած», - աղօթքի մէջ վկայում էր զաւակների մասին՝ թէ նոյնպէս էին «սնուած արդարութեամբ իմ բազուկների վրայ[7]» , որտեղ աւելի մօտ եւ ազդու էր հնչում մայրենի սրտի ձայնը նրանց ականջին. թէպէտ աւա՛ղ, իր ամուսնու ամբարիշտ բռնութիւնը, յետոյ պիտի կորզէր այն զաւակներն իր գրկից:

---

1. Փաւս. 261: — 2. Փրպ. 20-22, 28-30: — 3. Հմմտ. Խոր. Գ, ծա: — 4. Փրպ. 103-4: — 5. Նոյն՝ 334:
6. Դաստ. 298-320 եւն: — 7. ***Սոփ. Թ***, 25, 14:

Նշանաւոր է իր հօրեղբօր՝ Հմայեակի կինը՝ Ձւիկն, եւս «հոյակապ եւ ականաւոր Արծրունեաց տոհմից», ու բարեպաշտ ծնողների զաւակ, որի եղբայրն՝ Աղանն, աշխարհից հրաժարուած, անապատի մէջ ճգնում էր[1]: Այդ տիկինը, ասում է ականատեսը, «անուանի կին է եղել եւ ամենից առաւել լաւ, թէ մտաւոր կերպով Հայաստան աշխարհի բոլոր կանանց մէջ»: Այրի եւ անտէր մնացած ազգիս ընդհանուր դժբախտութեան մէջ, անցաւ Վրաստանի Աշուշա բդեշխի տունը, որ իր քեռայրն էր, **Անուշվռամ** քրոջ ամուսինը, եւ այնտեղ «սնեց եւ խրատեց իր որդիներին», անձնանւէր գործակցութեամբ ազնւասիրտ հարազատին, ինչպէս վկայում է Ղազարը գրելով Վահանին. «Մնուցանում է ձեր օրհնեալ մայրը եւ Անուշվռամն ըստ իրենց հոգեսիրութեան եւ մեզ ու ձեզ[2]»: Այս պատմիչի մասին յետոյ ենք խօսելու[3]: Ուրեմն «սնուցել մանուկներին եւ սովորեցնել» շնորհիւ այդ մայրենի խնամքին եւ ընդունելով «հրահանգը հոգեպէս եւ մարմնապէս», որոնց վերջինը մարզականն էր, «յառաջադէմ էին ամենից եւ հռչակաւոր» եւ պատանի հասակից իսկ «մտքով տեսնելու յաջողակ եւ զարմանալի էին երեւում[4]»: Նրանց անդրանիկը՝ Վահանը, «մտաւոր այր, առողջախորհուրդ եւ բարեսէր», ինչպէս մայրը պատրաստել էր եւ ճարտար ամէն գործի մէջ[5], իր անունն անմահացրեց, ի սէր հայրենեաց չորս տարի կռւելով պարսիկների դէմ, եւ շահելով Հայաստանի անդորրութիւնն ու մարզպանութիւնը: Երկրորդն՝ Վասակը, զինակցեց եղբօրն ու նահատակւեց աշխարհի համար: Երրորդին՝ Արտաշէսի կեանքը չենք իմանում: Իսկ չորրորդը՝ Վարդը, նախ կալանաւոր Տիզբոնի մէջ, ապա փախստական, վերջը յաջորդեց եղբօրը մարզպանութեան մէջ:

Նախապէս հանդիպեցինք Բախտեար պատրիկին[6], որ մեր պատմագիրների մօտ անյիշատակ է մնացել հօրը հետ: Մի յիշատակագրի ենք պարտական իր մասին մեր ունեցած ծանօթութիւնը, «մեծաշնորհ եւ մաքուր աղաւնի Քրիստոսի պատւական» մօրը հետ, որ իր դաստիարակն ու բարեպաշտութեան դարբինն եղաւ, ինչպէս ակներեւ է մեր արդէն տրւած տեղեկութեան մէջ էլ. եւ որ յիշատակագիրը լրացնում է, սահմանելով նոյն պատրիկը «լուսազարդ զաւակ» իր մօրը, «պայծառ, պանծելի եւ բարեպաշտ» մի անձ[7]: Գուցէ Հոռոմոսի երեք խաչքարերն էլ իր զարմինն էին, այս արձանագրով. «Այս խաչերս **Բախտեարենցն** է[8]»:

Սասունի տեարք Վիգէնն ու **Մելքաթին**[9] նոյնպէս լաւ դաստիարակութիւն տւեցին իրենց զաւակներին «խրատով եւ ուսմամբ սնուցեցին կրթելով նրանց Տիրոջ

---

1 Փրպ. 15, 572: — 2. Նոյն՝ 572: — 3. Աստ՝ Ժ, 6: — 4. Փրպ. 334-35, 588: — 5. Նոյն՝ 338: — 6. Աստ՝ 89: — 7. Հւք. յշա. 1073: — 8. Շիր. 173: — 9. Աստ՝ 39:

երկիւղով եւ բարեպաշտական հրահանգներով»: Արիստակէս գրիչը գովում է նրանցից երկուսին, որոնց մի ժամանակ մահը խնայեց նրանց. Զօրուանէլ, որ այսպէս է նկարագրում. «քրիստոնասէրը, սրբասէրը, քահանայասէրը, խոնարհամիտը, հեզը, խելացին, սիրունը, սիրելին, ողորմածն ամենից[1]». եւ նրա «գեղեցիկ աստուածասէր» քոյրը՝ **Կատան**[2], որ «ըստ հայրենի ազնւականութեանն եւ ըստ մայրենի աստուածապաշտութեանն, որով սնել էր[3]», խառնւեց մեր առաքինի տիկինների փայլուն կարգի մէջ[4]:

Մեծ է դաստիարակութիւնը նաեւ Լամբրոնի Հեթումեանների տան մէջ[5]: Մի յիշատակագիր դրւատում է Հեթում Ա սեբաստոսի զաւակներին՝ Օշինն անդրանիկի հետ, եւ խնդրում է յիշել նոյն «մեծանուն արքայապատիւ սեւաստոս Օշինին, իր կենակցի հետ սրբասէր եւ բարեզարդ զաւակներով եւ քրիստոսասէր հարազատներով[6]»: Նրա կենակիցն էր **Շահանդուխտը**, որ ընծայեց Պահլաւունիների տոհմն իբր մի թանկագին պարգեւ[7], եւ որը լամբրոնեան կրթութեան հիմնաքարը կարող ենք համարել: «Իբրեւ վայելուչ այգի, ասում է գրիչը, նորատունկ զաւակները ծաղիկների նման հայրենի սեղանի չուրջն եւ մնային Աստուծոյ օրհնութեանն»: Նրանցից մէկն էր Տարսոնի ապագայ անզուգական առաջնորդն, որ բարոյական մեծութիւնը մօրն էր պարտական, լինելով «իր քաջահաւատ մօրից դաստիարակւած ամէն երկիւղով[8]». եւ որ կարող ենք կրկնել նաեւ միւս որդիների մասին: Հերիք է նկատենք, որ նրանց անդրանիկը՝ Հեթում Բ եւ գրաւելու հայրենի գահը, կեանքն աւարտեց մի մենաստանի մէջ[9]. եւ նրան յետոյ Շահանդուխտի դուստրերի՝ Շուշանի ու Տալիթայի հետ տեսնելու ենք հաւատաւորի թուխ տարազի մէջ: Ութ հոգանոց ընդանիքից երեքն հողին յանձնւեցին եւ հինգը վանք փոխադրւեցին: Այս է տիկնոջ տւած դաստիարակութեան բարեպաշտական բաժինը:

Գալով ուսումնականին, պատմիչը չեշտում է թէ Ներսէսը նախ հայրենի տան մէջ վարժւեց «դպրութեան ուսման ըստ ծնողների յօժարութեան միւս եղբայրների հետ». **ծնողների**, որոնց մէջ մեծագոյնը մօր բաժինն էր. այնպէս որ «հելլենացու գրկում» էլ ուսում ստացաւ «իր մօր ջանքերով». եւ Շահանդուխտն էր դարձեալ, որ նրան Շնորհալու մօտ տարաւ, քահանայ ձեռնադրել տւեց, եւ թողեց «նրա մօտ վարժւելու[10]»: Իր խնամքը վայելեցին միւս զաւակներն էլ, ասաց պատմիչն, որոնցից Հեթումին գովում է իբրեւ «զգօն այր եւ մեծիմաստ եւ չատ գրագէտ[11]», որը Ներսէս

1. **Հրպ**. 393: — 2. Անդ՝ 395. աստ՝ 40: — 3. Հյպ. 394: — 4. Աստ՝ Ը, 1: — 5. Աստ՝ 67: — 6. **Հւք. յշա**: — 7. Աստ՝ 66: — 8. Պտմ. Լմբ. 224: — 9. Աստ՝ 64: — 10. Պտմ. Լմբ. 227, 228: — 11. **Մխ**. 81:

Դոքսոպատրիոսի գաւազանագիրն ու հռոմէական կայսերների մի շարադրութիւնն եւս հայացրեց լատիներէնից[1], որին տեղեակ էր ու թարգմանիչ եղաւ իր եղբայրն էլ: Այսքան ընդարձակ էր Լամբրոնի տիկնոջ տուած զարգացումը իր զաւակներին:

Շահանդուխտը մայրենի դաստիարակութեան առաջին փայլուն օրինակն էր Հեթումեան տան մէջ, ունեցաւ իրեն նախանձողներ նոյն պարիսպների մէջ եւս: 1274ի մի յիշատակագիրը գովում է նաեւ նրա թոռանն՝ Ա Կոստանդինի, «պարկեշտուհի» կենակցուհուն՝ **Սանփանխայլին**, եւ նրա կրթած զաւակներից «խոհեմ խորհրդով եւ ջերմ բարեպաշտութեամբ» Օշին Գ մարաջախտին, որ «վասն տիրոջ սիրոյն» գրել ու ճոխաբար կազմել է տալիս մի Աւետարան: Ակնարկում է նաեւ նրա եղբօրը «քաղցրաբարոյ Հեթումին՝ նահատակւելով Քրիստոսի հօտի վրայ[2]», որի ընտիր կենակիցը՝ **Թեւանու**, պատրաստեց նոյնպէս սքանչելի **Կեռան** թագուհուն ու քոյրերին, հետեւելով Շահանդուխտի շաւղին:

Փոխենք վայրն եւ անցնենք Հեթումեանց միւս ամրոցն՝ Պապեռոն, ուր **Ռիթան**՝ նոյն տոհմի մի ծաղիկ, նւիրւած Ռուբինեան Ստեփանէին[3], եւ այրիացած արկածախնդիր ամուսնուց[4] Ռուբէն ու Լեւոն զաւակներովը, որոնց կեանքը վտանգւած էր տեսնում գազանամիտ, բռնակալ տագեր՝ Մլեհի, կողմից, ուստի գնաց եւ ապաւինեց հայրենի պարիսպների՝ Բակուրան, հարազատի մօտ, որ «բարի, առատ եւ մեղմ բնաւորութեամբ այր էր ամէն տեսակէտից» եւ իր քրոջ եւ քեռորդիների հանդէպ էլ նոյնպէս եղաւ: Ռիթան «այնտեղ նստած սնուցանում էր», որ «բարեպաշտ եւ իմաստուն կին էր եւ տիրոջից երկիւղած[5]». աւագին պատրաստելով Մլեհի յաջորդը լինելու եւ կրտսերին Հայոց կործանւած գահի վերականգնողը. «բարի բնութեամբ, աղքատի եւ կարօտեալի նկատմամբ ողորմած, եկեղեցու եւ Աստծու պաշտօնեաներին սիրող», եկեղեցաշէն եւ աշխարհաշէն մի մարդ[6]: Դժբախտաբար տիկինն եղբօր մօտ էլ հանդարտ չմնաց եւ բաբախուն սրտով ականատես եղաւ իր տագեր վագրանման ժանիքներին, որոնք երկարատեւ կարկառել էր ամրոցին եւ իր զաւակների դէմ, մինչեւ որ բռնաւորն իր զօրքին էլ զզւելի դարձած, ընկաւ նրանց սրերով եւ տէրութիւնն անցաւ Ռիթայի քաջ եւ իմաստուն որդիների ձեռքը[7], որոնք իրար յաջորդելով ընդարձակեցին աշխարհը:

Երկրորդ անգամ մայրական պաշտօն վարեց նոյն տիկինն իր անւանակից **Ռիթա** թոռան վրայ, ծնւած մեծն Լեւոնի առաջին կնոջից՝ **Զապլունից**, որին երբ յաջորդեց **Սիպիլը**, խորթ մօր մօտ այլեւս տեղ չկար Ռիթայի համար, որ դեռ «մանուկ» էր: Նրա

---

1. Հյպ. Ա, 114: — 2. Հնգ. տմս. ԺԲ, 245: — 3. Աստ՝ 67: — 4. Աստ՝ ԺԷ, 1: — 5. Տրգ. կկլ. 253-54: — 6. Կիր. 76: — 7. Տրգ. կկլ. 260 եւն:

բարի տատր գթալով իր մօտ վերցրեց Լամբրոնի մէջ[1], եւ «սնուցում էր նրան թագաւորի մայրը՝ տիկնաց տիկինն, որի յիշատակը օրհնութեամբ լինի», գրում է Սմբատը[2] պատրաստելով նրա մէջ Երուսաղէմի ապագայ թագուհուն: Նոյն տիկնոջ միւս թոռը՝ Ռուբէնի կրտսեր դուստրը՝ **Ֆիլիպը**, որբացած իր մօրից՝ **Զապէլից**[3], նոյնպէս «մնաց Լեւոնի մօր մօտ[4]» եւ ինքը պիտի պսակւէր Նիկիոյ թագով: Սմբատի դստեր տւած կրթութիւնը թագեր էին շահեցնում միշտ (Լեւոնի, Ռիթայի, Ֆիլիպի): Չենք իմանում որտե՞ղ եւ ո՞ւմ միջոցով կրթւեցին Ֆիլիպի քոյրերն՝ **Ալիծն** ու **Դոլեան**, որոնք նոյնպէս պատւաւոր տներում հարս եղան[5]:

9.- Եթէ մեր յիշած օրինակներն յստակապէս չեն ցոյց տալիս (չեշտում) մայրերի գործունէութիւնը զաւակների դաստիարակութեան մէջ, կան ուրիշ բազմաթիւ տոհմեր, որոնց մէջ ցոլում են այդ կրթութեան արդիւնքներն եւ որոնց ներքեւ ծածկւած, բայց զգալի է միշտ մայրական բաժինը: Ահա այդ երջանիկ տներից մի քանիսը:

Ժամանակի եւ ներկայի կարգով դրանց առաջինն էին Բագրատունիները, որոնք եթէ յաջողեցին վերականգնել Հայաստանի արքայութիւնը, իրենց առաքինի եւ իմաստուն դաստիարակութեան զօրութեամբ էր, որ հասան այդ փառքին: Առանց դիմելու հին դարերին, ուր նրանց տոհմից չքնաղ օրինակներ չատ կան, բաւական է տեսնենք, որ նրանց գահի հիմնադրի հայրը՝ Սմբատը, հաւատի համար տանջւեց ու մեռաւ բանտի մէջ խոստովանողական մահւամբ[6]: Որդին՝ Աշոտը, նկարագրւում է «մեծիմաստ եւ քաղցրաբան» եւ ժուժկալ ուտելիքի մէջ. միանգամայն «միշտ իրեն վարժեցնում էր բարի կրթութեան հրահանգներին եւ իր հոգու բարի ազդեցութիւնը տալիս էր բոլորին». խաղաղասէր, առատաձեռն ու սիրաշահող[7], եւ «Աստուծոյ հաճելի ամենայն անբիծ վարքով[8]»: Իր մայրը յայտնի չէ եւ նոյնպէս ամուսինը, որ գործակցեց իր հետ պատրաստելու պատւական զաւակների մի խմբակ, որոնցից իր յաջորդը՝ Սմբատը, մարտիրոս դարձաւ Յիսուսի հաւատքին. Մարիամը եւ Սոփին առաքինի եւ մեծ տիկնայք հանդիսացան, իսկ **Հրանուշի** մասին[9] բաւական տեղեկութիւն չունենք: Նոյն Սմբատի որդին եւ բարեպաշտութեամբ երեւելի մի մօր[10] զաւակն էր Աբաս թագաւորը, որ Անանիա կաթողիկոսը նկարագրում է «հեզահամբոյր եւ քաղցրաբարբառ, հզօր ըստ արժանի իմաստութեամբ» եւ այլն[11]:

1. Աստ՝ ԺԵ, 1: — 2. Սմ. Տրգ. 116: — 3. Աստ՝ 67: — 4. Սմ. Տրգ. 105: — 5. Աստ՝ 67: — 6. ՑՀ. կԹ. 164: — 7. Նոյն՝ 175, 168: — 8. Ասղ. 158: — 9. Աստ՝ 60: — 10. Աստ՝ Ը, 4: — 11. Արր. 1897, 132:

**Մարիամը** կամ **Մարեմը**, դարձած Սիւնեաց տիկին, չատ չուտ կորսնցրեց ամուսնուն[1] եւ միայնակ զաւակներին կրթեց, որոնցից անդրանիկը՝ Սուփանը, նմանեց մօրը բարեպաշտութեան մէջ եւ «առաւել Քրիստոսի եկեղեցիների չինութիւնն եւ նորոգութիւնն իրեն էր վերաբերում», ասում է պատմիչը[2]: Նոյնպէս **Սոփին**, իրեն վիճակուած խառնակեաց ու վաղամեռիկ մի կենակից[3], ինքն ստանձնեց իր որդիների կրթութիւնը, որոնցից մէկին յետոյ Վասպուրականի թագաւոր տեսանք[4], իսկ դուստրը՝ **Սոփիան**, յետոյ Սիւնեաց տիկին, առաքինի եւ բարեգործ մի կնոջ համբաւը թողեց իրենից յետոյ[5]: Ցիչեալ մարտիրոս Սմբատի թոռն՝ Աչոտ Ողորմածը, բարեպաչտութեամբ ու գթասրտութեամբ[6] զարմանալի եղաւ, իսկ սրա դուստրը՝ **Հռիփսիմէն**, կուսութեամբ ապրեց[7]:

Շատ զգալի է նոյն տոհմի դաստիարակութեան չարունակութեան արդիւնքը նաեւ նրանց Կիւրիկեան տան մէջ[8], որոնցից Կիւրիկէ Գ արքան նկարագրւում է «այր բարեբարոյ եւ կատարեալ առաքինի գործի մէջ առաւել քան իր հարսը[9]»: Իր կենակիցն **Թամարն** էր, անյայտ տոհմից, որ գործակցեց իր հետ, կրթելու սքանչելի զաւակների մի խումբ: Նրանցից երեքը՝ **Մարիամը, Ռուսուքանը** ու **Մամամ**, գերազանցում են բարեգործութեան ու հոգեսիրութեան մէջ[10], իրենց եռանդուն կեանքն աւարտելով կուսանոցի մէջ, ուրիչ երկու փափկասուն տոհմակիցների հետ, որոնց ծնողներն անծանօթ են[11]: Նոյն արքայի թոռն՝ Աղսարթանը, «այր աստուածապաշտ եւ քահանայասէր», որ նախապէս էլ ճանաչեցինք[12], աշխարհից ձանձրացած, իր իշխանութիւնն յանձնեց Կիւրիկէ որդուն եւ ինքը կրօնաւոր դարձաւ[13]: Իսկ միւս որդին Ցովհաննէսը նախ վանական, ապա եպիսկոպոս եղաւ Հաղբատի[14]:

Այդ մեծ ցեղի մրցակիցն եղաւ եւ գերազանցեց Պահլաւունեաց տոհմն, որ կրօնական եւ մտաւոր դաստիարակութեան ջերմագոյն վառարանն հանդիսացաւ, եւ ազգին տւեց հայրապետների ու եպիսկոպոսների մի չքեղ չարք: Դժբախտաբար պատմութիւնն անյայտ է թողել այդ տոհմի մի քանի կարեւոր մայրերի անունները: Այսպէս յիչւած չէ Գրիգոր Մագիստրոսի կենակիցը, որ մասնակցեց պատրաստելու ութ ընտիր զաւակների մի խումբ, որոչներն անունով անծանօթ են մնացել[15]: Նրանց միջից Վահրամը, որը հօրն յաջորդեց իչխանութեան մէջ, «սնւած եւ վարժւած էր մանկութեան տարիներից աստուածային ուսմամբ եւ գրոց եւ զարդարւած էր ամենայն բարութեամբ»,

---

1. Աստ՝ 60: — 2. Ցհ. կթ. 174: — 3. Աստ՝ 43: — 4. Աստ՝ 60: — 5. Աստ՝ Ը, 1 ԺԱ, 1 եւն: — 6. Ասղ. 180: — 7. Աստ՝ Ը, 4: — 8. Աստ՝ 56: — 9. Կիր. 72: — 10. Աստ՝ ԺԱ, 1: — 11. Աստ՝ Ը, 4: — 12. Աստ՝ 63: — 13. Կիր. 72, 73: — 14. Նոյն՝ 56: — 15. Ծն. պրգ. 21:

Նախ ամուսնացաւ եւ ապա գահից ու աշխարհից հրաժարուեց եւ վերջը նստեց Լուսաւորչի աթոռի վրայ, Գրիգոր Վկայասէր անունով: Իր չորս քոյրերից մէկը՝ անանուն, եւ ամուսինը Պահլաւունի համարուած[1] Ապիրատի որդուն՝ Վասակին, տուեց ազգին՝ Բարսեղին[2], առաջ Անիի արքեպիսկոպոս եւ ապա կաթողիկոս: Մի ուրիշը նոյնպէս անանուն եւ կենակիցն անանուն ու կարծեցեալ մի Պահլաւունու[3], դաստիարակեց չորս զաւակներ, որոնցից մէկը՝ Գրիգորիսը, կաթողիկոս կարգուեց Եգիպտոսում, իբրեւ քեռու տեղապահը[4]. Վահրամը՝ Եգիպտոսի վզուրկն եւ յետոյ կրօնաւոր. Վասակը՝ իշխան նոյն տէրութեան, Թեբայիդի մէջ[5] եւ չորրորդն՝ Ապիրատը[6]:

Վերջինի ու զուգակցի՝ **Վանէի**,- որի անունը ցարդ անյայտ էր եւ գտնելու բախտն ունեցայ[7], եւ որի հաւասարն երեւում է նոյն շրջանում նախ Կիւրիկեանց մէջ[8],- սիրոյ ու բարեպաշտութեան պտուղներն եղան Գրիգորիս եւ Ներսէս հայրապետները, սրբութեամբ հաւասար, իսկ հանճարով կրտսերն ու յաջորդը գերազանց: Կային նաեւ սրանց քոյրը՝ **Մարիամը**, «այրիութեամբ եւ սրբութեամբ վախճանուած[9]» եւ երկու եղբայրները՝ Վասակը կամ Վասիլը եւ Զօրավարը, որոնց առաջինը «բարեհոգի» **Մարեմիկի** կենակիցը- Լամբրոնացի Բ Հեթումի դուստրը[10] - պարծանքը կազմեց Գրիգոր Տղայ կաթողիկոսը, մինչ նոյն զոյգի միւս զաւակներից տասը հոգի, որոնցից մէկը Սարգիս քահանան եւ չորս «բարեհոգի» դուստրները՝ կոյսերը, տարաժամ մեկնեցին աշխարհից[11], իսկ իրենց թոռը՝[12] Գրիգոր Քարավէժը,- անանուն դստրից ու Պահլաւունի հօրից[13],- յաջորդեց քեռուն՝ Գր. Տղային: Վասակի եղբայրը՝ Զօրավարը, ինքն էլ Լուսաւորչի աթոռին պարգեւեց իր զաւակներից մէկը՝ Գրիգոր Ապիրատը, որի եղբայրներն էլ յիշւում են մեծ գովեստով[14], իսկ նրանց քոյրը՝ **Շահանդուխտը**, երեւելի դաստիարակ, եկեղեցուն ու գրականութեան ընծայեց բարձր մի հանճար՝ Ներսէս Լամբրոնացուն, ինչպէս տեսանք[15]:

Բայց Պահլաւունիների ազգացուցակն աւելի երկարաձիգ է քան Հ. Ալիշանի եւ Մ. Լըրոյի կազմածները[16]. տեւեց Ժ - ԺԳ դարերի մէջ եւ տուեց ուրիշ նշանաւոր եկեղեցականներ: Այսպէս, Գր. Տղայի եղբօր՝ Ապիրատի, որդին՝ Գրիգորը, առաջնորդ եղաւ Անիի: Նոյն կաթողիկոսի միւս եղբօր Վահրամի թոռը՝ Գրիգորը, Ապուղամրի որդին եւ «չառաւիղը սրբոյ Գրիգորի» կամ Պահլաւունու, նոյնպէս հովուեց Շիրակի

---

1. Անդ՝ 13: — 2. Վրդ. 104: — 3. **Շն. պրգ.** 26: — 4. **Սոփ. ԺԴ**, 28: — 5. Աբս. 47-49: — 6. **Սոփ. ԺԴ**, 30: — 7. **Թոր. աղբ.** Ա, 117: — 8. Աստ՝ 56: — 9. **Թոր. աղբ.** 117: — 10. Անդ եւ **Հյպ.** 414: — 11. **Թոր. աղբ.** 118: — 12. Կիր. 69: — 13. **Շն. պրգ.** 13: - - 14. **Հւք. յշ.** 1201: — 15. Աստ՝ 94-5: — 16. **Շն. պրգ.** 13. Գր. Մագ:

ոստանում[1]։ Միեւնոյն ժամանակ վերջինի եղբօր՝ Ամիր Երկաթի, որդին՝ Բարսեղը, արքեպ. եւ առաջնորդն էր Հոռոմոսի ուխտին[2] եւ ապա յաջորդեց հօրեղբօրն Անիի մէջ։ Մի ընտանիք, որը տուեց ուրեմն եօթը կաթողիկոս, չորս արքեպիսկոպոս ու մէկ վաղամեռիկ քահանայ եւ մի քանի ճգնաւոր բարեպաշտներ։ Կատարեալ ղեւտական մի տուն, որի մէջ իշխում է աւանդական կրօնասիրութիւնը, զուգուած բարձր դաստիարակութեամբ։ Եւ այդ հովիւներն իրենց առաքինութեամբ, առաջնորդութեամբ, հանճարով ու գրչով մեր անցած գնացածներից ամենափայլուններից են եղել եւ որոնց վրայ անկասկած մեծ էր նրանց մայրերի արդիւնքն էլ։

Վասպուրականի արքայական գահի 1066 թւին դէպի Սեբաստիա գաղթելուց յետոյ Աղթամարի մէջ իշխում էր Արծրունիների մի ճիւղը։ Դրանցից էր Աբուլմսեհ աւագ կիւրապաղատի որդին «սուրբ մարտիրոս Թոռնիկի» եւ ինքն իսկ «հեզ, խոնարհ, առատ, ողորմած, աղօթասէր, սրբասէր, այրեաց ակնածու, որբերին խնամքոտ … եւ միշտ խորհում էր տիրոջ օրէնքներով»։ Իրեն կենակից ունեցաւ Գր. Մագիստրոսի զաւակներից **Մարիամին**, որ նոյնպէս «սնւում էր սրբութեամբ եւ աստուածապաշտութեամբ» հայրենի տան մէջ, որ իր պէս դաստիարակեց իր ծնունդներն էլ[3]. եւ որոնցից մէկն Ստ. Ալուզն, «այր աստուածասէր եւ բարեպաշտ, հնազանդ իր ծնողներին», յետոյ նստեց հայրենի գահի վրայ։ Հոգեսէր տիկնոջ միւս զաւակներն էլ «տեսան փառք եւ պատիւ[4]»։ Նրանցից մէկը՝ Դաւիթը, կզզու հովւութեանը բարձրացաւ, որի սրտի մէջ փառասիրութեան դեւը մտաւ, որ միջին դարում լայն ասպարէզ գտաւ մեր ազգի մէջ եւ պառակտեց արքայական եւ հայրապետական աթոռները եւ 1113-ին հիմնել տուեց Աղթամարի կաթողիկոսութիւնը։ Ծնողները տեսան այդ, զուցէ եւ հաճելի չեղաւ, մանաւանդ մօրը, որի տոհմին հակառակ էր այդ, բայց չկարողացան խափանել։

Կուրանի Դարբանդ քաղաքի մէջ ԺԱ-ԺԲ դարում հայկական մի թագաւորութիւն էր նստում, ուր հօրը յաջորդեցին որդիները՝ Վաչագանը, Գոչակտակը, Փիլիպէն, Սեւադան, Սենեքերիմն ու Գրիգորն, որոնք ամէնը, ասում է պատմիչը, «անարատ եւ սրբակրօն էին», եւ պատարագի մէջ յիշատակւում էին սուրբ թագաւորների հետ[5]։ Այդտեղ էլ ակներեւ է դաստիարակութեան հրաշքը։

Բարեպաշտ կրթութեան պտուղներ են տեսնւում նաեւ ռազմագոռ ու տիրապետող Զաքարեանների տան մէջ, ուր վերջերը ԺԲ դարում, Սարգիս իշխանի տան

1. *Շիր*. 119, 150, 165։ — 2. *Անդ*՝ 20, 165։ — 3. *Արծ*. 347-48։ — 4. *Նոյն*՝ 354, 355։ — 5. *Ուռ*. 231։

զարդն է Կայէնի տէր Վաչուտի կամ Վաչէի դուստրը **Սահակդուխտը**[1], որի գրկից Զաքարէ եւ Իւանէ առիւծների հետ դուրս թռան չորս զառնուկներ եւս. **Նանա, Խորիշահ, Նրջիս** ու **Դոփ**, որոնց առաջին երեքն պայծառացնելուց յետոյ իրենց վիճակւած տները[2], ճգնութեան նւիրեցին իրենց վերջին օրերը[3], մինչ չորրորդը յաւերժացնում էր անունն իր մտած տան մէջ[4]:

Հոգեւոր ու մտաւոր մեծ միչակոյթ էլ տեսնում ենք Պապեռոնի տիրոջ՝ Հեթումեան Կոստանդնի, նահապետական յարկի տակ, ուր նախ Լամբրոնացի **Աւիծն** իշխեց եւ ապա **Պիադրիծն**[5], որի անունն անծանօթ է այլ հայուհիներին, կասկածելի է դարձնում իր հայութիւնը եւ **Անգլիայի գրական պատմութեան** հրատարակիչը՝ Կոստանդնի որդին Հեթումն հօրաքեռորդի կամ մօրաքեռորդի (cousin) է անւանում Յոհան Իբլինացուն[6], որը նոյն իշխանի փեսան էր[7]: Աւիծի զաւակներից էին, նոյն Հեթումը, որ նստեց մեծն Լեւոնի գահի վրայ, իմաստուն եւ հզօր մի իշխանութեամբ եւ բարեպաշտութեամբ էլ անւանի[8]: Սմբատն, որ սպարապետութեան ։իսնամեայ սրի հետ բռնեց նաեւ գրիչն էլ, տւեց մեզ **Տարեգիրքն** ու կիլիկեան **Օրինագիրքը**: Օշինը պայլ եղաւ թագաւորութեան մէջ: Լեւոնը՝ իշխանաց իշխան ու մարաջախտ. Բարսեղը՝ «արքեպիսկոպոս թագաւորութեան». եւ **Մարգարիտն, Ստեփանին** ու **Մարիամն**, որոնցից երկուսն օտար արքունիքների զարդերն եղան[9]: Իսկ Պիադրիծի մայրութիւնը վայելեցին Յովհաննէս արքեպիսկոպոսն, որ յաջորդեց եղբօրը. **Հռիփսիմէն** հաւատաւոր եղաւ. Վասակը՝ Ճանճոյ բերդի տէրն, աղօթասէր եւ աղօթական, նկատւած զաւակներով իր Աւետարանի մէջ[10]:

Այդ բարի զաւակներն իրենց ստացած դաստիարակութիւնն աւանդեցին նաեւ իրենց սերունդներին: Օշինի նորածիններից մէկը՝ Հեթումը, Կոռիկոսի տէրը, թաթարների պատմութեան հեղինակն եղաւ եւ ուրիշ գրաւոր աշխատութիւնների, եւ մի մենաստանում կեանքն աւանդեց[11]: Միւսն՝ անւանակից հօրը, 1284-ին գաղափար է տալիս «ի վայելումն» անձին՝ Շնորհալու գրւածները, նկարագրւելով իբրեւ «հետաքրքիր աստւածային օրինացս», եւ «հոգեկիր, ուսումնասէր, աստւածասէր եւ բարեպաշտ». եւ թէ «շատ էր սիրում գրքերի ընթերցումը[12]»: Սրանց եղբօրորդին՝ սիր Լեւոնն, «աստւածասէր եւ բարի» պատանի, 1256-ին «եռափափագ սիրով» ընդօրինակել է տալիս մի Աւետարան իր համար, յիշելով այնտեղ «իր հօրը՝ սիր Լիկոսին, եւ իր

---

1. Աստ՝ 107: — 2. Աստ՝ 55: — 3. Աստ՝ Ը, 4: — 4. Աստ՝ 33: — 5. Աստ՝ 68: — 6. **Պատմ.** գրկ. ԻԱ, 449: — 7. Աստ՝ 68-9: — 8. Աստ՝ 49: — 9. Աստ՝ 68: — 10. **Պատմ. արգ.** 255: — 11. **Մխ.** 337, 339: — 12. **Հաւ. յշտ.**:

բարեպաշտ մօրը՝ տիկին **Ակացն**, եւ իր դստերն երեսեան[1]»: Մօր բարեպաշտութիւնն է, որ ցոլանում է որդու մէջ:

Տեսանք Ռուբինեանց փառաւոր տոհմն էլ[2], որ առանց լաւ դաստիարակութեան չհասաւ իր բարձրութեան: Նրանց նախահայրն ու Կիլիկիայի առաջին տիրապետողը՝ Ռուբէնը, պատմում է «բարեպաշտական կեանքով ապրեց[3]»: Իր որդին՝ Կոստանդինը, գովւում է որպէս «այր քաջ եւ արդարագործ[4]»: Սրա զաւակը՝ Թորոս Ա-ն, իր սրտի վկայ թողեց եկեղեցիների, վանքերի եւ հիւրանոցների մի բազմութիւն[5]: Վերջինի եղբօրորդին Թորոս Բ-ն իր արիութեան հետ «այր բարեպաշտ եւ ողորմած էր, մեծախորհուրդ եւ առատամիտ. վարժւած Աստուծոյ հին ու նոր օրէնքներին» եւ թրի հետ հաշտեցրեց գրչին էլ, «շատ դժւարալոյծ խօսքը բացատրւած, որ այժմ գտնւում է մեզ մօտ», ասում է պատմիչը[6], եւ որոնք դժբախտաբար չհասան մեզ: Իսկ կեանքն ու մեծութիւնը կնքեց կրօնաւորական սքեմի մէջ[7]: Նոյնպէս աւարտեց սրա եղբօրորդին՝ Ռուբէնն էլ[8], որ Լեւոնի հետ ստացած մայրենի գեղեցիկ կրթութիւնը տեսանք[9]:

Իր առաքինութեան եւ աստիճանի համեմատ դաստիարակեց նոյն Լեւոնի դուստրին՝ **Զապէլին**, իր զաւակներին էլ, նրանց մէջ դրոշմելով իր «հեզանազ պարկեշտ[10]» հոգին: Նրանցից Ռուբէնը վախճանւեց մանկահասակ: Թորոսն «ողջախոհութեամբ զարդարւած», եւ «լցւած ամենայն բարեձեւութեամբ», ինչպէս վկայում են եղբայրը՝ Լեւոնը ու հօրեղբայրը՝ Յովհաննէսը[11], ընկաւ Մառոյ մարտի մէջ կապանի առջեւ: Նոյն Լեւոնը, «առատամիտ, ողորմած, ունկնդիր զգւելոց, վտանգւողների ապաւէնը, ողջախոհ եւ մաքուր, խելացի եւ ժուժկալ», յաջորդեց հօրն Հայոց գահի վրայ, կոչւելով «սուրբ արքայ Հայոց[12]»: Այդ երկու եղբայրները «ողջախոհութեան» առաքինութիւնն ուսանեցին իրենց հօրից աւելի[13], Զապէլից, որի գովեստը պիտի յետոյ տեսնենք: Վեհ հոգու տէր թագուհին կերտեց նաեւ «իր արքայադուստրերին բարեպաշտութեամբ զարդարեալ եւ Աստուծոյ օրէնքները սիրող[14]», որոնք էին **Զապլուն** կամ **Զապէլ**, որը դեռ կոյս խամրեցաւ. **Ռաիթա** կամ **Ռիթա**՝ կենակից Սարվանդիքարի իշխանորդուն՝ Կոստանդնի, պսակւած 1261-ին Սսոյ

1. Անդ: 2. Աստ՝ 66: — 3. **Պատմ. Ռբ.** 214: — 4. Անդ: — 5. **Պատմ. Ռբ.** 214: — 6. Անդ՝ 218: — 7. **Սիս.** 56: 8. **Պատմ. Ռբ.** 219: – 9. Աստ՝ 95: — 10. **Ազ. Հնդ.** 1910, Բ, 25: — 11. **Հւք. յշտ.** 1263, 1266: — 12. **Պատմ. Ռբ.** 222: 13. Հմմտ. աստ՝ 48: – 14. **Հւք. յշտ.** 1263:

մէջ[1]. **Ֆիմի, Զապլ կամ Սպլ** եւ **Մարիամ** կամ **Մարիա**[2], որոնց առջեւ բացւեց եւրոպական պալատների դռները[3]:

Հիանալի մի կրթարան եղաւ նաեւ յիշեալ Բ Լեւոնի մեծ քաջածանօթ տունը[4], ուր նրա հետ ճառագայթում էր լամբրոնացի բարեպաշտուհին՝ **Կեռանը**, որ նկարագրւում է «իբրեւ նորատունկ ձիթենի՝ ծաղկած լուսաւոր գործերով եւ բարեբոյս ծնունդներով[5]»: Իր այդ «աստւածաշնորհ զաւակներին» տրւած ընդհանուր գովեստից բացի՝ պանծացւում է յատկապէս «անհամեմատ բոլորից» անդրանիկը՝ Հեթումը, որ մանկական հասակից վարժւած էր աստւածային օրէնքների ընթերցմամբ, «սիրեց իմաստութիւնն եւ սիրեցաւ ի նմանէ[6]». «բարեմիտ եւ շնորհալի եւ ամենիմաստ, զւարթադէմ եւ զւարթաբարոյ[7]», որ յաջորդելով հօրը, թագաւորութեան հետ միացրեց կրօնաւորութիւնը: Իր եղբօր Թորոսի համար էլ կարդում ենք թէ «հաւասարի ի մանկական տիս ողջախոհութեանն Յովսէփայ»: Իսկ մի ուրիշը՝ Ներսէսը, ընդունեց քահանայական օծումը[8]: Իրենց եղբօր՝ Սմբատի, գահասիրութիւնն եղաւ, որ ապա վրդովումներ առաջացրեց նրանց մէջ[9]: Իսկ Կեռանի շնորհազարդւած դուստրերը հրաւիրւեցին տանելու իրենց գեղեցկութիւնն ու նրբութիւնն օտար իշխողներին[10]: Նրանց տոհմային բարեպաշտութեան պատկերացումն է իրենց Աւետարանի խմբանկարը: Նրանցից մէկի՝ Օշինի որդին ու յաջորդը Լեւոն Դ-ն, գովւում է նոյնպէս իբր «շատ երկիւղած եւ աստւածասէր» մանկութիւնից[11]:

Պաղտին մաղաջախտն ու **Մարիունն**, երկուսն էլ Հեթումեան զարմից[12], առաքինի ու բարեպաշտ անձեր եւ տիկինն որակւած «հեզահոգի եւ ամենապարկեշտ» բառերով[13], այնչափ ընտիր դաստիարակութիւն են տալիս իրենց զաւակներին, որ մանկութեան մէջ իսկ ցոյց են տալիս նրա հրապոյրը: **Այծը** 1319-ին դեռ հազիւ եօթնամեայ, Կոստանդին գրիչը նրան սահմանում է մօրը պէս՝ «հեզահոգի եւ համեստ տամուժէլ». եւ նրա Կոստանդին եղբօրը՝ «դեռաբողբոջ եւ իմաստուն մանուկն հանճարեղ պատանին», երբ դեռ վեցամեայ էր միայն[14], եւ որ 1344-ին դրեց Հայոց թագը՝ խոհական ու քաջ առաջնորդութեամբ[15], թէպէտ եւ Դարդէլը, սիրող Լիւսինեանց, գովեստով չի խօսում նրա մասին[16]: Իսկ իրենց քրոջը **Ֆիմիկին**, տեսնելու ենք որպէս Կոռիկոսի տիկին[17]:

---

1. ***Տրգ. Կիլ.*** 336: — 2. ***Հւք. յշտ.*** 1263. ***Պատմ. Աբ.*** 211: — 3. *Աստ*՝ 67: — 4. *Աստ*՝ 84-5: — 5. ***Պատմ. Աբ.*** 242: — 6. ***Հյպ.*** 490, 516: — 7. ***Պատմ. Աբ.*** 242: — 8. *Անդ*՝ 242-43: — 9. *Զմչ. Գ*. 296-97: — 10. *Աստ*՝ 67: — 11. ***Հյպ.*** 535: — 12. *Աստ*՝ 68-9, 80: — 13. ***Հւք. յշտ.*** 1319: — 14. *Անդ*. : — 15. *Զմչ. Գ*, 349-51 *եւն*: — 16. *Դրդ*. 44, 52, 53 *եւն*: — 17. *Աստ*՝ *ժԸ*, *ժ*, 2:

*Բարեպաշտութեամբ երեւելի է նաեւ Ներքին Խաչէնի տիրոջ տոհմը «բարեսէր եւ աստուածահաճոյ» Տօնկիկ Վախթանգի եւ Զաքարեան **Խորիշահի**[1], որի զարմանալի կենաց ականատես պիտի լինենք[2]: Սրանք իրենց հարազատ հոգով կրթեցին իրենց զաւակներին էլ, իբրեւ «ժառանգ մարմնաւոր եւ հոգեւոր յիշատակ» իրենց իսկ վկայութեամբ[3] եւ որոնց մէջ գերազանցեց անդրանիկն ու հօր յաջորդը՝ Հասան Ջալալ Դոլա, «այր բարեպաշտ եւ աստուածասէր, հեզ եւ հանդարտ, ողորմած եւ աղքատասէր, աղօթքով ճգնող» անապատականների պէս, «պարկեշտ ուտելու եւ ըմպելու մէջ[4]», եւ եկեղեցաշէն[5], որ վերջը հաւատքի համար մարտիրոսութեան պսակն ընդունեց Խզւինի մէջ[6]: Իրեն կենակից ունեցաւ **Մամքանին**, «Թոռը Բաղուց Թագաւորի[7]», որ ըստ ժամանակի յարմարութեան՝ լինում է ծանօթ խաչէնացի Հասանը[8]: Այդ տիկինը նոյնպէս մեծ առաքինի մի անձ էր[9], իրենց նման պատրաստեցին իրենց զաւակներին էլ. այնպէս որ անդրանիկն ու ժառանգն՝ Աթաբակը, նկարագրւում է «այր սրբասնունդ, պարկեշտ, խոնարհամիտ եւ աղօթական» հօրը պէս. «որովհետեւ, չեշտում է պատմիչը, նրա ծնողներն այնպէս սնուցեցին նրան[10]»: Միւս զաւակը՝ **Մամա խաթունը**, 1280-ին հռչակում է իրեն դուստրը նոյն «ինքնակալ իշխանաց իշխանի» եւ «բարեպաշտ իմ մօրը՝ Մամքանին, եւ ամուսինը մեծ պարոն Ումեկին[11]», որ մանծկերտացի Ճար անուն ազնուականի որդին էր եւ ըստ Ցհ. Եզնկացու՝ «աստուածասէր եւ բարեհոգի» մի անձ[12], իսկ տիկինը նոյնպէս մէկը մեր առաքինիներից, որ կարողացաւ իր ընդունած դաստիարակութիւնը փոխանցել նաեւ իր որդիներին՝ Քարիմատինին ու Վախտանգին, որոնցից առաջինին նոյն վարդապետը գովում է իբրեւ «մեծապատիւ եւ խոհեմամիտ եւ մեծ իշխան» եւ կրտսերը՝ «զւարթամիտ պատանի ... որդին բարեպաշտ մօրը, որ Քրիստոսի օրէնքներով զարդարւած ոգի էր[13]»:*

*Իմ այս թւարկութիւնը կարող էի դեռ երկար շարունակել, ցոյց տալու համար, թէ որքան ընդարձակ էր դաստիարակութիւնը մեր ազնւական տոհմերի մէջ: Բայց ընտանեկան կրթութիւնն ազնւական դասի մենաշնորհը չէր, անշուշտ, մեր աշխարհի մէջ[14] եւ մենք նրա փայլուն արդիւնքները տեսնում ենք, երբեմն, պարզ քաղաքացիների տներից ներս եւս: Դրանցից էր բանաստեղծ Նարեկացու ծնողների տունը, որի շինողն եղաւ նոյն ուխտի անւանի վանահօր՝ Անանիայի եղբօր դուստրը եւ որի բարեպաշտութիւնը բոլոր ընտանիքին մղեց հոգեւոր կեանքի, սկսած ամուսնուց՝*

---

1. *Աստ՝* 55: — 2. *Աստ՝ Ը*, 4: — 3. *Հաւ. յիշ.* 1216: — 4. *Կիր.* 229: — 5. *Աստ՝ ԺԱ*, 1: — 6. *Կիր.* 229. *Վրդ.* 152: — 7. *Ճհխ. Բ*, 377: — 8. *Աստ՝* 58: — 9. *Աստ՝ Ը*, 1: — 10. *Կիր.* 230: — 11. *Ճհխ. Բ*, 373: — 12. *Հյպ.* 512: — 13. *Անդ*: — 14. *Աստ՝* 91:

Խուրովից, որ նախ վանական եղաւ, ապա եպիսկոպոս Անձեւացեաց, որի ձեռնադրիչն՝ Անանիա Մոկացին, նրան անուանում է «համեստ այր եւ գիտուն», եւ ձեռնադրութեան ժամանակ արդէն «ալեզարդ ծերութեամբ զարդարուած[1]»: Կան իր գործերն էլ, պատարագի եւ ժամերգութեան մեկնութիւնները: Երկու որդիները՝ Գրիգորն եւ Յովհաննէսը, Նարեկի վանականները, միասին մնչեցին զմայլելի աղօթամատոյցը[2], հաւանօրէն իրենց վիճակակից ունենալով նաեւ Սահակ եղբօրը, որ հօր պատարագամեկնիչն ընդօրինակում է[3]:

Կայ բարձրբերդացի Կոստանդին Ա կաթողիկոսի տունն էլ, որ եկեղեցուն ընծայեց նոյն հայրապետին, մի եպիսկոպոս ու երկու քահանայ, բոլորն էլ գովուած անձեր: Կոստանդինի ծնողներն էին Վահրամն եւ **Շուշիկն**, որոնք անկասկած նախ իրենք լաւ դաստիարակուած, կրթեցին ու պատրաստեցին յիշեալ սրբասէր ու անուանի կաթողիկոսին եւ նրա հարազատներին՝ Գորգ քահանային, Գրիգորին եւ «պարկեշտուհիներ՝» **Շուշանիկին** ու **Վանենիին**: Գորգի եւ կնոջն՝ **Ազիզի**, բարեպաշտութեան պտուղն եղան՝ Թորոս քահանան, Ստեփանոս եպիսկոպոսն եւ Գրիգորը «զինուոր եւ տարաժամ վախճանուած»: Նոյն Թորոսն ու **Տայիթան**՝ կենակիցը, տւին իրենց տոհմին՝ **Մլեհին**, **Շուշանին** եւ Ստեփանոսին՝ **Ակացիի** ամուսնուն, «որ այժմ զինուորեալ իշխանական պատուով թագաւորական դռանը», ասում է յիշատակագիրն 1256 թւականին[4]: Այդ հայուհիների մասին առանձին տեղեկութիւններ չունենք: Ինչպէս պակսում են մեզ անուններն անգամ ուրիշ հազարաւոր մայրերի, որոնք մեծագոյն բաժինն ունեցան իրենց ծնունդների դաստիարակութեան եւ նրանով իրենց ընտանեկան առաքինութիւններն ու գեղեցիկ աւանդները դարեր շարունակ պահպանելու մէջ: Դրա չքնաղ արդիւնքները տեսնելու ենք նաեւ մեր հետագայ գլուխների մէջ:

10.- Կան աստուածասէր մայրեր, ազնուական թէ ռոսկական, որ մեծ փափագ ու մխիթարութիւնն ունեցել են իրենց զաւակը կամ որդիներից մէկը նուիրելու վանական կեանքին եւ մանաւանդ աստուածային սեղանին սպասարկութեանն, առ այս ձեռք բերելով ամուսինների հաւանութիւնն էլ: Եւ այս այն ժամանակ, երբ զաւակը դեռ անկարող էր կամակցելու մօրը բաղձանքներին: Ահա մի քանի օրինակներ:

Աւանդութեամբ պատմւում էր եւ Յովհաննէսը լսել էր Եսայի կաթողիկոսի մասին, թէ զաւակն էր աղքատ ու մուրացիկ մի այրի կնոջ, որ նրան գրկած նստում էր հայրապետանոցի եկեղեցու դռան առջեւ, արհամարհելով ցուրտն ու տօթը: Եւ երբ քահանաները հարցնում էին, թէ ինչո՞ւ այդպէս բացօթեայ էր անցկացնում,

1. ***Արր.*** 1897: 276: — 2. Նրկ. 268: — 3. Խսր. Պտ. 67: — 4. ***Ցցկ.*** Հլպ. Բ, 140 ***Թոր. ազգ.*** Ա, 187:

*պատասխանում էր. «Զգիտէք, որ սակս կաթողիկոսութեան իմ որդուն այստեղ եմ սնուցանում»: Արդարեւ նոյն հայրապետանոցի մէջ էլ սնուեց եւ ուսանեց մանուկը եւ յետոյ նախ եպիսկոպոս Գողթանի, ապա Լուսաւորչի աթոռին բարձրացաւ*[1]*:*

*Ցիշեցինք Արծրունի* ***Սմբատուհու*** *ուխտական զաւակը Դերէն (Ա)*[2]*, որի նուիրումն այսպէս կատարուեց: Մինչ դեռ մանուկ էր, ծնողները նրան տարան Աչատայ վանքը, իրենց հետ բազմաթիւ պարգեւներով եւ բոլոր կրօնաւորների համար զգեստներ ու հողաթափներ: Մայրը տղային առաւ գրկի մէջ, մատուցեց վանահօրն եւ ասաց. «Տէր, ի գրկի այս մանուկն ընդունիր, որպէս Սամուէլ հին ժամանակում. Նրան տիրոջն եմ տալիս իր կեանքի ամենայն ընթացքում»: Դերէնը մեծացաւ, երեսուն տարեկան դարձաւ եւ գայթագղիչ մի գործով հասկացրեց, որ մայրենի ուխտին յարմար նուէր չէր եւ վերադարձրին հօրը*[3]*:*

*Ներսէս Լամբրոնացին, իր եղբայրների մէջ երկրորդը, «ուխտեալ էր որովայնից» Աստծուն ընծայուելուն: Երբ ծնուեց, սկսաւ աճել եւ ծնողները տեսան նրան «կայտառ, փայլելով ապագայի շնորհներով», մարդկային մասը զօրացաւ նրանց մէջ եւ խորհեցին իրենց իշխանութեան ժառանգն  անել: Շուտով մանուկի վրայ ծանր հիւանդութիւն եկաւ, որ սպառնում էր խլել նրան իրենց ձեռքից: Ցնցուեցին եւ* ***Շահանդուխտը*** *նրան իր գիրկն առաւ, ամրոցից վար իջաւ Սկեւռայի սուրբ տաճարում եւ զաւակին գցեց Աստուածածնի առջեւ, կատարելով իր ուխտը, եւ «այդ ժամանակ շունչը վերադառնալով կենդանացաւ տղան» եւ այլեւս վանքից դուրս չեկաւ*[4]*:*

*Բարեպաշտ մայրն այդ չափով չվերջացրեց իր պաշտօնը, այլ հետեւեց միշտ նրան: Երբ Ներսէսը տասնուվեց տարեկան դարձաւ, բռնելով նրա ձեռքից տարաւ եւ կանգնեցրեց իր հօրեղբօր Շնորհալու առջեւ, որ «ըստ հաւատով խնդրած իր եղբօր դստեր կողմից» քահանայական կարգը տուեց նրան եւ կրթութեան շարունակութիւնն յանձնեց նրա «հոգեւոր դաստիարակին՝» Ցովհաննէս վարդապետին, ինչպէս պատշաճ էր նրա ազնուականութեան՝ յատուկ մի դաստիարակ ունենալու*[5]*: Ցետոյ Շահանդուխտն անհուն մխիթարութիւնը վայելեց, տեսնելով որդուն նստած Տարսոնի արքեպիսկոպոսական աթոռի վրայ, քսաներեք տարեկան հասակում, ձեռամբ իր հօրեղբօրորդու՝ Գրիգոր Տղայ կաթողիկոսի: Բայց նա, որ աթոռից աւելի վանքն եւ ուսումն էր սիրում, փախաւ դէպի Կիպրոս, հմտանալու համար յոյն հռետորական արուեստին, ինքն որ պերճախօսութեան մի հանճար էր ծնուած: Մայրն ու եղբայրները*

---

1. *Ցհ. կթ.* 137. *Ասղ.* 105: — 2. *Աստ՝* 80: — 3. *Շպհ.* 38-39: — 4. *Պտմ. Լմբ.* 226. *Հյպ.* 419: — 5. *Աստ՝* 90:

«բռնութեամբ» վերադարձրին նրան, չհանդուրժելով նրա կարօտին, մինչեւ որ ձեռնադրութիւնից վեց տարի յետոյ, իր ձեռնադրիչն «ողոքանօք եւ աճարկութեամբ» գամեց աթոռի վրայ[1] եւ որից տասնեօթ տարի արձակեց իր ակնախտիտ ճառագայթները բանիւ եւ գրով եւ քառասունվեց տարեկանում գնաց գրաւելու Յիսուսի խոստացած գահը:

Գիտնական Յովհաննէս Վանական վարդապետի մասին կարդում ենք՝ թէ նրա ծնողները նոյնպէս «նրան նւիրեցին Աստծուն՝» Գետկոյի մենաստանի մէջ[2]: Մատենագրական գործեր թողեց, որոնց մէկ մասը կորսւած է: Մի գրիչ յիշում է Լեւոն Բ արքայի որդիներից մէկին, «նւիրւած Աստծուն գներսէս», Նւէր՝ որին մասնակից եւ գուցէ նախաձեռնակ եղել էր **Կեռանն** ինքն, որ վախճանւում է այդ յիշատակութեան տարւայ մէջ իսկ[3]: Նոյնպէս եւ **Ասփան**՝ Գրիգոր Դոփեանցի կինը[4], որ ամուսնուն տւեց «որդիներ եւ դուստրեր», նրանցից մէկը՝ Սարգիս անունով, «նւիրւած Քրիստոսին ստնդեայ հասակում» եւ աստիճանաբար բարձրանում է Խաչէնի եպիսկոպոսութեան[5]: Ցուցիչ է պարագան կարնեցի Հրահատ քահանայի կենակցի՝ **Լիտիկի** անունով, ԺԴ դարի երկրորդ քառորդին, որ այդ ժամանակ քաղաքը թաթարները գրաւում են եւ իր զաւակը՝ «բարեզարդ մի մանուկ» գերի տարւեց դէպի Թաւրիզ: Մայրը «ծնողական գթովն աղէքարշեալ, կանացի տկարութիւնն ի բաց եդեալ», գնաց, որոնեց ու գտաւ որդուն: Ինչ ստացւածք, որ ունէր վաճառեց, գնեց զաւակը եւ այնտեղ իսկ նրան «Աստուծուն նւիրեց», որ վերստին չնորհեց իրեն իր որդեակը, բերեց Գառնի գիւղաքաղաքը, Սարգիս Մոզոնց քահանայի մօտ ուսման տւեց եւ նա յետոյ երիցութեան կարգն ստացաւ Առաքեալ անւամբ[6]:

11.- Մայրեր, որ այդչափ անձնատուր են լինում իրենց զաւակներին, նրանց կեանք տալով, սնուցանելով, կրթելով ու բարձրացնելով, իրաւունք ունէին նաեւ վայելելու նրանց ամբողջ երախտագիտութիւնը, որ յայտնւում է երբեմն որդիական գորովի ցոյցերով: Ա Հեթումի եղբայրն՝ Յովհաննէսն, արդէն արքեպիսկոպոսական աստիճանի ծանրութեան մէջ, մանկութեան գորովալի փաղաքշութեամբ մի տեղ մօրն անունն է ասում. «**Մայրիկն իմ Պիադրիծ** յիշեսցի ի Քրիստոս[7]»: Իր եղբօրորդին՝ Բ Լեւոնը, յանձնարարում է յիշել իր հօրը՝ Հեթումին, «իր որդիներով», բայց յարում է յատուկ խանդաղատութեամբ. «եւ առաւել յիշեցէք ի Քս. արժանի յիշատակի բարեպաշտ եւ աստուածասէր թագուհուն՝ **Զապէլին**»[8], իր մօրը: Նոյն արքայի որդիներից

---

1. Պտմ. Լմբ. 227, 228, 229: — 2. Հյպ. 462: — 3. Պտմ. Լմբ. 243, 242: — 4. Աստ՝ 40: — 5. **Արց.** 290-91: — 6. **Հւք. յշա.** 1359: — 7. Անդ՝ 1266: — 8. Անդ՝ 1263:

մէկն էլ, հօր մասին գրում է, թէ «փոխեցաւ ի Քս. բարեպաշտ թագաւորն Հայոց Լեւոն», ընդհակառակն հիացումն ու սրտի զեղումը յայտնում է իր մօր Կեռանի ննջումն յիշելու ժամանակ[1]:

Իսկ չափ չունի մնայուն յիշատակները, որոնցով չնորհապարտ զաւակները յաւերժացնում են իրենց մայրերի քաղցր անունը եւ որոնք կայանում են բարեգործութեան մէջ: Ես պիտի յիշեմ նրանցից մի քանիսը, մի գաղափար տալու համար մեր մայրագորով զգացումներին եւ միանգամայն այն խոր տիրապետութեան, որ հայ մայրերն ունեցան զաւակների սրտերի վրայ, յաճախ իրենք միայն երեւալով նրանց յիշատակների մէջ էլ եւ հարց անունը ծածկուած պահելով:

Դրանցից է ***Խութլու խաթունը***, դուստրը վրացի Օրբելեան Իւանէի եւ Բագրատունի ***Ռուզուզանի***, որ ինքն իրեն աւելի մօր զաւակն է զգում քան հօրը: Հոռոմոսի մէջ եկեղեցիներ է կառուցում եւ պատարագներ է սահմանում մօրն ու ***Նուսթի*** քրոջն համար եւ մշտնջենական է դարձնում մօր անունն արձանագրելով «Տէր Աստուած, ողորմեա Ռուզուզանին ի միւս անգամ քո գալստեանն. ամէն», իսկ հօր անունը չկայ[2]:

Հաւիճի մենաստանի մէջ հեճուպ Վահրամը մի ժամատուն է կանգնեցնում եւ ուրիշ բարի գործեր ի յիշատակ իր կնոջն ու զաւակների: Սրանցից մէկը՝ ***Խաթունը***, յետոյ առաջ է անցնում, նոյն ուխտի հետ բանակցում եւ սահմանում է, որ յատուկ մի օր բոլոր խորանների վրայ պատարագներ մատուցեն «յանուն ***Թամարին***» իր մօրը միայն[3]:

***Մամա խաթունը*** դուստրը Ապուսերհի եւ ամուսինը Կայէնի տիրոջը՝ Վաչուտեան կրտսերն Վաչէի[4], իր Տղերի մէջ կառուցած եկեղեցիներից մէկում կտակում է, որ բոլոր խորանները Տիրամօր տօնին նաւակատեաց օրը պատարագեն լոկ «***Վախախի*** մօր Մամա խաթունին[5]»:

Զաքարէ զօրապետը իր «ծնողներին» նպաստներ կարգելով հանդերձ[6], ինքն ու հարազատ Իւանէն Անիի մէջ, Աղջկաբերդի աղօթանոցում մատուցած բոլոր աստուածային գոհերը յատկացնում են իրենց մօրը, որ հօրաքոյրն էր յիշեալ Վաչէի[7] այսպէս գրելով. «Սուրբ եւ մեղսաքաւիչ պատարագն, որ սրա մէջ կատարի, ***Սահակդուխտին*** է, Զաքարեայ ծնողին եւ Իւանէի թագաւորաց Հայոց»[8]: Այդ տիկնոջ ի՜նչ հզօր իշխանութիւն, իր որդիների գրահապատ սրտերի վրայ:

---

1 *Աստ՝* 85: 2. *Ն. Սրգ.* 159, 160, ***յաւ. Նիւթ.*** 16-17: — 3. ***Շիր.*** 162: — 4. *Ն. Սրգ.* 162: — 5. ***Վիմ. տրգ*** 143: 6. ***Շիր.*** 22, 161: 7. *Կիր.* 108: 8. *Բամ. Հ.* 144:

Խաղբակեան Պռօշը՝ տէրը Վայոց ձորի, 1244-ին Կոշիկ անապատի մէջ կտակում է վեց պատարագ Ս. Խաչի տօնին, «որչափ կենդանի եմ, իմ մօրն, յետ ելից իմոց՝ ինձ[1]»: Նոյն իշխանն Ցոհաննավանուց մէջ եւս սահմանում է տարեկան տասը պատարագ միշտ «իմ մօրը՝ **Մամաքի**[2] անունով», իսկ հօրը՝ Վասակի համար, ոչինչ:

Հասան Սմբատեանը Այրի վանքի մէջ սահմանում է նոյնպէս պատարագներ, «**ե** ինձ, գ իմ մօրը **Նանային, բ Բուզաքանային**» իր կնոջը[3], իսկ հօրը՝ Վախտանգի մասին լռութիւն է: Համլիկ Համազասպեանը՝ իշխեցող Տաշրաց, եւ ամուսինը **Մամքան**, Դսեղ գիւղի եկեղեցուն կալւած են նւիրում իրենց մայրերի՝ **Աղուտի** եւ **Նրճսի**, ի նպաստ երկու, երկու պատարագ մատուցանելու համար[4] եւ հայրերին չեն յիշում:

Գեղեցիկ է արձանագիրը Պահլաւունի Ապուղամր Դ իշխանի, որ 1262-ին իր հայրենի մէկ կալւածը ընծայում է Բագնայրի Աստւածածնին, որպէսզի «Քրիստոսի մօտ իմ մօր՝ **Մամքանի**[5] փոխարէն վճարի», որ որդու փոխարէն կանգնած էր Տիրամօր մօտ երկնքի մէջ: **Ցիմի** այասցին՝ փրկիչը լամբրոնացիների Աւետարանի, խնդրում է նոյնպէս «ինձ՝ Ցիմիին, եւ իմ մօրն՝ **Հռոփսիմէին**, յիշեցէք ձեր մաքրափայլ աղօթքներում[6]»:

Բազմաթիւ են զաւակներն էլ, որ իրենց երախտագիտութեան ապացոյցները տալիս են թէ մօր եւ թէ հօր նկատմամբ, որ աւելորդ եմ համարում այստեղ թւել: Բայց ուշագրաւ է պարագան Արծրունի Սենեքերիմ արքայի դուստր՝ **Մարիամը**, Ափխազի թագուհին, որը Մարմաշէնի վանքին ընծայում է Տարուս գիւղն ի նպաստ իր մօր ծնողներին. «Իմ պապի՝ Գագիկի, մեղքերի թողութեան եւ **Կատային** իմ հանկանն», որ Գագիկ Ա Բագրատունին եւ Կատրանիդէ թագուհին էին եւ դարձեալ խտրութեամբ սահմանում է, որ նոյն ուխտի խորաններից մէկն ամբողջ տարին պատարագ մատուցի նոյն տիկնոջ համար[7], որ Անի ոստանին նւիրեց հրաշալի կաթողիկէն:

12.- Մենք այս ամբողջ գլխի մէջ թափառեցինք ազնւական յարկերից ներս եւ տիկնանց մայրութիւնը միայն զննեցինք, հազիւ մօտենալով ռամկուհուն: Իսկ նա ի՞նչ կերպով էր կատարում իր պաշտօնը: Ծանօթ իշխանուհիների հետ հաւասար, գուցէ եւ աւելի զաւակներով, բայց ոչ դայեակ, ոչ դաստիարակ իրենց մօտ: Ցհ. Գառնեցի (ԺԳ դ) մի աղօթք ունի առ մայրն Ցիսուսի, որի մէջ նկարագրում է հայ ռամիկ մօրը. խնդրում է յիշեցնել որդուն «իր մանկութիւնը», այսինքն՝ «իր կաթով սնւելն որպէս մանուկ» մայրենի լանջի վրայ, «ուսով բառնալն», ինչպէս սովորական է դեռ արեւելեան մայրերի. «գրկելով գգւելն, շրթունքով համբուրելն, ողջագուրելն որպէս տղայ (երեխայ)[8]», որ

---

1. Արց. 169: — 2. Խզր. 98: — 3. Սար. Ա. վ. 7: — 4. Ջալ. Ա, 110-11: — 5. Բսմ. Հ. 179: — 6. Բ. Խրգ. Ա, 559: — 7. Բսմ. Հ. 213: — 8. Գռն. Աղ. 32:

բոլոր մայրերի յատուկ խանդաղատանքն է եւ երեխային հանգստացնում է «օրօրոցի» մէջ: Տեսանք եւս թէ ի՞նչ միջոցների էին դիմում իրենց երկանց մէջ եւ ապա մանուկների կեանքն ապահովելու համար[1]: Դրանց վրայ յետոյ աւելացնում էր բարի մայրն իր խրատն ու յորդորներն էլ որչափ կարող էր, զաւակների չափաւոր զարգացումը թողնելով հանրային կրթիչներին[2] եւ հասարակութեան կամ առանձնական դպրոցների, որոնք ընդհանրապէս անպակաս են եղել մեր աշխարհի մէջ, ժողովրդի օգտին, ինչպէս ցոյց եմ տուել մանրամասն այլուր[3]:

Գառնեցի աղօթագիրը միանգամայն զգացնում է, թէ մայրական պաշտպանութեան յատուկ այդ գործերը, յիշատակներն ու սէրն որպիսի՜ հզօր զէնքեր էին հայ մօր ձեռքերի մէջ, լսեցնելու համար իր ձայնը զաւակներին: Այսպէս նա խնդրում է Տիրամօրից, իր աղերսը մատուցանել որդուն «կանգուն» կանգնած նրա առջեւ, եւ «ցոյց տալով սուրբ ստեանց[4]», որ ձեռքերն ուղղած լանջերի կողմը, ինչ որ մեր ժողովրդական բարքերին յատուկ սովորութիւն է թւում. մի շարժում, որ մայրական պաշտօնի փափկագոյն մասը յիշեցնում է զաւակներին:

Դիեցման ընկերական կարեւորութիւնն ու յարգը նկատեցինք արդէն բարձր դասի մէջ եւս[5] եւ որը մեր հին շարականներն էլ յաճախ յեղյեղում են առ Աստուածամայրը: Նոյն գաղափարը կար եւ ուրիշ ազգերի մէջ: Մի հրէուհի հրապարակով ու բարձրաձայն մի օր Յիսուսի մօրն երանի կարդաց, որ նրան ծնել ու դիեցրել էր[6]: Մակաբայեցի նահատակների մայրը՝ **Շամունէն**, իր վերջին որդուն դէպի մահ խրախուսելու համար, յիշեցրեց նրան իր վարած մայրական նոյն պաշտօնն ու դիեցումը «երեք տարի գրկի մէջ[7]», ուր ուշագրաւ է դիեցման տեւողութիւնը, որից կարելի է գուշակել եւ մերը:

Հուսկ՝ մեր օրինակները ցոյց տուեցին, որ հայ ցեղի բարձր դաստիարակութիւնն իր գեղեցիկ պտուղներով գերիշխող է եղել միշտ ազնուական դասակարգի մէջ, որ աւելի ժամանակ ու դիւրութիւն ունէր ապահովելու այն իր զաւակների, քան ռամիկի մէջ, որի անշուք կենցաղն ու հանապազօրեայ ծանր աշխատութիւնը չէին կարող հայթայթել կամ հաշտուել նուրբ կրթութեան հետ: Ըստ այս նաեւ մեր դաստիարակւած բարձր դասն եղաւ, որ Հայաստանի ոյժը, քաղաքակրթութիւնն ու բարգաւաճումն ստեղծեց եւ պահպանեց դարերի միջից: Այս իրողութիւնն երբեք մոռանալու չենք:

---

1. *Աստ*՝ 81, 88-9: — 2. *Աստ*՝ 10, 11: — 3. ***Դաստ.*** 85-132: — 4. *Գոն. Աղ.* 32: — 5. *Աստ*՝ 87: — 6. ***Ղուկ. ԺԱ***, 27: — 7. *Բ.* ***Մակ.*** *է*, 27:

# ԳԼՈՒԽ Ե

## Ընկերութեան մէջ

Գալիս ենք բացելու հայուհու պատուոյ էջը: Այսպէս եմ անուանում, որովհետեւ կնոջ մասնակցութիւնն ընկերական կեանքում կազմում է նրա զարգացման, վայելած ազատութեան ու յարգանքի եւ պատկանած ազգի քաղաքակրթութեան իսկական չափանիշը, եւ որից բխում են կնոջ միւս իրաւունքներն էլ: Հին հայուհին կարող է պարծենալ, որ ոչ միայն Աւետարանի լոյսի մէջ, որի օրէնքը եղաւ՝ «որպէս տկար անօթոյ առնել կանանց պատիւը[1]», այլեւ հեթանոսական շրջանում կարողացաւ լայն եւ արժանաւոր տեղ գրաւել հասարակական կենցաղի մէջ, եւ իր անունը դրոշմել պատմութեան մէջ զօրաւոր սեռի կողքին. մի այնպիսի պատիւ որ կանխեցինք չեշտել՝ թէ ամէն ասիացի կանայք չունեցան[2]:

1- *Բազմաստուածութեան շրջանում*, Հայաստանն էլ կարողացաւ իր աստուածների մէջ խառնել նաեւ դիցուհիներ, մանաւանդ աստուածներից էլ բարձր դասել եւ ցոյց տալ կնոջ կարեւորութիւնն ու ընկերութիւնների կողմից մեծարուելու հաւասար իրաւունքը: Առանց ելնելու մինչեւ ուրարտական շրջանը, որ քննութեան կարօտ է, բաւական է կանգնել չնորհների թւականի դրան առջեւ, որտեղ հայ ազգը, փայլուն մի վիճակ է տալիս կնոջը, յանձին իր **Անահիտին**, որին Ստրաբոնը վերագրում էր պարսկական ծագում ունեցող[3]: Դիցապաշտ Տրդատին է վերագրում հայ պատմիչը, այն գաղափարը՝ «Անահիտ մեծ տիկնոջ, որ ազգի փառքն ու կեանք տուողն է … զգաստութեան մայրը եւ բարերար ամենայն մարդկանց բնութեան» եւ «որի չնորհիւ կեանք ու կենդանութիւն է կրում Հայոց երկիրը[4]», նրա եւ ոչ ուրիշ աստուածների միջոցով: Նրան արբանեակ ունին Հայքը՝ մի քանի արական աստուածների հետ նաեւ **Նանէ** եւ **Աստղիկ** դիցուհիներին[5]: Մեր ազգը, ուրեմն, այդպէս կարողացաւ յարգել ու պաշտել կանանց սեռին՝ այդ երեւակայական ներկայացուցիչները, մանաւանդ Անահիտին, նրան տալով հայոց դժխուհի **տիկին** տիտղոսը եւ այդպիսով ցոյց տալ կանանց սեռի պատիւը հայ ընկերութեան առջեւ: Այժմ անմահներից անցնենք մահկանացուներին:

Կապադովկացի աշխարհագրից չորս դար վեր բարձրանանք, որտեղ Պարսից Կիւրոս Բ արքան, իր բանակով անցնում էր Հայաստանով: Երբ բնակելի տեղերից էր անցնում, «ոչ մէկ հայ, իր տանը չէր մնում, ասում է ժամանակակից յոյն պատմագիրը,

1. *Ա Պետ.* Գ, 7: — 2. *Աստ՝* 4: — 3. *Ստ. Աշխ.* ԺԱ, ժդ, 16: — 4. *Ագթ.* 51-52, 61: — 5. *Նոյն՝* 591, 607:

ոչ **կին** ոչ էլ տղամարդ, բոլորը գնում էին ընդառաջելու, եւ ուրախ էին հաչտութեան համար», որ արքան կնքել էր իր եւ հայերի միջեւ: Ժողովրդից յետոյ, գալիս էր հայոց Թագաւորի «**կինն իր զաւակների** եւ կրտսերագոյն որդու հետ», բերելով զանազան պարգեւներ եւ ոսկի, որ Կիւրոսը մեծանձնութեամբ մերժեց յորդորելով տիկնոջը «**չթողնել**» որ այնուհետեւ ամուսինը իրենից հեռանար, ինչպէս նախապէս արել էր: Եւ նոյն երկսեռ ամբոխը, ցնծութեամբ ու գովասանքով ընկերակցում են պարսիկին մինչեւ իրենց սահմանները[1]: Նոյն Թագուհուն եւ հարսին մենք առանձին էլ տեսանք նոյն արքայի առջեւ[2]: Եւ այդտեղ արդէն ակներեւ է հայ կանանց համարձակութիւնը, բազմամբոխ ընկերութեան մէջ մտնելու, ներկայանալու եւ խօսելու օտարների հետ, ինչ պատկանելիութեան էլ որ լինէին:

Քսենոփոնը, որ եկել էր Կիւրոսին օգնելու, նրա Արտաչէս եղբօր դէմ, իր վերադարձին, նոյնպէս իր հելլէն գնդով, անցնում էր Հայաստանից: Ցառաջապահ ջոկատը մի երեկոյ մի գիւղ է հասնում, որտեղ հանդիպում է «գիւղի կանանց ու աղջիկներին, որ ջուր էին տանում» մօտակայ աղբիւրից: Նրանք, ինքնաբերաբար կանխելով, մօտենում են այդ օտարականներին եւ «հարցնում են յոյներին՝ թէ ո՞վ են»: Նրանց թարգմանը, պարսկերէնով ասում է, որ իրենց հասկանալի էր ուրեմն, թէ Կիւրոսից իրենց Տրիբազ իշխանին առաքուած գնդեր են: «Նրանք պատասխանում են, որ իշխանը այնտեղ չէր, այլ մօտաւորապէս մէկ փարսախ հեռու»: Եւ նրանց առաջնորդում են գիւղի նահապետի մօտ, որտեղ յետոյ Քսենոփոնն եւս հասնում է եւ առատ սեղանով[3], հիւրընկալւում են նրա յարկի տակ, որին սպասարկում էին «հայ պատանիները բարբարոս զգեստներով[4]»: Աղջիկների ազատութիւնը մինչեւ տղամարդ հիւրերի սեղանը չէր հասնում, եւ չպիտի հասնի բնաւ[5]:

Միհրդատի կանանցից մէկը, յոնիացի **Մոնիմէն** գանգատւում էր, որ իրեն Պոնտոսի արքայի փոխարէն որպէս ամուսին ստացել էր մի տէր եւ «սրսկապանի ու պալատի փոխարէն բարբարոսների փակարանը», որտեղ բռնամահը պէտք էր խաւարէր իր արեւն անգամ իր միւս վիճակակցին, սկեսրոջ եւ երկու տալերի հետ, անագորոյն «տիրոջ» հրամանով, երբ նա Լուկուլլոսից պարտուած, խուճապահար պիտի փախուստի դիմէր: Իր մօր կամ խորթ մօր այդ տրտունջը կամ վախճանը չէր կարող ունենալ նոյն պոնտացի իշխողի դուստրը՝ **Կլէոպատրան**, մեր Տիգրանի կինը[6], որին գնում է ապաւինելու աթենացի հռետոր՝ Ամփիկրատը, հայրենիքից աքսորուած եւ որին Հայոց

1. **Քսեն. Կիւր.** Գ, գ: — 2. Անտ՝ 37-8: — 3. Անտ՝ 24: — 4. **Քսեն. Նհջ.** Դ, ե: — 5. Հմմտ. անտ՝ 118: — 6. Անտ՝ 47:

*թագուհին պիտի հիւրընկալէր ու պաշտպանէր Տիգրանի «հելլենասէր» եւ հելլենաբարոյ արքունիքի մէջ, եթէ չարգիլէին իրեն, ասում է պատմիչը, յոյների հետ չթշնամանալու համար: Բայց կարողացաւ նրա մարմնին տալ, մի չքեղ թաղում*[1]:

*Այսքան ազատութիւն էր վայելում հայ կամ հայացած կինը դեռ հեթանոսական շրջանում, եւ մինչեւ Տիգրանի յարկի տակ, որ կար բազմակնութիւնը*[2], *բայց ոչ հարիւրաւոր հարճերի ընդունարան եւ բանտակերպ արեւելեան կանանոց, որտեղ ներքինիները*[3] *հսկում ու սպասարկում են, բայց չեն կապտում հայուհու ազատութիւնը ընկերութեանը հաղորդակցելու հետ:*

2.- *Աւելի է ընդարձակւում, կամ թէ մենք մեծագոյն ծանօթութիւնն ունենք հայ կնոջ ձերբազատութեանը՝ քրիստոնէութիւնից յետոյ, որ անկասկած առաւել ազնւացրեց իգական սեռը եւ բարձրացրեց նրա գլուխը, ուսուցանելով պատւել նրան, ինչպէս տեսանք վերեւում եւ ընկերութիւն կազմող երկու տարրերը՝ իրար նկատել, որպէս «քոյր» ու «եղբայր»*[4]:

*Նախապէս տեսանք - մանաւանդ ազնւական դասի մէջ - հայուհու անջատումն ընկերութիւնից, աղջկութեան, հարսնութեան եւ նրան յաջորդող «մանկամարդ առնակնութեան» շրջանների մէջ*[5], *- վերջինը հետեւանք վաղափոյթ ամուսնութիւններին*[6], *- ինչ որ սակայն յատուկ էր տնային կեանքի եւ տղամարդ հիւրերի ընդունելութեան առիթներին: Բայց դա չէր նշանակում, ընդմիշտ այնտեղ փակւած մնալ, բացի հարսնութեան կարճատեւ ժամանակը*[7]. *մանաւանդ օրիորդները, որ ազատութիւն ունէին նաեւ ելնելու եւ շրջելու տնից դուրս, նախ դաստիարակների հետ եւ նրանց հսկողութեամբ, ինչպէս վկայում է Ղազարը*[8], *եւ յետոյ բնականաբար իրենց մայրերի հետ: Եւ ելնելով սրանից, ենթադրւում է նաեւ ընկերաբար հանդիպումն ու խօսակցութիւնը բարեկամների ու ծանօթների հետ, որի համար Վարդանանց օրով մեր տիկինները պատւիրում էին դաստիարակներին, որ իրենց որդիներն ու դուստրերը չմօտենան պարսիկ մոգերին*[9]: *Տրդատի քոյրը՝* ***Խոսրովիդուխտը****, վիրապաբնակ Գրիգորի մասին մի տեսիլք է տեսնում, որ «գալով խօսում էր մարդկանց հետ եւ պատմում էր» համարձակութեամբ: Նրանք չուզեցին հաւատալ եւ տեսիլը կրկնւեց, եւ օրիորդին ստիպեց նորից հաղորդել աւագանուն*[10]: *Իսկ հասարակութեան ուրախութեան անսովոր առիթներին հարսների դռներն էլ բացւում էին. ինչպէս մեծն Վահանի մարզպան կարգւելու ժամանակ, որտեղ ազատ ու ռամիկ, «տղամարդկանց եւ*

---

1. *Պլտ. Գ*, 547-48, 558: — 2. *Աստ՝* 34: — 3. *Աստ՝* 13: — 4. *Ա Կոր. է*, 15. *Ցակ. Բ*, 15: — 5. *Աստ՝* 14-5: — 6. *Աստ՝* 28-9: — 7. *Աստ՝* 77: — 8. *Աստ՝* 8: — 9. *Անդ*: — 10. *Ագթ*. 165-67:

կանանց» ամբոխի հետ, «հարսերն անգամ առագաստը մոռացած, առ վայր մի առ խնդիրն զամօթ հարսնութեան», դիմեցին եկեղեցուն՝ շնորհակալութիւն մատուցելու[1]: Իսկ ռամկուհու մուտքը ընկերութեան մէջ, անկասկած աւելի յաճախակի էր, նրա աւելի մօտ լինելու պատճառով:

Հասնելու է օրը՝ ուր ազնուական օրիորդն էլ անցկացրած իր աղջկութեան մատաղ տարիքն ու նոր հարսնութիւնը, մտնում է տիկնութեան հասակի ու վիճակի մէջ, եւ մայր է դեռաբոյս զաւակների, որ կարողանում է ցոյց տալ իր հիւրերին եւ ընկերներին: Նա այժմ այն համարձակութեամբ, որով շրջում է տան մէջ, դուրս էլ ելնում է առանց ակնածութեան եւ հսկողութեան, եւ հրապարակը նրա ընտանի վայրն է, որտեղ ռամկուհին միասին տանում է իր պարզութիւնն ու համեստութիւնը, իսկ տիկինն, իր չքեղութիւնն ու պատկառանքը, որ մեր եղեսացի պատմիչը երկու բառով զգացնել է տալիս, խօսելով Անիի ազնուականների մասին. «Գեղեցիկ կանայք եւ աւհարկու փառաւոր տներից[2]»: Պատմութիւնը յիշատակում է զանազան առիթներ, նրանց ընկերութեան մէջ երեւալու մասին: Այսպէս Փարպեցին պատմում է թէ 450-ին երբ նախարարների (կեղծ) ուրացութեան գոյժը հասաւ Հայաստան, «աւագ ազատների կանայք եւ այրիները հրապարակներում սուգ անելով կոծում էին», միաժամանակ օրիորդներն ու մանկամարդերը, նոյնը իրենց սենեակներում էին անում[3]: Այս տխուր պատահարից բացի, ունենք աւելի ուշագրաւներն ու սովորականներն էլ:

Երբ Լուսաւորիչը Կեսարիայից վերադառնում էր հայրապետական պատւով, Տրդատը «վերցնելով իր զօրքը եւ Աշխէն տիկնոջը եւ Խոսրովիդուխտ քրոջը», մինչեւ Բագւան[4] ընդառաջ գնաց սուրբին: Յետոյ Գրիգորը, «մկրտեց բոլորին» Եփրատի մէջ, եւ նախ «թագաւորին եւ նրա տիկնոջը՝ Աշխէնին եւ մեծն օրիորդին՝ Խոսրովիդուխտին», ազնուական դասի հետ, ապա բազմահազար ժողովրդին, չորս հարիւր բիւրից աւելի, «տղամարդ, կին եւ մանուկ[5]»: Մի մկրտութիւն, որ թւում է կատարւում էր խառն ձեւով, այր ու կին միասին գետը թափելով: Զենոբը ուրիշ առիթով կանանց մկրտութիւնը բաժանել է տալիս այրերից Լուսաւորչի[6] միջոցով, բայց ուշացած վկայի տեղեկութիւնը զօրում է միայն է դարի համար:

Արշակունեաց օրով ազգային մեծագոյն հանդէսն էր Նաւասարդեան կամ տարեմուտի տօնը, որ կատարւում էր աշխարհախումբ բազմութեամբ Բագւանի մէջ: Մի տարի, Արշակ արքան այնտեղ հրաւիրեց իր հօրեղբօրորդուն՝ Գնէլին էլ, «հանդերձ իր կնոջ ու դրամբն», նա գնաց եւ «նրա կինն էլ իր հետն էր[7]»: Հրաւէրն ու տիկինների

1. Փրպ. 547: — 2. Ուռ. 149: — 3. Փրպ. 162: — 4. Ագթ. 611-13: — 5. Նոյն՝ 620, 623: — 6. Զեն. 35: — 7. Փաւս՝ 117-18:

մասնակցութիւնը, սովորական էր, բայց այդ անգամ նենգ էր նպատակն ինչպէս տեսանք[1]: Փառանձեմն ոչ միայն տոնախմբութեան գնաց, այլ հոգեւոր պաշտօնեաների վրանն էլ վազեց, աղաղակեց ու բողոքեց ամուսնու դաւադրութեան դէմ, մեզ ցոյց տալով թէ մինչեւ ուր կարող է հասնել հայ տիկնոջ համարձակութիւնը նոյն ժամանակւայ բարքերի մէջ:

Հայաստանի պահապանը՝ Մանուէլ Մամիկոնեանը[2], հիւանդ պառկած էր օրհասական մահճի վրայ եւ նրա չուրջը հաւաքուած էին երախտագիտութեան ու վշտի զգացումներով «Արշակ թագաւորը եւ իր կինը՝ **Վարդանդուխտը**», որ սպարապետի դուստրն էր. «եւ այնտեղ էին ամենայն աւագները, մեծամեծներն եւ նախարարները Հայոց այր եւ **կին առ հասարակ**» առանց խտրութեան,- ինչպէս այսօր լինում է Եւրոպայի մէջ նման առիթներին,- սփոփելու համար նրան ու լսելու վերջին պատուէրները: Եւ նա բացելով «ամէնի առջեւ», ուստի եւ տիկինների, ցոյց է տալիս իր վէրքերի անհամար սպիները, որոնց ընդունել էր ամբողջ մարմնի վրայ պատերազմների մէջ՝ հայրենիքի համար[3]:

Ընկերական կեանքի սովորական գործերից մէկն էր նաեւ յաճախել եկեղեցի ու մասնակցել աստուածային պաշտամունքներին: Եղիշէն որոշակի ասում է իր տիկինների մասին՝ թէ «միշտ գնում էին աղօթքի տուն[4]»: Նոյնպէս եւ **Կեռան** թագուհին «ամէն օր վաղ Տիրոջն երկրպագում էր, ասում է Աւետիսը, ի գիրկս մօր մերոյ սիովնի սրբոյ», ուր ուշադրութեամբ «լսում էր սուրբ գրքերին[5]»: Ուրեմն հինգերորդից մինչեւ ԺԳ դարը նոյն սովորութիւնն էր, որ տեւում է: Աղջիկներն էլ գնում էին սրբավայր, մինչ նորեկ հարսներն եկեղեցուց անգամ բացակայ էին մնում, ինչ որ վերեւում Ղազարը նշեց իր դարի համար[6]: Արեւմուտքն էլ նոյն էր, ուր Արելասի Կեսար եպիսկոպոսի (Ե-Զ դարի) նախագահութեամբ խմբուած ժողովական կանոնները հրամայում էին նոր հարսներին մինչեւ մի ամիս բացակայ մնալ աղօթքի տնից:

Հայուհիները սովոր էին խուժել նաեւ թատրոնները,- մեզ մօտ չատ սովորական, ինչպէս պիտի տեսնենք իրենց կարգին,- որի դէմ բողոքում էր Մանդակունին Ե դարից: «Թեթեւաբարոյ եւ յիմար ազգն անհամեստ կանանց», որ պատրաստ են, ասում է, հեշտութեամբ լսելու, հաւանելու եւ խաբւելու, «յագեցած ցանկասիրութեամբ միշտ շտապում են թատրոն, աներկիւղ տեսնելու անօրէն խաղեր եւ սատանայական հրապարակին» եւ մահացուցիչ նետեր ստացած վերադառնում ու բարոյապէս մեռնում են[7]:

---

1. Աստ՝ 42-3:— 2. Աստ՝ 54-5:— 3. Փաւս. 257: — 4. Եղշ. 156: — 5. Աղ. հնդ. 1910, Բ, 23:— 6. Աստ՝ 113:— 7. Մնդ. 132-33:

Հուսկ մենք տեսանք հայ կանանց մասնակցութիւնն հարսանեկան հանդէսին էլ եւ աղջիկների պարելն այնտեղ բազմութեան առջեւ,- թէպէտ Տուռնփորտի օրով կանայք այրերից անջատ էին զւարճանում[1],- առանց հաշւելու վարձականների ներկայութիւնն եւս[2]:

Մինչեւ այստեղ հայուհու վայելած ազատութիւնը ներհակ էր ժամանակակից հելլենուհու սեղմ կեանքին, որը յիշեցնում է մեզ Ոսկեբերանը, խօսելով իբր անտիոքացի այսպէս. «Դու, եթէ կինը յաճախ եկեղեցի գնայ, դառն դատախազ ես լինելու»: Եւ դարձեալ՝ թէ «արտաքս անգամ չհամարիս իշխանութիւն ելանելոյ». կամ ըստ բնագրին՝ «գհարկաւոր ելսն անգամ նմա արգելուս[3]»: Բայց յոյն կինն էլ հանդիսատես էր լինում ներկայացումներին[4]:

3.- Ի՞նչ կերպով էին դուրս գալիս մեր կանայք եկեղեցի, այցելութեան կամ հեռաւոր մի վայր գնալու համար: Նրանց հետիոտ գնալը սովորական չէր, ինչ որ նրանց փափկութեան չէր պատշաճում, այլ տեղափոխութեան երեք միջոցներ ունէին: Շատ մօտ տեղերի համար գործածում էին «**գահաւորակ**, սպասաւորներով հանդերձ», որ փակ դեսպակներ էին, ծառաների ուսերով կրելիք, եւ որի օրինակը նախապէս տեսանք[5]: Դրանցից արքայականն «ոսկիապատ» էին, համաձայն այն բանին, որ արքունեաց մէջ ամէն ինչ ոսկեղէն էր:

Ոչ հեռաւոր վայրերի համար կառքեր ունէին, յոյն տիկինների նման, որոնք հազւադէպ դուրս էին գնում առանց կառքի, գրում է Ոսկեբերանը[6]: Ուրիշ տեղ էլ, երբ ասում է թէ հելլենուհին «ջորիներով շրջում եւ ոսկեման հանդերձանքով», հայ թարգմանիչը գեղեցիկ մի շեղում է կատարում, նկարագրելու համար հայ տիկնոջը. «**գահաւորակներով** եւ **լկտաւ** եւ **ջորիներով**, ասում է, **ոսկեհուռ նուարտանան** տարածեալ **զբաստառամբն**[7]»: **Գահաւորակը** տեսանք: Իսկ **լկտին**[8] թարգմանում է այլուր յունարէն **գեւգոսը**[9], որ լուծն է երկձի կառքի, եւ մեր պարագային նոյնը ջորիներով լծւած: Լկտու վրայ զետեղւած էր **բաստառը** կամ չքեղ ու կակուղ բազմոցը,- որի անունով մերթ կառքն ինքը կոչւում էր,- եւ որը շրջապատում էին **նուարտանքը** կամ փեղկերի բաժանւած ճոխ վարագոյրը, որպէսզի ծածկէին տիկնոջը հետաքրքիր կամ անկիրթ աչքերից: Նոյնը վկայում է Եղիշէն նաեւ իր իշխանուհիների մասին, որ «գրգեալք եւ գգուեալք էին իւրաքանչիւր **բաստառուն** (որ է կառքն իսկ) եւ ի **գահաւորակս**» ըստ պարագայի, եկեղեցի անգամ նրանցով էին գնում[10]: Սիւնեաց

---

1. Տուռ. 283: — 2. Աստ՝ 76: — 3. Ոսկ. Մտթ. Ա, 110-11: — 4. Նոյն՝ 569-70: — 5. Աստ՝ 72: — 6. Ոսկ. Մտթ. Ա, 107: — 7. Ոսկ. Պօղ. Բ, 552: — 8. Լծ. լատ. Lectusի: — 9. Ոսկ. Պօղ. Ա, 893: — 10. Եղշ. 156:

*տիկինը՝ **Բիւրեղը**, 629-ին տէրունական խաչի նշխարը, որը Հերակլից ստացաւ, տանում էր «ոսկեպատ **կառքով**», որը մի ջորի էր քաշում[1], եւ որ կարող է տիկնոջ կողմից գործ դրուած լինել եւ կամ թէ իշխանների, որ անվարագոյր **կառք** կամ մի **գեսպակ** էր[2]:*

*Բայց թէ այրերն եւ թէ կանայք ելնում էին նաեւ լոկ ձիով: Այս ձեւը արարողական էր հարսանիքների առթիւ[3] եւ սովորական հեռաւոր վայրերի համար: Տիկիններն երիվարի նիւսի (մէջքի) վրայ փոխանակ թամբի դնում էին պարսկական **ժանուարը**[4], որը փոքրիկ գահ՝ պատուանդանով էր, եւ գլխին մի հովանոց, որի ներքեւ տիկինը նստում էր մեկուսի[5]: Այսպէս դէպի Բագւան գնալու ժամանակ[6], Գնէլը հեծած էր ձին, եւ **Փառանձեմը** նրան ընկերակցում էր «ժանուարով»[7]: Եւ Մուշեղը գերի բռնելով Շապուհի կանանց, նրանց վերադարձրեց «ժանուարներով», կամ «ժանուար տուեց նրանց բոլորին»[8]:*

*Ռամիկ կնոջ համար գահաւորակ գոյութիւն չունէին, լկտի կամ ժանուար, որոնց տեղն իր ոտքերն էին, կամ թէ մի սայլ կամ մի պարզ ձի հեռաւոր վայրերի համար: Այսպէս Վարդանանց կանայք, երբ չքաւորութեան մատնեցին, ռամիկի պէս, ասում է պատմիչը, «բոպիկ եւ ոտքով էին գնում դէպի աղօթքի տունը[9]», ուստի եւ ուրիշ տեղեր: Բոպկութիւնն իրենց համար արդիւնք էր կարօտութեան, իսկ ռամիկ դասի համար սովորական, գոնէ ամառն[10], ինչպէս յոյների մօտ էր:*

*Թուած երեք միջոցներից, որով էլ դուրս ելնէին հայ տիկիններն, իրենց դէմքերը ծածկում էին «իրենց երեսի զարդերը[11]». այն է ազնիւ քօղը, որ գցած էր « իր անձի եւ գլխին» միանգամային[12] եւ գլխին հաստատուած թանկագին «տեռակալօք» կամ գնդասեղներով[13], առաջակողմից իջնում էր մինչեւ աչքերը, թողլ տալով «երբեմն քօղի ներքեւից այս ու այն կողմ աչք ածելով» ըստ Ղազարի[14]. կամ ինչպէս Ոսկեբերանի թարգմանիչն է ասում, «քօղընկէց բացխփիկ խաղայցէ[15]». հետաքրքրութեան թուլութիւնը, «որ, աւելացնում է հայ պատմիչը, անհնար է կանանց համար յաղթահարել այն[16]»: Քօղը միշտ մնում է, որ Արծրունեաց պատմիչը յիշում է **Սոփի** տիկնոջը «մեծարող քօղն մարգարտահիւս զարդով[17]» եւ Յովհաննէսը նկարագրելով իր օրերում պատահած սաստիկ սովը «պատուական կանայք», ասում է, կարօտութիւնից «առանց գլխին քօղ ունենալու», մուրում էին հրապարակաւ, առանց ամօթի[18]: Իսկ ռամկուհին*

---

1. *Հյպ.* 222: — 2. ***Դաստ.*** 397-99: — 3. *Աստ՝* 72: — 4. *Պրս.* ***զանբար***: — 5. *Հմմ. Դաստ.* 396: — 6. *Աստ՝* 42: — 7. *Փաւս.* 118. *ուղղելի է* ***ժանուարաւ***: — 8. *Նոյն՝* 236, 189: — 9. *Եղշ.* 156: — 10. *Հմմտ. աստ՝* 24: — 11. *Եղշ.* 156: — 12. ***Սոփ. Թ***, 35: — 13. ***Գամ. արք.*** 129: — 14. *Փրպ.* 332: — 15. *Ոսկ. Պօղ. Ա*, 895: — 16. *Փրպ.* 332: — 17. *Արծ.* 300: — 18. *Յհ. կթ.* 328:

ազնիւ քօղի փոխարէն պարզ մի վարշամակ էր կապում, այսպէս **Ցայսմաւուրն** 1321-ին յիշում է, «գլխի վարշամակը» կարնեցի մի կնոջ[1]:

Գլխի զարդը բաւարար չէր: Մարդկային անձնասիրութիւնը, որ կնոջ մէջ միացած է պճնասիրութեան հետ, պահանջում էր, որ հայուհին, ինչ վիճակում էլ լինէր, իր աստիճանի համեմատ վայելչութեամբ ներկայանար ընկերութեան առջեւ, որ աւելի հաճելի ու յարգելի լինէր: Եւ ամէն դարերի հայ կանանց Բարսեղ Մաշկեւացին կարող էր կրկնել ինչ որ 1325-ին ասում էր Կիլիկիայի հայուհիներին. «Դուք երբ կամենում էք հրապարակ դուրս գալ, այն ժամանակ աւելի էք զարդարւում» քան տան մէջ: Ոսկին բարի է, յարում է, տուրք տալու համար, «եւ ոչ ոտքերն եւ ձեռքերն նրանով կապել»: Եւ դարձեալ, թէ «դու գլուխդ, երեսդ, ականջներդ, վիզդ, կուրծքդ եւ մէջքդ զարդեր ես կապում»: Դրանք, աւելացնելով, «հարսնութեան օրերին վայելում են, բայց յետոյ տաղտկալի է թւում տեսնողներին[2]». գուցէ քեզ՝ վանականի համար, որովհետեւ իրականութեան մէջ փորձը դրա հակառակն է վկայում: Այդ պճնութեան համար հայելի են վերցնում, որ ծանօթ էր քաղաքակիրթ աշխարհին եւ մեզ մօտ[3], իսկ տիկինները դրա հետ ընդունում էին նաժիշտների օգնութիւնն էլ:

4.- Ցոյց կարեւոր պարագայ է ընկերական յարաբերութիւնների կողմից հայ տիկինների խնջոյքներ կազմակերպելու սովորութիւնն իրենց տաճարների մէջ[4]: Ոչ հին պարսիկ տիկնայք[5] եւ ոչ հին հելլենուհին տղամարդկանց հետ խնջոյքի, ճաշկերոյթի մասնակցելու իրաւունք չունէին, մինչ հռոմէացիները ներկայ էին լինում[6]: Իսկ հայ տիկնայք մեծագոյն ազատութեամբ իրենք իսկ ընթրիք տւողն էին լինում ազնւական դասի տղամարդկանց եւ սեղանի գլուխն էին բազմում հրաւիրւածների մօտ իբր տանտիկին: Սրա օրինակներն ունենք արդէն Դ դարից: Արտագերք (Արտագերս) ամրոցի մէջ, ուր Արշակի կենակիցն ապաստանել էր ազատների բազմութեամբ, «**առաջի տիկնոջ՝ Փառանձեմի** հետ, ասում է պատմիչը, ուտում, ըմպում էին եւ ուրախանում էին, որոնք ապարանքի մէջ էին[7]», այսինքն որչափ դահլիճի ընդարձակութիւնը հնարաւորութիւն էր տալիս սեղանակից լինելու թագուհուն: Եղիշէն իր բոլոր տիկնանց մասին վկայում է, թէ իրենց պայծառ օրերին ունէին իրենց «սեղանակիցների խումբը». եւ թէ «պատւական արանց» այսինքն ազնւականները յաճախում էին «նրանց ապարանքը» եւ նրանք հրաւիրում էին մի «նւիրակ», որ տիկնոջ դռան առջեւ նրա հրամանին էր սպասում[8]: Նրանց ճաշկերոյթին մասնակցում էին միայն այրերն եւ

---

1. Հյպ. 532: — 2. Մշկ. 64: — 3. Ագթ. 504: — 4. Աստ՝ 14, 22: — 5. Հմմտ. Եսթ. Ա, 3-9: — 6. Դրմբ. Ա, 1272, 1273, 1278: — 7. Փաւս. 171: — 8. Եղշ. 156:

*նրանք միայն յիշուած են Փաւստոսի եւ Եղիշէի կողմից, իսկ կանայք ոչ, որոնց ներկայութիւնը կարող էր անպատշաճութիւնների տեղի տալ, երբ գինու չափն անցնէր, ինչպէս պատահել էր Բակուրի մի ընթրիքի ժամանակ*[1]:

*Երբ ընթրիք տուողն իշխանն էր, նրան միանում էր իր կինն էլ: Օրինակ Բակուրի ճաշին ներկայ է լինում իր հարճը՝ **Նազինիկը**, որ «եւ երգում էր ձեռամբ», այսինքն նուագում էր ի պատիւ հիւրերի*[2]*: Տիրան արքան, Պարսկաստանի Վարազ դեսպանին մեծարել ուզեց «որսով եւ բազմականօք (ճաշերով) եւ ամէն տեսակ վայելչութեամբ»: Այս նպատակով գնաց Ապահունեաց արքունի որսանոցներից մէկը, իր հետ տանելով ինչ որ կարեւոր էր, «**տիկինների հանդերձ** եւ Արշակին՝ մանուկ արքայորդուն*[3]*»: Մի ընդունելութիւն էր, որ արդի եւրոպականից չէր տարբերւում: Այսպէս նաեւ Վազգէնի մի ընթրիքին, ուր օտարներ էլ կային, հրաւիրում ու գնում է կինը՝ **Շուշանիկն** էլ*[4]:

*Սակայն երկու սեռերը համարձակօրէն սեղանակից էին ագապների կամ հոգեւոր ճաշերին, ուստի հեռու էին չւայտութիւնները: Դւինի* 654-*ի ժողովը տեղեկացնում է թէ «բարեպաշտ ազատները եւ աստուածասէր տիկնայք» մենաստաններից հրաւիրւում էին յաճախ «հաղորդակից լինել պաշտամունքին, աղօթքին եւ օրհնութեան պատրաստելուն (որ կերակուրներն են) Աստուծոյ տան մէջ» կամ վանքի մէջ*[5]*: Նոյն դարում Արծրունեաց տիկինը՝ **Մարիամը***[6]*, Գլակի ուխտի մէջ, ուր մի օր այնտեղ էր, իր սպասաւորներին հրամայեց «ճաշ վերցնել» վանականներից, եւ երբ կերան տիկինն նրանց յայտնեց իր ուրախութիւնը*[7]*, ապացոյց՝ թէ ինքն էլ ճաշակից էր նրանց: Արդէն սովորական խնջոյքն էլ գնալով բարեկարգւեց եւ թոյլ տւեց արանց ու կանանց սեղանակցութիւնը: Մարտիրոս տաղասացը, որ ԺԵ-ԺԶ դարի գրիչն է թւում, ունի «սեղանի ուրախութեան տաղ», որին մասնակից է ցոյց տալիս «Ժողովը որ հրաւիրւած է,- Իմ քահանաներն, որ բազմել է,- **Խ**աթուն կանայք, որ նստած է*[8]*»:

*Եթէ պէտք է հաւատալ Բրոկարդին, որ մի ականատես է պատմածներին*[9]*, զգալի մի փոփոխութիւն է մտել մեր ազնւականների բարքերի մէջ ԺԳ դարում: **Ջապէլ** թագուհու համար ասում է թէ «ոչ մի այր նրա մօտ է մտնում առանց թագաւորի յատուկ հրամանով, որ ինքն անւանում է, նշանակում է ներքինին էլ, որպէսզի մտնողին ներս բերի ու տանի»: Այս նոր սեղմումը հայուհու ազատութեան, Հեթումի գիւտը չի թւում, որովհետեւ ուղեւորը յարում է թէ «նոյն սովորութիւնը կայ նաեւ ազնւատոհմ կանանց մօտ՝ ամուսնացածների եւ այրիների*[10]*»: Բաւական հեռու ենք, այդտեղ, մեր հին*

---

1. *Խոր. Բ, կգ*: — 2. *Անդ*: — 3. *Փաւս.* 51-52: — 4. *Սոփ. Թ*, 26-27: — 5. *Կան. ԺԲ*: — 6. *Աստ՝* 88: — 7. *Մամ.* 11: — 8. *Տղթ.* 1648*ի՝ ի Ս. Էազար*: — 9. *Աստ՝* 19: — 10. *Բրկ. Բ, բ*,9:

*թագուհիների եւ իրենց յատուկ նւիրակով հիւրընկալ հին տիկնանց օրինակով*[1]*: Ակներեւ է, որ հեթանոսների հարեւանութիւնն սկսել է յեղաշրջել մեր տոհմային բարքերը:*

5.- *Զարգացած հայ հասարակութիւնը, որ մօտենում էր հայ տիկնոջ՝ խօսելու նրա հետ կամ նրա մասին, իմանում էր յայտնել իր մեծարանքն նրա հանդէպ չքաղիր տիտղոսներով,- փոխանակ ռամկուհուն տւած* ***կին*** *եւ* ***աղջիկ*** *կամ* ***կոյս*** *հասարակ անւանումը,- որոնք դարից դար փոփոխւել են, եւ կարող ենք բաժանել երեք շրջանների՝ դասական, միջնադարեան ու կիլիկեան:*

*ա.- Մեծագոյն անձից սկսելով, որը «արքայակնոջ»*[2]*, «արքայուհու»*[3] *կամ «թագաւորի կնոջ»*[4] *ոսկեղարն էր, մինչդեռ նրա ամուսինը կոչւում էր* ***թագաւոր*** *կամ* ***արքայ****, եւ թարգմանութիւնների մէջ կնոջը տալիս էր* ***թագուհի, դշխուհի*** *կամ* ***բամբիշ*** *կոչումները, ընդհակառակն ազգը* ***տիկին*** *էր ասում նրան, որ նշանակում էր մեծ կին*[5]*: Այսպէս՝ «****տիկին Հայոց***[6]*», «****տիկին*** *աշխարհի Հայոց*[7]*», «մեծ* ***տիկինն*** *Հայոց*[8]*», «Արշակունի* ***տիկինն***[9]***»****, կամ լոկ* ***«տիկինն***[10]***»*** *«****տիկնաւն****»*[11]*: Նոյնն յատուկ անունների հետ էլ գործածւում է, մերթ նախադաս եւ յաճախ յետադաս.* ***«տիկինն*** *Փառանձեմ*[12]*», «****տիկինն*** *Զարմանդուխտ*[13]*», դիմորոշ յօդով. եւ «Փառանձեմ* ***տիկին***[14]***»****, «Զարմանդուխտ* ***տիկին***[15]***»****, «Անահիտ* ***տիկին***[16]*», «Աշխէն* ***տիկին***[17]*» առանց յօդի: Իսկ պաշտօնը կոչւում է «Հայոց* ***տիկնութիւն***[18]*»: Նոյն* ***տիկին*** *բառով թարգմանւել է յաճախ յոյն բնագրերի «թագուհին» էլ*[19] *եւ կոչական ձեւով «Եսթե՛ր* ***տիկին****» կամ «****տիկի՛ն*** *Եսթեր»*[20]*: Կայ նաեւ «****աշխարհատիկինն*** *Աղւանից»*[21]*:*

*Իսկ մեր* ***իշխանների, նախարարների, նահապետների, տանուտէրների*** *կամ* ***տեարց*** *ամուսինները կոչւում էին նոյնպէս թագուհու տիտղոսով. «****տիկնոջ*** *Համազասպուհու*[22]*». «****տիկինն*** *Ուշտունեաց*[23]*». «****տիկնայք*** *փափկասունք Հայոց աշխարհի*[24]***»****, «ո՛ր* ***տիկինն*** *լինի եւ կամ ո՛ր նաժիշտն*[25]*», եւ այլն: Ինչպէս այրերն էլ*

---

1. *Աստ*՝ 20, 117: — 2. *Ոսկ. Պօղ. Ա*, 639: — 3. ***Գամ. Աղ***. 113: — 4. *Փաւս*. 128: — 5. ***տի-կին***, *ինչպէս* ***տի-այր*** = *տէր*, ***տի-եզերք***: — 6. *Փաւս*. 173, 245: — 7. *Նոյն*՝ 169, 170: — 8. *Նոյն*՝ 8: — 9. *Աստ*՝ 33: — 10. *Փաւս*. 170, 171, 244, 246, 253, 255: — 11. *Նոյն*՝ 52: — 12. *Նոյն*՝ 171, 173, 174: — 13. *Նոյն*՝ 245, 246, 248: — 14. *Նոյն*՝ 171: — 15. *Նոյն*՝ 244, 245: — 16. *Ագթ*. 51, 54, 106: — 17. *Նոյն*՝ 574, 575, 594 *եւս*: — 18. *Նոյն*՝ 137: — 19. ***Գ Թագ. Ժ***, 1, 10, ***Երմ. Խզ***, 17, 18 *եւն*. *Ոսկ. Մտթ. Ա*, 629, 630: — 20. ***Եսթ. Է***, 2. ***Ը***, 6: — 21. *Կղն*. 46: — 22. *Փաւս*. 178: — 23. *Նոյն*՝ 178: — 24. *Եղշ*. 156: — 25. *Նոյն*՝ 155:

*անուան հետ **տէրը** կրում էին. «**տէր** Ներսեհ և Հրահատ Կամսարական». «**տէր** Վարդ*[1]*»*
*եւ կոչական ձեւով «**տէ՛ր** Համազասպեան*[2]*» կամ «Սիւնեա՛ց **տէր**»*[3]*:*

*Ոսկեդարն արքայազն աղջիկներին **օրիորդ** էր անուանում, դասելով անուան սկիզբը «**օրիորդ** Խոսրովիդուխտ» կամ «**մեծ օրիորդն** Խոսրովիդուխտ*[4]*», ինչպէս որդիներն էլ **սեպուհ** էին. «Գնէլ **մեծ սեպուհն** Արշակունի*[5]*»: Նոյն տիտղոսները տրւում էին նաեւ իշխանների զաւակներին առանց «մեծ» մակդիրի. «**օրիորդներ** սրահի մէջ*[6]*», «Ալանների **օրիորդը***[7]*», եւ յաճախ Ս. Գրքերի մէջ. եւ «**սեպուհն** Մամիկոնեան Վասակ», «**սեպուհն** Անձեւացոցն Յոհան*[8]*» եւ այլն:*

*բ. Միջին դարը Հայոց դշխուհիներին յատկացրեց **թագուհի** միակ կոչումը, չհաշւելով որոշ մատենագիրների կիրարկած միւս տիտղոսները, որ փոխառութիւն էին հներից, եւ ոչ գործածական: Նոյն իրենք տիկնայք գրում էին «ես Մլքէ Հայոց **թագուհի***[9]*»* (902). *«ես Խոսրովանոյշ Հայոց **թագուհի***[10]*»* (970). *«ես Կատրանիդէ Հայոց **թագուհի***[11]*»* (1008). *«ես Մարիամ... **թագուհի***[12]*»* (1033). *«**թագուհուս** Շահանդուխտի*[13]*»*
(1085) *եւն:*

*Իշխանուհիներն ընդհակառակն պահում են դեռ հին տիտղոսը. «**զտիկինն** Հայոց մեծաց» Հեղինէ*[14]* (*է դար*), - *ընդհանուր իմաստով, որովհետեւ այրը՝ Գրիգորը, իշխանապետ էր. - «**տիկինն** Շուշան*[15]*» (Արշարունեաց, դ. է). «**տիկինն** Հրանուշ*[16]*» (Արծրունեաց, դ. թ). «մեծ **տիկնոջն** Հռիփսիմեայ*[17]*» (Արծր. դ. թ). «**տիկինն** Վասպուրական (այսպէս անհոլով) Սեդա*[18]*» (դ.թ.) «Մարիամ Սիւնեաց **տիկին***[19]*»* (903). *«ինձ Շուշան Սիւնեաց **տիկնոջ***[20]*»* (910) *եւ այլն: Դեռ կայ հին **օրիորդն** էլ. «**օրիորդիս** Կատայիս*[21]*» (Սենեքերիմ արքայի քոյրը,* 1085):

*Պարսկաստանի Թագուհուն, մեր գրիչները, **տիկնանց տիկին** տիտղոսը տւեցին*[22]*, որ միջին դարում կենդանացաւ մեր մէջ եւս եւ այն իշխանուհիները, որոնց ամուսինները կոչւում էին «իշխանաց իշխան» վերցրին այն: Նախ այս կոչումն տալիս է Սմբատն իր կենակցին՝ **Սոփիա** Սիւնիին*[23]*. Թերեւս նահանգի ընդարձակութեան պատճառով եւ իր մասին էլ արձանագրում է՝ «ես Սոփի **տիկնաց տիկին***[24]*»: Յետոյ այն Պահլաւունիները իւրացրեցին, հաւանօրէն իրենց կարծեցեալ պարթեւական ծագման*

1. ***Փրպ***. 571, 595: — 2. ***Փաւս***. 143: — 3. ***Փրպ***. 227: — 4. ***Ագթ***. 600, 614, 620: — 5. ***Փաւս***. 120: — 6. ***Փրպ***. 162: — 7. ***Խոր. Բ***, 5: — 8. ***Փրպ***. 371, 389: — 9. ***Բ. Սրգ. Ա***, 385: — 10. ***Ն. Սրգ***. 205: — 11. ***Աստ՝*** 35: — 12. ***Բսմ. Հ***. 213: — 13. ***Օրբ***. 237: — 14. ***Կղն***. 187: — 15. ***Ղեւ***. 47: — 16. ***Արծ***. 156: — 17. ***Նոյն՝*** 160: — 18. ***Նոյն՝*** 271. ***տես եւ աստ՝*** 32: — 19. ***Օրբ***. 132: — 20. ***Աստ՝*** 32: — 21. ***Օրբ***. 237: — 22. ***Փաւս***. 55, 189: — 23. ***Օրբ***. 191: — 24. ***Սսկ***. 105:

համար. այսպէս Գր. Մագիստրոսի տատը գրում է՝ «ես Շուշան **տիկնաց տիկին**». կամ «Շուշիկ՝ Հայոց **տիկնաց տիկին**[1]»: Նոյն իշխանի քոյրը, ծնունդով եւ ամուսնութեամբ Պահլաւունի արձանագրում է «ես Սեդա **տիկնաց տիկին**... զուգակից Վահրամ իշխանաց իշխանի[2]»: Նոյն Գրիգորի դստեր **Մարիամի** համար, որ Աբղլմսեհ Արծրունու կինն էր, «**տիկնաց տիկին** էր ազգով», ասում է պատմիչն՝[3] իմանալով Պահլաւունի լինելը: Սրա քոյրը՝ Վեստ Սարգսի կինը, **Տիկնաց տիկին** է կոչւում[4], հաւանօրէն հայրենի մակդիրն յետոյ է անւան տեղը բռնել եւ Զօրավարի դուստրը այն միասին տարաւ Հեթումեանց տունը. «**տիկնաց տիկին** Շահանդուխտ[5]»:

գ.- Կիլիկիայի հայութիւնն ընկերական սերտ կցորդութեան մէջ է եւրոպացիների հետ, որոնցից լսում եւ ընդօրինակում է նոր տիտղոսներ, խառնելով հների հետ եւ որոնք փոխանցւում են նաեւ Հայաստանի մէջ: Այսպէս Ռուբինեանց գահի վրայ նստող տիկնայք պահում են **թագուհին** «**թագուհի** Զապէլ[6]», «**թագուհի** Կեռան[7]», «**թագուհի** Հայոց երկրորդ Զապէլ[8]» եւ այլն:

Պիտակաբար նոյն կոչումը վերցրին նաեւ ուրիշ տիկնայք ոմանք՝ արքայական տների չառաւիղ լինելու պատճառաւ: Այսպէս՝ Օրբելեան Իւանէի կինը. «**թագուհի** Ռուսուքանայ՝ որ Բագրատունեաց ազգից էր[9]» (1172): «Ես Մամա **թագուհի**[10]» գրում է Հաթերքոյ տիկինը, դուստրը՝ Գ. Կիւրիկէի (1182): Սասունի տիկնոջ մասին ասւում է «**թագուհի** Մելէքսէթի, որ Արծրունի ազգից է» եւ «թագաւորազն». նոյնպէս իր դուստրը՝ «**թագուհի** Կատան», տիկին Սաղուկ բերդի[11] (դ. ԺԲ): «Ես Մամքան **թագուհի**[12]», յիշատակագրում է Խաչէնի տիկինը, որ թոռն էր Սիւնեաց արքայի (1251), եւ իր դստեր համար գրւած է, «թագազարմ **արքայուհին** Մինա խաթունն[13]», կինը Օրբելեան Տարսայիճի: Զաքարեան եղբայրներն իրենց ընդարձակ ու հզօր իշխանութեան պատճառով, «թագաւոր» են կոչւել երբեմն[14], նման ուրիշ իշխանների, որ նրանց Իւանէի կինն էլ գրում է «Խոշակ՝ Վրաց եւ Հայոց **թագուհի**[15]» (1228): Եւ շողոքորթելու համար մի գրիչ Ն. Լամբրոնացու քոյրերին եւս անւանում է «Շուշան **թագուհի**» եւ «Մարեմ **թագուհի**[16]». եւ մի երկրորդը սիր Պաղտին սպարապետի կենակիցը՝ «Շուշան **թագուհի**[17]» (1121):

---

1. **Բամ.** Հ. 4, 212: — 2. **Շիր.** 113: — 3. **Արծ.** 348: — 4. **Աստ՝** 66: — 5. **Հւք. յշտ.** անթւական: — 6. **Փամ. Ռբ**241: — 7. **Անդ՝** 242. **Արց.** 39: — 8. **Փամ. արգ.** 248: — 9. **Հյպ.** 382: — 10. **Աստ՝** 35: — 11. **Հյպ.** 393, 395, 394: — 12. **Արց.** 184: — 13. **Սսկ.** 192: — 14. **Աստ՝** 107 — 15. **Շիր.** 10: — 16. **Հւք. յշտ.** 1195: — 17. **Անդ:**

**Տիկնաց տիկինն** էլ ընդունեց Կիլիկիայի մէջ արքայազանց կողմից. ինչպէս կոչել է մեծն Լեւոնի մայրը՝ **Ռիթան**[1], Գ. Կոստանդնի մայրը՝ **Մարիունը**[2], (որին **թագուհի** տիտղոսով կոչող էլ կայ[3]), Ա. Հեթումի դուստրը՝ **Ռիթան**, տիկին Սարւանդիքարի[4], եւ Կեռան թագուհու մայրը՝ **Թեւանոււն**, որի ամուսինը՝ Հեթումն, էլ կոչւում էր «Իշխանաց իշխան[5]», երբ իրենց փեսան ու զաւակն արդէն թագաւոր էին:

Լամբրոնացիները յոյներից ունէին «սեւաստոս» (կն. **սեբաստոս**) տիտղոսն[6] էլ, որի համար Տարսոնի առաջնորդի մայրը կոչել է նաեւ **սեւաստուհի**[7]: Եւ որովհետեւ Գ. Կոստանդնի հայրը «մարաջախտ» էր, մայրը՝ **Մարիուն**, ստացել է **մարաջալէս** կոչումն էլ[8] որդու թագաւոր լինելուց առաջ, նրանից յետոյ բարձրացաւ տիտղոսը: Այսպէս նաեւ Կիպրոսի «սենեջալ» Բալիանի կնոջն՝ հայազգի **Ալիծին**, տրւել է **սենէջալէս** տիտղոսը[9]:

Ցանցառ է գործածւում այստեղ **տիկին**, ինչպէս «**տիկնոջն** Ասփայի»[10], եւ հազիւ է նշմարւում անընտանի **իշխանուհին** էլ մեր ամբողջ անցեալի մէջ, տրւած Օրբելեան Եւլիկումի կնոջ՝ **Թամթային**[11]: Ընդհակառակն ժամանակի բոլոր հայ ազնւական տների մէջ արանց ու կանանց վրայ իշխում էր արեւմտեան **պարոնը**[12], գրիչների կամ հնչման չփոթութեան հետեւանքով գրւած է նաեւ **պաարոն**: Նրանցից որոշները յիշենք. «քրիստոնասէր **պարոնն** Վանենի», կին Սեւատեան **Կուկի**[13] (1232). «**պարոն** Խոշաքին», Իւանէ սպարապետի թոռան՝ Սահիպ Դիւանի **կենակցին**[14]. «եւ **պարոն** Թամարս» նոյն սպարապետի եղբօր թոռան՝ Աղբուղայի զուգակիցը[15]. «**պարոն** Ասփան» ամուսին Դոփեան Գրիգորի[16] (1312). «**պարոն** Խորիշահի» Շիրակի հեջուպ Զաքարիայի կնոջ[17] (1313). «**պարոն** Վախախին» Եղիվարդի իշխող Ազիզբեկի լծակցին[18] (1318). «**պարոն** Ջապլունին» Լիւսինեան Ամորկան կնոջը[19] (1321). «**պարոն** Ուլու խաթուն[20]» (1497), եւ այլ շատերը:

Իսկ հին **տիկնոջ** փոխան եւ նրա հետ հանդիպում ենք երբեմն անգլիական ձայնին էլ. «**տամ** Աւիծ» Պապեռոնի տիկինը[21], ամուսինն ու ինքը զուտ հայեր են. «**տամ** Ցիմի[22]», ինքը հայ եւ Սիդոնի տիկինը: Նոյնպէս եւ «**տիկին** Աւիծ» նոյն պապեռոնացին[23]. «**տիկինն** Ակաց[24]» զուգակից սիր Լիկոսի. նոյն ամրոցից[25]. «**տիկնոջն**

1. **Կիր**. 157. **Սմ. Տրգ**. 116: — 2. **Ժմգ. Թ**. 521 **Ս. Ղզր**: — 3. **Ազ. Հնդ**. 1913, **Ա**, 81: — 4. **Հւք. յշտ**. 1263: — 5. **Անդ**՝ 1274, 1283: — 6. **Աստ**՝ 94: — 7. **Հւք. յշտ. դ. ԺԲ**: — 8. **Անդ**՝ 1319 mazachal, marachallesse: — 9. **Անդ** ՝ 1310. seneschal, senechalesse: — 10. **Արց**. 290: — 11. **Ազ. Հնդ**. 1916, 59: — 12. Baron, barone: — 13. **Հւք. յշտ**: — 14. **Շհխ Բ**, 183: — 15. **Բսմ. Հ**. 66: — 16. **Արց**. 290: — 17. **Հւք. յշտ**.: — 18. **Անդ**: — 19. **Անդ**: — 20. **Սիոն**, 1934, 114: — 21. **Տաշ. Ցցկ**. 834. dame: — 22. **Հւք. յշտ**. 1263: — 23. **Տաշ**. 834: — 24. **Հւք. յշտ**. 1256: — 25. **Աստ**՝ 68:

Ասփայի» վերոյիշեալը[1], եւն: Նմանապէս հին **օրիորդն** էլ անգլիացի է դարձել երբեմն. «համեստ **տամուժէլն** Ալին» դուստրը զուտ հայի[2]. կամ «**տամուժէլ** Անաւթն» զաւակ յիշեալ հայ Զապլունի եւ Լիւսինեան Ամորկանի[3]:

6.- Մեր վերեւում նկարագրած անձնական հաղորդակցութիւնից բացի հայուհին ունէր նաեւ այսպէս նչենք՝ համր կցորդութիւններ ընկերութեան հետ, գրաւոր կամ արուեստական միջոցներով, որ գիտէր յարգել ու պահել հայ հասարակութիւնն էլ: Այսպէս Հայաստանի սրբավայրերի մէջ թիւ չունեն արձանագրութիւնները, որ հայ կինը հասարակութեան առջեւ դրել է, իր անուան հետ, բարեպաշտական եւ ազգօգուտ բազմակերպ ու մնայուն գործեր, շինուածներ, նուէրներ կալուածների ու նպաստների, որոնց գլխաւորները տեսնելու ենք առանձին եւ իր մահկանացու նշխարները ծածկող քարերը:

Նա չի ակնածել, ոչ էլ ամուսինը նախանձով ընդդիմացել է, իր կենդանագիրն ներկայացնել հանրութեան առջեւ զանազան կերպերով, մինչ ուրիշ արեւելքցիներն ընդհանրապէս անթափանց քօղերով ծածկում էին իրենց կանանց երեսները: Այսպէս **Երատոյ** թագուհին իր ամուսնու՝ Դ Տիգրանի հետ, քանդակուել է՝ շատ յստակութեամբ դրամների վրայ: Հնութիւնը պահել է մեզ Արշակունի դշխուհու նրբաքանդակ գեղեցիկ դէմքը, - մեզ ոչ, բայց ժամանակակիցներին ծանօթ,- փոքրիկ մի կարկեհանի վրայ, յունակերպ մերկապարանոց ու մերկաբազուկ տարազով, որ հայ ազնուականութեան եւս ընտանի լինելու է:

Մեր իշխանազունք եկեղեցիներ են կառուցում, եւ նրանցից որոշները ճակատին քանդակում են իրենց եւ ամուսինների կենդանագրերն հաւատացեալները տեսնելու համար: Այսպէս Մրենի եկեղեցու վերեւը 636-638 թւականից կան Դաւիթ Սահառունու եւ կնոջ (անանուն) իշխանական հանդերձով, երկուսն էլ գլխաբաց եւ տիկինը ցոյց տալով իր անքօղ վարսերի վայելուչ պսակը: Դարձեալ Արատեսի տաճարի վրայ երեւում է Վասակ Հաղբակեանն եւ ամուսինը՝ **Մամա**, ԺԳ դարի սկիզբներից, կանգնած աղօթելու վիճակով Տիրամօր երկու կողմը:

Կան բազմաթիւ գրչագիր մատեաններ եւս, ընդհանրապէս եկեղեցիներին ընծայուած, որոնց մէջ նկարուած եւ ընծերցողների տեսութեան եւ յիշողութեան են յանձնւում նուիրատուներն իրենց կանանց հետ, կամ միայն կանայք, երբ իրենք են պարգեւողը: Օրինակ՝ ունենք կենդանագիրը Կարսի Գագիկ արքայի, **Գորանդուխտ** թագուհու ու **Մարեմ** դստեր հետ (դ. ԺԱ), կարգով տախտի վրայ նստած, տիկինը

1. *Արց.* 290: — 2. *Աստ*՝ 102 damoisele: — 3. *Հյպ.* 545:

կենտրոնում, Թագաւորն եւ օրիորդն երկու կողմը: Բ Լեւոնը, դեռ գահաժառանգ (1261-ից), որ կանգնած եւ մի Աւետարան է բռնել եւ կինը՝ **Կեռանը**, իր մօտ վառւած մի մոմ ձեռքին: Մի ուրիշը նոյն անձերը, որ արդէն գահակալ են իրենց զաւակներով (1272-ից) եւ ծնրադիր Յիսուսի հանդէպ: Գ. Կոստանդնի մօր՝ **Մարիունին**, նոյն ձեւով. ի ծունր խաչելութեան առջեւ եւ միւսը լւանալով նորածին Յիսուս մանուկը (1346-ից): Պարոն Բռնաւորի եւ **Տղայ** տիկնոջը (1236-ից), հպատակներ պարոն Գրիգորի[1], աղօթելով Աւետարանի առջեւ: Գրիգորիսն ու **Մամա խաթունը**, բարեկեցիկ քաղաքացիներ, եւ նկարիչ Պիծակ Սարգսի եղբայրն ու հարսը, նոյնպէս աղօթողներ Աստուածամօր առջեւ:

Յիշեալ դրամները, քանդակներն ու նկարները հրատարակւած են Հայ տարազի պատմութեանս մէջ, որին կարող են դիմել հետաքրքրւողներն եւ որոնց մի մասն գրում եմ ներկայ աշխատութեանս մէջ եւս:

7.- Տեսանք հայուհու մասնակցութիւնն ընկերութեան հետ զանազան ձեւերով, բայց փափագելի է իմանալ այդ հաղորդակցութեան հանգամանքները կամ արդիւնքն էլ: Այս պատմութիւնը մեզ տեղեկութիւններ է տալիս, որոնք ցոյց են տալիս հայ կնոջ մեծ ազդեցութիւնը, գործունէութիւնն ու յաջողութիւնը, որ երբեմն առաւել է քան տղամարդկանց: Առիթ ունեցանք ականատես լինելու այն ստիպման, որ Վասակի ու Սահակի կանայք, ստիպեցին քաջն Վահանին անօգուտ որոնել տալու իրենց ամուսիններին, որի հետեւանքով հասարակութեանը ծանր վնասներ պատճառելով[2]:

Փոխադրւելու ենք դէպի Է դարի կէսը, Ներսէս Շինողի հայրապետութեան ու Մամիկոնեան Գրիգորի իշխանապետութեան օրերը, որ Լուսաւորչի նշխարները Թորդանից փոխադրեցին Վաղարշապատ, նոյն կաթողիկոսի նորակառոյց եկեղեցու մէջ: Այդ հանդէսին ներկայ էր Աղւանի Վարազ Տրդատ իշխանի պատւիրակն՝ Իսրայէլ եպիսկոպոսը, որ խնդրեց նշխարներից մի մասը շնորհել իր աշխարհին: Հայրապետն եւ իշխանն ընդդիմացան, ասելով թէ Հայոց առաքեալի նշխարներն դեռ ոչ մէկ կողմ բաշխւած չէին, որը կարելի չէր պակասեցնել նրանցից: Եպիսկոպոսը յուսահատ ամոքելու նրանց դիմեց աւելի փափուկ մի սրտի՝ Գրիգորի կենակից Հեղինէին[3], որը Աղւան նահանգից էր: Նա ելաւ գնաց հայրապետի մօտ, որ աւելի դժւար էր համոզել նրան, եւ «զօրավարն Հայոց» ստանձնեց Գրիգորի կամքը նւաճելու գործը: Իսրայէլ արդարեւ հասաւ իր նպատակին շնորհիւ շնորհափայլ Հեղինէի տարած մեծագոյն յաղթանակին, որ սրբի ծնօտից մի մասն առնելով ուրախութեամբ մեկնեց[4]:

---

1. Շիր. 128-29: — 2. Աստ՝ 36-7: — 3. Աստ՝ 120: — 4. Կղն. 187-88:

կանայք են եղել, որ յաջողել են երբեմն վրդովեցնել հասարակութեանն ոչնչով: Սմբատ Բ Բագրատունին երբ մեռաւ, անեցի մի կին երազ տեսաւ ու պատմեց ամէնին թէ թագաւորն ողջ էր գերեզմանի մէջ եւ իրեն երեւացել էր: «Եւ համբաւն, ասում է պատմիչը, քաղաքի մէջ դղրդացել էր». այնքան, որ մահացածի եղբայրը Գագիկը հարկադրուեց հանել տալ արքայի մարմինը, վկաներին ցոյց տալով, համոզել քաղաքին ու զօրքին թէ իսկապէս մեռած էր[1]:

Բայց հայուհու կապերն ընկերութեան հետ չափ չունեն եւ պիտի տեսնենք այն բարեգործութիւնների, քաղաքական կեանքի, քաջութիւնների եւ յուղարկաւորութիւնների մէջ, որոնք բոլորն ընկերային գործեր են, կատարուել են ընտանեկան յարկից դուրս: Եւ նա ուր որ գտնուէր ընկերութեան մէջ, իրենից պահանջւում էր, եւ նա իմանում էր համապատասխանել, զգաստութիւնը, չափաւորութիւնը եւ լրջութիւնը հակառակ սեռի անձերի հետ տեսակցութիւնների մէջ, մանաւանդ երբ երկուսն էլ երիտասարդ լինէին, ինչպէս նշում է Բարսեղ Մաշկւացին 1325-ին այսպէս գրելով. «Երբ մի մանկահասակ կին, երիտասարդ տղամարդու հետ խօսի եւ զրոյց անի … թէպէտ ոչ մի չար գործ չկատարւի, սակայն տեսնողները գայթակղուելու են[2]»: Ապացոյց՝ թէ ո՛րքան զգուշաւորութիւն ի գործ էր դրւում հանդիպման ժամանակ փոքրոգի դատողութիւններ տեղի չտալու համար:

8.- Հայ կնոջ մերձաւորութեան եւ ընտանութեան հետ համեմատական էր ընկերութեան վարմունքն էլ նրա հանդէպ: Հետաքրքրւում էր նրանով, մեծարում էր նրան, քաղաքակիրթ մի ազգի պահանջւած եղանակով. գիտէր գովել ու հռչակել նրա մարմնական եւ մանաւանդ մտաւոր եւ հոգեկան ձիրքերը, գեղեցկութիւնը, առաքինութիւնը, կատարած փայլուն ու պատւաբեր գործերը, զեղծումներն անգամ, եւ յանձնել նրանց ի պահպանութիւն յիշատակարաններին ու պատմութեան, որպէսզի ապագայ սերունդները ճանաչէին ու յիշէին նրանց եւ ես կարողանայի կազմել ներկայ աշխատութիւնս: Հայ ազգն իր երգիչների ու քերթողների քնարին էլ յանձնեց այն, սկսած Գողթան գուսաններից մինչեւ ԺԵ-ԺԶ դարի տաղերգակները, որոնց մէկ մասի լարերը թրթռացնողն եղաւ զգայապաշտ սէրը եւ որոշներին ինչպէս Կոմիտասի ու Նարեկացու աննիւթ սէրը, որ սաւառնում է հոգեթռիչ բարձրութեան վրայ եւ այնտեղ տանում ու պահում է երգի առարկան էլ:

Ուշադրութեան արժանի է վարմունքը Պռօշեան Ամիր Հասանի կնոջ՝ **Թաճերի**, Նարեկի գրչին՝ Յովհաննու (1286-ին), որ նոյն ընտանեաց համախումբ յիշատակութեան

1. Ասղ. 255: — 2. Մշկ. 44:

մէջ տիկնոջ անունը մեծարանքով նախադասում է քան ամուսնունը, տագերին ու զաւակին, խնդրելով յիշել «ամենից օրհնեալ պարոնայքը Թաճերը, Հասանը ու Պապաքն եւ Էաչին». եւ յատկապէս գովում է «աստուածասէր, բարեպաշտ եւ արքայուհի պարծանքի» ***տիկնոջը***[1]: Նախադասութեան նոյն փափկանկատութիւնը նշմարեցինք նաեւ Համազասպեան Ասլանբէգի կողմից հանդէպ իր կնոջն[2], որպէսզի համոզուենք, թէ քաղաքակրթական նրբութիւնը մինչեւ ուր է հասել մեր ազգի գէթ մի մասի մէջ:

Հայ ընկերութեան մեծարանքը հանդէպ իր թոյլ կէսին նրան նախանձայոյզ ու վրէժխնդիր էլ հանդիսացրեց ոչ միայն անհատին կամ կենակցին[3], այլ ամբողջ սեռի պատւին, ազգայնոց եւ օտարներին միանգամայն, ինչ որ մեր ցեղի պարծանքներից մէկն է: Պատմութիւնը ցոյց է տալիս մեզ դրա գեղեցիկ օրինակներն էլ:

Պարսից արքայ Շապուհը խաբէութեամբ գերի բռնելով Արշակին, տիրեց եւ աւերեց մեր աշխարհը: Կորովի Մուշեղը յունական բանակով Հայաստան բերեց նրա պանդուխտ որդուն ու ժառանգին՝ Պապին, վերակազմեց հայ բանակն էլ, զարկեց, ջախջախեց Պարսից զօրութիւնը, եւ Շապուհը մազապուրծ խոյս տուեց, գերի թողնելով Հայաստանում իր տիկնանց տիկինը միւս կանանց հետ, որոնց թուլամորթ պարսիկը միասին իր հետ բերում էր: Այդտեղ Մամիկոնեան ասպետական հոգին պաշտպան կանգնեց օտարին ու թշնամու կանանց, ոչ մէկին թոյլ չտալով «նրանց անարգել» եւ «խնամոտ գութով» արձակեց վիրագին, որ հայի վեհութեան վրայ, ապշելով, նրան իր սպիտակ ձիով նկարել տուեց գինու տաշտի կողին եւ ամէն անգամ գինի ըմպելուն յիշում էր ու ասում. «Ճերմակաձին գինի՛ խմէ[4]»: Մեծն Աղեքսանդրն էլ պատւով պահեց պարտուած Դարեհի կանանց, բայց չարձակեց: Մամիկոնեան սպարապետի մեծանձնութիւնը քրիստոնէութեան բոյրն ունէր:

Անցնենք 572 թւականը, ուր Պարսից կողմից Հայաստանի մարզպանը նշանակուած է Սուրէն կամ Ճիհովր Վշնասպը: Մեր նախարարների գլխին մի պատիժ, որ ազատ կանանց ետեւից էր ընկել, «չէր ամուսնանում նրանց հետ»: Հայ պատւախնդրութիւնն ընդվզեց այդ անզգամութեան դէմ եւ ահա մի օր մի ուրիշ Մամիկոնեան, Վարդան Գ, որդին մեզ ծանօթ Վասակ նահատակի[5] դէմ կանգնեց, յանձն առնելով ամէն վնաս. սպասեց «յարմար ժամանակին», երբ ելաւ, ծառացաւ շան դէմ, մխեց սուրը նրա կրծքի մէջ եւ նրան «գետին փռեց»: Այդ հարուածը կայծն եղաւ նոր ապստամբութեան մեր իշխանների կողմից, նորանոր պատերազմների եւ աւերումների,

---

1. ***Խղբ***. 147: — 2. ***Աստ***՝ 40: — 3. ***Աստ***՝ 39,48: — 4. ***Փաւս***. 185-90, 236. ***սստ***՝ 116: — 5. ***Աստ***՝ 36:

*որոնք ի վերջոյ ստիպեցին Վարդանին ընտանեօք փախչել, ապաստանել կայսերական քաղաքում*[1]:

*Պարսիկներից յետոյ հայ կանանց պատուհաս դարձան արաբները, որ Է դարից սկսեցին արշաւել ի Հայաստան: 680-ին յարձակուեցին Վասպուրականի, Տարօնի եւ Կոգովիտի վրայ. ամրոցներ գրաւեցին եւ անհոգութեամբ նստած սկսեցին դաւել հայուհու պարկեշտութեանն: Այս անգամ վրէժխնդիր կանգնեց Ռշտունի Թէոդորոս զօրավարը: Վեց հարիւր զօրականով խոյացաւ, կոտորեց երեք հազար արաբ, մնացածները փախցրեց, արձակեց նրանց կապած հայերին եւ դարձաւ ցնծութեամբ*[2]:

*Նման ազնիւ մի հոգի էր Աշոտ պատրիկ Բագրատունին, որ երբ 688-ին լսեց թէ արաբների մի գունդ Հայաստանի սահմաններին են հասել, տղամարդկանց խոշտանգում էին հարկահանութեամբ եւ կանանց «մտածում էին խայտառակել ըստ իրենց անօրէնութեան», իր գնդով յարձակուեց, ջարդեց ու ցրեց նրանց. ինքն էլ վիրաւորուեց եւ ստացած խոցից վախճանուեց եւ այդպէս զոհւելով իր հոգու մեծութեան*[3]:

*Այս մեծութիւնների առջեւ նսեմանում են - եւ ես ակամայ արձանագրում եմ – Մերուժան ուրացողը, որ մենամարտել էր Մամիկոնեան Մանուէլի դէմ, հաշիւ էր անում թէ շուտով նոյն ժամին նրան ձերբակալելով, եւ «նրա կնոջը՝ Վարդանոյշի, ներկայութեամբ խայտառակ է անելու*[4]*». մինչ նոյն ժամին իր խելագար գլուխը պիտի անցնէր Մանուէլի նիզակի ծայրը: Կամ Դերենիկի պէս անառակը, որ փորձանք էր իր ազատների կենակիցների համար*[5]*: Եւ կամ Գագիկ Բ-ն, որ գահազուրկ Յունաստանում էր, երբ մի օր մայրաքաղաքից վերադառնում էր փախչելու նպատակով, որտեղ որ իջեւանում էր, հրամայում էր իր զօրքին «խայտառակել փառաւոր հռոմէացի կանանց, եւ նախատել նրանց*[6]*», բայց նրանցից աւելի ինքն իրեն ու հայ անունն էր խայտառակում: Եւ ինքը, որ պարծենում էր յոյների առջեւ թէ «Աստուծոյ կտակարաններին՝ հնին ու նորին հմուտ եմ*[7]*», առաքինի հարցը*[8] *գահի վրայ գտնուած ժամանակ եւս այդ հմտութեան ապացոյցը ցոյց չտուեց, ինչպէս կը տեսնենք նրա հացէին Գր. Մագիստրոսի գցւած սլաքներից*[9]*: Նրա հետ տապալուեց Բագրատունեաց պանծալի գահը, ինչպէս Արտաշէսի անպարկեշտութիւնն էլ կործանեց Արշակունեացը*[10]*: Մե՜ծ խրատներ նրանց համար, որ չեն իմանում քրիստոնէական բարոյականի կարեւորութիւնը*:

---

1. *Ասղ*. 84-85. *Սեբ*. 48-50: — 2. *Ղեւ*. 11: — 3. *Անդ*՝ 38: — 4. *Փաւս*. 251: — 5. *Աստ*՝ 44: — 6. *Ուռ*. 180: — 7. *Նոյն*՝ 162: — 8. *Աստ*՝ 96: — 9. *Մգ. Թղթ*. 15, 59, 63: — 10. *Աստ*՝ *Թ*, 3:

9.- Հուսկ նկատենք հայուհու ընկերական յարաբերութիւնը կղերական դասի հետ, որ ներկայանում է երկու ձեւով: Մէկը բնակակցութեամբ՝ նրանց սատարելու նպատակով եւ միւսը՝ մի տեսակ հոգեւոր կապակցութեամբ:

ա. Դ դարից յոյն եւ մանաւանդ ասորի եպիսկոպոսների, երէցների ու սարկաւագների տների մէջ կային բուն իսկ հաւատաւորներ իբր հոգաբարձու՝ ***տանտիկնայք*** անուամբ, որ սակայն չհաճեցին ու փորձեցին խափանել Նիկիայի ժողովն[1] եւ հետագայ հարքը[2]: Մեզ մօտ դեռ անծանօթ էր այդ Ե դարում, այնպէս որ երբ Բրքիշոյ կաթողիկոսն եկաւ «ըստ իրենց սովորութեան տանտիկնօք աշխարհին», հայերը գայթակղուեցին եւ ապա մերժեցին նրան[3]: Բայց որոշները ախորժեցին եւ հետեւեցին այդ օրինակին, որով Շահապիւանի ժողովը 447-ին ստիպուեց արգիլել այն[4]: Սրա մէկ տեսակն էր արծաթագին աղախնութիւնը, որ Ն. Աշտարակեցին թոյլ չտուեց քահանաներին[5]: Դաւիթ Գանձակեցին ԺԲ դարում այրի քահանաներին խորհուրդ էր տալիս վանք մտնել, որպէսզի չհարկադրէին մեռելի փոխան «տանտիկնայս» պահել[6]: Եւ Առաքել եպս. Սիւնեաց (ԺԵ դարում) ուզում էր, որ ձեռնադրիչ եպիսկոպոսը պատուիրի նորընծայ քահանային զգուշանալ «սպասաւոր պահել կանանցից[7]»:

Բացի տներից, մեր մենաստանների զգուշաւոր դռներն էլ բացուել են յաճախ կանանց առջեւ, որ Աշտարակեցին ուզեց նոյնպէս խափանել, գրելով այսպէս. «Ամենեւին կնոջ որպէս լւացող, հացթուխ, եւ կթւորուհի, խնոցահար մի՛ տարէք[8]», որոնց գոյութիւնն իբր «կթւորուհու եւ սպասաւորների» դեռ տեսնում եւ դատապարտում էր Մխ. Գօշը[9]: Նրանք մայրապետ էին կոչւում, ինչպէս, ասում է Ներսէս Կրակեցին 1335-ին հեգնական ձեւով, Երուսաղէմի Հրեշտակապետաց ուխտի մէջ աշխատելու ժամանակ, թէ «ճառեր գրելու ժամանակ ոչ մայրապետ ունեմ եւ ոչ քոյրապետ, ու չատն ցամաք հացով[10]»: Դրուած արգելքները կարծես թէ ընդարձակում էին նրա յաճախութիւնը, դատելով Գր. Տաթեւացու վկայութիւնից, որ ասում է. «Այսպէս բոլոր կարգը խառնուած եմ տեսնում, քահանաները (վանականները) քաղաքի մէջ շրջում են եւ կանայք վանքերի մէջ բնակւում են, միմեանց սեղանակից եւ տնակից են եղել» եւ խիստ քննադատում է նրանց[11]: Առաքել Դաւրիժեցին էլ պատմում է թէ ԺԷ դարի առաջին քառորդին արեւելեան Հայաստանի վանականները մենաստանները «լցրել էին կանանցով եւ տանտիկիններով եւ իրենց ազգականներով», որ աշխատում էին բարեկարգել ժամանակի ազդեցիկ Մովսէս ու Պօղոս վարդապետները[12]: Կարծում եմ, հայ վանքերի ոչ

1. Կան. Գ: — 2. Ոսկ. Մտթ. Ա. 269. ***Զգօն***. 119: — 3. ***Փրպ***. 72-74: — 4. Կան. ԺԴ: — 5. Աստ՝ 18-9: – 6. Այաւ. ՀԴ: — 7. ***Մհմ. գատ***. 27: — 8. Կան. ԼԴ: — 9. ***Բզմ***. 1833, 451: — 10. Գրչ. թ. 239 Ս. Ղզր: — 11. ***Լծ. Ցոր***. 16: — 12. Դաւր. 220, 222:

յատուկ այդ յաճախութիւնն եղաւ, որ նրանք հետզհետէ դատարկուեց յատուկ բնակիչներից եւս:

բ. Ասացինք կար հոգեւոր հաղորդակցութեան մի ձեւ էլ հայ կանանց եւ կղերականների միջեւ, որով մի բարեպաշտուհի բարեգործութեան նպատակով որդեգրում ու խնամածու էր լինում մի եկեղեցականի, լինելով նրա ***մայրագիրը***, եւ իր դուստրը՝ ***քոյրագիր***: Այսպէս Վասակ Սիւնու դուստրը եւ Հրահատ տոհմակցի կենակիցը՝ ***Քուրղիզուխտը***, անզաւակ մնացած, 867-ին արձանագրում է թէ Սիւնեաց եպիսկոպոսը՝ Սողոմոն «ինձ ***հոգեւոր զաւակ*** ստացայ եւ յոյս ու ապաւէն է իմ մեղաւոր հոգու» միանգամայն կալուածներ նուիրելով աթոռին նրան վայել եւ նաեւ յաջորդներին[1]: Աբասի կինը՝ ***Նանա*** Թագուհին[2], գրում է, թէ «Նորակերտ վարդապետս» Մարգարէ իր աշակերտութեան սկզբում «***որդիացաւ*** ինձ, եւ առաւել եղաւ քան հարազատ զաւակը», որից նոյնպէս զուրկ էր. «եւ հոգայր, ասում է, իմ հոգու օգտին»: Տիկինն նրա խնդրանքով կառուցում է Յովհաննավանքի պարիսպը, որ դեռ չաւարտած Մարգարէն վախճանւում է «եւ մեզ սուգն անմխիթար եղաւ, ասում է, նրա միւս աշխարհ փոխադրուելը եւ ես՝ Նանաս, խղճալով նրան մորմոքեցի» իր սփոփանքի համար, նրա գերեզմանի վրայ մի խաչ է կանգնեցնում «յիշատակ նրա որդիութեան անվախճան սիրոյ[3]»:

Յովհաննէս վարդապետ ոմն՝ ստացող Եսայեայ մեկնութեան 1302-ին, խնդրում է յիշել «աստուածահաճոյ եւ բարեմիտ ծերունի ***հոգեւոր*** մեր ***մօր*** Տիկնոջ», որ գրել է տալիս նոյն մատեանն ու ընծայում է իրեն. եւ այդ տիկինն այրի էր ու զաւակների մայր[4]: Վայոց ձորի Գլաձոր անապատի մէջ 1317-ին կայ Սարգիս աբեղայ ու գրիչ, որ ընթերցողների յիշողութեանն է յանձնում «***հոգեւոր ծնողները*** մեր՝ Մեծտիկինը, Մարթան, Նուսթին եւ Հովադեղն[5]»: Ներսէս գրիչը, որ վերոյիշեալ Կրակեցին է թւում, օրինակում է Երուսաղէմի 1346 թուակիր Աւետարանը եւ նուիրում է Գ Կոստանդնի մօր ***Մարիունին***, որ «մեր անարժանութիւնս իր ***եղբայր*** կոչեց, ասում է, եւ ինձ թւում է Աստուծոյ կամքով եւ Սուրբ Հոգու շնորհիւ մեզ յայտնուեց ***հոգեւոր քոյր*** եւ կատարեալ բարեկամ»: Եւ աստուածային օրհնութիւնն է հայցում նրա վրայ, «որ մեր ***հոգեւոր մայրն*** է». եւ նրա ***Ֆիմի*** դստեր՝ որ «մեր ***հոգեւոր քոյրը*** եւ բարեկամն[6]» է: Բուն Կրակեցին դարձեալ 1335-ի գրչութեան մէջ ակնարկում է «***հոգեւոր մօրս***, Քրիստոսին հաւատաւոր

1. *Օրբ*. 159-60: — 2. *Աստ*՝ 47: — 3. *Զբ. սրկ. Գ*, 23: — 4. ***Հւք. յշա.***: — 5. ***Հրպ***. 812: — 6. ***Ազ. Հնդ***. 1913, *Ա*, 81:

կապնցեց, եւ իր ընկերոջն Թագուհէն, որ չատ աշխատեցին, ասում է, հիւանդութեան եւ հաց եփելու համար[1]»:

Յեսու քահանայ փիլիսոփայ արեւելցի, գրիչ 1348-ին, ուրիշ թւակորոյս մի յիշատակարանի մէջ Կոստանդին Գ արքայի ամուսնուն **Մարիւն** է անւանում «երախտաւոր եւ **ըստ** հոգու իմ **մայրն**[2]»: Մի ուրիչը, Մելիքսեդեկ քհ. գրիչը, 1376-ին ընթերցողաց աղօթից յանձնում է «**հոգեւոր** իմ **մայրը** Մինա խաթունն[3]»: Մկրտիչ Նաղաշը նոյնպէս 1449-ին յիշում է «բարեպաշտ **Շուշան** մայրը», որ կորցրած չորս որդիներին, տանուտէր ամուսնու՝ Հեթումի հետ, «արար իւրն **յորդեգիր** զճգնազգեաց կրօնաւորն Յովսէփ». եւ նրա հետ գնաց եւ բնակւեց Մերտնոյ Ս. Յովհաննէս մենաստանի մէջ, «որպէս անապատի տատրակ որոշեալ ի զբաղմանէ աշխարհիս, մեռանելով ի մարմնի, միայն Աստուծոյ կենդանի». եւ իր բոլոր ստացւածքը գործածեց վանքի օգտին, ինքն էլ աշխատելով «ի սպասաւորութիւն սուրբ ուխտին[4]»:

Այս հոգեւոր կցորդութիւնն էլ, թէպէտ նպատակը բարի եւ անձերը լուրջ, բախւեց խստակրօն առաջնորդների ու վանականների ընդդիմութեանն, ինչպէս Դաւիթ Գանձակեցին[5], Մխ. Գօշը[6], Յհ. Գառնեցին[7], Առաքել Սիւնեացը[8] եւ Սիմէոն Այրիվանեցին[9] էին, բոլորն էլ (բացի Գօշից) արգելելով վանականներին նաեւ կնքահայր լինելն եւ **կնքամայր** կամ **սանամայր** ունենալը: «Որովհետեւ յարում է Առաքելն, այս բոլորը խաբէութիւններ են եւ սատանայի ճանապարհ»: Իսկ Ջագայ ժողովը (1270-ին) սահմանեց, որ «ոչ սանամայր, ոչ մայրագիր, ոչ քրոջ գիր բնաւ եւ ոչ մայր եւ քոյր ունենք եւ ոչ ազգական վանքի մէջ» բնակւեն[10]: Բայց ինչպէս արգելողների բազմութիւնից ու չարունակութիւնից տեսնւում է վերն ու այստեղ, խրատներն ու պատւէրները մեռեալ տառ են մնացել սովորութեան առջեւ, որ անփոփոխ պահել է իր ընթացքը դարերով:

Կրկնում եմ, որ հայուհու մասնակցութիւնն ընկերական կեանքում տեսնւելու է մեծագոյն չափով ու չքեղագոյն եղանակով հետագայ գլուխների մէջ քան այն չափով, որ ցոյց տւեց մեզ ներկայիս: Որովհետեւ մենք փաստեցինք եւ ցոյց տւեցինք այդ հաղորդակցութեան սկզբունքն ու հիմնական կէտերը միայն, որոնցից բխում են իբր հետեւանք, ուրիշ բազմաթիւ պարագաներ եւս, որքան բարդ են ընկերային կենցաղի պահանջներն ինքնին:

---

1. Գրչ. թ. 239, էջ 756 Ս. Ղզր: — 2. **Հւք. յշա**: — 3. Անդ: — 4. Գրչ. թ. 283, էջ 776 Ս. Ղզր: — 5. Ալաւ. ԻԳ: — 6. **Բզմ.** 1933, 451: — 7. Գռն. Խր. 146: — 8. **ՄՀմ. գաա**. 27: — 9. **Հյպ**. 570: — 10. Կան. Գ, ա:

## ԳԼՈՒԽ Զ

### Վայելչագիտութեան մէջ

Մարդը, ո՛ր ազգի, դարի, վիճակի եւ սեռին էլ պատկանէր, միշտ սիրել է վայելչութիւնը թէ իր անձի եւ թէ ուրիշների վրայ: Եւ ոչ այնքան իր յարկի առանձնութեան մէջ, այլ ընկերութեան առջեւ երեւելու ժամանակ: Այս պատճառով մեր նախորդ գլխից յետոյ, առաջ ենք քաշում այստեղ այս խնդիրը: Ասացինք ընկերութեան առջեւ եւ իսկապէս տեսանք թէ Փաւստոսի շինական երիտասարդը, որ «թերեւս աւագակութիւնից» էր վերադառնում եւ ճանապարհի վրայ էր, այդ պայմանի մէջ իսկ ի՛նչպէս զարդարուած էր[1] եւ պատմիչի բուն բառերով «իր մազերը լւացել, օծել, մերսել, վարսակալ էր դրել գլխին եւ լօդիկ էր գցել ուսերին»: Նոյն խնամքը մատնանշեց մեզ Բ. Մաշկւանցին նաեւ Հայ կնոջ վրայ, երբ դուրս ելնէր[2]:

Վայելչութիւնը մի այլ մաս էլ ունէր. բնատուրը, որը մարմնական գեղեցկութիւնը եւ արւեստականը կամ մարմնի պճնումը, երկուսն էլ կարեւոր եւ իրար լրացնող են: Դրանց հետ քաղաքակրթութիւնը հոգեկանն էլ որոնում էր, որ յայտնի էր դառնում լեզւի, շարժումների, վարքի, բնակարանի, կարասիների ու սպասների վրայ անգամ: Վայելչագիտութեան պահանջն եթէ ընդհանուր էր, բայց նրա արտայայտութիւնը փոխւում էր, ժողովուրդների զարգացման աստիճանի համեմատ: Քաղաքակիրթ ազգերի մէջ բարդ ու նրբացած էր, իսկ յետամնացների մօտ պարզ ու կոշտ: Սակայն բարգաւաճ ցեղերի մէջ էլ վայելչութեան գաղափարն անհաւասար է եղել համեմատ անհատի զարգացման ու դաստիարակութեան չափին: Եւ եթէ այս պատճառով չի կարելի գեղեցկին մի բացարձակ սահման տալ, բայց նրա ընդհանուր ծանօթութեան շուրջ, իւրաքանչիւր զարգացած հասարակութիւն միշտ միաբանութեան է յանգել:

Քաղաքակրթութիւնն այդ յառաջադէմ ժողովուրդների մէջ դասակարգել էր նաեւ մեր ազգին, որը գիտակցելով այս մասին արժանաւոր կերպով իր կրթութիւնն ու նրբութիւնն ցոյց տւեց:

1.- Վայելչագիտութեան առաջին մասը բնատուր գեղեցկութեան մէջ դրեցինք, որ հասարակութիւնն երկու սեռերի մէջ էլ որոնել է, նրանց վաղ մանկական տարիքից սկսած: Մենք առիթ ունեցանք տեսնելու մեր հին մատենագիրների կողմից, **մանկական գեղեցկութեան** պանծացումը եւ նրա պատճառած հաճոյքը ծնողների սրտերին[3]: Տաղկի

1. Անդ՝ 25: — 2. Անդ՝ 117: — 3. Անդ՝ 85-6:

կոկոնն է այդ, որ պիտի բացւի մեծագոյն փայլով արբունքի տարիքում, երբ ընդարձակւելու է նաեւ դերն ու սկսւում է ընկերական կարեւորութիւնը: Հայ կնոջ – որով նախ զբաղւելու ենք – հաղորդակցութիւնն ընկերութեան հետ, նպաստեց հայ հասարակութեանը ճանաչելու նրա այդ բնատուր պարգեւը, հետաքրքրւելու, մեծարելու, խօսելու եւ գրելու նրա մասին: Ագաթանգեղոսն, որ մեր հնագոյն գրիչներից մէկն է, իր ուռուցիկ ոճով, մեր առջեւ դնում է հայ ազգի հոգեբանութեան պատկերը քան մի իրականութիւն, երբ դեռ մեր դիցապաշտ ազատանին ու խառնիճաղանճ մի ամբոխ է խռնում դրսից նորեկ **Հռիփսիմէի** չուրջ «նրա գեղեցկութիւնը տեսնելու» ըստ «հեթանոսական սովորութիւնների[1]», դրանով աւելի ցայտուն դարձնելու համար սրբուհու «սքանչելի տեսքը» կամ «հրապուրիչ վայելչութիւնն[2]», որ ինքն իսկ չեչտել է ուզում:

Սիւնեաց Անդովկ իշխանի դուստրը՝ **Փառանձեմը**, խառնուրդ սիւնի եւ մամիկոնեան ազնւականագոյն արեան[3], դեռ հայրենի տանն ու դռնափակ սենեակի մէջ նստած[4], «չատ յայտնի էր գեղեցկութեամբ եւ պարկեչտութեամբ», ասում է պատմիչը. երկու յատկութիւններ, որոնց վերջինն աւելի էր բարձրացնում առաջինի յարգը: Արշակունեաց օրիորդը հարս գնալով, աւելի մօտեցաւ բարձր ընկերութեան, եւ առաւել խօսակցութեան նիւթ դարձաւ, այնպէս որ «աղջկայ գեղեցկութեան համբաւը, յարում է Փաւստոսը, տարածւեց վայրերի մէջ եւ յաճախակի բազմանում էր[5]», առանց ակնածելու նրա աստիճանից, երեւում է համբաւն ենթակային հաճելի անձնասիրութիւն էր ընծայում եւ նրա ընտանիքին էլ, դրա համար համարձակ ընթանում էր:

Նոյն կամ նման գովեստներ էր ասւում նաեւ ուրիչներին: Գարեգին Ռշտունու կինը՝ **Համազասպուհին**, Փառանձեմի մօտ տոհմից[6], նկարագրւում է «պայծառ տեսանելովն», եւ պայծառագոյն հոգով[7], ինչպէս պիտի տեսնենք: Գր. Մագիստրոսը իր պապին ու տատին սահմանում է **Շուշան** «գեղեցկութեամբ չքնաղ», բարեպաչտութեամբ ու բարեգործութեամբ երեւելիներ[8]: Արծրունեաց պատմիչն ակնարկում է Բագրատունեաց չառաւիղ ու Վասպուրականի առաքինի իշխանուհուն[9], լուսանման կամ «արփիագեղ տիկնոջն մեծն **Սոփիա**[10]»: Արիստակէս գրիչը դրւատում է Զորտւանէլեան Վիգէնի զաւակներին[11] եւ նրանց մէջ «չքնաղագեղ» **Կատային**, «չատ գեղեցիկ կոյս, ամենայն բարեձեւութեամբ զարդարւած ... կատարեալ հասակով եւ

1. *Ագթ*. 130: — 2. *Նոյն*՝ 114: — 3. *Աստ*՝ 55: — 4. *Աստ*՝ 14: — 5. *Փաւս*. 116: — 6. *Նոյն*՝ 178: — 7. *Անդ*: — 8. *Մգ. Թղթ*. 43: — 9. *Աստ*՝ 43: — 10. *Արծ*. 293: — 11. *Աստ*՝ 86:

գեղեցկութեամբ[1]»: Եւ **Կեռան** Թագուհու որդիներից մէկր չվարանեց ընթերցողների ուշադրութեան յանձնել իր «գեղեցիկ տեսքով առաքինի մօրը[2]»:

Հայուհու շնորհքների համբաւր տարածուած էր նաեւ օտարների մօտ, ուստի մի աւանդութիւն էլ ստեղծուել է, որ իբր պատմութիւնը կոչել է Անտոնինոս եւ Կղ. Գալանոս կրկնեց: **Թաթարների** Կասանոս խանը, որ յետոյ քրիստոնեայ է դառնում, երբ նստում է իր գահին, պատուիրակներ է ուղարկում եւ ամէն կողմում որոնել է տալիս գեղեցկագոյն կնոջն ամուսնութեան համար: «Ապա գտնեց եւ լուր տուեցին թէ Հայաստանի թագաւորի դուստրը գեղեցկագոյնն է բոլորից, որի համար Կասանոսը խնդրեց եւ հայրն էլ հաւանեց, եթէ դուստրը ցանկանար» եւ նա ընդունում է առաջարկը՝ քրիստոնեայ մնալու պայմանով[3]: Մերս Հեթումն, որ յիշում է նոյն թաթար խանին, անտեղեակ է այդ ամուսնութիւնից եւ մեզ ծանօթ հայ արքայադուստրերի մէջ թաթարներին գնացող չկայ:

2.- Ինչո՞ւմ էր կայանում հայ ըմբռնողութիւնն այդ կանացի վայելչութեանը: Սկսելով **Ե** դարից, հետաքրքրական է Ոսկեբերանի մի նշումն, ուր նա շղթայակապ Պօղոսը համեմատում է մի չքնաղ օրիորդի հետ, եւ կալանաւոր առաքեալին աւելի գրաւիչ է գտնում: Այդտեղ հայ թարգմանիչն ընդլայնում է կոյսի նկարագիրը, եւ նրա մէջ մանկամարդի կենդանագիրն այսպէս է գծում «**Մաւի** աչքեր, **յոնքերը միացած, բիբերը խարտեաշ,** մեղմ, քաղցրահայեաց, պարկեշտ, հանդարտ ... թխագոյն արտեւանունք, ներքեւից եւ վերեւից ինչպէս **խիտ անտառ բիբերը** պսակել էին ... փայլող ճակատ, այտերը միահարթք, **երկայնածնօտ** մարմարաձեւ յղկուած, **բոլորակ բերան**[4], **հարթ ռունգեր, հաւասար շրթունքներ, սպիտակ ատամներ, ամէն բանով գեղեցիկ, կատարեալ վայելուչ**[5]» ուր բոլոր շղագրերը թարգմանչինն են՝ մանրամասնած ըստ հայ ճաշակի: Մենք այստեղ պատկերալից նկարագրութեան հետ ունենք ոսկեդարեան հայերէնի սքանչելի գեղեցկութիւնն էլ, որ նրան աւելի է զարդարում եւ ինքն իսկ արւեստ է. ինչպէս այլուր աչքերի այս ամփոփ ու վառվռուն նկարագիրն եւս. «բոլորակք եւ լիք եւ ծաւիք եւ ընդոստք» համաձայն բնագրին[6]:

**Խորենացին** յիշում է հայ Տիրան մի արքայի,- որդի **Բ** Արտաշիսի[7],- եւ նրա «չքնաղագեղ» **Երանեակ** դուստրի «խարտեաշ մազերը» սակաւագիւտ մեր ցեղի մէջ, եւ «խոպոպներով վարսեր[8]»: Մեզ մօտ մեծապէս յարգի էր նաեւ մորթի սպիտակութիւնը: Վերոյիշեալ **Համազասպուհին** իր մարտիրոսութեան ժամանակ ներկայնում էր

---

1. **Հյդ.** 393, 394: — 2. **Աստ**՝ 86: — 3. **Գլն. Ա**, 430: — 4.**Դուէն**: — 5. **Ոսկ. Պօղ. Ա**, 660: — 6. **Անդ**՝ 39: — 7. **Ըստ. Ապպիանոսի**՝ հայր **Բ Տիգրանայ**: — 8. **Խոր. Բ, կգ**:

«սպիտակ մարմնով», այնպէս որ «բարձունքից փայլում է մարմինն, ասում է պատմիչը, ձեան սպիտակութեամբ[1]»: Նոյն խնամքն ունէին իրենց վրայ նաեւ Եղիշէի տիկնայքն էլ, որոնց նեղութեան օրերին «սեւացել էր նրանց մարմնի մորթը» ափսոսում է պատմիչը, ցերեկն արեւակէզ ու գիշերը գետնախշտին լինելով[2]:

Ոսկեբերանի թարգմանիչն մի յաւելածով զգացնում է նաեւ հայուհիներն իրենք իրենց **«զապուած պնդակազմ»** ցոյց տալու հնարքները[3], որն ստորեւ տեսնելու ենք եւ որոնք մտածել են տալիս, թէ նրանց հաճելի չէր գիրութիւնը, որ խանգարում էր մարմնի բնական չափակցութիւնը, դրա համար իսկ չէր կարող հաշտւել վայելչագէտ կիրթ ճաշակի հետ: Նոյնպէս զգում եւ վկայում է հելլէն արւեստն էլ իր չքնաղ մարմարների վրայ. եւ կրկնում է Անտիոքի քարոզիչը ժամանակի յոյն կոյսերի մասին, ասելով թէ այնպէս են հագնւում, «որ գէր չթւան եւ ոչ էլ նուրբ, այլ սովորական կշռով[4]», որ միջակ պայմանով է:

Մենք այստեղ գտնւում ենք հայ դասական անցեալ շրջանում, ուստի մեզ Նարեկացի բանաստեղծն փոխադրում է Ժ դարում, ուր Ծննդեան տաղի մէջ «երգ հիանալի ու թրթռուն» նկարագրում է Նազարէթի կոյսը: Առ այս գրչի այդ նկարիչը վրձնով նկարչի պէս իր դիմաց դնում է՝ իբր օրինակ, հայ շնորհագեղ մի մանկամարդ որ կաքաւում ու երգում է բազմութեան առջեւ, հանդիսանալով «զարդ՝ երամից զարդ» եւ ուղղակի այն ճարտարօրէն եւ հաճութեամբ գծագրում է, իբր արւեստագէտ, հակառակ ուրիշների աններողութեան կաքաւիչների հանդէպ[5]: Իր նկարագրութիւնից կարեւորը քաղելով յառաջ եմ բերում:

«Նուրբ յօնքեր կից կամարներ.- Աչքերը ծով ծաւալւել են, - Երկու փայլակնաձեւ արեգակի նման: - Նռնենի այտերն նման են ծաղիկներին - Գեղաշիտակ ծայրից ծաղկանց: - Բերանն երկթերթի, վարդն էր շրթներից կաթում: - Լեզուն նման էր քաղցրանւագ տաւղի: - Գեղեցիկ վարսերը, գեղեցիկ վարսերը - եռահիւս բոլորել են այտերը: - Հազրէով զարդարուն ծամի հիւսքերի[6] - Գեղը կենսատու ունի գինու գոյն: - Ծոցն լուսափայլ, կարմիր վարդով լցւած – Ծղիքն՝[7] ծիրանի մանուշակի փնջեր: Գեղեցիկ, կապոյտ, ծիրանի, բեհեզեայ եւ որդան – կարմիր ոսկեշող գոյներով փայլուն պատմուճանով զարդարւած էր: - Գօտին արծաթափայլ ոսկէտառուն – չափիւղայ ակներով, ակներով կամար – Մանրամասն յօրինւածով պճնւած էր: - Երբ նա շարժւում էր մարգարտափայլ գեղով, - Ոտքերից գնալիս շող էր կաթկթում[8]»: Նկարագիր՝ որում

1. *Փաւս.* 178: — 2. *Եղշ.* 156-57: — 3. *Ոսկ. Պօղ. Բ*, 554: — 4. *Անդ՝ Ա*, 68: — 5. *Աստ՝* 76: — 6. *Համանուն վարդը*: — 7. *Բազկները*: — 8. *Նրկ.* 464-65:

գտնում ես Ժ դարի հայուհուն՝ որչափ ուզում ես, բայց ոչ Նազարէթի ծածկասէր պարկեշտուհուն: Մի ոստում մինչեւ ԺԷ դար, եւ այնտեղ հանդիպելու ենք աստապատցի **Գօզալի** նկարագրին. «գեղեցիկ կին, լայնաճակատ, յօնքերը միացած, խիտ մազերով[1]», որ հին նկարագրութիւնների ամփոփումն է:

3.- Հայ կնոջ վայելչութիւնը նկարողներն այրեր են, որոնք նրա հետ երգել են առնական գեղեցկութիւնն էլ, որը հայուհին ճանաչում ու որոնում էր եւ նրանց կեանքի մէջ դեր ունէր, ինչպէս պիտի տեսնենք: Լսենք ուրեմն մեր մատենագիրների տեսութիւնը նաեւ սրա մասին:

Մեր ազգի հին վէպն աւանդական Հայկ նահապետին նկարագրում է «վայելչակազմ էր, թիկնաւէտ գեղագանգուր մազերով վառվռուն աչքերով եւ հաստ բազուկներով». եւ Տիգրան Ա-ն՝ «խարտեաշ ... գունեղ երեսով, քաղցր նայւածքով, գեղեցիկ ոտներով, վայելչակազմ եւ թիկնաւէտ[2]»: Ոչ պատմութիւնը, այլ հայ ժողովրդի երեւակայութիւնն էր, որ այդպէս էր տեսնում այդ անձերին: Ընդհակառակն հեռու չէր ու ծանօթ էր պատմողին, Յուսիկին, յետոյ հայրապետ, իր «բարձր հասակով, դէմքի սքանչելի գեղեցկութեամբ եւ չքնաղ[3]»: Նոյնպէս սրա թոռը՝ Ներսէսը, «մեծ եւ բարձր ցանկալի հասակով եւ վայելուչ գեղեցկութեամբ», եւ «չքնաղատես վարսերով», որ երբ ձեռնադրութեան ժամանակ մազերը խուզում էին, «շատերը լաց էին լինում» նրա գեղեցկութեան աղաւաղման համար[4]:

Աշոտ Ա Բագրատունի արքան «քաջահասակ էր, նաեւ փարթամ հասակով, թիկնաւէտ, զւարթերես եւ մրայօն» ու գեղեցիկ մօրուքով[5]: Աւելի մանրամասն նկարագրւած էր իր թոռը ու Վասպուրականի թագաւոր՝ Գագիկը, որ ունէր «լուսազարդ պատկեր եւ փառաւոր հասակ». երեսներն «հարթ եւ ուղիղ, վայելուչ եւ պայծառ». մազերը «թուխ գանգուրագեղ» եւ «խուռնախիտ թանձրութեամբ» բաժանւած սպիտակ ճակատի վրայ. յօնքերը «մրազարդ կամարաձեւ կցւած» իրար եւ բիբերն ու արտեւանունքը «հրաշազարդ յօրինւած». քիթն երկայն ու վայելուչ, շրթունքները կարմիր, ատամները խիտ ու մաքուր, եւ մօրուքը մանիշակի պէս ծաղկած գունագեղ այտերի վրայ[6]:

Աբդլմսեհ Արծրունին, Գր. Մագիստրոսի փեսան[7], «անձամբ վայելուչ, մեծաշուք եւ բարձրահասակ, գանգրահեր եւ գեղեցկատեսիլ» էր եւ դրա հետ «քաղցրախօս եւ ինչպէս տատրակ անուշաբարբառ[8]»: Սասունցի Վիգէնի որդին Զորտւանէլի

1. *Ձք. սրկ. Ա*, 33: — 2. *Խոր. Ա, Ժ, իդ*: — 3. *Փաւս*. 30: — 4. *Նոյն*՝ 68, 70: — 5. *Յհ. կթ*. 175-75: — 6. *Արծ*. 340-41: — 7. *Աստ*՝ 99: — 8. *Արծ*. 348:

յիշատակագիրը սահմանում է «գեղեցիկ, բարետեսիլ, գանգրահեր, խարտիշագեղ, լայնաթիկունք, հաստաբազուկ, չափահասակ[1]»: Եւ Թորոս Բ Ռուբինեանը «տեսքով թխամորթ, դէմքով գեղեցիկ եւ ահարկու, գանգրահեր եւ չնորհալի[2]»: Այստեղ էլ ինչպէս հայ տիկնոջ վրայ[3], գեղեցկութիւնն «ահարկու» կամ «ահագին[4]» է տեսնողին, այսինքն պատկառելի: Եւ այդ բոլոր նկարագրութիւնների մէջ նկատելի է գաղափարի ընդհանուր միութիւն ու չարունակութիւնը մեր պատմիչների մօտ, ինչ որ ազգի անփոփոխ գաղափարն էր:

4.- Այդ արտաքին չնորհքը կարեւոր մի բաժին ունէր ամուսնութեան մէջ երկու կողմերի համար եւս, եւ նրանց իրար մօտեցնող տարրերից մէկն է եղել: Երբ Ա Խոսրովի սպանութեամբ Արտաւանը տիրեց Հայաստանին, կոտորեց Մանդակունեաց տոհմին, որոնցից Արտաւազդն ազատել էր որդուն սպանելուց: Ազատողի քոյրերի մէջ կար «մի գեղեցկատեսք կոյս», որին Տաճատ Աչոցան կոտորածից գողացաւ դէպի Կեսարիա փախցրեց եւ ամուսնացաւ «չքնաղագեղ կերպարանքի պատճառով[5]»: Գնէլի հետ ամուսնութեան մէջ չենք կարող անմասն նկատել **Փառանձեմի** գեղեցկութեան համբաւը: Դրա հրապոյրն էր, որ նախ Տիրիթին մղեց եղեռնագործութեան[6], եւ ապա բացեց նրա առջեւ Արչակի արքունական դռները[7]: Արծրունի Դերէն Բ մի դուստր ունէր, որին հարսնացրեց Բագրատունի Գրիգոր պատրիկին. «Նա գեղեցիկ կին էր եւ իր ամուսինը նրան սիրում էր», ասում է պատմիչը[8], նոյն յատկութեան համար:

Փոխադարձաբար հայուհին էլ իր կենակցի վրայ առնական վայելչութիւնն է որոնել մանաւանդ ազնուական դասի մէջ, որ «փափուկ, ազատ եւ ընդարձակութեան մէջ սնւած մարդիկ եւ ձիւնեղէն լեռների բնակիչներ» էին[9]: Եղիչէն խօսելով Ապարի մէջ կապւած մեր ազատանի տիկնանց մասին չեչտում է այդ բնատուր պարգեւի կարեւորութիւնը նրանց սրտերի մէջ, այսպէս ասելով. «Նրանց աչքերը կարօտեցին տեսնելու նրանց ցանկալի գեղեցիկ երեսները[10]», որից տարիներով զրկւած ապրում էին[11]:

Սակայն բնութիւնն ամէն այրերի – ինչպէս եւ կանանց – հանդէպ միչտ առատաձեռն չի գտնւել, եւ հայուհին հարկադրւած էր համակերպւել նաեւ բախտին, իրեն նչանակւած տգեղների կենակցութեան հետ: Եղել են, սակայն, նրանց մէջ էլ, որ ըմբոստացել են բախտի դէմ, մանաւանդ նրանք, որ բնութեան պարգեւը ունէին, եւ աւելի նախանձախնդիր էին նոյնը տեսնելու նաեւ իրենց ամուսինների վրայ, որ նրանք արժանի լինէին իրենց: Վերոյիչեալ **Երանեկի** այրը՝ Տրդատ Բագրատունին «կարճ

1. ***Հրպ.*** 393: — 2. ***Տրգ. Կկլ.*** 221: — 3. ***Աստ***՝ 113: — 4. ***Փաւս.*** 68: — 5. ***Խոր. Բ. Հը***: — 6. ***Աստ***՝ 42: — 7. ***Փաւս.*** 121: — 8. ***Շպհ.*** 49: — 9. ***Եղչ.*** 150: — 10. ***Նոյն***՝ 157: — 11. ***Աստ***՝ 36:

հասակով եւ անչուչ տեսքով» էր, որի համար կինը ատում էր նրան ու «տհաճութեամբ եւ արհամարանքով» էր կանգնում միչտ նրա հանդէպ, ափսոսելով ինքն իրեն, որ մի չքնաղագեղ ապրում էր վատակերպի հետ: Մի օր էլ Տրդատը զայրացած նրա արհամարհանքից, սաստիկ ծեծեց նրան, գեղեցիկ գանգուրները կտրեց, որպէս պատիժ նրա մեծամտութեանն եւ փախաւ գնաց[1]:

Տեսանք Փաւստոսի առելութիւնն էլ Արշակի դէմ եւ դրա ծանր հետեւանքները, որ վերագրեցինք բարոյական ներքին պատճառի[2], եւ ստոյգ է: Ապացոյց իր վրէժխնդրութիւնները, որոնց հանդիպելու ենք յետոյ: Բայց եթէ լսենք Փաւստոսին, դրա չարժառիթը սեղմում եւ այսպէս է գրում «Որչափ արքայ Արշակը սիրում էր կնոջն, այնչափ կինն ատում էր արքային», ասելով թէ մազոտ կամ «մարմնով թաւ է եւ թուխ գոյնով[3]»: Հաւատում ենք, թէ այս պատճառն էլ ունեցաւ իր բաժինն արքունիքում մի դժոխք բացելու:

5.- Այս գլխի սկզբում դիտեցինք, որ քաղաքակիրթ վայելչագիտութիւնը տարածւում էր նաեւ անձի արտաքին պճնութեան, տան ու կարասիների վրայ: Տեսանք արդէն անձի զարդարումն ընկերութեան մէջ մտնելու ժամանակ[4], ինչպէս նաեւ Նարեկացի՝ քերթողի, նկարագրածի վրայ[5], որի օրիորդը, մատաղ տարիքից փոյթ էր դարձնում[6]: Նա տիկին է արդէն, ծանրաբեռնւած ամուսնութեան ու մայրութեան հոգսերով, սակայն եւ այնպէս դրանց եւ իր առաքինութեան հետ եւս գիտէ հաչտեցնել անձի արտաքին պերճանքը, որ իր ատիճանն իսկ պահանջում է իրենից եւ ինքը հետեւում է ընկերական պատշաճութեան: Այսպէս Սասնոյ տիկնոջ՝ Մելքութու, մասին պատմիչը գրում է, թէ «զարդարւած էր ոչ միայն ոսկեթելով հիւսւած հիւսքերով, ընդելուզւած մարգարիտներով եւ պատւական ակերով, կամ ոսկեհուռ հանդերձով, որը հպարտացնում է թագաւորազն կանանց միտքը», ինչպէս ինքն էր[7], եւ դրանց հետ ստացել էր առաքինութիւնների մի չարք էլ[8]:

Կանխեցինք տեսանք նաեւ մեր տիկինների պալատների արտաքին ու ներքին եւ կահոյքի անպակաս չքեղութիւնը[9]: Այժմ մեր տեղեկութիւնները լրացնելու համար հայ տիկնոջ վայելչագիտութեան մասին, մեզ մնում է այն նկատել ընկերական կարեւոր մի պարագայի մէջ, այն է իր ընդունելութեան պահին: - Այստեղ մեր գործը Դ - Ե դարերի տիկնոջ հետ է, աւելի ազատ եւ ուչագրաւ իր հնութեամբ եւ ինքնատպութեամբ քան իր ապագայ կիլիկեցի քոյրը[10]: - Իր տան եւ անձի անբաժան պերճութիւնն ազնւական դասի

1. Խոր. Բ, կգ: — 2. Աստ՝ 50: — 3. Փաւս. 122: — 4. Աստ՝ 17, 117: — 5. Աստ՝ 134: — 6. Աստ՝ 11: — 7. Աստ՝ 121: — 8. Հյպ. 393: — 9. Աստ՝ 13-14, 15-16: — 10. Աստ՝ 118:

առջեւ ամբողջական ցուցադրելու ժամն է այդ, իր փառքի ժամը: Դառնանք ուրեմն նրա **տաճարը,** նրա կոչւած հանդիսասրահը, որի դռնից միայն մի անգամ նայեցինք[1], բայց ներս չմտանք զննելու, որտեղ շատ կարեւոր բաներ կան տեսնելու:

Նախ եւ յառաջ հրապուրում է մեզ այդ դահլիճի տեսարանը, որ պալատի ընդարձակագոյն ու գեղեցկագոյն վայրն է[2]: Բայց ո՞վ պիտի ոտքի կանգնեցնի փշրւած աւերակներից Եղիշէի տիկինների պանծալի տաճարներն[3] ու մեր աչքի առջեւ բացի: Մենք ստիպւած ենք բաւականանալ պատմութեան թողած մի քանի օրինակներով: Այդպիսին է Գագիկ Արծրունու կառուցածն Աղթամարի մէջ: Քառանկիւն մի շէնք, երկարութիւնն, լայնութիւնն ու բարձրութիւնը քառասուն կանգուն: Ներքուստ անսիւն, գմբէթաւոր եւ շուրջանակի կամարակից խորաններ կամ խորշեր, որոնց վրայ նստում էին մի-մի ոսկեզարդ լուսաճաճանչ գմբէթներ: Որմերը ծածկւած էին խրախճանական եւ ըմբշական տեսարաններով եւ անասունների նկարներով: Ներսը կային «զանազան տեղերում գահոյքներ» հիւրերի համար եւ դռներ մանրաքանդակ ու երկբացիկ: Մի խօսքով «փառք տաճարին ահեղ իմն եւ զարմանալի» էր[4]: Այսպիսին լինելու է Անիի արքայական պալատի մէջ գտնւած մեծ սրահն էլ, որի «առաստաղն ու պատերն ոսկեզօծ ու նկարազարդ» էին, գաճեղէն ոսկեզօծ ծաղիկներով եւ նկարւած կենդանագրերով[5]:

Նոյն կամ նման մի բան էր, ուրեմն մեր հին տիկնոջ տաճարն էլ, որի մէջ իր ուրախութեան առթիւ, անսովոր գեղեցկութեամբ ու հարստութեամբ փայլում են նաեւ նրա յատուկ «սպասներ երախանաց[6]»: Այսինքն **սեղաններ**՝ քառակուսի կամ բոլորշի ձեւով, ծածկւած բեհեզեայ օթոցներով պաստառակալներով (Եփր. Դ.193), եւ իւրաքանչիւրի վրայ մի-մի **ծաղկակալ սկուտեղ** յարգի մետաղից, լի ծաղիկների փնջերով[7]: Նրանց շուրջ շարւած էին **բազմոցներ**՝ կամ **բարձրագահք,** ծածկւած **տապաստակներով** (գորգերով) կամ կերպասեայ պաստառներով, եւ նրանց վրայ ազնիւ **բարձեր**՝ նստելու համար: Խնկամանների վրայ այրում էին անուշահոտ նիւթեր, հեշտ բուրմունքներով լցնելով տաճարի օդը: Եւ որովհետեւ ընթրիք է եւ երեկոյ, այն լուսաւորում են իւղի կանթեղները, լապտերները կամ աշտանակները[8], կախւած առաստաղից կամ հաստատւած պատերի վրայ, եւ միջին դարում սրանց յաջորդում կամ միանում են նաեւ մոմերը[9]:

1. *Աստ*՝ 117: — 2. *Աստ*՝ 13, 14: — 3. *Աստ*՝ 22-23: — 4. *Արծ*. 331-32: — 5. ***Ազգ***. 1917. *ապր*. 13: — 6. *Եղշ*. 156: — 7. *Աստ*՝ 22: — 8. *Հմմտ*. ***Ճաշ***. 128-32: — 9. *Շպհ*. 41-42. ***Հյպ***. 420:

*Մեր ազնուական հիւրերն եկել եւ բազմել են արդէն սեղանների չուրջ, ցոյց տալով իրենց երկար, բայց հիւսուած ու գլխի չուրջ ամփոփուած մազերը, որոնց վրայ կապուած է **պատիւ վարսին** կամ թանկագին **վարսակալը**[1], իրենց ազնիւ **պատմուճանն**, որ մինչեւ ծնկներն իջնում է՝ լայնասրունք **վարտիքների** վրայ, իրենց հարուստ **կամարը** կամ գօտին, որից կախւում է իշխանական փայլուն **սուրն** ու **նրանը**[2]:*

*Առաջին սեղանին գլուխը պատուաւորագոյն հրաւիրեալների հետ նստած է հիւրընկալ տիկինը, հագած իր պայծառագոյն հանդերձն ու զարդերն, որոնք իրենց են գրաւում դիտող աչքերը: Նրա մարմինը ներքուստ պնդում է **պախճաւանդը** կամ երկար ու լայն մի երիզ, որ պատում եւ պատում է իրանը տալով նրա լանջին ամփոփ ու կարկառուն մի ձեւ: Ամբողջ հասակը ծածկում է կերպասի չքեղ **պատմուճանը**, կարուած ազգային եւ յաճախ յունական նրբարուեստ պաստառից[3], ոսկեհիւս գետնաքարչ քղանցքով. մերթ թեզանաւոր է եւ մերթ անթեզան, մերկ թողնելով բազուկները յունական ոճով: Սրա վրայ փողփողում է ծաղկանկար գեղեցիկ **մենթանը**, որ սքօղում է իրանը մինչեւ ծնկներն, իբրեւ կրկնակ կարճ մի պատմուճան: **Լանջագեղ կամարը** կամ գօտին, ասեղնագործ ու լայն, կապուած է սեղմօրէն կուրծքի կենտրոնը: Իսկ բուն **կամարը** կամ ականակուռ գօտին զսպում է նրբացած մէջքը, կախելով առաջակողմից զարդարուն ծոպեր: Եւ այսպէս ամբողջ իրանը հանդիսանում է «զսպուած պնդակազմ[4]» ձեւով: Իսկ զգեստի մասերն ունեն այլազան երանգներ՝ երկնագոյն, որդան կարմիր, նկարուած եւ կամ ոսկեթելով հիւսուած[5]:*

*Իր ծամերը հիւսուած են **փողոչուկ** կոչուած մարգարտայեռ մի լարով եւ պսակաձեւ ամփոփուած գլխի չուրջ: Կարող են նաեւ խոպոպների վերածուել արուեստի օգնութեամբ եւ կախուած թողնել եթէ յարմար են այդ կերպին: **Թաղն**, որ ցած եւ վերեւը տափարակ նրբարուեստ մի գդակ է, հանգչում է գլխի վրայ, բաց թողնելով վարսի պսակը եւ ամրացուած է ոսկեղէն ականազարդ **թաղհարներով** կամ մեծագլուխ գնդասեղներով: Ճակատի վրայ չողում է մարգարտազարդ **ապարօշը** կամ ժապաւէնը, որ հանգուցւում ու երկարում է գլխի ետեւում: Ականջներից կախւում են ոսկեղէն մարգարտեայ **գորշապահանգներ** կամ **գինդեր** ըստ հաճոյս. առաջիններն օղակաձեւ եւ վերջինները գնդաձեւ: Վզի չուրջ փայլում է մի **քառամանեակ**, կազմուած ոսկով, մարգարտով ու գոհարներով: Մերկ բազուկների վերեւում երեւում են մի մի **քօղէք** կամ*

---

1. *Աստ*՝ 131: — 2. *Ճաչ*. 150-52, 157-59: — 3. *Հմմտ*. ***Մոփ. Թ***, 32: — 4. *Ոսկ. Պօղ. Բ*, 554. *յն. չունի*: — 5. *Աստ*՝ 17:

տափարակ թանկագին անուրներ եւ դաստակների մօտ **ապարանջաններ**՝ այլազան ձեւերով եւ ոսկեղէն: Իսկ մատներին նոյնպիսի **մատանիներ** ու **կշտապանակներ**. առաջինները գլխով, որ այրերը կնքելու էին գործածում եւ միւսները զարդի համար: Վերջն՝ ոտքերը պճնում են ոսկեզօծ **կօշիկները**՝ ցած ու սրածայր:

Իսկ ինչ որ բնութիւնը զլացել կամ ժամանակը կողոպտել է նրա կերպարանքի վրայ, լրացնում է արուեստը, ծածկելով այտերը **անգոյրի** թեթեւ կարմրութեամբ, **ծարիրով** սեւացնում ու շեշտում էին յօնքերի խտութիւնը եւ ճակատին սպիտակ ներկելով եւ ողորկ դարձնելով: Միանգամայն անուշահոտութիւն է բուրում նրա անձից, շնորհիւ այրարատեան դաշտի «իւղաբեր սերմերի» ընձեռած հիւթերի[1], որոնցով օծուած տեսանք հայ տիկիններին[2]: Բոլոր այս տեղեկութիւններն աղբիւրներով եւ ընդարձակօրէն նշանակուած են Հայ տարազի պատմութեանս մէջ[3]:

Ասացի թէ Դ - Ե դարերի տիկինների նկարագիրն է այս: Հետագայում փոփոխում են հետզհետէ տարազը ըստ արտաքին ազդեցութիւնների, որին ենթարկուել են, բայց բոլոր ձեւերի մէջ էլ հայ տիկինը պահում է իր ճաշակի նրբութիւնը,- ինչպէս ցոյց եմ տուել յիշեալ աշխատութեանս մէջ, - եւ ցոյց է տալիս միշտ թէ անձի վրայ եւ թէ տան մէջ: Ու բոլոր բախտաւոր դարերը Շնորհալու հետ տեսան նրա պճնումը բեհեզով, մետաքսով եւ մանաւանդ «ոսկով եւ արծաթով» եւ «օտար դեղերով» երեսի վրայ[4]:

Մինչ մենք հրաւիրուածներն ենք զննում, նրանք արդէն սկսել են ընթրիքը: **Սեղանայարդարողները** բերում են նրանց առջեւ ազնիւ **պնակները** կամ «սուրբ **սկուտեղներ**[5]» կերակուրներով եւ մատուցանում են ոսկէ կամ արծաթէ **տարգալներ**՝ թանի համար, **պատառաքաղներ** ու **դանակներ**՝ որոնցով պիտի կտրեն ու ճաշակեն ուտեստները: Նրբութիւն եւ արուեստ մտնում են նաեւ կերակուրների մէջ[6], որը **խոհակերք** ու **ծաղարարք** են պատրաստում **խոհակերոցի** մէջ, **շտեմարանից** ու դրսից առնուած նիւթերով: Ուտելուն յաջորդում է գինարբունքը, որը **մատուակներն** են բերելու թանկագին **տաշտերը** դրւած **բամակակալ** կոչուած ափսէների վրայ, որոնք հետզհետէ լցւելու են **մառանից** հանուած անապակ գինիներով: Այս բոլորի նկարագրութեանը նւիրել եմ առանձին մի հատոր[7]: Արդեօք տիկինների կազմակերպած խնճոյքի մէջ էլ մտնելո՞ւ են գուսանութիւն եւ արբեցութիւն, սեփական արանց ճաշերին,

1. Փրպ. 23, 332: — 2. Աստ՝ 17: — 3. Պտմ. տրզ. 126-36: — 4. Շն. Նմկ. 207: — 5. Եղշ. 156: — 6. Աստ՝ 17: — 7. **Ճաշեր** եւն:

որոնցից շատ հեռու էր մեր փնտռած վայելչութիւնը: Անստուգութեան մէջ լաւ է, որ կանխենք ելնելով տաճարից, միասին տանելով հաճելի տպաւորութիւնը միայն, որ ստացանք մեր այցելութիւնից:

6.- Այս արուեստական եւ աղմկալից պերճանքից անցնենք բնութեան ծոցն, որ իսկական աղբիւրն է գեղեցկութեան, համօրէն գոյացութիւններն իր բազմաբիւր զարդերով, ճառագայթումն արարչագործ իմաստութեան ու բարութեան, որը հրապուրում է զգայուն հոգիները, ազնւացնում ու բարձրացնում է նրանց ճաշակը: Եւ այնտեղ՝ բնութեան մէջ եւս, ներկայ ենք գտնւելու նրբացած հայ տիկնոջը, ծառերի եւ ջրերի ընկերութեան մէջ[1], ուր իր բաբախուն սիրտը խօսում է գոյնզգոյն գարնան, ճուողում է նորեկ ծիծեռնակի հետ[2]: Իր տան մօտ, իր պատշգամբի առջեւ գտնւում է նրա «բուրաստան ծաղկոցն» էլ[3], որ բազմազան գոյներով դիւթում է նրա աչքերը, անուշ բոյրերով գգւում է նրա հոտոտելիքը, զւարթացնում է հոգին, զարդարում է նրա սեղանները: Բայց այդ ծաղկոցն ունի աւելի նուրբ ու բարձր պաշտօն էլ. նրա միտքը փոխադրում է դէպի մօտաւոր կամ հեռաւոր անցեալը, այն մեծ օրն ու նւիրական սեղանի առջեւ, ուր իր եւ ընտրեալ կենակցի գլուխները միասին պսակւեցին նոյն ծաղիկներից բոլորւած պսակներով[4], եւ արտասանեցին իրենց ցմահ նւիրման ու հաւատարմութեան ուխտը: Եւ այդ յիշատակը, ծաղիկների այդ գողտրիկ լեզուն, աւելի մօտ եւ յուզիչ է նրա սրտին, կեանքի ինչ-ինչ պարագայի մէջ: Այսպէս իր անմահացնող տիկիններին, տխուր եւ դառն երգում է Եղիշէն, «գարնանային ծաղիկները յիշատակեցին նրանց պսակասէր ամուսիններին[5]», որոնք հեծում էին Ապարի խաւար բանտերի մէջ, յիշեցնում ու մորմոքում էին նրանց:

Այդ ծաղկոցները շարունակելու են միշտ վայելել հայ ազնւական դասի մտերմութիւնը, եւ Գագիկ Արծրունին իր կառուցածների բոլոր չքեղութիւնների հետ[6] չպիտի մոռանայ աւելացնել առաւօրէն ամենից հաճելին, «պարտէզները բուրաստանների եւ ծաղկանոցների[7]», որոնց մեծագոյն բարեկամն ու այցելուն, անկասկած, լինելու է Ապուհամզայի նազելի դուստրը[8]:

7.- Վայելչի ծանօթութիւնն համեմատական է եղել միշտ, ասացինք, զարգացման հետ: Հետեւաբար այն չպիտի կարողանանք գտնել հայ ռամիկի մօտ, այն չափով, որ տեսանք ազնւականների մէջ: Սակայն, վերջինիս օրինակը չէր կարող անտարբեր թողնել

---

1. Աստ՝ 25: — 2. Աստ՝ 36: — 3. Աստ՝ 22: — 4. Աստ՝ 73: — 5. Եղչ. 157: — 6. Աստ՝ 13: — 7. Արծ. 331: — 8. Աստ՝ 63:

*առաջինը, մանաւանդ քաղաքացի դասը: Եւ մենք զանազան տեղեր առիթ ունեցանք պատահելու կամ ակնարկելու գեղեցկագիտական որոշ նշանների նաեւ ժողովրդի մօտ: Այսպէս տեսանք Փաւստոսի զարդարուն երիտասարդը, եւ գուշակեցինք նրա կնոջ պայմանն էլ*[1]*: Հանդիպեցինք խնամքոտ զարդարման Նարեկացու նկարագրած կաքաւչին*[2]*, որ նոյնպէս տոհմիկ չէր: Նմանապէս մեր ազնուական դասի զաւակների դաստիարակները, սոսկական մարդիկ*[3]*, չէին կարող վարել իրենց պաշտօնը, եթէ վայելչագիտական զարգացումից զուրկ անձեր լինէին: Վերջապէս հայ ազգի ընդհանուր քաղաքակրթութիւնն իսկ ներշնչում էր նրա գեղեցկի գաղափարը. բացի չինական վշտալի դասը*[4]*, որ ամէն ժամանակ եւ ամէն տեղ անկարող է եղել զուգընթաց գնալ քաղաքակրթական նրբութիւնների հետ:*

## ԳԼՈՒԽ Է

### *Եկեղեցու մէջ*

*Ի՞նչ դեր ունեցաւ հայ կինն ազգի կրօնական կենցաղի մէջ. ի՞նչ կերպով վարուեց նրա հետ կամ նրա հանդէպ հայ եկեղեցին. ի՞նչ չափով մեծարեց, ընդհանրապէս, նրա սեռն ու յարգեց նրա վիճակը. որքա՞ն սապարէզ տուեց նրա աղօթատանը, հոգեւոր պաշտամունքի կամ ընկերական գործերի մէջ: Հարցեր են, որ արժում են քննել, յատկապէս, որովհետեւ դրանց մէջ տեսնելու է հին հայ կղերի հոգեբանութիւնն էլ, եւ հայուհուն վիճակած կրօնաընկերային դիրքը, որը կարեւոր է մեր ուսումնասիրութեան համար:*

1.- *Դեռ բուն նիւթի մէջ չմտած, անհրաժեշտ եմ համարում, հայ անցեալի մասին քաղաքական մի տեսութիւն, որից կախուած է մեր հարցումների լուծումն էլ: Մի տեսութիւն, որ իմս է, բայց որ լինելու է նաեւ ամէն զարգացեալ եւ ողջամիտ ազգայինների:*

*Չորրորդ դարի սեմից կամ քրիստոնէութեան սկզբից, ուր սկսում է եկեղեցու դերն կնոջ հանդէպ, Հայաստանի մէջ իրար դէմ պայքարի մտան երկու քաղաքականութիւն եւ երկու աղդեցութիւն, յունականն ու պարսկականը: Առաջինն յունականն էր եւ արդէն շատ հին, եւ արդիւնքն էր ազգախօսական ու լեզւաբանական վաղեմի յայտնի կցորդութեան երկու ցեղերի միջեւ, որով մեր ազգը վաղուց հակւեց*

1. *Աստ՝* 25: — 2. *Աստ՝* 134: — 3. *Աստ՝* 90-91: — 4. *Աստ՝* 24:

հելլէն նրբագոյն քաղաքակրթութեանը: Տիգրանեանք իրենց նախորդների պէս յունարէն դրոշմեցին իրենց դրամները, մերթ նրանց վրայ աւելացնելով «հելլենասէր» մակդիրն էլ[1]. նոյն լեզուով մատենագրեց Արտաւազդը[2]: Յունական տառերով փորձած էր երբեմն գրել մեր լեզուն էլ եւ վերջնականապէս նրանք եղան մեր այբուբենը[3*]: Քրիստոնէութիւնն աւելի ամրացրեց այդ կապը, եւ մեր Արշակունիք՝ սկսած Տրդատից, որ նրանց մօտ կրթուեց[4], եւ իշխանական տներից շատերը ընդհանրապէս թեքուել էին դէպի յոյն կայսրութիւնը, որին եւ ապաւինեցին ի հարկին:

Մեր առաջին Աւետարանիչներն**, որ Լուսաւորիչն է եւ իր սերունդն՝ Արիստակէսը, Վրթանէսը, Ներսէսն ու Սահակը գնացին յունական դաստիարակութիւնն ստացան[5], վերադարձան եւ նոյն մտքով խորհեցին, զգացին եւ առաջնորդեցին մեր ազգին, եւ հայ այբուբենի գոյութիւն չունենալու պատճառով, յունարէնը մեր ծիսական լեզուն դարձրին[6]: Նոյն մեծ առաջնորդների քաղաքականութեան ժառանգորդներն եղան եւ մեր Ս. Թարգմանչները. Մեսրոպը՝ «սնուել եւ ուսանել է մեծն Ներսէսի մօտ[7]», եւ իր աշակերտների զոյգ դասերը մինչեւ Գիւտն ու Փարպեցին, որ պարծենալով պատմում են իրենց կրթական ուղեւորութիւնը Յունաստանի կողմերն, ստացած ուսումը, այնտեղ թողած ծանօթներն եւ ուսումնակիցները, յունարէն մատեանները իրենց մօտ պահելն եւ նրանց միջոցով սնուելը[8]: Նրանք հայ աշխարհի դռներն էլ լայնօրէն բացեցին յոյն մտքի ու քաղաքակրթական նրբութիւնների առջեւ, նրանց եկեղեցական հսկայ հանճարների հայացմամբ. եւ Ս. Գիրքն էլ նորից թարգմանեցին յունարէնից, կորստի դատապարտելով ասորականից կատարուած թարգմանութիւնը: Իրենց հագած եկեղեցական տարազն անգամ յոյներից վերցրին դեռ 471 թւին, ուր վկայում էր այդ Գիւտը[9]: Հայի ճշմարիտ **ուղեգարն** էր այդ, **հելլենահայ դարը**:

Տեսնւում է եւ փաստելու հարկ չկայ, որ այդ սերտ հաղորդակցութիւնը Յունաստանի հետ առաւելապէս մեր ազգի կողմից էր: Բիւզանդիոնն ամբողջ Դ դարում տիրապետական նպատակներ ցոյց չտուեց երբեք արեւելեան կամ մեծ Հայաստանի վրայ, թէպէտ աւանդաբար փոքրը գրաւել էր: Իր շահն իսկ պահանջում էր ազատ Հայաստան

1. **Հյկ. դրմ.** 34-41: — 2. Պլտ. Դ, 138: — 3. **Ուգգ.** 55-60: — 4. Ագթ. 62, 643: — 5. Նոյն՝ 42, 641. Փաւս. 68. Փրպ. 42: — 6. **Խոր.** Գ, լզ: — 7. Նոյն՝ Գ, խէ: — 8. Կոր. 21. **Խոր.** Գ, կբ. Փրպ. 345, 570, 592: — 9. Փրպ. 345:

* Սոյն կարծիքը հեղինակինն է: Ընդհանրացած եւ ընդունուած տեսակէտը այլ է:

** Հեղինակը այստեղ թիւրիմացութեան մէջ է: Մեր առաջին լուսաւորիչները եղել են Ս. Թադէոս եւ Ս. Բարթուղիմէոս առաքեալները:

*իբրեւ բաժանարար երկու մրցակից կայսրութիւնների մէջ: Եւ ամէն անգամ, որ անցաւ Եփրատից, մեր ազգի հրաւէրով ու պաշտպանութեան համար եկաւ. մերոնցից վկայ՝ Ագաթանգեղոսն ու Փաւստոսը, եւ յոյներից Եւսեբիոսն, որ գրում է, թէ Հայքն «սկզբից բարեկամ ու մարտակից էին Հռոմին*[1]*»: Պարսկաստանը չորս անգամ տապալեց Հայոց գահն սպանելով Ա Խոսրովին, դաւադիր գերութեամբ նախ Տիրանի, ապա Արշակի եւ վերջը տապալելով Արտաշէսին: Իսկ Բիւզանդիան իր բանակով եկաւ երեք անգամ կանգնեց*[2]* բացի վերջինից՝ որ հայ աւագանին կամակից էր պարսիկին եւ չհրաւիրեց կայսրին: Եւ յօժարութեամբ թոյլ տուեց թարգմանիչների նորագիւտ հայ նշանագրերն ուսուցանել նաեւ յունական Հայաստանի մէջ*[3]* *պահպանութեան համար այնտեղի հայութեան եւս: Իրենց միակ աննպաստ գործը Պապի սպանութիւնն եղաւ իրենց դաւելու համար*[4]* *որոնց շնորհիւ ստացել էր հայրենի գահը:*

*Այդ քաղաքականութեան դէմ կանգնած էր պարսկականը, որ չէր հանդուրժում Հայոց ինքնօրինութիւնն ու բարեկամութիւնը յոյների հետ, մինչ միւս բոլոր արեւելքցիներն իր ստրուկն էին: Թւեցինք այդ ազատութիւնը կապտելու փորձերը, որ վերջ ի վերջոյ յաջողեցին: Եւ որպէսզի սրտերի կապն էլ խզէին նոյն քրիստոնեայ ազգի հետ*[5]* *նախ Շապուհն եւ ապա Յազկերտը ձեռնարկեցին ջնջել մեր աշխարհից Աւետարանի կրօնը, թէպէտ չյաջողեցին: Բայց առաջինը Մեհրուժանի ձեռքով յաջողեց վտարել Հայաստանից յունարէն լեզուն ու գրքերը եւ նրանց տեղ, իր հպատակ ասորիների գիրն ու բարբառն դրեց եկեղեցու եւ կեանքի մէջ*[6]*: Վռամը շարունակեց եւ ընդարձակեց այդ հնարագիտութիւնը, կապտելով հայրապետական աթոռն յոյն քաղաքականութեան ռահվիրայ Գրիգորեան տան վերջին սերնդի՝ Սահակի ձեռքից եւ տալով նախ Սուրմակին եւ ապա յաջորդաբար երկու եղծւած ասորիներին*[7]* *այդպէս իրեն սեփական դարձնելով հայրապետական ընտրութիւնն էլ, որ Բիւզանդիան չմտածեց անգամ: Պերոզը մերժեց աթոռից Գիւտին, որովհետեւ «ծառայ մարդիկ» - ինչպէս մեր ազգն էր - այն տուել էին նրան*[8]* *եւ մեղադրելով նրա կապը հռոմէացիների հետ*[9]*: Ի վերջոյ Տիզբոնը նորից առաջ քաշեց իրեն հաւատարիմ եւ յոյներին հակառակորդ խորամանկ ասորիներին, որոնք չահագործելով քաղկեդոնի հարցը, կաշկանդեցին, ծռեցին եւ մոլորեցրին մեր առաջնորդների մէկ մասի մտքերը նրա նկատմամբ (կամ յունական) վարդապետութեան, որ յառաջագոյն ընդունելի էր Հայոց եւ 590-ի ժողովով եւ Մովսէս*

---

1. *Պատմ. եկ. Թ*, *ը*: — 2. *Ագթ*. 39, 48-49. *Փաւս*. 52, 57, 164, 185: — 3. *Խոր. Գ*, *ծէ*, *ծը*: — 4. *Փաւս*. 231-33: — 5. *Եղշ*. 9. *Փրպ*. 119: — 6. *Խոր. Գ*, *ծդ*: — 7. *Նոյն՝ Գ*, *կդ*, *կե*. *Փրպ*. 70-74: — 8. *Փրպ*. 346: — 9. *Նոյն՝* 342:

կաթողիկոսի գործակցութեամբ առաջ բերեցին եկեղեցական խզումն էլ հռոմէացիների հետ, ինչպէս վկայում են մեր հին յիշատակարաններր[1], եւ մի ժամանակակից՝ Յոհան Երուսաղէմացին, ասելով թէ «հայերն ասորեցիներին խաբեցին[2]», մինչեւիսկ առանց բնագիրը տեսնելու իրենց դատապարտած վարդապետութեանը, որ եթէ կարդային, իրենց դաւանութեան հաւասար պիտի գտնէին: Այս պատճառով էլ հայ կղերի ստւարագոյն մասն սկզբից չմիացաւ բաժանողների հետ եւ իրենց առանձին կաթողիկոս ընտրեցին Յոհանին[3]: Բայց այդ բաժանումը պարսկական Հայաստանի վերջնական յաղթանակն էր պարսիկ պայքարի եւ հիմնւեյն ասորական ազդեցութեանը Հայաստանի մէջ, պարսկական ճնշման ներքոյ, սահմանւած յարատեւելու նաեւ պարսիկներից յետոյ:

Պարսկական եւ ասորական քաղաքականութեան այդ ծառայութիւնը, որին անգիտակցաբար ենթարկւեց Հայաստանը, կայսերական իշխանութիւնից ու հելլենացման մտացածին վտանգից ազատութիւն է համարւում պատմութիւնից անտեղեակ պատմագէտների կողմից: Որքան սխալ: Բիւզանդիոնի լայնախոհ եւ ազնւական ընթացքը տեսանք. հայրապետական ձեռնադրութիւնը Կեսարիայից արդէն վերջացած էր Ս. Ներսէսից յետոյ[4], իսկ վարչական ազատութիւնն երբեք չէր պակսել հայ եկեղեցուն, պահելով հանդերձ սերտ միութիւնն Յունաստանի հետ: Ի՞նչ չահ բերեց մեզ հերձւածը: Վառեց հակայոյն ատելութեան անշէջ խարոյկն Հայաստանի մէջ, որի համար այնպիսի մեծ ազգ ու մեզ բարերար մի տէրութիւն չնորհակալ չէր լինելու անշուշտ եւ տուժողը մենք եղանք, լքւած նրանցից հետագայ հեթանոսական բռնութիւնների ձեռքում: Եւ ինչ որ մեր նիւթի հետ կապ ունի, ասորական ծանր մտայնութիւնը, որ այժմ պիտի տեսնենք, դարերով կաչկանդեց ու տանջեց հայ ուղեղն ու խիղճը, մինչեւ որ Պահլաւունեաց տունն ու Կիլիկիան նորից մօտեցան, այս անգամ արեւմտեան – յոյների հետ անյաջող փորձերից յետոյ - եկեղեցական, քաղաքական ու խնամիական կապերով, եւ նորից բացեցին Դ-Ե դարերի մտաւոր ընդարձակ հորիզոնն հայութեան առջեւ:

2.- Մեզ այս տեսութեան բերեցին հայուհու կրօնական կեանքի մէջ յայտնւած հակասութիւններն ու մթութիւններն, որն արդիւնքն է մեր մատնանշած յոյն եւ ասորի դիմամարտ ազդեցութեան, որոնք այժմ չատ հեչտութեամբ բացատրւելու է: Նախկին յունական ազդեցութեան ներքեւ, ուր փայլեցին մեր եկեղեցական մեծագոյն մտքերն էլ, հայ եկեղեցին չատ ազատօրէն էր նայում կանանց սեռին ու մեծարում էր նրանց, ըմբռնելով առաքեալների հետ թէ Աւետարանի առջեւ «արուի եւ էգի խտրութիւն չկայ[5]»: Այդ ուղղութեան լաւագոյն ապացոյցը գտնում ենք նոյն չրջանի մեր սրբոց

1. Կաթ. խնդ. 352-93: — 2. Առ Աբ. 9: — 3. Սեբ. 87: — 4. Փաւս. 226, 263 եւն: — 5. Գաղ. Գ, 27:

ցուցակի մէջ, ուր հաւասար կերպով փայլում են աստուածանւէր արանց ու կանանց անունները: Այնտեղ **Սանդուխտը** կայ, որ Հայոց Սանատրուկ թագաւորի դուստրն է եւ հաւատի մարտիրոս, որի վկայաբանութիւնը չարադրուած է Դ դարի երրորդ քառորդին[1]: **Գայիանէն, Հռիփսիմէն** եւ ընկերները, համարուած օտար նահատակներ Հայաստանի մէջ, որոնց գերեզմանի վրայ Լուսաւորիչը կանգնեցնում է երեք վկայարան եւ նրանք հանդիսապէս մեծարւում էին «հայրապետների եւ թագաւորների» միջոցով[2]: **Աշխէնն** ու **Խոսրովիդուխտը,** նշանաւոր բարեպաշտներ, որոնց յիշատակի հնութիւնը գուշակում ենք Տրդատի տօնախմբութիւնից, որ Դ դարից է[3], եւ որի հետ խառնել է նրանց տօնացոյցը: **Շուշանիկը՝** Վարդանի դուստրը եւ խոստովանողն, որ ամէն տարի «մեծ տօն էին կատարում» ըստ ժամանակակից պատմիչին[4]:

Այսպէս էր մեծարում հայ եկեղեցին իր այդ պայծառագոյն շրջանի Յիսուսի հաւատքի հաւատարիմ բարեպաշտուհիների յիշատակը: Եւ ի նշան այդ զգացումներին, հայերը նրանց ընծայում էին իրենց թագուհիների եւ իշխանուհիների յատուկ[5] մեծամեծար **տիկին** տիտղոսն էլ, թէպէտեւ օրիորդներ լինէին, ցոյց տալու համար նրանց ընկերական բարձր կարեւորութիւնը, օրինակ «սուրբ **տիկինների**» Գայիանէի եւ Հռիփսիմէի[6]. «սուրբ **տիկինն** Թեղկ[7]». «սուրբ **տիկնոջն** Սանդուխտի[8]», չորսն էլ կոյսեր:

Իսկ ասորական մտայնութիւնն, որ յաջորդեց՝ նեղ ու նանրահաւատ, եւ տոգորուած իրենց դրացի մովսիսական կրօնից խտրական գաղափարներով, որոնց հրաժեշտ էր տուել առաքելական եկեղեցին, յեղաշրջեց հայ կղերի տեսութիւնը կանանց սեռի նկատմամբ, եւ սկսեցին մռայլ նայել նրան: Այդ նորաստեղծ պայմանին միայն կարելի է վերագրել նախ այն պարագան, որ հետագայ հայ մարտիրոսուհիները, որ թւելու ենք մեր ԺԶ գլխի մէջ, ոչ մէկի յիշատակը չեղաւ Ս. Սեղանի առջեւ: Հայ ազգը նոյն էր ինչ որ Դ-Ե դարերի եւ իր հին սրբերին խառնեց յետոյ նորերն էլ: Վահան Գողթանցին, Սահակ ու Համազասպ Արծրունիները, Գր. Նարեկացին, Ն. Շնորհալին, իսկ դրանց հետ ոչ մի նոր սրբուհի, ապա յայտնի է դրա մէջ կատարուած մտային փոփոխութիւնը:

Այս վիճակը չարունակւեց մինչեւ ԺԱ դարը, որում Գրիգոր Վկայասէրն, որդին հելլենագէտ ու հելլենասէր մի հօր[9] եւ ինքն էլ սնած էր «Աթէնքի յատուկ կրթութեամբ» ծնողների վկայութեան համաձայն[10], զգեստաւորւեց - եւ յաջորդներին էլ աւանդեց իր գրաւած աթոռի հիմնադրողների «Աթէնքի յատուկ» հոգին: Եւ ձեռնարկեց բազմացնել

---

1. *Սոփ. Ը*, 9: -- 2. *Ագթ.* 577. *Փաւս.* 36-37: 3. *Փաւս.* 36: — 4. *Սոփ. Թ*, 46-47: — 5. *Աստ՝* 119:
6. *Ագթ.* 163: — 7. *Փաւս.* 101: — 8. ***Սոփ.*** 46: — 9. *Աստ՝* 60: – 10. *Մգ. Թղթ.* 235:

Հաւատքի նահատակների տօները, հայ եկեղեցու դռները բացեց նաեւ բազմաթիւ օտար սրբուհիների համար, որոնք արդէն տօնւում էր յոյների մօտ: Դժբախտաբար հայ վկայուհիներն եւս, որ եղան սկսած Է դարից, չունեցան իրենց օրերում կամ յետոյ իրենց վկայասէրը եւ թաղւած մնացին ու մնում են դեռ մոռացութեան շիրմի մէջ: Գրիգորի համար հեշտ եղաւ յոյն տօնացոյցից վերցնել պատրաստ անունները, բայց չհամարձակւեց նրանց մէջ խառնել նախկին հայ սրբուհիները, որոնք ժամանակին չէին մտել կամ պահւած էին հայ տօնացուցակի մէջ եւ որ փակ մնաց նաեւ հետագայ սրբուհիների առջեւ:

3.- Ասորական ազդեցութեան վերագրեցի հայուհու այդ արհամարհանքը, որին աւելի ցայտուն փաստեր էլ ընծայում է մեզ պատմութիւնը: Տարօնի Գլակի վանքի բնակիչներն ասորիներն էին մինչեւ Է դարը[1]: Այնտեղ էր, ինչպէս մինչեւ այսօր, Ս. Կարապետի հռչակաւոր վկայարանը, ուր ասորիներն իրենք արգելել էին կանանց մուտքը, թէպէտեւ հասարակաց ուխտատեղի էր եւ մի առասպել էր կերտւած, թէ Լուսաւորիչը մի պղնձեայ տախտակի վրայ գրել ու դրել էր բեմի վրայ՝ թէ «Ոչ մի կին իրաւունք ունի եկեղեցու դռնից ներս մտնել, որովհետեւ կոխելով պատւական նշխարներն, անհաշտ խռովութիւն կը լինի Աստծոյ ընդ նրանց, որ մտնեն եւ ակնարկեն ընդ նա իսկ[2]»: Արանց ոտքերն ու աչքերն այդ խանգարումը չէին պատճառելու, այլ միայն կանանցը: Թերեւս այդ տախտակը կար, բայց ոչ Գրիգորի կողմից: Ամէն անտեղի գաղափար կամ սովորութիւն, որ ժամանակը ստեղծում էր, մեր առաքեալի վզից էին կախում, թէպէտ հաշտ չլինէր երբեք նրա դաստիարակութեան կամ ժամանակի հետ: Եկաւ Թոթիկը, Գլակի առաջին հայ վանահայրը, որ ասորի տարրը վտարեց ու հայացրեց նոյն ուխտը[3], բայց պահելով այնտեղ հաստատւած ասորի սնապաշտական կարգերը:

Մի օր այնտեղ ուխտաւոր տեսանք Արծրունեաց տիկնոջը՝ *Մարիամին*[4], իր մանուկի հետ միասին: Դառնանք ականատես լինել մի անսովոր տեսարանի էլ: Բարեպաշտուհին հասել էր սրբավայրի դռան առջեւ, աղաչում, պաղատում էր թոյլ տալ իրեն՝ ներսը սրբի գերեզմանին գնալու, բայց չլսեցին: Խնկեր ու գանձեր տւեց, խնդրանքը վանահօրը յղեց, որը պատասխանեց թէ «յառաջնոցն», այսինքն ասորիներից դրւած այդ օրէնքը չէր կարող լուծել: Իշխանուհին իմաստուն եւ համոզիչ լեզու թափեց, ասելով թէ Կարապետը, եւ նոյն ինքն Յիսուսը, առաքեալներն ու մարգարէները եւս մի՞թէ կանանցից չծնւեցին: Եւ ի պատասխան նրանց յամառութեան՝ «Ես մտնո՛ւմ եմ», ասաց ու ներս անցաւ: Գնաց, եռանդագին աղօթեց սեղանի առջեւ:

---

1. *Մամ*. 59: — 2. *Ջեն*. 33: — 3. *Մամ*. 59: — 4. *Աստ*՝ 118:

*Երբ դուրս եկաւ, եկեղեցու պաշտօնեաները զայրացած, ուխտաւորների սովորական ճաշը նրա համար չէին պատրաստել: Այն ժամանակ ինքը ճաշ պատրաստել տուեց ծառաներին եւ բոլոր վանականներին հրաւիրեց: Բայց անողոք եկեղեցու վերակացուն չմարսեց տիկնոջ յանդգնութիւնը, գնաց տաճար եւ հայցեց երկնային վրէժխնդրութիւնը նրա վրայ: Մարիամը հազիւ դուրս եկաւ ու սկսեց բարձրանալ մօտակայ զառիվերը, տեսաւ «մի գիսաւոր այր», որ եկեղեցուց չտապում էր սուրը ձեռքին. հասաւ խոցոտեց եւ արիւնաթաթաւ գետին տապալեց բարեպաշտուհուն: Պատմիչը չի համարձակւում վկայել եւ ոչ մենք կարող ենք հաւատալ, թէ այդ ոճրագործն Եղիսաբէթի մեծ որդին էր, նեղմիտ գլակացիների հաճոյակատար լինելու համար: Կարծեմ թէ Թոթիկ վանահայրն էլ չհաւատաց, որովհետեւ եկաւ եւ բարկացաւ եկեղեցու վերակացուի վրայ, տրտմեց, լացեց ժամերով, ապա տիկնոջը թաղեց եւ վրան մի խաչ տնկեց, ցոյց տուած վշտի հետ անմիաբան ու կասկածելի արձանագրութեամբ. – չմոռանանք, որ տեղեկատուն Տարօնի առասպելասէր պատմիչն է.- «Երբ յանդգնես մարտնչել Աստծոյ եկեղեցու դէմ, այս սուրն լինելու է նրա մէջ»[1], որով բնականապէս արդարացնում էր եկեղեցու վերակացուի եղեռնը:*

*Գրուածներից սպանութիւնը հաւանական է, երբ տիկնոջ անունը կայ եւ պատմիչին, ինչպէս ընթերցողներին, ժամանակով մօտ, իսկ կանանց ներս մտնելու արգելքն ապահով է, որ ընդօրինակեցին Սիւնիքն էլ, ասում է իրենց պատմիչը, Շաղատայի եկեղեցու մէջ, դրուած մենաստանի հրաշագործ հօր՝ Տիրոսի կողմից, որ տեւել է մինչեւ* 851 *թւականն, ուր իրենք եւս զգացել են անտեղի լինելը: Նոյնպէս Նորավանից անապատի Ս. Կարապետ եկեղեցու մօտ Յովհաննէս եպիսկոպոսը* 1105-*ին հիմնում է վանական մի եղբայրութիւն եւ ամբողջ վայրը պատով շրջապատում է, «որովհետեւ չպիտի անցնեն դրա մէջ կանայք եւ լկտի մարդիկ*[2]*», որոնք իրար հաւասար էին իրենց աչքին: Եթէ կանանց ներս մտնելն արգելւում էր, հասկանալի էր*[3]*, բայց անցնելու խափանումն աւորու հոտ ունի: Եւ այսպէս «ասորական տանջանքը», որից Ե դարի հայութիւնը գրերի գիւտով «ազատւեցին դէպի լոյս եւ ուրախացան*[4]*» շարունակում էր ուրիշ ձեւով չարչարել նրանց յարած հայ աշխարհի զաւակները:*

4.- *Կանանց դէմ սնապաշտութիւնը գնալով բազմացան – կամ մեզ է երեւում - դէպի միջին դար: Այսպէս տեսանք կաթնտւութեան արգելքն ոչ քրիստոնեայ մանկանց, որ յոյն ազդեցութեան շրջանի մէջ անծանօթ էր*[5]*: Մխ. Գօշն արգելում է կանանց նաեւ զինուոր դառնալը, հնձան հարկանելը, նստել շուկայի մէջ, առնական զգեստ հագնելը,*

1. *Մամ.* 9-11: — 2. *Օրբ.* 32, 254-55: — 3. *Հմմտ. աստ*՝ 128: — 4. *Փրպ.* 43: — 5. *Աստ*՝ 88:

դատաստան տեսնելն ու վկայ լինելը[1]: Գանձակեցին չի ներում «անդաստան կատարել», «հոլանել եւ հնձան հարկանել», եւ կամ «որս անել», այդ գործեր կատարողներին անէծքի եւ ապաշխարութեան է ենթարկում, եւ նրանց որսած անասունը, հրամայում է չանը գցել իբրեւ պիղծ, ընդունելի է համարւում միայն ձուկը[2]: **Վաստակոց գրոց** հայ թարգմանիչն ինքնակամ յաւելւածով պահանջում է նոյնպէս, որ կինը բնաւ հնձանին չմօտենայ եւ եթէ «անպատեհ վիճակի մէջ է», մառան էլ չպէտք է մտնի: Եթէ ոչ «գինին աւրւելու է», որին իր հոտն հասնի, եւ «որպէս ջուր է դառնալու[3]»: Բարսեղի անվաւեր կանոնները, որ հայի գործ են, հնձանի եւ որսի հետ արգելում են մորթելն էլ[4]: Դաշտանիկը հրէուհու դրւած սահմաններն էին[5], որ ընդարձակւել ու մշտնջենաւորւել են հայ կնոջ վրայ: Դրանցից հնձանի խտրութիւնը չկար յայտնապէս յունական աղդեցութեան շրջանում[6], որպէսզի համոզւենք թէ այդ ամէնն յետամուտ եւ նոյնպէս ասորամիտ գիւտեր էին: Եւ հիւանդութիւնների դէմ կիրարկւած պահարանների մէջ էլ, որ յիշեցինք[7], կայ ասորաձայն բառերի եւ անունների մի խառնուրդ[8]:

Յոհան Դամասկացու սուտ հայերի դէմ ամբաստանութիւնների մէջ յիշւում է, թէ չեն ներում կանանց՝ «պատրաստել պատարագի հացն, իբրեւ բոլորովին անսուրբ համարելով կանանց»: Այս վերջին գաղափարի դէմ օրինակներով է պայքարում եւ յարում է «դու ինչո՞ւ ես պիղծ համարում, ով փարիսեցի» եւն[9]: Իսկ Գանձակեցին մերժում է գործածել նրանց կոխած գինին եւս պատարագին իբրեւ անսուրբ: Այն, քահանայից ծածկող աշխարհականը «դատապարտւելու է Աստծուց, ասում է», եւ մի տարի ենթարկում է ապաշխարութեան, իսկ անգէտ քահանային ութ օր եկեղեցուց դուրս է դնում «մաքրութեան համար[10]»: Այս վարդապետի օրով եկեղեցականներ կային, որ որդեծնութեան կամ արիւնահոսութեան պատճառով վախճանւող կանանց գլանում էին յետին թօշակն անգամ, եւ որոնց պատւիրում է այսպիսիներին չզրկել, «որովհետեւ այս բնութեան գործ է, ասում է, եւ ոչ մեղքի կամ ցանկութեան[11]»: Եւ Տաթեւացու պէս հմուտ վարդապետը արգելում էր կանանց մատաղ մորթելը, «պիղծ է, ասելով, զոհը նրանց»: Պատճա՞ռը: «Որովհետեւ այրն կատարեալ է, **իսկ կինն կէս**», եւ այլ անիմաստ խօսքեր[12], որ դարերի նախապաշարումը թելադրում էր իրեն:

---

1. **Դատ.** 41: — 2. **Ալաւ. ՀԲ. Թ**: — 3. **Վստ.** 85-86, 93: — 4. **Կան. Ծժէ, ճզզ**: — 5. **Ղեւտ. ԺԵ**, 19-27: — 6. **Հմմտ. աստ**՝ 20: — 7. **Աստ**՝ 26: — 8. **Երզ.** 230: — 9. **Լոյս**, 1906, 811-12: — 10. **Ալաւ. ՂԷ**: 11. **Նոյն՝ ԻԷ. ՀԸ**: — 12. **Հրց.** 365:

*Ցիչեալ Գանձակեցին պատւիրում էր դաշտանիկ կնոջ, որ ինչքան մնում է նոյն վիճակի մէջ, ընաւ եկեղեցի չմտնի եւ չգնայ խաչն ու քահանայի աջը համբուրելու*[1]: *Հին էր այս արգելքն ու կար միւս եկեղեցիների մէջ եւս, եւ որն արեւելեան եկեղեցիներր այդ երկար պահեցին, մինչ արեւմտեաններր Զ դարից ու մեծն Գրիգոր պապի ուսուցումներով սկսեցին անտեսել ընդհանրապէս: Նոյնը տեսնում էր Մխիթար Ապարանեցին մեզ մօտ ԺԵ դարին՝ նաեւ յղի կանանց դէմ, որ քահանաներր, ասում է «եկեղեցին նրանց չէր թողնում» հաղորդւելու, որպէս թէ դրանով «ախտալից ոտքերով կոխելու» էր սրբավայրր եւ ս. խորհուրդը տալիս էին «եկեղեցու դռան մօտ եւ կամ ուր որ ծանրացած կինը» լինէր: Տեղեկատուն այնպէս էր մտածում թէ այդ քահանաներր «դեռեւս անգիտութեամբ եւ թերահաւատութեամբ հրեաների օրէնքների ներքոյ են*[2]»: *Նաեւ ծննդական կանանց արգելւած էր եկեղեցի մտնել մինչեւ մի ժամանակ թէ յարեւելս եւ թէ յարեւմուտս: Ծնունդից քառասուն օր յետոյ պիտի սրբավայրր գնային, սրբելու համար «մարմնի աղտը եւ հոգու բիծը», որպէսզի արժանի լինեն «մտնելու սուրբ տաճարը», ինչպէս գրում է մեր մաշտոցի աղօթքը, յունականի նմանութեամբ, եւ որ նոյնպէս հրէական ծագում ունի*[3]:

*Կային, որ բոլորովին մերժում էին կանանց ծառայութիւնն եկեղեցուն էլ: Դրանցից էր Մխիթար Այրիվանեցին, - անշուշտ իր ժամանակակիցներն եւս, - որ ի հաստատութիւն իր տեսութեան, ասում է, թէ* 1101 *թւականին ճրագալուցի օրն Երուսաղէմի լոյսը չէր վառւել, «որովհետեւ Փռանկն սպասաւորութիւնն կանանց էր տւել*[4]»: *Ընդհակառակ «Անկիւրի վանքի յիշատակագրի» մէջ մի հայ բարերար* 1475-*ին սահմանում է, որ իր նւիրած դրամագլխի եկամուտը տեղի եկեղեցու լուսարարին յատկացւի, «թէ կարգաւորողներին, թէ աշխարհականներին, թէ* ***հաւատաւոր կանանց,*** *ով որ լուսարար լինի», որոնց անխտիր պաշտօն էր տրւում: Այնտեղ յիշւում է նաեւ «**Ճլէլին** մաման, որ սպասաւոր է Սբ. Աստւածածնին*[5]»: *Եւ համոզւած եմ, թէ այդ կանանց վառած ճրագը վառւում էր ու երբեք չէր մարել մինչեւ չսպառւէր իւղը կամ պատրոյգը եւ այս տեսնելու էր Այրիվանեցին էլ եթէ ողջ լինէր:*

*Այսպէս մեր կղերի սնապաշտութիւնը նեղում ու հալածում էր հայուհու աստւածագործ բնութեան եւ բնախօսական անմեղ վիճակների համար, որ ըստ իրենց կարճ տեսութեան, նրան անսուրբ ու յանցաւոր էին անում, ահաբեկիչ դեւեր խառնելով նրա երակների մէջ էլ*[6]: *Եւ այդտեղ գրկւածը ռամկուհին էր քան զարգացած*

---

1. *Այաւ. ԿԸ*: *Հմմտ.* ***Զեւա. ԺԲ***, 4: — 2. *Ապր.* ***ԽԵ***, *լր*: — 3. ***Զեւա. ԺԲ***, 6: — 4. *Մխ.* ***ԺաՃԿ***: — 5. *Գրչ.* ***Թ***. 1103, 82, 75 ***Ս***. *Ղզր*: — 6. ***Աստ***՝ 81:

ազնուականք, որ աւելի ազատ էր մտածում քան իր քահանան, եւ գիտէր նաեւ ըմբոստանալ նրա դէմ Արծրունի տիկնոջ պէս: Դիտելի է, որ այդ եկեղեցականները բոլորն էլ պատկանում էին մեծ Հայաստանին, ուր ասորական հոգեբանութիւնը հաստատուած տեսանք: Կիլիկիայի կղերի գրուածքներում նոյն սնոտի վաւերացումը չենք գտնում: Այստեղ ինչպէս ասացինք իշխում էր արեւմտեան վերածնուած միտքը, որ կարողացաւ վերադարձնել հայուհուն իր ձերբազատութիւնը կրօնական կանխակալ կարծիքներից, մեծարել, խրախուսել, նրբացնել ու սրբացնել այն, եւ որի չքնաղ օրինակները սփռուած են ներկայ աշխատութեան մէջ:

Այդ նոր լայնամտութեան իբրեւ ցայտուն մի ապացոյց պիտի յիշեմ այն պարագան, որ մինչ Կիլիկիայում գաղափարուած զանազան պատարագամատոյցների մէջ յիշւում են մեր կենդանի եւ ննջեցեալ թագաւորները, նրանցից մէկը աւելի առաջ գնալով, խառնում է նոյն պսակաւորների հետ երկու նշանաւոր թագուհիներ էլ. «Աւելի եւս մեր հանգուցեալ թագաւորների համար՝ Հեթումի եւ Լեւոնեանների եւ նրանց թագուհիների **Զապէլի** եւ **Կեռանի** համար» եւն[1], որոնց անուններն անկասկած հնչեցին նոյն օրինակով կամ նրա հետեւողները գործածող հայ տաճարների կամարների ներքոյ: Եւ այդ նորոգուած քաղաքակրթութիւնը տարածւեց նաեւ Հայաստանի ազնուական դասի մէջ, որպէսզի կարողանանք վկայել թէ ասորական սուերներից զերծ մնացած հայ բարգաւաճած հոգին կարողացաւ, թէեւ ուշացած, վերստին սփռել իր ճառագայթները մեր ազգի ու պատմութեան մէջ եւ այնուհետեւ էլ գեղեցիկ ու առատ նիւթեր հայթայթել իմ այս աշխատութեան համար:

5.- Եկեղեցու նախկին դարերի սովորութիւնն էր, որ նորադարձ կանանց մկրտութեան ժամանակ սարկաւագուհիները ներկայ լինէին, մերկացնելու, զգեստաւորելու եւ առաջնորդելու համար նրանց: Մեզ մօտ Դ - Ե դարերում այդ պաշտօնեաներից յիշատակութիւն չկայ եւ սահակեան կանոնները գիտեն ու արգելում են սոսկական կանանց գործակցութիւնը, որ նրանց էին փոխարինում. «Կանայք, ասում են, մկրտութեան ժամանակ իրաւունք չունեն մերձ լինեն քահանային, ինչպէս սովորեցին ոմանք յանդգնաբար եւ նրանց մկրտել». միայն իրենց տեղում աղօթեն[2]: Այդ մասնակցութիւնը լաւագոյն կերպով ճշտում է Դուինի 645-ի ժողովը, կրկնելով ու մեկնելով նոյն կանոնը, թէ «սարկաւագներն **սպասաւորեն**». փոխանակ կանայք[3], այդ էր «մկրտելը նրանց»: Բայց այդ կանոնի ձայնը թոյլ մնաց, որով ԺԲ դարում Ալաւկայի որդին ստիպուած էր կրկնել թէ «մկրտութեան ժամանակ սուրբ աւազանից հեռու

---

1. ***Մխ*** 483: – 2. ***Սոփ.*** *Բ*, 91: -- 3. *Կան. ԺԵ*:

կանգնեն կանայք, ինչպէս սուրբ խորհրդի» պատարագի[1]: Այսպէս **կանայք** յիշւում են միշտ, ոչ սարկաւագուհիները:

Աւելին կար. Եզնիկն առաջ բերելով Եպիփանու մեղադրութիւնը Մարկիոնեանց դէմ, որ կանանց համարձակ մկրտել էին տալիս, յարում է թէ «որ ոչ ոք իրաւունք ունէր ուրիշների աղանդներին հետեւել[2]»: Եւ սակայն իրենից յետոյ մեզ մօտ էլ երեւում է այդ գեղծումը, ինչպէս վկայում է Դւինի յիշեալ ժողովը, թէ քահանայք «զանազան տեղերում» փոխանակ իրենք մկրտելու, ջուրը օրհնում էին ու տալիս էին երիտասարդ մայրերին, «հրամայելով նրանց տան մէջ մկրտել իրենց մանուկին», որ ժողովը խստիւ արգելեց[3]: Կիւրեղ Երուսաղէմացին եւ ուրիշները յիշում են մկրտելու այն ազատութիւնը, որ ամէն քրիստոնեայ ունէր առանց սեռի խտրութեան, բայց միայն կեանքի վտանգի դէպքում:

Կնքամայրութեան պաշտօնն էլ կար, որ Շնորհալին ընդունում եւ հաստատում է եւս արեւմտեան մտածումով, այսպէս գրելով. «Անհաւատ տղամարդկանց **կամ կանանց...** մի՛ որոշէք որպէս կնքահայր մանուկների մկրտութեանը[4]». ուրեմն հաւատացեալ կանանցից կարելի էր: Բայց դրա դէմ էլ քիչ յետոյ հակառակութիւն ծնւեց արեւելեան Հայաստանի մէջ, ուր տեսանք ասորական մտայնութեան չարունակութիւնը: Այսպէս Գանձակեցին գրում է. «Ո՛չ ոք կնքահայր չլինի ապաշխարողներին, **մանաւանդ կանայք**» այլ միայն սուրբ այրերից[5]: Նոյն արգելքը յետոյ կրկնեց Ջագի ժողովը[6], Յովհաննէս ու Մովսէս Երզնկացիք եւ Գր. Տաթեւացին, զրկելով հայուհուն նաեւ այս հոգեւոր մխիթարութիւնից:

6.- Յիշեցինք սարկաւագուհիները, որոնց ծագումն առաքեալների օրերին է հասնում, սահմանւած նրանց գործակցելու, կանանց հոգաբարձութեան ու մկրտութեան մէջ[7] եւ որոնք դարերով մնում են յոյն եւ արեւմտեան եկեղեցիներում: Եթէ մեզ մօտ նրանց չենք հանդիպում նախկին շրջանում, սակայն միջին դարում սկսում են երեւալ նաեւ մեր կրօնական մատենագրութեան մէջ: Հնագոյն մաշտոցը ԺԱ դարի, որ պահւում է Ս. Ղազարում, հաւատաւոր օրհնելու կանոնի մէջ ասում է, թէ «հոլանի **սարկաւագուհիներն** արասցեն»: Մի ուրիշի մէջ 1216-ից կայ յատուկ «ձեռնադրութիւն սարկաւագ կանանց, որ **սարկաւագուհիք** են»: Մի երրորդն էջմիածնի մէջ 1314-ից, գրւած Կիլիկիայում, ունի նոյնպէս կանոն «**սարկաւագուհի**

1. Ալաւ. ԻԲ: — 2. Եղբ. 296-97: — 3. Կան. Թ: — 4. Շն. Նմկ. 159: — 5. Ալաւ. ԻԲ: — 6. Կան. Բ: — 7. Ա Կոր. Թ, 5. Փիլ. Թ, 2-3 Հռ. ԺԶ, 1:

առնել»․ եւ չորրորդը՝ գրուած 1314-ին Տաթեւի մէջ․ բովանդակած կանոնների մէջ նշանակում է նաեւ «**սարկաւագուհիների**» կարգը[1]։

Այդ ծիսարանների հետ ձայնակցում են ուրիշ գրիչներ եւս։ Մխիթար Գօշը յիշում է ու բացատրում է նրանց պաշտօնն էլ «կանանց **սարկաւագուհիներ** ձեռնադրւում էին, որ քարոզեն կանանց (հաւատաւորներին), եւ Աւետարան կարդալու»․ որպէսզի այնտեղ այր պաշտօնեայ չմտնէր եւ նրանք վանքից ելնելու պէտք չունենային։ Նոյնպէս երբ քահանան չափահաս կին է մկրտում․ «գան **սարկաւագուհիներն** դէպի աւազանն եւ ջրով լուանան կանանց»․ քահանային վերապահելով օծումը վարագոյրի ներքոյ։ Զգացնել է տալիս թէ նորութիւն էր այդ կարգը․ եւ նրա դէմ հակառակողներ էլ կային․ որոնց պատասխանում է․ «Եւ մի՛ նոր ինչ կամ անկարգ համարեսջիք զայս․ ով սուրբ եղբայր․ այլ ի սուրբ առաքելոցն աւանդութենէ ուսանիմք[2]»։ Սմբատ գունդստապլը հետեւելով Գօշին այսպէս է գրում․ «Թէ հրամայիր քահանաներին․ նաեւ **սարկաւագուհիներին** ձեռնադրեն, որ նրանք կարողանան կանանց քարոզել եւ Աւետարան կարդալ… եւ կարողանան լուանալ տղաներին եւ կանանց քաւութեան ջրով»։ Միանգամայն յարում է, թէ «Հայոց մէջ կանանց այս կարգը վաղուց է ջնջւած» եւ այլն[3]։ Վերջապէս Սիւնեաց պատմիչը հաստատում է նոյն բանը․ «Իսկ կանանց մէջ **սարկաւագուհիներ** լինում են, որովհետեւ կանանց քարոզելու համար։ … Բարձրանում է բեմի վրայ․ քարոզում եւ ընթերցում է Աւետարանը, ոչ ամբոխի համար բեմի վրայից, այլ առանձին կամ պատշաճ տեղում»․ բայց զգուշացնում է պատարագի սպասաւորութիւնից[4]։

Այս բոլոր վկայութիւններից արդիւնք ենք ստանում, որ սարկաւագուհիները մինչեւ միջին դար մեզ մօտ անգոյ․ սկսել էին հաստատուել, բայց ցանցառաբար։ Ու դեռ 1655-ին Սիւնեաց Շնհեր գիւղի մէջ մի չարական է գրւել «Հռիփսիմեայ հաւատաւոր **սարկաւագուհու**»[5] համար։ Եւ նրանց օրհնութեան կարգը դեռ պահւած է 1704-ին ընդօրինակւած մի մաշտոցի մէջ[6]։ Ունէին նաեւ իրենց յատուկ տարազը, որ ուրիշ տեղ նկարագրել եմ[7], նոյնպէս նրանց օրհնութեան արարողութիւնը[8]։

7.- Եկեղեցու ընկերութիւնից անցնելով ժողովատեղիները, տեսանք ուրիշ տեղ հայ կանանց սովորական յաճախումն աղօթատները[9]։ Ո՞ւր եւ ի՞նչպէս էին կանգնում կամ աղօթում նրանք այնտեղ։ Հայաստանի հին եկեղեցիները վերնատուն չունէին կանանց յատուկ։ Բիւզանդացիներն եւ հռոմէացիներն այն հնարեցին ի պատիւ իրենց

---

1. **Հնդ. ամս.** 1905, 314։ — 2. **Դաս.** Մխծ։ — 3. Սմ. **Օր.** կ։ — 4. Օրբ. 80։ — 5. Ս. Ղազարու մէջ։ — 6. Անդ։ — 7. **Փամ. արգ.** 440։ — 8. **Բզմ.** 1922, 72-73։ — 9. Աստ՝ 114։

բարձրաչուք տիկինների, որպէսզի հանգիստ մնային եւ լաւ տեսնէին պաշտամունքը: Իսկ մեզ մօտ այրերն եւ կանայք միասին էին խմբւում տաճարի մէջ, բայց իրարից բաժանւած, ինչպէս հաստատում է մի ճառ՝ «Վերլուծութիւն կաթուղիկէ եկեղեցու» վերնագրով, ասելով թէ «արանց եւ կանանց կարգը զատւած են եկեղեցում[1]»: Ե դարում Անտիոքի մէջ էլ յիշւում է երկու սեռերի բաժանումը մի փայտեղէն վանդակով:

Աղօթելու զանազան ձեւեր կային, որ ի գործ էին դրւում թէ տան եւ թէ եկեղեցու մէջ: Ահա մի քանի օրինակներ ժամանակի կարգով: **Գայիանեան** կոյսերն իրենց նեղութիւնների մէջ դիմում էին առ Աստւած «ձեռքերն երկինք բարձրացնելով» կամ «ձեռքերը լի աղօթքով երկինք էին բարձրանում[2]»: Հռիփսիմէն մի անգամ աղօթում էր «ծունկ դրւած», մի անգամ էլ «տարածած իր բազուկները խաչի նմանութեամբ[3]»: **Շուշանիկն** իր ամուսնու ուրացման լուրն առնելով, զաւակներով եկեղեցի գնաց, «ընկաւ սուրբ Սեղանի առջեւ» եւ նրանց Աստուծոյ պահպանութեան յանձնեց[4]: Մեզ ծանօթ **Մարիամ** Արծրունին[5], երբ Գլակի սրբավայրը մտաւ, նախ «համբուրեց տաճարի որմը», յետոյ գնաց Սեղանի առջեւ, եւ «ծունր կրկնեալ» մատուցեց իր աղօթքը[6]: Վարդան վրդ. գրում է թէ շաբաթ ու կիրակի օրերն ամբողջ հայ ընտանիքը՝ «մեծ եւ փոքր ժամատեղ էին գնում», իսկ եթէ խափանւէր, տան մէջ պէտք է կատարէին իրենց աղօթքը. «կինը դուստրերի հետ վաթսուն անգամ ծունր» կրկնելով, եւ «այրը կորիճ տղաների հետ երեսուն եւ վեց[7]»: Ծնրադրութեան այս գումարները, որ սնապաշտական երեւոյթ ունեն, բնականապէս միջնադարեան գիւտեր էին:

Կանայք արդեօք երգո՞ւմ էին եկեղեցու մէջ: Ուրիշ անգամ հաստատել եմ Բարսեղի, Ամբրոսիոսի եւ այլ հարց վկայութեամբ, թէ Դ դարում արեւելքի մէջ արք, կանայք ու փոքր տղաները միաբերան մասնակցում էին երգերին եւ թէ նոյն դարի վերջերից ջանքեր եղան վերապահելու երգը յատուկ պաշտօնեաներին, որպէսզի խափանւէր խառնաձայնութիւնը, որ առաջ էր գալիս ժողովրդի անվարժութիւնից[8]: Մեզ մօտ մինչեւ Մեսրոպն եկեղեցական լեզուն նախ յունարէն, ապա ասորերէն լինելով[9], արդէն ժողովուրդը չէր կարող երգել: Գրերի գիւտից յետոյ, դեռ շարունակում էին «պաշտօնեաների ձայնով» միայն լսելի լինէր «սուրբ սաղմոսը[10]», որոնցից, սակայն ժողովուրդն էլ սովորում էր. այնպէս որ ազգի նեղութեան շրջանին աղօթավայրից դուրս «արանց եւ կանանց» բերանը «սաղմոս էին մրմնջում երգով» որպէս

1. ***Գրչ. Թ*** 512, ***էջ*** 938 ***Ս. Ղզր***: - 2. ***Ագթ***. 137, 130: — 3. ***Նոյն***՝ 151, 133: – 4. ***Սոփ. Թ***, 13-14: — 5. ***Աստ***՝ 147: — 6. ***Մամ***. 9-10: -- 7. ***Վրդ. Խրզ***. 309: — 8. ***Բզմ***. 1917, 210: — 9. ***Աստ***՝ 144: 10. ***Եղշ***. 52:

մխիթարութիւն իրենց հոգիներին[1]: Հաւանական է, որ նրանք եկեղեցու մէջ էլ մրմնջելով դպրաց հետ երգում էին: Բացի այս Տարսոնի առաջնորդը վկայում է թէ պատարագի մէջ **Սուրբ Աստուածը** պաշտւում էր «բարձր ձայնով լրիւ եկեղեցու, երախայից, հաւատացեալների եւ կղերի» եւ դարձեալ թէ «ժողովուրդը տարածելով ձեռքերը բարձր երգում էին» **Հայր մերը**, նոյնպէս եւ **ալէլուք** կոչուած երգի ժամանակ սաղմոսերգուի առաջնորդութեամբ «սփռւում էր եղանակի քաղցրաձայնութիւնը լրիւ եկեղեցում[2]» եւ այդ «ամենայն լրման» մէջ կային ուրեմն եւ կանայք:

8.- Հայերի մէկ մասի եկեղեցի գնալու կերպը քննադատւած է մեր Հայրերի կողմից: Մանդակունին Ե դարում բողոքում էր, թէ այնտեղ գնալուց առաջ «լուացւում, օծանելիք գործածում եւ հանդերձները զարդարում, որպէս թէ ի բոզանոցս կազմիցիմք կամ թատրոն խաղալին»: Այս բաների մէջ Ոսկեբերանը բամբասում էր յոյն կանանց էլ[3]: Այնտեղ հասնելուց յետոյ էլ, ասում է մեր բեմբասացը, «ոչ վախով եւ խանդաղատագին մաղթանքներով կամք առաջի Աստուծոյ», այլ «սնափառ պերճանքով եւ մոլեգնող հպարտութեամբ» իրենց չքեղութեան ու զարդերի վրայ: Աւելի յոռին էլ կար. «կանայք բոզի կերպարանքով կան առաջի Աստուծոյ, եւ այրերը բոզահոմանեաց», անպարկեշտ ակնարկներով ու «կնձկնձոցի նման բարբառով» կամ թնծկալու ձայնով իրարու հանդէպ[4], որ երեւում է երգելու ժամանակ էին հանում եւ որի նման անկարգութիւններ յոյն եկեղեցու մէջ եւս պատահում էին նոյն դարում ըստ Ոսկեբերանի[5]:

Այս զեղծումները կային, այո, բայց ընդհանուր չէին կամ ամէն ժամանակի յատուկ, օրինակ՝ Եղիշէի տիկնայք մեծ բարեպաշտութեամբ էին աղօթում եկեղեցու մէջ իրենց նեղութեանը համբերել կարողանալու համար[6]: Կեանքի պատահարները հոգիներն էլ փոփոխում էին: Ճռայլութիւնը մեղկ էր դարձնում եւ կարօտութիւնն զգաստացնում էր: Նոյն անկարգութիւնը պատահում է երբեմն, բայց ըստ մասին միայն նաեւ յետոյ, ինչպէս Գր. Տաթեւացին գուշակել է տալիս հետեւեալ ազդարարութեամբ. «Աղօթելու ժամանակ պէտք չէ միմեանց նայել եւ ոչ ի կին մարդ[7]»: Անկանոն անձերն ե՞րբ չեն եղել:

9.- Հայուհու վերջին եւ միակ մասնակցութիւնն եկեղեցական կեանքում 1441-ի հայրապետական ընտրութեան մէջ եղաւ: Հայաստանի կղերը փափագելով Լուսաւորչի աթոռը Կիլիկիայից իր նախկին վայրը փոխադրել, ժամանակի Գրիգոր Մուսաբեկեան կաթողիկոսից խնդրեց անցնել Էջմիածին, որը չընդունեց նա: Ի հեճուկս իրեն նոյն պատմական տեղում գումարեց բոլորովին անսովոր մի ժողով, որում կղերի մի մասի

1. Նոյն՝ 97. սատ՝ 23: — 2. Լմբ. Պտ. 313, 221, 317: — 3. Մեկ. Բ Թեսաղ. Գ: — 4. Մնդ. 42: — 5. Մեկ. Ա Կոր ԼՁ: — 6. Եղշ. 156: — 7. Բրգ. ձմր. 428:

*հետ բազմում էր «անթիւ եւ անհամար բազմութիւն ժողովրդից՝ արանց եւ* ***կանանց****»,* *գրում է ականատես վկան՝ Թովմա Մեծոփեցին, եւ ընտրեցին Կիրակոս Վիրապեցուն*[1]*, մնալով Սսոյ մէջ նախկին օրինաւոր հայրապետը, որ ոչ մէկ կանոնական ժողով հրաժարեցրեց նրան եւ այսպէս բաժանում ստեղծելով աթոռի, որ պիտի տեւէր մինչեւ մեր օրերը: Հայ պատմութեան նշանակած առաջին ընտրական ժողովն էր, որին մասնակցում էին հաւատացեալների ամբոխն ու կանանց դասը: Ընտրականից աւելի ժողովրդային մի ժողով, աթոռի փոխադրութեան ջերմ նախանձից տարուած, եւ որ այլեւս չպիտի կրկնուէր այդ ձեւով:*

*Այսպէս հայուհին ունեցաւ իր լայն բաժինը մեր եկեղեցական կենցաղի մէջ եւս, իր փառքի եւ անչքութեան շրջաններով, որը պարբերաբար ստեղծում էր հայ կղերի մտաւոր յեղյեղուկ վիճակը: Եւ մինչ ռամկուհին իր պարզամտութեամբ խոնարհում էր նրա նախապաշարումների առջեւ անգամ, ընդհակառակն կիրթ ազնուականը գիտէր թիկունք դարձնել այդպիսի համոզումներին, եւ ընթանալ իր լուսաւոր ճանապարհով, բարձր բռնելով իր քաղաքակրթական զարգացումը նաեւ կրօնաընկերային ասպարէզի մէջ:*

## *ԳԼՈՒԽ Ը*

### *Բարեպաշտութեան եւ առաքինութեան մէջ*

*Մեր առջեւ ունենք երկու գեղեցիկ ու երկւորեակ տիտղոսներ, որ իրարից բաժանել կարելի չէ, որովհետեւ մէկն առանց միւսին չի կարող ապրել: Տիտղոսներ, որոնք քաջ պատշաճում են քրիստոնեայ կնոջն, եւ աւելի պատկառանք են ընծայում քան իր բոլոր ոսկեղէն ականակուռ զարդերը: Այս ձիրքերով էլ հայուհին հաւասարապէս փայլեց, որպէսզի սրանց մէջ եւս պէտք չունենանք նախանձելու օտար ազգերին, որոնք պարծենում են թագուհիներով ու տիկիններով, որ գիտցան իրենց հմայիչ թագերի ու գոհարների փայլը փոխարինել սրբութեան պսակի փայլով եւ փառաւորենք հասարակաց պարգեւատուին, որի առջեւ ազգերը հաւասար են եւ որ իր շնորհները անխտիր բաշխում է բոլոր նրանց, որ պաշտում են իրեն հաւատով եւ սիրով: Ունեցանք, կրկնում եմ, բարձր հոգիներ մեր հին հայուհիների մէջ, որոնց մեծութիւնն ըմբռնող եւ արժեցնող առաջնորդներն ու մատենագրերն ոսկեդարուց յետոյ նրանց պսակեցին, ինչպէս*

---

1. *Այր*. 215-16:

*եւրոպացի բարեպաշտուհիներն ունեցան: Եւ այս՝ հետեւանք կանանց սեռին արհամարհող այն հոգուն, որ տեսանք նախորդ գլխի մէջ, եւ որ գործնականապէս զգոյշ պահեց նրանց հանդէպ ազատախոհ եւ ողջամիտ անհատներն էլ, որոնք անբաւական էին ճակատելու ընդհանուր կանխակալ համոզման դէմ:*

1.- *Հայուհուն, նախ նկատի ենք առնում իր ամենօրեայ կենցաղի, իր առտնի եւ ընկերային սովորական զբաղմունքների մէջ, ուր նրա պայծառ հոգին կատարելութեան թոյրն ու բոյրը սփռում է նախ անձի եւ ապա գործերի վրայ, իր աստուածահաճոյ եւ առաքինակրօն կեանքի ու վարմունքի վրայ: Բայց ի՞նչպէս կարելի է թուել այն ամէն բարեպաշտ հայուհիների անունները, որ խտացած է հին մագաղաթների ու քարերի վրայ եւ կամ ո՞ւր փնտռենք նրանց, որ յիշուելու առիթը չունեցան, կամ ստուերի տակ ծածկուած մանիշակների պէս անտես մնացին եւ աւելի բազմաթիւ էին քան տեսնուած ու յիշուածները: Ոչ, ես պիտի բաւականանամ մատնանշել նրանցից ոմանց որոշներին, միայն տարբեր դարերից եւ քչով շատերի պատկերը տալ:*

*Մեր առաջին քրիստոնեայ թագաւորի՝ Տրդատի հետ, սրբերի կարգը դասուած տեսանք նրա կենակիցն ու քոյրն էլ*[1]*: Ի՞նչպէս հասան նրանք այդ պատւին: Ոչ անշուշտ Աւետարանի պարզ ընդունելութեամբ, որ իրենց պէս բիւրաւորներն արին, այլ իրենց ընտիր կենցաղով: Բարոյապէս բարձր մարդ էր արքան, մանկութիւնից կրթուած ու տեղեկութիւն ունենալով նախ «յունական փիլիսոփայական մտքի հանճարգիտութեան», որի վրայ աւելացրեց յետոյ քրիստոնէական իմաստութեան փայլն էլ, ուշքն ու ժամանակը նուիրելով «աստուածային գրոց ընթերցումներով» ու պատուիրաններին, եւ լինելով «բարեաց օրինակ ամենայն աշխարհի՝» աղօթասիրութեամբն ու պահեցողութեամբ*[2]*. եւ աշխարհից յառաջ իր սիրելիների, որոնք ընթանում էին իր հետ: Հոգեսիրութեան մեծ եռանդն, որ յատուկ է նորադարձողներին, իրեն աւելի առաջ էլ մղեց. Տրդատ «կրօնաւորական վարքով» նուիրուեց կատարելագոյն կեանքին*[3]*, որին հետեւեց* ***Խոսրովիդուխտն*** *եւս, կոչուած «համեստ կոյս», եւ առանձնացած իր եղբօր կերտած մենաստանի մէջ ի Գառնի*[4]*: Լռութիւն է Աշխէնի մասին, որի կեանքը տարբերելու չէ միւսներից, դատելով իր բարեպաշտութիւնից, որին պիտի հանդիպենք ստորեւ:*

1. *Ագտ՝* 111: — 2. *Ագթ.* 643-44: — 3. *Նոյն՝* 645. ***Խոր. Բ, ղբ***: — 4. ***Խոր. Բ, ղ***:

*Հեթանոսախառն Դ դարի[1] վրայից անցնենք եւ վերանայենք մեր ազգի մտաւոր ու հոգեւոր վերածնութեան շրջանը: 451-ի աղէտաբեր պատերազմի փողերը լռել են: Հազար երեսուն եւ վեց նահատակաց ճերմակ ոսկորները ծածկում են Աւարայրի սուրբ դաշտը եւ նրանց կենդանի նահատակակիցները գերի են պարսիկների ձեռքը: Եւ այդ բոլոր զոհերն են աստուածային սիրոյ համար, որով վառուած են նրանց «տիկնայք փափկասունք» եւս, որ զրկուած իրենց ամուսիններից ու կեանքի սովորական դիւրութիւններից, ձգտում են հոգեկան կատարելութեան: Զէնքի պատերազմից անցել էին «հոգեւոր պատերազմին», ասում է Եղիշէն, իրենց սեռի ու մարդկային թերութիւնների դէմ, մոռանալով կանացի տկարութիւնն ու հագնելով առնական կորովը: Կռուեցին մեղքերի դէմ եւ արմատախիլ արեցին: Պարզամտութեամբ յաղթեցին խորամանկութեանը, եւ նախանձոտ կապուտակ գոյները լւացին «սուրբ սիրով»: Կտրեցին ագահութեան արմատը, խոնարհութեամբ նուաճեցին ամբարտաւանութիւնը եւ դրանով հասան երկնաւոր բարձրութեան: Աղօթքով բացեցին երկնքի դռներն, որ փակ էին ազգի դէմ եւ փրկարար հրեշտակներին իջեցրին: Նրանց մէջ այրիները «եղան վերստին առաքինութեան հարսներ», իսկ կապելոց կանայք «կամքով մարմնաւոր ցանկութիւնները կապեցին» ամուսիններին չարչարակից լինելով: Արտաքինով երեւում էին սգաւոր ու տառապեալ այրիներ, եւ իրենց հոգու մէջ զարդարուած ու մխիթարուած էին «երկնաւոր սիրով[2]»: Նոյնը Ղազարն էլ հաստատում է, նուազ պատկերալից գրչով[3]:*

*Այդ տիկնանց մրցակից են առաքինութեան մէջ նրանց բանտարկուած սիրելիներն էլ Ապար աշխարհի մէջ: Համբերութեան անզուգական օրինակներ. ոչ մի տրտունջ իրենցից, միայն սաղմոս եւ օրհնութիւն էր բխում եւ առաքինութեան այն բարձրութեան հասան, որ հիւանդներին բժշկում էին աղօթելով[4]: Նոյն հաւատքն ու սէրն էր իշխում այդ ճշմարտապէս ազնւական հոգիների մէջ, որոնք իրենց ընդունած գեղեցիկ դաստիարակութեան[5] հաւատարիքն էին տալիս հաւասարապէս ներսն ու դուրսը:*

*Անցնենք դէպի Ժ դար, ուր կաթողիկոս պատմիչը մեծ գովեստով յիշատակում է իր ժամանակակից «հռչակաւոր եւ երանելի կանանց».* ***Շուշանը՝*** *հայրենի տոհմն անծանօթ, եւ կենակից Սիւնեաց Աշոտ իշխանի, որ տիկինն որակում է «երանելի» բառով[6] եւ հարսը՝* ***Սոփիան,*** *ամուսինը Սմբատ որդու եւ դուստրը համանուն եւ համաբարոյ մօրը[7], եւ միւս հարսը (անանուն), Սահակի կինը եւ Գուգարաց բդեշխի զաւակը[8], որոնք միասին դառն փորձերից էլ անցնում են[9]:*

---

1. ***Աստ՝*** **41-43, 46, 48, 51: — 2.** ***Եղշ.*** **157: — 3.** ***Փրպ.*** **331: — 4.** ***Եղշ.*** **151-52: — 5.** ***Աստ՝*** **89-92: — 6.** ***Աստ՝*** **35: — 7.** ***Աստ՝*** **43, 97: — 8.** ***ՑՀ. կԹ.*** **302.** ***Օրբ.*** **135: — 9.** ***Աստ՝ ԺԶ,*** **3:**

*Անիի մէջ իր կառուցած տաճարի մեծութեան հետ մրցում է «բարեպաշտուհին» **Կատրանիդէն**[1], դուստրը «աստուածասէր եւ բարեպաշտ» թագաւորի՝ Սմբատ Վասակի[2], իր հոգեսիրութեան ծածուկ մէկ նշանով, որ մեր օրերին միայն յայտնեց: Ն. Մառը նրա կմախքն հանելով Անիի գերեզմանից, երկու ոտքերը բեւեռուած տեսաւ իրար վրայ, խնդրեց ու չկարողացաւ գտնել նշանակութիւնը[3]: Եզակի մի բան է այդ, եւ անյիշատակ մեր հին յուղարկաւորական սովորութիւնների մէջ, որ քաջայայտ են ինձ: Եւ ինչո՞ւ չմտածել թէ մեծ թագուհին ինչ որ անկարելի էր կենդանութեան ժամանակ՝ կատարեց, յետ մահուան, գամելով իր ոտքերն՝ ի նմանութիւն խաչեալ Փրկչին. գործ՝ որ ուրիշ քրիստոնեայ իր նմանները չմտածեցին երբեք:*

*Բարեպաշտութեամբ նշանաւոր Պահլաւունեաց տան[4] մէջ գովւում են Մագիստրոսէ իր պապը՝ Գրիգոր Համզէն, եւ տատը՝ **Շուշիկն**, «ամենայն բարեգործութեամբ կատարեալ եւ մաքուր վարքով եւ ողջախոհ ամուսնութեամբ եւ հանապազօր սաղմոսերգութեամբ». եւ դարձեալ «պահքով եւ աղօթքներով աւելի քան անապատականներն են երեւում»: Եւ ինչ որ աւելի ուշագրաւ է, «որոնց վարքը, յարում է, օրէնք ամենայն Հայաստանեայց տեղ. մօրն քո՝ կանանց, եւ հօրն քո՝ արանց», դիմառնութեամբ խօսելով իր հանգուցեալ Վահրամ հօրեղբօր մասին[5]:*

*Նոյն Մագիստրոսի դուստրը՝ **Մարիամը**, սքանչելի դաստիարակութիւն ստացած[6], նոյնպէս «միացեալ էր Աստուծոյ սիրոյն, գրում է մի ժամանակակից, եւ գերագոյն էր գտնում քան զամենայն սուրբս. եւ բոլորի հանդէպ գթոտ, ողորմած, հաւատի մէջ հաստատուն, զգօն եւ զգաստ... աղօթասէր եւ աղքատասէր». ու սպասաւորում էր միշտ սուրբ վայրերին: Բարեպաշտութիւնը սեփական էր նաեւ ամուսնուն[7] եւ նրա տանը, որի հայրն ընկել էր այլակրօնի զէնքերով, եւ հօրը պապի երեք եղբայրներն եպիսկոպոսական պատւով պսակւել էին[8]:*

*Արիստակէս գրիչը պանծացնում է մեզ ծանօթ առաքինի զոյգը՝ Վիգէն ու **Մելքիսեթի Զորտւանէլեանքը**[9], «ամենայն բարեպաշտութեան օրինակը նրանց բերելով»: Մանաւանդ տիկինը, որ աշխարհի պահանջած արտաքին շքեղութեան[10] հետ, ասում է, իմացաւ զուգել «հոգեւոր առաքինութիւնը, սրբութիւնը, համեստութիւնը, խոնարհութիւնը, պահքը սրբութեան եւ հանապազօրեան աղօթքը. եկեղեցիների զարդարիչը եւ քահանաների յանձանձիչը, որբերի եւ այրիների խնամածուն»: Իր օրինակի ճշգրիտ հետեւողն եղաւ նաեւ դուստրը՝ **Կատան**, տիկին Դեգեացը, ցոյց տալով*

---

1. *Ասղ*. 256. *կոչուած եւ Կատայ. աստ*՝ 108: — 2. *Օրբ*. 183: — 3. ***Արծւ***. 7 *Յլս*. 1909: — 4. *Աստ*՝ 98: — 5. *Մգ. թղթ*. 42: — 6. *Աստ*՝ 99: — 7. *Անդ*: — 8. *Արծ*. 347-48: — 9. *Աստ*՝ 39: — 10. *Աստ*՝ 137:

այնտեղ իր «գեղեցիկ բարեձեւութիւնն, սրբութիւնն, ողորմածութիւնն, եկեղեցիների եւ քահանաների հոգաբարձութիւնը[1]»:

**Զապէլը**՝ դուստրը ու ժառանգը մեծն Լեւոնի, եւ Կիպրոսի արքայադստրի[2] գրկի մէջ սնւած, «որ իմաստուն էր, համեստ եւ երկիւղած ի տեառնից[3]», ինքն էլ նկարագրւում է «ամենայն առաքինութեամբ եւ բարեգործութեամբ զարդարւած[4]», հանդիսանալով մեր մեծագոյն բարեպաշտուհիներից մէկը: Չկայ մի բերան, որ չներբողի նրան ու չյայտնի իր հիացումը, սկսած իր զաւակից՝ Լեւոնից[5]: Թորոս Ռոսլին նրան անւանում է «աստւածարեալ թագուհի» եւ մի ուրիշ անգամ էլ խնդրում է յիշել «սրբահոգի եւ առաքինաջան եւ ողջախոհ» այդ բամբիշը[6]: Երրորդ մի գրիչ ակնարկում է նոյնպէս «սրբահոգի թագուհի» Հեթումի[7]: Չորրորդը նրան անւանում է «ամենապարկեշտ եւ առաքինի … մարդասէր եւ քրիստոսասէր թագուհի Զապէլ[8]»: Գանձակեցի պատմիչը յարում է, թէ «յոյժ բարեպաշտ էր այն կինն եւ ողջախոհ», եւ թէ «պահքով եւ աղօթքով հանապազ ճգնում էր[9]», անջատւած իր աչքերի առջեւ գայթակղիչ տեսարանից ու թագի հրապոյրներից[10]: Սրբուհու վախճան էլ ունեցաւ եւ օրհասի պահին, գրում է Վահրամը, երկնքից մի ձայն լսեց որ ասում էր. «Ե՛կ աղաւնի իմ, ե՛կ սիրելի իմ». հոգով ուրախացաւ, պատմեց տեսիլը մերձաւորներին եւ իսկոյն երկինք սաւառնեց[11]:

Իր ճշմարիտ ճառագայթն էր Զապլուն դուստրը, «որ ոչ միայն անւամբն նման էր իր ծնողին, գրում էր եղբայրը՝ Լեւոնը, այլեւ բարեպաշտութեամբ եւ աստւածասիրութեամբ»: Երկինքը նախանձեց այդ մաքուր չուշանին, փութաց կորզել անցաւոր կեանքի տնկից ու պատւաստեց անանցի վրայ: Լեւոնը գովում է ու փառաւորում է նրան եւ իր միւս քրոջն ու Սիդոնի տիկնոջը՝ Ֆիմիին եւս, «որ ամենայն բարեպաշտութեամբ զարդարւած» է, ասում է, «եւ աստւածասէր, ողորմած, աղօթասէր, հեզ, քաղցր եւ հանդարտ բոլորի դիմաց եւ ամէնին կարեկից[12]»: Իսկ իրենց հօրեղբայրն՝ Յովհաննէս արքեպիսկոպոսը, նրան որակում է՝ «ամենայն բարութեամբ զարդարւած, Աստծոյ սիրողն եւ նրան ծառայող բոլոր սպասաւորներին»: Եւ խօսքն նրան ուղղելով ասում է. «Աստւածասէր եւ գթասէր հոգի, մեծդ ըստ մարմնով եւ բարգաւաճ ըստ հոգու[13]»: Գովեստներ՝ ասողների եւ ընդունողների համեմատ: Ֆիմիի վրայ մենք աւելին էլ տեսնելու ենք:

---

1. Հյպ. 393, 394: — 2. Աստ՝ 46: — 3. Տրգ. Կիլ. 304: — 4. Անդ՝ 321: — 5. Աստ՝ 106: — 6. Հւք. յշտ. 1260, 1263: — 7. Անդ՝ 1249: — 8. Պատմ. Բր. 241: — 9. Կիր. 95: — 10. Աստ՝ 48-49: — 11. Գրչ. թ. 1414 կտորդ կը պակսի Պարիսի տպագրին մէջ: — 12. Հւք. յշտ. 1263: — 13. Հյպ. 486, 487:

Այն ներբողն, որ Լեւոնը տւեց իր հարազատներին, ինքն էլ արժանի եղաւ[1] եւ բախտն ունեցաւ կեանքը կապելու արտաքուստ ու ներքուստ մի չքնաղ օրիորդի հետ, ժառանգը Լամբրոնացիների արեան ու բարեպաշտութեան[2], եւ դուստրը մի հօր, որ հայրենեաց համար թափեց իր արիւնը եւ մի մօր, որ տեսնելու ենք հաւատաւորի քօղի ներքեւ: Հեշտ է երեւակայել, թէ այդ յարկից ինչ կարող էր դուրս գալ: Զապէլի հետ մեր թագուհիների լուսափայլ զոյգը կազմեց **Կեռանը** Կիլիկիայի գահի վրայ, եւ նրա պէս էլ կարճակեաց եղաւ: Մի քանի վկաների լսենք, իր որդուն լսելուց յետոյ[3]: Ոստակէս գրիչն ակնարկում է «երջանիկ ամենօրհնեալ ամուսնուն Լեւոնի՝ Կիր Աննայի[4]»: Մի ուրիշը՝ Ստեփանոսը, գրում է, թէ ապրում էր «աստուածային երկիւղով եւ ամփոփւած, սկզբից ամենայն իմաստութեամբ[5]»: Երրորդը՝ Աւետիսը, «այս երանուհին՝ թագուհին, մաքուր օրիորդ փեսային սուրբ» տեսնում էր մէկն այն բարձր հոգիներից, որոնք «մտածում էին միայն Աստուծոյ եւ աստուածայինի մասին բանիւք եւ արդեամբք, երկրորդ ստորեւ կացեալս վարկանելով» եւ առաքինութիւնը առաքինութեան վրայ էր բարդում, «որովհետեւ ամենագեղ վայելչութեամբ հաճոյացրի Աստուծոյ որդուն»: Եւ մաղթում է որ «երկար ժամանակով ուղղեսցէ իր թագուհի լինելը[6]»: Գեղեցիկ է նաեւ իրեն ժամանակակից ու մերձաւոր Ցակոբ եպիսկոպոսի վկայութիւնն, որ այն կոչում է «վեհն գովութեան խօսք՝ քրիստոսասէր եւ թագազն թագուհու» եւ աւելացնում է, թէ «ամենայն առաքինութեամբ ճոխացաւ, լծելով տիրատուր իշխանութեանն բարի աղօթքներով եւ ժուժկալութեամբ, գովելի ողորմածութեամբ»: Եւ ամենից նշանաւորը, «որի բարեպաշտութիւնն, ասում է, գրեթէ թագաւորութեան սիւնն է[7]», եւ այնուհետեւ դեռ մնաց տասնմէկ տարի:

Նոյն Ցակոբ եպիսկոպոսը ակնարկում է Լամբրոնի տան անդամներից Կեռանի տատին՝ «պարկեշտուհի» **Ստեփանեային**, եւ նոյն թագուհու հօրեղբօր ամուսնուն՝ **Ակացիին**, կոչելով նրան «առաքինութեամբ նման է **Սառային**[8]», առանց ուրիշ մանրամասնութիւնների: Նոյնպէս եւ Կիլիկիայի արքունի Ցայսմաւուրի մէջ յիշւում է «բարեպաշտ թագուհին Հայոց» կրտսերը Զապէլ, դուստր աստուածասէր եւ աշխարհից իսկ հրաժարւած հօրը՝ Հեթում պատմիչի[9], որի եղկելի (ողբալի) վախճանին էլ ականատես եղանք նախապէս[10]:

Կիրակոս պատմիչը փառաւորում է Ներքին Խաչէնի Հասան Ջալալ իշխանի զուգակցին՝ **Մամքանին**[11], որ «անձն ամենայն առաքինութեան տւած, ճգնում էր

1. *Աստ*՝ 105: — 2. *Աստ*՝ 94-95: — 3. *Աստ*՝ 85: — 4. ***Հայ. յշ.*** 1270: — 5. *Անդ*՝ 1283: — 6. ***Ազ. Հնդ.*** 1910, *Բ*, 23-24: — 7. *Հնդ. ամս.* 1898, 246: — 8. *Անդ*: — 9. *Աստ*՝ 100: — 10. *Աստ*՝ 81: — 11. *Աստ*՝ 103:

հանապազ պահքով եւ աղօթքով[1]», մրցակցելով գարմանալի ամուսնուն[2]: Այդ տիկնոջ երկիւղածութեան վկայում է իր դուստրը՝ **Մամա խաթունն** եւս, որ ինքն էլ հետեւող ու դրւատեալ է ուրիշներից միեւնոյն առաքինութեան մէջ[3]:

Նոյն Ջալալի թոռն՝ **Ասփան**, մեզ ծանօթ իր ընտանեկան գորովի մէջ[4], նկարագրւում է «ամենայն բարեպաշտութեամբ գարդարուած» եւ կոչւում է «ամենագովելի եւ բարեպաշտ ամուսին» կամ «սուրբ ամուսին» Գրիգորի Դոփեանց, «ամենաօրհնեալ պարկեշտ տիկինն **Ասփա**[5]»: Համարում եմ, որ այդ առաքինութիւնր ժառանգած էր իր պապի ու տատի ազդեցիկ օրինակով, եւ խրախուսուած կենակցի համրնթացութիւնից, քան իր ծնողներից՝ Տարսայիճից ու **Մինա խաթունից**[6]:

Միասին գովքի են արժանանում 1318-ին Եղիվարդի կողմերում իշխող Ազիզբէգ ու **Վախախ** ամուսինները, երկուսն էլ «բարեպաշտ ծնողների զաւակ, ազնւական ազգից ու տոհմից», որոնք մանկութիւնից էին «սնւում եւ վարժւում ամենայն բարեպաշտութեամբ»: Իրենց բերնից բխում էին «քաղցրաճաշակ խօսքեր», եւ աղօթքի ու պատարագի պահին միշտ հոսում էին «արտասուքի վտակներ»: Պարկեշտ էին իրենց ուտելիքի եւ խմելիքի մէջ, եւ զգուշաւոր էին խեղկատակութիւնից, հայհոյանքից, բամբասանքից, «զրկելուց եւ ծեծելուց» ինչպէս ուրիշ հզօրներն էին անում: Եւ ի պարծանս տիկնոջ, գրիչը նրան անւանում է «բարձրավիզն ի ցանկութիւն Վախախ», այսինքն աներկիւղ եւ յաղթող ցանկութեան[7]:

**Մարխունը**՝ դուստր ու հարսն Հեթումեան մեծ տոհմին, եւ ապա արքայամայր[8], կոստանդին գրիչը նրան որակում է «ամենահամեստ եւ հեզահոգի տիկինր» բառերով[9]: **Արքունի Ցայսմաւուրը** նրան տալիս է «բարեպաշտ եւ աստուածասէր եւ ողորմած» տիտղոսները[10]: Եւ մի յիշատակագիր 1346 թւականից ակնարկում է նոյն «հեզահոգի եւ ողորմած թագուհուն Հայոց Մարիունին», զարդարուած «հեզութեամբ եւ խոնարհութեամբ եւ ողորմութեամբ[11]»: Ամուսինը դեռ կենդանի եւ ինքն առոյգ, 1326-ին գրել է տւել Նարեկի մէջ իրեն իբրեւ արդէն մեռած է նկատում այս կեանքի համար եւ խօսում է ապագայից ասելով. «Ես՝ տիկնաց տիկինս[12], որ **փոխեցի յաստեաց ի Քրիստոս**, գրել տւեցի այս գիրքը յիշատակ ինձ եւ մօրս եւ իմ կենակցին[13]»: Մարմնով երկրի վրայ, իսկ հոգով ու մտքով երկնքի մէջ է ապրում, ուր իսկապէս էլ պիտի հասնի 1352 թւականին[14]:

---

1. Կիր. 147: — 2. Աստ՝ 103: — 3. Աստ՝ 103: — 4. Աստ՝ 40: — 5. **Արց.** 290: — 6. Աստ՝ 50-51: — 7. **Հւք. յշտ.**: — 8. Աստ՝ 68: — 9. **Հւք. յշտ.** 1319: — 10. **Հյպ.** 544: — 11. **Ագ. Հնդ.** 1913, Ա. 81: — 12. Աստ՝ 122: — 13. Մխ. 155: — 14. Հյպ. 544:

*Իր աստուածպաշտութեան օժանդակ գործերն՝ մի Ժամագիրք եղաւ, որ տարիներ իր ձեռքում լինելուց յետոյ, այժմ պահւում է Ս. Ղազարի մէջ, իբրեւ մի յուշարձան նրա հոգեսիրութեան: Մագաղաթեայ գեղեցկագիր մի փոքր մատեան է, մէջը Ժամերգութիւն ու սաղմոսները խառն գրուած են, ինչպէս պաշտում էին նախկինում: Սկզբում Դաւթի գեղանկար կենդանագիրը կայ, մէջը խորանազարդեր եւ լուսանցազարդեր: Սաղմոսների եւ աղօթքների սկզբնագրերն ու առաջին տողերն ոսկեզօծ եւ խորագրերը կարմրագոյն են, ինչպէս պատշաճում էր իր բարձր աստիճանին: Իսկ մի անկիւնում լսեցնում է իր մրմունջը «Բարեպաշտ եւ քրիստոսասէր տիկնաց տիկինն Մարիուն եւ աստուածասէր իր ծնողներն յիշեսջիք աղաւթիւք ի Քրիստոս»: Մի Աւետարան էլ ունի Երուսաղէմում, որի մէջ երկու անգամ նկարուած է ինքն, ինչպէս ասացինք[1]:*

*Կոռիկոսի Օշին իշխանի եւ Յոհաննա այրի թագուհու դուստրն է, եւ ինքն էլ թագուհի Հայոց՝ Մարիւն[2], որ գովւում է նրան արեւելցի Յեսու գրչի կողմից[3] հետեւեալ խօսքերով, «բարեպաշտ եւ աստուածասէր թագուհին իր (Կոստանդինի) ... աստուածասէրը, հեզն եւ հանդարտը[4]» յիշեցէք: Աշակերտել է իր մօրն, ոչ հօրն, որը ճիշտ հակառակն էր նկարագրով: Այս յիշատակարանը թերի է, որովհետեւ թագուհու մասին տեղեկութիւններն էլ ընդհատուած են:*

*Առաքինութեան շաւիղները զանազան են, եւ նրանց միջից ընթացողները բազմաթիւ, ինչպէս նախապէս ասացինք: Այս պատճառով մեր յիշած ու դեռ յիշուելիք անձերին պիտի տեսնենք իրենց ազնուական հոգու ուրիշ գեղեցիկ արտայայտութիւնների մէջ եւս, իւրաքանչիւրը գործելով իր ընդունած շնորհքների համեմատ եւ գերազանց ելեւելով առաքինութեան մէկ կամ միւս պարագայի մէջ:*

2.- *Եկեղեցին հաւատացեալների բարեպաշտութեան յագուրդ տալու եւ այն աւելի եւս արծարծելու նպատակով, նրանց ձեռքն յանձնել է միշտ նաեւ սրբազան իրեր, որոնք մեր նախնիքն էլ մեծարել ու փարւել են նրանց բոլոր սրտով: Մեծ է եղել, մանաւանդ, հայ կնոջ նրանց տուած կարեւորութիւնը եւ այդ սրբութիւնների գլխաւորներն էին հետեւեալները:*

*ա.* ***Խաչը****, որով նախ Լուսաւորիչը լցրեց մեր աշխարհը: Ճանապարհների ծայրերը, փողոցների ու հրապարակների մէջ, ասում է պատմիչը, «պահապան եւ ապաւէն զերկրպագեալ ամենեցուն զնոյն նշան կանգնէր[5]»: Ճուտով նաեւ տան մէջ մտաւ, ինչպէս ասում է Յոհան Մանդակունին, յորդորելով ժողովրդին զգուշանալ*

1. ***Աստ***՝ 122: — 2. ***Աստ***՝ 65: — 3. ***Աստ***՝ 130: — 4. ***Հաք. յշա.***: — 5. ***Ագթ***. 587:

կախարդներից եւ բաւական համարել «նչան սրբոյ խաչին, որ առ քեզ եւ ի տան քում հանապազ» կանգնած է, ասում է[1]: Եւ ո՞վ աւելի մօտ էր ապրում նրան, երկրպագում ու պատւում էր քան բարեպաշտ տանտիկինը, որ այն միանգամայն իր ընտանիքի «պահապանն» էր համարում[2]:

բ. **Աւետարանը**, որ կազմում էր երկրորդ սրբութիւնը, եւ որի վրայ մեծ էր Հայոց վստահութիւնն իբրեւ աղբիւր եւ պաշտպան քրիստոնէական կեանքի: «Հայր մեր սուրբ Աւետարանն գիտենք», աղաղակում էր հայ ժողովուրդն Ե դարում, երբ Պարսկաստանը հրաւիրում էր այն արեգակի երկրպագութեան[3]: **Շուշանիկն** «իր հետ ունէր» միշտ մայրենի պապի՝ Ս. Սահակայ փոքրիկ Աւետարանը, եւ իր տառապանքների մէջ «նրանով Աստծուն ծածուկ աղաչում էր[4]», միջնորդ դարձնելով սուրբ մատեանն իսկ: Ցիշեցինք Լեւոն ու **Կեռան** գահաժառանգներին նրան ընծայած մեծարանքն իրենց ունեցած նկարի մէջ, եւ Բռնաւոր ու **Տղայ** ամուսինների նրան աղօթելն[5]: Տեսանք եւս թէ ինչպէս հայ մայրերն իրենց զաւակները նրա նշխարների պաշտպանութեանն էին յանձնում[6], այնքան մեծ էր իրենց հաւատքը:

գ. **Սրբոց նշխարները**, որոնց հայուհու ընծայած ջերմ պաշտօնն յատկապէս չեշտուած է Դ - Ե դարերում, ուր տեսանք սրբոց ու սրբուհիների վայելած բարձր մեծարանքը[7]: Ագաթանգեղոսը պատմական յիշատակից աւելի հայ կրօնասիրութեան սովորական մէկ հանդէսը մեզ մատնանշում է, երբ գրում է՝ թէ Լուսաւորչի առաջին գործն եղաւ՝ նորադարձ Հայաստանի անդրանիկ նահատակ՝ **Հռիփսիմեանց** մարմինները, որ անթաղ ձգւած էին, հողին յանձնելը: Տրդատը հրաման է խնդրում ու ստանում է, անձամբ փորելու նրանց գերեզմանները, եւ արքայական ծիրանին ու սուրբը մի կողմ գցելով բահը բռնում «ըստ փորողի» սկսում է աշխատել: Իր գործակիցներն են **Աշխէն** ու **Խոսրովիդուխտ**, որոնք հանւած հողն «իրենց հանդերձի մէջ ընկալելով դուրս էին ածում» եւ որոնց օրինակը քաջալերում էր նաեւ միւս ազնւատոհմ «կանանց» նոյնպէս վարւելու, «սատարելով ըստ իրենց տկարութեան կանացի ուժին»: Եւ այսպէս «հաւատքով եւ մեծ երկիւղածութեամբ» բացեցին ու չտեմարանեցին փոսերի մէջ հոգեւոր գանձը[8]:

Ղազարը Ցազկերտի բերնում է դնում հետեւեալ նշանաւոր խօսքն Հայոց մասին: «Նրանց կանայք, ուստերք եւ դստերք», ասում էր բռնաւորը, նախամեծար են համարում «փոքր ինչ ոսկորներին» սրբոց՝ քան ոսկու, արծաթէ կամ մարգարտէ

---

1. Մնգ. 202: — 2. Նոյն՝ 200: - 3. Եղշ. 51: — 4. **Սոփ. Թ**, 27: — 5. Աստ՝ 123-24: — 6. Աստ՝ 88-89: — 7. Աստ՝ 145-46: — 8. Ագթ. 574-75, 569:

գարդերին, որ եթէ տային նրանց: Նոյնիսկ աւելի սիրելի յիշատակներ, ինչպէս հայրերի ու մայրերի կողմից նրանց անուան չինուած թանկագին վզնոցներր, «քրիստոնեայ կանայք, ասում էր, չհամարին ինչ հանել յանձանց եւ տալ, եւ գնել փխրանս ինչ յոսկերաց այնպիսեացն»: Իսկ նրանց օգուտն էր՝ պահպանութիւնր վնասներից: Այնպէս, որ նրանցից իր տան մէջ «մի փոքր խրխոր[1]» պահողին «վատ ինչ եւ խորամանկ դէպի նա, նրա տանն եւ սիրելիներին չեն մերձենայ» ասում էին[2]:

Այս յարգանքն հաստատուն է մնացել միշտ հայուհու սրտի մէջ: 1321-ին երբ Կարնոյ Գրիգորիս եպիսկոպոսր նահատակւում էր, մի կին, որ ենթադրում ենք հայ լինելր, գլխի վարչամի մէջ հաւաքեց նրա արիւնր, եւ «վերցնելով տարաւ իր տուն մեծ յոյսով» ասում է վկայագիրր[3]:

Մեր պատմութեան մէջ ծանօթ է Մանաճիրհ Ռշտունու կտորածր Ս. Յակոբ Մծրնացու պատճառով եւ նրա անէծքր, որ չարագործին չուտով գերեզման տարաւ ընտանիքի հետ[4]: Աւանդութիւնն ուզում է, որ սպանողի քոյրն (անանուն) սրբելու համար անէծքր, «հետիոտն՝ ջերմեռանդ հաւատով եւ յորդաբուխ արտասուքով», մինչեւ Մծբին գնայ եւ սուրբի ճկոյթն իր երկիրր բերելով, որ «ազատեց, - ասում է 1445-ի մի յիշատակագիր, - Ռշտունեաց երկիրն սուրբ հայրապետի անէծքից», եւ ճկոյթր հանգչում էր նրա անունր կրող մենաստանի մէջ[5]: Նշխարն ընդունում ենք եւ այն փոխադրող կանացի բարեպաշտութեան գոյութիւնր: Բայց փոխադրութեան աւանդութիւնր չատ հեռու է Դ դարից պատմական համարւելու համար:

Մեծարւում էին սրբերի ոչ միայն մարմնի մասունքր, այլ նրանց յատուկ իրերն էլ: Դարձեալ Խարբերդի Ս. Գէորգ եկեղեցու մէջ թաղուած էր, եւ անցեալ դարում յայտնւեց, մի չիչ միւռոն, որ ըստ յարակից վկայականին (1255 թւականից), օրհնւել էր Ս. Շնորհալու ձեռքով եւ որ Հռոմկլայի աւերման ժամանակ (1293-ին) «երկրորդ Հեթումի քեռին փախցրել էր Հռոմկլայից[6]»: Հեթում արքայի քոյրերից[7] ո՞ր քաջասիրտն էր, որ այնտեղ գտնւելով եւ կամ ուրիչի ձեռքով յաջողել էր ազատել այդ սրբութիւնր, չենք իմանում, մինչ ակներեւ է նրա մեծ կրօնասիրութիւնն այդ գործի մէջ:

դ. **Ուխտատեղիները** նոյնպէս չատ բաղձալի էին մեր բարեպաչտուհիներին, որ գնում էին իրենց սրտի ուղերձները տանելու ոտքով սրբերին կամ սրբութիւններին, որ յարգւում էին նոյն վայրերի մէջ: Պատմութիւնր պահել է մեզ նրանցից որոչների յիշատակն էլ: Արծրունի **Մարիամր**, «կին բարեպաչտօն», ասում է Տարօնի պատմիչր,

---

1. **Փշրանք**: — 2. **Փրպ.** 263-64: — 3. **Հյպ.** 532: — 4. **Փաւս.** 24-25: — 5. **Նոտ.** 137: — 6. **Տաչ. Ցցկ.** 1040. **Թոր. աղբ.** 352: — 7. **Աստ՝** 79:

«յոյժ փափագում էր սրբերին, որ Գլակի վանքի մէջ եւ ուխտի Կարապետին»: Այդ բաղձանքով էլ մի օր գնաց այնտեղ[1], ուր սպասում էր իր եղերական վախճանը[2]: Ն. Լամբրոնացու մայրը՝ Շահանդուխտը, իր որդուն յանձնեց Շնորհալի հայրապետի խնամքին[3], եւ ինքը «գնաց երկրպագութեան Երուսաղէմի սուրբ վայրերի» գրում է պատմիչը[4]: Բայց այդ քաղաքը շատերին ցանկալի էր: Ներքին Խաչէնի տիկինը՝ Խորիշահն եւս գնաց ու մնաց այնտեղ, որ տեսնելու ենք ստորեւ: Այնտեղ ուխտաւոր գնաց 1390-ին տարսոնցի երիցակինն՝ Ըսպիլն[5], եւ ուրիշ շատերը, որոնցից յիշում են կանանց դասից եւ ուխտաւոր յատուկ տիտղոսով «մղտեսի Մելիք» 1280-ին, «մղտսի Շուշանն» 1451-ին[6], եւ այլն:

3.- Մեր նախնիքների կրօնասիրական գործերից մէկն էլ վանքերին օժանդակելն էր որեւէ կերպով, նուէրներով կամ կառուցմամբ եւ այդ գործերի շնորհիւ անդամակցում էին նրանց հոգեւոր կերպով, ինչ որ կոչւում էր «միաբանել», փոխարէնն ընդունելով հոգեւոր մնայուն նպաստներ, պատարագ կամ աղօթք զանազան չափով: Այս սովորութեան հնագոյն յիշատակութիւնն, որ տեսել եմ, ելնում է 854 թւականին, յանձին աշտարակեցի մի կնոջ «Տիկնաց տիկին ամուսինն Արջուկին», որ «միաբանեցի, գրում է, Ս. Մարիանէխս», տալով այգու կէսը եւ ընդունելով տարեկան երկու պատարագ[7]: Այնուհետեւ ունենք ուրիշ օրինակներ եւս, բայց ցանցառ մինչեւ ԺԳ դարը. ինչպէս 1160-ին ոմն՝ Մարկոս եւ կինը՝ Շուշիկը, միաբանում են Դսեղի ուխտին, տալով իրենց «հոգու բաժինը[8]». կամ 1182-ին Վախտանգ Սմբատեանն եւ ամուսինը՝ Նանան, Դատի վանքին ընծայելով մի կալւած ու «մասամբ մեծածախս մի խաչ[9]»:

Ապա ԺԳ դարից սկսեալ, բազմանում են դրանց հետեւողները, որոնք սովորաբար ազնուական եւ կամ հարուստ դասակարգին են պատկանում: Այսպէս հետզհետէ միաբան են գրւում հետեւեալ ամուսինները: Վաչուտեան Վաչէ ու Մամա խաթունը՝ Կեչառու ուխտին (1213), Յովհաննու վանքից (1217) եւ Հաղբատից[10] (1220). Խաչոտ Շեխեանցն եւ Աւագ տիկինը՝ Խծկոնից ուխտին[11] (1221). Սեւատեանց Կուկի ամուսինը Վանենի՝ Խորանաշատի Ս. Աստւածածնին[12] (1224). ոմն՝ Վահրամ ու Փառանց՝ Բագնայրի մենաստանին[13] (1233). պարոն Բունաւորն եւ Տղայ տիկինը՝ Խծկոնից[14] (1240). Առիւծ Գաւեղկեանց ու Մարիամը՝ Դսեղի վանքից[15] (1248). Հասան ու Մամքան

1. Մամ. 9: — 2. Աստ՝ 147-48: 3. Աստ՝ 94: — 4. Պամ. Լմր. 227: — 5. Աստ՝ Ժ, 5: 6. Հւք. յշտ: Արբ. մագաղա=ս. տեղ. մագաղաթ= ս. տեղացի: – 7. Շհխ. Բ. 86: 8. Ջալ. Ա. 109: — 9. Շհխ. Բ. 361: — 10. Անդ՝ 193, 100. Երզ. 26: — 11. Շիր. 128: – 12. Հւք. յշտ.: — 13. Բամ. Հ. 180: – 14. Շիր. 128: – 15. Ջալ. Ա, 109:

*խաչքնեցիք՝ Կեչառից*[1] (1248). *Գարեգին երէցն եւ* ***Մարեմը*** *Բագնայրից*[2] (1267). *Պածած եւ եւ* ***Դուղան*** *Հաղբատի Ս. Նշանին*[3] (1280). *ումն՝ Գիրքն ու* ***Շաքարը*** *Հաւուցթառի ուխտին*[4] (1293). ***Գոնցան*** *կին Վահրամ սպարապետի՝ Նորավանից*[5] (1295). *Հեճուպն եւ* ***Անիփիանը*** *Վանեվանի Ս. Լուսաւորչին*[6] (1320). *Սարգիսն եւ* ***Ամէկը*** *նոյն ուխտին*[7] (1329). *եւ ուրիշ շատերը, որ աւելորդ է յիշել:*

*Եւրոպացիների մէջ այս հոգեւոր կապը, կոչւած եղբայրութիւն երրորդ կարգի, ենթադրւում է հաստատւած է ԺԲ դարի առաջին քառորդին՝ Տաճարական ասպետներից*[8], *ուրեմն մեզնից շատ ուշ:*

4.- *Սակայն մենք ունենք նաեւ ակնախտիղ տեսարանը հայուհիների բազմութեան, որոնք չբաւականացան այդ հոգեւոր եղբայրակցութեամբ մենաստանների հետ եւ յօժարամիտ հրաժարելով ընտանեկան քաղցրութիւններից, աշխարհի հրապոյրներից ու փառքից, գնացին ծածկւեցին կրօնաւորական կեանքի առանձնութեան մէջ, մի կուսանոցի ներսն, երբ Հայաստանը ընձեռում էր այն իրենց եւ հակառակ պարագային իրենք էին ստեղծում իրենց մենանոցը: Նախքան մարմնաւոր աչքերի փակումն իրենց հոգու աչքերը սեւեռում էին յաւերժական լոյսին:*

*Գրիգորի քարոզութեան առաջին օժանդակն*[9] *ու միանգամայն առաջին հայ միանձնուհին եղաւ* ***Խոսրովիդուխտը****, որի կեանքը տեսանք*[10]: *Եկաւ հայ աշխարհի վերանորոգիչը՝ մեծն Ներսէսը, որ իր զանազան բարեկարգութիւնների հետ, շինեց նաեւ պարսպապատ «կուսաստանն ամենայն գաւառի», որոնք հրապուրեցին բարեպաշտուհիների մի բազմութիւն, «կոյսեր եւ հաւատացեալներ» կամ հաւատաւորներ, որ դրանց լցրեցին, նւիրւելով «պահքին ու աղօթքին» եւ իրենց սնունդն ընդունելով հասարակութիւնից եւ իրենց տներից: Սուրբի մահը նոյն կուսանոցների մահն էլ եղաւ, նրա դահճի ձեռքով*[11], *որոնք Ե դարին դարձեալ վերականգնել են, այնպէս որ 450-ին Պարսկաստանը կարող էր պահանջել, որ «այրերն եւ* ***կանայք****, որ բնակւում են իւրաքանչիւր մենաստանում» ցրւէին եւ աշխարհական դառնային*[12]:

*Կամ այդ փոթորիկն, որ պայթեց եւ կամ արաբական անբարոյ տիրապետութիւնն, որ յաջորդեց*[13], *ստիպեց հայերին վերջացնել հաւատացեալների համախմբութիւնը մենաստանների մէջ, որ վտանգաւոր էր նրանց համար: Բայց հրաժարման հոգին զգեցողները մնացին միշտ, առանձնանալով հայրենի տան մէջ կամ*

---

1. ***Ալր.*** 262: — 2. *Բամ. Հ.* 180: — 3. *Ջալ. Ա*, 71: — 4. *Մնկ.* 50: — 5. ***Սակ.*** 198: — 6. ***Սակ.*** 62: — 7. ***Ազ. Հնդ.*** 1913, 52-54: — 8. ***Գող. ԻԳ***, 435-36: — 9. ***Աստ՝*** 112: — 10. ***Աստ՝*** 157: — 11. ***Փաւս.*** 228: — 12. *Եղշ.* 40: — 13. ***Աստ՝*** 127:

*որեւէ պատշաճ եւ ապահով մի տեղ: Եւ պատմութիւնը մեր դիմաց շարում է այնուհետեւ ազնուազարմ օրիորդների եւ տիկինների անունների մի շղթայ, որոնք իրենց կեանքի սովորական պերճութիւնն ու փափկութիւնը փոխանակեցին անշքութեամբ եւ խստամբերութեամբ, եւ որոնց անձերն ու հրաժարման հանգամանքներն հետաքրքրական են անշուշտ: Տեսնենք նրանց ժամանակի կարգով:*

*Պաղեստինի մէջ Համբարձման լերան վրայ մի մենաստան կայ, այժմ ռուսների ձեռքն է, որը մի ժամանակ հայերի սեփականութիւնն էր եղել եւ որտեղ մնում է դեռ մի տապանագիր՝ «երանելի **Շուշանկան** մաւր Արտաւանի»: Մեր տիկնայք, որ գնում ու մնում էին սուրբ վայրերի մէջ, նրանց նպատակն էր ճգնութեամբ անցնել՝ խոկալով փրկչական տնօրէնութեան վրայ: Դրանցից մէկը ցոյց է տալիս տիկնոջն էլ՝ «երանելի» տիտղոսն ու թաղման վայրը: Իսկ ինքն ո՞վ էր: Ե-Զ դարերի մէջ ծանօթ են երկու Արտաւաններ՝ Արշակունեաց տոհմից. մէկը փեսայ Հմայեակի, մեծն Վարդանի եղբօր[1]. եւ միւսն որդի Յովհաննու, որ 537-ին յոյների դաւադրութեան զոհն է լինում[2], իսկ որդին մտնում է կայսրի ծառայութեան մէջ, հանդիսանալով կորովի մի զօրական, բայց ոչ բարոյական մարդ[3]: Երկու անուանակիցներից որի՞ այրիացած մայրն էր Շուշանիկը: Ով էլ լինի, յայտնի է իր առաքինութեամբ, որ իրեն այդ առանձնութեան մղեց:*

***Մեզ ծանօթ Բագրատունի Մարիամը**, տիկին Սիւնեաց[4], այն օրից որ երջանկութեան բաժակը անյապաղ խորտակւած տեսաւ իր ձեռքերի մէջ կենակցին կորցնելու պատճառով[5], իր համար աշխարհն էլ մեռաւ: Իր մայրական պարտականութիւնն անթերի կատարելով հանդերձ մատաղ զաւակների վրայ, իր պալատը մի մենաստանի էր վերածել, այնպէս որ Յովհաննէս պատմիչն այն կոչում է «քրիստոսակրօն եւ ճգնաւոր», կամ «պարկեշտասուն եւ սրբափայլ կրօնով մեծն ի ճգնաւորս», նրա ճգնութեան մեծութեանը մօտ կանգնելով իր տեղեկութիւնների ճղճիմութիւնը: Յուսփայի հարստահարութեան ժամանակ՝ Սահակ ու Վասակ որդիների, հարսների եւ ազատների մի գնդի հետ ապաւինեցին Սեւանայ կղզում, եւ այնտեղ Գարդմանի ամրութեան վրայ, մահու եւ կենաց մէջ մնացած, ուստի 910-ին անցաւ ճշմարիտ ազատութեան վերնագաւառը եւ այնտեղ Գարդմանի մէջ էլ թաղւեց մի առ ժամանակ[6]:*

*Աւելի զարմանալի է տիկնոջ եղբօր՝ Ա. Սմբատի զուգակիցը, նոյն պատմագրի անհոգութեամբ անանուն մնացած, որ ամուսնու կենդանութեան եւ արքայական շուքի մէջ իսկ նկարագրում է՝ «քուրձ, ցնցոտի հագած կրօնաւորեալ Հայոց տիկինն[7]», իր*

---

1. *Զմչ. Բ*, 148: — 2. *Անդ*՝ 241-43: — 3. *Անդ*՝ 246-55: — 4. *Աստ*՝ 97: — 5. *Աստ*՝ 59: — 6. *ՅՀ. կթ*. 287, 288: — 7. *Նոյն*՝ 225:

փառքի պատմուճանը ցեցերին յանձնելով: Կանխել էր ապրել մի արքայի կենակցի կեանքով, որ իր արքունի թագը պիտի մարտիրոսաց պսակի հետ փոխանակէր[1], եւ որ այդչափ լայն ասպարէզ էր տուել կնոջը բարեպաշտութեան մէջ: Հ. Ալիշանը, Տարօնի Աշոտ Բագրատունի իշխանի դստերը նշանակում է այդ թագուհին[2], որ քոյրն էր ուրացող Բագարատայ: Երկու հարազատներ որքա՜ն իրարից հեռու: Իսկ ես հարցնում եմ, ի՞նչ տարբերութիւն կայ մեր այս թագուհու, - որ անանուն չթողնելու համար կարող ենք **Աշոտդուխտ** կոչել,- եւ Անգլիայի Մարգարիտ կամ Հունգարիայի Եղիսաբեթ ս. թագուհիների խստակրօն կենցաղավարութեան միջեւ:

Մի քայլ աւելի առաջ անցաւ մեր թագուհու թոռից՝ Աշոտ Ողորմածի դուստրը **Հռիփսիմէն**, բնաւ չուզելով աշխարհի համը ստանալ, եւ նւիրուելով հոգեւոր կեանքին, ինչպէս ինքն իսկ վկայում է իր մասին՝ «կուսութեամբ մնացի, աշխարհի վրայ ոչ մի յիշատակ ունենալով» իր առաքինի վարքից ու բարի գործերից բացի[3]:

«Բարեպաշտուհի ի բարեպաշտ ծնողներից», եւ **Փառխոսի** (փոքր Սիւնեաց կամ Արցախի մէկ գաւառի[4]) թագաւորների՝ Սենեքերիմի ու Գրիգորի քոյրն էր Կարսի Մուշեղ արքայի լծակիցը, որ երեւում է թէ զզւած աշխարհից, ամուսնու կենդանութեան ժամանակ, որ «բազմաբոյծ բոցիւք կեայր», հազիւ նա փակեց աչքերն ու որդին Աբասը նստեց գահի վրայ, թագուհին «կրօնաւորութեան վարքը յանձն առնելով», գնաց բնակւեց **Թրին** վանք կոչւած տեղի մէջ[5], որ Հ. Ալիշանը Երասխաձորի կողմերն է կարծում[6]: **Փափագելով** իր նոր կեանքի ուրիշ սեռակիցներին եւս հաղորդ դարձնելու համար իր պէս դժբախտների կամ բարեպաշտների համար, այնտեղ «շինեց **Թրի** կուսանոցի վանքը», ասում է պատմական համառօտ մի գրւած ԺԴ դարում[7]: Ուրեմն յանձին այդ դստեր, քրոջ, ամուսնու եւ մօրը թագաւորների, որի անունը նոյնպէս անյայտ է մնացել եւ որ ցանկանում եմ **Փառխուհի** մկրտել, մենք ունենք, հաւանօրէն առաջին յարուցիչը ջնջւած հին կուսանոցի, եւ ստուգապէս առաջին հայ կինը՝ հիմնադիրը, մի կուսանոցի, մեր Բրիգիդայնն, որ իր հիմնարկութեան անդրանիկ հաւատաւորն է լինելու, անտարակոյս նաեւ մայրը, «աղօթքի եւ բարի գործերով պարապելով եւ հոգեւոր առաքինութեան[8]», եւ այդպէս օրինակ ու քաջալերող հանդիսանալով միւս կոյսերին:

Կրկնում եմ. մեր այդ սքանչելի տիկինների մասին պատմիչների չափազանց սակաւաբանութեան եւ անունների իսկ զանցառութեան մէջ՝ դժւար է չնշմարել

1. **Աստ**՝ 96-97: — 2. **Շիր**. 96: — 3. **Սսկ**. 517: — 4. **Արց**. 365: — 5. **Ասղ**. 188, 198: — 6. **Հրպ**. 306: — 7. **Այր**. 548: — 8. **Ասղ**. 198:

*արդիւնքն այն զգուշաւորութեան կանանց հանդէպ, որ նկատեցինք նախընթաց գլխի մէջ, եւ որը ճիշտ հակառակն էր մեր Դ-Ե դարի մատենագիրների պերճախօսութեան, երբ բարձր էր կնոջ յարգը*[1]: *Աւելի մանրապատում է Գր. Մագիստրոսի իր տատի՝* ***Շուշանի*** *մասին, որի ապրած աշխարհական կեանքն*[2] *ու կրօնաւորութեան միջեւ մի քայլ միայն կար: Եւ երբ զուգակիցը վախճանւեց, աստուածասէր տիկինը կատարեց այդ քայլն էլ, «կրօնից արժանացեալ, քուրձ զգեստով, եւ անսւաղ ճգնութեամբ, բազում տարիներ խաչակցութեամբ*[3]*», չենք իմանում ուր, մինչեւ փոխադրւում է դէպի լաւագոյն կեանքը:*

*Միւնեաց Գրիգոր Ա արքայի ամուսինը՝* ***Շահանդուխտը****, որ դուստրն էր Աղւանի Սեւադա թագաւորի*[4]*, եւ «կին ամենօրհնեալ եւ մեծահաւատ բարեպաշտուհի*[5]*», ինքն էլ կենակցի մահւամբ խաւարած տեսաւ աշխարհն ու խզեց իր կապն նրա հետ, իր քրոջ՝* ***Կատայի****, լծակցութեամբ: Սենեքերիմը, իրենց հարազատն ու յաջորդը քեռայրին, ակնարկում է իր այդ «բարեպաշտ եւ քրիստոսազգեաց քերցս իմոց՝ թագուհու Շահանդուխտի եւ սրբասնունդ օրիորդի՝ Կատայի, որոնք լքեցին երկրաւոր փառքն աշխարհի եւ Քրիստոսի երանաւէտ ձայնի հետ ընթացան, ճգնազգեստ առաքինութեամբ»: Թագուհին վախճանում է* 1116 *թւականին*[6]:

*Վարդան պատմիչից յիշւում են ուրիշ երկու «կանայք թագաւորազուններ կրօնաւորեալներ կուսութեամբ՝ Քոբայրն,* ***Խորասուն*** *եւ* ***Մարիամը****», որոնց Հ. Ալիշանը համարեց Կիւրիկեան տոհմից, եւ որոնց Սարկաւագ վարդապետն զգուշական խրատներ էր գրում*[7]*: Ո՞վ կարող էր լինել այդ Մարիամը քան նոյն կուսանոցի եկեղեցին կառուցող ծանօթ բարեպաշտուհին, որի ամուսինն ու զաւակներն էլ արդէն չեն յիշւած, եւ ինքն իրեն անւանում է սոսկ «դուստրը՝ Կիւրիկէի (Գ) թագաւորի*[8]*», որը համաձայնում է պատմագրի «կուսութեամբ» բացատրութեան հետ: Իսկ Խորասուն՝ նրա տոհմակից ու ժամանակակիցն էր:*

*Նոյն Վարդանն ակնարկելով Դաւիթ Բ, Կիւրիկէ Գ եւ Աբաս թագաւորներին միեւնոյն տոհմից, ասում է դարձեալ յայտնապէս, «որոնց կանայք կրօնաւորեալք՝* ***Մամքան*** *եւ* ***Ռուսուքան***[9]*»: Վերջինս հաւանօրէն յիշւած Կիւրիկէի համանուն դուստրն էր*[10]*, այրութիւնից յետոյ հրաժարւած աշխարհից եւ ճգնակից եղաւ իր քրոջը: Իսկ* ***Մամքանն****՝ աւելի քան մի ազգականուհի, իրենց երրորդ քոյրը՝* ***Մամա*** *կամ* ***Մամքանն***[11] *էր, դաստիարակւած իրենց հօգւով, եւ կենակից Հաթերքի տիրոջ՝ քաջ ու բարեպաշտ Հասանի, որ իշխում է քառասուն տարի եւ շատ յաղթանակներ է շահում թշնամեաց*

---

1. *Աստ՝* 145-46: — 2. *Աստ՝* 159: — 3. *Մգ. Թղթ.* 43: — 4. *Սսկ.* 296: — 5. *Օրբ.* 233: — 6. *Նոյն՝* 237, 245: — 7. *Վրդ.* 122: — 8. *Աստ՝ ԺԱ,* 1: — 9. *Վրդ.* 90: — 10. *Աստ՝* 56: — 11. *Աստ՝* 121. ***Ալբ.*** 182:

դէմ: Վեց գաւակների տէր են լինում եւ յետոյ իրենց բերդերն ու գաւառները թողնում են որդիներին, տալով ամենին իրենց վերջին ողջոյնն ու կտակը եւ գաւակներից մէկի՝ Գրիգորի, հետ միասին մտնում են Դադի վանքը, որի առաջնորդն էր իշխանի եղբայրը՝ Գրիգորը, եւ այնտեղ «կրօնաւոր է եղել» գրում է Հասանը եւ «զգեցաք զձեւ միանձանց», կրկնում է տիկինը, իւրաքանչիւրն անձամբ հաստատելով իր կոչումն եւ ուխտը: Նրանց ժառանգներն յետոյ Գետկոյ եկեղեցու մէջ նպաստներ են սահմանում իրենց այդ աշխարհուրաց ծնողների համար[1]:

Օրբելեան Ելիկումի կինը՝ **Խաթունը**, ծնւած ազնւազգի, ամուսնու մահւանից յետոյ արկածալից մի կեանք անցկացրեց[2], եւ նրա վերջաբանը դրեց կրօնաւորութեամբ: «Մեծ ճգնութեամբ ապաշխարեց, ասում է պատմիչը, չատ տարիներ նեղ խրճիթի մէջ», վախճանւեց ու թաղւեց Նորավանքի եկեղեցու դրան առջեւ[3]: Ո՞ւր պէտք է փնտռել մենարանը Շնորհալու «պանծալի» քրոջ՝ «Մարեմի ճգնաւորի» քերթողի իսկ բացատրութեամբ[4], եւ որի համար 1174-ի մի յիշատակագիրն էլ ասում է՝ «այրիութեան եւ ի սրբութեամբ վախճանւեց[5]»: Կամ ո՞ւր էր ննջում Զաքարեան Սարգսի դուստրը՝ **Նրջիսը**, որի աշխարհից կրկնակի հրաժեշտը ծանուցանում է մի տապանագիր Սանահինի մենաւոր լռութեան մէջ. «ճգնաւոր պատրոն Նրջհիսն է[6]», յիշւած եւ այլուր իր դստրի հետ միայն, իսկ ամուսինն անյայտ է: Նրան հետեւողը թւում է իր քոյրը՝ **Նանա** Թագուհին եւս, դատելով իր հոգու խնամելուն նւիրւելով ու այն յատկապէս մի վանականին յանձնելով[7]:

Զուգեց իր քոյրերից յետ մնալ **Խորիշահը**, Ներքին Խաչէնի պատկառելի տիկինը[8], որ կենակցի՝ Վախտանգի, մահն անջատեց նրան աշխարհից: Իր որդին՝ Հասանը, պատմում է, թէ 1216-ին, որ միասին կառուցում էին Գանձասարի իրենց գերեզմանատան եկեղեցին, եւ արեւմտեան լուսամուտը փակեցին, այդ կէտին իսկ, ասում է, «իմ մայրն կրօնաւորեալ՝ գնաց Երուսաղէմ երկրորդ անգամ[9]». բոլոր ունեցւածքը կարօտեալներին բաշխեց եւ ինքն իր ձեռագործով ապրեց միշտ[10], կեանքն անցնելով «ի դրան Ցարութեան քուրձ հագած ճգնութեամբ», եւ զարմացնելով բոլոր տեսնողներին[11], մինչեւ «բազում տարիներով ժուժկալութեամբ ապրելուց յետոյ հանգեց ի Քրիստոս՝ լոյսի վկայութեամբ[12]». այսինքն «կամարաձեւ լոյս կար» գերեզմանի վրայ ուր թաղւեց[13]:

---

1. **Արց.** 203-4: — 2. Աստ՝ ԺԸ, է, 2: — 3. Օրբ. 291: — 4. Շն. Զափ. 165: — 5. Աստ՝ 98: — 6. Սնհ. 30: — 7. Աստ՝ 129: — 8. Աստ՝ 103: — 9. **Արց.** 173: — 10. Կիր. 145: — 11. **Արց.** 173, Կիր. 145: — 12. Արց. 173: — 13. Կիր. 146:

Պապեռոնի կրօնասէր յարկի ներքեւ հանդիպեցինք Կոստանդինի զաւակներից **Հռիփսիմէին**, որ չկարողացան հրապուրել ոչ եղբօրն արքայական պսակը, ոչ հօրն ու հարազատներին վիճակւած մեծամեծ պատիւներն ու պաշտօնները, եւ ոչ քոյրերի ոտք դրած շողշողուն պալատները[1]: Այլ մտաւ խոնարհական վիճակի մէջ, աչքերը դարձնելով անանց մեծութիւնների: Իր եղբայրն Յովհաննէս արք. երկու անգամ խնդրում է յիշել «յաւէտ երջանիկ կրօնաւոր Հռիփսիմէին», կամ «մեր քրոջ կրօնաւոր Հռիփսիմէին» եւ այլն[2], եւ որին դեռ պիտի հանդիպենք 1270-ին եւս:

**Զապէլ** թագուհու չնորհազարդ դուստրերից մէկը՝ **Ֆիմին**[3], տիկին Սիդոնի, որի քաղաքն 1260-ին, երբ աւրւեց Թուրքմենների կողմից, ինքը զաւակներով ապաւինեց Կիլիկիայում՝ հօր մօտ, ուր մնաց վշտակոծ սրտով: Թէ իր եւ թէ կենակցի՝ Յուլիանի համար աշխարհը մթագնած էր: Այդ դժբախտութեան վրայ աւելացաւ նաեւ Թորոս եղբօր սպանութիւնն եգիպտացիների միջոցով 1266-ի պատերազմի մէջ. Լեւոնը հարազատի գերութիւնն այդ առթիւ, (դարձաւ երկու տարւայ), եւ հօրը մահն 1270-ին: Կեանքն այլեւս հրապոյր չունէր Սիդոնի տէրերի համար եւ երկուսն էլ նւիրւեցին Աստուծուն: Տիկնոջ հօրեղբայրն՝ Յովհաննէս արք., նրան ընծայած սաղմոնեան գրոց մէջ, որն անթւական է, ակնարկում է նրա կրօնաւորութեան ասելով. «Անցաւորն այս ծանուցեալ՝ -Անանց թագին այն բաղձացեալ,- Նոր փեսային է հարսնացնել, - Մտից դրախտին արժանացեալ»: Ամուսինը, ասում է Ամադին, չուտով թողեց ցաւերի երկիրը 1275-ին[4], որին տարիներ յետոյ ինքն էլ գնաց հասաւ, ձմռան մի տխուր օր, դեկտեմբերի 2-ին, ինչպէս նշանակում է արքունի Յայսմաւուրը. «Այսօր ի Քրիստոս հանգաւ տիկին Ֆիմի՝ կրօնաւորը, Լեւոն թագաւորի քոյրը[5]»:

Եթէ միւս հայ հաւատացեալների չատերի ճգնարաններն անյայտ են, ընդհակառակն քաջածանօթ է Ֆիմիի կուսաստանը. այն է՝ Կիպրոսի ոստանի «Աստւածածին Երուսաղէմի[6]» (եւ յետոյ Տիւրոսի եւ Բուստրոնէ նաեւ **Կարդուսեան**[7]) կոչւածը,- ներկայ հայ եկեղեցու տեղի վրայ,- որի կոյսերը մեծ մասամբ ազնւականներ, անւանի էին իրենց առաքինութեամբ ու բարութեամբ: Քաջ էր ուրեմն այդ տիկնոջ ընտրութիւնը եւ քաջագոյն նոյն կուսաժողովինը, երբ յանձին հայոց սրբասուն արքայադստեր ուզեցին ու կարգեցին իրենց առաջնորդը. այնպէս որ 1308 թւին այնտեղ մայրապետ է նշանակում Բուստրոնը, յայտնի չէ երբ սկսելով եւ յաջորդ տարին էլ դեռ ողջ է եւ ուղեւոր դէպի Կիլիկիա[8]: Ֆիմին ամուսնացած է 1252-ին, եթէ տասնչորս

---

1. Աստ՝ 100: — 2. Հւք. յշտ. 1263, 1266: — 3. Աստ՝ 101-02: — 4. Առ Անլ. Ա, 144: — 5. Հյպ. 486, 545: — 6. Բուս. 161: — 7. Նոյն՝ 255: — 8. Նոյն՝ 161, 183:

տարեկան էր ըստ Հ. Ալիշանի[1], 1308-ին լինում էր 70, դրա համար 1310-ին արդէն վախճանուել էր, եւ իր պատուաւոր պաշտօնն անցել էր դարձեալ ուրիշ մի (կէս) հայուհու՝ իր **Մարիամ** հօրաքրոջ եւ Ցոհան Իբլինացու դուստրին՝ **Մարգարտին**, որ Ամադի անուամբ ու պաշտօնով դնում է յիշեալ կուսաստանի մէջ[2] եւ Բուստրոն՝ «Ս. Ղազարի[3]» մէջ, որի գոյութիւնը պատմիչից միայն գիտենք, ասում է Անլարտը: Բակուրանը հեռանում է այդ աղբիւրներից, յայտնի է, որ վրիպումով, Ֆիմիայի յաջորդը նշանակում է նրա քրոջը՝ **Մարիամին**[4]: Որոնեցի եւ Կիպրոսի մահարձանների մէջ էլ որոնել տուի հայ մայրապետի անունն, որը չգտնուեց: Գուցէ 1309-ին մեռաւ ու թաղուեց Կիլիկիայի մէջ, որով Ցայսմաւուրն էլ կարողացաւ նշանակել ճիշտ օրը:

Ակնարկեցինք Լամբրոնի մեծ աստուածասէր տիկնոջ՝ **Շահանդուխտին**, որ իր հետ կուսանոց տարաւ ոչ միայն իր դուստրերին, որոնց պիտի դառնանք քիչ յետոյ, այլ իր օրինակով ուրիշներին էլ իր հետագայ տոհմակիցներից. ինչպէս իր **Թագեր** դուստրի երկու զաւակներին. Ներսէսը՝ սնանելով ու քահանայանալով Սկեւռայի մենաստանի մէջ, եւ **Մարիամը**՝ նոյն «զանձուկ ընթացից ուղղոյն բուռն հարկանելով», ըստ որի գրում է իր հարազատը «նախանձարկութեամբ» իրենց «օրհնեալ» քեռու՝ Ներսէսի:[5] Այս օրիորդին, որի հայրենի տոհմն անծանօթ է[6], յաջորդեց **Թեւանուն**[7], որ նախ զետեղեց իր զաւակները, հայոց գահի վրայ նստեցնելով մեծն **Կեռանին**[8], եւ Կիպրոսի սենեսկալուհու պաշտօնին տալով Ալիծին, «արժանին յիշատակելու զաստուածասէրն եւ բարեպաշտուհին» ըստ Ստ. **Գոյներ** երէցների[9], իսկ երրորդին՝ **Մարիւնիի**, աստուածապաշտութեան հանդէսը տեսնելու ենք[10]: Այդ քաղցրութիւններից յետոյ տիկինը քամեց կեանքի դառն բաժակն էլ, ականատես լինելով իր սկեսրայր՝ Կոստանդինի, սրախողխող վախճանը, - յայտնի չէ ո՛ւր եւ ի՛նչպէս,[11] - եւ ապա Հեթումի՝ կենակցի, նահատակութիւնը մարտի մէջ, ինչպէս գրում է Ցակոբ եպիսկոպոսը[12]: Մնաս բարեա՛ւ աշխարհ, եղաւ իր վերջին խօսքը, եւ հագաւ թուխ սքեմը, նոյն յիշատակագրի կողմից կոչուելով «մեծազարմ եւ բարեպաշտ կրօնաւորը Թեւանու», կամ «ճգնազգեստ եւ բարի անուն տիկնանց տիկին՝ կրօնական վարքով ճգնող» եւ «խաչ ընդ ուս բարձող[13]»:

Հետաքրքրական է պարագան նաեւ երեւանցի **Աճապխան** անունով տոհմիկ տիկնոջը,- ԺԷ դարի սկիզբները,- որ անհամաձայնութեան հետեւանքով մի ժամանակ

---

1. *Ցշկ. Բ*, 470: — 2. *Ար Անլ. Ա*, 144: — 3. *Բուս*. 211: — 4. *Կիպ*. 62, 111: — 5. *Սիս*. 99, ծն. 3: — 6. *Անդ*՝ 67-8: — 7. *Անդ*՝ 95: — 8. *Անդ*՝ 161: — 9. *Հաք. յիշ*. 1310: — 10. *Անդ*՝ ԺԴ, 6: — 11. *Սիս*. 85: — 12. *Անդ*՝ 95: — 13. *Հաք. յիշ*. 1274:

*բաժանւած է ապրում իր ամուսնուց՝ Յովհաննէսից: Յետոյ հաշտւում են եւ իրենց անմիաբանութեան լաւագոյն լուծում տալու համար այրը կրօնաւոր է դառնում Սեւանայ վանքում, իսկ կինն իր դստեր՝* **Լուկիայի** *հետ «մտնում են կուսանոցի վանքը եւ լինում են հաւատաւոր կանանց կարգը» եւ անունը փոխելով կոչւում է* **Աթանասիա**[1]:

*Ահա մի պատկառելի գումար մեր ազնւազարմ հաւատաւորների, որոնցից չորսը թագուհիներ են, ութն արքայազուններ, տասնչորսն իշխանազգիներ եւ երկուսը տոհմիկ եւ որոնք իրենց որակով ու թւով պատիւ են բերում հայկական հին աստւածապաշտութեան: Դարձեալ դրանցից ինն հոգի պատկանում են Բագրատունեաց տոհմին, վեցը ծնունդով եւ երեքը թագուհիներ ամուսնութեամբ, ինչ որ հազար ու մի եկեղեցիների Անին կերտող այդ մեծ ազգատոհմի փառքն են կազմում: Լամբրոնի տունը պարծենում է նրանցից հինգով, Պահլաւունեացն երեքով, եւ Զաքարեանցը նոյնպէս: Եւ սրանք պատահաբար յիշւածներն են միայն:*

*Նկատելի է, որ այդ յիշւածներից մեծ մասն այրիներ են, բայց մենք տեսանք նաեւ կուսանոցների գոյութիւնը մեր Դ եւ Ե դարերում*[2]*: Ասացինք եւս թէ բարբարոսների տիրապետութիւնը մեր աշխարհի վրայ ստիպեց փակել կուսանոցները, որով մեր հաւատաւորներն առանձին էին բնակւում: Այսպէս Ը դարում, Սիւնեաց Ստեփանոս եպիսկոպոսի քոյրը՝* **Սահակդուխտը,** *«մանկութիւնից ստացել է կուսութեան վարքը», ճգնում էր Գառնիի ձորակի մէջ «այրի մէջ»*[3]*: Սակայն ապահով շրջաններում կամ կողմերում կուսաստանները նորից բացւում ու լցւում էին: Եւ մեզ ծանօթ են Թրին վանքը*[4]*. Անիի մէջ համախումբ բնակող «սուրբ կոյսեր» յիշւած* 1296-*ին*[5]*: Սմբատի կանոնական սահմանը «կանանց վանքերի» վերաբերեալ՝ ԺԳ դարից*[6]*. Սիւնեաց մէկ «կուսանոցը» ԺԴ դարում*[7]*, Աճապխանի մտած վանքը*[8]*: Սիւնեաց Հալիձորի անապատը՝ յիշւած* 1653-*ին եւ* 1698-*ին*[9]*. Շնհերի մենաստանը՝ նոյնպէս ի Սիւնիք* 1673-*ին*[10]*. Արագածի մօտ Կարբւոյ կուսանոցն՝* 1685-*ին*[11]*. Ղարաբաղի Աւետարանոց աւանի մենանոցը. հիմնւած կամ վերաշինւած* **Հռիփսիմէ** *մայրապետի կողմից, ինչպէս գրում է իր կրտսեր քոյրն ու վիճակակիցը՝* **Գայիանէն** 1671-*ին, կոչելով բնակիչներին «աստւածասէրներ եւ բարեպաշտուհիներ սրբասնունդք եւ կուսակրօնք*[12]*», չհաշւելով հայ աշխարհից դուրս գտնւածներն էլ:*

---

1. *Զք. սրկ.* *Ա*, 54: — 2. *Աստ*՝ 167: — 3. *Օրբ*. 101. *իսկ Խաթուն «ի խրճթի»աստ*՝ 171: — 4. *Աստ*՝ 169: — 5. *Կիր*. 140: — 6. *Սմ. Օր. ԼԴ*: — 7. *Հյպ*. 584: — 8. *Աստ*՝ 173: — 9. **Մոկ.** 257. **Հաք. յշտ.** 1372: — 10. **Մոկ.** 259: — 11. *Գրչ. Թ*. 589 **Ս**. *Ղզր*: — 12. *Ջալ. Բ*, 246:

Եւ այդ ամէն մենաստանների մէջ խառնուած էին տոհմիկն ու ռամիկն միասին, բոլորը միանգամայն ազնուականացած հոգով, դարձած հարսեր երկնաւոր փեսային, թաղուած իրենց հոգեւոր խոկման ու վերացումների մէջ, եւ կանգնած հայ ազգի պահպանութեան ու փրկութեան համար աղերսարկու հրեշտակներ: Միանգամայն վկայելով ապագայ բարեպաշտին ու մարմնապաշտին, թէ որքան յարգի էր աւետարանական խրատը նաեւ հին հայ կանանց դասին, երբ քրիստոնէական բարոյականի սահմաններն աւելի ամուր էին մեր ազգի մէջ: Կուսանոցների ծագման, ներքին կազմութեան, կարգերի ու կենցաղավարութեան մասին առանձին գրել եմ[1]: Իսկ մեր հին առաքինեաց առ Աստուած հաւատքի եւ սիրոյ չքեղագոյն հանդէսը տեսնելու ենք այս գրքի ԺԶ գլխի մէջ:

5.- Մեր այս գլուխը փակելուց առաջ հրաւիրում եմ ընթերցողներին հետեւել ինձ դէպի Սկեւռայի մենաստանն, որ գտնւում է Լամբրոնի անմատոյց ամրոցի[2] ստորոտում եւ սրբարանն ու վերջին քնարանն է նոյն դղեակի տէրերի: Գնում ենք հանդիսատես լինելու սրտայոյզ մի տեսարանի, որ կատարւելու է նոյն ուխտի Աստուածամօր տաճարի նւիրական որմերի մէջ:

Իբր 1190 թւականի մէջ ենք, գարնան մի ծիծաղկոտ օր, ուր նոյն սրբավայրը ցնծում է Կիլիկիայի հայ, լատին եւ յոյն ազատանիների ներկայութեամբ: Իշխանների, տիկնանց եւ օրիորդների մի ամբոխ, որ եկել են տեսնելու աշխարհից հրաժեշտն իրենց վիճակակից ու կենցաղակից երեք ընտրեալ հոգիներու: Այդ շողշողուն բազմութեան մէջ աչքի են ընկնում իրենց տխրամած կերպարանքով Լամբրոնի տէրը՝ Հեթումն, եւ իր զաւակներն՝ Օշին, Կոստանդին եւ Աւխծ, որ շրջապատում են նրան: Իսկ բեմի վրայ բազմած մի եպիսկոպոս է երեւում, զգեստաւորւած սրբազան ճոխագոյն հանդերձով, սպիտակ կնգուղը գլխին ու հովւական ցուպն ձեռքում, ընկղմած իր խորհուրդների մէջ: Երիտասարդ մի կղերական է երեսունեօթ տարեկան, առոյգ, որ աւելի փայլ է ընծայում իշխանական գեղեցկութեանն, որ սքողում է նրա ամբողջ անձն ու դէմքը[3]:

Սպասումն երկար չի տեւում եւ տաճարի դռան առջեւ է հասնում ու կանգ է առնում չքեղ մի տիկին, մի զոյգ նազելի օրիորդների հետ, որ բոլորի աչքերն նրանց են դառնում եւ խոնարհում են իրենց գլուխները: Տիկինն ըստ երեւոյթին արդէն իր աշնան սեմին է, մինչ իր ընկերուհիների վրայ ամառն է սաւառնում: Հագել են իրենց ազնուական աստիճանի համեմատ եւ գլուխները թանկագին քօղերով ծածկել են[4]: Եպիսկոպոսն իսկոյն ելնում է, նրանց ընդառաջ գնում եւ ողջունում է նրանց, հոգեւոր

---

1. *Բզմ.* 1923, 12 եւն: — 2. *Աստ*՝ 63-64: — 3. *Աստ*՝ 105: — 4. *Աստ*՝ 116:

ցնծութեան փայլն երեսին: Այդ բարձր եկեղեցականն է Լամբրոնի հանգուցեալ տիրոջ՝ բարեպաշտ Օշինի որդին, եւ հին հայ սրբազան բեմի մեծագոյն զարդերից՝ Ներսէսը, առաջնորդ Տարսոնի: Իսկ տիկինը նոյն ամրոցի տիրուհին՝ **Շահանդուխտն** է, իր սիրասուն դուստրերի՝ **Շուշանի** ու **Տալիթայի** զոյգ շուշանների հետ: Ներսէսն ընդունում է, ուրեմն, իր սիրական մայրիկին ու քոյրերին:

Սնուած ու սնուած Պահլաւունի Շահանի աստուածավախ յարկի ներքոյ, արիւնառու եւ ապրած սերտ հաղորդակցութեան մէջ չորս երեւելի հայրապետների, որոնց երկուսը հօրեղբայրներն էին՝ Գրիգորիսն ու Ներսէսը, հօրեղբօրորդին՝ Գրիգոր Տղան, եւ իր կաթողիկոսացու հարազատը՝ Գր. Ապիրատը, որոնք իրարու յաջորդեցին[1], իր հայրենի բարեպաշտութիւնը Շահանդուխտը տարել եւ զուգել էր Հեթումեան քաջածանօթ աստուածսիրութեան հետ[2]: Ամուսնու կենդանութեան ժամանակ եւ դեռ շրջապատուած «բարեզարդ զաւակներով[3]», նոյն յիշատակագիրը գովում է «սրբասէր եւ ճգնազգեաց», եւ Սմ. Սկեւռացիից՝ «ամենաբարի եւ ճգնազգեաց[4]» բառերով. աշխարհի մէջ է եւ արդէն աշխարհից դուրս: Անցան տարիները եւ նրա կատարած օրինակելի տանտիկնութիւնը, զաւակներին տուած սքանչելի դաստիարակութիւնը[5]. արտասուքով Սկեւռայի դամբարանին յանձնած ամուսնուն, **Մարեմ** դստեր ու Գրիգոր զաւակի հետ[6], եւ տեսել էր Հեթում որդուն՝ հայրենի ու Ներսէսին՝ Տարսոնի աթոռների վրայ, այլեւս հաշիւ չունի անցաւոր աշխարհի հետ եւ սկսել էր ապրել քաղցր երազով հանդերձելու, որի հետ կապել էր իր սրբասուն դուստրերի սրտերն էլ եւ երեքը միասին եկել են կնքելու իրենց հրաժեշտի ուխտը անխուսափելի մահով աշխարհը թողնելու:

Երիտասարդ արքեպիսկոպոսը, շրջապատուած սարկաւագներով եւ սարկաւագուհիներով[7], տաճարի դռան առջեւ սկսում է սրբազան արարողութիւնը: Սաղմոս եւ ընթերցւածներ, որոնց յաջորդում է Ներսէսի աղօթքը, հայցելով երկնից շնորհներն իր սիրելիների վրայ: Յետոյ ակնարկում է եւ սարկաւագուհիները վերցնում են նրանց ազնուական քօղերը, բացում են գեղեցիկ գօտիները, հանում են շողշողուն փիլոնները, մերկացնում են աշխարհից ու թողնելով նրանց միայն պատմուճանով: Նրանց գլխին գցում են թուխ ու լայն քօղեր, նրանց տալիս են մի զոյգ վառուած մոմ, եւ ծունկի են իջեցնում: Առաջնորդը, որի համար ծածուկ բան չկայ նրանց սրտի խորքում, այն հանդիսականների համար եւս բացելու նպատակով, հարցնում է համառօտ ու վճռական բառերով, թէ ի՞նչ պատճառով են ընտրում կրօնաւորական վիճակը եւ

1. *Աստ*՝ 31, 98: — 2. *Աստ*՝ 94: — 3. *Անդ*: — 4. *Պատմ. Լմբ*. 234: — 5. *Աստ*՝ 94-95: — 6. *Պատմ. Լմբ*. 234: — 7. *Աստ*՝ 152-53:

կարողանայո՞ւ են տոկալ նրա նեղութիւններին: Նրանց հաստատական պատասխանի վրայ Ներսէսն ասում է. «Եթէ այսպէս է, մտէ՛ք խաղաղութեան մէջ»: Ոտքի է կանգնեցնում նրանց, որ իր ետեւից եկեղեցի են մտնում, եւ յուշիկ քայլերով առաջանում են դէպի խորան, հանդիսականների սեւեռուն աչքերի դիմաց:

Հասնում ու ընկնում են Սուրբ Սեղանի առջեւ, ուր երկրորդ պաշտամունքից յետոյ, Ներսէսը հոգեւոր հայր դարձած իր սիրելիներին, նստում ու խրատում է նրանց պերճախօս ու դողդոջ ձայնով,- որ մատնում է իր ներքին խռովումը,- մոռանալ Լամբրոնի փառքը, իրենց ազնւականութիւնը, սիրելիներին որ թողեցին, այդ ազնւաշուք դաստակերտը, որ եկել է սքանչանալու նրանց նւիրման վրայ, մոռանալ ամէնն ու ամէն բան: Ապա հրամայում է եւ նրանք իրենց ձեռքով վերցնում են մկրատը սեղանի ոտքի մօտ դրւած ու յանձնում են նրան ի նշան իրենց յօժարակամ նւիրման եւ նա սկսում է կտրել նրանց գեղեցիկ ծամերը հինգ տեղով. նախ ճակատին, ապա գլխի վրայ Ս. Երրորդութեան անունը տալով, որին նւիրւում են: Յետոյ կանգնում են դէպի ժողովուրդը, բարձրացնում են իրենց փափուկ ձեռքերը եւ հանդիսապէս արտասանում աշխարհից հրաժարման ուխտը, որ թելադրում է առաջնորդը:

Այդ պահին խոր յուզում է պատում հանդիսականներին, շատ աչքեր արտասւում են. Լամբրոնի տէրն ու զաւակները չեն կարող զսպել իրենց հեծեծանքը եւ Ներսէսի ու նւիրեալների տամուկ բիբերի մէջ շողում է արեւից աւելի երկնային լոյսի ճառագայթը: Սարկաւագուհիներն աւանդատուն են տանում նորընտիր հաւատաւորներին, միասին վերցնելով սեղանի ոտքի մօտ դրւած նրանց կրօնաւորական հանդերձն էլ: Այնտեղ նրանց գլուխները խուզում եւ հագցնում են նոր ձեւով եւ ապա նրանք դուրս են գալիս թաղւած իրենց սեւ պարեգօտի, սեւ կրկնոցի եւ սեւ քողի մէջ[1]: Լամբրոնի շքեղափայլ տիկինն եւ օրիորդներն այլեւս չկան, այլ երեք սգաւոր աշխարհից հրաժարւածներն, որոնց առաջնորդն այստեղ նոր անուններ էլ դնում է. մօրը՝ Մարիամ[2], Նրա պաշտած Աստւածամօր[3] անունը, քոյրերին՝ այլ, որ անծանօթ են: Յետոյ Ներսէսն աջը դրած նրանց գլխին, տալիս է քահանայապետական վերջին օրհնութիւնը, բեմի վրայ է բարձրացնում նրանց, որ իր հետ խոնարհւում ու երկրպագում են Ս. Սեղանին: Ապա իջնում են ցած: Մարիամի Հեթում որդին ու թոռները մօտենում են, արտօսրալից աչքերով ողջագուրւում են սիրելիների հետ, որ իրենցից բաժանւում են ընդ միշտ, խոնարհւում ու ողջունում են բոլոր հանդիսականներն էլ: Զոհը կատարեալ է

1. Հմմտ. **Պատմ. արք.** 439-40: — 2. «Մայր սոցին (Օշինի զաւակների) **Մարիամ** կրօնաւոր». **Հուշ. յշտ.** 1195: — 3. Աստ՝ 105:

*այժմ: Ներսէսին, որ մայրենի բարեպաշտութիւնն Աստծուն էր նւիրել*[1]*. հիմա իր կարգին մօրն ընծայեց Աստծուն՝ երկու քոյրերով հանդերձ:*

*Այս նկարագրւածը կազմեցի ԺԱ դարի մաշտոցի (Ս. Ղզր. մէջ) սքեմարկէից կանոնից, որ յատուկ էր «արանց եւ կանանց», եւ Սամուէլ Սկեւռացու 1190-ին գծած համառօտից. «Սրանց մայրը՝ Շահանդուխտը, ամենաբարի եւ ճգնաւորի զգեստով, այժմ կրօնաւորեալ իր որդու ձեռքով սբ. հօր (Ներսէսի), երկու դուստրերի՝ Շուշանի եւ Տալիթայի, որոնք նոր ճգնողների ճանապարհին հետեւեն*[2]*»: Իսկ 1195-ի մի յիշատակագիր արդէն իր գերագոյն նպատակին հասած է նշանակում տիկինը Շուշանի հետ: Շահանդուխտը հրաժարւելով Լամբրոնից, կարող ենք ասել, թէ նրա փառքն ու բախտն էլ իր հետ միասին մեկնեցին: Մեծ հաւատաւորը շուտով վերացաւ նաեւ երկրից, որպէսզի չտեսնէր տխուր վախճանն իր դղեակի եւ անդրանիկի, որին հանդիսատես եղանք*[3]*. ամենաազդող ապացոյցն աշխարհի ունայնութեան, որ կանխեց զգաց- եւ օրինակովն զգալ տւեց ապա որդուն էլ - եղբօրորդին Հռոմկլայի անուշ քերթողին, որ երգեց. «Քեզ միշտ մօտ ճանաչիր – Մահւան քունն եկաւ, - Քննող դատաւոր»:*

*Այդ քունը խնայեց այդ տիկնոջ՝ նախքան պատահարը տեսնել պայքարը նաեւ իր միւս որդու՝ Ներսէսի դէմ, Ռուբինեան իշխողին, որ 1198-ին անգիտակցաբար ձայնակից եղաւ նրա արեւելեան հակառակորդներին, որոնք պահանջում էին Տարսոնի առաջնորդից՝ հրաժարւել իր ազատախոհ ընթացքից միւս քրիստոնեայ եկեղեցիների հանդէպ. ազատախոհութիւն բխած յիսուսաւանդ սիրոյ մեծ պատւիրանից, որ գրաւել էր իր միտքը, եւ իրեն ձերբազատում էր հին նախապաշարումներից, ինչպէս վկայում են իր սքանչելի Ատենաբանութիւնն եւ Լեւոնին ուղղւած Թուղթն, իր մտքերի զոյգ հայելիները: Այդպէս էր դաստիարակել իրեն Պահլաւունեաց դուստրն ու Լամբրոնի ազատ կատարը*[4]*:*

*Այդ դղեակի մեծութիւնն եւ ոյժը, բարձրաբերձ ժայռից ու թանձր պարիսպներից աւելի պտուղն եղաւ իր մէջ թառած աստւածապաշտութեան եւ սրան էլ հնոց՝ «հանգստարանն սուրբ ու գլխաւոր Առաքեալի նշխարների», որ առաջին տէրն՝ Օշին Ա., «պատրաստեց նախ բերդի ծայրի մէջ» եւ այդ նշխարները, գրում է Սամուէլը, բերել էր Հայաստանից Ապլխարիպ Արծրունին*[5]* եւ «հրամայեց հպատակութեամբ սպասաւորել այդ դղեակի սուրբ Առաքեալին*[6]*», ուր յետոյ ինքն էլ հանգչեց*[7]*: Այդ բարեպաշտութեան ու բարեպաշտից, այդ Ս. հանգստարանին, այդ մեծութեան ու*

---

1. *Անդ*: -- 2. *Պտմ. Լմբ*. 234: — 3. *Աստ*՝ 64: – 4. *Աստ*՝ 60, 94, 145: — 5. *Աստ*՝ 67: 6. *Նշխարների յարգանքը տեսանք աստ*՝ 164-65: -- 7. *Պտմ. Լմբ*. 225:

*զօրութեան փոխարէն Տարօնի ահեղ գահաւանդի վրայ հանդչում է այսօր ընդարձակ եւ սարսռաբեր մի կո՛յտ աւերակներ:*

*Ո՜վ դարեր, ո՛վ բախտ:*

## ԳԼՈՒԽ Թ

### *Զարութեան մէջ*

*Լոյսից՝ որում ապրեցինք անցնում ենք խաւարին եւ մեր այս, գործի մէջ ոչ մի զարմանալի բան չկայ: Չի կարելի պահանջել, որ մի ազգի բազմադարեան գոյութեան մէջ հանդիսատես լինէինք միայն առաքինութիւնների, եթէ խնդիրը, նոյնիսկ, այն սեռի չուրջ դառնայ, որ նախախնամութիւնը զարդարել է բարեպաշտութեան ու պարկեշտութեան մեծագոյն զգացումով եւ որի ամբողջութեան մէջ անմռէպ բաժինը ունի հակառակորդ սեռը: Ո՞ր ծառի պտուղների մէջ չեն գտնւում փտածներ էլ, որ հարկ լինի զատել լաւերից բարձրացնելով նրանց յարգը: Զպէտք է վարանեմ, ուրեմն, ի տես դնելու հին հայուհու նաեւ բարոյական արատներն, առանց որի մեր ծանօթութիւնն նրա մասին անկատար պիտի լինէր, եւ նրա առաքինութեան մեծութիւնը նուազ զգալի:*

*Հայ կնոջ բարոյականն համեմատաբար եղել է միշտ մեր ազգի մէջ տիրող ընդհանուր բարքերի հետ: Բարքերն էլ ենթակայ են եղել իշխող կրօնների ու քաղաքական հոսանքների: Այսպէս մեր հեթանոսութեան կամ այլակրօն ցեղերի տիրապետութեան ներքեւ հայուհին մասամբ քայքայերւել ու տարւել է անբարոյութեան, մինչդեռ քրիստոնէութեան եւ սրա յարակից ազգային անկախութեան շրջաններում աւելի բարձր մակարդակի վրայ ենք գտնում նրան: Այս պատճառով ստիպւած ենք մեր խնդրի քննութեան մէջ հետեւել ժամանակին քան նիւթերի կարգին, տեսնելու համար յեղաշրջութիւնն, որ հետզհետէ կատարւում է:*

1.- *Բարձրանում ենք մինչեւ քրիստոնէական թւականի սկիզբը, ուր կապադովկացի Ստրաբոնը, մեզ նկարագրում է Անահիտի*[1] *պաշտամունքի ընդարձակութիւնն Հայաստանի մէջ եւ «տաճարները զանազան տեղեր եւ մանաւանդ Ակիլիսենէի (Եկեղեաց) մէջ*[2]*»: Այդ շրջանին մեր դիցուհին բոլորովին տարբեր մի կերպարանք ունի քան այն, որ մեզ ծանօթ է: Դեռ հեշտասէր դեռատի է, հայոց*

---

1. *Ցն. նոյն կոչումն է:* — 2. *Ստ. Աշխ. ԺԱ, ժդ*, 16:

Ափրոդիտէն, եւ յունականի պէս էր ու մնաց «ծնունդ մեծն արի Արամազդի, ... որին ամէն թագաւորներն են պատւում, մանաւանդ Յունաստանի թագաւորը[1]»: Ուրեմն բոլորովին նոյն յունականի հետ եւ նրա պէս պաշտպանն ու քաջալերողը ցանկասիրութեան, որով մեր կոյսերից ծանր եւ նրանց անձերի ու ցեղի անարգիչ պահանջներ ունէր: Երիզայի մեհեանի մէջ, պատմում է յոյն աշխարհագիրը, ոչ միայն «ծառաներն եւ աղախիններն» անձնատուր էին նրա անպարկեշտ պաշտամունքին, «այլ նոյնպէս ազգի ազնուական կոյս դուստրերն եւս նուիրւում են նրան եւ սովորութիւն է, որ երկար ժամանակից յետոյ» այդ զեղծ կեանքը վարելու «դիցուհու մօտ, ապա ամուսնութեան են տրւում, եւ ոչ ոք անարժան է համարում այդպիսի կանանց ամուսին ունենալ»: Եթէ այդ աղջիկներն երկար էին մնում մեհեանի մէջ, յայտնի է՝ թէ սահմանաւոր թւով անձեր էին՝ Հեստեան կոյսերի պէս, բայց մեր Անահիտեանները զուրկ էին նրանց զգաստութիւնից:

Այս խորշելի տեսարանին լոկ Հայաստանի մէջ չենք հանդիպում: Ստրաբոնից հինգ դար առաջ Հերոդոտը պատմում է նաեւ Բաբելոնի դուստրերի մասին, թէ բոլորն էլ ստիպուած էին իրենց կեանքի մէջ մի անգամ յանձնուելու մի օտարականի՝ Միլիտտա դիցուհու տաճարի մէջ: Գրեթէ նոյնն էր լինում, ասում է, նաեւ Կիպրոս կղզու մէջ[2]: Նոյն լպիրշ պաշտօնը մատուցանում էին Քանանում, Փիւնիկէում եւ Սիդոնում իրենց Աստարտա դիցուհուն[3]: Իմաստութեան ու նրբագոյն քաղաքակրթութեան մայրն՝ Հելլադան, իր կոյսերին նուիրելով Ափրոդիտեան տօներին եւ որի ծագումն շատերն[4] արեւելքից են կարծում, ինչպէս եւ մերը:

Միեւնոյն անամօթն էր ուրեմն հայ Անահիտն էլ, որ Հայաստանի դուստրերին անարգութիւնն էր պարտադրում: Եւ նրանց հոմանիները, յարում է Ստրաբոնն, այնքան խնամքով էին հետեւում, որ հիւրեր էլ ընդունում եւ յաճախ նրանց պարգեւներ էին տալիս քան վերցնում, այնչափ լի էին նրանց տները բարութեամբ: Եւ ամենուն օթեւան չեն շնորհում, ասում է, այլ վիճակով իրենց հաւասարին[5], գուցէ նրանցից էլ իրենց համար ամուսին գտնելու նպատակով[6]: Չենք իմանում թէ Անահիտն ե՞րբ «մայր ամենայն զգաստութեանց[7]» դարձաւ մեզ մօտ: Անշուշտ երբ պառաւեց, ինչպէս երեւում է «մայր» կոչումից եւ երբ քրիստոնէութեան արշալոյսն սկսեց փայլել մեր հայրենիքի շուրջը, նախքան իր մաքրագործ ջերմութիւնն անցկացնելով մասամբ այդ հեթանոս աշխարհից ներս,- ինչպէս սրբել էր փոքր ի շատէ միւս դիցապաշտ ազգերի բարքերն էլ[8].-

---

1. Ագթ. 51-52: — 2. Հեր. Ա, ճղթ: — 3. Վիգ. Ա, 1180. Գ Թագ. ԺԱ, 5. Ովս: Դ, 13, 14: - 4. Դրմբ. Ե. 722, 727. Գ, 172: — 5. Ստ. Աշխ. ԺԱ, ժդ, 16: — 6. Հմմ. աստ՝ 30: — 7. Աստ՝ 110: - 8. Հմմտ. Գլզ.59:

*մինչեւ Գրիգորի խաչն ու Տրդատի սուրը բոլորովին վտարեց Անահիտին Հայոց տիկնութիւնից եւ աշխարհից*[1], *գնալ ապաշխարելու հին մեղքերը:*

*Հ. Ինճիճեանը կասկածով էր նայում Ստրաբոնի այդ տեղեկութեան*[2]*: Բայց այդ կապադովկացին թէ ժամանակակից եւ թէ այնչափ մօտ էր մեր աշխարհին, եւ այնքան մանրամասն է իր տեղեկութիւնների մէջ, որ այդ տարակուսանքին տեղ չի մնում: Եւ միթէ կարելի՞ է բարոյականութիւն պահանջել հեթանոսութիւնից, որ աստուածացրեց ախտերը:*

2.- *Այժմ գտնւում ենք նշանաւոր Դ դարում, որում Փաւստոսը վկայում է, թէ Հայերը քրիստոնէութիւնն ընդունել էին «միայն իբրեւ մարդկութեան կրօն ինչպէս իրենք էին, եւ ոչ ջերմեռանդ հաւատքով». եւ այն «ի հարկէ*[3]*», այսինքն Տրդատի զէնքի բռնութեան ներքեւ*[4]*. բացի մի դասակարգից, որ շնորհիւ իրենց սովորած յունարէնի կամ ասորերէնի, աւելի հմուտ ու հետեւող էին Աւետարանի վարդապետութեան*[5]*: Եւ մեր տոհմային ընդհանուր կենցաղի մէջ, իշխողը դեռ հեթանոսութիւնն է՝ քրիստոնէական դիմակի տակ, իր հարճերով, կնաթողութեամբ*[6]*, կոծերով մեռելների վրայ*[7]*, ոճիրներով, ինքնասպանութեամբ հովւապետների եւ ծածուկ կամ յայտնի կռապաշտութեամբ*[8]*: Եւ եթէ լսենք Խորենացուն, մեր նախարարները կրօնից աւելի ունկնդիր էին իրենց կանանց ու հարճերին, քան բարեպաշտ Տրդատի ձայնին, որ եւ լռեցրին յաւերժաբար*[9]*:*

*Կրօնական ու հոգեկան այդպիսի պայմանների մէջ, անշուշտ դժւարութեամբ պիտի կարողանար հայուհին բարոյական բարձր գիտակցութիւնն ունենալ, բացի զարգացած մէկ մասից, ինչպէս ասացինք: Եւ փաստութիւնը տեսնւում է նոյն ինքն առաքինի Տրդատի յարկի տակ եւ նրա հարսի վարքի մէջ, որ նախապէս ակնարկեցինք*[10]*: Շատ մեծ էր գայթակղութիւնը յանձին Հայոց թագուհու, այնպէս որ հասարակութեան բարոյականի պահապանը Ս. Վրթանէսն ստիպւում էր մօտենալ նրան եւ «յանդիմանէր» իր խառնակ ընթացքի համար: Իսկ նա փոխանակ զգաստանալու հովւի ազդարար ձայնից, խռովւում ու զայրանում էր եւ վերջը վրէժխնդրութեան դիմեց հետեւեալ եղանակով:*

*Այդ շրջանում հեթանոս Հայաստանի քրմերի զաւակների մեծ ամբոխը դեռ անհաշտ էր ապրում Աւետարանի հետ, որի առաքեալը, նոյն ինքը Վրթանէսի հայրը, քանդել էր իրենց շահի աղբիւր մեհեանները: Թագուհու մէկ ակնարկը բաւական եղաւ*

1. *Ագթ*. 49, 50, 584, 591: — 2. ***Հնխ. Գ***, 178: – 3. *Փաւս*. 33: – 4. *Ագթ*. 584, 588-90 *եւն*: — 5. *Փաւս*. 33: – 6. *Աստ՝* 48, 51: — 7. *Աստ՝ ժէ*, 1: — 8. *Փաւս*. 22, 34, 230: — 9. *Խոր. Բ, ղբ*: – 10. *Աստ՝* 46:

*նրանց խմբելու երկու հազար հոգուց բաղկացած մի բանակ, որ մի առաւօտ չուտ գնաց պաշարեց Աշտիշատի կաթողիկոսի քաղաքի պարիսպը: Ներսն էր Գրիգորի ատելի զաւակն «առանձին քիչ անձերով», եւ մատուցում էին Ս. Խորհուրդը: Ցարձակումն սկսեց, աղեղները լարւած, սրերը բաց եւ մահակներով բախում էին դուռը: Եւ դեռ չբացւած կամ որեւէ ընդդիմութեան չհանդիպած, կաչկանդւեցան կռնակների վրայ՝ առանց կապի ու կապողի, եւ բոլորն էլ գետին տապալւեցին անբարբառ եւ անշարժ:*

*Վերջացաւ պատարագը եւ կաթողիկոսը դուրս ելաւ, զարմանքով տեսաւ գետնամած ամբոխն ու հարցրեց. «Դուք ո՞վ էք, կամ որտեղի՞ց էք եկել, կամ ի՞նչ էք խնդրում»: Ծածկելն աւելորդ էր եւ պարզ կերպով ասացին թէ եկել էին աւերելու Հայաստանի հնագոյն ու մեծագոյն սրբավայրը, եւ սպանել հայրապետին «համարձակ կերպով ակնարկեցին թէ մեծն հայոց տիկնոջ հրամանով»: Ու վերահաս պատուհասից խրատւած իրենց ղղջումն էին յայտնում: Մերունին ձեռքերը բարձրացրեց առ Աստւած, աղօթեց ու բուժեց այդ թշւառները, հրահանգեց եւ յետոյ մկրտեց բոլորին իրենց ընտանիքներով հանդերձ*[1]*: Արդեօք «աշխարհաշէնն» Խոսրովն իմացա՞ւ, իր կնոջ այդ աշխարհաւեր փորձը: Պատմութիւնը լռում է:*

*Սակայն դիւրութեամբ ըմբռնում ենք թէ ինչո՞ւ այդ կնոջ որդին՝ Տիրանը, յոռեգոյն թագաւորն եղաւ Արշակունեաց մէջ, հեղինակ այլ եւ այլ ոճիրների եւ չարիքների ու գայթագղութեան ազգի, որի բարոյականի ծայրագոյն անկումը պատահեց իր օրով*[2]*: Ս. Յուսիկն կշտամբում էր թագաւորին եւ ազատանուն «անօրէնութեան, պոռնկութեան համար» եւ ուրիշ չարեաց, որ կատարում էին. մերժելով անգամ եկեղեցուց եկած կշտամբանքը եւ դրա համար բրածեծ մահւամբ կնքեց իր կեանքը*[3]*: Իր նախանձին զոհ գնաց Դանիէլ քորեպիսկոպոսն էլ*[4]*: Ցիշենք նաեւ Յուսիկի որդիների զեղծ վարքն ու վերջն անառակ կանանց հետ*[5]*: Ծեչտեցի, այստեղ, յատկապէս այդ ախտի վրայ, որի մէջ հայ կինը քաջալերւած ու գործակից է հակառակ սեռին:*

*Ջմռռանանք Արշակաւանն էլ, ապաստարան դարձած բազմաթիւ ամուսնադաւ արանց ու կանանց*[6] *եւ բոլոր չարագործների: Աշխարհը քանդւում էր, գրկւածների բողոքները բարձրանում էին, մինչեւ Ներսէսն ստիպւեց երկնքից չարակեղ մի համաճարակ տեղացնել ամբարիշտ քաղաքի վրայ եւ նրա քսան հազար բնտանիքներին դիակներ դարձրեց երեք օրւայ մէջ*[7]*: Հայոց Սոդոմն ու Գոմորն եղաւ այն:*

---

1. *Փաւս.* 7-8: — 2. *Նոյն՝* 31, 33-34: - 3. *Նոյն՝* 31-32: — 4. *Նոյն՝* 38-42: — 5. *Աստ՝* 42: — 6. *Աստ՝* 51 52: — 7. *Փաւս.* 107, 110-13:

*Մի պահ վերադառնանք նաեւ Արշակունեաց տան մէջ կատարուած եղերերգութեան յանձին Գնէլի*[1]: ***Փառանձեմն*** *իսկապէս կեանքը յաւ էր սկսել, սնանելով Մամիկոնեան բարի մի մօր գրկի մէջ, եւ ստանալով «պարկեշտութեան» համբաւ*[2]: ***Սակայն ընտրեալ փեսայի ցաւագին վախճանն ու յաջորդող բռնադատ ամուսնութիւնը նրա սպանողի հետ՝ ցնցեց մանկամարդին ամբողջ էութեամբ: Բացի այդ,*** *քրիստոնէական բարոյականի մի դպրոց էլ չպիտի գտնէր Հայոց արքունիքում, որի նրբանցքների մէջ թափառում էին Գնէլի հետ՝ սուրբ առաջնորդների, Տիրան արքայի եւ բազմաթիւ նախարարների արիւնոտ ու բողոքարկու ուրուականները, որոնք աւելի եւս խանգարեցին նրա ներքին մարդը, գայրացրին ատելութիւնը նախկին ամուսնու դաւադիրների դէմ, ջնջելով սրտից Աստծու երկիւղն էլ, ասում է պատմիչն*[3]*, ինչպէս պատահում է տկար հոգիներին եւ այն ատակ դարձրին ոճիրների:*

*Ակնարկեցինք իր դաւին՝* ***Ոլոմպի*** *մրցակցի դէմ*[4]*, որ իր չարիքների առաջինն եղաւ:* ***Կասկածոտ*** *բիւզանդուհին ամէն կերպով զգուշանում էր նրա սեւ վրէժխնդրութիւնից, որը տեսնում էր նրա երեսի վրայ նկարուած*[5]*: Այն ժամանակ* ***Անդովկի*** *դուստրը դժոխային մի խորհուրդ յղացաւ: Իր մօտ կանչեց արքունի դրան երէցին՝ Մրջիւնիկին, ու գաղտնի մի հրաման տուեց նրան, հրապուրիչ մի խոստման փոխարէն: Փչաքաղեց քահանան եւ ականջները փակեց: Բարկութեան բոցը ցոլաց տիկնոջ երեսի վրայ եւ նրան քանի օր ցոյց տուեց իր պալատի գնդանի մգլոտ ու ամուր պատերը, որոնք ի վերջոյ կակղեցրին նրա ընդդիմութիւնը: Հասաւ նախանշանակուած տօնական օրն եւ Մրջիւնիկը պատարագում էր արքունական եկեղեցու մէջ: Այնտեղ էին թագաւորն, երկու թագուհիներն ու բոլոր պալատականները: Բարեպաշտ Ոլոմպին մօտեցաւ ընդունելու Ս. Խորհուրդը, մինչ Սիւնեցու գեղեցիկ աչքերը զսպած ու դիւական ուրախութեամբ հետեւում էին նրան: Պատարագն աւարտուեց եւ հեյլէնուհին ելաւ իր յարկաբաժինը: Այնտեղ սաստիկ խիթերն եւ ցողերը պատեցին նրա մարմինն, որոնց անկարելի եղաւ յաղթել եւ շուտով աւանդեց հոգին: Վատշւէր երէցն սպանել էր նրան «անարժան անտես անլուր» մի գործով, այն է՝ «կեանքի դեղի մէջ մահուան դեղը խառնելով» եւ այդպէս տէր դառնալով իր գաւառին (Տարօնի) մէջ Գոմկունք գիւղին*[6]*, մինչ Փառանձեմի անգութ հոգին հրճւում ու հանգստանում էր:*

*Հայոց տիկինը մի ուրիշ հաշիւ էլ ունէր մաքրելիք: Մամիկոնեանց տէրը կար՝ երէցն Վարդան, մեծանուն Վասակ սպարապետի աւագ եղբայրը եւ թագուհու մօր ազգականը, որ խաղաղութեան միջնորդի պաշտօնն էր վարում Հայոց եւ Պարսից*

---

1. *Աստ՝* 42-43: — 2. *Աստ՝* 132: — 3. ***Փաւս.*** 155: — 4. *Աստ՝* 50: — 5. *Աստ՝* 20, 50: — 6. ***Փաւս.*** 123:

*թագաւորների միջեւ եւ հաճելի էր երկու կողմերին, ինչ որ Վասակի չար նախանձի պատճառ դարձաւ եւ նա կրքից կուրացած, գրգռեց Արշակին եղբօր դէմ, ասելով՝ թէ նրա նպատակն էր արքային եւ Հայաստանը Շապուհի ձեռքը մատնել: Այս Վարդանն էր, որ Արշակի հրամանով ու կամակցութեամբ եկել եւ համոզել էր նաեւ Գնէլին գնալու դաւաճան հրաւէրին*[1] *եւ որի համար Փառանձեմը «ոխութիւնը պահել էր նրանից»: Իմացաւ Վասակի մեքենայութիւնը. սքանչելի էր առիթը: Բոլոր ուժովն ու լեզւանութեամբ գործակցեց սպարապետի հետ, համոզեցին դիւրահաւան թագաւորին եւ մահւան վճիռը տրւեց:*

*Վասակն իր մեծութիւնից իջաւ ստորութեան եւ արեան ընտանի մարդ, ինքն իսկ ստանձնեց վճռի գործադրութիւնը, որպէսզի չվրիպէր հարւածը: Մի գնդով, որոնց զէնքերը ծածկւած էին հանդերձանքի ներքեւ, գնաց Երախանի ամրոցը Տայոց մէջ եւ այնպիսի ժամին հասաւ, որ եղբայրը լւացւում էր բերդի մի անկիւնում*[2]*: Բերդապահներն տեսնելով իրենց տիրոջ հարազատին, պարզամտօրէն դռները բացեցին նրա առջեւ, որ իր մարդկանց շտապով ուղարկեց իշխանի կողմը եւ ինքը ամրոցին հսկող կանգնեց: Դաւադիրները հասան, խուժեցին վրանի վրայ այն վայրկեանին, որ Վարդանը մերկանդամ ու գլուխը կախ ջուր էին թափում եւ խոցոտեցին նրան սրերով: Ծառաներն աղաղակ եւ գոյժ տարածեցին դղեակի մէջ, որոնց ձայներից սպանւածի կինն, որ յղի էր, ահաբեկւած սենեակից դուրս վազեց եւ այնտեղ իսկ մի մանուկ լոյս աշխարհ բերեց որին չարաբաստիկ հօր անունը տւեցին*[3] *եւ որն այլեւս չի տեսնւում պատմութեան մէջ: Գուցէ չուզեց ապրել կեանքը, որ այդպիսի տգեղ էջեր ունէր:*

*Փառանձեմը յագեցած ու գոհ, ինքն էլ իր կարգին կեանք տւեց իր զաւակին՝ Պապին: Եւ կամ հետեւողութեամբ իր հայրենի նահանգի բարքերին, ուր դեռ հեթանոսութիւնն էր գերիշխող,- եւ ի հեճուկս իրենց պատմիչի մեծաբանութեան, մինչեւ Մեսրոպ եպիսկոպոս անգամ չունէին եւ նա նախ տւեց նրանց*[4]*,- եւ կամ ուսում առած Արշակունեաց տնից, իր որդուն «նւիրեց դեւերին», ասում է պատմիչը, ինչ որ յիշեցնում է Անուշաւանի նւիրումը Սօսեաց անտառին*[5] *եւ այդ դիցապաշտ արարողութեան արդիւնքը համարւում է պատանու աղտեղի կեանքը*[6]*, որը մոլորամիտ մայրն ի զուր աշխատեց ուղղել*[7]*:*

3.- *Մենք լայն կը շնչենք Ե դարի սեմի վրայ, ուր շնորհիւ Գրիգորեան տոհմի մղած դարաւոր պայքարին՝ նախ հեթանոսութեան եւ ապա նրա մնացորդացի դէմ,*

---

1. *Աստ*՝ 42: — 2. *Աստ*՝ 16: — 3. ***Փաւս***. 127-28: — 4. ***Կար. խնդ.*** 114: — 5. ***Խոր***. *Ա*, *ի*: — 6. ***Փաւս***. 155-56: — 7. ***Աստ***՝ 91:

որոնց վերջին հարւածր տւեց մեծ Հացեկացը՝ նշանագրերի գիւտով եւ Աստւածաշնչի հայացմամբ[1], ունենք վերածնւած մի Հայաստան, զտւած ու նրբացած բարքերով, որը տեսանք մեր նոյն դարի ազնւականների ու տիկինների մի բազմութեան վրայ[2]: Այնուհետեւ ոչ թէ ջնջւած, ինչ որ անկարելի էր, այլ նւազել են մեծապէս զեղծումները, եւ զօրացել են առաքինութեան զգացումն ու կանանց պատւի նախանձախնդրութիւնը[3]:

Զգաստ Վռամշապուհի որդին ու յաջորդն Արտաշէսն եղաւ «այր մանուկ եւ խզամոլ, բազում անառակութեամբ էր վարում թագաւորութիւնը»: Իր նախնիների ընթացքին հետեւեց, բայց իրեն շրջապատող ազատանին նրանց ժամանակակիցը չէր եւ զզւեցին ու բողոքեցին Ս. Սահակին, որ չկարողացաւ ուղղել նրան: Եւ Հայրապետի խոհական ձայնին չլսողները միաբանւեցին ու պարսիկներին մատնեցին արքային ու հայրենիքի ազատութիւնն էլ[4], բարոյականի միակողմանի հասկացողութեամբ: Եւ Հայաստանը կորցրեց իր մեծութիւնն ու փառքը:

Այսուհանդերձ երբ մի այր, մանաւանդ հզօրներից, զեղծել ուզէր կը գտնէր իրեն մեղսակիցներ կանանց դասից, որովհետեւ երկու սեռերից եւս եղել են միշտ եւ ամէն տեղ դէպի չարն հակամէտ անձեր էլ. մարդկային է այս, ոչ հայկական: Նոյն խստաբարոյ Ե դարում իսկ տեսանք հայուհիներ, որ վարձով կնութիւն էին անում թուլամորթ այրերին[5]: Նոյնպէս եւ Մանդակունու բողոքն արանց ու կանանց անհամեստ վարքի դէմ եկեղեցու մէջ անգամ[6]. եւ ուրիշ անբարոյական ախտերի, որ նոյն բեմբասացը մատնանշում էր կանանց դասի մէջ առանց արանց մասնակցութեամբ[7]:

Իսկ **Ծաձախապատումն**, որ նոյն դարի շարադրանքն է, թւում է այդ ախտին ընկերացող ուրիշ չարիքներ էլ: Անմեղների հրապոյրները կախարդների միջոցով: Սպանութիւններ ամուսնու ու տարփածուի մէջ, կամ երկու մրցակից հոմանիների, կամ կնոջ իր ամուսնուն կախարդական հնարներով եւ վիժել կամ սպանութիւն ծննդոց: Աւելացնում է, թէ «առաջին օրէնքն» (մովսիսակա՞նն) այսպիսիներին քարկոծում կամ այրում էին, իսկ այժմ երկար ու ծանր ապաշխարութեամբ պիտի քաւէին[8]: Ոսկեբերանը վկայում է մանկասպանութիւնների, ամուսինների դեղատւութեանց ու կախարդութիւնների, նաեւ անհամեստ յոյն կանանց կողմից[9]:

Եւ որովհետեւ չարութիւնն այլ եւ այլ երեսներ ունի, զարմանք չէ, որ գտնւէին - եւ ոչ անշուշտ այս շրջանում միայն - դաժան նկարագրով ու լեզւագար տանտիկիններն

---

1. *Հմմտ. Բզմ.* 1935, 324-27: — 2. *Աստ՝* 10, 35-36, 39, 93, 157-58: — 3. *Աստ՝* 126-27: — 4. *Փրպ.* 52-64: — 5. *Աստ՝* 47-48: — 6. *Աստ՝* 155: — 7. *Մնդ.* 144-45: — 8. ***Ծճխ.*** 68-69: — 9. *Ոսկ. Պօղ. Բ*, 348:

էլ, որ դահիճ լինէին իրենց աղախինների[1]: Եւ բնական է հետեւցնել՝ որ այդպխիներն իրենց խայթոցը ցոյց տային երբեմն, կամ նոյնիսկ յաճախակի իրենց ընտանեաց եւ ուրիշ կենցաղակից անձերին եւս: Պատմութիւնը չի մտածել երբեք օրինակներ աւանդել մեզ սովորական թերութիւններից, որ խառնուել են մարդկային բարքերի հետ: Բարոյախօսութեան մաս է կազմել բամբասանքների, նախանձութեան, բարկութեան, ոխակալութեան եւ այլ ախտերի նկարագրութեամբ, ինչպէս կատարեցին Մանդակունին եւ ուրիշները: Այդ ախտերի մէջ կարեւոր մի բաժին ունեցել է միշտ կանանց դասն էլ[2]: Իսկ պատմութեան ուշադրութիւնը գրաւել են անսովորներն եւ ծանրերը: Այս Ե դարի պատկերն էր:

4.-Ժամանակն առաջ է ընթանում, բայց մարդկային բնութիւնը մնում է եւ օրինակները չեն պակսում, թէպէտ ոչ շատ յաճախակի, հին անկարգութիւնների շարունակութիւնը նաեւ հետագայ դարերի մէջ: Սիւնեաց անւանի Ստեփանոս անունով մի եպիսկոպոս կար Ը դարում, Կոստանդնուպոլսի մէջ կրթութիւն ստացած ու զարգացած մարդ եւ հեղինակ գեղեցիկ շարականների ու մեկնութիւնների: Նա հովւական մի այցելութեան առթիւ Եղէգեաց գաւառի Մոզան գիւղի մէջ հանդիպեց մի կնոջ, որ տարփածու ունէր: Բարի հովիւն երեք անգամ յանդիմանեց ու ուղղութեան կոչեց նրան: Չորրորդին երբ տեսաւ նոյն վիճակի մէջ, կանոնական պատժի ենթարկեց: Եւ որովհետեւ ջերմ եղանակն էր, անցաւ գնաց իր հովոցը[3]: Մահիճը դնել տուեց մի ծառի վրայ, վեր բարձրացաւ, աղօթեց ու նիրհեց: Կախարդը չհանդուրժեց նրա խստութիւնը, եւ «կատաղի ցանկութեան բոցն շարժւեց», իր հոմանու հետ միասին գնաց եպիսկոպոսի մօտ: Մի սուր տուեց մեղսակցի ձեռքը, եւ վեր բարձրացրեց սպանելու յանդիմանողին: Մարդը տեսաւ, որ Ստեփանոսը ննջում էր հանդարտօրէն եւ շունչը բոցի նման բերնից դուրս էր գալիս, իսկ մօտը պահապան մի հրեշտակ էր կանգնած: Սարսափեց եւ վար թռաւ:

Կինը կշտամբեց նրան, սրտապնդեց եւ երկրորդ անգամ վեր ուղարկեց: Նոյն տեսիլը եւ այս անգամ դաւաճանն ուղղակի գլորւեց ծառից: Անբարոյ կինը բարկացաւ, ձեռքից խլեց սուրն եւ շտապեց վեր: Ատելութեան ամպը ծածկեց նրա բոցավառուող աչքերն ու խրեց զէնքն առաջնորդի կոկորդի մէջ եւ արիւնն սկսաւ ծառն ի վար վտականալ: Անառակ կնոջ դէմ, յետոյ իր խիղճը դատախազ կանգնեց ստրջացաւ ու քարերով ծեծում էր մերկ լանջը, ողբում էր, ճչում ամբաստանելով ինքն իրեն: Ապա փորեց գետինը, մինչեւ կրծքի կէսը թաղւեց հողի մէջ եւ մնաց այնտեղ ամառ ու ձմեռ

1. Աստ՝ 19-20: – 2. Հմմտ. աստ՝ 158-59: — 3. Աստ՝ 23:

ապաշխարելով, մինչեւ նահատակի գերեզմանից լսեց թողութեան պատգամը: Իսկ ինքը շարունակեց մնալ փոսի մէջ, որ ի վերջոյ իր գերեզմանն եղաւ[1]: Այս վիպախառն ձեւով Սիւնեաց պատմիչը լսել էր 753-ին գործւած այդ ոճիրը:

Մենք տեսանք նաեւ հզօրներ, որոնց մեղսակից կանայք չէին պակասում ազգի մէջ[2], ինչպէս եւ շատ ցանցառ թւով խոտորեալ մեծուհիներ եւս[3]: Ազատների ախտերին ծառայողներն ընդհանրապէս ռամիկ դասից էին, որոնք դիւրին կերպով նրանց ցանցի մէջ էին ընկնում եւ բացառիկ մարդիկ էին Դերենիկի պէս սանձարձակ պետերն, որ չէին խնայում իրենց գերիշխանութեան ենթակայ ազնւականների պատիւն էլ[4]: Անբարոյութեան դիպւածներ կային քաղաքացի դասակարգի մէջ եւս. ինչպէս ցոփ ու շւայտ Անեցւոց, որ «երկնքի ընդդէմ փորձում էին», եւ «հակաբարոյական գործերից չէին խորշում[5]». եւ Շնորհալին միջնորդների դէմ գրում էր[6]: Իսկ Սսոյ 1246-ի ժողովը տեսնում ու պատւիրում էր եպիսկոպոսներին խրատել կամ ի հարկին պատուհասել ամուրիներին կամ ամուսնացածներին, որ կենակցում էին անպարկեշտ կանանց հետ եւ երէցներին յանձնարարում էր խրատել, եթէ «կինը անամօթ եւ տղամարդուն խաբի, կամ ազատ կամ կանամբի[7]»:

Այստեղ էլ երեւում են դեռ վիժումներ եւ մանկասպանութիւններ անբարոյ կանանց կողմից[8]: «Սատանայական կախարդութիւն եւ աղանդների դեղատւութիւն[9]»: Ատելութեամբ կամ նախանձով «կապել» իրենց այրերը կամ տարփածուները «սատանայական դեղերով», նրանց գործածելով անձամբ կամ հեթանոս կանանց ձեռքով եւ այդ դեղերը պատրաստում էին «քարաթոշի (մողէսի մի տեսակ) արիւնից եւ այլ պիղծ սողուններից», եւ նախ փորձում էին անասունների կամ օտար անմեղ մարմինների վրայ[10]: Այսպէս եւ այլ զեղծումներ:

5.- Հայ աշխարհի մէջ եղել են նաեւ մոլութեան յատուկ տներ, ինչպէս միւս քրիստոնեայ ժողովուրդների մէջ էլ կային ու կան ի նախատինք իրենց քաղաքակրթութեան ու բարոյականին: Մանդակունին Ե դարից, նրանց իբր սովորական բաների էր ակնարկում, ինչպէս եւ նրանց յաճախորդների խնամքոտ զարդարանքներին այնտեղ գնալու ժամանակ[11]: Գրիգոր, հռետոր Բջնեցին, իբր ԺԳ դարի կէսին, իր խրատով զգուշացնում էր հաւատացեալներին չգնալ այդպիսի եւ կամ հարբեցութեան տները. «որովհետեւ երկուսի կատարումով, ասում է, հայի դժոխքի

1. Օրբ. 101-2, 104-5: — 2. Աստ՝ 45, 48, 169: — 3. Աստ՝ 46: — 4. Աստ՝ 44: — 5. Լստ. 109, 111: — 6. Շն. Նմկ. 207-8: — 7. Կիր. 171: — 8. Ալաւ. ԽԹ, ՄԴ, ՄԼ: — 9. Շն. Նմկ. 208: — 10. Ալաւ. ՀԵ. տես եւ Մ. եզ. Խր: — 11. Աստ՝ 155:

յատակն է[1]»: «Անբարոյ տները» պակաս չէին մինչեւ իսկ Հռոմկլայի հայրապետանոցի մօտերում, որոնց գոյութիւնից օգտւելով Կոստանդին Բ կաթողիկոսի հակառակորդները, իրենց ամբաստանութիւններից մէկն կատարեցին՝ թէ նոյն տներից հարկ է վերցնում եւ որի «իրականութիւնն եւ ճշմարտութիւնն Աստւած է միայն իմանում», գրում է Սիւնեաց պատմիչը եւ խօսքն ուղղելով Հեթում (Բ) արքային, որ հակառակորդների գլխաւորն էր, ասում է «Նախ դո՛ւ բարձ ի քումմէ թագաւորութիւնէդ» այդ յարկերը, եւ ապա հրամայիր ամենից վերցնել[2], այդպէս վկայելով թէ Կիլիկիայի մէջ էլ կային նրանցից:

Այդ ախտն աւելի եւս ճարակել է Հայաստանում անկրօն եւ անբարոյ բարբարոսների տիրապետութեան ներքեւ, մանաւանդ երբ վերջացան նրանց չահատակութիւններին սանձահարող մեր քաջերը[3]: Այսպէս Արիստակէսը ԺԱ դարում նրանց գործած նիւթական աւերումների հետ ողբում էր բարոյականի համար էլ, ասելով թէ պարկեշտութեան մէջ այնքան փայլող կանայք[4] «այսօր անառակ եւ այլանդակ խառնակութիւնը սովորական են[5]» նրանց իշխած վայրերի մէջ: Բարեբախտաբար սովորական չէր այդ վիճակը, եւ ոչ հայուհու նկարագրին համեմատ: Շրջաններ կամ շրջանակներ էին, որ ազգի հարստահարողների հետ գալիս ու անցնում էին եւ դրանց յատուկ է Առաքել Սիւնեցու (ԺԱ դարի) տեղեկութիւնն էլ թէ մոլորեցուցիչ կանայք փողոցի մէջ անգամ համարձակութեամբ նստում էին[6]:

Մեր մատենագիրները չեն վարանում նրանց պճնումն էլ նկարագրել: Սիմէոն Աղձնեացը գրում է թէ «անամօթաբար շրջում են բաց երեսով եւ գլխով», ինչ որ հակառակ էր ընդհանուր սովորութեան[7], «մոլորեցնելու համար ազգի անմիտ երիտասարդներին[8]»: Սարգիս վարդապետն ասում է՝ թէ «ծարիրով եւ սնգոյրով» ներկւում էին, որպէսզի թեթեւամիտների աչքերն իրենց դարձնեն: Բայց աւելի կենդանի գոյն է առնում իր գրիչը, երբ պատկերացնում է այն «զարդարւած, գլխի ծածկոցով եւ փայլուն հանդերձներով ... այն ժամ, ասում է, տեսնում ես նրան փողփողելով եւ ծռւած քայլելով եւ յօնքերը թոթափելով եւ յանջերի բոլորը (կլորութիւն) եւ քամակի մէջը» (յատուկ մի զարդո՞վ) այնպէս որ «նրա

1. *Նրկ*. 530: — 2. *Օրբ*. 322: — 3. *Աստ*՝ 126-27: — 4. *Աստ*՝ 35-36: — 5. *Լստ*. 76: — 6. *Աչղ*. 201: — 7. *Աստ*՝ 116-17: — 8. *Աղձ*. 111:

*քայլուածքն արբեցնում է մարդկանց[1]». այսինքն պակասամիտներն, որ միշտ անպակաս են։*

*Մեր պատմութեան մէջ նշանաւոր է Թոնդրակեցիների աղանդը, որ բուսաւ Թ դարի կէսին Սմբատի ձեռքով, հիմնւած անկրօնութեան եւ անբարոյութեան վրայ, որոնք սովորաբար անբաժան են իրարից։ ԺԱ դարի սկզբին նրա հետեւողներից Կունծուկ աբեղան նոյն աղանդին հրապուրեց **Հրանոյշին**, որ «գլխաւորն եւ ընտիր ազգից եւ տէր էր ագարակի» եւ սա որսաց ուրիշ երկու տոհմակիցներին, **Ալինի** ու **Կամարա** քոյրերին, որոնք իրենց հայրենաժառանգ երկու գիւղերը[2] «կաղաղս (որջ) եւ հանգրւան են պատրաստել վիշապ օձի կամքով», եւ այնտեղ էին հրապուրում չատերին աղտեղութեան եւ ամբարիշտ վարքի համար։ Թոնդրակեցին Վուվեռ անունով բարեպաշտ մի իշխանի էլ, իրենց կողմը դարձրեցին յիշեալ գիւղերի բնակիչները. եկեղեցիներն ամայացրեցին, բացօթեայ խաչերը կոտրեցին եւ աներկիւղ ուրիշ չարիքներ էին գործում։ Գաւառի եպիսկոպոսը՝ Սամուէլն, ստիպւեց այնտեղ գնալ բազմութեամբ, նրանց որջերը քանդեց, առաջնորդներին բռնեց, ճակատներին աղւէսադրոշմ խփելով հալածեց[3]։ Նրանք փոխեցին իրենց տեղը, բայց ոչ վարքը, այնպէս, որ նոյն դարի կէսին Գր. Մագիստրոսն ինքն էլ պատերազմեց նոյն աղանդի դէմ Խնունի մէջ, ուր գնացել եւ հաստատւել էին, ասում է, «ի չնավանսն այն՝ արք հանդերձիւք կրօնաւորաց, եւ կանանց բազմութիւն բոզից». նրանց բնակութեան տեղերը հիմնայատակ փորել եւ այրել տւեց, վտարելով բնակիչներին իր իշխանութեան սահմաններից[4] եւ 170 տարւայ գոյութիւն ունեցող աղանդը ջնջւեց։*

6.- *Զարութիւնն որոշ սահման ու ժամանակ չունի, այլ յայտնւում է միշտ եւ ամէն ձեւով։ Դեռ միջին դարի մէջ ենք։ Իւանէ զօրապետի կինը՝ **Խոշակը**, թշնամացած էր Պարկեշտ անունով մի երէցի հետ, ասում է Վարդանը, յայտնի չէ ինչ պատճառով։ Քահանան մեռնելով, սրբութեան համբաւով է թաղւում եւ գերեզմանի վրայ, ուր լոյս էլ իջել էր, ասւում է, ուխտագնացութիւն է սկսւում։ Տիկինը նրա փառաւորմանը չհանդուրժեց. ոսկորներն հանելով այրեց եւ տեղի վրայ մի շուն մորթել տւեց, լսելով մի բանսարկուի ձայնին։ Այդ չարախօսը նոյն գիշերն իսկ չանթահէզ է լինում։ Իսկ 1225-ին Խորազմ շահի երկու որդիներն երկու հարիւր հազարով գալիս են Հայոց վրայ եւ Գառնիի մօտ Իւանէի բանակը պարտւում է «աստւածասաստ բարկութիւնից», որ նրա կնոջ գործած չարիքներին է վերագրում պատմիչը[5]։*

1. **Սրգ**. 537, 372։ — 2. **Աստ՝** 27։ — 3. **Լաս**. 101-5։ — 4. **Մգ. Թղթ**. 162։ — 5. **Վրդ**. 143։

*Եզակի մի չարութեան տեսակ է Մխիթար Ապարանեցու պատմածը* 1410-*ին*: *Մինչ ինքը մի օր Մակուի մէջ էր, այնտեղ է գնում մի կին, որը իրեն սարկաւագ է ներկայացնում: Մի քանի օր յետոյ, անցնում է Աղթամար քահանայ լինելու համար: Տեղի վանականներն իմանալով նենգութիւնն, արտաքսում են նրան, որ գնում է Բոլորան՝ երրորդ խաբէութիւնը գործելու, համոզելով պարզամիտներին, թէ ինքը մի ճգնաւոր է: Քիչ յետոյ «սատանան իր մէջ մտնելով»,- արդէն մտած չէ՞ր,- իր հետ միացրեց ուրիշ չար կանանց, որոնք կախարդութեամբ հրապուրում էին ժողովրդին: Բայց մի քանի ամսից յետոյ յանկարծ զգաստանում են այն «ապականեալ եւ խառնակիչ չար կանայք, եւ այժմ, ասում է, իրենց ամէն իւրայիններով հանդերձ ամօթալի են» իրենց կատարածի համար*[1]:

7.- *Գրիգոր եպս. Կամախեցին, որ ապրում էր ԺԶ-ԺԷ դարերի միջեւ, թողեց իր հետաքրքրական ժամանակագրութիւնը, չարաղբեալ «այս ժամանակում որում ենք, ասում է, պանդխտութեան եւ նժդեհութեան մէջ օտար երկրում... Ստամբոլում, Անատոլիայում, Թրակիայում, որ Ռուումէլում է, եւ այլ հեռաւոր աշխարհում Գոթացիների եւ մինչեւ Եգիպտոսում, խեղաթիւրեալ ազգերի մէջ լինելով*[2]»: *Թէ այդ ապականեալ վայրերի չար օրինակները եւ թէ պանդխտութեան ստեղծած դժւարութիւնները բարոյական մեծ անկում են առաջ բերում հայ կանանց մէկ մասի մէջ: Անկում, որ լաւ տեսնւում է երեք մոլորեալների նկարագրութեան մէջ, որ տալիս է նոյն ժամանակագիրն Կոստանդնուպոլսից, որպէսզի իր տեսածներից գուշակենք չտեսածներն էլ:*

*Դրանցից մէկը Թրքախօս մի անկիւրացի է, որ գալիս է մի յանձնարարագիր խնդրելու իրենից: Եպիսկոպոսի ընկերը Սարգիս վրդ. Լողոստոյի մէջ տեսել էր «նրա չարաչար գինեմոլութիւնն», իր հետ ունենալով ալեւոր մի մարդ, որի համար ասել էր թէ «այրս է»: Հարցնում է, թէ «ո՞ւր է այն քո այրն, որ Ըռատոզ տեսայ», եւ ուր իրենց մէջ քիչ էր մնացել, որ արիւնահեղութիւն պատահէր: Կինն ուրանում է, թէ նրան չի տեսել ինքը: Աղաղակ է արձակում վարդապետի դէմ եւ ամբոխի դիւրահաւանութիւնն դէպի իրեն է չահում: Մի քանի օր յետոյ եպիսկոպոսն ու Սարգիսը գնում են Զարչախ գիւղը, եւ տեսնում են, որ «այն գինեմոլ կինն այնտեղ է», եւ իրենց փեսայի բոչա մշակի կինն է դարձել: Այդ դեռ հերիք չէ, գնում է շրջակայ հայ գիւղերը մի նամակ է ցոյց տալիս, թէ «այրս ու մէկ տղաս Թաթարների երկրում գրաւ են». դրամ է հաւաքում ու բերում «գինուն է տալիս», երբ սպառւում է, դարձեալ վերադառնում է: Երկու*

1. *Ապր. ԽԳ, ժը*: — 2. *Կմխ.* 476:

եկեղեցականները դիմադերծ են անում նրան. բոշան հաւատում է նրանց եւ «իր շուն կնոջը թողնում է. նա տղայի հետ թուրքացաւ եւ կորսուեց»: Յետոյ լսում են, որ Մխալիչ գիւղն էր գնացել, «մի հայ էր առել եւ նոյն չարիքն էր գործում[1]»:

Մի ուրիշ կին է գալիս շտապով եպիսկոպոսի մօտ եւ ասում է, թէ իր սիրելիները գերի են մեծ բռնաւոր՝ մի տաճիկի ձեռքը, որ ծանր մի գումար է պահանջում որոշեալ ժամանակի մէջ եւ ուշանալու դէպքում նրանց մահմեդական է դարձնելու: Եպիսկոպոսն եկեղեցի է վազում. յորդոր, հանգանակութիւն եւ յանձնում է կնոջն. «երկու հազար օսմանեան ստակի», որ վերցնելով գնում է: Մի քանի օր յետոյ լսում է, որ այն կինն մի ուրացող էր եւ մի թուրքի տնում է բնակւում. երեք հոգի տաճիկներ նրան դրամաշորթութեան են յղում, նրանով արբշռութիւն են անում, իրար են կողոպտում, կռիւ ու դատաստան «եւ այն կինն նրանց մէջ էր[2]»:

Հայ հոռոմ մի պառաւ է ներկայանում նոյն առաջնորդին, իբր Կեսարիայից եկած, եւ ասում է. «Ես կամենում եմ, որ հայ լինեմ եւ դէպի ձեր օրէնքներին դառնամ»: Եպիսկոպոսը պատասխանում է, թէ մենք քրիստոնեաներին մէկ ենք համարում, եւ ներելի չէ իրար կրօնից դառնալ. դու ինչո՞ւ նեղւած ես նրանցից եւ ուզում ես դառնալ: Ասում է, թէ որդին բռնակալ մի ենիչերու ծանր պարտք ունի. հոռոմները չեն ուզել օգնել եւ ենիչերին ստիպում է որդուն ուրանալ, պարտքը շնորհելու համար: Եպիսկոպոսը գթալով «մի քանի ստակ» տալիս է, հանգանակութիւն է անում եկեղեցու մէջ եւ խոստանում է նրան հոռոմ եպիսկոպոսի օժանդակութիւնն էլ հայցել նրա համար: Կինը մերժում այդ ամէնն ու մեկնում է: Միւս օրը իմանում են, որ «մեծ մզկիթի մէջ տաճկացել է», եւ թուրքերը դրամ էին ժողովում նրա համար[3]:

ԺԶ դարը աւարտելուց առաջ «աւազակ» մի հայուհու էլ տալիս է մեզ պատմութիւնը: 1600-ին ասում է Անեցւոյն յաւելւածը, սաստիկ սով էր տիրում երաշտի պատճառով եւ մարդիկ էր կոտորում: Երզնկայի Օձտեղ գիւղի մէջ մի կին «[illegible]», գործածել էր բազմաթիւ ոչխարներ, անասուն եւ հաւեր եւ ընտանեօք ամբողջ ձմեռն հանգստութեամբ անցկացնում էին: Նոյն գիւղից մի շուն, ստանձնել էր ոստիկանի պաշտօն, մտնում է մի օր «կանանց աւազակի» տունը, եզան մի ոտքը քաշելով դուրս է բերում ու ձգում է հրապարակի մէջ: Մարդիկ տեսնում եւ գնում են այցելելու ու գտնում են մսով լի կարասներ, որոնցով անխտիր սնանում էին նրանք նաեւ աղուհացից մէջ,- նայում է պատմիչը գայթագղութեամբ,- եւ «որ հրապարակեցին անարգանքով[4]»:

---

1. Նոյն՝ 486-87: — 2. Նոյն՝ 489: — 3. Կմխ. 488: — 4. Սամ. 202:

Բայց աւելի սոսկալին էլ մեզ պատմում է Առաքելը։ 1606-ի սովի ժամանակ, որ տեւեց երեք տարի, Բջնի գիւղի մէջ անցորդները մի օր ծուխ են տեսնում մի տան վրայ, ներս են մտնում ու երեք կանայք են գտնում, որ մի կաւէ ամանի մէջ կերակուր էին եփում. խուփը բացում եւ տեսնում են այնտեղ ձեռքեր, բազուկներ եւ ուրիշ մարդկային մսեր, որ խաչում էին ուտելու համար։ Երբ բռնադատուեցին խօսելու, ասացին թէ սովի ստիպման տակ անցորդներին խաբելով տուն էին բերում, սպանում եւ ուտում էին։ Կարնոյ մէջ եւս կանայք նոյն ոճիրն էին գործում, փողոցներում շրջելով ու մարդկանց հրաւիրելով իրենց տունը։ Երբ մի օր իրենց որսերից մէկը բռնելու հետ էին, նա զգաց վտանգը, տնից դուրս վազեց ու գնաց փաշային լուր տուեց, որ զինւորներ յղեց, խուզարկել տուեց տունը, ուր գտնուեց քսան եւ չորս մարդկային գլուխներ եւ սպանեց չարագործներին[1]։ Պատմիչը չի ակնարկել նրանց ազգութիւնը, բայց վայրերի անուններն ու այդ լռութիւնն ինքնին դժբախտաբար նշան են նրանց հայ լինելուն։

8.- Ի՛նչ անդունդ - դառնանք խորհրդածել – մեր նախորդ գլխի ու ներկայիս միջեւ։ Բայց չմոռանանք, որ այս պղտոր տեղեկութիւնները քաղել եմ 16 դարերի միջից, որոնց երկարութեան համեմատ սրանք թւով ոչինչ են եւ դէպքեր քան ընդհանուր վիճակներ, ի բաց առեալ մեր հեթանոսական շրջանը. որից կրկնում եմ, աւետարանական բարոյական դասեր չէինք կարող քաղել։ Քրիստոնեայ Հայաստանն էլ ապրեց դարերով հեթանոսաբարոյ օտար եւ այլասերող տիրապետութիւնների ներքոյ եւ եթէ յաջողեց պահել իր գոյութիւնն ու քաղաքակրթութիւնը, այդ պարտական է իր հանրային բարոյականին միայն, որի կորուստն ազգերի գերեզմանն է փորել։ Պիտի մահացնէր իրեն էլ, եթէ պինդ չփարւէր նրան։ Հետեւաբար այն անհատական կամ մասնական զեղծումներն, որ թւեցինք եւ որոնք անկասկած աւելի բազմաթիւ էլ եղել են քան մեզ աւանդւածները, ազգին չեն պատկանում երբեք։ Այս նսեմ գլուխն ուրեմն չքանում է այն լուսաւորների մօտ, որ կանխեցին ու յաջորդում են սրան, որոնք չպիտի լինէին, եթէ ներկան կարողանայինք յատկացնել ամբողջ ազգին, որոնց մէջ ապրում են բարձրիգլուխ անցեալ հայութիւնն ու հայուհին։

1. Դաւր. 64։

## ԳԼՈՒԽ Ժ

### Բարեգործութեան մէջ

Բառ եւ իմաստ՝ մեր այս տիտղոսը, որ կանացի սրտի բնատուր փափկութեան ու գորովի ճառագայթումն է եւ որի մէջ գերազանցօրէն եւ իր ամբողջ զօրութեամբ փայլեց հայուհին, հասնելով նրա հեռագոյն սահմաններին, եւ իր անունը կապելով ցանկալի գործերի եւ յիշատակարանների հետ, որոնք մեր պատմութեան պանծալի դրւագները պիտի մնան միշտ, անջնջելի նոյնիսկ ժամանակի գիշատիչ ճիրաններից: Մեր Ը գլխի մէջ քանի անգամ հանդիպեցինք հայ տիկինների «բարեգործութեան» դրւատանքներին[1], իսկ այստեղ պիտի տեսնենք ու թւենք այդ առաքինութեան գործնական արգասիքը, հետեւելով միշտ ժամանակի կարգով՝ անձերի յիշատակութեան մէջ:

1.-Առաջին ու մեծագոյն խնամքը, որ հայուհու բարեպաշտութիւնն ինքնին թելադրում է իրեն, վերաբերում է իր սրտի աւելի մերձաւոր վայրերին՝ եկեղեցիների ու մենաստանների բարեգործութեանն, եւ եկեղեցականների ու վանականների օգնութեան, որի մէջ մեր տիկնայք մրցում են իրար հետ ըստ իւրաքանչիւրի կարողութեան:

Թէպէտ դրանք բազմաթիւ են, բայց յիշատակելու մէջ երիցագոյն են Գրիգոր եւ **Շուշիկ** Պահլաւունիները, որ իրենց կատարած բազմակերպ բարիքների մէջ սովորութիւն ունէին նաեւ հաւաքել իրենց շուրջ եւ «իրենց ձեռքով իսկ կերակրել աղքատներին եւ կրօնաւորներին», ասում է իրենց թոռը[2]: Սրա քոյրը՝ **Սեդան**, իր սեփական Գաղտա գիւղի արդիւնքը տասանորդեց ի նպաստ Բագնայրի ուխտին «վասն յիշատակի» իր հօր Վասակի, որ Թուրքերի դէմ յաղթական պատերազմից յետոյ, զոհ գնաց մի դաւաճանութեան[3]: Նոյն Մագիստրոսի դուստրը՝ **Մարիամը** Աղթամարի տիկինը, «անդադար սպասաւորում էր սուրբ ուխտերին, որ սուրբ կաթողիկէների մէջ էին», այսինքն այնտեղ պահւած խաչի ու նշխարների[4], որոնց պահպանութեան ու պատշաճ մեծարանքի հոգ էր տանում տիկինը:

Լամբրոնի տէրն Օշին Բ կառուցեց (կամ նորոգեց) Սկեւռայի վանքը՝ նոյն ամրոցի մօտ[5], բազմացրեց այնտեղ կրօնաւորներին, ասում է անթւական մի գրիչ եւ «միշտ խնամք էր տանում նրանց, հանդերձ բարեզարդ զուգակցին՝ **Շահանդուխտի**[6]», որ շատ փարւած էր նրան:

---

1. Աստ՝ 159-62: — 2. Մգ. Թղթ. 43: — 3. **Շիր**. 113: — 4. Արծ. 347: — 5. Աստ՝ 175: — 6. **Հւք. յշտ**:

1161 թւականին Շիրակի տէրը դարձաւ Վրաց սպարապետ Իւանէ Օրբելեանը[1], որի կենակիցը՝ **Ռուսուդան** Կիւրիկեանն[2], օգտւելով այդ նպաստաւոր կացութիւնից եւ վառւած իր հայ հայրենասիրութեամբ, «նորոգէր, ասում է մի յիշատակագիր, իրենց նախնիների (Բագրատունեաց) սէրը» դէպի բոլոր մենաստանների, որ «նրա նախնիների կողմից կառուցւել եւ յետոյ նորից նւազել էին» եւ որոնք «նրա օրով պայծառանում եւ նորից նորոգւում էին»՝ Ուտիի, Անիի եւ Դւինի գաւառների մէջ, ուր տարածւում էր ամուսնու իշխանութիւնը[3]:

Սասնոյ տիկինը՝ **Մելիքաթին**, 1169-ի գրչի կողմից կոչւում է «եկեղեցիների զարդարիչ եւ քահանաների յանձանձիչ»: Նմանապէս իր դուստրը՝ Կատան, կարեւոր զբաղումներից մէկն էր արել «եկեղեցիների եւ քահանաների հոգաբարձութիւնը[4]»: Սիր Պաղտնիի ամուսինը՝ **Շուշանը**, այրութեան թուխ քօղն առած գլխին եւ բարերարութեան նւիրւած, 1221-ի մի յիշատակագիր մաղթում էր, որ Աստւած պահպանի այն «խաղաղութեամբ եւ առանց վրդովմունքի ի մխիթարութիւն» կարօտեալների «եւ առաւել կրօնաւորների դասին[5]»:

Հեթում Ա 1253-ին արձանագրում էր կենակցին՝ **Զապէլի**, անձնանւէր խնամքը դէպի վանականներն ասելով «տառապանքով հոգում է կրօնաւորներին[6]», ծանրաբեռնւած լինելով բազմազբաղ պաշտօնով: Աւետիս գրիչը 1272-ին կրկնում էր թէ «բազում հոգեբարձութեամբ նախախնամեաց զաշխարհս, նաեւ զեկեղեցիս եւ զվանորայս[7]»: Զաւակն ու յաջորդն էր մի հօր, որ «առատանայր ի բազում վանորայս եւ յեկեղեցիս լնող զպէտս սպասաւորաց առատաձիր պարգեւօք ռոճկաց[8]»: Իր տագրը Յովհաննէս արք. նրա **Ֆիմի** դուստրին էլ որակում էր «Աստծուն սիրողն եւ սպասաւորն ամենայն ծառայից նորա[9]», որ կղերական դասն էր:

Հեթումեան տիկինը՝ **Թեւանուն**, 1274-ին արդէն կրօնաւոր[10], իր նիւթական ու բարոյական ամբողջ կարողութիւնը նւիրել էր իր պէս աշխարհից հրաժարւողներին, ինչպէս տեղեկացնում է մի յիշատակագիր, նրան անւանելով «բոլոր կրօնաւորների հոգեւոր մայրը[11]». եւ որի հետ նոյն է թւում 1307-ին Կոստանդին արեղայի յիշածը. «իմ հոգեւոր մօրը՝ Թեփանուն, (յայտնի չէ ո՞ղջ թէ մեռած) յիշեցէք ձեր մաքուր աղօթքների մէջ[12]»: Ստ. Գոյներ երէցը մեծ գովեստով խօսում է նոյն տիկնոջ դուստրի՝ **Ալիծի**[13], մասին եւս, ասելով թէ «բազում տարիներ խնամեց ինձ եւ մեծ գութով, գրեթէ որպէս

---

1. Աստ՝ ԺԸ, է:— 2. Աստ՝ 56: — 3. Հյպ. 382: — 4. Աստ՝ 159: 5. Հւք. յշտ.: — 6. Անդ: — 7. Ազ. հնդ. 1210, Բ, 25: — 8. Պամ. Ոբ. 239: — 9. Հյպ. 486: — 10. Աստ՝ 173: — 11. Հւք. յշտ: — 12. Անդ: — 13. Աստ՝ 134:

որդեակը ծնող իր անդրանիկին այնպէս գթաց նւաստիս եւ անարժանիս». անշուշտ Կիպրոսի մէջ խակ ուր գրում էր եւ ինքն իրեն անւանում է «չատ պարտական եմ նրա լուռ բարիքներին[1]»:

Ազիզբէգն ու *Վախախը*, ծանօթ են մեզ[2], ընծայում են «մեծագին եւ գեղեցկատեսիլ նւիրատւութիւն ամէն եկեղեցիներին», մեծ հաճոյք պատճառելով կղերական դասին[3]: Տաճիկներր 1357-ին յարձակւելով Անիի վրայ չարիքներ եւ աւերումներ են գործում: Նահանգի տէրն Աթապակ շահնշահ անապարելով փախուստի է դիմում եւ իր հաւատարիմ գործակալն Ասիլն ու կինն՝ *Ըռուզ խաթունն*, «աստւածահաճոյ եւ բարեպաշտ» անձերն, որ մնում են, վերստին «վանքեր եւ եկեղեցիներ զարդարեցին, ասում է Ներսէս գրիչը, որպէս օրէնք է աստւածասէր քրիստոնեաների[4]»:

Բաբերդի Յովհաննէս արք., երբ վախճանւում է «դրդելով չարին», գրում է 1395-ին նրա քոյրն՝ *Ուստիանէ խաթունը*, դուստրը «պարոն Աստւածատրին», իրենց ազգականներից որոշները հակառակորդ են կանգնում նոյն գաւառի Խաղճանեայ մենաստանին, ցրւում են վանականներն եւ ինչ որ նրա մէջ կար: Նոյն տիկինն առնական կորովով ասպարէզ է իջնում, ճակատում է հակառակորդների դէմ եւ «վերստին հաստատեցի, ասում է, սուրբ ուխտն» իր որդու օգնութեամբ «պարոն Թորոսի»,- տիտղոսից յայտնի է, թէ ազնւական էին,- եւ երկրորդ հիմնադիրն է հանդիսանում վանքի ու պաշտպան հաւաքելով եւ իրենց հովանու ներքեւ առնելով նրա բոլոր կահն ու անօթները եւ միաժամայն հանգուցեալներին անէծք կարդալով մենաստանի թշնամիների դէմ[5]:

Բարեգործութեան մէկ տեսակն է եւ այն, որ կատարում է 1145-ին *Ազիզ* տիկինը, ստանձնելով Բագնայրի Ս. Գրիգոր եկեղեցու օրհնութեան ծախսը, «ի յիշատակ» իր Գրիգոր որդուն: Անիի Առաքելոց եկեղեցու մէջ եւս մի խաչքար յաւերժացնելու է *Ազիզի* անունով, դուստրն Աղւորի, փաղաքշօրէն «Մամ» կոչւած, որ «բազում օր աշխատութեամբ ծառայեց Ս. Առաքելոց», ուր եւ թաղւում է[6]: Աղօթավայրից սպասաւոր կանանց հանդիպեցինք եւ այլուր[7]:

2.- Մեր յիշած այդ բարեպաշտուհիների մատուցած օգնութիւնները սովորական գործեր էին, առօրեայ կեանքի համար օգտակար, որոնց նմանները տեսանք նաեւ նախապէս, տարբեր ձեւի տակ[8]: Սակայն Հայաստանի արձանագրութիւնների մէջ կայ

---

1. *Հւք. յշտ.* 1312: - - 2. *Աստ՝* 122: — 3. *Հւք. յշտ.* 1318: - 4. *Անդ*: — 5. *Հւք. յշտ*: — 6. *Բժմ.* Հ. 147, 108: — - 7. *Աստ՝* 150: — 8. *Աստ՝* 128-30:

անբաւութիւնն էլ մնայուն նպաստների եւ նուիրատուութիւնների եկեղեցու ու մենաստանի համար, որ չեմ կարող այստեղ թուել, այլ պիտի յիշեմ կարեւորագոյններից որոշներր միայն, որպէսզի ընթերցողները մի գաղափար կազմեն հայ տիկնոջ սրտի ընդարձակութեան եւ իշխանական ճոխութեան, որն առատաձեռն է դարձնում երբեմն միայնակ ու երբեմն կենակցի կամ այլ ընտանիքների գործակցութեամբ, ընդունելով փոխարէն հոգեւոր նպաստներ եւ մշտնջենաւոր պատարագներ՝ զանազան ու մերթ քառասուն թւով, որոնք մեզ համար նուազ ուշագրաւ են քան տրւածներր, որով եւ զանց եմ անում յիշել: **Բուպղիդուխտ** Սիւնին ունէր «մի չէն Մաճ անունով» Բաղաց գաւառի մէջ, որը գնել էր ամուսինն[1], եւ 867 թւին «լեռներով եւ դաշտով, մարգով եւ արտով, գետով, ջրով եւ ցամաքով, ծառերով եւ տունկերով» ընծայում է Տաթեւի Ս. Խաչին ի վայելում, եպիսկոպոսական աթոռի «մինչեւ յաւիտեանս[2]» վայելելու համար: Ակներեւ է այդտեղ իր մրցակցութիւնը Հրահատ ամուսնու հետ, որ 844-ին նոյն ուխտին պարգեւել էր նոյնպէս Նորաշինիկ գիւղը՝ «լեռներով եւ դաշտերով, ջերմանոցով եւ ցրտանոցով, ծառով եւ տնկով[3]»: Ուրիշ «մի կին բարեպաշտօն **Համասպրուհի** անունով», դուստրը Սիւնեաց Բաբգէն իշխանի Ժ դարի սկիզբը, նուիրում է նոյն մենաստանին, նախ «մեծ այգին» Հալիս գիւղի գետափի մօտ, եւ ապա նոյն գիւղն իսկ «իր ամբողջ սահմաններով[4]»: **Սոփիա** Սիւնեաց տիկինը, դուստրը Բագրատունի մօր[5], 936-ին Հերմոնի վանքի մօտ գնում է Հաւու գիւղն իր սահմանով, նոյնպէս «այգիներն եւ ծաղկանոցներն» Եղէգեաց մէջ եւ ժառանգութիւն է թողնում նոյն ուխտի եկեղեցուն, որ կառուցեց ամուսինը՝ Սմբատը: Միանգամայն «զարդարում է այն բազմաթիւ սպասներով փարթամ է դարձնում ամէն պիտոյքները»: Նոյն «տէր Սմբատն եւ Սոփիա տիկինը» Սիւնեաց Յակոբ եպիսկոպոսի առաջարկութեամբ գնում են նաեւ Տամալէքս կոչւած վայրը հազար դահեկանով, ուր նոյն առաջնորդն եկեղեցի ու մենաստան է կառուցում[6]:

Աշոտ Ողորմածն եւ կենակիցը՝ **Խոսրովանոյշը**, Սանահինի Աստւածածինը նորոգեցին ու զարդարեցին եւ ճոխացրին «բազմաթիւ գիւղերով եւ հօրենական ունեցւածքով, սարով եւ ձորով», գրում է իրենց որդին՝ Սմբատը[7]: Իսկ իրենց դուստրը՝ **Հռիփսիմէն**, հաւատաւոր, 981-ին Նախճաւանի մէջ՝ Աստապատի հիւսիսակողմը գնում է ընդարձակ մի արտ եւ ընծայում է Մաղարդայ ուխտին, միանգամայն իր «շիրմի տեղը» նշանակելով նոյն ագարակի մէջ, «որովհետեւ մի՛ անյայտ եղիցի» մարմինը[8]:

---

1. *Աստ*՝ 35: – 2. *Օրբ*. 160. *աստ*՝ 129: 3. *Օրբ*. 153: — 4. *Օրբ*. 167: — 5. *Աստ*՝ 97: 6. *Օրբ*. 189. 198: 7. ***Հյկր. Ա***, 894: 8. ***Սռկ.*** 517:

*Սիւնեաց Սմբատ արքայի կինը՝ **Շահանդուխտը**, դուստրն Աղւանից Սեւադա իշխանի*[1]*. 998 թւին Տաթեւի վանքին ընծայում է Տեղ կոչւած գիւղն «իր բոլոր սահմանով, լեռներով, դաշտերով եւ այլ մտիւք», որ իրեն տուել էր հանգուցեալ կենակիցը, ճշմարիտ թագուհուն վայել մի նուէր*[2]*: Սոյն տիկնոջ անւանակիցը, հայրենակիցը, դուստրը համանուն հօր եւ նոյն գահի եւ հոգւոյն ժառանգը՝ **Շահանդուխտը***[3]*, իր Սենեքերիմ եղբօր եւ **Փառա** քրոջ հետ նւիրատու են լինում Տաթեւին, ինչպէս գրում է նոյն թագաւորը, «հրամանով բարեպաշտ եւ քրիստոսազգաց իմ մաչկով», ընծայելով Արիտ գիւղն «իր ամենայն շրջապատի սահմաններով, հողով եւ ջրով եւ վարելիք արտերով» եւ ինչ որ իրեն էր պատկանում*[4]*:*

*Հաղբատի ուխտի մեծ բարերարները հանդիսացան Վաչուտեան Վաչէն եւ **Մամա խաթունն**, Արագածոտանի իշխողներն, որոնք տասը տարի յաճախում են նոյն վանքը, միաբանները գրում են 1220-ին, «եւ իրենց ամենայն ինչքն արդիւնաւորեցին մեզ»: Տիկինն իր կողմից մի ձիթահանքն էլ գնում ու նւիրում է մենաստանին*[5]*: Ցաջորդ տարին նոյն ամուսիններն երկու այգի եւս Հառիճի վանքին են ընծայում: Իսկ 1223-ին Մամա խաթունը գնում է ուրիշ ձիթահանք ու շնորհում է Սանահինին*[6]*:*

*Նոյն Վաչէի եղբայրը՝ Սմբատը, իր մահւանից յետոյ կնոջը՝ **Զմրուխտ խաթունին**, թողնում է «ակն մի ջաղաց Կամրջի ձորի շրջանակում» եւ տիկինն 1234-ին (կամ 1204) այն ընծայում է Հոռոմոսի ուխտին, ընդունելով տարեկան 45 պատարագ*[7]*: Մի ապացոյց թէ կարեւոր եկամուտ էր: Իսկ Վաչէի թոռը՝ Հասանը եւ ամուսինն՝ **Արուս խաթունը**, «Ուքանանաց ազգից» 1283-ին վաղամահ են լինում եւ վերջին օրերում Ցոհաննավանքին թողնում են առատօրէն գիւղեր եւ այգիներ, փրկանաւորելով ուխտի կալւածներն էլ*[8]*: Նոյն Վաչէի թոռան թոռը՝ Թէոդոս Զրքինը, դարձեալ նոյն վանքին ընդարձակ մի կալւած է պարգեւում ու արձանագրում է եւ որպէսզի կտակն աւելի հաստատուն լինէր, իր մայրը՝ **Խուանդ խաթունը**, այն ինքն եւս մայրենի իշխանութեամբ վաւերացնում է, «կրկին հաստատեցի այս վերոյգրեալը» ասելով*[9]*: Այս տիկնոջը գովում է մի յիշատակագիր էլ 1317-ին իբր «աստւածասէր եւ բարեսէր» մի անձ*[10]*:*

***ԺԲ-ԺԳ** դարերի միջեւ մեր հին արձանագրութիւնների մէջ բաւական յաճախ երեւում է Մամիկոնեանց մէկ ճիւղը, իրենց միայն անւամբ Համազասպեանք կոչւած*[11]*, որոնք շատ կտակներ ունեն թողած: Դրանցից Սարգիսն ընկնում է կուի մէջ ու թաղւում է Սանահինի մէջ, իսկ իր որդին Սմբատն եւ հարսն՝ **Աղուտը**, 1215-ին նոյն*

---

1. *Օրբ*. 219: — 2. *Նոյն*՝ 213: — 3. *Ալա*՝ 170: – 4. ***Հյպ.*** 339-40: — 5. *Երգ*. 26: — 6. *Ջալ. Ա*, 25: — 7. *Ն. Սրգ*. 153: — 8. *Շհխ. Բ*, 102: — 9. *Անզ*՝ 107: — 10. ***Հայ. յլա:*** — 11. *Ալա*՝ 8, 40:

ուխտին նուիրում են կարեւոր մի կալուած եւ ուրիշ «քառասուն օրավար հող[1]»:

Յիշման արժանի են նաեւ Ներքին Խաչէնի Վախտանգ իշխանի որդին՝ Զաքարէն եւ ամուսինը՝ **Խորիշահը** (կոչուած եւ **Արզու խաթուն**[2]), դուստրը Վասակի, որ գնում են Աշտարակի մէջ Նորք գիւղը, եւ պարգեւում են Յովհաննավանքին[3]: Ուշագրաւ է նոյնպէս պարագան Երկաթի կնոջը՝ **Ռուզուքանայի**, որի որդին Աշոտը «տարաժամ» վախճանուած, իր այգին ընծայում է նոյն ուխտին, իսկ մայրը, երեւում է անորդի մնացած, արձանագրում է թէ «իմ հայրենիքը թէ ինչքը տուի Ս. Կարապետիս՝ յետ ելից իմոց[4]». այսինքն ամբողջ ստացուածքը:

Բայց հսկայական եւ արքունի մեծութեան համեմատ մի բարեգործութիւն էր Ա Հեթումի ու **Զապէլի** 1236-ին կատարածը, Տեւտոնեան ասպետների կամ «աստուածաբնակ տան Հիւրանոցի Ալամանաց», պարգեւելով Հարուն բերդաքաղաքն իր բոլոր սահմաններով, վանքերով, գիւղերով, լեռներով ու հողերով, որ հաստատում են մի հրովարտակով նոյն «Հեթում Քր. Այ. հաւատարիմ թագաւոր Հայոց եւ Զապէլ թագուհի՝ դուստրը ի Քս. հանգուցեալ թագաւորի Լեւոնի», տեսնելով նրանց «բոլորը խաչազգեցեալ եւ զինուած ընդդէմ Քր. խաչի թշնամիների». ասելով թէ «որոնք եւ մեր թագաւորութիւնն ընդունեցին իրենց եղբայրն եւ քոյրը» այսինքն միաբան իրենց ընկերութեան[5]: Դրա փոխարէն նոյն ասպետները խոստացան պաշտպանել նրանց տէրութիւնն ամէն կողմերից «իբրեւ հարազատ եղբայրներ եւ բարեկամներ անբաժանելի»: Թէ մինչեւ երբ իրենց ձեռքը մնաց Հարունը յայտնի չէ[6]:

Առատաձեռն մի նուիրատու է **Մամուկաթին**, Վահրամի դուստրը Հոռոմոսի ուխտին, ուր գտնւում էր իրենց տապանատունը, 1266-ին ընծայում է Եղանց մարգն ընդարձակ սահմանով ու երկու աւերակով[7]: Երեք տարուց յետոյ Շիրակի պարոններից Պահլաւունի Շարափշահի դուստրը՝ **Թայիկը** նոյն մենաստանին կտակում է «Աբէլի ակն» Դունի դրան կողմը, որ իր որդին՝ Հազրբէկը գնել ու զարգացրել էր, ծախսելով «1500 սպիտակ[8]»: Նոյն տիկինը դարձեալ իր գանձագին Նորս հայրենիքը պարգեւում է Բագնայրին, որ «մեր ուխտն» է կոչում պատրոնութեան իրաւունքով[9], նաեւ «երկու կրպակ իմ կրպակներից» Նալպնդնոցի մէջ[10]:

Օրբելեան Տարսայիճի կինը՝ **Մինա խաթունը**[11], այրի մնացած իր Ջալալ որդու

---

1. **ՄՆՀ**. 14: — 2. Ջալ. Ա, 195: — 3. Շհխ.Բ, 108: — 4. Անդ՝ 110: — 5. Աստ՝ 166-67: — 6. **Մխ**. 207, 209: — 7. Ն. Սրգ. 157: — 8. Նոյն՝ 158: — 9. Աստ՝ ԺԴ, 5: — 10. Բամ. Հ. 178, 171: — 11. Աստ՝ 50:

հետ. 1292-ին գնում է հինգ այգի, իրար կցելով նուիրում է կտակով Նորավանից Աւագ Ս. Նշանին «վասն իմ արքայաշուք ամուսնու՝ Տարսայիճի հոգուն», որպէսզի Համբարձման օրն հանդիսաւոր կերպով օրհնէին նրա գերեզմանը եւ «տաս օր պատարագ մատուցէին»: Իսկ 1298-ին ինքը գնում է հանգչելու նոյն մենաստանի մէջ[1], ուր մինչեւ հիմա պերճօրէն խօսում է իր մահարձանը[2]:

Առատասիրտ պարգեւատու է նաեւ **Գոնցան** կամ **Գոնցէն**, դուստրը Տարսիճեան Խոստրովկայ եւ կինը Վահրամ սպարապետի, որ 1283-ին արդէն երկու զաւակների մայր[3], սկսում է բարեգործել: 1295-ին յիշեալ Նորավանից տալիս է մի այգի ի նպաստ հանգուցեալ որդու՝ Ամադինին, եւ հօրեկան մեծ հօր՝ Հասանին[4]: Իսկ 1345-ին արդէն ծերութեան ծայրն հասած եւ երեք զաւակներից երկուսը վաղուց կորցրած, իր բարեպաշտութեան վերջին ապացոյցն է տալիս, հայրենի ժառանգութիւնից գնելով երկու հազար դեկանի մի այգի եւ հարիւր դեկանի երկու հող, եւ նուիրում է Հերհերի Սիոն անապատին[5]:

Աւելի քան պարգեւի արժէքը սիրտն է, որ խօսում է Գորգկան ու **Թամճերի** դստեր՝ «**Աւագ** տիկնոջ» արձանագրի մէջ 1207-ին, որ իր օժիտ տարած ձիթահանքը[6] շնորհում է Անիի Աստուածածնին[7]: Անուամբ հաւասար, չիրակարնակ, որով եւ նոյն անձն է թւում Շեխեանց Խաչոտի կինը, որ 1221-ին ամուսնու հետ Խծկոնից ուխտին ընծայում են իրենց «հայրենի տներն» ու մի կրպակ[8]:

Դոփեան Հասանի կենակիցը՝ **Մամքանը**, դուստրը Վաչուտեան Բ Քրդի[9], 1312-ին իր որդու Գրիգորի հետ, Դատի կամ Խութայ վանքին պարգեւ է տալիս երեք կարեւոր գիւղեր: Որդին եւս շնորհում է իր առանձին նուէրը[10]: Նոյն տիկինը Գեղարքունեաց Բրդի այրք գիւղի Աստուածածին եկեղեցուն էլ ընծայել է մի ջաղաց ու երկու հողեր[11]: Ուշագրաւ է վարմունքը նաեւ Հասանի (թերեւս Դոփէնի) դուստր **Մամաքայի** եւ սրա որդու Վախթանգի, որոնք 1318 թւականին նոյն տիկնոջ «ոսկի առպնճանին գոնցէն (գրաւ) տուաք», ասում են, Վայոց ձորի Ս. Սիոն անապատի մօտ մի հող են գնում ու տալիս են նոյն վանքին[12]:

3.- Բարեգործութեան մի տեսակն էլ եկեղեցիների, մենաստանների, գիւղի, քաղաքի կամ գաւառի ապահարկութիւնն էր որոշ տուրքերից կամ հարկից, որ մեր թագուհիները կամ տիկնայք ի գործ էին դնում յաճախ իշխանաբար, ցոյց էին տալիս

1. **Աշ. հնդ.** 1916, 51: — 2. Աստ՝ ժէ, 6: — 3. Սսկ. 114: – 4. Անդ՝ 198-99: — 5. Անդ՝ 116: — 6. Աստ՝ 34: — 7. Բսմ. հ. 173: — 8. Ն. Սրգ. 210: — 9. Արց. 207: — 10. Անդ՝ 205: — 11. **Աշ. հնդ.** 1910, Ա, 17: — 12. **Սսկ.** 114:

այդպիսով իրենց մեծարանքն առ սրբավայրերին կամ գուժն առ հպատակներին, որ իրենց ստացւածքների համար պարտական էին հարկ տալ նրանց: Այդ շնորհումներն արձանագրում էին հրապարակով ի գիտութիւն հասարակութեան եւ իրենց պայազատների: Օրինակներն ըստ նիւթի բաժանում եմ:

ա. Աշոտ Ողորմածի կենակիցը՝ ***Խոսրովանոյշ*** թագուհին, 971-ին մի կտակ է թողել, ասելով թէ Տեկորոյ ուխտի արքունի հասոյթի մէկ մասն ի նպաստ նոյն վանքին է սահմանել «հաստատել եմ Տեկորոյ տոկոսը յեզն կայծ մի[1]» եւ այդ ժամանակ ամուսինը դեռ կենդանի էր: ***Շահանդուխտ*** թագուհին՝ զուգակից Սմբատի[2], Տաթեւին շնորհած իր մեծ գիւղը միանգամայն հռչակում է «ազատ ամենայն հարկից[3]»: Յիշեալ Ողորմածի հարսը՝ ***Կատրանիդէն***[4], 1008 թւականին մի շնորհք էլ ինքն է անում Տեկորոյ ուխտին: «Ցանուն Աստուծոյ կամ եղեւ ինձ», ասում է, եւ «թողել եմ Տեկորոյ տուրքը վասն Գագիկի ամուսնու արեւշատութեան եւ իմ որդիների»: Սրանցից մէկն Աշոտը յաջորդելով հօրը, ընդլայնում է մօր արձանագիրն ու վճիռը, «հաստատեցի եւ թողել եմ, ասելով, ի բնէ եղածի հարկն յաւիտենից եւ արտօնագրի տուրքը» եւ նզովում է նրանց, որ պիտի հակառակեն «հարկիս (իրենը) կամ չարիատիս (մօրը) թողլուս[5]»:

Նոյն մեծանձնութիւնը ցոյց է տալիս 1038-ին՝ յիշեալ Բագրատունի տիկնանց յաջորդը «բարեպաշտ ***Թագուհիս***, դուստրը՝ Աբասի (Կարինի°), Սմբատ (Գ) շահանշահի կինս եւ Աշոտի (Դ) մայրս», որի տիտղոսը յետոյ թւում է անւան տեղ է բռնել,- ինչպէս պատահել է եւ ***Մլքէի***[6], որ արաբերէն թագուհի է նշանակում: -Մինչ այրը դեռ իշխում էր, «ազատեցի, գրում է, Երէրվաց լրացուցիչ տուրքը բերքերից որդւոց որդի, Սմբատ շահանշահի հզօրութեան եւ արքայի արեւշատութեան[7]»:

Վեստ Սարգսի զուգակիցը՝ ***Տիկնաց տիկինը***[8], 1042-ին նոր մի շնորհում էլ ինքն է անում Տեկորոյ,- որի հնագոյն եկեղեցին, Ե դարի վերջերին, ցաւալի է յիշել, այժմեան հայութիւնը թոյլ տւեց, որ կործանւի, «թողել եմ, ասելով, Տեկորոյ պաշդխոտս», շահանշահի (Բագրատունի արքային) արեւշատութեան եւ իմ ծնողների հոգոյն[9]»: Կարծես թէ հայրենի գոյգ նահատակների այդ թոռանը կանխում է իր մաղթանքներին անարժան համարել ամուսնուն, որ հայրենիքի մատնիչը պիտի լինէր:

Անիի պատրոնը, Սահմադինը՝ Աւետեց որդին եւ կինն՝ ***Ռուսուդան***, 1284-ին «թողէք, գրում են, Մրենոյ տասնակը հացի, որ տոկոս է» ի նպաստ իրենց եւ որդիներին: Իսկ 1288-ին էլ նոյն մենաստանին շնորհում են «այգի խաղողի եւ գինու[10]»: Այսպէս

1. *Ն. Սրգ.* 207. *կայծ՝ կողով*: — 2. *Աստ՝* 153: - 3. *Օրբ.* 213: — 4. *Աստ՝* 108: — 5. *Ն. Սրգ.* 206: — 6. *Աստ՝* 83: - - 7. ***Շիր.*** 171: — 8. *Աստ՝* 66: — 9. *Ն. Սրգ.* 207: 10. *Ն. Սրգ.* 198-99:

նաեւ **Մինա խաթուն** Օրբելեանը[1] 1292-ին Նորավանից պարգեւած իր կալուածը հռչակում է «ազատ ամէն հարկերից[2]»:

Զաքարեանց սերնդից ամիր սպասալար Մխարգրձէլ ու կենակիցը՝ **Վանանէն**, 1300 թւին ուխտի են գնում Սանահին. սրբավայրն «աւերւած» են գտնում Ղամիր Շարարէն եւ վանականները խոշտանգւած: Կարեկցում են, համաձայնում են նոյն կողմերում իշխող «պարոն Աւագի եւ ամուսնուն **Ասփայի**» հետ եւ «ամենայն եկեղեցիները, ասում են, ամէն հարկից ազատեցինք, որ այսուհետեւ ոչ տուրք եւ ոչ ուրիշ հարկ Սանահինից են տալու[3]»:

բ. Սուրբ վայրերից դուրս էլ կան հարկերի շնորհումները բարեսիրտ տիկնանց կողմից: Վերոյիշեալ Խոսրովանոյշ թագուհու դուստրը՝ **Սոփին**, որ յետոյ Վրաստանի թագուհի պիտի տեսնենք, «թողել եմ, գրում է, Ալամանիի տուրքը իմ հոգու եւ կեանքի համար», ինչպէս եւ իր հօրը հոգուն եւ Գագիկ եղբօր եւ նրա որդիների կեանքի[4]:

Զաքարեան «աթաբէկ Իւանէ եւ **Խոշակն**՝ Վրաց եւ Հայոց թագուհին[5]», 1228-ին իրենց հարազատների օգտին նոյնպիսի մի պարգեւ են անում Շիրակաւանին, «թողել եմ, ասելով, Շիրակի գիւղի ջրի առւի եւ ջրաչի տուրքն որդիներին ազատեցի տուրքից[6]»: Նոյն ամուսինները 1231-ին էլ միեւնոյն նպատակով շնորհում են «ջրաղացների գլխահարկը վերին Շիրակի», որ տալիս էին գիւղացիները եւ «բերդի հարկը[7]»:

Նոյն իշխանի եղբօր Զաքարէի թոռն՝ Աղբուղա Ա-ն, եւ զուգակիցը «պարոն **Թամարս**, դուստրը իշխանաց իշխանի պարոն Բուղդային», որ թոռն էր Օրբելեան Տարսայիճի, իրենց ազնւական հոգուց թելադրւած, շնորհում են Անիի արքեպիսկոպոսական աթոռին եւ երէցների վրայ ծանրացած հարկը[8]:

Աղբուղայի եղբօրորդին «աթաբակ Շահնշահ» Բ վախճանւում է 1320-ին, ի մեծ տրտմութիւն իր կնոջ՝ **Խուանդզէի**: Եւ «ես նրա ամուսինը, գրում է տիկինը, դուստրը՝ Շամշադին Սահիպ Դիւանին», - որ Շիրակի պարոններից մէկն էր, յիշւած 1263-ին[9],- եւ իր որդին Զաքարիան, իրենց հայրենի Անի քաղաքի մէջ «թողեցինք, ասում են, եւ կովերի եւ աւանակների հաչւելն եւ դռնագիրն մեծի եւ փոքրի», ամուսնու հոգու փրկութեան եւ եղբայրների կենդանութեան համար[10]:

4. Բարեգործական ու միանգամայն բարեպաշտական էր՝ սրբազան անօթներ ու սպասներ նւիրել եկեղեցիներին եւ որի մէջ տիկնայք չէին ուզում յետ մնալ այրերից եւ երեւում են զանազան տեղերում: Այսպէս 1001 թւին **Կատրանիդէ** թագուհին Անիի իր

1. *Աստ*՝ 55: — 2. *Աշ. հնդ*. 1916, 51: — 3. *Ջալ. Ա*, 22: — 4. *Ն. Սրգ*. 194: — 5. *Տիտղոսիդ մասին տես աստ*՝ 121: — 6. *Ն. Սրգ*. 170: — 7. *Անդ*: — 8. *Բսմ. հ*. 66: — 9. ***Շիր***. 62: — 10. *Բսմ. հ*. 87:

կառուցած կաթողիկէն «զարդարուած, ասում է պատմիչը, ի զարդ ծիրանեծաղիկ ոսկեթել նկարագործ անկուածոց», որ խորանի վարագոյրը, սեղանի ծածկոյթն ու պատարագի հանդերձներն էին. նոյնպէս «եւ բազմապայծառ լուսատու անօթների վայելչութեամբ», այն է կանթեղներով, «որոնք ջահի նման պայծառ լուսաւորում էին ըստ երկնային կամարի սուրբ կաթողիկէն[1]»:

Կիւրիկէ Գ արքայի դուստրը՝ **Մարիամը**, Սանահինի Ս. Աստուածածնին ընծայում է տէրունական խաչի մի նշխար «իմ հայրենի սուրբ նշանն, ասում է, թանկարժէք պահարանով» եւ նրա հետ «արծաթէ սկիհ եւ տօնացուցակ[2]»: Նոյնպիսի թանկագին մի խաչի պարգեւը տեսանք նաեւ Դատի վանքին, Սմբատեան Վախտանգի ու Նանայի կողմից[3]:

Վերին Խաչէնի տիկինն՝ **Արզու խաթունը**, բարեգործում էր իր ձեռքի ճարտարութեամբ իսկ, դուստրերի հետ նրբարուեստ վարագոյրներ չինելով ու նւիրելով Գետկոյ նորակառոյց տաճարին (1191-ին), գրում է Գանձակեցին, «եւ ուրիշ եկեղեցիներին, Հաղբատի եւ Մակարի վանքերին եւ Դատի վանքին, որովհետեւ շատ էր սիրում եկեղեցիներին բարեպաշտ տիկինն[4]»: Այդքան անխոնջ ու բեղմնաւոր էին նրանց փափուկ մատները:

Նշանաւոր մի բարերար է իր «տկար ժամանակի» մէջ «քրիստոսասէր եւ փառաւոր պարոնն կանանց մէջ օրհնեալ» **Աւփան**, որ յենուած իր հզօր ծնողին՝ Տարսայիճին, եւ ամուսնուն՝ «մեծ եւ փառաւոր իշխանաց իշխանին» Գրիգորի կարողութեանը, «զարդարեց, ասում է մի յիշատակագիր. զանազան սպասներով եւ չինութեամբ Հայաստանեայց եկեղեցիները[5]», որին վաղահաս մահը զրկեց նրան գթոտ սրտից: Սակայն բարեպաշտ կենակիցը մասամբ ծածկեց նրա պակասը, գերեզմանից էլ նրան բարեգործութիւն անել էր տալիս[6]:

Օրբէլեան Լիպարիտի որդին՝ Պածածր, եւ կինը՝ **Դուզա** Սամիկոնեանը, իրենց տան մէջ Լուսաւորչի ճկոյթը ունէին, որ «ստոյգ վկայութեամբ մեզ էր փոխանցել նախնիներից», ասում են եւ որ 1280-ին ընծայում են Հաղբատի ուխտին ըստ առաջնորդի ու միաբանների խնդրանօք: Նրա հետ «եւ ուրիշ եկամուտներ», փոխարէնն ընդունելով «ծակամտի[7]» շաբաթւայ եւ կիրակի օրերի բոլոր պատարագները[8]:

Եւ հայ աշխարհի աւերման եւ աղքատութեան շրջանում անգամ չեն պակսում բարեսէր հոգիներ՝ բաղիշեցի Ֆահրատի մօր՝ **Թուրուանդայի** նման, որ 1459-ին Արծկէի Ս.

---

1. Ասղ. 256: — 2. ՄՏՀ. 17: — 3. Աստ՝ 166: — 4. Կիր. 111. աստ՝ 22: — 5. Արգ. 290: — 6. Աստ՝ 40: — 7. Լուսաւորդին Մուտն ի վիրապն: — 8. Ջալ. Ա, 71:

Աստուածածնին «եա զսկիհս[1]»: Այսպէս եւ Անկիւրիոյ հայ տանտիկնայք 1475-ին «բարձեր չինեցին», ասում է. տեղի յիշատակագիրը եւ «Աստուածածնի վանքի տունն զարդարեցին»: Իսկ 1484-ին էլ մայր **Սառա խաթունը** «մէկ գեղեցիկ բարձ բերեց վանիցս[2]»:

5.- Ուրիշ մի միջոց էր բարեգործութեան՝ սրբազան մատեաններ գրել տալը կամ գնելը կամ գրութեան մասնակցելն, եւ նուիրել եկեղեցիներին, մանաւանդ Աւետարանն, որ մեր նախնիների մեծ յարգանքը նրան տեսանք[3]: Եւ այդտեղ էլ կանայք մրցում էին արանց հետ: Յիշենք մի քանի օրինակներ:

Արծրունի **Մլքէ** թագուհին հնութեամբ եւ արուեստով նշանաւոր իր Աւետարանն ունի Ս. Ղազարի մէջ, գրուած 902 թուականին, որը «տուեց, ասում է, Վարագի Ս. Աստուածածնին[4]»: Շատ կատարեալ մի գործ, գեղեցիկ գրչութեամբ ու նկարներով, որոնք նմանահանութեամբ էլ լոյս են տեսել: Անկասկած հայ մանրանկարչութեան հնագոյն ու մեծագոյն պարծանքներից մէկն է ու պիտի մնայ այս հատորը:

**Վանենի** Սեւատեանն[5] 1224-ին հատուցանում է մի Աւետարանի ծախսը, եւ ընծայում է Խորանաշատի ուխտին, «սրանով ստանալ, ասում է, եկեղեցին ինձ որպէս հոգեւոր զաւակ», եւ որ այժմ Էջմիածնի մէջ է: Նոյն տիկինն 1232-ին եւս նուիրում է ուրիշ նկարազարդ մի Աւետարան Արցախի Հաւապտուկ մենաստանին, որ «բնական տուն եւ շիրիմ էր Ջաջռոյ իշխանի (իր հօրը) եւ մեր նախնեաց[6]»: Ներկայում Նուխուա գաւառի Գէոգբուլաղ գիւղի մէջ[7]:

Զարմանալին **Կեռան** թագուհին է երեւում եւ յաճախ նաեւ այս մասի մէջ. եւ 1283-ին «ըստ իր ամենայն բարեգործութեան խորհուրդ բարի ի միտ արկեալ», մի Աւետարան է գրել տալիս եւ նուիրում է իր հարց Սկեւռայի հանգստարանին[8] եւ այժմ Գանձակի մէջ: Յիշատակագիրը քահանային յանձնարարում է, որ երբ Ս. մատեանը պատարագի մէջ բարձրացնեն իրենց ուսերի վրայ, յիշեն նրա ստացողին «բարեպաշտ Կեռան թագուհուն», Լեւոն թագաւորին, իրենց ծնողներին ու դեռաբուսիկ մանուկների հետ[9]: Նոյն տիկինը չքեղ մի Աւետարան էլ 1272-ին գրել եւ իր նուրբ ճաշակով զարդարել էր տուել՝ «խորանօք եւ ծաղկաւէտ վայելչութեամբ եւ ոսկեպատ պայծառութեամբ»,

1. Շօտ. 193: — 2. Գրչ. Թ. 1103, 75, 103 Ս. Ղզր: — 3. Աստ՝ 164: — 4. Բզմ. 1911, 128: — 5. Աստ՝ 122: — 6. Հւք. յշտ: — 7. Խղբ. 29: — 8. Աստ՝ 172: — 9. Արց. 39:

աւելացնելով իր ընտանիքի խմրանկարն էլ[1] նւիրել է Ակներ վանքին[2], իսկ ներկայում սեփականութիւն է Երուսաղէմի ուխտի:

**Համա՛** «դուստրը Մամիկոնի» անզաւակ մնացած, «գնեցի, ասում է, իմ արդար արդիւնքով, Սր. Աւետարանը» (երկաթագիր անթւական) եւ տալիս է Տաշրաց Բարձրաքաշ մենաստանին[3]: Երեւի տիկինը զաւակը լինի 1265-ին յիշւած ազնւատոհմ Մամիկոնի[4]: Եւ մեզ ծանօթ **Ասփան** 1301-ին ստանում է նոյնպէս մի Աւետարան «արդար իմ ունեցւածքից» ու նւիրում է Խադարի ուխտին, «որ գերեզմանատունն է Դոփեանց ազգին մեծ իշխանների», որոնց հարսն էր ինքը: Մատեանը հիմա Գարդմանայ Թարգմանչաց վանքի մէջ է[5]:

Ազիզբէգի կենակիցը՝ **Վախախը**[6], 1318-ին գաղափարել է «ոսկիով եւ արծաթով պատել է տալիս մի Աւետարան, չնորհելով Եղիվարդի ուխտին[7]: Մի ուրիշը **Ցուստիանէ**, դուստրը՝ Արսէնի, 1352-ին «ցանկացող եղեալ» մի Աւետարանի, ստանում է ու պարգեւում է Խրիմի ոստանի Սուլխաթի եկեղեցուն, իր մաքրասիրութեամբ խնդրելով, որ «զգուշութեամբ պահեն մոմերից, ձէթից եւ ամենայն կեղտոտւելուց[8]»: Իսկ 1327-ին Կիլիկիոյ մէջ վայելուչ մի Աւետարան է գրւել, որի ստացողն էր «ծերունի **Թանգերը**» եւ գրել է տւել «իր հոգու յիշատակի համար եւ իր հարսի **Ալիծի**, գնալուն առ Քրիստոս», որ երկու զաւակ էր թողել[9]: Գեղեցիկ եւ ոչ առատ օրինակ սիրոյ սկեսրոջ եւ հարսի մէջ:

Շարունակւում են ու չատ բազմաթիւ են այսպիսի նւիրատւութիւններր, ինչպէս եւ Աստւածաշնչի գրոց, Ցայսմաւուրաց, Մաշտոցի եւ Սաղմոսարանի, որ չեմ ուզում խճողել այստեղ, իրենց միօրինակութեամբ չձանձրացնելու համար ընթերցողներին: Բայց ուշադրութեան արժանի է տարսոնացի **Լապիլ** երիցակինը[10], եռանդուն մի հաւատացեալ, որ 1390-ին թախանձանօք գնում է մի Աւետարան, անձամբ տանում եւ ընծայում է Երուսաղէմի Ս. Յակոբի ուխտին, «ըստ ինձ ընկած երկրամած դէմքով» եւ աղաչելով «եպիսկոպոսներին, քահանաներին եւ սարկաւագների երամից» եւ ունկնդիրներից՝ իրեն եւ իրեններր յիշել[11]:

Կան կանայք, որ միայն մասնակցում են գրչութեան ծախսերին: Այսպէս 1183-ին Երիզու Աստւածածնի քահանաներր մի Աւետարան են խնդրում, որի մեծագոյն օժանդակողները լինում են երկու «բարեպաշտներ եւ սրբասնեալներ» կանայք՝ **Գոհարը** ու **Խոսրովիդուխտը**[12]: 1313-ին մի Աւետարան է գրւել Տայոց Շիկրակ գիւղի մէջ «**Թամամ խաթունի** հրամանով եւ օգնութեամբ» Հազարչահի կնոջ, որն «օգնական եղաւ

---

1. **Աստ**՝ 124: — 2. **Ազ. Հնդ.** 1910, **Բ**, 23: — 3. **Հւք. յշ.**: — 4. **Արց.** 168: — 5. **Անդ**՝ 290: — 6. **Աստ**՝ 162: — 7. **Հւք. յշ.**: — 8. **Անդ**: — 9. **Ցգկ. Հլպ. Ա**, 396: — 10. **Աստ**՝ 166: — 11. **Հւք. յշ.**: — 12. **Անդ**:

թղթի գնի եւ կապելուն ու ծաղկելուն[1]»: 1321-ին գաղափարուած ճառընտրի մէջ էլ խնդրում են, որ մատեանի մէջ յիշատակւի «արդիւնք» ունեցողների անունը «մանաւանդ պարոն **Զապլունի**՝ դստեր Լեւոն արքայի Հայոց[2]»:

Ցուցիչ է **Շնորհաւոր** անունով աղքատիկ կնոջ պարագան, որ «իր չքաւորութեան պատճառով մի անասուն ունէր, որ ծննդական էր» եւ երբ 1270-ին Բարձրբերդի մերձակայ Խորին ուխտի Երանոս առաջնորդի համար մի ճառընտիր էր գրւում, նա այդ անասնիկը կամովի եւ «վասն բարի յուսոյն իւրոյ՝ յօգնականութիւն ետ գրոցս», ասում է գրիչը[3]. Աւետարանի այրի կնոջ նաքարակիտն էր: Իսկ **Խորիշահը**՝ խաչէնացի Զաքարէի[4] ամուսինը, մասնակցում է մի Աւետարանի գրութեանն անուղղակի կերպով, գնելով «զմատաղիս եւ ընթերցւածս» ու նւիրելով Գանձասարի ուխտին եւ այդ ձեւով «**միաբանւեցի**, ասում է, Սուրբ Աւետարանին[5]», ինչպէս միաբանում էին մենաստաններին[6]:

Եկեղեցիների գործածութեան ընծայւած Ս. մատեանները յաճախ զարդարւում էին թանկագին կազմերով եւ որի մէջ չեն պակասում նոյնպէս արդիւնաւոր տիկնայք: Օրինակ՝ 1183-ին Մլիճոյի մէջ մի Աւետարան է գրւել Ստեփանոս քահանայի համար եւ «արծաթ չնորհելով զարդարելու համար» մատեանի, ասում է գրիչը, նոյն քահանայի մայրը **Թագուհին** «ի յիշատակ իր հոգու» եւ իր հօր՝ Կարապետ քահանայի[7]: 1270 թւին մի գաղափարւածի «պատճառ կազմութեան» լինում է Հեթում Ա-ի քոյրը՝ **Հռիփսիմէ** կրօնաւորը[8], որ գրիչը խնդրում է «յիշման արժանի» անել[9]: **Աւագ** տիկինը, դուստրը՝ «պարոն Մանիլայի», որի տոհմը յայտնի չէ, եւ Հ. Ալիշանն ենթադրում է ԺԳ-ԺԴ դարերի միջեւ, տեսնում է Մլքէի վերոյիշեալ Աւետարանը, երբեմն գողացւած ու կողոպտւած զարդերից: Որի համար «միաբանեցի»[10], ասում է, Վարագայ ուխտին, եւ «վերստին նորոգել» է տալիս «իմ արդար եկամուտով, կազմութեամբ եւ կողափակ նկարակերպ արծաթապատ գործով զարդարւած» ի յիշատակ ծնողներին[11] եւ որ ի Ս. Ղազար չհասած՝ հանդիպել է ուրիշ ընչաքաղց ու սրբապիղծ ձեռքերի:

Հուսկ կան կանայք, որ երախտաւոր են հանդիսացել գրչագրերն ազատելով կողոպտիչներից: 1171-ին Մանազկերտի վիճակի Խաղղուղի գիւղի եկեղեցուց գողանում են միակ Աւետարանն եւ որովհետեւ պենտեկոստէի օրերն էին, «խափանեցին, ասում է մի յիշատակագիր, կարդալն եւ ժամատեղն եւ քահանաներին տրտմեցրին»: Ցառաջ է անցնում ճարտար ու «հաւատարիմ» մի կին՝ **Շուշան** անունով, եւ «մեծ ջանքով երեւան

1. Անդ: — 2. Անդ. եւ աստ՝ 69: — 3. Տաշ. Ցցկ. 49: — 4. Աստ՝ 198: — 5. Հւք. յշա: — 6. Աստ՝ 166-67: — 7. Սիոն, 1933, 416: — 8. Աստ՝ 172: — 9. Հւք. յշա: — 10. Աստ՝ 166: — 11. Բ. Սրգ. Ա, 390:

է հանում աւազակներին» Ս. մատեանը[1], տղամարդկանց չկարողացածն ինքը գլուխ բերելով: Աւելի մեծ է արդիւնքը **Յիմիի** մեծ մօր՝ Վահրամի կնոջը[2], որ Լամբրոնի կողոպտման ժամանակ (ԺԴ դարում) իր քաղաքը բերուած տեսաւ նոյն ամրոցի Աւետարանը, նկարչական արւեստով թերեւս անմրցելի բոլոր հայ գրչագրերի մէջ եւ «վասն սիրոյ Քրիստոսի գնեցի» ասում է՝ այն[3], ապահովելով նրա գոյութիւնն, որպէս հայ արւեստի պարծանքը, եւ այժմ պահւում է Ս. Ղազարում: Իսկ 1448-ին Վանի մէջ աւարառութեան է մատնւում եկեղեցական երգերի մի մատեան եւ այդտեղ էլ մի կին՝ **Շախփաշա**, ամուսինը՝ Գրիգոր, «երկու գրիւ (ցորենի եւ գարու չափ) ցորեն եւ թափեցց զգանձարանս ի գերութենէ», նւիրելով Արարքի Աստուածածնին[4]: Այդտեղ սիրտն աւելի մեծ է եղել քան տուրքը:

6.- Ազնւական եւ զարգացած տիկիններից ոմանք հաճոյք էին զգում նաեւ բանաւոր բարեգործութիւնից, հաւաքելով իրենց չուրջ անօգնական պատանիներին եւ ուսուցանում էին նրանց կրօնի ու կեանքի կարեւոր ծանօթութիւնները: Ղ. Փարպեցին ակնարկեց իր ընդունած մարմնաւոր ու հոգեւոր սննդին Մամիկոնեան Ձուկայի եւ նրա քրոջ ձեռքով[5]: Ինքը նրանց ազգականը չէր, այնպէս որ Վահանին յիշեցնում էր նրա հետ ունեցած զանազան կապերը բացի արենակցութիւններից[6]: Ազնւական էլ չէր: Վկայ՝ իր **Փարպեցի** կոչումը, որ ինքն իսկ տալիս է իրեն[7], նման ուրիշ անտոհմ անձանց, ուր տոհմիկները մականւամբ վարում էին՝ ասացինք[8], եւ որ կարող էր Ձուկայի որդիների կրկնոցներն էլ սպասաւորի պէս կրել նրանցից յետոյ, երբ խաղային[9], փոխանակ միասին խաղալու նրանց հետ: Բայց Մամիկոնեանց կամ Արծրունեաց տան արդիւնաւոր մի մարդու զաւակն է թւում: Արծրունի քոյրերը նրան միասին կրթեցին իրենց որդիների հետ, այնպիսի խնամքով, որ երբ զարգացաւ հասակով, բարեպաշտ տիկինների նրան ներշնչած «հոգեսիրութիւնը» նրան մղեց իրենց եղբօր՝ Աղանին, միայնակեցի[10] աշակերտութեան[11], որից յետոյ բարձրացաւ Վաղարշապատի վանքի առաջնորդութեանը[12]:

Ղազարը յիշում է նաեւ ուրիշ երեք հարազատներին, մէկը Համազասպ անունով, թերեւս Վահանի եղբօրորդիները, որոնք նոյնպէս մարդասիրաբար դաստիարակւեցին, աւելի ուշ, Մամիկոնեան տիկնոջ հովանու տակ: «Ունին երեքեանդ, ասում է, զամենայն սննդեան եւ խրատու մասն եւ զհրահանգ հոգեպէս եւ մարմնապէս, եւ զծանօթութիւնս ուղղափառ հաւատոյ՝ յօրհնելոյ ի մօրէն քումէ եւ ի քէն ի տեռնէ»: Մայր եւ որդի

---

1. **Հւք. յշ**: — 2. **Աստ**՝ 108: — 3. **Բ. Սրգ. Ա**, 559: — 4. **Շօտ**. 158: — 5. **Աստ**՝ 93: — 6. **Փրպ**. 570-73: — 7. **Նոյն**՝ 15: — 8. **Աստ**՝ 82: — 9. **Փրպ**. 572: — 10. **Աստ**՝ 93: — 11. **Փրպ**. 15: — 12. **Նոյն**՝ 589-90:

միասին աշխատել էին նրանց վրայ, որ նկարագրում է «յամենայն մտաւորութիւնս եւ յիրս արուեստս լիք եւ կատարեալք[1]», ինչպէս կրթել էր նրանց Զուկայի մայրագութ դպրոցը:

Աւանդական է եւ կարող է նաեւ ուղիղ լինել՝ Սիւնեաց պատմիչի գրածը, թէ ***Սահակդուխտը*** հաւատաւոր Ը դարում[2], վարագոյրի ետեւ նստած, «ուսուցանում էր շատերին», այսինքն հոգեւոր երգեր էր դաս տալիս: Այսպէս նաեւ բազմարդիւն Պահլաւունիները՝ Գրիգորն եւ ***Շուշիկը***, իրենց առօրեայ զբաղումներից մէկն էին արել «ուսուցանել մանուկներին[3]»: Շնորհալին նոյնն է վկայում իր այրի քրոջ ***Մարիամի*** մասին, թէ ազատուած իր զաւակների դաստիարակութիւնից, պարապում էր ուրիշ երեխաների հետ. «Որ յետ մանկանց որ ըստ մարմնոյ - Ստանայր մանուկս ըստ Աստուծոյ[4]»:

Արձանագրութիւնների մէջ հանդիպում ենք Գրիգոր անունով մէկին, որ 1223 եւ 1234 թւականների մէջ բարեգործութիւն է անում եւ ինքն իրեն կոչում է «սնուցած մեծն (Զաքարեան) Սարգսի դստեր՝ ***Նրջիսի***[5]» եւ ուրիշ մի տեղ էլ «Նրջսի թագուհու[6] եւ ***Մամքանի***[7]» նրա դստեր[8], որ իրեն գործակից ունեցել էր այդ մարդասիրութեան մէջ, գուցէ ամուսնացնելուց յառաջ: Կայ դարձեալ Արսէն անունով մէկը, նոյնպէս «սնուցած պարոն Նրջիսի» ու Նուիրատու Հառիճի ուխտին[9]. ապացոյց՝ թէ այդ տիկնոջ խնամքը զանազան անձանց է հասել: Երեւում է, թէ նա իր սիրոյ գործին դուստրից բացի կամ յետոյ ուրիշ սեռակիցներ եւս օգնական ունէր: Դրանցից մէկը ***Ազիզը***, ինքն իրեն արձանագրում է «պաշտօնեայ Նրջիսի», ոչ աղախին եւ միաբանում է Գետկոյ վանքին[10]:

1318-ի Աւետարանի[11] գրիչը՝ Ներսէս քահանան, պատմում է, թէ սկզբում թափառական մի պանդուխտ էր, որ մեզ ծանօթ Ազիզբէգն ու ***Վախախը***[12] գթալով իրենց մօտ են պահում եւ «ինձ դարձրին, ասում է, խելամիտ, սովորեցրին ինձ ամենայն իմաստութեան հմուտ», եւ «այնպէս ծնողագութ կերպով սիրում էին ինձ սրտանց[13]»: Ուրիշ մի Ազիզ անունով, իր մասին վկայում է, թէ «սնեալ էր ***Խութլու խաթունի*** եւ Պռօշի[14] տան մէջ», Վայոց ձորի տէրերի, ուր տիկնոջ անուան նախադասութիւնը հաստատում է, նրա իր վրայ ունեցած ազդեցութեան առաւելութիւնը քան իշխանինը:

7.- Ընդհանուր մարդկութեան, բայց եւս աւելի կանանց սրտի մօտ է եղել վշտի ձայնը, որովհետեւ հայուհին շատ զգայուն էր հասնելու եւ սպեղանի դնելու:

---

1. *Նոյն*՝ 588-89: — 2. *Աստ*՝ 174: — 3. *Մգ. թղթ.* 43: — 4. *Շն. Զափ.* 226: — 5. *Շիր.* 162: — 6. ***Տիտղոսիդ համար տես աստ***՝ 121: — 7. ***Ջալ. Ա***, 103: — 8. ***Աստ***՝ 108: — 9. ***Շիր.*** 162: — 10. ***Ջալ. Ա***, 141: — 11. ***Աստ***՝ 164: — 12. ***Աստ***՝ 195: — 13. ***Հւք. յշ***: — 14. ***Սառ. Ա. վ.*** 51:

Մագիստրոսը պատմում է, թէ իր նախնիքն՝ Համզէն եւ **Շուշիկը** պատրաստ էին վազելու ամէն հիւանդի մօտ. «ո՞ր մէկը հիւանդ էր, որ չէին տեսնում[1]», մխիթարելով եւ օգնելով նրանց կարիքները:

Սակայն մարմնական ցաւերի հանդէպ շատ զգայուն էր սուրբ թագուհին՝ **Զապէլը**, որ իր առանձին հոգածութեան նիւթ էր արել հիւանդները, ինչպէս 1253-ին վկայում էր ամուսինն իսկ՝ թէ «տառապանքով հոգում է ... հիւանդներին[2]»: Եւ նրանց տուած իր կարեւորութիւնը չէչտում է թագուհուն յղած գերմանացի մի ասպետի հրովարտակի մէջ[3], նրանց նկարագրելով «զարդարուած եւ զօրացած հիւանդներին սպասարկելու մէջ. միշտ եւ հանապազ մատակարարելով տնանկների տուրքը[4]». ապացոյց թէ նրանց այդ գթասիրութիւնն իսկ յորդոր էր եղել իր եւ Հեթումի կատարած մեծ բարեգործութեան:

Մայրենի սրտի մէջ կաղապարուած էր նրա դստեր՝ **Ֆիմիի**, իր Լեւոն եղբօրից 1263-ին վկայուած՝ «ամենին կարեկից, մանաւանդ, որ հիւանդութեան ախտից նեղւում են[5]»: Մօր եւ դստեր վշտահար հոգիները[6], գիտէին աւելի լաւ հասկանալ ու գնահատել մարդկային ցաւերը: Նոյն տոհմի եւ նոյն գթութեան ժառանգն էր Զապէլի հօրեղբօր Ռուբէնի դուստրն՝ **Ալիծն** եւս, տիկին Անտիոքի, որ 1234-ին մի հրովարտակով նորոգում է 30 բիւզանդական ոսկու տարեկան տուրքը, որ իր մայրենի մեծ մայրը՝ Համփրէն[7], 1151-ին Երուսաղէմի Ս. Ղազար հիւանդանոցին կտակել էր եւ յետոյ դադրել էր[8]:

Կասկած չունեմ եւ այդ չորս դէմքերն էլ վկայում են, որ հին կանանց դասից շատերն եղել են համապատասխանող Աւետարանի ձայնին, «հիւանդ էի եւ տեսէք ինձ», որոշներն անձամբ եւ որոշները նպաստելով, մնայուն կերպով՝ ինչպէս Զապէլը կամ բստ յարմար ժամին, ինչպէս կատարեց **Շուշան** Կամսարականը, որ պիտի տեսնենք ստորեւ: Վերջապէս իւրաքանչիւրն իր կարողութեան կամ յարմարութեան համեմատ:

8.- Սակայն մարդկային կարօտութիւնն աւելի ընդարձակ ու բազմազան է եղել միշտ եւ հայուհու ազնւագութ հոգին ջանացել է հասնել ամենին եւ ամէն տեղ, ուր կարող էր, ամոքելու համար ցաւերը, սրբելու աչքերը, լցնելու պակասները: Այստեղ էլ առաջին կարգի վրայ են գտնւում Պահլաւունիներ՝ Գրիգորն եւ **Շուշիկն**, որոնց սովորական գործերից էր՝ «գնել գերուածներին, ազատել բանտարկեալներին, սնուցանել որբերին, օթեւան լինել այրիներին», տնանկները ժողովել, բռնաւորների ձեռքը մատնուածներին ազատել, «իրենց ձեռքով իսկ կերակրել աղքատներին», եւ որբերն

1. Մգ. Թղթ. 43: 2. Հւք. յշտ: - 3. Աստ՝ 198: 4. Միս. 207: 5. Հւք. յշտ: 6. Աստ՝ 48-49, 171: — 7. Աստ՝ 67: — 8. Միս. 526:

ամուսնացնել իրար հետ: Ամէն մեռելի ետեւից յուղարկաւոր ու սգաւորներին սփոփիչ էին գնում. չքաւոր պարտապանների պարտքերը հատուցում էին եւ ոչ ոք, որ Նրանց յարկն էր մտնում «տրտում եւ անմխիթար» դուրս էին գալիս[1]: Կեանքն ու նկարագրութիւնը հաւասարապէս գեղեցիկ:

Իրենց Թոռն ու Աղթամարի տիկինը՝ **Մարիամը**, իրենց պէս էր «բոլորի նկատմամբ գթոտ ու ողորմած[2]»: Նանայի Թարգմանիչն ակնարկում է Սիւնեաց տիկնոջը՝ Բագրատունի **Մարեմին**, «քաղցր եւ յոյժ գովելի վարքով, որ հասարակաբար ունէր ամէն մարդկանց հանդէպ սիրոյ խնամք սիրելի սուրբ մտացն[3]»: Սասունցի **Մելքաթը** կոչւում է «որբերի եւ այրիների խնամածու[4]»: Սիր Պաղտնիի ամուսինը՝ **Շուշանը**, նոյնպէս պատրաստ էր «որբերի եւ այրիների մխիթարութեան համար[5]»: **Զապէլ** Թագուհին աւելի գործունեայ եւ առատաձեռն էր բոլոր կարօտեալներին, որ Աւետիս գրիչը նրան կոչում է «ողորմած, աղքատասէր, բազմաբաշխ, լցւած ամենայն բարութեամբ[6]». եւ Գանձակեցին՝ «բարեգործ, ողորմած եւ աղքատասէր[7]»: Եղիվարդեցիք **Վախախը** եւ Ազիզբէգը՝ «ողորմութիւն բոլոր աղքատների համար» անպակաս էին անում[8]: Նոյնպէս եւ **Մարիուն** արքայամօրը համար ենք կարդում, Թէ «շատ բարեգործութեամբ զարդարեալ էր[9]» եւ **Ռուզ խաթունի** եւ Ասլիի մասին[10], Թէ իրենց բարեպաշտութեամբ «լցրեցին Շիրակի տունն եւ Անի մայրաքաղաքը շինութիւններով եւ արդար դատաստաններով եւ տրօք չքաւորներին[11]»:

Աւելի ցայտուն է վկայութիւնը, որ 1285-ի մի յիշատակագիր տալիս է **Կեռանի** մասին, խնդրելով յիշել «ամենաբարեգործ եւ քրիստոսասէր դժխուհուն մեր արքայի օրհնեալն կանանց մէջ՝ Թագուհին Կիր Աննան, որ մայրաբար խնամում էր բոլոր եկեղեցիների, որդիս յանձանձում էր եւ հայրական այցելութիւն ամենայն աղքատներին, առատութեամբ պարգեւում էր տուրքերը, զւարթամիտ ողորմութեամբ կատարում էր» ու գեղեցիկ նմանութեամբ այն որակում է «իբրեւ Նորատունկ ձիթենի ծաղկած լուսաւոր գործերով»: Աւա՛ղ, որ մահւան փոթորիկն այդ տարի արմատախիլ արեց այդ ձիթենին ու զրկեց իրեն պաշտող ժողովուրդն իրենից, մինչ Լեւոն քաղաքական խնդրով գնացել էր Թաթարների Արղուն խանի մօտ[12], եւ վերադարձին արքունիքն ու աշխարհն ամայացած գտաւ այնպիսի մեծ կենակցից եւ Թագուհուց:

---

1. **Մգ. Թղթ.** 43: — 2. **Աստ՝** 159: — 3. **Հյպ.** 267: — 4. **Աստ՝** 159: — 5. **Հւք. յշա.** 1221: — 6. **Ազ. Հնդ.** 1910, **Բ**, 25: — 7. **Կիր.** 212: — 8. **Հւք. յշա.** 1318: — 9. **Ազ. Հնդ.** 1913, **Ա**, 81: — 10. **Աստ՝** 195: — 11. **Հւք. յշա.** 1357: — 12. **Պատմ. Որբ.** 242-43:

*Այդ բոլոր թագուհիներն ու տիկնայք իրենք իրենց ճշմարիտ մայրեր էին զգում իրենց հպատակ ժողովրդի համար, եւ իբր այդպիսին վարւում էին նրանց հետ, ջանալով դարմանել նրանց կարիքները. որքան ժամանակներն եւ իրենց նիւթական կարողութիւնը ներում էին, եւ այդպիսով իրենց խղճի եւ կոչման պարտականութիւնները կատարում էին:*

9.- *Աւետարանական բարեգործութիւններից մէկն էլ հիւրասիրութիւնն էր, որ ցոյց էր տրւում օտարներին, մանաւանդ նրանց, որ զուրկ էին օթեւանից: Հայութիւնն այս մասի մէջ եւս շատ փայլել է յատուկ հիւրանոցների կառուցմամբ, որը պիտի տեսնենք յաջորդ գլխի մէջ, ուր իրենց յարկի ներքեւ ընդունում էին հիւրերին: Յաճախ յիշւած* ***Շուշան*** *Պահլաւունին եւ ամուսինը գովւում են իրենց «աղքատասիրութեամբ եւ հիւրընկալութեամբ» եւս*[1]*: Կիլիկիայի արքունիքում էլ յիշւում են ասպնջականութիւն գտած եւրոպացիներ, աշխարհական եւ եկեղեցական, որոնցից էր Բրոկարդը. որ մի ամիս հիւր մնաց Ա Հեթումի պալատի մէջ, իր իսկ վկայութեամբ*[2]*: Հայաստանի բուն հիւրանոցները վանքերի մէջ էին, բայց հայուհին, որ միայն նկատում ենք. այնտեղ գործ չունէր, այլ իր տան մէջ իսկ ընդունում էր կարօտեալներին: Մեծ տների մէջ ծառայող աղախինները պաշտօն ունէին հանգստութիւն եւ դիւրութիւն ընծայելու նրանց եւ որոնցից զգուշացնում էր ՑՀ. Գառնեցին քահանաներին, որ չէր ուզում աղախին պահէին, գրելով այսպէս «քեզ մօտ չպահես դու ասպնջական կանանց, հանգստացնողներ եւ գլխալւացներ*[3]*», ինչպէս աշխարհականներն ունէին:*

*Զաքարիա սարկաւագը մի օրինակ է տալիս մեզ հայ հիւրասիրութեան* 1611 *թւականից, որը շատ հետաքրքրական է: Աշնան վերջն էր, մի օր. ասում է, Միափոր գիւղի մէջ երեւաց պարսիկ մի փերեզակ եւ մտաւ մի տան մէջ: Այնտեղ մի հայ կին տեսաւ, որ խարույկը վառել եւ մօտը նստել՝ մի հնգամեայ աղջկայ հետ. գուլպայ էր հիւսում: Պարսիկն հարցրեց. «Խուրտայ առնո՞ւմ էք». եւ կնոջ հաւանութեան վրայ բացեց արկղն եւ ցոյց տւեց ուլունքները, նրան թողնելով որոշելու գինը, խկոյն յարելով «քաղցած եմ, բե՛ր հացը ուլունքների գնի համաձայն»: Կինը պատասխանեց «Միթէ հաց տամ մարդու եւ գինն առնեմ եւ լինեմ վարձավաճա՞ռ»: Եւ գնաց երեք ձու բերեց, եփեց եւ նրա առջեւ դրեց. նոյնպէս մածուն, կոգի ու կորեկախառն հաց: Փերեզակը կերաւ, հարցումներ անելով տեղեկացաւ, որ կնոջ ամուսինն Աթան հովիւ էր եւ ոչխար էր արածեցնում: Յետոյ արկղից հանեց ուլունքների զանազան շարքեր եւ աղջկայ վզին*

---

1. *Մգ. Թղթ.* 42: — 2. *Բրկ. Բ, բ*: — 3. *Գռն. Խր.* 145:

անցկացրեց, մօրը բազկին էլ գեղին մի պարանջան անցկացնելով ասաց. «Աստուած չէն պահի քո տունը»: Կինն ուզեց զարդերի գինը տալ, բայց պարսիկը մերժեց ու մեկնեց:

Այդ փերեզակն Ա. Շահաբասն էր, որը Վրաստանը նուաճելուց յետոյ, եկել էր ձմեռելու կայանաձորի մէջ եւ մի օր այդպէս ծպտուել եւ անձամբ ցանկացել էր տեսնել ժողովրդի վիճակը: Երկու օր անցած, մի զինուոր շահի կողմից եկաւ եւ տղամարդուն ու կնոջը կանչեց: Շփոթուեցին. կինը որչափ որ կարող էր պատշաճօրէն հագնուեց, եւ այրը մեծեղջիւր մի խոյ որպէս պարգեւ վերցրած, աղջկայ հետ գնացին շահի մօտ, որ իսկոյն կինր նրան ճանաչեց: Արքան երկար խօսեց նրանց հետ, խելացի պատասխանների համար հաճոյք ստացաւ: Նրանց գեղեցիկ հագուստներ հագցրեց եւ մելիքութեան պատիւը շնորհեց իրենց գաւառի վրայ[1]: Հայկական հիւրասիրութիւնն այդ արդիւնք տուեց՝ հովիւը հովիւր մելիք դարձնելով:

10.- Կեանքը բարդ է եւ ընկերական պատահարներն այլազան, որոնք հաւասարապէս հասնում է հայուհու մարդասէր սրտին եւ հնարաւոր օժանդակութիւնը մատուցում է: Այսպէս 963-ին Ռոմանոս կայսրն երբ մեռաւ, նրան յաջորդեց Նիկեփորն, որի չար կինը միաբանուեց հայազգի Զմշկիկ զօրավարի հետ, սպանել տուեց կայսրին եւ գահը զօրավարին յանձնեց: Մնացել էին Ռոմանոսի երկու զաւակները՝ Վասիլն ու Կոստանդինն, որ կայսրուհին նոյնպէս ջնջել էր ուզում: Սակայն Զմշկիկն աւելի ողորմած քան այդ վայրագ կինը, պատանիներին փախցրեց իր հայրենի աշխարհը, «մեծ Մխիթարի մօր՝ **Սպրամիկի** մօտ», որ բնակւում էր Վասպուրականի Ցանձիթ գաւառի մէջ: Հինգ տարի յետոյ հայազգի կայսրը խղճի խայթից ապաշխարութեան եկաւ, բերել տուեց երկու փախստական եղբայրներին եւ Կոստանդնուպոլսի գահը Վասիլին յանձնեց[2]: Այսպէս Սպրամիկն ասպնջական, պահապան ու խնամակալ էր եղել ապագայ քաջ, ռազմագոռ ու մեծագոյն կայսերներից մէկին՝ Բ Բարսեղին, որի վրայ բարոյական ազդեցութիւն էլ ունեցաւ անշուշտ հինգ տարուայ մէջ:

Աւշին կամ Ափշին ոստիկանը մեծամեծ չարիքներ էր գործում Հայաստանի մէջ, ուզելով նուաճել բոլոր աշխարհը, որին ընդդիմանում էին ազատանիներից շատերը, մանաւանդ Վասպուրականի տէրերն, որ անդադար մարտնչում էին: Թշնամին յաջողեց ձերբակալել ու կոտորել նրանցից շատերին: Կալանաւորների մէջ գտնւում էր նաեւ Արշակը՝ Վարաժնունեաց տոհմից, որ Վասպուրականի տիկինը՝ **Սեզան**[3], աշխատեց ազատել: Ցայտնի չէ, թէ ինչ կապ ունէր նրա հետ: Նպատակին հասնելու համար, ձեռք առաւ Աւշինի կնոջն, որ իր հօր քեռու՝ Շապուհ Բագրատունու դուստրն էր[4] եւ յաջողեց

1. Զք. սրկ. Ա, 24-26: — 2. Ուռ. 7, 29: — 3. Ասո՝ 62: — 4. Ասո՝ ԺԸ, Բ, բ, 4:

*համոզել վայրագը, որով Արշակն ազատւեց նրա սրից, շնորհիւ այդ երկու գործակալի միջամտութեան։*

*Սմբատ Ա Բագրատունին մի ճակատամարտ ունեցաւ Ահմատ զօրավարի հետ Ապահունեաց գաւառի մէջ, Տարօնի ազատութեան համար, որ նա գրաւել էր, սպանելով գաւառի տիրոջ՝ Գուրգէնին, Բագրատունի Աշոտ կիւրապաղատի որդուն, որ յաջորդել էր իր հօրեղբօրը՝ Դաւթին[2]։ Սմբատը պահանջեց Ահմատից, որ գաւառն յանձնի Դաւթի որդուն՝ Աշոտին[3], որ Ծապուհ արքայի եղբօր փեսան էր[4]։ Ոստիկանը չուզեց լսել, ուստի ծագեց պատերազմը եւ վերջացաւ հայոց պարտութեամբ։ Ասւում էր թէ իրր 5000 սպանւածներ էին թողել[5] եւ անթաղ էին մնացել, ինչպէս պատահում էր հին ժամանակ պարտւածներին, զինակիցները փախուստ տալով ու թշնամին փոյթ չէր դարձնում նրանց թաղմանը։*

*Սպանւածների մէջ էր նաեւ Գեղարքունեաց իշխանը, «չքնաղագեղ երիտասարդ Աշոտը», որդին՝ Սուփանայի քեռորդու Սմբատ արքայի[6]։ Անցաւ մի ժամանակ, մինչեւ հեռացան ու լռեցին պատերազմի չափորների ձայներն։ Եւ ահա մի օր մարտի դաշտի վրայ երեւաց մի տիկին, մի քանի սպասաւորների հետ եւ սկսեց սրտատրոփ քայլերով դաշտում թափառել դիակների բազմութեան մէջ, իր ակնարկն յառելով մի առ մի այդ մարմինների վրայ։ «Սպարապետական տիկինն» եկել էր Տարօնից, որ երկար խուզարկութիւննից յետոյ գտաւ ու ճանաչեց նշաններից գեղեցիկ Աշոտի այլակերպւած մարմինը։ Փղձկաց, ցօղեց նրա վրայ արտասուքի կաթիլներ, մայրական գորովով ամփոփեց այն եւ տարաւ թաղեց Տարօնի իր սեփական Պորպ աւանի մէջ[7]։*

*Բայց ո՞վ էր սպարապետական այդ տիկինը, եթէ ոչ ինչպէս կարծում եմ,- նոյն ինքն Տարօնի իշխանուհին՝ կենակից Աշոտի[8] եւ դուստրը յիշեալ Ծապուհի, որ կուից առաջ յաջորդել էր Աբաս եղբօրն սպարապետութեան պաշտօնի մէջ[9]։ Եւ իր դուստրն ամրացնելով սիրտը, կատարում էր գթոյ կրկնակ պարտականութիւնը։ Մէկն երախտագիտական՝ իր երկրի ազատութեան համար նահատակւած իշխանին եւ միւսն ազգակցական՝ իր հօրաքեռորդու զաւակին, որի գերեզմանն աչքերի առջեւ եւ յիշատակը սրտի մէջ ուզեց պահել միշտ։*

11.- *Հաճելի է կարեկցել ու բարեգործել այն անձերին, որ սիրում ու մեծարում են մեզ, այս մարդկային է։ Բայց սրանից աւելին էլ պահանջում է Աւետարանը, գութ եւ ողորմութիւն դէպի թշնամին, որ գերմարդկային է եւ աստւածանմանութեան է*

---

1. *Արծ*. 270-71: 2. *Ցհ. կթ*. 219. *Արծ*. 248, 260: 3. *Արծ*. 266: 4. *Աստ*՝ 60: -- 5. *Ցհ. կթ*. 219-21. *Արծ*. 266-67: — 6. *Ցհ. կթ*. 221. *Արծ*. 267: — 7. *Արծ*. 267: 8. *Աստ*՝ 211: - - 9. *Ցհ. կթ*. 186, 198, 244:

տանում եւ այս մասամբ եւս խսկապէս տեսնուել է հայուհին ինչ-ինչ առիթների մէջ, որոնց յիշատակը պահել է պատմութիւնը:

ա. Այս խնդիրը չքեղ մի էջ է բացում մեզ 700 թուականը՝ Վարդանակերտի ճակատամարտով: Արաբական հարստահարիչ տիրապետութիւնից արդէն զզուած մեր աւագանին տեղեկացաւ, որ նրանց կողմից ծրագրուած էր ջնջել իսպառ հայ նախարարութիւնն այրուձիու հետ եւ այնպէս անվրդով իշխել ու կողոպտել մեր աշխարհը: Կենաց ու մահու միջեւ ընտրութեան վայրկեանն էր ուրեմն մերոնց համար եւ տատանուել չէր կարելի: Ձմռան խորն ենք եւ ձիւնը ծածկում է Հայաստանի սարերն ու ձորերն, աւելի տագնապալից դարձնելով կացութիւնը: Բագրատունի Սմբատ կիւրապաղատն, որ գլուխն էր իշխանաց, խմբեց ազատանուն եւ երկու հազարից պակաս մի գնդով կենտրոնացաւ Ակոռի աւանի մէջ: Իսկ արաբները գաղտնաբար մեկնելով Նախճաւանից, գնացին հայոց գնդի ետեւից, որոնք զգալով Երասխի արեւելակողմն անցան ու բանակ դրին ամուր Վարդանակերտ աւանի մէջ, որ գետից հեռու չէր[1]: Նրանց հետեւեցին թշնամիներն եւ ճակատեցին իրար դէմ:

Կատաղի էր պատերազմը, որ վերջացաւ թշնամիների կորակոր պարտութեամբ եւ որոնք հայկական վրէժխնդիր սրից խուսափելու համար ապաւինեցին Երասխի սառուցեալ կոհակներին, առանց խորհելու, թէ հայոց գետը դաշնակից էր հայոց եւ երկուսին միանգամայն կեր եղան: Հինգ հազարից հազիւ երեք հարիւրի չափ մազապուրծ անցան միւս կողմը, եւ խուճապով գնացին ապաւինելու «դէպի տիկին Շուշանին», որ համառօտ այդ ակնարկութիւնը պահանջում է ժամանակակից ծանօթ ու պաշտօնական մի անձ համարել: Նրանք իրենց նպատակին եւ հետապնդող հայ քաջերն նրանց մօտեցած էին արդէն, երբ աղմուկը տիկնոջ ուշադրութիւնն հրաւիրեց: Տեսաւ ամրոցի պատշգամբից արաբների սարսափահար խուճապը եւ մահն, որ նրանց ետեւից վազում էր: Անհանգստացաւ, վար իջաւ ամրոցից, «ընդ առաջ» շտապեց, հասաւ տեսաւ նրանց եղկելի վիճակը, բոլոր հետիոտն, կիսամերկ ու վիրաւոր: Գթութեան մի հրեշտակ էր, որ հասնում էր արաբներին: Ընթացաւարտ Աւետարանի դպրոցից,- որի սրտի ընդարձակութեան մէջ իրենց տեղերն ունէին հայն եւ օտարը, քրիստոնեան ու հեթանոսը, բարեկամն ու չարակամը,- անցաւ կանգնեցաւ հալածողների ու հալածուողների միջեւ, բարձրացրեց պաշտպան բազուկը եւ հայկական սայրասուր նիզակները կանգ առին պատկառանքով այդ կնոջ մեծութեան առջեւ:

---

1. *Հմմտ. Սեբ.* 148:

Առաջ եկաւ հրամանատարը, կիւրապաղատի տոհմակից եւ անուանակից կրտսեր Սմբատը, որի երիտասարդ կերպարանքի վրայ դրոշմուած էր հայրենավրէժ զինուորականի անողոք բարկութիւնը եւ պահանջեց տիկնոջից թոյլ տալ, որ հայ քէնն աւարտէր իր գործը: Երկու հակառակ սրտեր մի պահ ուժգին բախուեցին իրար եւ ի վերջոյ յաղթող հանդիսացաւ նրանցից կակղագոյնը, որ յաջողեց «բազում աղերսներով եւ դաշինքով» նուաճել գնդապետի պողպատեայ կամքը: Գրուած չի, բայց գուշակում ենք, որ «աղերսանքի» նիւթն էր թշնամու թշուառ վիճակը, որի հանդէպ, պնդում էր տիկինն, աղաչելով քրիստոնէական ողորմութիւնը ցոյց տալու ժամն էր եւ «դաշինքը» թէ նրանք իր հիւրերը պիտի լինէին եւ պիտի հեռանային հայ հողից, առանց դիպչելու մի տերեւին անգամ: Հայ սպան ու զօրականները խոնարհեցին տիկնոջ առջեւ, սրերը պատեանը դրին, հնչեց փողն ու մեկնեցին:

Արաբ գայլերը գառների փոխուած, տիկնոջ ետեւից գնացին, մտան դղեակը, որ իսկոյն հիւանդանոցի վերածուեց: Շուշանը թեւերը վեր քաշած իր նաժիշտների գլուխը անցած, մայրենի խնամքով լւաց ու «ծածկում էր վէրքերը» նրանց, դարմանեց օրերով եւ բուժեց: Ցետոյ նրանց հագցրեց պատշաճ հանդերձներով, իր երամակներից գրաստներ դուրս քաշեց նրանց թւով, եւ գոհ ու երջանիկ իրենց Աբդլմելիք զօրավարին յղեց: Ապշած, հիացած էին վայրագներն ու հրամանատարն հայ տիկնոջ վեհանձնութեան վրայ եւ նրանից ստորեւ չմնալու համար արաբ իշխանը շտապ նրան «բազում շնորհակալութիւն» եւ «մեծամեծ պատիւ» ուղարկեց ասում է պատմիչն այսպէս անորոշ ձեւով[1]:

Ո՞վ էր այդ «տիկին Շուշանը»: Հ. Ալիշանը Սիւնեացը կարծեց[2]: Սակայն Սիւնիքը դէպի հիւսիս ու շատ հեռու էին Վարդանակերտից, մինչեւ ուր հասնելու համար, դժւարութեամբ կարող էին թշնամիները խուսափել հալածողների հարւածից: Այդ շրջանին Շուշան անունով Սիւնեաց տիկին էլ ծանօթ չէ արդէն: Ընդհակառակը կուատեղին նշանակւած է Ակոռիից վերեւ եւ նոյն ինքն Արշարունեաց գաւառի մէջ[3], ուրեմն այնտեղ էլ փնտռելու ենք այդ տիկնոջն: Եւ արդարեւ այդ պատերազմից, տասը տարի առաջ[4] կար ու յայտնի է «Ներսեհ ապուհպատ պատրիկը, Շիրակի եւ Արշարունեաց տէր», որ կառուցում էր Թալինի եկեղեցին «ի բարեխօսութիւն ինձ եւ Շուշանի իմ ամուսնու, եւ Հրահատի՝ մեր որդու», գրում է ինքն իսկ[5]: Ահա ուրեմն մեր մարդասէր Շուշանն, առանց կասկածների, որ պիտի մնայ նախնական ծանօթ օրինակը քրիստոնեայ հայուհու հոգու մեծութեան թշնամու հանդէպ:

---

1. Ղեւ. 43-47: — 2. Հյպ. 244: - 3. Աստ՝ ԺԶ, 5: — 4. Հմմտ. Շիր. 5. կող. 153: - 5. Գրչ. պր. 7:

բ. Հանդիսավայրն ու թւականը փոխադրենք, տեսնելու համար կամսարական տիկնոջ մի մրցակից էլ: Թ դարի կէսին հայոց աւագանու գլխաւորութիւնը գտնւում էր Տարօնի իշխանի՝ Բագրատունի Բագարատի ձեռքը: Այդ օրերին Ջափր ամիրապետից Հայաստանի վերակացու եւ հարկահաւաք եկաւ Ապուսէթ, նենգաւոր մի նպատակով մեր իշխանների դէմ: Տեսնելով նրանց միաբանութիւնը, դարձաւ ի Սամառա, տեղեկացնելու իր պետին: Նա նրա պաշտօնն յանձնեց Արզնու տիրոջը՝ Մուսէին, որպէսզի սպասէր յարմար ժամին եւ մահացու հարւածը կատարէր մեր աւագանուն: Սա ուզեց կանխել եւ խրոխտաբար, ապաւինած իր զէնքին, ծանր բանակով եկաւ մտաւ Տարօնի մէջ: Բագարատը փութաց օգնութեան կանչել քեռորդուն՝ Աշոտ Արծրունուն, որ իր ազատանու հետ հասաւ իսկոյն՝ երբ կռիւն արդէն պայթած էր եւ ուժգին բախմամբ խորտակեցին արաբների զօրութիւնը, որոնց մի մասը գնաց ապաստանեց Բաղէշի պարիսպների ու բերդի ամրութեանը: Հայ քաջերն հասան պաշարեցին քաղաքը, որ դիմադրեց նրանց յարձակմանը, բայց հայերը չլքեցին եւ հսկում էին արթուն պարիսպների շուրջ:

Երկար տեւեց պաշարումն, այնպէս որ մէկ թշնամու հետ քաղաքի վրայ յարձակւեց ուրիշ աւելի մի ահաւորը՝ սովը: Արհաւիրքն սկսած էր ներսը: Մի օր էլ յանկարծ քաղաքի դռնից խոյացաւ մի տիկին եւ «հետիոտն» ու տագնապով գնաց հասաւ հայ զօրագլուխների վրանները: «Բագարատի քոյրն էր», ասում է Թովման[1], մինչ արաբներն Տաբարի եւ ուրիշները նրան «դուստր» են կոչում նոյն իշխանի եւ կինը՝ Մուսէին[2]: Առաջինն աւելի ուղիղ է թւում ինձ, նկատելով պատմիչի մերձաւորութիւնը եւ իբր Մուսէի ամուսինը, տարբեր իր կամ Բագարատի միւս քրոջից՝ Հռիփսիմէից, որ մայր էր յիշեալ Աշոտի[3]: Կեղծ Շապուհի մօտ կայ նաեւ «Մոփի դուստրը» նոյն Բագարատի, որին սակայն տրւած է Հռիփսիմէի դիրքը[4], որով եւ անվստահելի իր անձն իսկ:

Արդ, այդ Բագրատունի ու քրիստոնեայ սիրտը, քաղաքականութեան պահանջով ընկած էր արաբների դաւաճան եւ ատելի յարկի տակ, տեսել էր իր նման մարդկային էակներ – հայ թէ արաբ նոյն էր - սրի ու սովի միջեւ կանգնած ահաւոր մահւան հանդէպ, բռնաւորների հրամանի ներքեւ: Ի՞նչպէս հանդուրժէր այդչափ մարդկանց կորստեանն, որոնց մեծագոյն մասը պատասխանատու անգամ չէր կուին: Հասաւ փարւեց «լի հառաչանքով» հարազատի երկաթակուռ լանջերին, պաղատելով «բաւական համարել նահատակութեան գործը», որ պարգեւել էր Աստւածը: Դիմեց նաեւ

1. Արծ. 122: — 2. Լօր. 327: — 3. Արծ. 130, 161: — 4. Շպհ. 49:

*քեռորդուն եւ միւս զօրագլուխների խղճին եւ համաձայնեցրեց պաշարեալներին հանել, արձակել իրենց տեղերը եւ Բաղէշի դռները բացեցին*[1]*: Հայուհու յաղթանակն աւելի մեծ եղաւ քան հայ զօրականի շահածը:*

## ԳԼՈՒԽ ԺԱ

### *Շինարարութեան մէջ*

*Այս գլխի նիւթն ինքնըստինքեան շարունակութիւնն է նախորդին: Մի տարբերութեամբ, որ մինչ միւս բարեգործութիւնները վերջացան գործող անձերի հետ ու դարձան յիշատակներ եւ կամ ծածկուած մնացին մատեանի մի անկիւնում, հայուհու փափուկ ձեռքերի ուժեղ կերտուածքներն ընդհակառակն յաւերժացան, ճակատելով դարերի դէմ, իբրեւ յուշարձան նրա աննուաճ հոգու, ի ցոյց դրուած ամբողջ հայութեան ու քաղաքակիրթ աշխարհին: Նրանք կազմեցին նաեւ կարեւոր մէկ բաժինը հայ ճարտարապետութեան եւ արուեստի պարծանքներ, որոնք սփռուած են հայ հողի վրայ եւ ամփոփուած առանձին հատորների մէջ եւ պիտի խօսեն միշտ հայ հանճարի ստեղծագործ կարողութեան մասին:*

*Այս պարագան ստիպում է, որ առանձին ուշադրութեամբ նայենք հայուհու դաստակերտներին, որոնց կառուցման մէջ նա երեւում է մերթ գործակիցն ու խրախուսիչն ամուսնուն կամ զաւակներին, իր անձնական կարողութեամբ կամ օժիտով, որը բերել էր հայրենի տնից*[2] *եւ մերթ միայնակ, ապաւինած իր կորովին ու քսակին, ինչ որ իրաւունք էր տալիս նրան աւելի մեծ ու հպարտ զգալու ինքն իրեն: Բնական էր, որ այս ասպարէզի մէջ հանդիսացող կանայք ազնուական հարուստներ լինէին: Բայց երբեմն նրանց մրցակիցներ ենք տեսնում պարզ քաղաքացիներից եւս, որոնք ցոյց են տալիս, եթէ ոչ արեան, այլ սրտի եւ հաւատքի մի ազնուականութիւն եւ իրենց կարողութեան չափով թողնում են նման յիշատակներ:*

*Հայուհու շինարար ձեռքն հասել է եկեղեցիներին, վանքերին, հիւրանոցներին, հիւանդանոցներին, գրատուններին, ջրմուղներին, կամուրջներին եւ բերդերին, որ պէտք է զատ-զատ նկատենք եւ որոնց առաջին ստիճանի վրայ են գտնւում*

1.- ***Եկեղեցիները***, *որոնք մեծագոյն հրապոյրն են ազդել նրա բարեպաշտ հոգուն, եւ նրա լաւագոյն խնամքն են վայելել երիցագոյն դարերից սկսած: Չենք մոռանալու,*

---

1. *Արծ*. 119-22: — 2. *Աստ՝ Գ*, 4:

*որ արեւմտեան քրիստոնեաների մէջ եւս հնագոյն, գեղեցկագոյն ու բազմագոյն յիշատակարաններ ու փառքն են կազմում աղօթքի տները:*

*Որովհետեւ պիտի խօսենք ժամանակի կարգով, հայուհիների մէջ երիցագոյն կերտողն է - եթէ պէտք է հաւատալ Սիւնեաց պատմիչի ուշ եւ աւանդական տեղեկութեան - «մեծ բարեպաշտուհին» **Վարազդուխտը**՝ տիկին Սիւնեաց, որ «աւելի առաջ քան Հայ թւականն» կառուցանում է իր նահանգի՝ Սիւնի վանքի եկեղեցին, «նորակերտ ձեւով, գմբէթայարկ խորանով՝ երկնանման», յանուն Լուսաւորչին*[1]*:*

*Բայց աւելի պատմական են եւ այդ տիկնոջից ոչ հեռու ժամանակով ուրիշ շինուածները: Այսպէս Բուտ Առուեղեանը՝ Բ Խոսրովի ԼԴ տարին* (623) *եւ Վարազտիրոցի մարզպանութեան օրով հիմք է դնում Բագարանի Ս. Թէոդորի եւ վախճանւում է: Իր կինն՝ **Աննան**, սուգն անցնելուց յետոյ, առնական կամքով ասպարէզ է իջնում եւ «երեք տարուց յետոյ ... կատարեց սուրբ եկեղեցին», ասում է արձանագիրը*[2]*: Քառակուսի ձեւով, չորս պատերը կիսաբոլոր կոնքերի նման դէպի դուրս մեկնուած եւ վրան ութանկիւն գմբէթն, որ այժմ կործանուած է. ամբողջութիւնը վայելուչ մի գործ է*[3]*:*

*Ալամանի Ս. Անանէն կառուցել է* 637*-ին երկու ճոխ եւ ազնուական ամոլներից: «Ես Գրիգոր եղուստր*[4] *եւ **Մարիամը**՝ իմ կինը, կառուցեցինք այս սուրբ եկեղեցին մեր հոգու համար», իրենք են գրում*[5]*, որ հասաւ մինչեւ մեզ, իբրեւ մի հնագոյն ու կարեւոր օրինակներից հայ սրբազան ճարտարապետութեան: Միջակ մեծութեամբ, քառաթեւ հարթ պատերով եւ ութանկիւն ծանր մի գմբէթով: Նախորդի նրբութիւնից զուրկ է*[6]*:*

*Հրապուրիչ է նաեւ Մամիկոնեան Գրիգորի «եւ **Հեղինէի** նոր զուգակցի*[7]*» գործը, որոնք* 669*-ին հիմնարկում են Արագածոտն Արուճ աւանի կաթողիկէն, «տաճար փառաց անուան տեառն, գեղեցիկ վայելչութեամբ զարդարուած*[8]*» կամ «չքնաղագեղ եկեղեցի» եւ «երկնային իմ ճեմարան յարդարուած երկրի վրայ» եւ նրա հարաւակողմը կառուցում են իրենց ապարանքը*[9]*: Եկեղեցին սրբատաշ քարերով է, քառակուսի երկայնաձեւ անսիւն, չորս կրկնակ կամարների վրայ կրելով գմբէթը, իսկ խորանի երկու կողմը կան երկնայարկ մատուռներ*[10]*:*

*Մի տիկին, որ սեռակիցների մէջ իր ձեռքով շինուածքների բազմութեամբ պարծենալու մեծագոյն իրաւունքն ունեցողներից եղաւ, Սիւնեաց իշխանուհի՝ **Մարիամ** Բագրատունին է, որ միայն իր այրութիւնը Աստծուն նւիրելով չգոհացաւ*[11]*, այլեւ նրա*

1. *Օրբ.* 248: — 2. ***Ջրթ***. 1929, 36: — 3. *Նհպ. Ա*, 44: — 4. *Լտ.* illustris=*պայծառ. իբր տիտղոս ընդունուած Բիւզանդիոնէն*: — 5. *Ն. Սրգ.* 194: — 6. *Նհպ. Ա*, 33: — 7. ***Գրչ. պր.*** 9. *սստ*՝ 124: — 8. *Ղեւ.* 35: — 9. *ՑՀ. կթ.* 116: — 10. ***Ար.*** 144: — 11. *Աստ*՝ 168:

փառաբանութեան յարկեր եւ յատկապէս մենաստաններ նւիրեց, որ ստորեւ պիտի տեսնենք, այսպէս գործնական դարձնելով իր բարեպաշտութիւնը, մրցելով որդու հետ[1]: Իր եղբայրը՝ Շապուհ սպարապետը[2], փափագելով ինքն եւս կառուցել Վանեւանի Ս. Լուսաւորիչը, ապաւինեց Մարիամի փորձ ճարտարութեան եւ «մեծափափագ տենչանքով վերակացու եւ տեսուչ» կարգեց նրան, որ գործը գլուխ բերեց 903-ին «վիմատաշ, կոփւած, չատածախս գանձով եւ մեծաջանք վաստակով», գրում է իշխանն իսկ[3], զգացնելով իր սրտի ամբողջ գոհունակութիւնը քրոջ գործունէութիւնից: Եկեղեցին խաչաձեւ եւ անսիւն է, պայտանման կամարների վրայ կրելով գլանակերպ գմբէթը՝ կոնաձեւ ծածկոյթով եւ հարաւակողմն ունի թաղակապ գաւիթը կամ ժամատունը[4]:

Արծրունի **Մլքէ** թագուհին, ամուսնու հետ, 914 թւին պսակւած Վասպուրականի անդրանիկ թագերով, ձեռնարկում է ինքն եւս թողնել նւիրական մի յիշատակ ապագային եւ Վարագայ ուխտի մէջ կառուցում է Ս. Աստւածածին եկեղեցին, նրա հետ կապելով իր Աւետարանն էլ[5], որի մէջ գրում է թէ տաճարն «իմ ձեռքով եւ ծախւք եմ շինեալ՝ յաւգնականութիւն ինձ եւ արքային իմոյ Գագկայ եւ զաւակաց իւրոց[6]»: Նոյն ուխտի հինգ եկեղեցիներից մէկն է իրենը: Քառակուսի, պատերից դուրս եկած չորս կոնքեր, արեւելեան եւ արեւմտեան կողմերն աւելի խոր եւ հաւասար իրար հետ, կազմելով հայկական խաչի ձեւը: Իսկ սրաձեւ չորս կամարների վրայ նստած է բոլորշի գմբէթը, որ աւարտւում է կոնաձեւ երկայն յարկով: Դիտենք, որ գոթական սրաձեւ կամարը մօտաւորապէս 70 տարի յառաջ երեւում է այստեղ քան Անիի կաթողիկէի մէջ, ուր կենտրոնացած էր մինչեւ հիմա մասնագէտների ուշադրութիւնը: Կան նաեւ չորս փոքր աւանդատներ[7]:

Աշոտ Սիւնին նորոգում է Խոտակերաց հին վանքը, կառուցելով նրա մէջ մի եկեղեցի: Հազիւ մահը հեռացնում է իշխանին, մեր աշխարհի սովորական մի երկրաշարժն էլ[8] տապալում է նոյն դաստակերտը: Նրա կենակիցը՝ **Շուշանը**[9], որ կաթողիկոս պատմիչն որակում է՝ «գերիմաստ» բառով[10], 910-ին կանգնում է բնութեան ուժի դէմ, ուզելով «նորոգել յիշատակն» ամուսնու, «նոր կառուցեցի, գրում է, սուրբ եկեղեցին կրաւնաւորաց շինւածքով», որ նոյնպէս կործանել էին: Այդ եկեղեցին Ս. Աստւածածինն էր, հինգ խորանով, քանդակազարդ դռներով ու պատուհաններով, միւս

1. *Աստ*՝ 97: — 2. *Աստ*՝ 60: — 3. *Օրբ*. 132-33: — 4. ***Ազ. Հնդ.*** 1913, *Ա*, 51-53: — 5. *Աստ*՝ 203: — 6. ***Բզմ.*** 1911, 128: — 7. *Վայտ*. 37, *տխ*. 28. *Ն. Սրգ*. 257: — 8. *Հմմտ. աստ*՝ 13: — 9. *Աստ*՝ 158: — 10. *ՑՀ. կթ*. 302:

հանգամանքներն անյիշատակ է թողել նկարագրողը[1]: Տիկինը միանգամայն ընծայում է մի մեծ գիւղ իբր եկամուտ եւ ընդունում է տարւայ մէջ երեք քառասուն պատարագ՝ ի նպաստ իր, ամուսնու եւ զաւակներին[2]:

Նոյն տիկնոջ բարեգործ հարսը՝ **Սոփիան**[3], անցնելով սկեսրոջ գահի վրայ, ուխտի կերթայ Վայոց ձորի անշուք Գնդեվանք մենաստանը, ուր պահւում էր շատ սրբերի նշխարները[4]: Նա որոշում է մի եկեղեցի կառուցել ու մի կրօնաւորական ընկերութիւն բնակեցնել այնտեղ: Ճարտար քարտաշներ է կանչում եւ Սարգիս վանահօր հսկողութեամբ ու գործակալութեամբ նկարիչ Եղիշէ երէցի աղօթատունն 936-ին կանգնում է «ի յիշատակ իմ հոգու, ասում է, եւ արեւշատութիւն իշխանաց իշխանի՝ Սմբատի, եւ մեր որդիների»: Եւ «նկարակերտ յօրինւածքով զարդարում են առաստաղն եւ նրա պատերը». մեծ հանդէսով նաւակատիք են կատարում, եւ միանձների բազմութիւն են հաստատում: Մի գիւղ էլ տիկինը նրա մօտ է կառուցում, իբր ժառանգութիւն ուխտին եւ բոլոր ձորը ծածկում է պտղատու ծառերով: Եւ ինքն իսկ սքանչանում է իր գործի վրայ գրելով. «Վայոց ձորը մատանի էր. կառուցեցի այս եւ դրի ակն նրա վրայ[5]»: Եկեղեցին քառաթեւ է, թեւերի տանիքները կոնաձեւ բարձրացած եւ վերեւն ութանկիւն մի գմբէթ, բաւական վայելուչ՝ առանց մեծ նրբութեան[6]:

Վարագայ եկեղեցիների խմբի մէջ, Վասպուրականի թագուհին՝ **Խուշուշ խաթունը**[7], Մլքէի վերոյիշեալ դաստակերտի մօտ 981-ին կառուցեց իրենն էլ. «Սուրբ Սոփիա այս տաճարը վասն փրկութեան հոգուս եւ ննջեցեալների ի Քրիստոս[8]»: Եկեղեցին երկայնաձեւ քառակուսի է, խորանի երկուստեք զոյգ աւանդատներով: Տաճարի կէսի վրայ, որմերին կից կան երկու մոյթեր, որոնք խորանի զոյգ մոյթերի հետ վեր էին բռնում գմբէթը, որ այժմ կործանւած է հարաւային պատի հետ[9]:

Քաջածանօթ **Շուշիկ** Պահլաւունին այրիացած[10], անցաւ երեք որդիների գլուխը եւ 986-ին սկսելով 1025-ին աւարտեցին իրենց տապանատան՝ Մարմաշէնի եկեղեցին, գրում է երէց որդին՝ Վահրամը, «մեծ ջանքով եւ բազում ծախսով ես եւ մայրս՝ իմ Շուշիկը, Հայոց տիկնաց տիկինը» եւ միւս եղբայրներս, «ի յիշատակ յաւիտեանս մեզ եւ մեր որդիների»: Արդարեւ յաւիտենական պարծանք թողեցին իրենց այդ տաճարը. քառակուսի ձեւով, ճակատների կենտրոնի մասն աւելի բարձր քան կողմնականները:

---

1. Ջալ. Բ, 165: — 2. Օրբ. 173: — 3. Աստ՝ 196: — 4. Հմմտ. աստ՝ Ը, 2.գ: — 5. Օրբ. 190-91: — 6. Լալ. Ա, 52, 53: — 7. Աստ՝ 60: — 8. Կնք. Աղթ. 19: — 9. Վալտ. տխ. 28. Ն. Սրգ. 257: — 10. Աստ՝ 170:

խորշեր ու կամարաձեւ քանդակներ չորս կողմն եւ ութանկիւն գմբէթի չուրջը, վերջինի կամարները սրանկիւն եւ գմբէթի տանիքն ակօսաւոր[1]: Ցիշատակարանը յարում է թէ «շինեցիք եւ այլ բազում եկեղեցիներ եւ վանքեր», բայց բազմաթիւ կալւածներով հարստացնելով յատկապէս Մարմաշէնը: Եւ տալիս են այս արժանաւոր գովեստն իրենց զարմին. «Ամենայն տիկիններով եւ տոհմով հաւատարիմ մեր տէրերին եւ նահատակւած Հայաստանի համար, աշխատութեամբ եւ արեամբ մեր եւ մեր որդիների եւ գանձերի առատութեամբ եւ ամենայն հնարքներով խնդրում էին աշխարհին խաղաղութիւն եւ եկեղեցիներին հաստատութիւն[2]»: Երանի իրենց ազգատոհմին, որի վրայ մենք իսկ սքանչացանք[3]:

Աղւանի իշխողներից Գագիկի քոյրն՝ ***Ոսկին***, 1000 թւականին Արցախի Տումի գիւղի մէջ մի աղօթանոց է կառուցել գերեզմանատան մէջ, արձանագրելով այսպէս. «շինեցի Աստուծոյ տուն իմ եւ ծնողներիս հոգու փրկութեան համար» Մուսէի եւ մօրը, իսկ այժմ կիսափուլ վիճակի մէջ է[4]:

Բայց անկասկած մեր հայրենի սրբութիւնների փառքն եղաւ ու մնաց Անիի կաթողիկէն, որ ապագայ դարերի եւ ազգերի զարմանքի չարժառիթը, պիտի լինէր: Նրա հիմքը դրւեց Բ Սմբատի հզօր ձեռքերով, որ կառուցեցին անմահ ոստանի անսասան պարիսպները եւ որի չողչողուն պսակը պիտի կազմէր «հազար ու մի եկեղեցիների» այդ թագուհին: Նրա հիմքի վրայ մահը կաչկանդեց կերտողի աննւաճ բազուկները, եւ կառուցումը վիճակւեց իր նազելի հարսի՝ ***Կատրանիդէի***, փափուկ ձեռքերին, որ ճառագայթում է նրա յաջորդի՝ Գագիկի, արքունիքի մէջ[5]: Ընտրութիւնը նախախնամական էր: Թագուհին պալատից դուրս գալով, թողեց, որ կենակիցը նախ ընդարձակէր եւ անդորր դարձնէր նորակալ գաւազանը. եւ դրւած հիմքերի վրայ դիզեց, բարձրացրեց եւ աւարտեց փառապանծ տաճարը, «հոգեւոր ծնունդ եւ մշտնջենական արձան[6]»: Արքայադստեր, արքայակնոջ ու մեծ բարեպաշտուհու վայել գործ, եւ արժանաւորագոյն քան իր մարմնաւոր ծնունդները, որ իրարից պիտի յափշտակէին ու պաշտպանէին մեծն Աշոտի գահը: Եւ իսկապէս «մշտնջենաւոր», հազար տարի յետոյ երեք-չրջապատող համատարած աւերակների միջից գլուխը դեռ բարձր բռնելով: Արդեօք Կատրանիդէն իր տագերոջ պատրաստած ծրագրին հետեւե՞ց ճշգրտօրէն. թէ փոփոխեց. նրա՞ թէ իրենն են գոթական ներքին գծերն[7], աւելի ճոխ քան Վարագի մէջ[8], որ կարծեցին այդ ոճի հնագոյն եւ ուշագրաւ օրինակը, չգիտենք:

---

1. Նհպ. Բ, 40, 41: — 2. Բամ. հ. 212: — 3. Աստ՝ 97-98: — 4. Արց. 79: — 5. Աստ՝ 159: — 6. Բամ. հ. 8 — 7. Ծիր. 64-70: — 8. Աստ՝ 218-19:

Ցամենայն դէպս այդ թագուհու ժիր ու խնամքոտ ձեռքերից ելաւ այդ տաճարը, հիմնարկւած իբր 988-ին եւ աւարտւած 1010-ին, «ամենապայծառ փայելչութեամբ, բարձրաբերձ կամարներով գմբէթաւորւած, երկնանման խորանով», ինչպէս ասում է պատմիչը[1]: Արտաքին ձեւով ու զարդերով շատ նման է Մարմաշէնի եկեղեցուն, որ հետեւեց այս կաթողիկէին, - ցուցէ ճարտարապետը նոյն Տրդատն էր,- բացի սրա ներքին յօրինւածքն, ընդարձակութիւնն ու վեհութիւնը, որի հետ կառուցողը զուգում է իր սրտի մեծութիւնը՝ ժուժկալ ու վսեմ մի արձանագրութեամբ[2]: Վարդան պատմիչն ու ժամանակակիցներն իրաւունք ունէին երեւակայելու՝ թէ թագուհին, այն կառուցեց՝ «Աստուծոյ հրեշտակից յորդորւած», որ խոստանում էր ձեռնտու լինել նոյն կառուցման եւ տաճարի մէջ մնալ մինչեւ Քրիստոսի գալուստը[3], մինչ յետոյ իր ամուսնու կերտած Ս. Գրիգորը, «տարփատենչ տեսնողների» ըստ Ասողիկին, ԺԳ դարում իսկ հիմնայատակ էր լինելու[4]: Մաղթենք, որ պահապան հրեշտակը չպակսի բնաւ կիսաքանդ այդ կաթողիկէից: Տեսանք եւս թէ որպիսի հարստութեամբ այն զարդարեց Կատրանիդէն աւարտելուց յետոյ[5]:

Բագրատունու տան պատւաստւած եւ մանաւանդ արեանառու տիկնանց շինարար գործունէութեան մի շրջան է այս: Կիւրիկեան Ա Դաւթի դուստրը՝ «**Հրանուշ** թագուհին»,- որի տիտղոսը պիտակ է թւում[6] կամ երկրորդ անունն, որովհետեւ իր ամուսինը կամ զաւակները չեն յիշւել,- 1063 թւին Սանահինի մէջ յիշատակ է թողնում մի զոյգ շինւածքներ. «շինեցի, ասում է, այս նշխարատունն եւ այս եկեղեցին[7]»: Նշխարատունը քառակուսի է, մի գմբէթով, որ նստած է չորս ընդարձակ կամարների վրայ եւ սրանք՝ չորս գեղաքանդակ կիսասիւների վերեւը եւ նրա կոնաձեւ տանիքը վերջանում է մի բոլորակ պատուհանով: Որմերի մէջ կան մեծ ու փոքր դարաններ՝ նրբաքանդակ շրթներով. ունի մի վառարան էլ ծխնելոյզով: Գալով եկեղեցուն, նշխարատան կից կայ Ս. Գրիգոր փոքր եկեղեցին, արտաքուստ բոլորակ եւ աւարտած գմբէթով, որ վերջանում է կոնաձեւ, իսկ ներքուստ խաչաձեւ է, չորս գմբէթաբարձ կամարներով եւ երեք պատարագամատոյց սեղաններով: Երկու շինւածքների միջեւ կայ նաեւ փոքր մի գաւիթ կամարակապ ու խորանով[8]: Արդ՝ դժւար է ճշտել՝ թէ «եկեղեցին» այդ գաւի՞թն էր թէ Ս. Գրիգորը, կամ երկուսն էլ միասին:

Նոյն Կիւրիկեան տնից 1153-ին ուրիշ երկու քոյրեր խօսում են Քոբայրի մէջ. «ՈԲ. Ես **Մարիամ** դուստրը Կիւրիկէի (Գ) թագաւորի՝ Բագրատունի ազգից, շինեցի այս

---

1. Ասղ. 256: — 2. Բսմ. հ. 8. Շիր. 67: — 3. Վրդ. 90: — 4. Շիր. 52: — 5. Աստ՝ 201-02: — 6. Աստ՝ 121: — 7. Ջալ. Ա, 32: — 8. Նհպ. Բ, 27. ՄՏհ. 28-33:

*սուրբ կաթողիկէն՝ աւագնութեամբ իմ քրոջ՝ **Ռուսուդանի**[1]», ուր եւ կրօնաւոր դարձան յետոյ[2]: Եւ յիշատակարանի սկիզբը դնում են այս տողերը. «Քս. Ած. յիշիր Մարիամին եւ Ռուսուդանին ի գալստեան քո»: Այժմ եկեղեցին մեծ մասամբ կործանուած, ներքուստ անսիւն էր, ծաղկաքանդակ պատուհաններով. եւ մնացել է հիւսիսային խորանը միայն[3], վկայելով, որ խորաններ կային միւս կողմերում էլ:*

*Դարձեալ նոյն քոյրերն Հաղբատի տաճարի առջեւ շինում են փոքր մի գաւիթ, ինչպէս գրում է Մարիամը. «Ռուսուդանի հետ կառուցեցի այս գաւիթն եւ ծածկեցի իմ հասոյթով», մի այգի էլ տալով մենաստանին[4]: Իր քոյրը վախճանւում է եւ ձեռներէց հարազատը փափագում է այդ գաւիթը վերածել աղօթանոցի 1185-ին. «մեծ յոյսով շինեցի, ասելով, աղօթքի տունը հանգստարանի վրայ» հօրը, յիշուած քրոջը, մօրն եւ իր համար, որը Բարսեղ առաջնորդի ձեռքով աւարտւում է[5]: Սրա յաջորդներից Յովհաննէս Խաչէնեցին դեռ անբաւական գտնելով այն, 1221-ին քանդում եւ կառուցում է այժմեան «մեծ եւ գեղեցիկ շինուածքը[6]», պահելով Մարիամի ձեռակերտի յիշատակը միայն:*

*Մեր այդ արքայադուստրերն երեւում են նաեւ Սանահինի փառահեղ գաւթի մէջ, որ կերտեց Բարսեղի նախորդն 1181-ին: Մեծ մի գմբէթ ունի նստած չորս սիւների վրայ, քանդակազարդ խոյակներով ու խարիսխներով, որոնք նուիրեցին նոյն քոյրերի կողմից եւ որոնց յիշատակները կրում են իրենց վրայ: Մէկը Մարիամի երիցուն, որ «մեծ յոյսով» կանգնեցրել է այն. միւսը Ռուսուդանի, լինելու համար իրեն «լոյսի սիւն կեանքի մէջ յաւիտեանս». երրորդն իրենց քրոջը՝ **Բաւրխնայի**, որ խնդրում է միայն յիշել, իսկ չորրորդն իրենց հօրաքրոջ՝[7] **Ռուսուդնայի** եւ մօր՝ **Թամարի**, նոյն խնդրանքով[8]: Բագրատունի զարմանուհիների հաւատքն ու սէրն է ուրեմն, որ 755 տարիներից ի վեր այդ վեհ գմբէթը վեր է բռնում, մինչ իրենք հանգչում են այնտեղ հայրենի դամբարանի մէջ:*

*Մի ուրիշ տեղ ակնարկեցինք[9] Ռուսուդանի դստեր՝ **Խութլու խաթունի**, գործունէութեան, որ ժամանակակից եւ հաւանօրէն նոյն էր Խաղբակեան Պռօշ իշխանի համանուն կենակցի հետ[10],- որովհետեւ այդ անունը տարածուած չէր.- եւ որի մէջ խօսում է ոչ Իւանէի վրացի արիւնը, եւ ոչ Վայոց ձորի տիկինը, այլ Բագրատունի զարմը: Եւ Հոռոմոսի վանքի մէջ «շինեցի, գրում է, իմ նախնիների (որ Անիի Բագրատունիներն են) տապանատունն եւ սրա վրայ եկեղեցի»: Տապանատունն ցածր եւ անսիւն է, «զարմանալի հոյակապ շինուածքով», վերեւից կամարաձեւ, որմերը սրբատաշ մեծամեծ*

---

1. *Աստ՝* 194: — 2. *Աստ՝* 170: — 3. *Ազ. հնդ.* 1901, 419-20: — 4. *Երգ.* 26: — 5. *Նոյն՝* 21: — 6. *Կիր.* 56: — 7. *Հմմտ.* ***Ազ. հնդ.*** 1901, 420: — 8. ***Մհհ.*** 16-17: — 9. *Աստ՝* 107: — 10. *Շհխ. Բ*, 286:

քարերով, ու «պէսպէս վսեմ քանդուածքով», եւ արեւմտեան կողմից բաց, իսկ արեւելակողմից ծածկուած «փառահեղ խաչքարերով», ու մի բեմ սեղանով: Տապանատան վրայ նստած են երեք որմակից ու փոքրիկ մատուռներ, յիշեալ «երեք եկեղեցիներ». միջինը գմբէթով, որ կոնաձեւ աւարտւում է, եւ կողմերում՝ սրանկիւն ճակատներով եւ գրաւում են տապանատան ամբողջ լայնութիւնն ու երկայնութեան կէսը: Այդ գմբէթի մէջ է, որ հնչում է կառուցողի աղերսարկու ձայնն ի նպաստ իր Բագրատունի մօրը. «ՏէրԱծ. ողորմեա Ռուզուզանին ի միւս անգամ քո գալստեանդ. ամէն[1]»:

Բարեկեցիկ ու ժիր անձեր են Արճոյ աւագերէցը Տրդատը եւ զուգակիցը՝ **Խուչուչը**, որոնք 1173 թւին մեծ նորոգութիւն են կատարում Անիի Ս. Փրկիչ եկեղեցու վրայ, գործ՝ Ապլղարիպ մարզպանի, որ նրանք էին գնել: «Կառուցեցինք նորից, ասում են, մեր գանձագին հայրենիքի Ս. Փրկիչն չատ աշխատութեամբ եւ նորոգեցինք առաջին պայծառութիւնն, ոչ մի օգնական ունենալով»: Նրան կից շինում են նաեւ «ամառային եւ ձմեռային մի ժամատուն» (այժմ կործանուած), եւ նւիրում են զանազան կալւածներ[2]:

Հաղբատի մեծ ժամատան մէջ 1189-ին Դաւիթը՝ որդին Վերին Խաչէնցի Արանի[3], կառուցում է ձախակողմեան խորանը սեղանով, իր հօր եւ **Փուրթուխան** քրոջ գերեզմանների վրայ[4]: 1195-ին այնտեղ երեւում է նաեւ **Սելամին**, որ «շինեցի, ասում է, Սուրբ Աստուածածինը», որ մենաստանի հին եկեղեցին էր, այդ ժամանակ «հիմքերը խախտուած էին»: Այդ բարեգործութիւնը կատարում է «վասն մեր հայրենի գերեզմանների», սահմանելով պատարագներ, «իմ Դաւթի կենդանութեան, եւ իմ մահւանից յետոյ»[5]: Ակներեւ է, որ նորոգող այդ տիկինն ամուսինն էր յիշեալ Դաւթի, որ արդէն մեռած էր եւ ինքը խնամում էր իրենց տոհմի հանգստարանը:

Բագնայրի մէջ երկու ամուսիններ՝ Խաչեղբայրն ու **Սիմամը** «շինեցին, գրում են, գերեզմաններին մի եկեղեցի» եւ ընծայում են ուխտին «մեր տաճարն եւ սարաւոյթն (եկեղեցու մօտ շինութիւն կրօնաւորի կամ առաջնորդի համար, որ մեծ մասամբ բարձր դիրք էր ունենում) եւ ի ներքին տուն[6]»: Այդ վանքերի մօտ երկու մատուռներ տեսաւ Հ. Սարգսեանն[7], որոնցից մէկը թւում է ամուսինների գործն է: 1201 թւին յիշւում է մի Խաչեղբայր, որ հայրենի մի կալւած է շնորհում Հոռոմոսին[8]: Գուցէ նոյնն է տեսածի հետ, որով այդ ժամանակներում ապրող անձերն են լինում դրանք:

Սրտառուչ է պարագան Հաթերքի տիկնոջ՝ **Արզու խաթունի**[9], որ նախ 1191-ին Վախտանգ ամուսնուն, տագրերին եւ որդիների հետ «ձեռնտու» է եղել Գետկոյ

1. Ն. Սրգ. 159. Նհպ. Ա, 20. աստ՝ 107: — 2. Բսմ. հ. 31: — 3. Աստ՝ 56: — 4. Երգ. 25: — 5. Նոյն՝ 67: — 6. Բսմ. հ. 172: — 7. Ն. Սրգ. 189: — 8. Նոյն՝ 151: — 9. Աստ՝ 22:

*եկեղեցու շինութեան*[1]*, որում «շատ բաների օժանդակ է եղել» այդ տիկինը, ըստ Գանձակեցու*[2]*: Այդ թւականից անցել են 23 տարի եւ Արզուն արդէն իրար մօտ թաղել է կենակցին ու երկու որդիներին, գրում է ինքը իսկ դողդոջուն ձեռքով, եւ ձեռնարկում է նրանց տապանատունը, Դադի վանքի մէջ մի եկեղեցու շինութեան, որ որդիներն իսկ մտադիր էին ու չհասան եւ իրենց մօրը կտակեցին կառուցել: Որ «մեծ յոյսով եւ շատ աշխատութեամբ» գլուխ է հանում 1214-ին, «ի փրկութիւն նրանց հոգիներին եւ իմ դուստրերի եւ բոլոր զարմերի», ասում է, զանազան կալւածներ էլ աւելացնելով նրա վրայ*[3]*: Շէնքը չորեքկուսի (քառակուսի) անսիւն է, եւ ներքուստ նկարազարդ, աւագ խորանի երկուստեք ունենալով ուրիշ մի-մի կրկնայարկ խորաններ, եւ նոյնքան էլ արեւմտեան անկիւնների մէջ*[4]*:*

*Պարզ քաղաքացիներ են «Սարգիսն եւ Զաքարէն՝ Ցակոբի որդիներն, եւ մեր մայրը՝* ***Խալիծ****», որոնք 1201-ին Գուգարաց Հոռոմայր մենաստանի մէջ «շինեցինք, ասում են, գեղեցիկը որպէս մեր հոգու յիշատակ» յանուն Աստւածամօր եւ «Փոքրագոյն սագաչէն» ըստ ուղեւորի*[5]*: Սրանց ժամանակակիցն է Մանաճիհրը՝ «ծառայ Մարծպանի» Համազասպեանց*[6]*, որ գրում է, թէ ինքն եւ ամուսինը* ***Կատան*** *«շինեցին այս մատուռը» կամ մի խորան՝ Տաշրաց Դրսեղ գիւղի եկեղեցու մէջ եւ տալիս են «ուրիշ արդիւնքներ» պատարագների փոխարէն*[7]*:*

*Զաքարեան աշխարհակալ եղբայրների արիւնն ու հոգին կրում է* ***Խորիշահը****, տիկին Ներքին Խաչէնի*[8]*, մէկը մեր շատ ժիր շինարարներից, որ նախ 1212-ին վերստին կերտում է Մեծարանի ուխտի եկեղեցին, ըստ իր յիշատակարանին: Ունի բարձր մի խորան, ուր մի սանդուխ է շինում հարաւում եւ հիւսիսակողմը չորս խցիկներ*[9]*:*

*Նոյն տան անթւական Աւետարանի յիշատակարանի մէջ տիկինը ու կենակիցը՝ Վախտանգը, հաղորդում են, թէ «շատ փափագով եւ մեր սրտի յօժարութեամբ կառուցեցինք եկեղեցին» առանց յիշելու անունն ու վայրը, «եւ երեւելի սպասներով զարդարեցինք ներքին եւ արտաքին եւ հաստաձեղուն յօրինւածներով», որին ընծայում են նոյն գեղազարդ Աւետարանն էլ եւ սրանով «ցանկացանք, ասում են, մեր անունը գրել կենդանի գրքի մէջ*[10]*»:*

1216-*ին իշխանն արդէն մեռել է, եւ կնոջն ու Հասան որդուն պատւիրել էր մի եկեղեցի կառուցել նաեւ Գանձասարի հայրենի գերեզմանատան մէջ: Սկսում են բարձրացնել եւ տիկինն նրա գլխաւոր մասի շինութեան մասնակցելուց յետոյ, իր*

---

1. ***Արց.*** 350: — 2. *Կիր.* 111: — 3. ***Արց.*** 204-5: — 4. ***Ազ. Հնդ.*** 1913, *Բ*, 78-79: 5. ***Ջալ. Ա***, 92, 99: 6. ***Աստ՝*** 8: — 7. ***Ջալ. Ա***, 115: — 8. ***Աստ՝*** 55: - 9. ***Արց.*** 170, 171: — 10. ***Հւք. յշտ.*** 1214:

*յանձնառութեան բաժինը կատարած է համարում, եւ գնում է կրօնաւոր դառնալու[1]: Որդին աւարտում է գործը, «գեղեցկազարդ յօրինուածքով, գմբէթազարդ եւ երկնանման[2]», ինչ որ տարիներ է տեւում, վերջանալով հազիւ 1238-ին[3]:*

*Նոյն տիկնոջ քոյրը՝ **Դոփը**, տիկին Վերին Խաչէնի[4], 1225-ին Խաթրայ վանքի մէջ արձանագրում է, թէ շինել է «գաւիթն եւ մատուռը» նոյն ուխտի եկեղեցու, եւ պարգեւել է մի Աւետարան ու մի կալուած[5]: Գանձակի Վարդանլու գիւղի մէջ եւս կայ մի կիսականգուն մատուռի նման փոքր եկեղեցի անտաշ քարերով, կամարակապ եւ մուտքի առջեւ աւելի փոքր մի գաւթով: Կառուցուել է 1215-ին, սրտով քան քսակով հարուստ մի տիկնոջ ձեռքով, այն է «**Հասան** դուստրը մեծն Գրիգորի, ամուսին Տաւղանի իշխանի», որ կանգնեցրել է այն «ի փրկութիւն» իր եւ կենակցի հոգուն[6]:*

*Նման փոքր մի աղօթանոց էլ կայ Հաղբատի վանքի մօտ Աստուածածնի անունով, կառուցուած «**Խաթունի** հասոյթով», որ դուստրն էր Խաչէնցի Դեսումեան տոհմից Հասանի եւ ամուսինը Զաքարիայի՝ տիրոջ Գագայ, Տաւուշի եւ այլ գաւառների: Այնտեղ թաղուում են այդ տիկնոջ երկու եղբայրներն էլ՝ Սենեքերիմն ու Սեւադան, որոնց եւ իր յիշատակի համար ձեռնարկել է այդ շինութեանը, նուիրելով նաեւ նշխարակիր ոսկի մի խաչ, մեծածախս մի Աւետարան, արծաթ սկիհներ եւ մի այգի[7]:*

*Արագածոտան վայելչակերտ Յովհաննավանքի ուխտի եկեղեցին վերաշինուում է 1216-ին: Նրա գործակից էին երկու ամուսիններ. «ես Վահրամ որդի Եղբայրկան եւ զուգակից իմ **Թայիկը**», ինչպէս գրում են, տալով «մեր ամենայն ստացուածքն սրա ծախսին եւ Դպրեվանքի այգին[8]»: Յաջորդ տարին նոյնի նորոգման ձեռնտու օժանդակում են նաեւ Կայէնի տէրերը՝ Վաչէն եւ **Մամա Խաթունն**[9], եւ «բազում տրօք եւ ընծաներ օգնական» են լինում հարաւային գաւթի վերածման՝ քարեղէն նորակերտ մի եկեղեցու, «գեղեցիկ եւ տեսնողներին զարմացնող», կարմիր ու սեւ քարերով, կամարներով չորս սիւների վրայ, որ բռնում էին գմբէթը եւ երկուստեք՝ աւագ խորանի եւ արեւմտեան կողմն երկու-երկու զոյգ խորանիկներ իրար վրայ[10], Դադայ վանքի վերոյիշեալ եկեղեցու պէս: Իրենց արդիւնքն եղաւ այդ «կաթողիկէն», որ այժմ աւերակ է:*

*Բայց դրանով չբաւականացան եւ 1229-ին Հոռոմոսի մենաստանի մէջ են ու կառուցում են նրա քարաշէն նշխարատունը, կազմուած երեք սենեակներից՝ «փառահեղ եւ զարմանալի», ներքուստ սիւնանման կամարաձեւ քանդակներով, իսկ մէկն*

---

1. *Աստ՝* 171: — 2. *Կիր.* 146: — 3. ***Արց.*** 173: — 4. *Աստ՝* 33: — 5. *Շհխ. Բ*, 363: — 6. ***Ազ. Հնդ.*** 1913, *Բ*, 78-79: — 7. *Երզ.* 35: — 8. ***Ջք.*** *սրկ. Գ*, 16: — 9. *Աստ՝* 197: — 10. ***Ջք.*** *սրկ.* 12-13, 17:

*ունենալով տասներկու կամարակապ սիւներ, որ յարկը վեր են բռնում*[1]*: Վաչէի Սաղմոսավանքի մէջ շինած եկեղեցուն էլ մասնակից է տիկինը մի խորանով ըստ արձանագրի «Մամա խաթունին է այս խորանը*[2]*»:*

*Վաչէն յոգնում է կամ մեկնում է աշխարհից եւ անխոնջ զուգակիցը շարունակում է գործել եւ* 1232*-ին կերտում է միայնակ Տեղեր գիւղի մերձաւոր մենաստանի եկեղեցին՝ բարձրաւանդակի վրայ: Կամարակապ գմբէթաւոր մի անսիւն տաճար էր, կրկնագմբէթ քառասիւն մի գաւիթով եւ զոյգ մատուռներով. ուր արձանագրում է. «Շնորհիւ Այ. ես Մամա խաթուն կառուցեցի եկեղեցիներ մեծ եւ փոքր եւ ժամատունը՝ յիշատակ ինձ եւ իմ ամուսնու՝ Վաչէի*[3]*»: Եւ ինքը հանգչում է այնտեղ՝ Ս. Աստուածածնի մէջ, պարզ ու պերճախօս տապանագրով, «Մամա խաթունն է*[4]*». սրբավայրերը լեցնող յայտնի անունը:*

*Շիրակի Կարմիր վանքը գիւղի եկեղեցու արեւմտեան դռան մօտ կայ մի մատուռ* 1228*-ից, սատարութեամբ մի կնոջ, որի ազգատոհմն անծանօթ է. «Շնորհիւ Քի. ես* ***Տալիթա****, ասում է, ձեռն ետու մատռանս*[5]*»: Նոյն գաւառի Բագնայր ուխտի պաշտպանն էր Խաւռազեանց տոհմը, որոնց անդրանիկը Սասնայ վաղամեռիկ լինելով, «մեծ սուգ» է թողնում իր ծնողներին Խաւռազին ու* ***Խաթունին****: Վշտահար մայրը յաւերժացնում է սիրելիի յիշատակը,* 1229*-ին կերտելով այնտեղ մի մատուռ գրելով «կառուցեցի (սբ.) Սիոն այս տապանատան վրայ» եւ կալուածներ տալով*[6]*:*

*Երկու եղբայրներ՝ Մարտիրոսն ու Գրիգորն եւ առաջնի կինը՝* ***Թամարը****. որոնք հարուստ են, բայց ոչ ազնուական, բարի նախանձով Արզու խաթունի Դադի վանքի եկեղեցու համար*[7]*,* 1231*-ին նրա մօտ ու նմանը կառուցում են Ս. Գրիգոր անուամբ եւ իբր եկամուտ՝ այգիներ են տնկում: Ապա ոմն Գէորգ,* ***Կատայի*** *ամուսինն եւ զաւակները նրա հարաւային կողմն աւելացնում են մի խորան*[8]*:*

*Հոռոմոսի վանքի եկեղեցին, ժամատունն ու մատուռը ժամանակի ծանրութեան տակ ընկճւած, իրենց գթացող են ունենում արարողապետ Վահրամի դուստրին*[9] ***Խաթունին****, հետեւող հօր օրինակին*[10]*, որ «մեծ յոյսով եւ բազում արդեամբ կրկին նորոգեց եկեղեցիները», ասում է արձանագիրը. նրանց զաւակի տեղ հաշւելով. որոնցից զուրկ էր եւ հայցելով Փրկչից նրա հոգու նորոգումն «քո մեծ ծագման լոյսի մէջ*[11]*»:*

***Թագուհի Ջալալը*** *եւս յիշւում է որպէս կառուցող երկու եկեղեցիների Սսոյ մէջ: Մէկը Ս. Մարիանէն, որի պատճառը շատ վիպական եւ անհաւատալի է: Մի օր երբ*

---

1. *Ն. Սրգ.* 160-62: — 2. ***Հնգ. հյգ. Բ***, 47: —3. ***Ալք.*** 146-47: 4. *Հնդ. հյգ. Բ*. 46: — 5. *Շիր.* 15: 6. *Բսմ. հ.* 172: — 7. *Աստ*՝ 224: — 8. *Արց.* 352: - 9. *Աստ*՝ 107: — 10. ***Շիր.*** 162: 11. *Անդ*՝ 22:

բաղնիքից վերադառնում էր, ճանապարհի վրայ «յանկարծակի կարծես դեւից հարուած ստացած, ընկաւ եւ կանչեց՝ թէ Օգնի՛ր ինձ, սուրբ Մարիանէ»: Ոտքի կանգնեց անվնաս եւ նոյն տեղում կառուցեց յիշուած աղօթատունը, ասում է Կիլիկիայի ուշացած ժամանակագիրը: Նոյն բարեպաշտուհին, յարում է, Բարձր քար կոչուած տեղի վրայ նոյնպէս կերտել է գմբէթաւոր մի «փոքր կաթողիկէ», որ յետոյ փլուել է երկրաշարժից[1]:

Մամիկոնեան հին սիրտն էր, որ բաբախում էր **Խորիշահի** կամ **Տաւրխուշահի** լանջերի տակ, - դուստրը՝ Մարծպանի[2] ու **Մամքանի**[3],- Վաչուտեան Բ Քրդի յարկի տակ եւ ժառանգ է կանգնում ամուսնու հետ նրա ծնողների՝ Վաչէի եւ **Մամա խաթունի**[4] ոչ միայն գահին, այլ եւ եկեղեցասէր հոգուն: Նախ 1235-ին Սաղմոսավանքի մէջ «հաստատեցինք, գրում են, այս մատուռը՝ յանուն մեր դուստր՝ **Մամա խաթունի**[5]», որ վաղ կորսնցրին, տալով եւ ճոխ սպասներ[6]: Յետոյ 1244-ին Աստուածընկալ գիւղի մէջ «կառուցեցինք, ասում են, այս սուրբ կաթողիկէն յիշատակ մեր հոգիների», փոքր, բայց վայելուչ, գմբէթաւոր եւ անսիւն, երկու մատուռով հանդերձ[7]:

Իսկ 1250-ին թողեցին աւելի գեղեցիկ մի յիշատակ, մինչեւ այժմ կանգուն, Յովհաննավանքի մէջ, նրա մեծ եկեղեցու արեւմտեան ժամատունը, որ աւարտում են «բազում աշխատանքով», որ նոյն ուխտի կոնդակը սահմանում է «հրաշափառ եւ մեծածախս»: Քառակուսի մի շէնք է, երեք ճակատները թեթեւակի անկիւնաւոր, պատերը ծածկուած կամարաձեւ բեկբեկ քանդակներով. դռան վերեւը մեծ մի պատուհան նուրբ շրջանակով. գմբէթը կազմուած է 12 կարճ ու կամարակապ սիւներից եւ աւարտուած կոնաձեւ, իր մէջ կրելով զարթուցիչ մի զանգակ: Իսկ ներքուստ «ինքը հոյակօք չորս սիւների վրայ, այլ եւ այլ յօրինուածքներով՝ սեւ քարով եւ զարմանալի լուսանցքով խաչաձեւ[8]»: Քրդի բարեպաշտ հոգուն առ Աստուած վերջին նուէրն եղաւ իր անձն իսկ. «միայնակ ապրողի հանդերձը հագաւ եւ եղաւ կրօնաւոր» Սեւանայ վանքի մէջ[9], մինչ կենակցի վախճանին անծանօթ է մնացել:

Նոյնչափ գործունեայ են ուրիշ մի զոյգ, Հասան Ջալալ ու **Մամքան** խաչէնցիք[10], մանաւանդ արքայազարմ տիկինը: Կեչառի վանքը թաթարներն աւերում են: Երկու ամուսինները 1248-ին «բազում գանձով» այն նորոգեցին, ասում են[11]: Սակայն տիկինը դադար չունի եւ երեք տարուց յետոյ, միայնակ ձեռնարկում է իրենց Վաճառ անունով քաղաքաւանի մէջ «կառուցեցի, գրում է, եկեղեցիներ», որ երկու են. բուն տաճարը եւ

---

1. Սխ. 540: — 2. Աստ՝ 8: — 3. Ջբ. սրկ. Գ, 18: — 4. Աստ՝ 197: — 5. Ալր. 163: — 6. Աստ՝ 27: — 7. Ալր. 255: — 8. Ջբ. սրկ. Գ, 14, 18. Նհպ. Բ, 11: — 9. Ջբ. Սրկ. 14: — 10. Աստ՝ 103: — 11. Շհխ. Բ, 194:

նրան կից երկյարկ փոքրիկ մի մատուռ եւ մի կալուած էլ նւիրում է[1]: Իսկ 1266 թւականին ամուսնու եւ Աթաբակ որդու հետ Գանձասարի մէջ իր սկեսրոջ ու տագերոջ կերտած եկեղեցու մօտ[2] «հիմնարկեցինք, ասում են, ժամատուն եւ բազում աշխատութեամբ աւարտւեց», ճոխացած կալւածներով ու սրբազան սպասներով: Ունի՝ երկու միջնասիւներ ու վեց որմակից կիսասիւներ եւ դրանց վրայ չորս կամարներ, որ վեր են բռնում գեղաքանդակ գմբէթը, աւարտւած աւելի փոքրով զանգակների համար[3]: Իսկ ոմն Առաքել 1276-ին Գեղարքունեաց Սող աւանի մէջ մի աղօթատուն է կառուցել «օգնութեամբ» նոյն առատաձեռն տիկնոջ, ընդարձակ վայելչակերտ՝ որոցաձեւ, չորս սիւների վրայ[4]:

Տարսայիճ Օրբելեանն ու **Մինա խաթունը** 1272-ին միասին են չինում Ըղերձի Աստւածածին եկեղեցին՝ «մերոնց հալալ հասոյթով», գրելով եւ հողեր էլ նւիրելով[5]: Իրենց դուստրը՝ **Ասփան**, Խաթրայ վանքի նորակերտ եկեղեցու մէջ, որի օժանդակողն էր ամուսինը՝ Գրիգորը, իր սեփական ժառանգութիւնից կանգնեցնում է «բեմի սեղանն Քրիստոսի զենմանը», ընծայելով ջրաւոր մի կալւած էլ[6]: Իսկ Տարսայիճի որդու Ջալալի կենակիցը՝ **Գոնցան**, 1301-ին միայնակ կառուցում է մի եկեղեցի «Սպիտակաւոր Աստւածածնի[7] անունով»,- Պռօշեան համանուն դաստակերտից զատ, - որի հանգամանքները մեզ համար պակսում են: Դարձեալ նոյն իշխանի թոռը՝ Բուրթէլ սպարապետը, 1339-ին յիշատակ թողեց **Ամաղւայի** Նորավանքի գեղեցկակերտ Ս. Աստւածածին կրկնայարկ եկեղեցին, ստորին յարկը քառակուսի եւ վերինը խաչաձեւ, ուր բարձրանում են երկու սանդղներ ճակատի վրայ եւ որի շինութեան գործակից էին, ասում է, «իմ ամուսինը՝ **Վախախը**», եւ որդիքը՝ Բիչկէնն եւ Իւանէն[8]:

Սիւնեաց մէջ բնակւող երկու ընտանիք, պարոն Վահրամ Ե Պահլաւունի իր կնոջ «բարեպաշտուհի **Մանդղանի**» եւ Ուքան որդու հետ, եւ Վահրամ սպարապետը՝, որդի Ամադին Շահուռնեցու[9], «քրիստոսասէր իր մօր **Մամքանի**» եւ «բարետոհմիկ» ամուսնու՝ Տարսիճեան **Գոնցայի** հետ, 1283-ին իրար օգնութեամբ եւ «մեծաջան աշխատութեամբ» կառուցում են Հերհերի Ս. Սիոն անապատի եկեղեցին, որ եւ «բազում սպասներով զարդարեցին»: Երկու որմակից համաչափ ու համաձեւ շէնքեր են,

1. **Արց.** 184: — 2. Աստ՝ 224-25: — 3. **Արց.** 174-75: — 4. **Սնկ.** 74: — 5. Շհխ. Բ, 364: — 6. **Արց.** 194: —
7. **Խղբ.** 221: — 8. Լալ. Ա, 4-7. **Սնկ.** 202: — 9. **Խղբ.** 21. **Սնկ.** 116:

քառակուսի, սագաչէն, կոնաձեւ ճակատներով[1] եւ որոնց արեւտր կառուցողների թեփ եւ ատրիճանի հետ համեմատական չէ:

Հետաքրքրական են Այրի վանքի վիմափոր եկեղեցիները, մեծ աշխատութեամբ բացուած ժայռի մէջ Խաղբակեանց ձեռքով: Նրանցից մէկը, քառակուսի եւ գմբէթաւոր՝ չորս կամարակապ սիւների վրայ, գործն է Պռօշ իշխանի որդու՝ Պապաքի եւ հարսի Ռուզուքանի, կատարուած 1228-ին: «Փորեցինք, գրում են, ժամատունը ինքնաբուն վէմից՝ յիշատակ մեր հոգիների եւ մեր զաւակի անմահ՝ մեր հալալ աշխատանքով[2]»: Հաւանօրէն զուրկ կամ զրկուած էին մահկանացու զաւակներից:

Հոռոմոսի ուխտի մէջ 1277-ին երեւում են Առիծ Հոգեւորեանց ու կինը Մեղան, որ «շինեցինք, ասում են, մեր հալալ աշխատանքով նշխարատունը՝ ի ժամատան դուռս»: Տարբեր Մամա խաթունի կառուցուածքից[3], փոքր մի սենեակ է, որի չորս կողմից մեկնում են կամարաձեւ գօտիներ ու ամփոփւում են առաստաղի կենտրոնում բաց մի լուսամուտի շուրջ[4]:

Կան եւ տիկիններ, որ արդիւնաւոր եղան զանգակատան շինութեան մէջ: Այսպէս 1290-ին Սարգիս Ճօճկանանց եւ Արզու խաթուն ամուսինները միաբանում են Հոռոմայրի Ս. Նշանի եւ կառուցում են նրա զանգակատունը, նւիրելով նաեւ կալւածներ[5]: Իսկ 1321-ին Ցովհաննէսն ու Թաժնան, անծանօթ անձեր, կառուցում են Պռօշեանց վերոյիշեալ Սպիտակաւոր Աստուածածնի զանգակատունը[6], կազմուած երկու քարաշէն կոկիկ կամարներից իրար վրայ[7]: Մի ուրիշ տիկին, «Մլքան Վասակի ամուսինը», 1245-ին յոկ մասնակցել է Հաղբատի նշանաւոր զանգակատան կառուցմանը, տալով երեսուն դահեկան ու քսան գոմէշ ի նպաստ նրան[8]: Վերջինի պէս շատերն օժանդակել են հանգանակութեամբ եկեղեցիների շինութեան համար, որն աւելորդ եմ համարում յիշելու:

2. Մենաստանները նւազ չափով, բայց նոյնպէս վայելել են մեր տիկնանց բարեպաշտութեան արդիւնքը: Սակայն նրանցից շատ քչերը կանգուն են մնացել մինչ այժմ, մեծ մասն անտէր լքւելով ու քայքայւելով բնութեան տարրերից եւ աւերիչ ձեռքերից, մինչ իրենց եկեղեցիներն աւելի յարգւեցին ու տոկացին: Մենք նախապէս տեսանք Թրինի կուսանոցի կառուցումը Կարուց Թագուհու Փառախուհու ձեռքով[9], եւ Խոտակերաց եկեղեցու Սիւնեաց Շուշան տիկնոջ միջոցով, «կրօնաւորների շինուածքով» հանդերձ[10]: Սրա յաջորդը՝ Սոփիան, բազմացնում է Գնդեվանքի կրօնաւորները, գուցէ

---

1. Սսկ. 114, 115: - - 2. Այր. 342. Խղբ. 139: — 3. Աստ՝ 225-26: — 4. Շիր. 25: — 5. Ջալ. Ա. 97: — 6. Սսկ. 137: — 7. Լալ. Ա. 72: — 8. Երզ. 55: — 9. Աստ՝ 169: — 10. Աստ՝ 218:

*ընդարձակելով ուխտը*[1]*, իսկ* 922-*ին գործակիցն է ամուսնուն (Սմբատի) ու տագերոջ (Սահակի) Եղէգեաց ձորի մենաստանի շինութեան մէջ, որ ձեռնարկում է Սիւնեաց Ցակոբ եպիսկոպոսը, եւ որի նոյն ազնւականներն ընդարձակ ստացւածքներ էլ թողնում են*[2]:

*Պահլաւունի* ***Շուշանի*** *եւ որդիների արձանագիրը վկայում է, թէ եկեղեցիների հետ կառուցել են նաեւ «վանքեր»*[3] *եւ այդ տիկնոջ թոռը՝ Մագիստրոսն, էլ գրում է նոյն մեծ մօր եւ մեծ հօր համար՝ «բազում նոր վանքեր կառուցեցին եւ աւերւածները նորոգեցին*[4]*»: Տեսանք դարձեալ Կեչառուաց նորոգումն Հասանի ու* ***Մամքանի***[5]*: Սակայն անկատար եւ անորոշ վկայութիւններից աւելի ուշագրաւ օրինակներ կան հայուհուն վանաշինութեան:*

*Սիւնեաց իշխանն՝ Ատրներսեհն, իր կեանքը կապել էր Աղւանից Վարազ Տրդատ իշխանի դստեր՝* ***Սպրամի*** *հետ, «կնոջ զգաստի». եւ երկուսն էլ «երկիւղած Աստուծոյ եւ բարեպաշտ»: Ատրներսեհը գերի տարւեց Պարսկաստան, ու մնաց երկար տարիներ, իսկ Վարազ Տրդատն սպանւած էր նախապէս: Սպրամն երկու նետով վիրաւոր, իր սփոփումն որոնեց բարեգործութեան մէջ եւ զուգակցի բացակայութեանը «մեծածախս տենչանքով կառուցեց» Սողից Նորավանքն «ամենապայծառ զարդերով*[6]*»:*

*Մաշտոցն, որ յետոյ կաթողիկոս եղաւ, ճգնաւէր ու Մաքենոցաց վանական,* 893-*ին գնաց առանձնացաւ, գրում է իր աշակերտն Ստեփանոսը, Սեւան կղզու մէջ: Իր սրբութեան համբաւը հրապուրում էր շատերին եւ նրան քաշեց նաեւ Վասակ Գաբուռի այրին՝* ***Մարիամը****, որ «հարկաւորեալ բազում թախանձանքով», ստիպեց մի վանք շինել այնտեղ, ի նպաստ ամուսնու հոգուն: Ճգնաւորը զիջեց ասելով «Եթէ Աստուծոյ է այս հրամանն, ես չեմ ընդդիմանայ». կառուցեց ուխտը, հաւաքեց եղբայրներ եւ զարդարեց բազմաթիւ գրքերով ու «վայելչական սպասներով*[7]*», որ Մարիամը նրա հիմնադիրն եղաւ: Եւ եթէ կառուցումը տիկնոջ ստիպմամբ եւ ի նպաստ կենակցին էր, բնականապէս նրա ծախսով էլ կատարւեց. ապա թէ ոչ, ի՞նչպէս կարող էր գլուխ հանել այն աղքատ Մաշտոցը: Արդէն Սիւնեաց պատմիչն էլ գործակից է դնում տիկնոջը, «կառուցեն, ասելով, գեղապաճոյճ եկեղեցին յանուն Առաքելոց, եւ միւսն յանուն տիրուհու՝ Աստւածածնի*[8]*», ուր Ասողիկը* 1004-*ին այնտեղ Առաքելոցը միայն գիտէր*[9]*, քառակուսի, գմբէթաւոր, շատ պարզ ու ծանր մի շէնք, ինչպէս երեւում է մինչ այսօր*[10]:

1. *Անդ*:— 2. *Օրբ*. 188-89: — 3. *Աստ*՝ 219: — 4. *Մգ. Թղթ*. 43: — 5. *Աստ*՝ 227-28: — 6. *Կղն*. 272-73
7. *Հւք. յշտ*: — 8. *Օրբ*. 126: — 9. *Ասղ*. 160: 10. *Լալ. Բ*, 55:

Նոյն տիկնոջ գործն է եւ կիսաւեր տաճարի կիսաքանդ, արձանագիրն էլ վկայում է, նաեւ Շողագայի «մեծապայծառ եկեղեցին» յանուն Պետրոսի[1], «սրբատաշ քարերով, առանց սեան[2]» եւ «կարգում է նրա նման կրօնաւորանոց եւ դասս բազմահոյլ քահանայից», նոյնպէս հանգուցեալ ամուսնու օգտին: Ցիչեալ գիւղը գնում է վաթսուն հազար դրամով, եւ մի ուրիշն էլ երեք հազարի եւ եկամուտ է թողնում նոյն ուխտին, որ իր վերջին հանգստարանն է դառնում[3], ընդունելով նրա նշխարները Գարդմանի ապաստարանից[4]:

Սեւանն երեք քառորդ դարուց յետոյ անբաւական ու հնացած, սանահնեցի Սիմէոն յիշատակագիրն 972-ին վկայում է, թէ Թւականից վեց տարի առաջ այն նորից «կառուցեց բարեպաշտ թագուհին՝ **Խոսրովանոյշը**, ամուսինը Աշոտի Հայոց շահնշահի[5]» եւ խնդրում է յիշել «սուրբ ուխտի շինողին» նոյն բամբիշը՝ կենակցին եւ իրենց զաւակների հետ[6]:

Ասողիկը պատմում է, անորոշ ձեւով թէ նոյն արքայի օրով Սեւորդեաց գաւառի մէջ էլ «շինեցին կրօնաւորանոցներ՝ ճգնաւորների տեղեր», որ էին «Հաղբատն եւ Սանահինը հանդէպ միմեանց[7]» եւ որ ուրիշները **Խոսրովանոյշին** են ընծայում[8]. ինչպէս ուրիշ մի յիշատակագիր,- Հայապատմի մէջ սխալմամբ Ասողիկին վերագրուած,- այս եւ դեռ ուրիշ վանքեր կառուցուած է համարում նոյնպէս «մեծամեծ աշխատանքով եւ բազում ծախսով բարեպաշտուհու եւ տիկնաց տիկնին[9] Խոսրովանոյշ թագուհու»: Եւ «երկնանման եւ գմբէթաւոր խորաններ, … գեղեցիկ յօրինուածքով եւ կոփածու պողովատաշ քարով» էին. եւ այնչափ ընդարձակ, որ յիշեալ երկու վանքերի մէջ,- շինուած՝ Հաղբատը 967-ին եւ Սանահինը 978-ին,[10]- պատսպարուած էին 502 վանականներ: Ցարում է թէ նրանց բոլոր ծախսերն ու պիտոյքն «արքունիքի կողմից էր շնորհւած՝ աւելի քան կարիք կար, ազնուազն եւ բարեպաշտուհի դշխուհու կողմից[11]»:

Սիւնեաց առաջին թագուհին՝ **Շահանդուխտը**[12], այրի էր մնացել, 1000 թւին հիմնում է,- երեւում է ըստ ամուսնու յօժարութեան,- «գեղեցկայարմար վասն Վաղանդնոյ», որ հին մի ուխտատեղի էր եւ նրա մէջ նաեւ մի եկեղեցի կոփածոյ քարերով յանուն Նախավկային եւ այնտեղ կարգում են «տուն կրօնաւորների եւ բազմամբոխ պաշտօնեաների»: Եկեղեցու դռան առջեւ էլ շինում է մի ժամատուն «կրաշաղախ վիմերով». նոյնպէս շտեմարաններ ու գործատներ. պարսպում է վանքը,

---

1. **Սակ.** 50: — 2. **Շհխ. Բ**, 246: — 3. **Ցհ. կթ.** 289: — 4. **Աստ՝** 168: — 5. **Աստ՝** 200: — 6. **Ջալ. Ա**, 42: — 7. **Ասղ.** 181: — 8. **Սամ.** 100. **Աղ. Հնդ.** 1901, 379: — 9. Արդեօք Պահլաւունի՞ է կարծում աստ՝ **Ե**, 5-բ: — 10. **Սամ.** 100. **Աղ. Հնդ.** 1901, 379: — 11. **Հյպ.** 287: — 12. **Աստ՝** 197:

տալով նաեւ կալւածներ եւ ուր վերջը գնում է հանգչելու իր անշնչացած մարմինն էլ[1]: Համառօտ եւ դշխոյավայել մի արձանագիր յաւերժացնում է իր գործը. «Կառուցեց Սմբատ Թագաւորի հրամանով բարեպաշտ Թագուհի՝ Շահանդուխտի ձեռքով[2]»:

Նոյն տիկնոջ Գրիգոր Թոռան կենակիցը եւ իրեն անուանակիցը՝ **Շահանդուխտը**[3], անզաւակ մնացած, իր քրոջ **Կատայի** հետ «բազում եւ գեղեցիկ շինուածքով» պճնազարդում են Վահանու վանքը՝ Սիւնեաց Ծորք գաւառի մէջ, կանգնեցնելով «մեծամեծ կամարներ, եւ վրան եկեղեցի եւ սրահը բազմասիւն բարձրաբերձ», որ պիտի ծառայէին իբր «հովանի եւ խրախարան իշխանների», երբ ուխտի կամ աղօթելու գնային այնտեղ: Եկեղեցու արձանագիրը 1086 թւականից հաստատում է նոյն թագուհու բերնից իսկ թէ «Ես Շահանդուխտ … եւ քոյրս իմ Կատա շինեցինք Սուրբ Աստուածածինը նրա գթոյ փոխարէն[4]», որ է հանգուցեալ զուգակցին: Սիւնեաց պատմիչը յարում է թէ «Սենեքերիմը (Գրիգորի յաջորդը) եւ իր քոյրը՝ Շահանդուխտը, բազում երեւելի աշխատանքներ եւ շինարարութիւն կատարեցին» նաեւ Ցովհաննու վանքի մէջ[5]: Սրա պարիսպն էր, որ յետոյ կառուցեց **Նանա** Թագուհին[6], այդպիսով մտնելով մենաստանի երախտաւորների կարգի մէջ:

Ուքան Քարիմադինն եւ իր եղբայրը՝ Պապքան Վախրատինը, առաջինի կնոջ՝ **Դապատ խաթունի** հետ, 1271-ին գնում են Անիի Կարմիր վանքը եւ «շինեցիք, ասում են, ի կորդոյ» կամ խոպան վիճակից, եւ զարդարում են սպասներով, ճոխացնում են կալւածներով[7]:

Ծանօթ առաքինակրօն ամուսիններն Ազիզբէգն ու **Վախախը**[8] զոհ են դառնում իրենց եղբայրների նախանձին եւ զրկւում են իրենց ստացւածքներից, որին համբերում են քրիստոնէական համակերպութեամբ: Վերին արդարութիւնը հասնում է յետոյ, նախանձողները կործանւում են, նրանց բնակավայրերն աւերւում են, եւ իրենց Եղիվարդ աւանն աւազակների բնակութեան վայր է դառնում: Ազիզբէգն, որ միանգամայն «քաջ զօրավար» էր, նորից տիրանում է նրան: 1318-ին ի նշան շնորհակալութեան առ Աստւած՝ զուգակցի հետ իրար ձեռք տւած «սկսեցին կառուցել մի վանք կորդոյի մէջ՝ Սրբոյ Ցակոբի ուխտի համար»: Եկեղեցու ներսը պատկերազարդեցին, նւիրեցին թանկագին սպասներ, եւ մենաստանի շուրջը այգիներ տնկեցին[9]: Նորոգեցին Եղիվարդի մենաստանն էլ, որ քանդւած էր[10]:

---

1. *Օրբ*. 220-21: — 2. *Սսկ*. 514: — 3. *Աստ*՝ 170: — 4. ***Սսկ***. 296: — 5. *Օրբ*. 235: — 6. *Աստ*՝ 129: — 7. *Բսմ*. հ. 70: — 8. *Աստ*՝ 162: — 9. ***Հւք. յշտ***: — 10. ***Սսկ***. 199:

*Սիւնեաց Քռնա գիւղի մէջ 1330-ին հաստատւում է Դոմինիկեան քարոզչական հայկական ճիւղը, առաջնորդութեամբ նոյն գիւղից Յովհաննէս վարդապետի: Առ այս՝ նոյն վանահօր քեռին ու կինը, «աստուածասէր եւ բարեպաշտ պարոն Գորգն եւ տիկին **Էլթինը**» (կամ **Էլթին**)[1] մի վանք են կառուցում յանուն Յովհաննու եւ յիշեալ վարդապետի հետ ընծայում են այն նոյն միաբանութեան՝ «տուրք յաւիտենական[2]»: 1331-ին մի յիշատակագիր նոյն բարեգործ այրը կոչում է «պարոն Գէորգ առաջնորդ Քռնա գիւղի[3]». ուրեմն պատւաւոր մարդ:*

*3.- **Հիւրանոցներ** հին Հայաստանի մենաստանների հետ կապւած էին սովորաբար, ուր իջեւանում էին անցորդներ, գտնելով ձրի սնունդ ու բնակարան: Նրանց համար եկամուտներ էլ հաստատւած էին բարեսէր անձերից, որոնց մէջ եւս երեւում են մեր տիկնայք, ոչ միայն իբրեւ նւիրատու, այլ նոյն ինքն հիմնադիրներ հիւրանոցների:*

*Դրանցից ծանօթ են **Մինա խաթունն**, որ 1274-ին Սիւնեաց Եղէգիք աւանի մէջ կենակցի՝ Տարսայիճի, հետ կերտում են նոյնպիսի մի շինւածք, յայտնի իրենց թողած արձանագրից իսկ, որ նրա միակ մնացորդն է այժմ. «Աստւած շնորհաւոր առնէ **դարբաս** պարոն Տարսայիճի եւ իր ամուսնու՝ Մինա խաթունին. ի թւին հայոց ՉԻԳ[4]»: Նոյն ամուսինների «հրամանով» ուրեմն եւ դրամով, Սարգիս եպս. Նորավանքի մէջ կառուցում է ուրիշ մի «հիւրատուն», որը մինչեւ հիմա կիսաւեր է մնացել: Եւ մատուռի ձեւով մի սագաշէն ու թաղակապ սենեակ է, 4 չափ երկար, 2.35 լայն, 5 բարձր, երկու պատուհանով ու մէկ լուսամուտով: Նրա հետ կապում են շատ կալւածներ եւս, ըստ իրենց յիշատակարանի[5], ի սնունդ հիւրերին:*

*Աշտարակի մէջ Յակոբ երէցը 1317-ին արձանագրում է, թէ «ողորմութեամբ (այսինքն նպաստով) պարոն Աղբուղայի», Զաքարէ զօրապետի թոռնորդուն, «եւ **Միթի խաթունի**», նրա ամուսնու, «ի վանքս շինեցի **հոյրատունն**», որի երրորդ դուռը կամ արտաքին մուտքը մենաստանի մէջ բացւած էր[6] երթեւեկելու դիւրութեան համար:*

*Ջեսար Օրբելեանն ու կինը՝ «**Խորիշահը**, դուստրը Վարդան իշխանի եւ **Դուքենի**՝ Սենեքերիմանց ազգից» (հաւանօրէն Արծրունեաց), 1332-ին Վայոց ձորի մէջ «կառուցեցինք, գրում են, այս **հոգետունը**» իրենց օգտին ու տոհմի հոգիներին: Եւ մինչ այժմ կանգուն է. վայելուչ մի շէնք կամարակապ քանդակազարդ դռնով, եւ իր մօտ աւելի ցած եւ ընդարձակ մի մաս՝ կարաւանի համար[7]:*

1. ***Հւք. յշտ.*** 1337: — 2. ***Սսկ.*** 374: — 3. ***Հւք. յշտ.***: — 4. *Ջալ. Բ.* 154. ***Սսկ.*** 151: — 5. ***Ազ. Հնդ.*** 1916, 56, 47: — 6. *Շհխ. Բ*, 86: — 7. *Սսկ.* 164-65:

4.- ***Հիւանդանոցներ*** *մեծ կարեւորութիւն ունէին անշուշտ քրիստոնէական գթութեան տեսակէտով, որոնց մէջ աւելի բազմութեամբ կարելի էր հաւաքել կարօտ խօթացեալները եւ դիւրագոյն ու լաւագոյն դարմանը տալու նրանց, քան թէ շրջելով նրանց տները*[1]*: Հին Հայաստանն արդարեւ ունեցաւ իր զանազան դարմանատները, որոնց մասին առանձին գրել եմ այլուր*[2] *եւ որոնց կառուցման մէջ անպակաս եղաւ նոյնպէս հայուհու բաժինը:*

***Թագուհի Զապէլը****, դուստր մի ծնողի, որ բազմաթիւ աղքատանոցների հետ «եւ գողեացն տունս» կազմել ու ռոճիկ էր սահմանել*[3]*, հետեւեց հայրենի օրինակին. եւ «շինեց Սսոյ մէջ մի* ***հիւանդանոց****, ասում է կիլիկեան ժամանակագիրը. եւ մէջն էլ բրգայ (աւազան) եւ հայի արեւմտեան դուռը Սսոյ բերդի մէջ, որ այժմ Մարստան է կոչւում», եւ աւերակ է դարձել 1642-ի երկրաշարժից*[4]*: Նրա արձանագիրն էլ այսպէս է գտնւել. «հիւանդանոցի յարմար շինուածքի – քրիստոնասէր թագուհւոյ՝ Զապէլի,- հայոց ՈՂ թւին*[5]*»* (1241):

*Նրա մերձաւորագոյն վկան է ամուսինն իսկ, որ յիշում է դշխուհու գութն առ հիւանդի*[6]*, յարելով այնտեղ թէ «եւ ես արքայական գանձից պարգեւեցի սուրբ մասն գագաթան Կարապետի Քրիստոսի, եւ մխիթարութեան պարգեւ տւեցի» անտարակոյս նոյն հիւանդանոցին, «ընդ կողակցիս եւ դեռաբոյս պարոն Մելգոնին. Աստուած վայելել տայ. ամէն»: Իրենց դուստրը՝* ***Ֆիմին****, եւս որտե՞ղ աւելի կարող էր ցոյց տալ իր հոգածութիւնն հանդէպ հիւանդին*[7]*, քան մայրենի դարմանատան մէջ:*

*Զապէլի հիւանդանոցը գիտենք, որովհետեւ հետաքրքրւող մի անձ յիշել է այն, եւ մի քար հասել է մեզ: Իսկ քանի՛ նման հաստատութիւններ են եղել արդեօք ուրիշ տիկնանց ձեռքով նախապէս կամ այդ թագուհուց յետոյ, որոնք անյիշատակ մնացին կամ քանդւեցին, առանց հաշւելու Աղւիթայի պարագան կենսագրութեանը պէս*[8] *անստոյգ, կամ պատահականներ – ինչպէս պատերազմի առթիւ - արշարունի մի դղեակի*[9] *կամ այլ յարկերի մէջ, ուր հայուհին ներկայ էր միշտ խնամելու:*

5.- ***Մատենադարաններն*** *ոչ նւազ ուշագրաւ են, որոնք քաղաքակիրթ ազգերն ի հնուց հիմնել են հասարակութեան օգտին, դիւրացնելու եւ քաջալերելու համար մտաւոր բարգաւաճումն հանրութեան մէջ: Պատմութիւնը հաստատում է դրանց գոյութիւնը նաեւ մեր հայրենեաց մէջ: Նրանց սովորական վայրերը նշանակում է հայրապետանոցը, արքունիքը եւ մանաւանդ վանքերը, որոնց մերթ եկամուտ էլ սահմանել է, որպէսզի*

---

1. *Աստ՝ Ժ*, 7: — 2. ***Տրզ. հիւ.*** 1927: — 3. ***Գամ. Աբ.*** 219: — 4. ***Միխ.*** 538: — 5. *Անդ՝* 233. *աստ՝* 49: — 6. *Աստ՝* 208: - 7. *Անդ*: — 8. ***Հյպ.*** 85. ***Կար. խնդ.*** 135-37: - 9. *Աստ՝* 213-14:

կարողանային հետզհետէ հարստանալ գրքերով եւ իրենց չտեմարանած մատեաններն աւար եւ աւեր տալու բարբարոսներին, մեծ չափով մինչեւ մեր ձեռքն են հասցրել:

Ուսումնասէր հոգին ու գործեր պիտի մատնանշեմ նաեւ Հայ կնոջ մօտ մեր յաջորդ գլխի մէջ: Իսկ այստեղ – կը փորձեմ ցոյց տալ գեղեցիկ ձեռնարկը կայէնի տէրերի՝ Քրդի եւ **Խորիշահի**, որ 1235-ին Սաղմոսավանքից իրենց մատրանի հետ[1] կառուցում են նաեւ մի «գրատուն» նոյնպէս ի յիշատակ իրենց վաղաժամ[ա]րչամ դստեր, կանգնելով այդպէս հոգու եւ մտքի զոյգ տաճարներ իրար մօտ. ճշմարտապէս ազնուական մի մտածում եւ ստեղծագործութիւն: Այդ գրատունը նկարագրւում է՝ «մատուռի ձեւ փոքրիկ սենեակ», նստած մատուռի խորանի կամարի վրայ[2]: Համեմատական էր իր տեղի, մինչ Հաղբատինը՝ ԺԳ դարի վերջին քառորդից, աւելի մեծ էր ու գեղեցիկ, հոռմէական կամարներով ութ կիսասիւների վրայ, որոնք աւարտւում են ութանկիւն գմբէթով[3]: Շատ են մատենադարանների յիշատակութիւնները մեր նախնեաց մօտ, բայց Սաղմոսավանքինը միակն է, որի շինութեան մէջ հայուհին էլ յիշւած է:

6.- ***Ջրմուղներ***, սահմանւած մարդկանց կենսական ու կենսապահ տարրը հեռու տեղերից մօտեցնելու բնակութեան, մարդասիրութեան ու ծախսի էին կարօտում թէ շինութեան եւ թէ պահպանութեան համար եւ այստեղ էլ հայուհին անպակաս է անում իր օժանդակութիւնը: Առիծ Հոգեւորեանցն ու **Սեղան**[4] 1251-ին միաբանում են Հոռոմոսի ուխտին եւ այնտեղ «բերեցինք, ասում են, ջուրը», որ կար նախկինից թաթարների ձեռքով «խոպան էր դարձւած», ընծայելով եկամուտ եւս[5]: Անիի Ս. Գրիգոր վանքի ջրմուղը նոյնպէս հին, եւ «ի անտէրութիւնից խախտւել ու կտրւել էր»: Շահնշահ Բ. Զաքարեանի [illegible] ու կնոջը [illegible], ՉԾԱ-ին նորոգում են այն, գրելով թէ նորից «բերեցինք ջուրը», իշխանի ընտանիքի արեւշատութեան եւ իրենց հոգու համար[6]:

Յիշատակագիրը Ազիզբէգ ու **Վախախ** ամուսինների[7] մասին պատմում է՝ թէ Եղիվարդի ուխտի «ջրի գնալը» թշնամիների ձեռքով աւերւած ու խոպան դարձած գտնելով, 1318-ին ձեռնարկում են նրա վերաշինութեանը, «չհաշւելով ծախսն», որովհետեւ աղբիւրը շատ հեռու էր եւ «չրջապատւած Արարատեան լեռան միջոցով եւ ջուրը յորդառատ եւ արագահոս վտակներով հասցրեցին Եղիվարդ»: Շեշտում է յատկապէս «անհասանելի երկրաչափ տեղի հեռաւորութիւնը», տարածւում է Բջնիից

1. Աստ՝ 227: — 2. Ալ. 162: — 3. Աղ. Հնգ. 1901, 407: — 4. Աստ՝ 229: — 5. Ն. Սրգ. 156: — 6. Նոյն՝ 128: — 7. Աստ՝ 162:

մինչեւ Կարբի, որտեղ անցորդներն ամռանը ծարաւից պապակում էին, իսկ Նորեկ ջրով «նորափետուր զարդարուեցին եւ զւարճացան ամենայն կենդանիները, մարդն եւ անասունը», բայց ի գին ծանր դրամներով, այնպէս որ «արւեստաւորների տուրքը եւ ամենայն ծախսերը ո՞վ կարող է գրելով արկանել» ասում է գրիչը[1], զարմացած ինքն իսկ բարեգործների առատաձեռնութեան վրայ, որ բխում էր իշխանի քաջութիւնից ու տիկնոջ բարեպաշտութիւնից:

7.- ***Կամուրջներ*** հարկաւոր էին Հայաստանի յաղթաջուր գետերի վրայ. անջատուած ցամաքներն իրար կապելու եւ դիւրացնելու համար ընկերական հաղորդակցութիւնները: Այդ գործերն էլ պէտք ունէին բարի եւ զօրեղ ձեռքերի օգնութեան, եւ հայ տիկինը հանդէս է բերում իր կորովը նաեւ այդտեղ:

***Նանան*** ՝ ամուսինը հասակով ու վարքով թողլ մի թագաւորի[2], բայց դուստրը ու քոյրը մեծազօր իշխանների, ողբալուց յետոյ հազիւ երկամեայ կենակցի մահը, «որ կեանքի օրերի կէսն եղած ժամանակ վախճանուեց՝ խաւարեցնելով մեզ», ասում է զգեստաւորուեց իր քոյրերի շինարար հոգով[3]: Ջաքարեան ու դշխոյական բազուկներով մի կամուրջ գցեց՝ «ահռելի դղրդիւնով ու փրփրալի ալիքներով սրընթաց» Ձորոգետի վրայ, կամարակապ, սրբատաշ քարերով, քսան չափ երկար եւ երկու կողմը վիմաքանդակ չորս առիւծներով, իսկ նրա գլխին, մի խաչքարի վրայ թողնելով մի յիշատակարան, որում ասում է «կառուցեցի այս կամուրջը, կանգնեցի խաչը որպէս յիշատակ նրա (Աքասայ) եւ ի մխիթարութիւն ինձ եւ ծնողների կեանքի եւ մեր եղբայրների[4]»: Կամուրջ՝ «որ եօթը դարից աւելի ժամանակն չի կարողացել կրծել, այլ դեռ կանգուն է մնացել», խորհրդածում է Հ. Ալիշանը[5], ցոյց տալով ցած կողմից աստիճաններ, որ բարձրանում են մինչեւ կենտրոն, եւ միւս բարձր կողմի հարթ երեսը[6]:

Իր օրինակին հետեւողն եղաւ ***Ասփան***, գցելով մի կամուրջ Արցախի մեծագոյն Թարթառ գետի վրայ, որ նոյնպէս կանգուն է մնում դեռ: Եւ արձանագրում է պանծացնելով նախ իր տոհմը. «Աստուծոյ կամքով ես՝ Ասփա, դուստրը մեծ իշխան Տարսայիճի եւ ***Մինա խաթունի***, եւ ամուսին հսկայազն իշխանի Գրիգորի՝ որդու մեծ իշխանի՝ Հասանի քաջի տեառն Աղւանից» եւ աւարտում է ազդու բառերով. «կապեցի[7] այս խաչը, շինեցի կամուրջը՝ յիշատակ անցնողների հոգուն, ներկաների եւ ապագայի համար[8]», բոլո՛ր մարդկութեան հոգիներին: Ի՜նչ մեծ հոգի ինքն իսկ կանգնած նրանց միջեւ:

---

1. *Այր*. 197:— 2. *Աստ*՝ 45: — 3. *Աստ*՝ 224: — 4. ***Մհհ***. 41: — 5. ***Հյպ***. 443: — 6. *Նհպ*. *Բ*, 32: — 7. *Թերեւս կանգնեցի*: — 8. ***Արց***. 196:

8. ***Բերդ եւ աշտարակ***, *երկուսն էլ կարեւոր երկրի ապահովութեան համար*[1]*: Զարմանք չէ ուրեմն, որ մեր տիկնայք զբաղուէին երբեմն նրանց կառուցմամբ եւս: Եթէ կարելի է հաւատալ Սիւնեաց պատմիչի ուշացած վկայութեան, Սիսական Նախնի տոհմից* ***Երնջիկ*** *անունով մի տիկին է շինել «անհնարին ամուրն Երնջակի», որ շինողի անունն է վերցրել ու պահում է համանուն գաւառի հետ եւ նրա մէջ դնում են «գանձի տունն եւ աշխարհի հարկերի*[2]*»: Բայց կրկնում եմ, պատմիչից շատ հեռու էին այդ կառուցումներն ու կառուցողը, պատմական համարուելու համար:*

*Ընդհակառակն կանգուն են տակաւին Անի ոստանի պարիսպներն իրենց վերամբարձ աշտարակներով, որոնց միջից հայ զինուորները դէտ կանգնում էին ու մարտնչում էին յարձակողների դէմ: Եղածներր նուազել կամ անբաւական գտնելով, լոռեցի Խաչերեսի կենակիցը՝* ***Շուշանը***, *1218-ին նրանցից աւելի հայրենասիրաբար է վարւում, չգիտենք քանի թւով, եւ դէպի Դւին նայող դռան կողմը, «կառուցեցի, գրելով, աշտարակներ մեզ յիշատակ»: Յաջորդ տարին նրա դուստրը՝* ***Մամա խաթունը***, *վաղամեռիկ է լինում եւ իր հայրենի ժառանգութիւնից ուրիշ մի աշտարակ էլ կառուցում են ոստանի հիւսիս արեւելեան պարսպի վրայ, «յիշատակ ինձ ի Քրիստոս», աւելով հանգուցեալներին*[3]*: Եւ այդ երկու կակուղ սրտերի դաստակերտներն ամուր եւ հաւատարիմ մնացին մինչեւ մեր օրերն, ուր առնական պինդ ձեռքեր օտարներին յանձնեցին նւիրական ոստանը գլխովին, որին նրանք իրենց աշտարակները պահապան էին դրել: Ի՜նչ հակասութիւն:*

## ԳԼՈՒԽ ԺԲ

### *Ուսումնասիրութեան մէջ*

*Տեսանք մեր ազնուազգի օրիորդների ստացած դաստիարակութիւնն ու մտաւոր զարգացումը*[4]*: Տեսանք նաեւ նրանց դաստիարակուհիները, քաղաքացի դասակարգից եւ հաղորդ նոյն զարգացման, ներկայացնելով իրենց դասի մէջ եղած կրթութիւնն ու մշակոյթն էլ*[5]*, թէպէտ ոչ ընդհանուր կամ հաւասար ամենի մէջ, ինչպէս էր բարձրագոյն կարգին: Այս բոլորը պահանջում էին, որ մեր այդ մտավարժ օրիորդներն ու տիկնայք նաեւ կեանքի ասպարէզի մէջ չարունակէին պահել իրենց ուսման սէրն՝ ընտանեկան*

---

1. *Աստ՝* 12-13: — 2. *Օրբ*. 7: — 3. *Բաժ*. *Հ*. 51, 52: — 4. *Աստ՝ Ա*, 2, 3: — 5. *Աստ՝* 12, 90:

*զբաղմունքների ներած չափով, ինչ որ բարոյապէս մխիթարութիւն ու զօրավիգ պիտի լինէր իրենց կենցաղական նեղութիւնների մէջ: Մենք բախտաւոր ենք, որ կարող ենք մասամբ էլ պատիւ ընծայել հին հայուհուն, որ կարողացաւ ցուցաբերել իր տուած յարգանքն իմաստութեան ու գրքերին եւ այս՝ ի հեճուկս մեր հայրենեաց քաղաքական յաճախակի վրդովմունքների, որ խոչընդոտն հանդիսացան առ հասարակ աշխարհիկ դասի բարձր զարգացման գրականութեան մէջ:*

1.- *Այն շրջաններին, որտեղ քաղաքական յուզմունքը պակաս եղան եւ ազգային կեանքն ինքնամփոփ,- անհրաժեշտ պայմանն ազգերի մտաւոր բարգաւաճման,- կար նաեւ մեծագոյն մի ուսումնասիրութիւն մեր երկու սեռերի մէջ, ինչպէս են Թարգմանիչների դարն եւ Ռուբինեան հարստութեան ժամանակը: Այդ ուսումնասիրութեան նիւթն էր, նախապէս ասացինք, գլխաւորապէս ծանօթութիւնն հոգեւոր գրքերի, - թէպէտ ոչ միայն նրանց,- մանաւանդ կանանց մէջ, որոնց կոչումն իսկ ձգտում էր առ այն, որով եւ պիտի դաստիարակէին իրենց զաւակները քրիստոնէական կեանքի մէջ: Այդ սէրն յայտնել է հայուհու մօտ երկու ձեւով, ինքնին իսկ շարունակելով կարդալ ու զարգանալ, եւ խրախուսելով նրա տարածումը թէ իր ծննդոց եւ թէ ազգի մէջ:*

*Սկսելով մեր գրականութեան օրօրոցից՝ Ե դարից, հայ նշանագրերի գիւտն ուսման այնպիսի մի սէր արթնացրեց ազգի մէջ, որ ամբողջ բարեկեցիկ դասի մատաղ սերունդը հետամուտ եղաւ գրագիտութեան, առանց սեռի խտրութեան: Եւ ինչ որ Եղիշէն ասում է Վարդանի համար՝ թէ «տեղեակ էր իր մանկութիւնից սուրբ կտակարաններից*[1]*», այդ մասի մէջ «ուսանել եւ խրատուել էր» իր մեծ պապից՝ Ս. Սահակից*[2] *իսկ, հասկանալու ենք նրա բոլոր հասակակիցների համար: Նոյն պատմիչը յայտնապէս էլ վկայում է՝ թէ ժամանակի ազնուական տիկնանց, որ սերնդակից էին, եւ որոնցից ճանաչում էր իբր հինգ հարիւր հոգի ցրուած զանազան գաւառների մէջ, «մխիթարւում էին կատարելով մարգարէների ընթերցումը*[3]*», եւ սաղմոսներն՝ որ անգիր էին իմանում*[4]*. ինչպէս նրանց աքսորուած կենակիցներն էլ, իրենց վիշտն ամոքում էին կարդալով ու ուսումնասիրելով «եկեղեցու կտակարանը*[5]*» եւ որոնց հմտութեան իբր փաստ, Ղեւոնդն Աւարայրի մէջ շողոքորթում էր հայ զօրականին ասելով. «ինձանից աւելի տեղեակ եւ հմուտ էք սուրբ կտակարաններից*[6]*»:*

*Այդ բարձր աստիճանի վրայ էր ուրեմն հայ ուսումնասիրութիւնն Ե դարում, տոհմիկ եւ բարեկեցիկ դասակարգի մէջ, արանց եւ կանանց: Սրանցից «ամենայն լաւ եւ*

1. **Եղշ.** 81: — 2. **Փրպ.** 150: — 3. **Եղշ.** 157: — 4. **Աստ՝** 22-23: — 5. **Փրպ.** 330: — 6. **Եղշ.** 84:

մտաւոր մասերով», որովհետեւ ամէնից գերազանց թւել է Ղազարին, Մամիկոնեանց տիկին՝ **Զւիկ Արծրունուն**, որ քաջ տեղեակ էր եւ ինքն էր տւել իր դաստիարակներին «ուղղափառ հաւատի ծանօթութիւնը», որ անձամբ էլ փորձել ու վայելել էր պատմիչն ինքն[1], որ լաւագոյն կերպով գնահատել գիտցաւ այն: Նրա մեծանուն տագերօջ դուստրը՝ **Շուշանիկը**, կրթւած իր իմաստուն հօրից[2], որը տեսանք, նրա պէս գովւում էր իբր «ընթերցասէր, հանճարեղ, իմաստուն[3]» եւ իր տառապանքների մէջ ընկեր եւ ամփոփիչ ունէր մի Աւետարան[4]: Այսպէս եւ վտարանդի իշխանների վերոյիշեալ տիկնայք՝ «իբրեւ քաջայրս» դաստիարակեցին իրենց զաւակներն էլ, իրենք իսկ «ուսուցեալ» ինչ որ գիտէին եւ չիմացածը «բազում հոգատարութեամբ ուսուցանում էին[5]» մասնագէտներին:

1018-ի մի արձանագրութեան մէջ խօսում է մի **Մարիամ**, առանց այլ անւան, որ յայտնի է թէ ծանօթ մի դէմք էր ժամանակին, գրելով թէ «տւեցի իմ գիրքը» Նոր Թալինի Ս. Սարգիս եկեղեցուն[6]: Չենք իմանում ի՛նչ մատեան էր, բայց ակներեւ է թէ իր սիրածն ու կիրարկածն էր: Անցնում ենք դէպի ԺԳ դարն, ուր Գանձակեցին պատմում է Ներքին Խաչէնի առաքինակրօն իշխանուհու՝ **Մամքանի**[7] համար, թէ «ընթերցասիրութեամբ խոկում էր Տիրօջ պատւիրանների մասին առաւօտից գիշեր[8]»: Իր ճշմարիտ հետեւողն էր դուստրը՝ **Մամա խաթունը**[9], որ **Թագուհի** էլ կոչւել է[10]: Սրա որդին՝ Վախտանգը,- եւ հաւանօրէն ինքն էլ,- մի օր ներկայ էին Յոհան Երզնկացու մի քարոզին, որ խօսեց Տփղիսի մէջ (1284-ին) իր ամուսնու կառուցած եկեղեցու մէջ եւ նիւթն էր աստղերի շարժումները: Տիկինն այնչափ հրապուրւեց այդ քարոզից, որ զաւակին ձեռամբ խնդրեց վարդապետից, գրել եւ իրեն շնորհել այն եւ հասաւ նպատակին: Որով այդ տիկնօջ ուսումնասիրութեան ենք պարտում Երզնկացին ու մենք՝ նրա «երկնային շարժումների վերաբերեալ» գրութիւնն, որ հասել է մեզ[11]:

Մի խումբ կանայք ունենք նաեւ, որոնք «ստացող» են լինում գրչագիր մատեանների, ըստ յիշատակարանների, առանց չէշտելու թէ նրանք եկեղեցիներին կամ մենաստաններին են պարգեւել, ինչպէս ուրիշներն այդ պարագային յատկապէս գրում են: Հետեւաբար երբ նւիրումը չէ նշանակւած, մենք նոյն գրքերն իմանալու ենք իրենց անձնական գործածութեան համար: Յիշենք դրանցից մի քանիսը:

**Թամամ խաթունն** այն Աւետարանը, որի գրչութեանն օժանդակել էր[12], ուզեց իր ընթերցասիրութեան համար մի գործ կատարել եւ «չատ փափագով եւ խնդրւածքով եւ

---

1. *Աստ*՝ 93, 206: — 2. *Աստ*՝ 92: — 3. *Սոփ. Թ*, 31: — 4. *Աստ*՝ 164: — 5. *Փրպ*. 334: — 6. *Ալշ*. 141: — 7. *Աստ*՝ 161: — 8. *Կիր*. 147: — 9. *Աստ*՝ 103: — 10. *Շհխ. Բ*, 367: — 11. *Հյպ*. 512: — 12. *Աստ*՝ 204:

ամբողջ սրտով ստացայ» այն, ասում է[1]: Փահլաւունի Հեճուպ Զաքարիայի կենակիցը՝ **Խորիշահը**[2] մի Ս. Մատեան ունէր, որ «իմ Աւետարանն» է կոչում, այսինքն իր կիրարկածն, որ վայելելուց յետոյ, բարեպաշտ զգացումով նւիրում է Գանձակի Զարեքտար ուխտին[3]: 1358-ին «մի կին» **Թանկ խաթունը**, որ ազնւական չէր, «սրտի մեծ փափագով» մի Աւետարան է գրել տալիս (տեղն անյայտ է), որին նաեւ «ստացող» է լինում[4]: Ոմն՝ Յովհաննէս, 1448-ին ընդօրինակում է մի Աւետարան, որի «ցանկացողն էր եղել» ասում է, «համեստ եւ հոգեւոր մեր մայրը՝ **Թուրւանդա խաթունն**», որ այն «ստացաւ»[5]:

Բաղիշու մէջ 1453-ին «աստւածասէր կին **Մելիք խաթունը** ցանկացաւ» ու գրել տւեց մի Աւետարան ի յիշատակ ծնողներին, Ազնաւուր ամուսնու ու որդու[6]: Վարդան քհ. Վանի մէջ գաղափարում է երկու Աւետարան: Մէկը 1460-ին երկու «աստւածասէր եւ բարեպաշտ» կանանց համար, **Աղութ խաթունն** եւ **Շահզիշէնն**, որոնք «այս աստւածային մարգարտին ցանկացան» ասում է: Եւ միւսը յաջորդ տարին՝ **Մուղալ խաթունն** եւ **Շամշիդամար** քոյրերի համար, որոնք նոյնպէս փափագով ստացող են լինում «լուսափայլ մարգարտին[7]»: Արծկէի մէջ 1464-ին մի Աւետարան էլ գրւել է **Գուլշատ խաթունի** խնդրանքով, որ «փափագով» յանձնարարել էր[8]: Հուսկ՝ 1737-ին մի Աւետարան է նւիրւում «Մելիք Պաղուն կուսակրօն դուստրերին. **Հուրիսիմին** եւ **Դաւլաթին** եւ **Շահանդուխտին** ձեռքն ի վայելումն[9]»: Այս ուսումնասէրներն, ընդհանրապէս պարզ քաղաքացիներ, ինչ որ ուշադրութեան արժանի է, մեծ Հայաստանից կամ արեւելեան կողմից էին:

2.- Փոխադրւում ենք Կիլիկիայի մէջ, որի ժամանակագիրը խօսելով այդ Նոր Հայաստանի մտաւոր զարգացման մասին, շատ բարձր ու ծաւալուն ներկայացնում է այն, «լի եւ անթերի էր, ասելով, իմաստութիւնն ընդ այդ ժամանակն կիլիկեցիների աշխարհը, մինչեւ այնտեղ, որ կանայք եւս (ապա ոչ միայն ազնւականուհիներ) **գրում եւ ընթերցում էին**», շնորհիւ Ռուբինեան գահի իմաստուն առաջնորդութեան[10], որ իր գրկից հանեց ուսման խրախուսիչներ ու մի գրագէտ էլ, ինչպէս Թորոս Բ-ն, որ «տեղեակ լինելով ամենայն իմաստասիրական արհեստից[11]», մեր աշխարհիկ սակաւաթիւ մատենագիրներից մէկն էլ հանդիսացաւ, ինչպէս ասացինք[12]: Կարծում եմ,

---

1. *Հւք. յշտ.* 1313: — 2. *Անդ՝* 1313. *սստ՝* 122: — 3. *Ազ. հնդ.* 1913, *Բ*, 78: — 4. *Հւք. յշտ.*: — 5. *Նօտ.* 158: — 6. *Անդ՝* 171: — 7. *Արց.* 139: — 8. *Նօտ.* 218-19: — 9. *Արց.* 95: — 10. *Սիս.* 250: — 11. *Պատմ. Որբ.* 218: — 12. *Աստ՝* 101:

*որ Կիլիկիայի ազդեցութիւնն եղաւ նրա ժամանակակից արեւելեան հայ կանանց դասի մէջ ուսումնասիրութեան արծարծողն էլ:*

*Նոյն աշխարհի ուսումնատենչ հայուհիներից որոշները ծանօթ են եւս: Վարդան պատմիչը Հեթում արքայի համար յօրինում է քերականութեան եւ այլ խրթին գրքերի **Լուծումներն** եւ յղում է նրան, խնդրելով որ «զակնդ բազմագոյն եւ պայծառ թող թագուհին (Զապէլը) պահի եւ երբ պէտք լինի առնոյք ի նմանէ». որովհետեւ «արքան եւ արքայուհին, ասում է, ի միում մարմնի տեսանի, եւ հասարակ է (նրանց) հոգեւորն եւ մարմնաւորն. թէ Աստուծով իրք մի օգուտ լինի ի գրելոցդ կամ մխիթարութիւն, երկուսիդ լինի[1]»: Դիտաւորութիւնն էր, թէ Հեթումն աշխարհական հոգերով ծանրաբեռնուած լինելով, թագուհին աւելի հեշտութեամբ կարդալու եւ օգտւելու էր իր գործից, յանձնելով ամուսնուն երբ խնդրէր: Դրանով միանգամայն հաստատում էր Զապէլի սէրն ու հասողութիւնն այդպիսի գիտական հարցերի, որ ճանաչում ու մեծարում էր վարդապետին:*

*Լեւոնի դուստրը յարգել գիտէր ոչ միայն գրքերը, այլեւ գրողները, որոնց քաջալերում ու մեկենաս էր հանդիսանում, ինչպէս վկայում է նրանցից մէկը՝ Վահրամ վարդապետը: «Երանելի Զապէլ թագուհին, ասում է, որի ողորմութեանն եւ առատ պարգեւների որ առ ուսումնականներին պտուղ է մեր նւաստութեանն եւ վեհագունից քան զմեզ» եւ որի փոխարէն նրան մաղթում է անճառ բարութիւնները[2]:*

*Նոյն դշխուհու սրտախոց դուստրը՝ **Ֆիմին**[3], մօրը պէս «բարգաւաճ ըստ հոգու», ինչպէս սահմանում է հօրեղբայրը[4], իր մխիթարութիւնը որոնում է ընթերցանութեան մէջ: Նոյն արքեպիսկոպոսը գրում է ու նւիրում է «բաղձալին» նրան՝ Սողոմոնի եւ Յոբի գրքերը, «որով, ասում է, Աստւած եւ աստւածայինը խօսում էր միշտ եւ քո տրտում սրտի սփոփանքը սովաւ արասցես, գիտելով, զի սեփհական է մարդու նժդեհութիւն եւ պանդխտութիւն եւ փորձանք, որոց անդորր տացէ ձեզ՝ որ ամենահնարն է»[5]: Այդ գրքերն հասկանալու եւ զւարճանալու համար, մեծ ուշիմութիւն պէտք էր եւ եթէ Ֆիմին նրանց բաղձանքն ունէր յայտնի է թէ գիտէր եւ մարսելն: Այդ մատեանը, թանկագին թէ՛ գրողի եւ թէ՛ գործածողի պատճառով, փոքրադիր՝ մարգարտագիր եւ երկու նուրբ նկարներով, պահւում է Ս. Ղազարի մէջ:*

*Այդ տիկնոջ բարեպաշտ եղբայրը՝ Լեւոնն, եւս տեսնելով «որովհետեւ տրտում էր տամ Ֆիմին վասն վշտացն որ ժամանեցին նմա», մի Աւետարան էլ ինքն է ընծայում նրան «ի մխիթարութիւն եւ ի փրկութիւն հոգու[6]»: Սակայն բարեպաշտուհու*

---

1. *Հյպ.* 470: - 2. ***Ցչկ. Ա***, 136: — 3. ***Աստ***՝ 172: — 4. ***Աստ***՝ 160: — 5. ***Հյպ.*** 487: — 6. ***Հւք. յշտ.*** 1263:

իմաստախոյզ միտքը միշտ նոր սնունդ էր պահանջում: Այդ պատճառով հօրեղբայրն 1271-ին նրա համար գրել ւուեց Դիոնեսիոս արիսպագացու գործն էլ, որում խնդրում է յիշել «զիմաստութեամբ լցեալն եւ զամենայն բարեձեւութեամբ զարդարեալն ... զարքածին բամբիշն Ֆիմի» իր զաւակներով[1]: Արդէն Կիպրոսի կուսանոցի ազնւազարմ հաւատաւորների առաջնորդութիւնն[2], իսկ ապացոյց է իր բարձր զարգացման:

Ուսումնասիրութիւնը ժառանգական էր նոյնպէս Հեթումեան տիկնանց մէջ, որոնք ի միասին էին բերում այն կամ ստանում էին նոյն յարկի ներքեւ, յատկապէս Լամբրոնի մէջ[3]: Տարսոնի առաջնորդի կենսագիրը տեղեկացնում է՝ թէ նա «վարժւել էր մանկութիւնից՝ **իր մօր ջանքերով** հելլէնական գիրն, տենչմամբ որ առ նոսին իմաստութեամբն[4]»: **Շահանդուխտը** Պահլաւունու տան մի շաւիղն էր, որին բնտանի էր յունարէնը եւ որ գուցէ տիկինն էլ ճանաչում ու յարգում էր, որով որդու ցանկութիւններին էլ փութաց գոհացում տալ:

Նոյն Հեթումեանց ծնունդ ու սնունդ էր[5] «ամենաբարի եւ քրիստոսասէր տիկին **Աւիծը**» կամ «տամ Աւիծ երանուհի՝» իշխանուհին Պապեռոնի, որ գաղափարել է տալիս եւ «ստացող» է լինում հաւաքածոյ մի մատեանի՝ բովանդակող Աստուածածնի վերափոխման պատմութեանը, Սահակ Արծրունու առ Խորենացու թղթին ու պատասխանին, Յովհաննու «էր ընդ եղբարս» գրութեան մեկնութեանը նոյն տիկնոջ հօրեղբօր՝ Ներսէսէ, եւ այլն[6]: Որքան այլազան նիւթեր, գոհացնելու համար գրագէտ Բ Հեթումի դստեր ու մատենագիր Սմբատի մօր[7] ուսումնատենչ հոգուն:

Նոյն տիկնոջ հօրաքեռորդին էր **Մարիամ** հաւատաւորը[8], որի համար էլ եղբայրը՝ Ներսէսն, ընդօրինակում է իրենց մեծ քեռու՝ Տարսոնի արքեպիսկոպոսի պատարագամեկնիչը, եւ նրան ընծայում է հետեւեալ գեղեցիկ խօսքերով, որոնք յայտնում են օրիորդի ջերմ ուսումնասիրութիւնը. «Աստուածային իղձս փափագանաց պատուականագունից ինձ՝ գիտելով միշտ ի տէրունականսն», այս ընծայում եմ քեզ, ասում է, իբրեւ «ուրախացուցիչ» մի նւէր, որը մեծ աշխատութեամբ գաղափարեցի, եւ «քեզ որպէս սփոփանք ընձեռեցի, իմանալով (այս) պատուականագոյն քեզ քան զորովք քամահրեցեր (հրաժարւելով աշխարհից), ոսկուց եւ պատւական զաւակներից եւ զորս նոյնպիսի[9]»:

**Թեւանուն**, արժանաւոր պատւասար նոյն տոհմին[10], 1274-ին տեսնում է «Բանք Վարդանայ եւ Մխիթարայ Հայոց վարդապետաց» կոչւած զանազան ՝վիճաբանական

1. Հյպ. 486: 2. Աստ՝ 172: - 3. Հմմտ. աստ՝ 94, 100: 4. Պատմ. Լմբ. 228: 5. Աստ՝ 64: 6. Տաղ. Ցցկ. 834: 7. Աստ՝ 94, 100: 8. Աստ՝ 173: 9. Սիս. 95, ծն. 3: - 10. Աստ՝ 68:

*գրւածը: Հրապուրւում է եւ օրինակել է տալիս «քաղցրահամ եւ բարեճաշակ հոգեւոր այս պտուղն, ասում է գրիչը, ի մխիթարութիւն աստուածասիրաց անձերի». բայց նախ իրեն, որ նրա «ստացող» եւ առաջին վայելողն եղաւ*[1]*: Մարիամն ու Թեւանուն երկուսն էլ հաւատաւորներ, առիթ են ընձայում մեզ չեչտելու թէ առհասարակ հայ կուսանոցների մէջ որչափ մեծ էր ընթերցումն հոգեւոր մատեանների, որոնք նրանց անհրաժեշտ ու սփոփիչ ընկերներն էին:*

*Բերութի տիկինն* ***Ալիծը****, դուստրը նոյն Թեւանուի*[2]*, ունէր մի սեփական Աւետարան, որը* 1287*-ին փոխ է տալիս Կիպրոսում բնակւող մի գրչի, եւ նա ընդօրինակում է, խնդրելով յիշել «տիկին Ալիծին, որ օրինակը շնորհեց»*[3]*: Ստ. Գոյներ երիցանց* 1310*-ին գաղափարում է Առաքեալների թղթերն էլ «հրամանով (նոյն) աստուածասէր եւ բարեպաշտ պարոնի տիկին Ալիծի, մօր կողմից հայոց թագաւորների (Լեւոնի որդիների*[4]*), իրենց կեանքի մխիթարութեան համար», որքան ժամանակ որ ապրում էր, եւ իրենից յետոյ «ի յիշատակութիւն իր հոգու»: Նրա առաջին Աւետարանն անդադար գործածութիւնից գուցէ մաշւած (կամ նւիրւած), նոյն գրչին* 1312*-ին նոյն կզզու մէջ օրինակում է մի ուրիշն էլ «հրամայական խնդրի համար» միեւնոյն «տիկին Ալիծի սենեճալեսի Կիպրոսի*[5]*»: Քոյրն է* ***Գեռանի****, որի եկեղեցի յաճախելն եւ ընթերցւածների ուշադրութեամբ հետեւելը նախապէս տեսանք*[6]*:*

1221*-ի մի Աւետարանի մէջ յիշատակւում է «աստուածասէր եւ ամենբարի տիկնոջ Աւիծը», դուստրը հանգուցեալ «սիր Պաղտնոյն» եւ դեռ կենդանի* ***Շուշանի***[7]*: Իր հօր անւամբ ծանօթ են երկու անձինք, մէկը Մարաշի եւ Քեսնոյ տէրն, ընկած* 1147*-ի մարտի մէջ*[8] *եւ միւսն սպարապետ մեծն Լեւոնի, որ Հ. Ալիշանը համարում է «թերեւս եւրոպացի*[9]*», եւ որ* 1188*-ին մեռնում է նոյնպէս կռւի մէջ*[10]*: Շուշանը եթէ առաջինի կինը լինէր,* 1221*-ին, որ ամուսնու մահից* 74 *տարի էր անցել, դժւար կարող լինէր դեռ ապրել: Ուրեմն երկրորդի կենակիցն էր, զուտ հայ, նոյնպէս դաստիարակած իր դուստրն էլ, որ յայտնի չէ, որի հետ էր կապել կեանքը: Մեծ գրասէր էր այդ Աւիծը, որ «յետ ստացելոյ բազում տառից հին եւ նոր կտակարաններ, յաւել եւ զսա (Աւետարան մը), ասում է գրիչը. ի գանձս աստուածայինս*[11]*», իր օգտին, գուցէ եւ ուրիշների:*

*Լամբրոնացու գեղեցիկ Աւետարանն աւար են տարել ու գնւած տեսանք այլազգի* ***Յոհի*** *կողմից*[12] *«յիշատակ իմ հոգու եւ իմ ծնողների», գրում է ինքն, առանց ասելու՝*

---

1. *Հւք. յշտ*: — 2. *Աստ՝* 68: — 3. ***Հւք. յշտ***: — 4. *Աստ՝ ԺԸ, Ա, ա,*7: — 5. ***Հւք. յշտ***: — 6. *Աստ՝* 114: — 7. *Աստ՝* 193: — 8. ***Հյպ.*** 368. *Զմչ. Գ*, 67: — 9. ***Մխ.*** 444: — 10. *Անդ՝* 330: — 11. ***Հւք. յշտ***: — 12. *Աստ՝* 206:

թէ այն ընծայել է մի ուրիշ սրբավայրի: Կարող ենք եզրակացնել՝ թէ իր գործածութեան համար պահել է այն: Այսքան ընդարձակ էր ուրեմն մտաւոր մշակոյթը նաեւ Կիլիկիայի հայուհիների մէջ:

3.-Մենք այստեղ թւարկեցինք ընթերցասէր հայ կանանց անունները միայն: Բնական է հարցնել՝ թէ դրանց մէջ մատենագիրներ էլ չե՞ն եղել արդեօք: Ազգերի պատմութիւնն առհասարակ դժւարութեամբ են ցոյց տալիս այդպիսիներին, որովհետեւ մայրական եւ ընտանեկան պարտականութիւնները թոյլ չէին տալիս նրանց նւիրւելու գրականութեան, որով կարողանային նաեւ շարագրել: Դրանով հանդերձ հայերս կարող ենք մատնանշել մեր ցանցառ գրիչներն էլ: Ծանօթ է **Սահակդուխտը**, հաւատաւոր եւ ուսուցիչ հոգեւոր երգերի Ը դարում[1], որ աւելի յառաջ էլ գնաց եւ եղբօրը պէս շարագրեց «կցորդս եւ մեղեդիս քաղցր եղանակով», որը Սիւնեաց պատմիչը տեսաւ ԺԳ դարին եւ դրանցից մէկն էր «**Սրբուհի Մարիամ**, որ նրա անունով է յօրինւած[2]», ասում է, այսինքն տնագլուխ տառերն իր անւանն էին կապում եւ որ այժմ անյայտ է: Ունենք, սակայն, շարականի երկու ցրւած տներ՝ առանց յատուկ պատկերի եւ նւիրւած Աստւածածնին, ինչպէս յիշւածն էր: Մէկը կցւած Ս. Նիկողայոսին եւ միւսն Առաքելոց շարականներին, որոնց հետ բնաւ կապ չունեն իմաստով եւ նրանց կանոնաւոր եռեակ տները չորսի վերածւած են, զգացնելով իրենց յետամտութիւնը, միանգամայն խառնւած են խաղաղական ժամերգութեան քաղւած շարականների մէջ: Բացի այս՝ երկու տներն էլ ունեն նոյն եղանակը, չափն ու վերջաւորութիւնը, եւ առաջինը՝ պատմիչի նշանակած սկզբնական զոյգ բառերն էլ: Այս բոլոր հանգամանքները թոյլ են տալիս մեզ այդ երկու տները Սահակդուխտի շարականի մասերն համարել եւ նոյնիսկ նրա բարդ անւան երկու սկզբնագրերը՝ Սահակ - Դուխտ: Մասերը՝ ասում եմ, որովհետեւ երկտուն շարական չունենք: Ահա այդ տները, որ իմաստով էլ գեղեցիկ են:

«Սրբուհի Մարիամ, սափոր ոսկի եւ տապանակ կտակարանաց, որ ի վերուստ կեանքի հացը պարգեւում է քաղցած բնութեան. նրան միշտ բարեխօսիր մեր մեղքերի քաւութեան համար: - Անմարմին հրեշտակները քեզ երանի են տալիս, ամենաօրհնեալ կոյս Մարիամ, էակից բանն որ ընդ Հօր՝ կրեցիր քեզ մէջ անսերմնապէս նրան միշտ բարեխօսիր մեր մեղքերի քաւութեան համար»:

Հ. Գ. Աւետիքեանը գրել էր՝ թէ Վահան գողթանցու շարականի հեղինակն է եղել «անգիր աւանդութեամբ» նրա քոյրը[3], որին յարեց եւ Հ. Ալիշանը, եւ քոյրը մկրտեց

1. *Աստ*՝ 174, 207: — 2. *Օրբ*. 101: 3. ***Բցա. չրկ.*** 592, որի գոյութիւնն պատմութիւնը չի յիշել:

«**Խոսրովիդուխտ**» անունով[1]: Այդ ամէնը փափագի եւ ենթադրութեան արդիւնք են միայն: Իսկ մեր այժմեան գրիչներն այնչափ յեղյեղում են այդ անունը, որ դրա գոյութիւնը քան այդ կերտողներին աւելի ապահով է դարձել, որպէսզի աւանդութիւնների չափազանց փարողները համոզուեն, թէ ինչպէս նրանք կարող են նաեւ ոչնչից ստեղծուել եւ իրենք ոչնչի փարուել:

Բայց ունենք եւ ըստ բաւականին նկատի առնուած չէ, ոչ միայն ուսումնասէր այլեւ հմուտ գիտնական մի տիկին էլ Բագրատունեաց տնից,- այն տոհմից որ տուել էր եւ այժմ անյայտ երկու մատենագրեր: Շապուհ պատմագիրը ու Մուշեղ բանաստեղծը[2].- այն է բարեպաշտութեամբ ու գործունէութեամբ էլ անուանի **Մարիամը**, դուստրը մեծն Աշոտի[3], որ երեւում է թէ Սիւնեաց տիկնութեան գահից առաջ աչքերը սեւեռած էր իր հայրենի **գրանոցին**,- որ 1041 թւին այցելում է ու յիշում է Սարգիս վրդ. սեւանացին[4],- եւ այնտեղ հարստացրել էր միտքը, որի ապացոյցը կայ հետեւեալ դիպուածի մէջ:

Տարօնի իշխանը Բագարատի խնդրանքով՝ ասորի Նանա սարկաւագ Յովհաննու մի մեկնութիւնը շարադրել էր արաբ լեզւով, որ նոյն տիկնոջ եղբայրը՝ Սմբատը, հայացնել տուեց: Իրենց հանճարեղ հայրը տեսաւ այն եւ պէտք զգաց քննութեան ու չվստահելով իր կամ ուրիշ գիտնականների դատաստանին, խորհեց, որ նրա լաւագոյն դատաւորը լինելու էր իր մտավարժ ու բարգաւաճ դուստրը, - որի տաղանդը յարգում էին հարազատներն էլ,- եւ այն յղեց Սիւնիք: Մարիամը, որ երեւում է թէ արաբագէտ էլ էր, կարդաց ու չսիրեց կատարուած թարգմանութիւնը, նրա հաւատարմութեա՞ն կամ թէ հայ լեզւի՞, չգիտենք: Եւ «Ուշադրութեամբ հոգ տանելով անմիջապէս հրամայեց երկը փոխել հայկական լեզւի, առաջնորդութեամբ վերին խնամքի», գրում է թարգմանիչն իսկ: Սա վկայում է նաեւ նոյն տիկնոջ խնամքը քրիստոնէական վարդապետութեան մասին, «**յարդարի**, ասելով, **համառօտաբար աստուածային բարձրագոյն հաւատը**», ինչ որ հասարակ իմաստով նշանակում է, քրիստոնէական վարդապետութեան մի համառօտութիւն, որով եւ ցանկալի մի աշխատութիւն Մարիամի գրչից, դրանով ցոյց տալով «խնամքը միամիտ հաւատն ի Քրիստոս», որ «վերագոյն» կամ շատ բարձր ըմբռնում ու մեծարում էր[5]: Նանայի բնագիրն ու Սմբատի թարգմանութիւնն անյայտացած եւ Մարիամի հայացնել տուածը մնաց ու հասաւ մեզ, բայց դժբախտաբար ոչ նրա շարագրութիւնը, եթէ ճիշտ ենք իմանում նրա մասին ասւածը:

Կայ նոյն տիկնոջ ուրիշ անազան մի անուանակից էլ, **Մարիամ Քարաքաշեան** կոստանդնուպոլսեցի «կուսանունդ» օրիորդը, ընտանեօք հաստատուած Վենետիկում եւ

1. **Ցչկ. Բ.** 135-6, 175: — 2. **Արծ.** 205: — 3. **Աստ՝** 59: 4. **Շիր.** 50: - 5. **Հյպ.** 267:

հայրենի տան մէջ ուսման նուիրւած: Սա 1782-ին հրատարակել է նոյն քաղաքի մէջ **Ակն Հոգու** կոչւած մատեանը 15 էջով, բովանդակելով հոգեւոր հրահանգներ ու քրիստոնէական վարդապետութեան ծանօթութիւններ: Նոյն ուսումնասէր ու զարգացած օրիորդը թարգմանել է իտալերէնից նաեւ Հ. Պօղ. Սենիերեայ քառասնորդական քարոզներն՝ 1742 թւականին. գրաբար լեզւով ստւար մի գործ՝ 791 մեծադիր էջով, որի ձեռագիրը մնում է Ս. Ղազարի մատենադարանի մէջ: Իր լեզուն ժամանակի արւեստական աղաւաղւած հայերէնն է, որին իբր օրինակ յառաջ եմ բերում մի քանի տող. «Երեւին Նարդեանս բազում կերպք քարոզելոյ ներածեալք ի յաշխարհի. ոչ գիտեմ եթէ ի հանճարեղ համահաճոյութենէ այնմիկ, որ խօսի. կամ թէ ի յանչատացմանէ այնմիկ՝ որ ունկն դնէ. թէ վերջապէս, ո՛վ ընթերցող. դու ոչ երբեք կամիցէիր սկսիլ առ ի վաստակեցուցանել զաչս քո ի վերայ թխթայ. եթէ նախ ոչ յոյժ բարուոք գիտիցես յինէն՝ թէ որն իցէ առաջադրեալ ինձ» եւ այլն:

4.- Գրասէր ու գրող հայուհիներից զատ կայ մի դասակարգ էլ, որ իրենց ուսումնասէր հոգուն ապացոյցը տւել են, օժանդակելով գրչագրերի բազմացմանն եւ կառուցելով ու ճոխացնելով մատենադարանները, օգնելու եւ խրախուսելու համար ուսման ուրիշ սիրողներն ու հետեւողները: Կառուցման օրինակը տեսանք Վաչուտեան Քրդի ու **Խորիշահի** գործի մէջ[1]: Իրենցից յառաջ այդ իշխանի ծնողները՝ Վաչէն ու **Մամա խաթունը**, 1228-ին Հոռոմոսի վանքի «գրատանը» ընծայել էին իրենց գանձագին այգին իբրեւ եկամուտ[2]: Իսկ 1274-ին Սանահինի ուխտի «գրատանը» բարերար են լինում ոմն Սոսթենէս եւ ամուսինը **Խաթուն**, պարգեւելով իրենց գնած այգին[3]:

Դրանցից մի դար առաջ՝ 1197-ին, Հաղբատի մէջ եւս մի արձանագիր յիշատակում է չորս այգիների նւէրը նոյն մենաստանի «գրատանը» նոյնչափ անձերի կողմից, միացած միեւնոյն արձանագրի մէջ են՝ Արամ որդի Համազասպի. Կուտ. Սարգիս որդին Զխին, եւ մի կին «Ես **Միրամարս** իմ այգին տալիս եմ» ասելով[4]: Այսպէս եւ այլ երկու ամուսիններ՝ Ախատէյն եւ **Բուզուքանը**, անթւական արձանագրութեամբ մի այգի եւ մի տուն են ընծայում նոյն ուխտի «գրատանը»[5]: Բոլոր սրանք, կրկնում եմ, սիրող ու քաջալերողներ էին ուսմանց, որ իրենց յարգը միշտ պահել են, ոչ միայն արանց, այլեւ կանանց դասի մէջ եւ չատ ընդարձակ չափով:

---

1. Աստ՝ 235: — 2. Ն. Սրգ. 162: — 3. Ջալ. Ա, 34: — 4. Երգ. 49. Նոյն անունն 1329-ին **Միրամայր** գրւած է ուրիշի վրայ. Ջալ. Ա, 124: 5. **Հյկր.** Դ, 379:

## ԳԼՈՒԽ ԺԳ

### Արուեստների մէջ

Հայ կնոջ գործունէութիւնը տարածւում էր նաեւ զանազան արուեստներում, որոնցից ոմանք արդէն կապւած էին իր կոչման եւ տնային պարտականութիւնների հետ եւ մաս էին նրա հանապազօրեայ կենցաղական զբաղմունքներին: Իսկ միւսներին յարել է ազատ ընտրութեամբ, երեւան բերելով իր ճարտարութիւնն ու ճաշակն ամենի մէջ: Դրանք էին ոստայնանկութիւն, դերձակութիւն, ասեղնագործութիւն, թափչութիւն, խոհարարութիւն եւ աւելի նրբերը կամ մտաւորները՝ գրչութիւն, երաժշտութիւն եւ վարձակութիւն կամ բեմական արուեստ, որ պիտի տեսնենք կարգով, ջանալով միանգամայն որոշ ու կարճ ծանօթութիւններ տալ նոյն արուեստի մասին, ինչպէս մեր նախնիների օրով էին:

1.- ***Ոստայնանկութիւն***. - Սովորաբար կանանց յատուկ է եղել միշտ եւ ամէն տեղ[1] ***կտաւը*** (համանուն բոյսից), ***բեհեզը*** (դրա նուրբը), ***ասուին*** (բրդեղէն), ***կերպասը*** (մետաքսեղէն) կամ որեւէ տեսակ պաստառ չինելու գործը: Իր սովորական կոչումն էր ***ոստայնանկութիւն***[2] եւ բայով ***ոստայն անկանել***[3] կամ ***ոստայնանկել***[4] կամ լոկ ***անկանել***[5] կամ ***հենուլ***[6]:

Գործողութեանս առաջին մասն էր ***տարազագործութիւնը***[7] կամ ***սառարութիւնը***[8], որ ***թելի*** պատրաստութիւնն էր, նոյնպէս կանանց սեփականութիւն[9] էր եւ որի համար պէտք էր ***գզել***[10] նրա հարկաւոր նիւթը, ապա ***սանդրով պարզել***[11] կամ զտել այն ***խծուծից***[12] կամ անպիտան մասից, որի կատարողները լինելու են ***տարազագործեր***[13] կամ ***սառարք***[14] կոչւածները եւ վերջը վերածել թելի: Մինչ այս գործածւում էր ***աղեկատը***[15] կամ ***մանոցը***[16], որ էր ձողաձեւ գործին, որի վրայ փաթաթւած էր կտաւի կամ ուրիշ նիւթերի ***կծիկը***[17], եւ ուստի աշխատողը քաշելով թելը ***մանէր***[18] կամ ***նիւթէր***[19], օգնութեամբ մետաղեայ կամ ուրիշ ծանր նիւթերից շինւած[20] ***իլիկը***[21] կամ ***իլիկն***[22], եթէ

---

1. *Յոբ. ԼԸ*, 36. *Վցր*. 177. *Ոսկ. Պօղ. Ա*, 806 եւն: — 2. *Ելք. ԼԵ*, 35. *վցր*. 12: - 3. *Ոսկ. Պօղ. Ա*, 806: — 4. *Ոսկ. Մտթ. Բ*, 705: – 5. *Սբր*. 46. *Վցր*. 12, 177: – 6. *Եփր. Դ*, 16: — 7. *Ոսկ. Պօղ. Ա*, 815. յն. ասրագործութիւն: — 8. *Պղ. Օր*. 248. յն. նախորդին պէս: - 9. *Վցր*. 177: — 10. *Եփր*. պհց. ուստի *բրդգզեալ* ածականն յՈսկ. Պօղ. Ա, 210: 11. *Եփր*. ապշ. ի Հյկ. Բ, 694: — 12. *Դատ. ԺԵ*, 14 եւն: - 13. *Ես. ԺԹ*, 10. *Փառ. արգ*. 8: 14. *Ես. ԼԸ*, 12: — 15. *Անյղ*. 618: - 16. *Փիլ*. 130. *Ալաւ. ՂՋ*: - 17. *Ա Թագ. ԺԹ*, 13: — 18. *Ելք. ԼԵ*, 26. *Վցր*. 177: — 19. *Ելք. ԼԵ*, 6, 25 եւն. *Սբր*. 46: — 20. *Դրմբ. Բ*, 1424: 21. *Առակ. ԼԱ*, 19: - 22. *Ալաւ. ՂՋ*:

թելը նուրբ էր եւ փայտեղէն **քարամանին**[1] կամ մեծ իլին (դեռ մեզ ծանօթ իր խաչաձեւ թեւերով), եթէ թանձր էր եւ պատում էր նրա վրայ: Այս գործն է, որ իմանում էր Դաւիթ գանձակեցին ասելով «մանոցն մի թել գցիր եւ տայ մի ուրիչն իլիկով[2]»: Իսկ երբ ուզէին «ոսկեման»[3] կամ «ոսկեթել»[4] պաստառներ գործել, թելը զուտ ոսկուց էին պատրաստում, խառնուած ուրիչ բուսական մի թելի հետ[5]:

Յաջորդում էր արւեստի աւելի կարեւոր մասը, բուն ոստայնանկութիւնը, որի նկարագիրը գտնում ենք Ոսկերերանի մօտ[6] եւ համառօտ կերպով նաեւ Դ. Գանձակեցու[7] ու Մխիթար Գօշի[8], որոնցից կազմում եմ հետեւեալ նկարագրութիւնը: Կայ նախ **ոստայնի գործիքը**[9] կամ կազմածը, որ փայտեղէն էր ու պարզ. յօրինուած քառակուսի մի շրջանակով[10]: Նրա երկուստեք բարձրանում էին **կայմքն**[11],- այսպէս կոչուած նմանութեամբ նաւի նոյն մասերի,- որ կողմնական ուղղահայեաց երկու գերաններ էին, հաստատուած գետնին եւ ստորեւ ու վերեւ բռնուած ուրիշ երկու խոտորնակ եւ աւելի կարճ գերաններով եւ երբեմն էլ առաստաղին կպած: Վերին կողմը գտնւում էր **ստորին**[12] կոչուած թաւալուն ստւար գլանը,- ամրացուած մի ձողիկով,- որի վրայ փաթաթւում էր գործուած կտաւը կամ **ոստայնը**: Իսկ **առէջը**[13] կամ թելերի խուրձը վարից վեր բարձրանում էր կրկին կարգով, առաջակողմից ու յետակողմից եւ ստորոտից քաշւում էր ու պիրկ բռնւում էր ծանրոցներով: Հաւանօրէն իր թելերը **տորք** էին կոչւում ինչպէս սարդի ոստայնինը[14]: Գործի կենտրոնը գտնւում էին երկու խոտորնակ երկար ձողեր՝ **ազբոյք** անւամբ[15],- առէջի ծայրից, որ **ազբն** էր ասւում եւ մի տեղ ամբողջ առէջն էլ նշանակելով[16],- դրուած իրար մօտ ու խրուած առէջի զոյգ եւ անզոյգ թելերի միջեւ եւ այդպէս բաժանելով նրանք իրարից: Այս ձողերի մօտ կատարւում էր հենումը:

**Ոստայնանկն**[17] ընդհանուր անունով եւ մասնաւորապէս **կտաւագործը**[18] կամ **կերպասագործը**[19], նստում էր գործի առջեւ, ոտից ներքեւ մի **պատուանդանով**[20]: Ազբոյներից մէկը կամ միւսը փոփոխակի իրեն էր քաշում, մի անցք բանալով առէջի թելերի միջեւ եւ աջից դէպի ձախ ու ձախից աջ գցում էր, **կկոցը**[21] կամ մագոքը: Անաւարգացիից **բարար** էլ կոչուած[22], մերձաւոր այժմեան ձեւի եւ սովորական ոսկորից

---

1. Եպիփ. ծննդ. ի Հյկ. Բ, 996: 2. Ալաւ. ՂՋ: 3. Ա Տիմ. Բ, 9: 4. Խոր. Բ, կ: -- 5. Դրմբ. Ե, 164-69. Վիգ. Ե, 2246: – 6. Ոսկ. Պօղ. Ա, 806: - 7. Ալաւ. ՂՋ: — 8. Մխ. Առկ. ՃԿԴ: 9. Ոսկ. Մտթ. Բ, 24: 10. Դրմբ. Ե, 164-69: 11. Ոսկ. Պօղ: 12. Բ. Թագ. ԻԱ, 19: 13. Զեւտ. ԺԳ, 48-59: 14. Վցր. 121: — 15. Ոսկ: - - 16. Վկք. Ա, 516: - 17. Վցր. 12. Ա Թագ. Ժէ, 7 եւն: - - 18. Ես. ԺԹ, 9: 19. Վցր. 177: — 20. Մխ: — 21. Ոսկ: - - 22. Աստ՝ ԺՁ, 6:

չինուած. իր մէջ թաղուած ունենալով հիւսող թելը[1] կծիկը, ճախարակի վրայ: Եւ այս գործով **կկէր**[2] կամ հիւսում էր կտաւը: Ստէպ վերցնում էր **հոծիչը**[3] կամ **սանդրը**[4], որը անջատ էր մեքենայից, չափաւորապէս երկար, եւ վերեւը մի բռնատեղով, հարուածելով դէպի ի վեր, **հոծում**[5] կամ խտացնում էր հիւսուած թելերը: Եւ այսպէս հետզհետէ առէջը խառնելով **թեզանիի**[6] հետ, ինչպէս կոչւում էր խոտորնակ թելերի կարգը, կազմւում էր ոստայնը, որ թելերի նրբութեան չափով կարող էր լինել «բարակաման»[7] կամ «թանձր»[8]: Կար եւ տափարակ ու ծանր մի փայտ, որով խփում էր առիջին, նրա թելերն աւելի եւս **հոծելու** կամ ձգելու համար[9] եւ այս իսկ մեզ մօտ **սանձ** էր կոչւում: Պատահում էր, որ այն չարժելու միջոցին «ազբոցն եւ ստեծն ի ստէպ հոծելուն ընդ միմեանց բախւում են»[10], ապացոյց՝ թէ գործածութեամբ իրար մօտ էին, որով Գօշի կտաւագործն էլ ասում է, թէ «զստեծ իբր զսուր վերացուցանեմ» եւ Գանձակեցին, թէ «ոստայնանկ մի թել է քաշում եւ կկոցում է, եւ **բրճաւն** երիս հարկանէ» ուր բէճ՝ ստեծին միջնադարեան կոչումն է:

Այս արուեստի արտադրութիւնները զանազանում էին նրբութեամբ եւ յարգով: Ոսկեղարը՝ **կտաւի, բոհեզի, ասուի** ու **կերպասի** հետ, որ վերեւում յիշեցինք, ունէր նաեւ **սնդուսը**, որ կերպասի նուրբ տեսակն էր եւ աւելի բարակն էլ՝ **շղարը** կամ **տեռը**, եւ միասին **շղաշատեռ** կոչուածը. **ճամուկը** կամ գոյնզգոյնը, որ եւ **ճաճանաւուխտը**, նոյնպէս **դիպակը** կամ սրա **զառնաւուխտ** հոմանիշը, որ յատուկ էին ոսկեհիւսին. եւ **ճեղանակն** անծանօթ է ըստ տեսակին[11]: Մեր պաստառներն գրաւել են վենետիկցի ուղեւորի՝ Մարկոս Պոլոյի, ուշադրութիւնը, որ 1271 թւին տեսաւ Կիլիկիայի մէջ պատրաստուած «բոլոր դեղորէից եւ մետաքսեայ պաստառների եւ դիպակների» Այասի մէջ բերուել եւ թափուելը, ուր դիմում էին վենետիկցի ու ջենովացի վաճառականները: Ասում է, թէ մեծ Հայաստանի Երզնկայ քաղաքի մէջ եւս «գործւում է աշխարհի լաւագոյն ծաղկանկար դիպակը[12]»:

2.- **Դերձակութիւն**. - Պաստառի պատրաստելուց յետոյ, պիտի վերածուէր զգեստի եւ ուր զգեստ կար, կարողն էլ անպակաս էր: Այս ինքն յատուկ արուեստագէտ էր, որովհետեւ այն ամենի գործը չէր: Հայաստանն եւս ունէր իր **դերձակները**[13] կամ **հանդերձարարները**[14]: Հայ տիկնոջ եւ մանաւանդ օրիորդի մեկուսացեալ կենցաղը[15] չէր թոյլատրում, որ այր դերձակները մտնէին նրանց յարկերից ներս, ձեւէին՝ կարէին ու

---

1. Ոսկ: — 2. Նոյն. Ազթ. 205. Ալաւ. **կկոցել**: — 3. Ոսկ: — 4. Մխ: — 5. Ոսկ: — 6. **Չեւա**. ԺԳ, 48-59: — 7. Վցր. 121: — 8. Փրպ. 83: — 9. Դրմբ. Ե, 167: — 10. Ոսկ: — 11. Հմմտ. **Գամ. արզ**. 136-38: — 12. Մարկ. 15, 16: — 13. Ոսկ. Պող. Ա, 848. յն. չունի: — 14. Ցճխ. 40: — 15. Աստ՝ Բ, 2, 3:

հագցնէին: Հետեւաբար այդ գործը կատարում էին իրենց սեռակիցներն իսկ, եւ նրանք միայն կարող էին ըմբռնել ու գոհացնել նրանց ճաշակի պահանջները: Դերձակութիւնն ուրիշ բան չէր, բայց եթէ զգեստների պատրաստութիւնն՝ ըստ սովորութեան իւրաքանչիւր ժամանակի որում ապրում էին հագնողներն ու կարողները: Ուրեմն այն նկարագրելու համար, մենք ստիպւած ենք երկրորդել այստեղ հայ տարազի ընդարձակ պատմութիւնը, որ ես արդէն կատարել եմ առանձին հատորով, որով կրկնութիւնը ծանր եւ անպատեհ է լինելու: Ուստի այստեղ մեր նախապէս տւած մասնական նկարագրութեամբ[1] ու նկարներով, որոնք փոքր ի շատէ մի գաղափար են ընծայելու արդէն հայ դերձակութեան նրբութիւնների մասին:

Եթէ ազնւական կամ մեծատուն հայուհին իր ճարտար սեռակիցներին կարել էր տալիս իր հանդերձը, չինական ոչ ճոխ կինն էլ իհարկէ անձամբ էր պատրաստում իր եւ զաւակների պարզ հագուստները: Այդ դասակարգի համար կարող ենք ասել, թէ ամէն մայր իր տան դերձակն էր, ինչպէս այժմ է: Այո, մարդկային կենցաղական պահանջն ու ձեւերը նոյն են եղել միշտ իրենց ընդհանուր գծերի մէջ: Եւ ով էլ լինէր այդ գործ կատարողը, պէտք ունէր ու գործածում էր երկաթեայ մի ***ձեւիչ***[2] կամ ***մկրատ***[3] կտրելու եւ ձեւելու համար կտաւը կամ պաստառը, նոյնպէս հին եւ ուղիղ գրութեամբ ***ասեղը***[4] մետաղեայ նուրբ իրը կարելու համար, իր ետեւը մի ծակով[5], որից անցնում էր ***ասղանին*** կամ ***ասղենին***[6], որ թելն է:

3.- ***Ասեղնագործութիւն***. - Մասն էր դերձակութեան, նրբագոյն ու դժւարագոյն, որ տարածւում էր ոչ միայն հանդերձների, այլ նաեւ տան ու եկեղեցու կարասիների ու զարդերի վրայ, որում անհրաժեշտ էր կնոջ նուրբ ու համբերատար մատների գործակցութիւնը:

Շատ հին է քաղաքակիրթ ազգերի եւ մեզ մօտ եւս ***ասեղնագործութիւն*** կոչումը, տրւած արւեստին[7], որովհետեւ նրա մէջ գլխաւոր դերն ասեղինն էր եւ կարւածը ասւում էր ***ասեղնագործ***[8], որի տեսակին տւել է ընդհանուր ***չինուածոյք*** անունն էլ[9]: Ասղանին ոստայնանկի ձեռքն հասնելուց առաջ, ընդունում էր իրեն սահմանւած գոյնը ***նարօտաներկերի***[10] կողմից, որի ***նարօտ*** արմատը նշանակում էր գունաւոր պաստառ[11]: Ներկերը կարեւոր էին նաեւ ոստայնանկին, որ ըստ տեղին գործածում էր զարդեր կարելու ասեղնագործ պաստառի վրայ, որով ասեղնագործութիւն ու

---

1. Աստ՝ 139: – 2. ***Վրք. հրնց.*** եւ Պրոկղ ի Ղկ. ի ***Հյկ***: — 3. ***Գանձ.*** ի ***Հյկ***: — 4. ***Մտթ. ժթ***, 24: – 5. Դրմբ. Ա, 61: — 6. ***Թիւք. ժե***, 38. Մնղ. 191: — 7. ***Եզկ.*** ԼԸ, 23: — 8. Անդ՝ իէ, 16: 9. Ոսկ. Պօղ. Ա, 68: — 10. Սրր. 155. Վցր. 102: – 11. Ագթ. 571:

**Նկարակերտութիւն**[1] միասին էին լծուած: Յովհաննէս կթղ. պատմում էր «նկարակերպ կանանց ոստայնանկութիւնների բազում բազմականս[2]» կամ նստելու բարձեր շինելը: Սմբատ Ա. արքան՝ Յուսփից ընդունուած պարգեւների փոխարէն տանում է «նկարակերպ կազմուած բազմականաց որդան կարմրութեամբ[3]», որ յարգի էին որդան կարմրով հիւսուած կամ ներկուած: Այդքան պատուական էին ուրեմն այդպիսի աշխատութիւնները հայերի մէջ, շնորհիւ հայ կնոջ ճարտարութեան: Նոյն արուեստի արդիւնքն էին նաեւ «ծիրանածաղիկ ոսկեթել նկարագործ անկուածք» կամ հիւսուածք՝ որոնցով **Կատրանիդէն** պճնեց Անիի կաթողիկէն[4]:

Ասեղնագործութիւնը մի գեղարուեստ է, հետեւաբար նրա մէջ ռամիկ կնոջից աւելի պիտի մխրճուէին ու յաջողէին մեր զարգացած տիկնայք, որ ունէին ճաշակի նրբութիւն ու ծախսելու դիւրութիւն: Պատմութեան մէջ այս մասամբ անուն թողել է Հաթերքի տիկինն՝ **Արզու խաթունը**, իր դուստրերի հետ, որոնցից մէկը ծանօթ է **Մամա** անուամբ[5] եւ որոնց ձեռքի ճարտարութեանն ակնարկեցինք այլուր[6]: Պատմիչը նկարագրում է նրանց շինուած վարագոյրը Գետկոյ եկեղեցու «տեսնողների զարմանքը այծի մազից աւելի կակուղ», որից յայտնի է թէ պաստառն էլ իրենք էին պատրաստել տուել եւ իրենք իսկ այն ունէին «ներկուած պէսպէս եւ զանազան գործ գնդակերպ», այսինքն վրան ներկով շինուած գնդաձեւ զարդեր եւ նրանց միջեւ «նկարուած պատկերով ճշգրտագոյն հանուածքով տնօրինականօք Փրկչին եւ այլ սրբոց, որ հիացնում էր, ասում է, տեսնողներին», որոնք օրհնում էին Աստծուն, «որ ետ կանանց իմաստութիւն ոստայնանկութեան եւ հանճար նկարակերտութեան[7]» ըստ Յոբայ խօսքին, որի վերջինը պատկանում էր իրենց այդ գործին:

Ես համարում եմ, թէ տիկինն այդ արուեստն սովորել էր մատաղ հասակից, հայրենի Կայէն ամրոցում, առաջնորդութեամբ մօր՝ **Կատայի**[8], եւ իր կարգին սովորեցրեց այդ իր դուստրերին: Արդէն տեսանք արուեստի ընդարձակութիւնն ազնուազգի տներում[9]: Այդ հնարագիտութեան բաւական հին մի մնացորդ է էջմիածնի դրօշը, շինուած նախքան 1462 թուականին, որում յիշուած է[10], գոյնզգոյն ոսկեթել յօրինուածով եւ մէկ երեսի վրայ ասեղնագործուած փրկչական կենդանագիրը, իսկ միւսինը՝ Լուսաւորչինը, ընդ մէջ Տրդատի ու Հռիփսիմէի: Իր պատկերն առաջ եմ բերել հին հայ դրօշների քննութիւնների մէջ:

---

1. *Յոբ. ԼԸ*, 36: — 2. ***Հյկ. Բ***, 429: — 3. *ՅՀ. կթ.* 250: — 4. *Աստ՝* 201-02: — 5. *Ջալ. Բ*, 227: — 6. *Աստ՝ Ժ*, 4: - 7. *Կիր.* 111: — 8. *Երզ.* 26: — 9. *Աստ՝* 22: — 10. *Դաւր.* 326-27:

4.- **Թափչութիւն**.- Ինչ նիւթով եւ ինչ ձեւով էլ շինւէին զգեստները, աղքատ կամ հարուստ, պարզ կամ զարդարուն, գործածութեամբ կեղտոտւելու էին որեւէ չափով ու մաքրութեան էին կարօտելու: Եւ այս գործն էլ պահանջում էր ճարտարութիւն՝ չապականելու համար նրանց, մանաւանդ ազնիւները եւ մինչեւ մաշւելը գործածելի վիճակի մէջ պահելու: Հին ժամանակ կարեւոր արւեստ էր թափչութիւնը, ունենալով իր յատուկ վայրն ու գործիքները: Աշխատողներն այրեր կամ կանայք էին, ինչպէս, տեսնում ենք յոյն եւ հռոմէական նկարներում, կոչւած **թափիչք**[1] կամ **լւանալիք**[2]: Մաքրութեան համար կիրարկում էին զանազան յարմար կաւեր կամ հողեր ըստ տեղին, ուր գտնւում էին այդ նիւթերը: Մեծ տներն ունէին իրենց սեփական թափչարանները[3] եւ լւանալը լինում էր, նախ մաքրելով զգեստները եւ ապա ողորկելով մի մամլով[4]:

Նոյն արւեստը, միեւնոյն հանգամանքներով ու կոչումներով ծանօթ էր եւ հայերին: Կեղտի մաքրութեան նիւթը կարծում եմ մեզ մօտ դարձեալ փրփրուն **օշնան** խոտը[5] կամ դրա հոմանիշն **օճառը**, որ թարգմանում է Մաղաքիան «որպէս օճառ լւանալու[6]» (յն. խոտ լւացողների), ուստի այս առթիւ գործածւածն իսկ: Ըստ Եւսեբիոսի՝ թափիչը գործածում էր **տոփան** կոչւած տափակ փայտն էլ, «որով հանդերձանքը հարւածում էին[7]», եւ աղտը հանում էին, որ մեզ մօտ եւս կարող ենք նկատել, դատելով հայ կոչումից: Ծանօթ էր հայերի ողորկումն էլ լւալուց յետոյ եւ ուր Ոսկեբերանը նկարագրում է կոյսերի հանդերձը, հայ թարգմանիչն ըստ տոհմային սովորութեան աւելացնում է «մանաւանդ թէ թափչացն եւս ողորկեալ փայլիցեն[8]»:

5.- **Խոհակերութիւն**[9].- Ցատուկ մի աշխատանքով «Ճաշեր եւ խնջոյք հին Հայաստանում», մանրամասն նկարագրել եմ խոհանոցի արւեստը, որը շատ բարդ, եւ ընկերական կարեւորութիւնը մեծ է եղել միշտ բոլոր ազգերի եւ մեր մէջ եւս, առաւելապէս ազնւական դասում[10]: Աւելորդ է ուրեմն, որ այստեղ նորից սկսենք նրա նկարագրութեանը եւ համեմների, խորտիկների, կտապների եւ հաստեայց նուրբ պատրաստութեան մէջ, որ Մանդակունին ասել էր տալիս թէ, «ի բազում քրտինքով յօրինում են սեղաններ» մեծատներում[11]:

Եթէ արքունական եւ իշխանական խնջոյքում **խոհակերքը**[12] կամ **խորտկարարքը**[13] այրեր էին, գործի ծանրութեան պատճառով, ընդհակառակն առանձնական կամ ընտանեկան ճաշերի ժամանակ, եւս առաւել ռամիկ դասում, այդ

---

1. **Ծն.** Է, 3. **Մրկ.** Թ, 2: — 2. **Մաղաք.** Գ, Ջ: 3. Դրմբ. Բ, 1349-52: 4. Նոյն՝ Դ, 644: 5. Աստ՝ 17: — 6. Մաղ. Գ, 2: -- 7. **Փամ. Եկ.** 130: 8. Ոսկ. Պօղ. Ա, 69: --- 9. Ոսկ. Մտթ. Ա, 705: - 10. Աստ՝ 117: — 11. Մնդ. 74: — 12. Ոսկ. Մտթ. Բ, 69. Պօղ. Ա, 532: — 13. Ա. Թագ. Ը, 13. **Ծծխ.** 40:

պաշտօնը յատուկ էր կանանց: Փաւստոսը յիշեցրեց մեզ Ողոմպիային «իր նաժիշտների» եփած կերակուրն ու գինին էր ճաշակում[1]: ԺԲ դարում Դ. Գանձակեցին դեռ վկայում էր, թէ կերակուրները սովորաբար պատրաստւում էին «աղախինների միջոցով», տան տիկնոջ հսկողութեան ներքոյ[2]: Եւ ոչ միայն կերակուրը, այլ հացն ու կաթնեղէնն էլ նրանց ձեռքերին էր կարօտում[3]:

Աւարտելով այս պարզ արւեստները, անցնում ենք տեսնելու աւելի բարձրերը, որոնց մէջ մեծագոյնը մտքի ունեցած բաժինն է:

6.- **Գրչութիւն**.- Ուսումնասիրութիւնն, որի մէջ փայլեց հայուհին[4], շատ բնական էր, որ տանէր նրան մինչեւ մատեաններ ընդօրինակելու գործին: Համեմատաբար ուշ են երեւում այդպիսի կանայք մեզ մօտ եւ սովորաբար հաւատաւորներ են, որոնց առտնի հոգսերը թոյլ էին տալիս նրանց նւիրւելու այդ աշխատութեանը: Այսպէս Կիլիկիայի ժամանակագիրը Սսոյ հին պատմիչներից տեղեկացել էր, որ բարձրբերդցի Կոստանդին քահանայի դուստրը՝ **Զապէլը**, «հմուտ էր ընթերցողութեան եւ գրչութեան արւեստին»: Նմանապէս տարսոնացի **Աշխէ**, կոյսի համար ասում էին՝ թէ «եւ նա շատ հմուտ գրագիր էր[5]»:

Բայց կան աւելի յստակ տեղեկութիւններ եւս: Սիւնեաց Հալիձորի մենաստանի «մայրապետ **Հռիփսիմէն**» 1653-ին օրինակող է եղել Խոսրովի ժամագրոց մեկնութեանը[6]: Շոռոթի կուսանոցի մէջ 1664-ին **Շուշան** միանձնուհին գրում է Խորենացու, Եղիշէի եւ այլ պատմիչների մի հաւաքածու ամբաստանելով իրեն թէ «ես յոյժ անփորձ կրօնս ապաշխարութեան - Եւ խիստ տգէտ եմ գրչարհեստութեանը», թէպէտ գիրը շատ վայելուչ է եւ չի արդարացնում իր գանգատը[7]: Ղարաբաղի Աւետարանոց գիւղաքաղաքի կուսաստանում գրիչ էր «մայրապետը՝ **Գայիանէն**», որ 1671-ին օրինակում է մի Աւետարան «ջերմեռանդ սիրով»[8]:

1673 թւին Շնհերի կուսանոցի անապատի մէջ **Երինի** հաւատաւորը գաղափարում է «դեռ թերավարժ գոլով» ժամանակի մի ժամագիրք, որ ընծայում է երկու եղբայրներին Ցօշադ գիւղի մէջ: Նոյն տարում **Մարիամ** կոյսն էլ նոյն ուխտի մէջ օրինակում է Գր. Տաթեւացու ոսկեփորիկը[9]: Դարձեալ Շոռոթի կուսաստանի մէջ 1687-ին **Գոհար** միանձնուհին «ջերմեռանդ սիրով» գաղափարող է լինում Նարեկացու աղօթամատեանին «ի վայելումն» անձին եւ յիշատակ իր ազգականներին[10]: Ա. Ցեթվաճեանը յիշում է ուրիշ գրիչ կոյսեր եւս. **Վառվառէն** 1684-ին, փոքր Սիւնեաց

---

1. *Աստ*՝ 20: — 2. *Ալաւ. Գ*: — 3. *Աստ*՝ 128: — 4. *Աստ*՝ *ԺԲ*: — 5. *Սիս*. 520: — 6. *Սով*. 257: — 7. *Անդ*՝ 354: — 8. *Ջալ. Բ*, 246 *աստ*՝ 174: — 9. *Սով*. 259: — 10. *Անդ*՝ 353:

*վանքի մէջ, նոյնպէս նրա մի անուանակիցը եւ երկու* ***Մարիանէ, Մարիամ*** *եւ* ***Յուստինէ****, բայց առանց նշանակելու գործերը, թւականն ու տեղերը*[1]*: Հուսկ ծանօթ է «****Բրաբիոն*** *նօտար», որ զանազան ընդօրինակումներ ունի, երկուսն այժմ Վիեննայում: Մէկը* 1812-*ին, որ Յակոբ դպիրին կանոնագիրքն է, եւ միւսն անթւական, տումար Մատթէոս դպիրի, որ գաղափարում է յանձնարարութեամբ իր եղբօր՝ Մատթէոս մանկավարժի: Երկուսն էլ գրել է Կոստանդնուպոլսի մէջ, ուր իրենք բնակւում էին*[2]*:*

*Գրչութեան արուեստը լոկ օրինակութեան մէջ չէր կայանում, այլ կար մագաղաթի կամ թղթի պատրաստութիւնը, կոկելը, տողերի կարկինով չափումն ու գծումն էլ, որպէսզի գրիչը պահէր հաւասարութիւնն նրանց մէջ. Նոյնպէս եւ մելանի յօրինումը: Կան կանայք, որ հասնում են նաեւ այդ գործերին: Երուսաղէմի մէջ* 1321-*ին մի Աւետարան է գրել Ստեփանոսի, որի մէջ* ***Շաքար*** *հաւատաւորն «շատ աշխատեց, ասում է, թղթի կոկելուն*[3]*»:* 1356-*ի Ճաշոցի մի գրիչն՝ Աստուածատուրը, խնդրում է յիշել իր քրոջն՝* ***Ուստիանէին****, որ «ինձ հետ շատ աշխատեց, ասում է, տող չափելու մէջ*[4]*»:* 1486-*ին մի Աւետարան է գրել Կեսարիայի մէջ՝ Յովհաննէս աբեղայի ձեռքով, որի «մագաղաթ շինելու համար շատ աշխատեց» իր եղբօր դուստրը՝* ***Գոհարը***[5]*: Իսկ* 1365-*ին Բաբերդում գրւած Աւետարանին օգնական է եղել* ***Եղիսաբէթ*** *հաւատաւորը, «թանաք եփելով*[6]*»:*

7.- ***Երգեցողութիւն****.- Այն համարձակութիւնն, որ ունէր հայուհին ընկերութեան մէջ եւ ընտանի էր երգի հետ*[7]*, ինչ-ինչ առիթներով ցուցաբերում էր նաեւ իր ձայնի բնատուր գեղեցկութիւնն ու ճարտարութիւնը, երգելով անհատաբար կամ խմբովին: Տեսանք Սիւնեաց Ստեփանոսի քրոջը՝* ***Սահակդուխտին****, որպէս երգի ուսուցչուհի*[8] *եւ որի համար պատմիչն, ասում է, թէ «յոյժ հմուտ էր երաժշտական արհեստին*[9]*»: Միջին դարում «երաժշտական արհեստով» իմանում էին ձայնական երգը, եւ երգիչները կոչւում էին* ***երաժիշտ***[10] *կամ* ***փիլիսոփայ***[11]*: Ուրեմն Սահակդուխտի իմացած եւ ուսուցումը երգն էր եւ նոյն ինքն եկեղեցականը, իր շարագրածներից էլ յայտնի*[12]*, եւ ոչ աշխարհական, անպատեհ իր վիճակին: Եթէ իր մասին տրւած այդ տեղեկութիւնը իսկապէս պատմական չլինի էլ, գաղափարը մեր առջեւ դնում է մեծագոյն մի իրականութիւն. հայ կանանց ունեցած մշակոյթը ձայնի եւ երգի եւ այն ուրիշներին դասախօսելու ազատութիւնը:*

---

1. ***Հյրն.*** *օգ.* 1927: — 2. *Տաշ. Ցցկ.* 935, 895: 3. ***Թոր. աղբ. Բ***, 345: 4. ***Հւք. յշտ.***: — 5. *Դիւ. ԻԲ.* 5. *էջ* 311: — 6. ***Հւք. յշտ.***: 7. *Ասա՝* 23, 154: — 8. *Ասա՝* 207: - 9. *Օրր.* 101: -- 10. *Մգ. Թղթ.* 124. ***Հւք. յշտ.*** 1174: - 11. *Շն. Բրձ.* 135. ***Հւք. յշտ.*** 1204: 12. *Ասա՝* 244:

Կիլիկիայի ժամանակագիրը նոյնը հաստատում է, վերոյիշեալ բարձրրերդցի **Ջապէլի** մասին եւս վկայելով, թէ «պաշտում էր մանրուսմունս[1]»: **Մանրուսմունք** կոչւում էր պատարագի եւ ժամերգութեան երգերի հաւաքածուն,- բացի շարականներից,- որոնք ամենաբարդ խազերով յօրինուած ու դժւարին եղանակներ էին, այդ չքեղութեան հասած միջին դարում: Շնորհալու օրով կային արդէն ու յիշւում են[2]. եւ նրանցից օրինակներ էլ հասել են մեզ՝ սկսեալ ԺԳ դարից: Ուշագրաւ էր եւ մեզ համար էլ ուշագրաւ է, Ջապէլի թարթափումն այդ խրթին եղանակների մէջ: Ժամանակագրի **պաշտէրը** նշանակում է երգել. բայց որտե՞ղ: Բուն պաշտելու տեղն էր եկեղեցին, ուր սակայն դժւարութեամբ կարող ենք ենթադրել, թէ միայնակ էր երգում նա այն ծանր եղանակներն հասարակութեան համար[3]: Գուցէ երգում էր տնում եւ կամ ընկերական բարեպաշտ հաւաքոյթներում, եւ նոյնիսկ ուսուցանելով Սահակդուխտի նման:

Այդ օրինակները թէպէտ յիշատակութեամբ ցանցառ, գրաւական են կանանց յաջողութեանն նաեւ այս ասպարէզի մէջ: Եւ որովհետեւ խօսում ենք հոգեւոր երգերի մասին, եթէ բոլոր կանանց ներելի էր մասնակցելը միաձնաբար եկեղեցում[4], եւս աւելի հաւատաւորները փայլելու էին նրանց մէջ, պայծառացնելով իրենց աղօթատեղիները: Սակայն եկեղեցուց դուրս էլ կային համախումբ եւ ոչ սրբազան երգեր կանանց կողմից: Որպէս օրինակ՝ հարսանեաց պարերն երգախառն տեսանք[5]: Նոյնպէս ուրիշ ընկերական առիթներում եւս լինում էին, ինչպէս նկատում ենք հետագայ թւահամարի հինգերորդ յօդւածի մէջ: Վերջապէս երգը սերտօրէն խառնուած էր հայ կնոջ կենցաղի հետ:

8.- **Վարձակութիւն**.- Հայուհու համարձակութիւնն աւելի առաջ էլ գնաց, երեւալու իբրեւ երգիչ, նւագածու կամ դերասան՝ թատրոնների ու հանդիսական վայրերում: Այս մասին փոքր ի շատէ խօսում են մեր նախնիների խնջոյքից ու դաստիարակութեան նւիրուած զոյգ աշխատութիւնները եւ այստեղ ուզում եմ լրացնել այդ, կենտրոնանալով առաւելաբար կանանց բաժնի վրայ այս արւեստում:

Կարծում եմ, թէ հայ կնոջ թատերական դերն սկսում է կամ փայլում է մեր հելլէնասէր Արշակունեաց[6] օրերից, երբ մեծն Տիգրանը մի թատրոն կառուցեց Տիգրանակերտի մէջ, եւ նրա բացման համար զանազան կողմերից հրաւիրեց դիոնիսեան

1. *Սիս.* 520: — 2. *Շն. նմկ.* 156: — 3. *Հմմտ. սստ՝* 154: — 4. *Աստ՝* 154: — 5. *Աստ՝* 76: — 6. *Աստ՝* 142-43:

խաղերին տեղեակ յոյն արուեստագէտներ[1]. ուստի յայտնի է, թէ Հայաստանում դեռ չկային կանոնաւոր թատրոններ ու դերասաններ, այնպէս որ **թատր** կամ **թատրոն** կոչումն իսկ յոյներից վերցրին: Իսկ Տիգրանի որդին ու յաջորդն՝ Արտաւազդը, ողբերգութիւններ շարագրեց[2], բնականաբար հայ բեմի համար: Եւ այնուհետեւ թատրոնի գոյութիւնը շարունակւում է մեզ մօտ մինչեւ ԺԳ դարը կամ թաթարական տիրապետութիւնը, ուր խաւարում է ազգային կենցաղը մեծ Հայաստանի մէջ: Մինչեւ այդտեղ թատրոնի անպակասութեանը վկայում են Ցհ. Մանդակունին[3], կաթողիկոս պատմիչը[4], Ասողիկը[5], Խ. Անձեւացին[6], Գ. Նարեկացին[7], Գրիգոր հռետորը[8], Ս. Օրբելեանը[9] եւ Ցհ. Գառնեցին[10]:

ա. Դասական հայերէնը **գուսանութիւն**[11] էր անւանում թատերական արուեստը եւ **տեսիլք**[12] կամ **տեսիլք թատերաց**[13], այնտեղ ներկայացուածը: **Գուսանը**՝ դերասանների կոչումն էր, եւ **վարձակը**՝ դերասանուհիներինն[14] ընդարձակ իմաստով, իսկ սեղմ մտքով՝ նշանակում էին երգիչ եւ նուագածու: Այսպէս Ս. Գիրքը թարգմանում է «ձայնը **գուսանաց** եւ **վարձակաց**[15]», ուր բնագիրը ասում է «երգիչներ եւ երգչուհիներ»: Նոյն զանազանութիւնը զգացնել է տալիս եւ Փաւստոսը, գրելով՝ «վարձականերով, գուսաններով եւ կատակներով[16]», որոնցից առաջին երկուսն երգիչ են, կոչւած նաեւ **երգեցիկք**[17] կամ **երգեցիկ գուսանք**[18] կամ **նուագածուք**[19], եւ վերջինը՝ կատակերգակ գուսաններ: Սրանց վերածւած էր Դ - Ե դարերում հայ բեմական արուեստը, Արտաւազդի ողբերգութիւններն երկար ապրած չլինելով, թէ լեզւի օտարութեան եւ թէ խաղի ծանրութեան պատճառով, որ շատ հաչտ եւ ախորժելի չէր հայի համար: Այդ պատճառով նրանք կորստի մատնւեցին, եւ հայ դերասանի բաժինը մնաց երգելը, նուագելն ու կատակելը. խօսելով հանդիսականների զգայնութեան, ոչ թէ մտաւոր եւ այսպէս կայացաւ հայ արուեստը մեր պատմութեան ամբողջ հետագայ շրջանում:

Այդպիսի ներկայացումներն ազատութիւն ու քաջալերութիւն էին վայելում հեթանոս Հայաստանից, բայց քրիստոնէութիւնից յետոյ իրենց ոխերիմ թշնամին եղան եկեղեցու վարդապետներն, որոնք չէին կարող միաբանել նրանց քրիստոնէական բարոյականի ու պարկեշտութեան հետ: Մանդակունի հայրապետը, մեզ մօտ նրանց հնագոյն, մեծագոյն եւ անողոք ախոյեանն էր, հարւածում էր նրանց սրբավայրի բեմից

1. Պլտ. Գ, 575: - 2. Նոյն՝ Դ, 138: 3. Մնդ. 42, 83, 131 եւն: — 4. Ցհ. կթ. 313, 441: — 5. Ասղ. 152: — 6. Խսր. ժմ. 62: — 7. Նրկ. 79: — 8. Անդ՝ 530: — 9. Օրբ. 147: – 10. Գռն. Խր. 152: 11. Ոսկ. Մտթ. Ա, 570. յն. **սկենէ**, որ է բեմ եւ ներկայացումն: — 12. Անդ՝ 57: - 13. Անդ՝ Բ, 25: 14. Փաւս. 48: — 15. Բ. **Թագ. ԺԹ**, 39: — 16. Փաւս. 48: — 17. **Ժողով**. Բ, 8. Ոսկ. Մտթ. Ա, 202: — 18. Վցր. 12: — 13. **Դատ. ԻԱ**, 23. **Ա Թագ. ԺԷ**, 6:

իսկ՝ իր «Վասն անօրէն թատրոնների դիւականների» ճառով, սահմանելով նրանց «անառակ թատրոնների տեսարաններ», կամ «ապականիչ թատրոններ խաղերի», «թատրոններ պղծութիւնների», «ամենայն ախտի արւեստանոց» եւ «դեւերի բանակատեղ[1]»: Հայրապետից շատ հեռու ԺԳ դարում դեռ նոյն դատապարտութիւնն ընդունում են թատրոններն ու հարսանեաց հանդէսները ՅՀ. Գառնեցու բերնից, որ յարում է, թէ հրէշտակների երգեցողութեան փափագողն «այստեղ գուսանների երգը մի՛ լսեցէք[2]» եւ դարձեալ, թէ «ականջ մի՛ դիր կաքաւողներին եւ գուսաններին[3]»: Այսպէս եւ միւս հայրերը, որոնց բողոքները սակայն մնացին ձայն բարբառոյ յանապատի:

Պէտք է ընդունենք, թէ գուսանութեան արւեստը, նիւթն ու վայրը ճշմարտապէս հեռու էին աւետարանական բարոյականից, ոչ էլ բեմականներն, այլ թէ կանայք, կարող էին պարկեշտաբոյր ծաղիկներ լինել: Նրանք ախտը ներկայացնում էին այնտեղ, իսկ ախտի կեղծն եւ իրականն այնչափ մտերիմ դրացիներ են, որ դժւար կարող էին գտնել նրանց իրարից բաժանող անձերը: Այժմ իսկ, ուր բեմական արւեստն հասել է իր բարձրութեան ու նրբութեան, ըմբռնւած իր հոգեբանական կամ գաղափարական ձեւի մէջ եւ արւեստագէտները մեծարւում են իբրեւ հանճարներ, քանի՞ դերասան կարելի է գտնել, որոնք բեմից դուրս բարոյականի օրինակներ հանդիսանան:

Փաւստոսը Յուսկան որդիների խրախճանութեան մէջ[4] զատում է իրարից անառակ կանանց ու վարձակները «**թոզերն եւ վարձակները**»[5] եւ ուր Ոսկեբերանը յոյն դերասանուհուն կոչում է առաջին նախատական բառով, հայ թարգմանիչը փոխում է «վարձակ»ի[6]: Բայց այս հայկական զանազանութիւնն երկուսի միջեւ, արւեստի տեսակէտով էր, ոչ թէ բարոյականից: Նրանց միասին ներկայութիւնը, չւայտութեանց մէջ, ինչպէ՞ս կարող էր ապահովել վարձակների պարկեշտութիւնը: Յիշենք, որ Է դարում Մամիկոնեան մի իշխան Գլակի ուխտից երկու աւան կտրեց եւ «ետ գուսանի ումեմն կնոջ»[7], ոչ անշուշտ նրա առաքինութեան որպէս վարձ եւ Բարսեղ Մաշկւացին հայ վարձակները անւանում է միշտ Ոսկեբերանի անարգիչ բառով[8], ինչպէս եւ Սիմէոն եպս. Աղձնեացը[9]:

բ. Կատակերգութիւնն էր ամենից աւելի հարցը, որի համար երկու սեռերը նոյնպէս միասին էին հանդէս գալիս բեմի վրայ, ինչպէս երգելու ժամանակ, կոչւելով **կատակք**[10] կամ **խեղկատակք** կամ **ծաղրածուք**[11] նրանք, որ ձեւերով ու շարժումներով

1. Մնդ. 131, 132, 133, 135: — 2. Գռն. Խր. 152: — 3. Անդ՝ 148: — 4. Աստ՝ 41-42: — 5. Փաւս. 48: — 6. Ոսկ. Պօղ. Բ, 554: — 7. Մամ. 12: — 8. Մշկ. 64-65: — 9. Աստ՝ Ե: — 10. Ոսկ. Պօղ. Ա, 642. Մնդ. 135: — 11. Ոսկ. Պօղ. Ա, 851. յն. միմոս:

զուարճացնում էին. **չաղակրատք**[1] լեզւով ծիծաղեցնողներն եւ իրենց խմբակները՝ **պարք**[2], իսկ խնջոյքների մէջ կոչւում էին **հացկատակք**, որ յատուկ էր մեծատների շնթողերին էլ[3]: Գալով կատակերգութեան նիւթին, անպարկեշտ կամ ծաղրական խօսքեր ու շարժումներ էին միայն: «Կանայք, ասում է Ե դարի մեր բեմբասացը, բոզի կերպարանքով եւ բարքով, եւ այրերը՝ ձիով մատակախագաց», իրար հետ կատակում էին եւ խօսակցում «անօրէն գազրաբանութեամ», եւ «փոխում են, ասում է, տաղտկալի բանից գարշութեամբ», որոնց հետ խառնւում էին «լկտի խաղ եւ ծաղր[4]»: Հայրապետն այնտեղ տեսնում էր բոլորովին «լուծեալ զսանձս լեզուի եւ զկապ բերանոյն արձակեալ». եւ լսում էր ըստ իր մանրամասնութեամբ՝ «բազում խեղկատակութիւններ եւ մորոսխօսութիւններ, գարշաբանութիւններ, դատարկաբանութիւններ[5]», որոնք ընդհանուր կերպով կոչւում էին «գուսանական խօսքեր[6]», դերասաններն իրար հին ուղղում եւ միանգամայն **թատրատեսից**[7] կամ **հանդիսատեսից**[8] կամ **հանդիսականաց**[9] մէջ ծանօթ պնդերեսների. «ամենին, ասում է, աղտով իրենց բերանը զազրացուցանում է, ոմանց բամբասում, ոմանց թշնամի է դարձնում, ոմանց ձաղկում է, խեղութեամբ ամօթով կուրացնում է... իբրեւ կատաղի շուն առհասարակ կծում է»: Բայց մեծարգոյ հանդիսականների հանդէպ փոխում էր լեզուն. «ոմանց ստից եւ յարգանօք սնափառ է դարձնում[10]»:

Խօսքերին համեմատում էին շարժումներն էլ: «Իբրեւ զայսահարս, ասում է, Մանդակունին, յափրում են (լրբանալ), խենթանում, ոլորւում են, աքստում են[11] (կից նետել)»: Մինչ ինքն երկու սեռերի մասին խառն խօսում է, Ոսկերերանի թարգմանիչը շեղւում է բնագրից եւ մեզ տալիս է հայ վարձակի շարժումների նկարագրութիւնն իսկ՝ հետեւեալ պարբերութեան մէջ. «Եթէ **վարձակ** (յն. բոզ) ոք ի բաց հանիցէ յանձնէ զոսկին, զհանդերձս պաճուճանացն, զծաղրն թողուցու. **զպչրանսն**, **զհպտանս**, **զաչացն զմեղմեղանս**. զբանսն պատրելիս. **զխաղալն**, **զկատակելն**»[12], ուր բոլոր շեղագրերը թարգմանչին են: Մեր բեմբասացը չեչտում է, թէ այդ տեսարանները շատ վնասակար էին հայ ժողովրդի բարոյականին եւ մեղադրում է ասելով, թէ «զորս պարտ իսկ էր րազում քարամբք քարկոծել եւ յաշխարհէ հալածել, զնոսա առեալ զեղխելոցն՝ ի խաղարանս զբօսանին[13]»:

---

1. Անդ: 2. Ոսկ. Մտթ. Ա, 572: -- 3. Անդ՝ 57 եւն: -- 4. Մնդ. 134: 5. Նոյն՝ 135: 6. Ոսկ. Պօղ. Ա, 851: — 7. Ոսկ. Մտթ. Ա, 572. յն. նոյն բարդ ձեւր: — 8. Անդ՝ 303. յն. նախորդ բառը: -- 9. Բ Մակ. Բ 19. յն. նախորդ բառը: — 10. Մնդ. 135-36: 11. Նոյն՝ 135: -- 12. Ոսկ. Պօղ. Բ, 554: — 13. Մնդ. 133, 134:

Մենք այդտեղ Հայ բեմի վրայ նկատում ենք ընդօրինակութիւնը ժամանակակից յոյն կատակերգութեան, որ Անտիոքի անուանի քարոզիչը մեր առջեւ դնում է նոյնչափ կենդանի գոյներով: «Ի՞նչ ժխոր է, ի՞նչ աղմուկ եւ սատանայական ամբոխ եւ դիւական կերպարանքներ», սկսում է մեծ պերճախօսը եւ աւելացնում է թէ մի պատանի փափուկ աղջկայ մի դէմք է ստացել, մի ուրիշը ծեր է ձեւացել մազն ու մօրուսը գերծել է (սափրել). «եւ նախքան զհերսն՝ զամօթ կտրեալ եւ ի բաց ընկեցեալ», կեղտոտ խօսքեր ու գործեր են անում, իրար ապտակում են: Իսկ «կանայք մերկացնելով եւ քօղընկէց անելով (յն. մերկ գլխով) յանդգնաբար եւ յայրատեալք, ամբոխի Հետ խօսելով» նոյն անբարոյ լեզւով ու շարժումներով: Եւ առՀասարակ երեւում են այնտեղ «խայտառակ վարքով, եւ կոտրատւելով քայլերով եւ լկտիութեան Հանդերձներով եւ խաբէական խօսքերով, ... եւ աչքերի կեղծաւորութեամբ»: Իսկ Հանդիսականներն, ասում է, նրանց տեսնելով «ծիծաղից թուլանում էին[1]»:

Մանդակունին եւ իր դարն անցնում են, բայց Հայ գուսաններն ու վարձակները մնում են բեմի վրայ, իրենց խեղկատակութիւնների Հետ, ինչպէս զգացնել է տալիս Խոսրովը Ժ դարում, դատապարտելով յաճախելն «խաղերին եւ թատրոններին եւ այլանդակ Հաւաքներին եւ անառակ ու պիղծ երեւումներր տեսնելու[2]»: ԺԳ դարի կէսին նոյնը վկայում է Գրիգոր Հռետոր բջնեցին, զգուշացնելով գնալ «թատրոն խաղերն եւ լկտի տեսութեան[3]». եւ ՑՀ. Գառնեցին նոյն դարից, թէ «մի՛ մօտեցիր կատակերգու եւ Համարձախօս կնոջը[4]»:

Գուսանների տարազի մասին Ոսկեբերանը մի ծանօթութիւն տւեց վերեւում: Իսկ Մանդակունին վարձակները նկարագրեց «ի բարս բոզից կերպարանեալք», որպէսզի նրանց ձեւն էլ[5] նկատենք իրենց վրայ: Բայց չի կարելի միակ եւ անփոփոխ մի Հանդերձի մէջ նշմարել նրանց բոլոր դարերում, այլ յեղաշրջւած ըստ ժամանակին, որ փոփոխում էր արւեստն ու ձեւերը:

գ. Չեմ գտել յայտնի վկայութիւն, թէ Հին դարերում Հայ բեմի վրայ ներկայանո՞ւմ էր նաեւ **արուեստ կաքաւչաց**[6] կամ պարը յոյն բեմի, որի Հետ ըստ Ոսկեբերանի խառնւում էին «նւագք երգոց մտախաբաց եւ սրինգք եւ փողք[7]»: Կատակերգակներից զատ եւ այս մասի մէջ ճարտար անձեր էին նրանց այդ **կաքաւիչք**[8], **պարաւորք**[9] կամ **խաղալիկք**[10], որի առաջնոյն արմատի **կաքաւն** անՀատաբար

---

1. Ոսկ. Մտթ. Ա, 568-69: — 2. Խոր. Ժմ. 62 (Ըստ գրչագրին): — 3. Նրկ. 530: — 4. Գռն. Խր. 147: — 5. Աստ՝ 188: — 6. Ոսկ. Մտթ. Ա, 570. յն. պար: — 7. Անդ՝ 568-69: — 8. Ոսկ. Պօղ. Ա, 67, 468. Վցր. 12: — 9. Դատ. ԻԱ, 23. Ա Թագ. ԺԷ, 6: — 10. Ա Թագ. ԺԸ, 8. Երեմ. ԼԱ, 4:

կատարուածն էր, եւ միւսների **պարը** կամ **պարանցիկը**[1] խմբովին շարժումը, ուստի նա զանազանող բացատրութիւններ, «ի **կաքաւ** իջանել, ի **պար** անցանել[2]»:

Մանդակունին ոչ յիշում եւ ոչ դատապարտում է երգը, նուագն ու պարը, որովհետեւ նոյնչափ խորշելի չէ՞ր գտնում նրանց, թէ կատակերգութեան պէս յաճախ չէին հայ բեմի վրայ, որի մասին էր իր խօսքը: Սակայն դրանք հնուց եւ շատ անգամ երեւում են մեր ընկերախմբի հանդէսներում, ինչպէս տեսնելու ենք եւ որոնցից հեշտութեամբ եւ աւելի վաղ կարող էին փոխադրուել նաեւ թատրոններում, որ թէպէտ ուշ ակնարկում է Մովսէսը, յրացուցիչ Խորովի 1255-ին, ասելով թէ աղօթքի ժամանակ անձեր կան, որ «իբր ի թատերս զօրէն կաքաւչաց կարկաչեն[3]», որ մեղմաձայն եղանակելն է: Ցոյս չունեմ, որ հայերը միջին դարում պարը բեմ հանեցին, այլ հնուց էր եկել, թւում է:

դ. Կատակը, պարն ու երգը միայն թատրոնի հետ կապուած չէին, այլ աւելի ստէպ երեւում էին խնջոյքի եւ հարսանեկան ուրախութիւնների[4] մէջ էլ, ինչպէս Ոսկեբերանն եւս ինչ որ նկարագրեց վերեւում յունական բեմի վրայ, ամբողջովին տեսնում էր նաեւ յոյների ընդունելութիւնների մէջ[5]: Խորենացին աւանդութիւնից վերցնելով պատմում է, թէ Սիւնեաց Բակուր նահապետի մի ընթրիքի ընթացքում նրա «շատ գեղեցիկ» հարճը՝ **Նազինիկը**, նուագում էր[6]: Տրդատ Բագրատունին, որ ճաշակից էր, նրան «վարձակ» կարծեց ու խնդրեց իր համար եւ երբ մերժուեց, իր ձեռքը զէնք վերցնելով ծաղկակալ **սկուտեղը**, հարուածներ իջեցրեց աջ ու ձախ, կնոջը յափշտակեց ու փախաւ[7]: Այսպէս եւ Խոսրով գարդմանացին մի օր Հայաստանի պարսիկ Շապուհ արքայի խնջոյքում գտնուելով, ցանկացաւ այնտեղ տեսած մի «ջնարահար քաջամատ կնոջ»: Շապուհը բարկացաւ, հրամայեց բռնել նրան, քաշեց սուրը, կասեցրեց բոլորը եւ կորզեց, տարաւ վարձակը[8]: **Ջնարը** թւում է վարձակների յարմարագոյն գործիքը հին շրջանում, ուստի այդ **ջնարահար** մակդիրն էլ, ուր հնչականք եւ մանաւանդ շնչողականք աւելի գուսաններին էին վայելում, նուագելով «փքոցուռոյց լնդովք, թռալիր օդով փողիցն այտմամբ[9]», որ անշուշտ տգեղ էր կնոջ համար եւ խանգարիչ էր նրա կերպարանքին:

Փաւստոսը նկարագրելով Դ դարի հայ կենցաղը, ասում է, թէ ազգը գլխովին «իրենց երգերն առասպելաց զվիպասանութեանն սիրեցեալք», որ առասպելական հին վէպեր էին, նրանց անձնատուր էին եղել «եւ ի նոյն հանապազորդեալք[10]»: Դրանցից էին

1. Դատ. Դ, 27: — 2. Ոսկ. Պօղ. Ա, 66: — 3. Խսր. Ժմ. 115: — 4. Աստ՝ 75-76: — 5. Ոսկ. Մտթ. Ա, 692-95: - 6. Աստ՝ 118: — 7. Խոր Բ, կգ: — 8. Նոյն՝ Գ, ծե: — 9. Ագթ. 301: — 10. Փաւս. 33:

*«Թւելեաց երգեր» կոչւածները, որ Գողթանի բնակիչները «սիրով պահեցին[1]» եւ երգում էին «բամբիռներով[2]»: Արշակ Բ-ն «միշտ գինարբուՆքներում եւ վարձականների երգերով» էր անց կացնում[3] եւ Դրաստամատն Անյուշ բերդի մէջ Նրա վերջին եւ ողբերգական ընթրիքն էլ զւարթացրեց «գուսաններով» կամ «արւեստագէտներով»[4], որոնց վերջինը Նշանակում էր երաժիշտ ու Նւագարան[5]: Յուսիկի որդիների չւայտութիւնների մէջ անպակաս տեսանք ամէն տեսակ արւեստաւորները[6]: Ուրացող Վասակ Սիւնին իր հետեւորդները շահելու համար, իր տաճարի մէջ «յերկարէր զնուագս ուրախութեան», գիշերների երկարութիւնը մաշելով «յերգս արբեցութեան եւ ի կաքաւս լկտիութեան», իսկ որոշներին «քաղցրացուցանէր զկարգս երաժշտական եւ զերգս հեթանոսականս[7]»: Ոսկերերանի Թարգմանիչը ընդարձակում է այդ սովորութիւնն մի յաւելւածքով, ցոյց տալով ազգիս մեծատներում «միշտ ապականութիւն, հարբեցութեան երգեր, երգեր, արբեցութիւններ[8]»: Եւ երկսեռ գուսաններին ուղղելով խօսքը ասում է. «գուսան եւ հացկատակ լինես եւ չամաչե՞ս, վարձակ՝ բոզ եւ երգեցիկ[9]»:*

*Դէպի Նոյն դարի վերջը՝ հայ ճոխերի «անառակ եւ գուսանամոլ գինարբուՆքն» Մանդակունու սլաքներին էին հանդիպում[10]: Ներսէս Շինողը 645-ին զգացնում է, թէ մեր ազատանիից ոմանք մենաստանների մէջ իջեւանելու[11] ժամանակ անգամ «գուսաններով եւ վարձակներով Աստծոյ Նւիրեալ տեղերն պղծում են»[12]: Տեսանք Սիւնեաց «խրախարանն» էլ Վահանի վանքի մէջ[13]: Ոսկերերանի Թարգմանիչը մինչեւ հայ բանակն է տանում մեզ եւ ուր նա յունականի համար ասում է՝ թէ զբօսնում էր «ընթրելով եւ սրնգելով», մերս գրում է «ճաշք զճաշս մղիցեն եւ ընթրիք զընթրեօք անցանիցեն, գուսաններն երգում էին, փողանք զձայն փողոցն Նուագիցեն»[14]: Սահակեան կանոնները, Ե դարի վերջերից, բողոքում էին մինչեւ իսկ որոշ եպիսկոպոսների դէմ թէ «զկատակսն պարարիցէ զօրէն իշխանաց»[15], եւ Խորենացին ողբում էր ժամանակի վիճակաւորները՝ «սիրողք վաճառաց եւ կատակերգութեանց»[16], այնքան ընդարձակ էր գուսանութեան հրապոյրն այդ շրջանում:*

*Անցնում ենք դէպի միջին դարը, որտեղ Արիստակէսը ափսոսում էր Բագրատունեաց գահի անկումը, յիշելով մեր աշխարհի փարթամութիւնն Նրանց օրով եւ թէ ինչպէս հայ ււազանու տաճարների մէջ դեռ «ուրախ երգեր եւ խօսքով միայն*

---

1. Խոր. Ա. իդ, Բ. խԹ, կա: — 2. Նոյն՝ Ա. իդ, լա: — 3. Նոյն՝ Գ. ժԲ: — 4. Փաւս. 207: — 5. Ոսկ. Գող. Ա. 58, Մատթ. Ա. 62: — 6. Ասո՝ 41-42: — 7. Եղշ. 48: — 8. Ոսկ. Գող. Ա. 733: — 9. Անդ՝ 851. յն. թրկ «կատակ լինիս եւ չամաչե՞ս»: — 10. Մնդ. 135: — 11. Հմմտ. աստ՝ 182. Հմ. 3: — 12. Կան. ԺԲ: — 13. Ասո՝ 231-32. — 14. Ոսկ. Մատթ. Բ. 66: — 15. Սոփ. Բ. 119: — 16. Խոր. Գ. կր:

հանդէսները լինում էին, ուր փողերի եւ ծնծղաների ձայներն եւ այլ երգեցողութեան արուեստի» ուրախութեամբ լցնում էին ունկնդիրներին[1]: Սակայն Շիրակի երջանիկ ոստանը նաեւ Բագրատունիներից յետոյ էլ շարունակեց իր ցնծութիւնը մինչեւ իր տխուր վախճանը եւ Շնորհալին ասում էր նրան «Քո պաճուճած դստերները,- Ցերգ՝ ւի քանի քնար միշտ ի խաղի[2]»:

Մոլի մի զբօսասէր էր Դերէն Գ Արծրունին, որի խրախճանութիւններում անպակաս էին «փողահարներն եւ քնարահարներն եւ տաւիղ նւագողներն եւ խաղարարիքն կաքաւում էին նրա առաջ», իսկ երբեմն «բազմաթիւ երգողներն եւ գուսանները հնչեցնում էին իրենց ձայնը[3]», որ մեծ համերգ էր: Եւ ինքը, «այր զւարթ ու սիրուն», ճաշի մի պահին ինքն իսկ «քնարն իր ձեռքն առնելով» եւ ուրախացրեց իր հիւրին[4]: Իր որդին՝ Գագիկն, նրա աթոռի հետ ժառանգեց զւարճասիրութիւնն էլ եւ Աղթամարի իր տաճարի[5] որմերի վրայ նկարեց եւ «աղջիկների խաղը զարմանալու արժանի»[6], որոնք անկասկած իրեն էլ ընտանի էին: ԺԲ դարի Սարգիս մեկնիչը մեղադրում էր մեծատներին «թմբուկներով եւ պարերով գինի ըմպել, եւ երգող այրեր եւ կանայք մերձ կացուցանել»[7]: Եւ Ս. Ղազարի մի ոսկեփորիկը 1317 թւականից գրում է՝ թէ քահանաներն ու սարկաւագները ժողովրդի հետ նստում էին ու «խրախանան գուսանական երգով եւ ի կաքաւս լկտի խաղուց»[8], որոնք շարունակում էին հրապուրիչ լինել նաեւ կղերին:

ե. Այս բոլոր վկայութիւնների համեմատ, հայ ազնւականի ու մեծատան ընդունելութիւնների եւ հանդէսների մէջ անպակաս են եղել միշտ գուսանը, վարձակը, կատակերգակը, երգեր, պարեր, կաքաւներ եւ զանազան նւագարաններ եւ որոնց նկարագրութեան մէջ ուզում եմ մտնել, հայ արւեստի մասին աւելի յստակ մի գաղափար տալու համար ընթերցողներին:

Կատակերգութեան բեմական հանգամանքը պահում է նաեւ այստեղ: Այսպէս հանդերձի փոփոխութիւնն անպակաս է ըստ Մակւացուն. «զգեստ եւ ճեմս լցեալ խայտառակութեամբ», ինչպէս եւ անհեթեթ կատակներ ու շարժումներ[9]: Սիմէոն եպիսկոպոս Աղձնեացն[10] ուրիշ կարեւոր տեղեկութիւններ է տալիս նրա մասին: Գուսանները, ասում է, «Աստծոյ պատկերը այլագունում են դեղերով». «մազերը կտրում են, ծարոյրի» կամ ծարիր է քսում յօնքերին: Աւելին էլ անում էին. դեւերը չես տեսնում, ասում է, եւ քեզ դեւեր ես շինում. «Աստծոյ կերպարանն ի կերպարանս

1. Լստ. 38: — 2. Ողբ. 16: — 3. Շպհ. 40, 44: — 4. Նոյն՝ 42: — 5. Աստ՝ 138: — 6. Արծ. 332: — 7. Սրգ. 191: — 8. Գրչ. 1108, էջ 632: — 9. Աստ՝ 76: — 10. Աստ՝ 81:

*ագռաւուց ներկել ի գոյն սեւութեան՝ մրով եղծանես, այլագունես ի կերպարանս սատանայի». եւ դրանով «սոմաջա ձեռնադրես եւ այդպիսով զւարճանաս». խաղ՝ որ մահմեդականներից վերցրած է համարում: Ցարում է՝ թէ կատակերգակներդ «լեզւանի, բամբասող եւ հայհոյող» էին, եւ թէ դե՛ւր շարժում էր նրանց լեզուն. «յուշկապարիկ ձայնս ածէ ... գոտս աքսոտէ... ծաղր ածէ... մրմնջել տայ». եւ դարձեալ՝ «գոչում է, գոռոչում, նուագում, բացում, ծածկում, վրմնջում, լրբի... այլագունի, պարկեշտանայ, գեղխի, խպռզի...ճօճի, ճեմի»: Եւ երգերի համար ասում է՝ թէ դեւն «զձայնս պատրանաց տայ նուագել»: Ամուսայ մուտքի տօնախմբելու սովորութիւնն էլ կար, ուր ներկայ էին միշտ ըստ նոյն գրչին՝ գուսաններն ու վարձակները. «ի ձեռն կատարեալ բոզից ... զամսագլուխ պատւէք»*[1]:

*Դաւիթ Գանձակեցին փորձեց կանոնական մի սանձ դնել գուսանների «հեթանոսական ամօթալի գրուցատրութեան»*[2]*, բայց անօգուտ այնպէս՝ որ երեք դարերից յետոյ (ԺԵ) Սիւնեաց Առաքել եպիսկոպոսը նրանց նոյն պայմանի մէջ էր գտնում ու գրում. «Որոշները լինում են կատակներ խաղացող,- Ուրիշները մոլեգնեալք եւ ծաղրածուք. – Ուրիշները խեղկատակներ անկատար խաղերով, - Եւ ուրիշները գուսաններ դիւական պարերի»*[3]:

*Խաղի գեղարւեստական մասը պարերն են, որոնց առանձին ուշադրութիւն դարձնելու ենք: Նրանց հնագոյն նկարագրողն է Ոսկեբերանի թարգմանիչը, որ բնագրին հայկական երանգներ է տալիս: Նախ ասում է՝ թէ պարերի մէջ երկու սեռերը խառն էին. «աղջիկները եւ պատանիները կաքաւում էին նոյն ժամանակ»*[4] *եւ «մի՛ ընդ կանայս կաքաւիցեմք»*[5]*: Այդ պարերը լինում էին մերթ հանդարտ ու տատանւելով, այնպէս որ «ճեմելով եւ ճօճւելով»*[6] *հրապուրում էին հանդիսականներին, իսկ երբեմն «իբրեւ զուղտս ի գարգափս յարուցեալ», որ ոստոստելով է, «անհեղեղս վազվազեն, եւ իբրեւ զջորիս անճահս սրնգեն»*[7] *կամ ընդոստնում են: Այդ «կաքաւք եւ կայթիւնք»*[8] *կամ «տրոփիւնք»*[9] *հայ թարգմանչի համար «ծանականաց կաքաւք»*[10] *էին եւ մի «անճահս աքսոտել»*[11]*, որ ոտքը բարձրացնել կամ կից տալ է: Նմանապէս Ագաթանգեղոսը Հայոց*

---

1. *Աղձ.* 109-12: — 2. *Կա. ԻԴ*: — 3. *Ցտկ. գդս.* 420: — 4. *Ոսկ. Մտթ. Ա*, 687. *յն. չունի «աղջկանց»*: — 5. *Անդ*՝ 688. *յն. «եւս առաւել կանայք» (կաքաւելով տգեղ կերեւին)*: — 6. *Անդ*՝ 687. *յն. չունի*: - 7. *Ոսկ. Պօղ. Ա*, 664. *յն. «վազելով իբրեւ զուղտս, իբրեւ զջորիս»*: — 8. *Ոսկ. Մտթ. Ա*, 684. *յն. «Թատր»*: – 9. *Անդ*. 688. *յն. չունի*: — 10. *Անդ*՝ 687: — 11. *Անդ*. 688. *յն. չունի*:

*պարերն ու կաքաւն յիշում եւ ներկայացնում է «երգս առեալ» եւ կայթիւք վազելով»*[1], *այն է երգ ու պարը խառն:*

*Գր. Նարեկացին ակնարկելով «առ կաքաւս կայթից անախորժականաց» Աստծոյ, որ ինքն էլ չէր հաւանում*[2], *իր արւեստագէտ հոգին հաճութեամբ նայում էր նրանցից պատշաճ եւ իսկապէս գեղեցիկներին, որ նկարագրում է հրապուրիչ գրչով՝ յանձին իր կաքաւիչ պարմանուհուն որ տեսանք*[3]*: Մինչդեռ նրա «լեզւի չարժողին քաղցրերգանայր տաւիղն», այսինքն երգում էր քաղցրաձայն, նրա հետ «ձեռացն եղիչոյ (փափո՞ւկ) կամարակապ կապէր», որ ձեռքերը կամարաձեւ է, յարում էր իրար՝ բարձր բռնելով: «Ատինճաղ պատինճաղ, ստղի խտղի երգով». թերեւս ոլորուն դառնալով, ախորժական եղանակով եւ այնպէս «Հիւսէր գելեւելսն ընդ միմեանս,- Հանդարտիկ խաղայր, թիկնեթիկին ճեմէր»*[4], *այսինքն յետ-յետ գնալով:*

*Առաքել Սիւնեաց եւս համառօտ կերպով ներկայացնում է իր ժամանակի խմբական պարը, գրելով այսպէս. «Ձայն գուսանաց եւ խաղ ասել,- Ծափս հարկանել եւ ծիծաղել,- Եւ պար գոլով չատակ առնել»*[5]*. պար, երգ, ծափ ու ծիծաղ իրար խառնւած: Սիմէոն Աղձնեաց վերոյիշեալ տեղում գծագրում է Հերովդեսի դստեր կաքաւն ըստ հայ սովորութեան, սակայն առանց կարեւոր մանրամասնութիւնների. «անօրէն պարուհիները, լկտի եւ բոզահոմանի աղճատանսն հերարձակ եւ անամաչ առաջի բազմականացն»*[6]*: Ցարում է՝ թէ հայերի խնջոյքներն էլ կատարւում էին նոյնպէս «յոտնատրոփս բոզիցն», որ ինքն էլ կոչում է վարձակները*[7] *եւ թէ նրանց հանդիսատես լինում էին քահանաները, պարկեշտ կանայք եւ մինչեւ իսկ հաւատաւոր կոյսերը, որի դէմ բողոքում է*[8]*: Կաքաւի չարունակութիւնը մեզ յիշեցնում է աւելի գունագեղ, Յովհաննէս Թլկուրանցին (ԺԵ դարում), դարձեալ Հերովդի աղջկան՝ Սողոմէի վրայ: Նրա մայրը. ասում է, «Զդուստրն չինեց դիւաց դարան,- Զաչքն եւ զուներն թխացոյց.- Զերեսն*

1 *Ագթ*. 143: - 2. *Նրկ*. 79: 3. *Աստ*՝ 134: — 4. *Նրկ*. 464, 465: - 5. *Ցակ*. *գդս*. 420: — 6. *Աղձ*. 106: - 7. *Աստ*՝ 257: — 8. *Աղձ*. 108, 112. *աստ*՝ 114:

օծեց դեղ դիւական»: Ուրեմն ներկերի ծանօթ պաճուճանքն[1] անպակաս էր նաեւ հայ աղջիկների վրայից, որ մտնում էին հանդէսի կամ պարի մէջ եւ այն՝ իրենց մայրերի ձեռքով խսկ: Այդ պատրաստութիւնից յետոյ՝ Հերովդի դուստրը «Գնաց մտաւ պիղծ ժողովում. - Այնտեղ ուր իշխանները հաւաքուեցին.- Զվիզն կեռաց քան գքարրի օձ.- Մէջքն աւելի ոլորեց աղեղից», իրանն աջ ու ձախ ծռելով. «Աչքերով եւ յօնքերով նազանքով էր նայում.- Բազուկ ձըգէր (տատանում էր) քան զուռ ճօճան.- Զոտքն առեալ՝ մանիւ[2] (ման գալով) ճեմէր – Ի լեգէոն զօրքն ի նման»[3]: Զաքարիա կարճառօտ յիշում է **Գողալ** վարձակի[4] պարելու ձեւն էլ. «Ելնելով պարում էր, ասում պարի երգը եւ շարժում էր մէջքն եւ ճօճւում»[5], վերջինս **Ե** դարից արդէն ծանօթ, ինչպէս վերեւում ասաց Ոսկեբերանի թարգմանիչը:

Կային դարձեալ հասարակաց ուրախութեան առիթներ, որոնց մէջ կատարւում էին հրապարակային պարեր եւ ըստ իս մասնակցութեամբ երկու սեռերի[6]: Սմբատ Մամիկոնեանը (Է դարի) Պարսկաստանին յաղթելուց յետոյ, երբ մտնում էր Կենաց վայրքը կոչւած գիւղը, «նրանց ընդառաջեցին պարողները», գրում է Յոհ. Մամիկոնեանը, «եւ երգս առեալ բազում ինչ նրանց գովում էին» յաղթանակները, կամ լաւ եւս՝ պարսաւում էին թշնամիներին հետեւեալ խօսքերով. «գազանները կերան դիակների մարմինները Վարազի եւ գերացան. կուզ կերաւ, ուռեց ինչպէս արջը եւ աղւէսը հպարտ եղաւ քան առիւծը, որովհետեւ գայլը չատակեր էր պայթեց եւ արջը՝ որովհետեւ երբ ուտում է իր վրայ չի մնում, սովից մեռաւ. անգղները քանի որ ագահ էին, նստեցին եւ այլեւս չկարողացան վեր կենալ. մկները, որովհետեւ դէպի իրենց ծակերը չատ կրեցին, ոտքերը մաշեցին»[7]:

Վերջապէս կային սրբազան պարերն էլ, որոնց մասին խօսել եմ ուրիշ տեղում[8], թէպէտ նրանց մէջ կանանց ներկայութիւնն յատկապէս յիշւած չէ մեր մատենագիրների մօտ, որտեղ ընդհակառակն մասնակցում են նրանք հին դարերի ծանօթ յուղարկաւորական պարերին, որ պիտի տեսնենք մեր ԺԷ գլխի մէջ:

գ. Խնդրի կարեւոր կէտերից մէկն էլ նուագարաններն են, որոնցից մեզ յատուկ յիշւեցին վերեւում վկայութիւնների մէջ՝ **ջնար, քնար, տաւիղ, բամբիռն, փող, թմբուկ, ծնծղայ** եւ Հռիփսիմեանց ներբողի մէջ նաեւ **սրինգ**[9]: Այստեղ առիթն է ճշտելու եւ լրացնելու մեր հարց ընտանի գործիքների թիւը, իմաստն ու նկարագիրը:

---

1. Աստ՝ 140: — 2. Մեր. գրչ. միսնիւ: — 3. Թլկ. 735: — 4. Աստ՝ 135: — 5. Զք. սրկ. Ա, 34: — 6. Հմմտ. աստ՝ 263-64: — 7. Մամ. 42: — 8. Գեղունի, 1927: — 9. Խոր. 310:

Ոսկեդարի հայ մատենագրութեան մէջ նուագարանների հետեւեալ հետաքրքրական յիշատակութիւններր կան: Փաւստոս Տերենտիի մէկ ընթերաց մէջ դնում է «գուսանների պէսպէս ամբոխ», որոնք «**թմբկահարներր**. **սրնգահարներր**. **քնարահարներն** եւ **փողահարներն**» էին: Նոյն պատմիչր վկայում է՝ թէ մեռելների յուղարկաւորութիւնր Հայաստանում, կատարւում էր «**փողերով**, **փանդիռներով** եւ **վիներով**»[1]: Դարձեալ Սեբերիանոսը, Ե դարի թարգմանութիւնն, որի յունարէն բնագիրր չկայ, Դաւթի բերանն է դնում այս խօսքր. «Օրհնեցէք Տիրոջր **սաղմոսարանով** եւ **ջնարով** եւ **աղեաւ** եւ **տաւղով**, **ծնծղաներով**... **թմբուկով** եւ պարերով»[2], որոնցից Դաւթի սաղմոսների մէջ կայ առաջինր միայն, «տասնաղեաւ սաղմոսարանաւ»[3], որ յունարէն **փսալտերիոնի** (փսալտ կամ սաղմոս արմատից) նիւթական թարգմանութիւնն է, ոչ յատուկ մի կոչում, եւ մօտենում էր հին **հարպին**[4] (harpe):

Մեծագոյն լոյս է տալիս մեզ սրանց միասին Ոսկեբերանի թարգմանիչր, մի տեղ բնագրից հեռանալով եւ ի մի հաւաքելով Ե դարի Հայոց բնտանի բոլոր նուագարաններր. որր բաժանում է երկու խմբի՝ այսպէս. «Նուագներն արւեստագէտների խիստ ձայներով դժկամութեամբ եմ լսում. **թմբուկի**, **պատերազմական փողերի**», բոլորր պղնձից շինուած. «եւ որ չիցեն նոյնպիսիներր, այն ախորժելով լսում եմ. **փողի**, **ջնարի**, **քնարի**, **փանդիռի**, **վինի** եւ **սրնգի**»[5], ամէնր փայտեղէն կամ մետաղէ ու մեղմաձայն եւ բնականապէս այս վերջիններն էլ կիրարկւում էին առտնի խրախճանների ու թատրոնների մէջ եւ որոնց վրայ յետոյ աւելացաւ **ծնծղան** էլ, ինչպէս վերեւում: Այժմ անցնենք այդ ամէնի ճշտութեան, հիմք ունենալով գլխաւորապէս Ոսկեբերանի հայկական ցուցակր, թէպէտ նրանցից որոշներր հասարակութեան ծանօթ են եղել միշտ ու մնում են դեռ մեր օրերում:

**Թմբուկ** (պհլ. **տումբուկ**), որ հին ժամանակ փայտէ կամ պղնձէ փոքր մի շրջանակ էր, ընդհանրապէս բոլորշի եւ մերթ քառակուսի, մէկ երեսր ծածկուած կաշւով, որ կաքաւող կանայք բռնած՝ հարւածում էին ձեռքով[6], ինչպէս լինում էր մեզ մօտ եւ այս էր Տերենտի ընթրեաց մէջ, Հռիփսիմեանց ճառի ու Սարգսի յիշածր[7]: Եգիպտոսր եւ պարթեւներր –կարծեմ թէ եւ հայերր– ունէին սրա պատերազմականն էլ, մեծ, գլանաձեւ կամ տակառաձեւ, երկու բերաններր ծածկուած կաշւով, որ հարւածում էին բռունցքով[8]:

---

1. Փաւս. 232, 229: 2. Սբր. 136: - 3. Սղմ. ՂԱ, 4: · 4. Վիգ. Ե, 805: — 5. Ոսկ. Պօղ. Ա, 837, յն. «թմբկի եւ փողոց»: — 6. Վիգ. Բ, 1287. Դրմբ. Ե, 559. Սբր. աստ՝ 266: -- 7. Աստ՝ 266, 54, 204-5: 8. Վիգ. Ե, 1984:

Այս վերջին իմաստով էր անշուշտ, որ նրան խստաձայն գործիքների մէջ դրեց Ոսկեբերանի թարգմանիչը եւ որի մէկ հոմանիշն էլ պիտի տեսնենք ստորեւ:

**Ծնծղայ** (ասս. **ծեծծըլյա**), պղնձէ տափարակ ափսէ, կենտրոնը գոգաւոր ու դրսից մի բռնատեղիով: Թւով երկու էին ու հնչում էին իրար բախելով: Գործածւում էին նոյնպէս պարող կանանց միջոցով[1], յիշատակւած Լաստիվերտցու կողմից նաեւ մեր խնջոյքներում[2]. թէպէտ գործածութիւնն անւան պէս աւելի հին էր մեզ մօտ, ըստ Ոսկեբերանի թարգմանչին, որ ասում է. «Ունկնդիր մի՛ եղէք տաւիղներին, փողերին եւ **ծնծղաներին**»[3]:

**Փող**. խողովակաձեւ երկար, լայն բերանով[4]: Կարող էր լինել մեծ ու պղնձէ՝ ուղիղ ձեւով, զինւորների համար եւ կոչւում էր **շիփոր**[5] (ասս. **շիփորա**). եւ գալարուն, կոչւելով **գալարափող**[6]. կամ փոքր ու եղջերեայ կամ մետաղեայ՝ առտնին, թատերական կամ յուղարկաւորութեան հանդէսների համար եւ գործածւում էր նաեւ գուսանների միջոցով:

**Սրինգ** (յն. **սիւրինքս**), նախորդն էր՝ աւելի նուրբ, փայտէ կամ ոսկրէ, առանց բերանի բացւածքի կամ շատ նեղ մի բացւածք եւ վրան զանազան ծակեր: Կիրարկելի նոյնպէս գուսանների միջոցով[7]:

**Քնար** (ասս. **կիննարա**, յն. **կինիւրա**) համազօր ու թարգմանն էր յունական **կիթարային**[8]: Կազմւած էր ստորեւ հնչական անկիւնաւոր կամ գնդաձեւ մի տուփից եւ երկուստեք դէպի վեր կարկառած երկու աղեղնաձեւ եղջերանման ձողերից, որ աւարտում էին ուրիշ խոտորնակ մի ձողով եւ սրա ու տուփի միջեւ ձգւած էին՝ չորս, վեց կամ աւելի լարեր՝ անասունների մորթից[9]: Եփրեմի ճառերից մէկը ձեռքերի մատները քնարի տասը լարերի հետ է համեմատում. «տասն աղիքեայ լարերը մատներով իմ դիմաց քնար էին նւագում»[10]: Այս գործիքն է, որ մինչեւ հիմա **լիր** (lyre) է կոչւում եւ որ յոյների մօտ նւագում էին կանայք եւ թէ այրերը, ինչպէս թւում է նաեւ Հայաստանում, դատելով Դերէնի օրինակից[11]: Իր թելերը շարժում էին մերթ մատներով եւ յաճախ **կանառցով**[12] ասւած է մրճաձեւ կամ մագողաձեւ գործիքին, որ հարւածում էր նրանց[13]:

---

1. Նոյն՝ Բ, 1163-65. Դրմբ. Ա, 1697: — 2. Աստ՝ 266: — 3. Ոսկ. Մտթ. Ա, 64. յն. թմբկաց, սրնգաց, եւ քնարաց: — 4. Վիգ. Ե, 2323. Դրմբ. Ե, 523: — 5. Ագթ. ի Հյկ: — 6. Եղշ. 92: — 7. Վիգ. Բ, 2291-94. Դրմբ. Ե, 303-4: — 8. Ծննդ. Դ, 21. ԼԱ, 27. Ա Թագ. ԺԶ, 16, 23 եւն: — 9. Վիգ. Դ, 450-54. Դրմբ. Գ, 1439-42, 1446-49: — 10. Հյկ. Բ, 848: — 11. Աստ՝ 261-62 : — 12. Փիլ. Մնց. 399: — 13. Դրմբ. Գ, 1446:

**Ջնարն** Ոսկեբերանի թարգմանչից յիշուած է քնարի հետ՝ իբր անոտի տարրեր եւ միանգամայն մերձաւոր մի նուագարան: Պատշաճ է, որ համարենք աղեղնաձեւ եւ սնամէջ ծանօթ հին գործիք, ստորեւ խոտորնակ մի մասով իբրեւ պատուանդան եւ բազմաթիւ լարերով, ձգուած վարից դէպի վեր՝ աղեղնաձեւ գոգի մէջ[1]: Այժմեան **հարպն** (harpe)-ն էր, իր նախնական ձեւով: Այս հաստատում է եւ այն պարագան, որ գործիքը հայուհու փափուկ ու ճապուկ մատներին էր սպասում, ինչպէս Շապուհի «ջնարահար քաջամատն» վարձակը[2]: Ջնարը մի տեղում ազատօրէն թարգմանել է յն. **քորդէ** բառն էլ[3], որ նուագարանի լարն էր, Սեբերիանոսի թարգմանիչը նոյնպէս գրել է **աղի**, բայց իբրեւ գործիք եւ անջատ միւսից. «ջնարաւ եւ աղեաւ»[4] եւ յայտնի չէ՝ թէ ինչ էր միտքը:

Մի **տաւիղ** էլ տեսանք յիշուած, որ շատ յաճախ գործածւում է եւ Ս. Գրոց մէջ խառն ձեւով **քնարի** հետ միասին, յն. **կինիւրա** եւ **նաբլաս**[5] (եւ մերթ այլ[6]) բառերի դէմ, որոնց առաջինը ձայնով եւ իմաստով քնարն է, իսկ երկրորդի նշանակութիւնն անստոյգ է, որոշները **սաղմոսարանին** են հաւասարեցնում[7]: Ս. Գրոց վկայութիւններում տաւիղը գործածուած է իբր նուագարան, նոյնպէս Սեբերիանոսի թարգմանչի կողմից. «Զէ ինչ չար տաւիղն, այլ աղտեղի **երգերի գործիքն** է եղել», ճիշտ ինչպէս «եթէ քնարով Աստծուն մի հոգի **երգ մատուցանէր**»[8]: Պէտք է ուշադիր լինել, որ Ոսկեբերանի թարգմանիչը գործիքների համախմբութեան մէջ **տաւիղ** չունի, այլ **ջնար** եւ Ս. Գրոցը **ջնար** չունի (բացի մէկ զարտողութիւնից), այլ **քնար**: Կարող ենք ուրեմն այդ երկու կոչումներն հոմանիշ համարել. **ջնարը**՝ ժողովրդական, եւ **տաւիղը**՝ դասական: Այս իմաստով տաւիղն երկու անգամ թարգմանուած է յն. **սամբիւկից**[9] էլ, որ **հարպի** (harpe) մի տեսակ էր[10]: Աւելին կայ. **տաւիղը** ծագել է յն. **տաբալա** կամ **տաբէլա** բառից, որ նշանակում էր պարթեւների ռազմական թմբուկը՝ որ տեսանք[11]: Այս իմաստով մի տեղ թարգմանուած է յն. **կիւմբալոնը**, որ թմբուկ է. «տաւղօք պղնձեօք»[12], որի տեսակը նիւթից էլ յայտնի է եւ Ս. Եփրեմի թարգմանիչը գրում է՝ թէ զինւորը պատերազմի մէջ լսում է «**տաւիղի** ձայնը **բախելու** եւ գհարկանել փողերով»[13], ուր տաւիղը բախելի մի գործիք է, ուստի դարձեալ թմբուկը եւ լարաւորն արդէն թոյլ էր լինում մարտի շռինդի մէջ:

**Փանդիռը** ձայնով եւ իմաստով յն. **պանդուրիոնն** էր կազմուած գնդականման փոքր մի տուփից եւ դէպի վեր երկար եւ ուղիղ մի բազկով, որի վրայ կային երկու եւ

---

1. Վիգ. Գ, 434-41: — 2. Աստ՝ 260: — 3. Նաւմ. Գ, 8: 4. Աստ՝ 266: — 5. Գ. Թագ. Ժ, 12. Ա Մնց. ԺԶ, 5, 28. ԻԵ, 1. Բ Մնց. Ե, 12. Թ, 11. Ի, 28. ԻԹ, 25: — 6. Բ. Թագ. Զ, 5, 14. որգանոն. Ա Մնց. ԺԵ. 19. կիւմբալոն. Դան. Գ, 7. կիթառա: — 7. Վիգ. Դ, 1432: — 8. Սբր. 136, 137: 9. Դան. Գ, 5, 10: — 10. Վիգ. Ե, 1428: — 11. Աստ՝ 266: — 12. Ա Մնց. ԺԵ, 19: — 13. Եփր. Բ, 318:

աւելի յաճախ երեք լարեր[1], ինչ որ այսօր **մանդոլին** (mandoline) է կոչւում: Այս թեթեւութեամբ էր, որ տարւում էր նաեւ յուղարկաւորութիւններում[2]: Կայ Խորենացու մօտ նրա ձայնակիցն ու հոմանիշն էլ՝ **բամբիռն**, հայ գուսանների ձեռքին[3],- որոնց էլ, ուրեմն, յատուկ էր,- ժամանակեան կամ յաւ եւս գաւառային տարբերութեամբ կոչման եւ ոչ առարկային. դրա համար էլ անյիշատակ է մնացել Ոսկեբերանի թարգմանչից իբր առանձին մի գործիք. եւ որ Գրիգոր սարկաւագապետր (1215-ից առաջ) առանձնացնում է քնարից նոյնպէս «քնարներն ու բամբիռներն», որ ընկերակցում էին խնջոյքի երգերին[4]:

**Վինը** (աս. **վինա**) **լիւթ** (luth) նւագարանն էր, ինչպէս նշանակում է ասորական ձայնը եւ նախորդի մէկ տեսակը, գնդանման երկայնաձեւ տուփով եւ քան նրա երկար ու ձողակերպ նուրբ բազկով, երկու լարով, որ արաբներն յետոյ չորսի վերածեցին[5]: Եփրեմի թարգմանիչն սրանով փոխանակում է Դաւթի **քնարն**, որով հանդարտեցնում էր Սաւուղին[6]: Եւսեբիոսի թարգմանիչը այս տւել է «քնարահար» Ամփիոնի ձեռքը[7]: Բայց այդ օրինակները թարգմանչաց սովորական չեղումներն են եւ վինն Ոսկեբերանի մօտ արդէն տարբեր է քնարից, որ այս աւելի մեծ ու ծանր էր, եւ նւագելու համար՝ դրւում էր ծնկների վրայ. մինչ վինը թեթեւ էր փանդիռի պէս եւ նրա հետ ընկերակցում էր յուղարկաւորութիւններին եւս[8]:

**Երգիոնն** (յն. որգանոն) էլ յիշւած է, այժմեան **որգի** (orgue) նախնական ու փոքր ձեւը[9], եւ նկարագրւած Մամբրէի միջոցով «բազմութեամբ փողերի» եւ իբրեւ հայ ընթերցողներին ծանօթ մի բան, ինչպէս երեւում է իմ բացատրութիւններից. «որպէս եւ երգիոնն արւեստապետը ընդ մի բերան փչում է»[10]: Բայց ոչ հեշտ եւ ոչ միւսների չափ սովորական մի նւագարան էր, որն հազիւ թէ յիշատակւել է մեզ մօտ:

**Ջութակ** կոչումը երեւում է միջին դարում, որը Նարեկացին համեմատում էր եկեղեցու կոչնակին «աղեյարմար ջութակների»[11]: Անծանօթ հին մատենագիրներին, կարծեմ թէ հին գործերի միոյն նոր կոչումն էր, գուցէ մի ձեւով էլ կերպարանափոխւած: 1269-ին Երզնկայի մէջ գրւած Աստւածաշունչն (Երուսաղէմում) նկարւած է Դաւիթը մի նւագարանով, որի տուփն է մեծ, եռանկիւնի կոնաձեւ, սուր ծայրը դէպի վար. վերեւն ունի ձողաձեւ բունը, տուփից աւելի կարճ, ծայրի մօտ ձւաձեւ ուռած, եւ նրա վրայ գնդանման: Տուփն ունի երկուստեք ատամնաձեւ զարդեր, եւ

---

1. *Դրմբ. Գ*, 1450: — 2. *Աստ*՝ 265: — 3. *Խոր. Ա*, իդ. յա: — 4. *Մոփ. Դ*, 131: — 5. *Վիգ. Դ*, 430-32: — 6. *Եփր. Ա*, 377. *Ա Թագ. ԺԱ*, 16: — 7. *Եւս. Ժմ. Բ*, 120. տպ. գավին, որ սխալ է: — 8. *Աստ*՝ 265: — 9. *Դրմբ. Գ*, 316-17: — 10. *Մմբ*. 42: — 11. *Նրկ*. 243:

վերեւի եզերքի վրայ տասր զարդարուն ձողիկներ։ Լարերը քիչ են թւով, ամփոփւած բնի վրայ եւ իջնում են մինչեւ տուփի ստորոտը։ Մարգարէն ձախովը սեղմում է թելերը բնի վրայ եւ աջովը թրթռացնում է նրանց տուփի կենտրոնը[1]։ Արդեօք այս պատկերի մէջ ջութակի ձեւը չունե՞նք։

**Բարբուտ** (պրս. **բարբուտ**, յն. **բարբիտոս**) էլ մտնում է միջին դարի խնջոյքներում։ Դ Աշոտի մահից յետոյ, ասում է եդեսացի պատմիչը, Թուլացաւ հայ բանակը «նստեցին գինարբուքի, սիրեցին **բարբուտը** եւ գուսանների երգերը»[2]։ Ըստ որոշների՝ նեղաստորոտ քնարն (lyre) էր յոյների մօտ, կամ անորոշ[3]. ըստ ուրիշների՝ մեծափոր փանդիռն, իսկ (luth) պարսիկների մէջ[4], ինչ որ մօտենալու է մեր նախորդ նկարագրածին։

**Տիկը**, որը գառան կամ ուլի մորթն է, քաջածանօթ էր հիներին եւս եւ կազմում էր չինական ու հովւական նւագարանը, որի հին նկարագիրը՝ - պակաս եւրոպացիներից[5] – տալիս է մեզ Սեբերիանոսի հայ թարգմանութիւնն Ե դարից։ Իր մէջ ունէր երկու **օղընկալ փուք**, իսկ արտաքուստ՝ **հողմաբեր** մի **ցնցուղ** կամ խողովակ փչելով ներսն օդ անցնելու համար եւ **փողերը** կամ սրինգները՝ (հաւանօրէն ձեռքերի թւով երկու ինչպէս այժմ), հաղորդւած ներքին զոյգ փքերին, օդը դուրս մղելու եւ նրանց վրայ նւագ (եղանակ) յօրինելու նպատակով[6]։

**Է.** Դասական հայերէնն այդ նւագարանները նւագողներին տեղ՝ դրանցից կազմւած կոչումներ էլ, որոնցից ծանօթ են՝ **թմբկահար**, **փողահար**, **սրնգահար**, **քնարահար**[7], **ջնարահար**[8] կամ **ջնարաւոր**[9] եւ **փանդռահար**[10]։ Վերջին երկուսը հեռացած յոյն բնագրից, մէկը ճշտութեան ու վարձակներին ակնարկելու համար եւ միւսն ընդհանուր նշանակութեամբ իբր նւագածու, ինչպէս գործածւում էր յոյն բառն էլ[11]։ Դարձեալ այդ նւագարաններից թմբուկը, ծնծղան, քնարն ու ջնարը կամ տաւիղը տեսանք հայ պարողների եւ վարձակի ձեռքերի մէջ. մինչ փողը, սրինգը, փանդիռը, վինն ու բարբուտը սովորաբար հնչեցնում էին գուսանները։ Եւ մեր նւագողներն երկու սեռից գիտէին փայլեցնել իրենց արւեստը։ Յունւիլի տէրն՝ Յոհանը, 1248-ին Կիպրոսի մէջ հանդիպել է չորս հայ նւագող եղբայրների, որոնք մեծ Հայաստանից էին եկել եւ նւագում էին երեք փողեր այնպիսի ճարտարութեամբ, որ «կարծես թէ յճակից եկող

---

1. Զոպ. Բ, 190։ — 2. Ուռ. 79։ — 3. Դրմբ. Գ, 1440, 1460։ — 4. Աճռ. Ա, 1002։ — 5. Դրմբ. Ե, 315։ 6. Սբր. 136։ - 7. Աստ՝ 265։ — 8. Աստ՝ 260։ — 9. Ոսկ. Պօղ. Ա, 468, 641. յն. կիթարոդոս՝ քնարերգակ։ — 10. Եւս. Ժմ. Ա, 308. յն. նախորդ ծանօթութեան բառը։ - - 11. Դրմբ. Գ, 1438։

*կարապների ձայնն էր» ասում է եւ այնպէս «քաղցր ու չնորհալի ներդաշնակութեամբ, որ լսողը հիանում էր»[1]:*

*Մեր նուագողներն այդ նուագարաններին միացնում էին իրենց ձայնն ու լեզուն եւս: Խորենացին Հայոց վիպասանութիւնները լսել էր՝ «որոչներն երգում էին բամբիռով»[2] եւ Գրիգոր սարկաւագապետն ասում է՝ թէ վարձակները «քնարների եւ բամբիռների ընկերակցութեամբ էին երգում» իրենց մեղմեխ ձայներով[3]: Այդ երգերն յատկապէս կոչւում էին **գեղօնք** կամ **երգք խնջոյականք**[4], նիւթ ունենալով յաճախ պատմական անձերի երեւակայական կամ աւանդական վէպերը, որը Փաւստոսը սահմանեց «առասպելների երգերն»[5], եւ որոնցից Խորենացին հաւաքեց իր պատմութեան չատ մասերը: Ինչպէս Արտաչէսի եւ որդիների վարքը, Վահագնի ծնունդը, Սաթենիկի առեւանգութիւնն ու հարսանիքը, ապա տուփանքը, Արտաւազդի անէծքը, Վարդգէսի չինութիւնը[6]: Ժամանակակից անձերը եւս ինչպէս ծաղրածուների բերանն էին ընկնում[7], նոյն նպատակով մտնում էին նաեւ երգերի մէջ՝ յոյների մօտ, հաւանօրէն եւ մեզ մօտ, ուստի ծագել է **երգ արկանել** յունահայ բացատրութիւնն՝ հեգնելու իմաստով, նոյնիսկ առանց երգի. օրինակ՝ «երգ արկանեն, այպանեն, ծաղրեն»[8]: Խառնւում էին նաեւ անբարոյական նիւթեր, որ նոյն եղանակները կոչւում էին «արբեցութեան երգեր» կամ «հեթանոսական երգեր»[9], «լկտի երգեր»[10] կամ «պոռնկական երգեր»[11], եւ Բիւզանդացիների համեմատ «աղտեղութեան գեղօնից»[12]: Սրանց չարունակութիւնն են մարմնապաչտ սիրոյ տաղերը, որ մեր քերթողներն յօրինեցին՝ սկսեալ ԺԴ դարից, եւ չատերը տպագրութեամբ էլ ծանօթ են արդէն:*

*Ակնարկեցինք նոյն երգերի ու երգարանների ներկայութիւնը նաեւ հարսանեկան ուրախութիւնների մէջ, որոնք այդ առթիւ հիւսում էին փեսայի գովեստն էլ[13], եւ որ մանրամասնում է Գր. Սկեւռացին, ասելով թէ «արտաքին հանդիսից վիպասանք» գովում էին այնտեղ զարմի քաջատոհմութիւնը, արքայական կամ իչխանական պատիւը, պատերազմական յաղթանակները, զարմանալի դաստակերտները, կատարեալ դատաստանները, ստացւածքների յղփութիւնը, մարմնի զօրութիւնը, հասակի չափակցութիւնն եւ անդամների վայելչութիւնը[14]: Պարագլուխը, որ ճարտարագոյն արւեստագէտն էր, չարադրում էր այնտեղ իսկ այդ ամէնը, եւ պարը*

---

1. ***Բզմ***. 1862, 16: — 2. ***Խոր. Ա***, *լա*, *իդ*: — 3. ***Սոփ. Դ***, 131: — 4. ***Ոսկ. Պօղ. Ա***, 66, 894, 895: — 5. ***Աստ***՝ 260-61: — 6. ***Խոր. Ա***, *ļ. լա*, ***Բ***, *ծա*, *կա*: — 7. ***Աստ***՝ 257-58: — 8. ***Ոսկ. Մտթ. Ա***, 362: — 9. ***Աստ***՝ 204: — 10. ***Եղչ***. 283: — 11. ***Աղձ***. 108: — 12. ***Ոսկ. Պօղ. Ա***, 894: — 13. ***Աստ***՝ 75: — 14. ***Սոփ. ԺԵ***, 260-61:

կրկնում էր եղանակելով: Սրանց մօտ տեսանք դատապարտելի երգերն էլ[1], որ ի սպառ խափանելու անկարող զգալով Շնորհալին ինքն իրեն պատւիրեց, որ գոնէ պսակի ժամանակ գուսաններն ու վարձակներն եկեղեցուց դուրս մնային ու լռէին, «որովհետեւ դիւական երգերը մի՛ խառնեցէք աստւածային երգերի հետ»[2], ներսից ու դրսից միաժամանակ երգելով:

Այսպէս ուրեմն հայ վարձակը գուսանի հետ անպակաս էր թատերաբեմի վրայ, ընկերական խնջոյքներում եւ ամէն ուրախութիւնների մէջ, իբրեւ կատակերգակ, կաքաւիչ, երգիչ եւ նւագող, երեւան բերելով իր համարձակութիւնն ու ճարտարութիւնը, - բայց ոչ եւ պարկեշտութիւնն, - արւեստի մէջ՝ ինչ կերպով որ ըմբռնում էին այն հները, բաւական տարբեր այժմեան եւրոպական հասկացողութիւնից:

## ԳԼՈՒԽ ԺԴ

### Քաղաքական կեանքի մէջ

Շատ սակաւաթիւ են ազգերը պատմութեան մէջ, եւ այն էլ քաղաքակիրթներից միայն, որ կնոջ մուտքը քաղաքական ասպարէզից ներս թոյլ տւած լինեն, ինչ որ ընկերային կեանքի հետ նրա մասնակցութեան[3] լրացումն ու պսակումն է: Այսօր իսկ ամենից աւելի զարգացած Եւրոպայի մէջ հազիւ նշմարելի է նրա երեւումը մէկ երկու տեղ, հայրենի գահերի վրայ միայն, երբ չկան արու ժառանգներ, որոնց սեփական է միշտ ժառանգութեան իրաւունքը: Հին քաղաքակրթութեան մեծագոյն ռահվիրանն Եգիպտոսն եղաւ, որ նախ նստեցրեց իր գահի վրայ, կամ թոյլ տւեց մխրճւել աշխարհի վարչութեան մէջ, մի Խաթշեփսովէի, մի Արսինոյէի կամ մի Կլէոպատրայի: Ասորեստանը հետեւեց նրա օրինակին մասամբ միայն, եւ տւեց անւանի, բայց կէս աւանդական Շամիրամին ու Նիտոկրիսին: Հրէական ժողովուրդը վարիչ ունեցաւ Դեբովրանը, սակայն աւելի մարգարէի հանգամանքով: Գոթողիան՝ յափշտակիչն իշխանութեան, եւ Ցեզարէյն ազդեցիկ՝ չնորհիւ ամուսնու թուլամորթութեան:

Ըստ Սեբէոսի տեղեկութեան 628-ին, երբ սպանւում է Պարսկաստանի Գ Արտաշիրը, նրա տեղը բազմում է Խոռեամը, որ նոյն վախճանն է ունենում եւ իրեն յաջորդում է իր կինը՝ Բորը, (ըստ ուրիշների Բուրաղուխտ) դուստրը Խոսրով արքայի, մի քանի ամիս. յետոյ ոմն՝ Խոսրով եւ ապա նրա դուստրն Ազարմիդուխտը[4]: Բայց այդ

1. Աստ՝ 75: 2. Շն. Նմկ. 42: — 3. Աստ՝ գլ. Ե: – 4. Սեբ. 136:

կանայք ծանօթ չեն մատենագէտ եւրոպացիներին իբր գահակալներ. Բիւզանդիոնի վարիչ կայսրուհիները գերազանցեցին թւով, ինչպէս երեք Թէոդորաները, երկու Իրենէները եւ Զոյի, որոնք իշխեցին կամ գահակցութեամբ կամ յաջորդութեամբ իրենց ամուսինների: Եւ Վրաստանը պարծենում է իր Թամար եւ Ռուսուդան թագուհիներով, նստած մէկը հօր եւ միւսն եղբօր գահի վրայ:

Հայաստանի, ոչ միահեծան թագաւորութիւնն, այլ արքունի գաւազանի ներքոյ բաժանուած աւատական իշխանութիւնների, մրցում է մասամբ Բիւզանդիոնի հետ, բանալով հայ թագուհու եւ իշխանուհու առջեւ քաղաքական ասպարէզն իր ամբողջ ընդարձակութեամբ եւ հաստատուն մի դրութեամբ, որ տեւում է դարերի հոլովման մէջ եւ որտեղ նրանք փայլում են արժանապէս կիրարկութեամբ իրենց տրուած իրաւունքներին, ինչ որ արդիւնքն էր հայ հասարակութեան ունեցած վստահութեանը նրանց զարգացման եւ իմաստութեան վրայ: Հայուհու մասնակցութիւնը քաղաքականութեան՝ նաեւ աւելի բազմակողմանի է քան իր օտար սեռակիցներինը, դատելով գէթ մեր ունեցած տեղեկութիւնների չափով: Որով նրա փառքի էջն է, որ բացում է մեր այս գլուխը:

1.- **Իշխանակցութիւն**.- Առիթ ունեցանք տեսնելու թէ հայուհին միացնելով կեանքը թագաւորի կամ մի իշխանի հետ, նրան հաւասար մի տիտղոս էլ ստանում էր ընկերութիւնից իգական ձեւով[1]: Ի՞նչ էր նշանակում տիտղոսի այդ հաւասարութիւնը, եթէ ոչ հաւասարութիւն եւ պատիւ ընկերութեան առջեւ, թէպէտ ոչ եւ վարչական, որից խառնակութիւն պիտի ծագէր. բացի այն պարագաներին որոնց հետ երկուութիւնը կարող էր հաշտուել, ինչպէս են նրանք՝ որն անցնում ենք թւելու:

Արշակունի արքունիքում քրիստոնէութիւնից շատ առաջ տիրում է արդէն թագուհին ընդ արքայի իշխանակցութեան գաղափարը: Այնպէս որ պաշտօնական յիշատակութիւնների եւ ինչ-ինչ գործերի մէջ նրանք յաճախ միասին են երեւում: Հասել են մեզ Դ Տիգրանի երկու դրամները, որոնց մէկ երեսի վրայ քանդակուած է արքայի դէմքը, եւ միւսին՝ նրա «քրոջ՝» **Երատոյինը**[2]: Ըստ վկայութեան Տակիտոսի՝ Գ. Տիգրանի զաւակները, որոնցից էին եւ սրանք, «իրար հետ միացած էին ամուսնութեամբ եւ թագաւորութեամբ[3]»: Նոյն բանը յետոյ կրկնեց միջին դարում Ա. Հեթումի դրամների վրայ, որ Զապէլ թագուհու հետ միասին քանդակուած է դրանց մէկ երեսի[4] վրայ:

Դիցապաշտ Հայաստանը խոնարհուած է խաչի առջեւ եւ հարկ էր, որ ունենար իր հոգեւոր հովւապետը: Նրան ընտրելու է մի ժողով, որի գումարելու մէջ Տրդատի հետ

1. *Աստ*՝ 32, 119: — 2. **Փամ. արգ.** 77: — 3. **Տակ. Բ, գ**: — 4. **Սիպ.** 25, **տխ. Բ**, 18-23:

իրենց ձայնն ունէին երկու տիկիններ, ինչ որ շատ ուշագրաւ է. Արքան, ասում է պատմիչը, «**Հանդերձ միաբանութեամբ իր կնոջ՝ Աշխէն տիկնոջ եւ քրոջ՝ Խոսրովիդուխտով**, հրամայեց ժողովի գումարումը» բոլոր ազատանին իր նախագահութեամբ ընտրում են Հայոց անդրանիկ հայրապետին՝ Գրիգորին։ Գուցէ նաեւ ժողովում ներկայ էին այդ տիկինները,- թէպէտ պատմիչը չի յիշատակել,- իշխանարար եւ ոչ 1441-ի ընտրութեան մասնակցողների պէս[2]։ Միակ դիպուածը չէ այդ ուր արքայի հետ պաշտօնական գործերի մէջ երեւում են ամուսինն ու քոյրը։ Լուսաւորիչը Կեսարիա է գնալու ձեռնադրուելու համար եւ այդ նպատակով թագաւորը մի խնդրագիր է գրում Ղեւոնդիոս արքեպիսկոպոս Կապադովկիայի, որտեղ խօսում են «Տրդատիոս թագաւորը, Հայոց երկրի աւագանու, զօրքով, եւ **Աշխէն տիկինը** եւ **օրիորդ Խոսրովիդուխտը**»։ Եւ Ղեւոնդի պատասխանում նորից յիշւում են «Տրդատ թագաւորը Հայոց աւագանու, **Աշխէն տիկինը** եւ **օրիորդ Խոսրովիդուխտը**[3]»։ Չենք կարող պնդել այդ երկու թղթերի վաւերականութեան վրայ։ Բայց եթէ իրական իսկ չլինեն, յայտնի է՝ թէ պատմիչը դրանք կերտեց իշխանակցութեան գաղափարի թելադրութեամբ, որ կար եւ յատուկ էր ազգին եւ միանգամայն արդիւնք հայուհու այդ շրջանի եկեղեցում վայելած յայտնի վարկին[4]։

Արշակունեաց գահը տապալւում է Ե դարում եւ աւելի ուշ կանգնում են ուրիշներն, որոնց վրայ բազմող կանայք ինչ-ինչ առիթներով ցոյց են տալիս նոյն հին իրաւունքը։ «**Գերապատուելի ծայրագոյն իշխանութեամբ**՝ բարի արմատներով մեծափառ թագուհին Հայոց **Կեռանը**», գրում է Ստեփանոս քահանան 1283-ին[5] եւ Յակոբ եպս. նրան կոչեց «**տիրատուր իշխանութիւն**[6]», որը լոկ անուանական չէր, այլ գործնական, թէ այս տիկնոջ եւ թէ այլոց համար։ Նախապէս տեսանք արքունի հարկերի թողութիւնը **Խոսրովանոյշ**, **Կատրանիդէ** ու **Թագուհի** դշխուհիների միջոցով, որոնք իրենց իշխանութիւնը միանգամայն չեշտում են իրենց ամուսնու կենդանութեան օրով, ասելով. «հաստատել եմ.- կամ եղեւ ինձ եւ թողեալ եմ.- ազատեցի», միշտ առաջին դէմքով[7]։

Տաթեւի վանքի մօտ կար Ցուրա բերդը, ուր ելուզակներ էին ապաստանել եւ մեծ վնաս էին տալիս ուխտին, սպանելով նաեւ Յակոբ եպիսկոպոսին էլ։ Վասակն՝ Սիւնեաց արքան, քանդեց ու բնաջինջ արեց չարութեան այդ բոյնը եւ մի վճիռ կատարեց այս ձեւով. «Աստծոյ շնորհիւ, աստուածասէր եւ բարեպաշտ թագաւորի՝ Վասակի, Սեւադա

---

1. Ագթ. 594։ 2. Աստ՝ 155։ — 3. Ագթ. 600, 614։ - 4. Աստ՝ է, 2։ 5. Հւք. յշտ։ — 6. Աստ՝ 161։ —
7. Աստ՝ ժ, 3.ա։

իշխանի եւ **իրենց մօրը՝ Շահանդուխտի**» աւերել նոյն տեղը եւ հրամայել, որ այլեւս չկարողանայ վերաշինել ամրոցը[1]: Որդիների հետ արքայամայրն էլ ունի գործի մէջ իր իշխանական ձայնը, որ կարծես թէ զօրացնում ու լրացնում է նրանց:

Միեւնոյն իրաւունքները վայելում էին նաեւ իշխանուհիներն իրենց գաւառի հպատակների նկատմամբ: Այսպէս ապահարկութեան օրինակներ տեսանք նաեւ նրանց կողմից[2]: Արցախի Հաւուց պտուկ ուխտի առաջնորդը՝ Յովհաննէսն ու միաբանները 1183-ին ծանուցանում են թէ նոյն եկեղեցին կառուցել են «**իշխանութեան** Հասանի որդու Վախտանգի եւ **նրա ամուսնու՝ Մամքանի**[3]» (կամ **Մամայի**)[4], Հաթերքի տէրերի: Մի գրիչ Ամադին Շահուռնեցուն նշանակում է սպարապետ «ի դրան թագաւորաշուք **իշխաններ** Բուրթելի եւ **Վախախի**[5]»: Նաեւ 1329-ին Վայոց ձորում օրինակւում են Լամբրոնացու մեկնութիւնները «տեղի եւ գաւառի **տէրութեան** մէջ մեծահաւատ իշխանաց իշխանի պարոն Բուրթելի, եւ **իր երկիւղազարդ ամուսնու եւ մեծահոգի Վախախի**[6]», որ Սիւնեաց Յովհաննէս եպիսկոպոսը որակում է «դշխոյափառ քրիստոսասէր զոյգն» Բուրթայի[7], ցոյց տալով նրա ներքին եւ արտաքին չքեղութիւնը: Երկու հարազատները 1297-ին Վայոց ձորի Ս. Սիոն անապատի մէջ մի եկեղեցի են կանգնեցնում «**ի պարոնութեան** այս տեղի գեղապանծ իշխանի՝ Վարհամի, **եւ բարեպաշտուհու՝ Մամքանի, եւ իր ամուսնու՝ Գոնձայի**[8]»: Այդ իշխանը համանուն սպարապետն էր[9], որդին յիշեալ Շահուռնեցուն եւ Մամքանն՝ իր մայրը, հարսի հետ իշխանակից նշանակւած որդուն: Գեղարքունեաց Բրդի Այրք գիւղի մէջ չորս եղբայրները կառուցող են լինում նոյնպէս մի աղօթանոցի «**իշխանութեան** Հասանի եւ **Մամքանի**, Գրիգորի եւ **Ասփէրին**»[10], որ Դոփեաններ են, ծնողները որդին ու բարեպաշտուհի կինը[11]: Յակոբոս քահանայ գրիչը 1313-ին մի Աւետարան է օրինակել Շիրակի մէջ, «տեղի **տէրութեան** Փահլաւունի քաջ եւ ընտիր պատերազմողի կայսերակերպի, որի անունն Զաքարիա է յորջորջում... **եւ ամուսնու նորին պարոն Խորիշահի**, որ Շահնշահի քոյրն է»[12] Զաքարեանց, որդու Բ Իւանէի: Եղիվարդի տէրերի[13] պաշտպանեալը՝ Ներսէսը, 1318-ին յիշում է նրանց այսպէս.

1. *Օրբ*. 180-84: — 2. *Աստ*՝ 201: — 3. *Արց*. 182: — 4. *Աստ*՝ 170: — 5. *Խղբ*. 21: — 6. *Հւք. յշտ*: — 7. *Սոկ*. 182: — 8. *Անդ*՝ 113: — 9. *Աստ*՝ 228: — 10. *Ազ. հնդ*. 1910, Ա, 18: — 11. *Աստ*՝ 199, 202: — 12. *Հւք. յշտ*: — 13. *Աստ*՝ 162:

«բարեպաշտ **իշխողները**՝ մեծափառ պարոն Ագիգրէգն եւ **ծնողագութ տիկինն իմ Վախախն**»[1]:

Այդքան ընդհանուր էր ուրեմն ազգի մէջ հայ տիկնոջ իշխանակցութեան գաղափարը. որի գործնական օրինակներից. որ տեսանք ուշագրաւ է եւ այս: Անանիա Մոկացին. երբ 941-ին հայրապետական աթոռն ելաւ. ապստամբուած տեսաւ Սիւնեաց Յակոբ եպիսկոպոսն. ուրիշ մի քանի պաշտօնեաների հետ եւ միացած Աղուանից քաղկեդոնական կաթողիկոսին: Նորընտիր հայրապետը գնաց Սիւնիք եւ Սմբատ ու Բաղաց Ջւանշիր իշխանների օգնութեամբ նւաճեց Յակոբին: Բայց նա յետոյ նորից գլուխ բարձրացրեց եւ երբ Անանիան երկրորդ անգամ (949-ին) գնաց Սիւնիք. Յակոբը Ջւանշիրի մօտ ապաստան էր գտել Կապան ամրոցում եւ իշխանները չէին յօժարում նրան իրեն յանձնելու: Այն ժամանակ բանադրեց եպիսկոպոսին ու Սիւնեաց աշխարհին ամբողջովին եւ վերադարձաւ: Բանադրանքը տեւեց մինչեւ ըմբոստի մահը: Այս ամենը ինքը կաթողիկոսն է պատմողը[2]: Իսկ Գանձակեցին չի ակնարկում նրա երկրորդ ուղեւորութիւնը. եւ «**գրի՛ր**, ասում է, **Սիւնեաց տիկնոջը**. նրան իր ձեռքը տայ». որպէսզի խրատի եւ թերեւս ուղղութեան գայ. «եւ նրանք (Սիւնիքն եւ տիկինն) չտւեցին նրան նրա ձեռքը եւ գնոսա եւս արար ընդ բանիւ կապանաց[3]»: Այդ տիկինը Սմբատի ամուսինը՝ **Սոփիան** էր. որ 936-ին դեռ շինարարութեամբ զբաղւած տեսանք[4]: Եթէ ստոյգ է գրութիւնը. պէտք է. որ Անանիայի երկրորդ երթից առաջ լինի եւ ապացոյցը տիկնոջ քաղաքական մեծ ազդեցութիւնն է. որ ունէր աշխարհի մէջ եւ որին նախամեծար է համարում դիմել կաթողիկոսին քան իշխաններին:

Եթէ մեր իշխողները պաշտպանում ու կառավարում էին իրենց գաւառները զօրութեամբ ու սրով. իշխանուհիներն էլ իրենց հրամանի ներքոյ ունէին չափաւոր զինւորներ. որոնց պաշտօնն էր պահպանել նրանց ապարանքը[5] եւ ընկերակցել նրանց հեռաւոր կամ ամայի ուղեւորութիւններին զգուշութեան համար վտանգներից: Այսպէս Եղիվարդի յիշեալ տիկինը՝ **Վախախը**. ակնարկելով Քրիստոսի դատաստանին. գրում է թէ այնտեղ «գտնւելու եմ միայնակ **առանց զօրքերի, որ այժմ ունեմ**»[6]. այս ասում էր մինչդեռ ամուսինը կենդանի ու գործում էր[7]: Իսկ տիկինների դերն հպատակների նկատմամբ աւելի բարոյական էր. սփոփել իրենց հովանուն յանձնւած ժողովրդին գթութեան գործերով. դիւրացնել նրանց կենցաղը հասարակութեան օգտակար շինւածքներով. արծարծել նրանց բարեպաշտութիւնը սրբազան կառուցումներով.

1. **Հւք. յշտ**: 2. **Արր**. 1897, 132, 139, 143: 3. **Կիր**. 48-49: 4. **Աստ**՝ 218-19: 5. **Աստ**՝ **Բ**, 9: — 6. **Հւք. յշտ**. 1318: 7. **Աստ**՝ 235:

գործեր, որոնք թւեցինք մեր Ժ ու ԺԱ գլուխներում եւ որոնք ազնւացնում էին եւ աւելի հարկաւոր ու բաղձալի էին դարձնում նրանց իշխանութիւնը եւ սիրելի՝ նրանց անձը:

2.- ***Փոխանորդութիւն***.- Կային առիթներ, ուր Հայ տիկինը ստանձնում էր աշխարհի կամ գաւառի վարչութիւնը գլխովին. օրինակ, երբ ամուսինն հեռու էր գահից կամ վախճանւած եւ գահաժառանգը բացակայ կամ դեռ անբաւական կառավարելու: Այդտեղ հայուհին իր իշխանութեան հետ հանդէս էր բերում միշտ առնական հոգի ու կորովի մի բազուկ, որ պաշտօնը պահանջում էր իրենից:

*Արշակ Բ-ն նենգութեամբ մատնւած Պարսկաստանի ձեռքը, շղթայակապ հեծում էր Անյուշ բերդի խաւարամած մենութեան մէջ, իրեն ընկեր ունենալով իր հաւատարիմ սպարապետի՝ Վասակի, խոտալից մորթը: Իր որդին՝ Պապը, նախապէս պատանդ էր գնացել Յունաստանի կայսրի մօտ, այնտեղ էլ մնում էր, եւ Մուշեղն, որդին ու յաջորդը Վասակի, ուրիշ նախարարների հետ գնացել էր օգնութիւն հայցելու կայսրից եւ Պապին բերելու նստեցնելու հայրենի աթոռի վրայ*[1]*: Այդ պահին Հայաստանի մէջ մնում էր* ***Փառանձեմ*** *թագուհին, որ աշխարհի վարիչն ու պահապանն էր: Մեր երկրի ոխերիմ թշնամին՝ Շապուհը, յարմար ժամանակը գտաւ, ծածկելու մեր աշխարհն «հինգ հարիւր բիւրով», առաջնորդութեամբ Զիկ ու Կարէն զօրավարներով սկսեց հրի ու սրի ճարակ դարձնել այն: Ո՞վ կարող էր դիմադրել այդ հեղհեղին: Հայոց տիկնոջն ուրիշ բան չէր մնում, բայց փրկել եւ ապահովել ազնւական ու քաղաքացի հայութիւնը, որը մեծագոյն ատելին ու հարւածելին էր թշնամուն: Հաւաքեց նրանցից մեատասան հազար հոգի եւ նրանց վեց հազար կանանց եւ իր աշխարհն ու գահն ամփոփեց Արշարունեաց անմատոյց Արտագերս ամրոցում, որը Կամսարականներից յափշտակել, ընդարձակել եւ ամրացրել էր ինքը՝ Արշակը, իբրեւ համբարոյ եւ պատսպարութեան տեղ վտանգի ժամանակ, ինչպէս այդ առիթն էր. «որովհետեւ այդ բերդն ամուր էր», եւ բերդից աւելի՝ պարսպապատ բարձրաբերձ մի քաղաք, բովանդակելու համար այնչափ բազմութիւն:*

*Փառանձեմի փոքրիկ թագաւորութիւնը դարձաւ, ուրեմն այդ բարձունքն, որ տասնչորս ամիս անջատւած աշխարհից ու պաշարւած մնաց: Ապահովութիւն ու պաշար չէր պակսում պաշարւածներին, որ իրենց օրերն անցկացնում էին նոյնիսկ ցնծութեամբ ու խնջոյքներով, ինչպէս խաղաղութեան ժամանակ*[2]*: Այդ շրջանին Պապն եւ Մուշեղը ստէպ բանակցում էին դշխուհու հետ եւ չարաթ մի անգամ Բիւզանդիոնից նրանց բաներ էր հասնում ուղղակի «****աշխարհի տիկնոջ՝ Փառանձեմին****», միակ տէրն ու*

1. ***Աստ***՝ 144: 2. ***Աստ***՝ 117:

*փոխանորդն արքայական իշխանութեան: Ծածուկ մի անցքից սպրդում էր ներս եւ խրախուսում էր թագուհուն «որ ժուժկալ լինի եւ բերդը չտայ պարսիկների ձեռքը» մինչեւ իրենց ժամանումը*[1]*: **Ճշմարիտ մի վարիչ էր ուրեմն տիկինը, որ իր** թագաւորութիւնը աւարտելու էր աւա՜ղ տխուր մի վերջաբանով*[2]*:*

***Փոխենք վարագոյրը: Պապի սպանուելուց յետոյ յոյների ձեռքով**[3]**, Վարազդատը՝** նոյնպէս Արշակունի, նրանց օգնութեամբ յափշտակել էր գահը, որ իրեն չէր պատկանում եւ վատարար փողոտել էր կորովի ու հաւատարիմ Մուշեղին: Սրա եղբայրը՝ Մանուէլը սպարապետական սուրը ձեռքին, եկաւ վանեց Հայաստանից յափշտակիչը, եւ ղեկն իր ձեռք վերցրեց: Պապի երկու որդիները դեռ մանուկ էին եւ քաջ ու տիրասէր Մամիկոնեան զորավարը եւ նրա կենակիցը՝ **Զարմանդուխտն** ու զաւակներն «վերցրին նրանց, **ի տեղի թագաւորի կալեալ**, ի պատիւ շրջեցուցանէր», **ասում է պատմիչը: Մանաւանդ թագուհին «տիկնութեան մեծ շուքով պատւում էր»** իբրեւ իսկական հրամանատար աշխարհի: Յետոյ կապւեց պարսիկ տէրութեան հետ, **նրանց բարեկամութիւնը շահաւոր տեսնելով հայրենիքին, ըստ որի Յունաստանի** ընտրած թագաւորը վտարել էր աշխարհից եւ անհաճոյ էր դարձել նրանց:*

***Զարանախանձ Մերուժան Արծրունին ուզելով Մանուէլին բաժանել** Պարսկաստանի բարեկամութիւնից, որոց մօտ իրենը նւազում էր, պղտորեց նրա միտքը, խաբելով՝ թէ նրանք մտադիր են սպանել նրան: Մամիկոնեանը հաւատաց, յարձակւեց եւ **կոտորեց Սուրէն մարզպանի բանակը**, որ եկել էր թագուհու պաշտպանութեան համար եւ նրա կեանքը շնորհելով արձակեց: Հայաստանը նորից մնաց ինքնագլուխ եւ **Մանուէլն ու զինակիցները «տիկին Զարմանդուխտին** ... **ի գլուխ առեալ, ի տեղի թագաւորի շրջեցուցանէին**», կրկնում է պատմիչը, եւ զէնքը ձեռքին պահպանում էին հայրենիքը[4]: **Այդպէս Հայոց թագուհին վարեց թագաւորի պաշտօնը մի քանի տարի եւ զօրացրեց Մանուէլի բազուկը, մինչեւ որդիներն Արշակն ու Վաղարշակը հասան եւ** աւագանու ժողովը նրանց երէցը թագով պսակւեց եւ կրտսերն նրա երկրորդն եղաւ[5]:*

***Կիլիկիա ենք անցնում**: 1373 **թւականն է: Մեր իշխանները Դ Կոստանդինին** սպանելուց յետոյ, «միաբան հաճութեամբ, ասում է Դարդէլը, **իշխանութիւնը յանձնեցին Հայոց թագուհուն» Մարիունին** Գ Կոստանդնի կնոջը[6], իբրեւ ժամանակաւոր վարիչ, «մինչ հասեալ գայցէ Լեւոնը (Ե) իրենց բնիկ տէրը», որ իրենք էին ընտրել: **Եւ** նրան հրաւիրող դեսպաններ էին ուղարկել, որոնք խօսում էին Հայոց թագուհու*

---

1. ***Փաւս***. 168-70: — 2. ***Աստ՝ ԺՁ***, 4: - 3. ***Աստ՝*** 144: -- 4. ***Փաւս***. 235-37, 240-48: — 5. ***Աստ՝*** 54-55. ***Փաւս***. 256: - 6. ***Աստ՝*** 163:

կողմից. «որ ժողովրդի հաճութեամբ ***իր ձեռքում ունի թագաւորական իշխանութիւնն***» եւ կաթողիկոսին, ազատանուն եւ ժողովրդեան. Լեւոնը յանձն առաւ եւ խոստացաւ գալ Կիլիկիա, հրամայելով, որ մինչեւ իր ժամանումը «նախկին Հայոց թագուհին» եւ ուրիշ չորս խնամակալներ «միաբանութեամբ պահպանեն եւ կառավարեն պետութիւնը մեզ համար եւ մեր անունը»: Յետոյ փոքրաթիւ գնդով ու շատ դժւարութիւնների միջով գիշերով հասաւ Սսոյ մօտ եւ պատգամաւոր յղեց «դէպի թագուհուն եւ դէպի քաղաքի ժողովրդին» ծանուցանելու գալուստը[1]: Մարիւն իր պաշտօնն սկսեց 1373-ի ապրիլին եւ Լեւոնը հասաւ յաջորդ տարւայ յուլիսի 26-ին[2], որով իշխեց տասնհինգ ամիս:

*Փոխանորդութեան իրաւունքը վայելում էր հայուհին նաեւ իշխանական գահերի վրայ: Ձ դարի երկրորդ քառորդի սկզբին հետաքրքրական մի դէպք է **Սահակիա** տիկին Սիւնեացն, ըստ իրենց պատմիչի,- եթէ սակայն երեւակայութիւն չի խառնել գրածին: - Այրի մնացած անանուն ամուսնուց մատաղ մի որդւով, տիրարար կառավարում է աշխարհը: Երբ իրենց Մուշէ եպիսկոպոսն վախճանւում է, բոլոր ազատանին եւ աւագ քահանայութիւնը դիմելով իբրեւ իշխանապետի «մեծ բարեպաշտուհի՝ Սահակիան, խնդրում էին որպէս իրենց առաջնորդ»: Եւ նա դեսպաններ է յղում պարգեւներով Մուշէ կաթողիկոսին, խնդրելով գալ եւ ընտրել իրենց հովիւը: Հայրապետը մեծ պատրաստութեամբ գնում է, որ «տիկինն իր որդու հետ եւ բոլոր ազատազունդ հեծեալներով եւ բազում քահանաներով եւ տանուտէրներով ելաւ ընդ առաջ», եւ մեծարանքով ընդունեց: Այնտեղ ընտրում է կաթողիկոսին ու ձեռնադրում է Երիցակին առաջնորդ Երիցու վանքի, ուր գնալու համար Սահակիան ընծայում է նրան «արքունի վրանը» ամէն կազմով եւ նստեցնում է «ոսկեպատ կառքում սպիտակ ջորիներով[3]», որ նոյն տիկնոջ սեփականութիւնն էր[4]:*

*Վասպուրականի տէրը՝ Գ Դերենիկը, երբ դաւադրութեամբ սպանւեց[5], իր հինգ զաւակները դեռ շատ փոքր էին[6]: Հայրենի բարձն անւանապէս յանձնւեց իննամեայ անդրանիկին՝ Աշոտին, իսկ բուն իշխանութիւնը իր ձեռքը վերցրեց մայրը՝ **Սոփին**: «Արժանացուցանէ զսիրտ իւր», գրում է անանուն պատմիչը եւ «**առնաբար իշխանութիւնը ունի**» նահանգի «օգնութեամբ» իր մեծ ծնողի՝ Աշոտի[7], որի արեան հետ ժառանգել էր կորովն էլ: Իսկ աշխարհի պահպանութիւնը, որ զինւորական ձեռքերին էր կարօտում, տւեց տիկնոջ քեռորդուն՝ Գագիկ Ապումրւանին[8]: Սոփիայի այդ պաշտօնը*

---

1. *Դրդ*. 68-70, 78-79, 99: — 2. *Նոյն*՝ 68, 112: — 3. *Օրբ*. 52-54: — 4. *Աստ*՝ 115-16: — 5. *Աստ*՝ 44-5: — 6. *Աստ*՝ 89: — 7. *Արծ*. 302: 8. *Աստ*՝ 62:

կարճ տեւեց, Հազիւ մէկ տարի եւ ութ ամիս անցաւ, մահն եկաւ խլեց նրան[1]։ Եւ այդ վաղաժամ մեկնումը պատճառ եղաւ անփորձ զաւակների որոշ ժամանակ տառապելու[2], զրկելով նրանց մայրենի իմաստուն առաջնորդութիւնից։ Սակայն իր եւեւ թողեց ուժեղ միսերունդ եւ Հանդիսացաւ մայրն ու նախամայրն ինր թագաւորների.

Իրեն բախտակից եղաւ կրտսեր քոյրը՝ **Մարիամը**, Սիւնեաց տիկինը, որ չատ կանուխ այրի մնաց տՀաս որդիներով[3] եւ «պաՀպանեալ լինի, ասում է, մի քիչատակագիր, ի վերին խնամքով անվրդով **օգնութիւնն չորս որդիների**», ինչ որ Հեչտ գործ չէր քաղաքական այնպիսի դժւարութիւններում, ինչպէս նկարագրում է գրիչը յարելով «որ ոչ պատկառեմ սիրող Քրիստոսի անւանել եւ կենդանի վկայ, որ այնքան ժամանակ երեր յանձին ժուժկալութիւն Հաւատոյն[4]» եւ առաջնորդական ժիր գործունէութեամբ, չնորՀիւ իր բարձր իմացականութեան[5], մինչեւ անդրանիկը՝ Գրիգոր Սուփանը, յաջորդեց ծնողին «իմաստութեամբ եւ յաջողութեամբ» գերազանցելով իր Հարքը, ասում է պատմիչը[6], ինչպէս պատրաստել էր իրեն իմաստուն մայրը։

3.- **Յաջորդութիւն**.- Սովորական ոճով մեր ազգի մէջ թագաւորներին եւ իշխաններին յաջորդում էին իրենց արու զաւակները եւ նրանցից անդրանիկը եթէ մեռած էր, միւսներն ըստ աւագութեան կարգի։ Իսկ արու զաւակ չլինելու պարագային, փեսան էր ստանձնում վարչութիւնը։ Այս դրութեան օրինակները բազմաթիւ են պատմութեան մէջ եւ տեսանք նաեւ այստեղ[7]։ Բայց ունենք նաեւ ուրիչներ էլ, ուր Հայուհին այրի եւ անզաւակ մնացած, յաջորդէր Հօրը եւ կամ դուստրն էր՝ (դրւած խնամակալների ներքոյ՝ եթէ անՀաս էր), բազմում է ամուսնու կամ Հօր գահի վրայ, իբրեւ օրինաւոր յաջորդն ու վարիչն աչխարհի կամ գաւառի, ըստ որի թագուհի էր կամ իշխանուհի, արդարացնելով լիովին իր վրայ դրւած վստահութիւնը։

Յիչենք նախ Խորենացու աւանդութիւնը, թէ Ա Տիգրանը պատերազմում սպանում է ԱժդաՀակին, ազատելով **Տիգրանուհի** քրոջը նրա կնութիւնից եւ նրան «ուղարկում է թագաւորապէս» դէպի Հայս, բնակեցնում է իր կառուցած Տիգրանակերտում, «Եւ **զգաւառսն զայնոսիկ ի՝ ծառայութիւն նմա Հրամայէ**[8]»։ **Տեղեկութեան** ստոյգ լինելուց աւելի կարեւոր է, Հայ կնոջ իչխելու իրաւունքը, որ նչւած է այդտեղ եւ որի պատմական Հաւաստի փաստերն էլ անպակաս են։

**Երատոն** իչխանակցելուց յետոյ եղբօրն[9] ու տեսնելով նրա գաՀազրկութիւնը, ապա վերաՀաստատութիւնն ու մաՀը պատերազմի մէջ, որ իրեն էլ զրկեց

1. *Արծ*. 257։ 2. *Անդ*՝ 62։ 3. *Անդ*՝ 97։ 4. ***Հյպ***. 267։ 5. *Անդ*՝ 244։ 6. ***ՅՀ. կթ***. 173-74։ — 7. *Անդ*՝ *ժԴ*. 2. *Գ*. 13։ 8. *Խոր*. *Ա*. *լ*։ 9. *Անդ*՝ 273։

գահակցութիւնից՝ ըստ Դիոնի, տեւած թագաւորութիւնն ուրիշ երեք տարիների, որոնց վերջինը Տիգրան Ե-ն գահընկէց եղաւ Հռոմի միջոցով. պատահմունք, որ տեւեց տասնեւութ տարի: Ապա հրաւիրուեց ինքն իսկ իբրեւ ժառանգ մեծն Տիգրանի, կայսեր Հայաստանի այդ գիրընկէց թագը միահեծան վարչութեամբ. ինչպէս վկայում է Տակիտոսը. գրելով՝ թէ հայերը «**Երատոյ անունով մի կնոջ իշխանութեան փորձն առնելով**, նրան եւս մերժեցին» երկու տարուց յետոյ եւ գահը պարթեւ Վոնոնին յանձնեցին[2]: Ակներեւ է, որ այդ հայուհու բազկի եւ կամ յոգնած մտքին պակասում էր վարչական կորովը, որի հետեւանքով ազգն ստիպուեց այդ փոփոխութիւնն անելու:

Մեծն Լեւոնն արու զաւակ չունենալով եւ իր յաջորդի մասին մտահոգ, աւագանուն հրաւիրեց խորհրդի, գրում է Կիր. Տարեգիրքը եւ յայտնեց մտածութիւնն իր ժառանգը նշանակելու **Զապէլ** դստերը: Նրանք պատասխանեցին. «**Արա՛ նրան քո ժառանգութեան տէրը**, եւ յուծիր մեր երդումը, որ կատարեցինք Ռուփինին, (արքայի եղբօր թոռանն, որը նախապէս ընտրուած էր[3]), եւ կապիր քո դստեր հետ. **եւ մենք ծառայելու ենք նրան**, որպէս արու զաւակի: ... Եւ թագաւորը հաւանեց իր իշխանների խօսքը[4]»: Մանաւանդ որ Զապէլին «անկանէր թագաւորութիւնն ըստ օրինացն Անտիոքի, գրում է Դարդէլ, որովք վարէր պետութիւնն ստորին Հայոց[5]»: Իսկ 1219-ին երբ զգաց իր մօտալուտ վախճանը, նորից հաւաքեց աւագանուն եւ Յովհաննէս կաթողիկոսին ու նրանց յանձնարարեց «**Թագաւոր դարձնել նրան** (դստեր) **իր փոխարէն**, եւ նրան հնազանդ մնալ, եւ ամուսնացնել զուգապատիւ տղամարդու հետ[6]», կամ «անքակտելի սիրով մնալ միմեանց եւ արիագոյն ի պահ աշխարհին, պահել անարատ հաւատքը տղայ դստերն իր Զապէլին՝ **որ թողնում է ժառանգն իր տէրութեան**[7]», դեռ հազիւ չորս տարեկան, որին խնամակալներ նշանակեց[8]:

Մի տարի խաղաղութեամբ գնացին. ապա Մուլհէտք կոչուած ցեղն յարձակւեց Սսոյ վրայ ու սպանեց սիր Ատան խնամակալը: Սրա չլինելուց քաջալերուած վերոյիշեալ գահաժառանգը՝ Ռուբէնը, իր կողմը գրաւեց Վահրամ մարաջախտին[9] ու հայ իշխանների մէկ մասին եւ նրանց հետ ամրացաւ Տարսոնում, թագաւորութիւնն իրեն անցնելու նպատակով: Կաթողիկոսը, միւս խնամակալը՝ Կոստանդին պապեռոնացին, եւ այլ իշխանները զօրք գումարեցին, գնացին եւ պաշարեցին Տարսոնը, ձերբակալեցին դաւադիրներին ու բանտարկեցին, ուր եւ որոշները մեռան[10]: Զապէլը երկրորդ - եւ

1. *Սնտ. Բ*, 498: - 2. *Տակ. Բ, գ*: — 3. *Աստ*՝ 286: — 4. ***Տրգ. Կիլ.*** 308-9: — 5. *Դրդ*. 15: — 6. *Կիր*. 93-94: 7. ***Տրգ. Կիլ.*** 312: — 8. *Աստ*՝ 9: — 9. *Աստ*՝ 53-54: — 10. ***Հւք. յշտ. եւ Գամ. Թր.*** 210:

գուցէ ակամայ մի մրցակից ունեցաւ իր երէց եւ խորթ քրոջ ու Երուսաղէմի թագուհու՝ **Ռիթային**, որի պահանջին վերջ դրեց մահը, ինչպէս պիտի տեսնենք[1]:

Աւագանին համոզեց, որ արքունի գաւազանն աւելի ապահով էր Լեւոնի թէկուզ տհաս դստեր ձեռքում քան կանացի ձեռքերում եւ պէտք էր զօրացնել այն: Ուստի երկամեայ իշխանութիւնից յետոյ թագուհուն ամուսնացրեցին եւ աթոռակից դարձրին Փիլիպին, որին եւ Դարդէլը վկայում է՝ թէ «**միասին թագաւորեցին**»[2]: Տեսանք յետոյ անախորժացու բանտարգելութիւնն ու վախճանը, որի շրջանում Զապէլը կրկին անգամ միայնակ մնաց գահի վրայ երկու տարի, մինչեւ Փիլիպին յաջորդեց Հեթումը[3]: Լեւոնի ժառանգը գահակից մնաց միշտ նրան, ինչպէս յայտնի է նրանց զուգապատկեր դրամներից եւս[4]:

Կան նաեւ մի խումբ իշխանուհիներ, որոնց վիճակւում է նոյն ծանր պաշտօնը եւ որոնք սակայն տարիք ու փորձ ունէին ի գլուխ տանելու այն: Հերակլ կայսեր բանակը 629-ին խաղում էր պարսիկների դէմ, փրկելու համար տէրունական խաչը, որ գերել էին Երուսաղէմից եւ հասել էր Սիւնեաց սահմանները: Մի զօրաբանակ որչափ եւ բարի նպատակով շարժւի, անցած տեղը մարախների պէս թողնելու է աւերիչ հետքեր, որ այն խափանելու համար թանկագին պարգեւներով ընդառաջ գնաց կայսրի նահանգի տիկինը՝ **Բիւրեղը**, «գեղեցիկ կին եւ շատ իմաստուն», որ իր հանճարեղ վերաբերմունքով «հաճոյացոյց զարքայն», որ առաջ վարեց իր ամրոխը: Վերադարձին տիկինը նորից գնաց մեծարելու յաղթանակը եւ խնդրեց ու ստացաւ ազատւած խաչափայտից մի նշխար, որ յետոյ Հացունեաց խաչ կոչւեց[5]: Կայսերի մօտ գնալը՝ գործն էր գաւառի տիրոջն, որ ակներեւ է՝ թէ վախճանւած էր, - ոչ թէ բացակայ, որ յիշւելու էր - եւ նրա տեղը բռնած իր կենակիցը, որ վարչագիտութեան հետ միասին ճարտար քաղաքագէտ էլ էր:

Վահան Գողթնացին քառամեայ մի մանուկ էր, երբ գերի տարւեց արաբների կողմից եւ վարժւեց նրանց կրօնի մէջ: Նա երիտասարդ հասակում եկաւ իր հայրենիքը, կրկին փարւեց հայրենի հաւատքին եւ ազգականներն նրան ամուսնացրեցին Սիւնեաց տոհմից մի օրիորդի հետ: Նկատելով որ իր քրիստոնէութիւնը գրգռելու էր արաբներին, կնոջ հետ սկսեց ծածուկ թափառել, նրանց չհանդիպելու համար: Յետոյ արձակեց կենակցին թողնելով աներոջ մօտ, գնաց դէպի Վաղարշապատ եւ Դաւիթ կաթողիկոսի խորհրդով ապաւինեց «անապատ ուրեք», յայտնի է՝ թէ ոչ շատ հեռու այդ գաւառից, ուր եւ մնաց վեց ամիս: Տեղի վանականները վախենալով, որ իրենց վտանգ էր հասնելու զգայնել տւին «իշխանակնոջ ուրումն մօտաւորի», որ մարդ ուղարկեց նոյն վանքն եւ

1. Աստ՝ ԺԸ, Ը, 3: 2. Դրդ. 16: 3. Աստ՝ 58: 4. Աստ՝ 273: 5. Շպհ. 9-10, 11:

ասայ. «Երթիցէ գնասցէ ի ձէնջ. գի մի՛ անձինն եւ ձեզ լիցի պատճառ կորստեան»[1]: Մեկնեց երիտասարդն ու խնայեց նրանց. բայց յետոյ կամաւորապէս գնաց պարանոցը գրեց արքայական սրի ներքեւ, փկայելու համար այն հաւատքը, որից անգիտակցաբար հեռացել էր երբեմն:

Կասկած չկայ, թէ յիշեալ տիկինը, որի մեծատոհմի անուններր խոհեմութեամբ ծածկել է ժամանակակից պատմիչը, նոյն կողմերի մի իշխող էր, որ Հ. Ալիշանը համարեց սահմանակից Շիրակի իշխանուհուն[2]: Ըստ խ. նա **Շուշանն** էր, նոյն գաւառի ծանօթ տիկինը[3], որին մեր հանդիպած 700 թուականը շատ հեռու չէ Գողթնացու նահատակութեան 737 տարուց: Լոկ իբր գաւառի տէրը կարող էր հրամայել Վահանի հեռացումը: Ոչ անգթութեամբ,- որ հեռու էր իր սրտից, ինչպէս տեսանք փաստով,- այլ քաղաքագիտական խոհեմութեամբ, չգրգռելու համար արաբներին: Իբր տէր բանակցեց եւ ընդունեց նրանց պարտուած զօրքն էլ եւ նրանց ջորիներ տուեց «իր երամակներից[4]», եւ ոչ ամուսնուն, որ աներեւոյթ է այդտեղ. ապացոյց թէ 700-ից առաջ մեռած էր: Այս հաշուով, աւելի քան 35 տարի իշխել է Շուշանը, անգաւակ այրիանալով շատ մատաղ հասակից եւ ի գործ դնելով վարչագիտական փորձը, որ ստացել էր նախ իր սկեսրայրից եւ «Հայոց իշխան» Արտաւազդից[5] եւ ապա ամուսնու օրինակից: Անուշադրութեան արդիւնք կարելի է համարել, երբ Հ. Կոզեանը[6] Վահանին հեռացնողն է համարում «հաւանօրէն» մեր այս Շուշանի սկեսրօջը՝ «Շուշան Մամիկոնեանին[7]», որի որդին Ներսեհը իբր 690-ին արդէն «տէր» էր գաւառին[8] եւ նրանից յետոյ իշխողն ամուսինը միայն կարող էր լինել, ոչ մայրը:

ԺԳ դարի մէջ ենք այժմ, թաթարների տիրապետութեան ժամանակ, որոնք բարեկամանում են Զաքարեան Իւանէ սպասալարի որդու եւ յաջորդի[9] Աւագի հետ, եւ գնում գրաւում են Բգնունեաց Խլաթ քաղաքն, ուր գտնւում էր Աւագի քոյրը՝[10] **Թամթան**, որ նոյն քաղաքի նախկին իշխող՝ Աշրաֆի, կինն էր եղել. «եւ առեալ գնա՝ **տան ի ձեռս Թամթա՝** Աւագի քրոջը, որ եւ առաջ, ասում է պատմիչը, **տէր լեալ էր քաղաքին այն՝** մինչ Աշրաֆ Մելիքի կինն էր նա»: Այդ տիկինը յետոյ գերի էր տարւել խանի մօտ, տարիներ այնտեղ մնացել եւ Վրաց Ռուսուդան թագուհու միջնորդութեամբ ազատւել էր խանի մի հրովարտակով, որ Աշրաֆի օրով ունեցած բոլոր իրաւունքներն իրեն

---

1. Սոփ. ԺԳ, 19-29: — 2. Շիր. 5: — 3. Անդ՝ 214: — 4. Անդ՝ 213: — 5. Շիր. 174: — 6. Կոզ. 165: — 7. Անդ՝ 32: — 8. Անդ՝ 214: — 9. Ի Շիրակ եւն. աստ՝ 55, 201: — 10. Հ. Ալիշանէն գուցէ վրիպակաւ դուստր նշանակւած. Շիր. 175:

վերադարձի: Դրա գործութեամբ «**տէեց նրան Խլաթը** եւ նրա չուրջի գաւառները», որոնց երկրորդ անգամ իշխանուհի ու վարիչ է դառնում այդ տիկինը[1]:

Նոյն առաջնորդական կարողութիւն է ցոյց տալիս Աւագի ամուսինը՝ **Գոնցան**, նոյնպէս կենակցից յետոյ (1250), որն առանց արու ժառանգի մեռնելով, իշխանութիւնը նախ յանձնում են նրա հօրեղբօր թոռան՝ Զաքարէին. «եւ յետոյ Զաքարէից վերցնելով **յանձնեցին Աւագի կնոջը**» ասում է Գանձակեցին[2], որ երեւում է թէ աւելի կարողութիւն է ցոյց տալիս քան յիշեալը: Սիւնեաց պատմիչն, որ աւելի ուշ է գրում, տեղեկացնում է թէ բուն ժառանգը Գոնցայի դուստրը՝ **Խոշաքն** էր, որ «**ամենայն իշխանութեամբ իշխում էր**» իր հօրը[3]: Եւ ստոյգ է այս, այնպէս որ իր մայրը խնամակալ ենք համարելու միայն գաւակին: Արդարեւ կայ մի արձանագիր 1251 թուականից Թանահատի մէջ, գրուած օրով «աշխարհակալ Արղունին, **իշխանութեան Խաւշաքին**» եւ այլն[4]: Եւ 1270-ին Ջագայ վանքի մէջ կատարւում է վիճակային մի ժողով «**պարոն Խոշաքի կամքով եւ հրամանով**, եւ մեր իշխանների՝ մեծի Պռօշի, Սադոնի եւ Սմբատի», ինչպէս գրուած է նոյն ժողովի գործերի մէջ: Այդտեղ Խոշաքը պետն է միւս իշխանների, ինչպէս իր հայրն էր եւ արդէն մի տարիք ունի, որ կարող է ինքն իշխել ու հրամայել:

Մինչեւ այդտեղ Գոնցան չարունակում էր պաշտպան ու թելադրիչ լինել դստերը, ցաւագին մի վերջ պատրաստելով նրան եւ իրեն: Աւագի տունը, ասում է պատմիչը, թշնամութեամբ էր վարւում Օրբելեան նորեկ տոհմի հետ, որ զօրաւոր ու վտանգաւոր մի մրցակից էր իրենց[5]. «աւելի Գոնցան՝ Աւագի կինը. կամենում էին վարատել, հալածել կամ կորուսանել» հանգուցեալ Ելիկում ի գաւակները, որոնք խոյս են տալիս ու ծածկւում են[6]: Նրանց երէցը՝ Սմբատը, թաթարների օգնութեամբ դառնում ու տիրում է իրենց ժառանգութեանը: Յետոյ ինքն իրեն «հայրագիր» է անում Աւագի տանը, խորհրդակցում է ուրիշ իշխանների հետ եւ Հուլաւի խանի հրամանով, իշխանասէր ու տարաբախտ Գոնցայի գերեզմանը փորում են ծովի կոհակների մէջ. «տան սպանանել ի ծովամիջի զԳոնցայն», եւ Սմբատը տէր է դառնում Աւագի ժառանգութեանը[7]: Հ. Ալիշանը Գոնցային անւանում է Կախաբերեան[8], որ այդ տիկնոջը հայ է ցոյց տալիս: Իսկ Խոշաքի վախճանը յետոյ տեսնելու ենք[9]:

Մասիսների ստորոտում կար Իգդիրի մեծ բերդը՝ կառուցուած մի ժայռի վրայ: Սպանիացի դեսպանը՝ Կլաւիոն, որ 1404-ին Հայաստանից անցնում էր, պատմում է հայերի կողմից տեսած մարդասիրութեան մասին: Ապա հասնելը նոյն ամրոցին, որ

1. *Կիր*. 161: 2. *Նոյն*՝ 181: 3. *Օրբ*. 302: 4. *Ջալ. Բ*. 208: 5 *Աստ*՝ *ԺԸ. է*: 6. *Օրբ*. **297 եւն**: — 7. *Նոյն*՝ 306: — 8. ***Շիր***. 175: 9. *ԺԸ. Ա. գ*. 2:

նախապէս ապաւէն էր եղել ուղեւորների կողոպտող աւազակների, որ Թիմուր բէգ կամ Թեմուրլանկ աշխարհակալը ջնջել էր նրանց գլխաւորին կամ պաշտպանի հետ, որ հայ մի իշխան էր անշուշտ. բերդի դռներն հանել է տւել եւ նրա «պահպանութիւնը» շրջակայ երկրի հետ յանձնել էր սպանուած իշխանի այրուն, «որի սեփականութիւնն է», ասում է, սակայն հարկ էր տալիս Թիմուրին: Նոյն բերդի մէջ, յարում է տեղեկատուն, «տիկինն, որ յիշեցինք, մեզ տուեց այդ գիշերը շատ հիւրասէր ընդունելութիւն, հայթայթելով մեզ մեր բոլոր պիտոյքը[1]»: Մեր ծանօթներից վերջին օրինակն է ասպնջական այդ տիկինը հայ իշխանուհիներից, որ ունեցան աշխարհավար գործունէութիւն, բայց սա ամփոփ մի սահմանով հայ ազատութեան այդ վերջալոյսի մէջ:

4.- ***Հոգաբարձութիւն***.- Պակաս չեն եւ տիկնայք, որոնք երբեք իշխանութիւն չեն ստանձնել բայց ոգի ի բռին աշխատել են, որ իրենց տոհմի գահն անժառանգ չմնայ եւ օտարներին չանցնի, առ այս գործ են դրել մեծ խորագիտութիւն: Եւ այս մասամբ երախտաւոր հանդիսացել են քաղաքականապէս իրենց տան եւ երբեմն ազգին էլ:

Թ դարի կէսի մօտ ապրում էր Անձեւացեաց իշխանը՝ Մուշեղը, որ վաղահաս մահւամբ այրի թողեց ամուսնուն՝ ***Հեղինէին***, ստնդեայ մի մանուկի հետ: Այդ ժամանակ Վասպուրականի համար իրար հետ պայքարում էր երկու Արծրունիք: Ապուպելճի որդին՝ Գուրգէնը, եւ Դերենիկ Գ որդին՝ Գ Աշոտի: Առաջինն աւելի բարեբարոյ, երկրորդը՝ խիստ, իշխանասէր ու բռնաւոր[2], որի բանտր մտած ու գերծած եւ գիշերով նրա սենեակն էլ սպրդած էր Գուրգէնը սուսերամերկ, մինչ ննջում էր ու խնայել էր նրա երիտասարդութիւնը: Ապա միջնորդել էր նրա ազատութիւնը Բագրատունի Աշոտ իշխանապետի բանտից եւ ամուսնութեանը՝ նրա դստեր՝ ***Սոփեայի*** հետ[3]: Դերենիկը անբաւական Վասպուրականի տէրութեամբ, յիշեալ Մուշեղի վերջին օրերին խորհում էր տիրել նաեւ նրա գաւառին, որի մէկ մասն արդէն կտակով իրեն էր թողնում հանգուցեալը եւ միւսը՝ դեռաբողբոջ որդուն:

Հեղինէն աւելի նրբամիտ քան ախոյանը, նրա սրի դէմ զինւեց հնարագիտութեամբ: Փութաց գրել նրա մրցակցին՝ Գուրգէնին, ասելով. «Եթէ հաճելի եմ թւում քեզ կնութեան, եւ կամենում ես տիրել Անձեւացեացին, մի՛ վախեցիր ուշանալով դանդաղկոտ լինել եւ վերջանար փութալն»: Ձգւած կարթն հասաւ նպատակին. Գուրգէնը՝ քաջամարտիկ զինւորական, աճապարեց եւ ամրացաւ նոյն գաւառի Կանգւար բերդի մէջ, ամուսնացաւ տիկնոջ հետ, եւ հզօրապէս տիրեց գաւառին: Դերենիկը չմարսեց խորագէտ կնոջ այդ խաղը: Բանակ կազմեց ու գնաց

---

1. *Հյրն*. 1934, *մրտ*. 151: — 2. *Աստ*՝ 44: — 3. *Արծ*. 231, 233:

պաշարեց բարերարի դղեակը, որը աննուաճ մնաց. յուսահատեցրեց բանակորին ու վերադարձրեց Վասպուրական: Հեղինէի հանճարը փրկել էր Անձեւացեաց գահն եւ իր տիկնութիւնը միանգամայն, որոնց այնչափ նախանձայոյզ էր նրա հոգին. Գուրգէնն այնուհետեւ անդորրացրեց երկիրը. հետամուտ եղաւ այն զարդարելու եւ եկեղեցիներ կառուցելու[1]: Իր երկիրը դրաւելու երկրորդ մի փորձ կատարեց Դերենի հայրն՝ Աշոտ, գերութիւնից վերադառնալուց յետոյ ի նպաստ որդուն, բայց նոյնպէս ձախողեց եւ վերջապէս հաշտուեցին իրար հետ[2]:

Մեծն Լեւոնի մայրը՝ ***Ռիթան***, առանձին հոգածութիւն ունէր որդու թագաւորութեան վրայ, որն անժառանգ լինելով, արքան մտադիր էր թողնել այն Անտիոքի իշխանորդուն՝ Ռուբէնին, որ իր եղբօր դստեր՝ ***Ալիծի***[3], ծնունդն էր. «պատանի գեղեցկատեսիլ, երկար հասակով, խարտեաշ մազով, ինչպէս ոսկու թել, գոյնի ձիավարդ, իշխանական պատկառելի ձեւով եւ ամձամբ սուրբ». միով բանիւ՝ Ալիծի կերտած զաւակը, որ Լեւոնն ինքն սնուցանել էր տուել «մեծ զգուշութեամբ»[4]: Արքայամայրն տեսնելով որդուն աւելի տկար քան ծերացած եւ վախենալով նրա կեանքի մասին, դրդեց այն ապահովել յաջորդութեամբ: Եւ նա 1211-ին նոյն այդ «***իր մօր թելադրութեամբ***» ներկայացրեց Ռուբէնը աւագանուն, նրան ժառանգ կարգեց իրեն եւ նրան հպատակելու երդումն առաջ իշխաններից: Ապա Հեթումին Հեղինն՝ Լամբրոնի[5] նախկին տիրոջը, եւ «Հայր Թրագարկուին»[6], որպէս դեսպան ուղարկեց առ պապին Իննովկենտ Գ եւ Օթոն՝ կայսր Գերմանիայի, թագ բերել ու եց ու պսակեց պայազատին[7]: Այդ կարգադրութիւնից յետոյ էր, որ Զապէլը ծնուեց եւ րստ իրաւունքի ինքը ժառանգեց Հայրենի իշխանութիւնը փոխանակ Ռուբէնը, ինչպէս տեսանք վերը[8]:

Աղւանի Արաս թագաւորն, երբ անորդի մեռաւ[9], գահը կորստեան վտանգի մէջ էր, նրա քոյրը՝ ***Բաւրինան*** կամ ***Բաւրինեան***, «անհնարին սգով վարանում էր», ասում է Գանձակեցին, խորհելով, որ «բնաջինջ լինեն յազգէն»: Իր քոյրերի աշխարհուրաց ու եկեղեցաչէն ոգին չունէր նա եւ մի սիւն միայն ունեց Սանահնին[10]: Բայց գործնական միտքը եւ ամբողջ ուշադրութիւնը կենտրոնացրեց հայրենի աթոռի պահպանութեանն: Եւ ահա յանկարծ լսեց, թէ մի կին կար՝ «որ մի տնդեայ մանուկ ունի քո եղբօրից»: Ստո՞յգ էր թէ ոչ եղբօր այդ հայրութիւնը, յայտնի չէ այդ բացատրութիւնից: Ապօրինութիւնն էլ արգելք չէր ժառանգութեան, ինչպէս տեսանք ուրիշ օրինակներից

1. *Արծ*. 235-36: 2. *Նոյն*՝ 239-40: - 3. *Աստ*՝ 208. 4. *Տրգ*. *կիլ*. 308, 296: 5. *Աստ*՝ 64: — **6.** ***Տրգ***. *կիլ*. 305. *հաւանօրէն եւ քահանայացած*: 7. *Անդ*՝ 302-4. *Հւք*. *յյտ*. 1211: 8. ***Աստ***՝ **281**: — 9. *Աստ*՝ 45: -- 10. *Աստ*՝ 222:

եւս Ռոստի Բարթինեան այդ յայտնութիւնից «զարթնացած՝ **առնում է տղային ու սնուցանում»** անունն Արշարժան դնելով, որ յետոյ «եղաւ ժառանգակալ Մածնաբերդի»[2], որ իրենց արքունիքն էր: Իսկ Արտաշի կենակիցն ու գահակիցը **Նանան** բնաւ չնայեց ամուսնու այդ յանկարծադիւտ ժառանգին, ջանալով հանգուցեալի անունը պահել հասարակաց օգտակար գործերի վրայ[3]: Բայց տարն հասաւ նպատակին, ապահովելով հայրենի զարմի յաջորդութիւնն Արշարժանով, որ ապա հայր եղաւ երեք զաւակների[4] ու որի նկարագիրն ու կեանքն յայտնի է մեզ[5]: Իր պաշտպանի հետ գուցէ նոյնն է Հաղարծնի ուխտի անթւական մի արձանագրութեան մէջ յիշուած Մարդանգեան Բէգի կինը՝ **Բորինան**[6]:

Նոյն պարագան կրկնւում է Նանայի եղբօրորդու՝ Զաքարեան Աւագի հետ, որ մեռնում է թողնելով մի դուստր եւ անհարազատ մի մանուկ որդի[7]. «**որ վերցրեց նրա քրոջը (Աւագի) սնուցանում էր»**[8]: Այդ քոյրը քաղաքագէտ ու վարչագէտ **Թամթան**[9] է երեւում, որ յայտնի է նախանձայուզութիւնը կանգուն պահելու եղբօր յաջորդութիւնն յանձին այդ մանկան, որ յետոյ յիշւում է Սահիպ Դիւան կոչմամբ, իբրեւ պարոն Անւոյ[10], որի որդին Զաքարէն հաստատում է՝ թէ ինքն է «թոռն աթարակ Աւագի»[11]: Մինչեւ ապօրինի որդու հասնելը, Աւագի կնոջն ու դստերը յաջորդած տեսանք նրա իշխանութեան մէջ[12], անփոյթ զուցէ եւ անտեղեակ միւս մանկան գոյութեանը եւ նրա հօրաքրոջ գաղտնի նպատակին ու գործունէութեանը, որ համոզւած էր, թէ մի դուստր չէր կարող յաւերժացնել հայրենի զարմը:

Մեր արքայազունների կենցաղի մէջ կարեւոր դերեր ունեցել են երբեմն նրանց ստնտուներն անգամ, որոնց տեղեկութիւններն եթէ ճշգրտօրէն պատմական չեն, մատնանշում են գէթ հայ բարքերն եւ նրանց մէջ կաթնատուների ունեցած բաժինը: **Այսպէս Սանատրուկը դեռ մանուկ, երբ դայեակի գրկի մէջ Եդեսիայից դէպի Հայաստան էր բերւում, Կորդւաց լեռների մէջ բքի են հանդիպում եւ ուղեկիցները ցրւում են: Իսկ նրա դայեակը՝ Սանոտ Բագրատունին, կինը Խոսրէն Արծրունու, մանուկն վերցրեց «իր ստեանց մէջ» ցրտից պատսպարելու համար: Երեք օր այնպէս մնացին ձեան ներքեւ, մինչեւ խնդրակները մի շան առաջնորդութեամբ գնացին գտան նրանց**[13]: **Այսպէս փրկեց Սանոտր Հայոց ապագայ թագաւորին, որ Սուրդասր** նկարագրում է «հոգով մեծ դէպի ամենքը», արդար եւ ժուժկալ[14], ուր մեր խախուտ

1. *Աստ՝* 45: — 2. *Կիր*. 72: — 3. *Աստ՝* 236: — 4. *Կիր*. 72: — 5. *Աստ՝* 63, 97: 6. **Ազ. Հնգ**. 1913, Բ. 64: — 7. *Աստ՝* 45: — 8. *Կիր*. 181: — 9. *Աստ՝* 283: — 10. *Ճիր*. 62: 11. **Ճհխ**. Բ. 183: 12. *Աստ՝* 284: 13. *Խոր*. Բ, լգ: — 14. *Սուրդ*. Բ, 2, 668:

աւանդութիւնը խառնուած մի կերպարանք է առել մեր հեթանոս իշխողների ամենից առաջինի անձին:

Աւելի նշանաւոր է Արտաշէսի կախմնատուի գործը: Երուանդը բռնարար գրաւում է փախճանուած Սանատրուկի գահը, կոտորելով նրա զաւակներին: Նրանցից ազատւում է մանուկ Արտաշէսը, «որ վերցրեց նրան սանուն», որի անունը չի նշուած, փախչում է Հէրա կողմերը եւ յուր է յղում նրա դայեակին՝ Սմբատ Բագրատունուն: Իշխանը յսապում է նրա խնդրանքով, գանում եւ Երուանդի երկիւղից փախցնում է դէպի Պարսկաստան: Բանակայր դեսպաններ է ուղարկում այնտեղ, համոզելու համար թէ Արտաշէսը, որ սնուցանում են, մի հովուի զաւակ էր, որ «այդ սանուն խաբել է», ասում էր Սմբատին: Մանուկը մեծացաւ, դայեակի օգնութեամբ գրաւեց հայրենի գահը, շնորհիւ սանուտին, որ Գիսակ որդուն էլ գոհեց արքայորդու յաջողութեանը[1]:

5.- **Տէրութիւն սրբավայրերից**.- Ըստ մի սովորութեան, որ արդէն ծանօթ էր Զ դարում յոյների մօտ եւ քիչ յետոյ նաեւ արեւմուտք անցաւ, իսկ մեր մէջ աւելի վաղ էլ հանդիպում ենք, ազնուականները կառուցելով կամ գնելով մի եկեղեցի կամ մենաստան նրա **տէրը** կամ **ժառանգաւորն**, եւ միջնադարեան եկամուտ բառով **պատրոն** (patron) էին դառնում, վարելով այն ըստ կամս, ընտրելով կամ հրաժարեցնելով նրա առաջնորդն ու պաշտօնեաները, «վանական զոր կամին հանեն եւ արկանեն», գրում է Դւինի 645-ի ժողովը[2]: Եւ այդ իրաւունքը տեւում էր յաջորդաբար նոյն տոհմի պայազատներին:

Օրինակ՝ Վաղարշապատի վանքն ու կաթողիկէն Ե դարում ենթարկուած էր Մամիկոնեանների իշխանութեան եւ մեծն Վահան չքեղաբար նորոգեց այդ «իր նախնիների հնացած գործը», ասում է Ղազարը[3]: Ինքն ընտրեց ու գցեց պատմիչին էլ նոյն տեղի հոգաբարձութիւնից, ինչպէս տեղեկացնում է նա նրա գրած թղթի մէջ: Իշխանական կամ քաղաքական տիրապետութեան մէկ մասն էր ուրեմն այդ իրաւունքն հասարակաց վայրերի վրայ: Մամիկոնեանները զարմանում էին իրենց այդ աւատը «պատուղներով եւ ամենայն պիտոյքներով»[4]: Բայց կային, որ ընդհակառակն ընդունում էին իրենց հասած մի բաժինը իբրեւ տուրք, ըստ յիշուած ժողովի[5]: Ուրիշներ, որ «ժլատութեամբ» չահագործում էին նրանց[6] եւ որոնցներն էլ «ընտանեօք վանքում էին նստում, ասում է, արհամարհելով Աստծոյ եկեղեցին»[7]:

Այդ ժողովի տէրերի մէջ յիշւում է «այր **եւ կին**» միասին, որ կանայք եւս կարող էին ժառանգական իրաւունքով ընդունել եւ վարել նոյն իշխանութիւնը: Այս

---

1 Խոր. Բ. լէ. լը. խզ: -- 2. Կան. Ժ: 3. Փրպ. 479: — 4. Նոյն՝ 589, 591-92: — 5. Կան. Ը: — 6. Կան. Ժ: 7. Կան. Ը:

պատմում Հաւամոսի վանքում 1228-ին հեջուր Գրիգոր՝ Սակունենց տոհմից, որ միւսին իշխնի ակրերից էին եւ նոյն ուխտի, կտակում է, թէ «այս տեղի պատրոնն ով լինի այրերի **կամ կանանցից**, ով կաշառքով **հայր դնի** այնպիսին նզովս առնէ զՅուդային[1]»

Ուրեմն տիկնայք եւս իրաւունք ունէին վանահայրերի ընտրութեան: Սրա գործնական օրինակն էլ կայ Բագրատունի **Թուսուզանի**[2] վարման մէջ, որ ուզելով «առնել պատել եւ մեծարել» Հաղբատին, իր հարց հանգստարանը, «եդ զսուրբ ուխտս ի ձեռս տեառնս Բարսեղի» գրում է ամէն Սարգիս, 1172 թւին[3]: Իր վրացի ամուսինն Իւանէն կենդանի է եւ իշխանը նոյն կողմերի, սակայն մենաստանի տէր ու կարգադրիչը տիկինն է, իբրեւ ճետ ու ժառանգ Բագրատունեաց:

Նորավանքը նոյնպէս սեւատ էր Սիւնեաց իշխանական տանը եւ ԺԳ դարում Սարգիս եպիսկոպոսը մի հիւրատուն է շինում այնտեղ «**հրամանով** ամենաօրհնեալ իմ պարոնների Տարսայիճի եղբօր՝ Սմբատ արքայի, եւ **իր ամուսնու՝ Մինա խաթունի**[4]», որ կենակցի հետ իշխանակից է նոյն մենաստանի վրայ: Դւինի վերոյիշեալ ժողովը սահմանեց, որ տէրը կարողանայ «ինքն ունել զամենայն» մինչեւ որ կենդանի է եւ իրեն ժառանգ թողնի տոհմակիցներից, բայց ոչ բնաւ մի օտարի[5]:

Իբրեւ թւական էլ գործածւում է երբեմն մենաստանի տիրապետութիւնը, որի մէջ նոյնպէս յիշւում են տիկնայք: Այսպէս 1284-ին մի Աւետարան է գրուել Գնդեվանքի մէջ, Յակոբ կաթողիկոսի, նահանգի Սարգիս եպիսկոպոսի, ու Պապաք իշխանի[6] օրով, «եւ **այս մենաստանի տէրութեան** պատրոն Դաւթի եւ **նրա ամուսնու Թամարի**»[7]: Այս կարգից ուրիշներ էլ կան, բայց այրերի կամ տոհմերի անունով:

6.- **Արտաքին կցորդութիւններ**.- Թէ ինչքան պատիւ էր վայելում հայուհին քաղաքական կեանքի մէջ, յայտնի է նաեւ նրա հաղորդակցութիւնից արտաքին իշխանութիւնների հետ, որոնք ճանաչում էին նրա աստիճանն ու ընծայում էին պարտուպատշաճ մեծարանք: Դ դարում Հայքը Վարազդատին[8] վտարելուց յետոյ, կասկածելով նրա բարեկամ յոյների թշնամութեան մտածեցին յենուել Պարսկաստանի պետութեան վրայ: Այս նպատակով «**ուղարկեցին Զարմանդուխտ Հայոց տիկնոջը**», որ գահի պահապանն ու փոխանորդ տեսանք[9], «եւ Մանուէլ սպարապետին» նախարարներ ու նուէրներ առ արքայից արքան, որոնք գնացին յանձնեցին նրան «**տիկնոջ հրովարտակն** եւ Հայոց սպարապետի», կնքեցին դաշինքն ու վերադարձան, միասին բերելով Սուրէն մարզպանին մի բանակով պահել ի թշնամեաց զտիկինն Զարմանդուխտ»: Սուրէնը նոյն

---

1. Ն. **Սրգ**. 152: — 2. **Աստ**՝ 56: — 3. **Հյպ**. 382: — 4. **Սսկ**. 203. աստ՝ 50: — 5. Կան. Ը: — 6. **Աստ**՝ 226: — 7. **Մղբ**. 138-39: — 8. **Աստ**՝ 278: — 9. **Աստ**՝ 278:

տիկնոջը» բերեց արժանի արքայական նշանակներ. «թագ. պատմուճան եւ գվառ թագաւորների». թագեր նաեւ Արշակ ու Վաղարշակ արքայորդիներին եւ այլ պարգեւներ սպարապետին: Այնտեղ «տիկին Զարմանդուխտ եւ ... Մանուէլ մեծ ուրախութեամբ մեծարում էին Սուրէնին»[1]: Պարսկաստանի արքան յետոյ «ստէպ առաքում էր պարգեւներ Զարմանդուխտ տիկնոջն» ու սպարապետին. մինչեւ որ յարաբերութիւնները խանգարուեցին[2] եւ Մանուէլը հրովարտակով կայսերի պաշտպանութեան յանձնեց նորից Հայոց գահն ու աշխարհը[3]: Պարսիկ եւ յոյն քաղաքականութեան ծանօթ մրցութիւնն էր[4], որ տեղի էր ունենում այդտեղ. նոր մի փաստ էլ տալով յոյների բարեացակամութեանը դէպի մեր ազգը եւ մերոնց վստահութեան, որ ունէին նրանց վրայ:

Ակնարկեցինք յաջորդ բաժանմանն ընդհանրական եկեղեցու միութիւնից եւ վերստին միացումը մեր Պահլաւունի եւ Կիլիկեցի հայրապետների ու թագաւորների օրով, արեւմտեան եկեղեցու հետ[5]: Դրանց մօտ լինելը արեւմտեան աշխարհին եւ քաղկեդոնական խնդրոյ հանդարտախոհ քննութիւնն, նրանց մտքերից ցրուեց նոյն ժողովի մոլորութեան կանխակալ համոզումը, ինչպէս վկայում են ժամանակակից յիշատակարանները: Եւ նախ Պահլաւունի առաջին կաթողիկոսը Գրիգոր Վկայասէրն եղաւ, որ գնաց անխտրաբար Կոստանդնուպոլիս ու Հռոմ, եւ պատուեց ու նրան պատուեցին նրանց քաղաքական ու եկեղեցական բարձրագոյն իշխանութիւնները: Իր յաջորդը՝ Գրիգորիսը, մասնակցեց Լատինների կրօնական ժողովներին Անտիոքի եւ Երուսաղէմի մէջ եւ պատուիրակութիւն յղեց դէպի Հռոմ: Սրա եղբայրն ու յաջորդը՝ Ներսէսը, բանակցեց Մանուէլ կայսեր հետ, հայայոյն եկեղեցական միութեան համար եւս: Համաձայնութիւնը գոյացաւ եւ դեռ չկնքուած վախճանեց հայրապետը: Իր յաջորդը՝ Գր. Տղան, առաջ տարաւ խնդիրը եւ Հռոմկլայի մեծ ժողովը, որի մէջ Լամբրոնացին կատարեց իր նշանաւոր ատենաբանութիւնը[6], վճռեց միութիւնը, որ անգործ մնաց՝ այս անգամ կայսեր վերահաս մահուամբ: Իսկ Կիլիկիայի հայրապետական եւ արքայական գահերի Հռոմի հետ մնայուն եւ սիրալիր յարաբերութիւնների ու թղթակցութիւնների վաւերագիրքը շատ հարուստ են Կղ. Գալանոսի, Հ. Ջամչենի եւ Հ. Ալիշանի գործերում[7] եւ շարունակւում են նաեւ կիլիկեան շրջանից յետոյ մինչեւ ԺԸ դարը:

1. *Փաւս*. 245-46: — 2. *Աստ*՝ 278: — 3. *Փաւս*. 257: — 4. *Աստ*՝ է, 1: — 5. *Աստ*՝ է, 1: — 6. *Աստ*՝ 178:
7. *Հմմտ*. ***Կար. խնդ.*** 495-509:

Այդ միութեան գործիչների ու նեցուկների մէջ մտել են հայ տիկնայք էլ. Հանրային կեանքի մէջ իրենց ունեցած լայն մասնակցութեան հետեւանքով եւ նրանց մէջ ճշմարիտ մի ախոյեան էր ծանուցւած ներսն ու դուրսը. «տիկին **Մարիուն** (կամ **Մարիւն**). քոյրը **Կեռան** թագուհու[1]». որի տիկին կոչումն ամուսնացած է ցոյց տալիս նրան. բայց կենակիցն անյիշատակ է[2]: 1289 թւականն էր եւ բարեպաշտ Հեթում Բ դեռ նոր բռնած Հայրենի գաւազանը: Նիկողայոս Դ Պապը լսելով այդ. յատուկ կոնդակներ յղեց նրան. Թորոս եղբօրը. Լեւոն սպարապետին. Օշին մարաջախտին եւ միւս իշխաններին ու ժողովրդեան. յորդորելով հաստատուն պահել իրենց միութիւնն Հռոմի եկեղեցու հետ: Առանձին մի թուղթ էլ գրեց առ նոյն Մարիւնին՝ մօրաքոյր արքայի. որի այդ մասին ունեցած նախանձայուզութիւնը լսել էր Հեթումի յատին պատուիրակից եւ որին այսպէս էր ասում. «Յորդորում ենք քո Ազնուութիւնդ ի տէր Յիսուս Քրիստոս. որպէսզի մտքիդ աչքերը բարձրացնելով առ Աստւած եւ ի փրկութիւն եւ ի գործս ողորմութեան՝ ուղիղ դիտաւորութեամբ, մտածես պահել հաստատապէս ու մեծարանքով քրիստոնէական հաւատքն ու **յիշեալ միութեան անընդհատ շարունակութիւնը** եւ ջանաս փութոյ պնդութեամբ գործադրես ինչ որ հաճոյ է աստւածային մեծ վայելչութեան». եւ մի կարեւոր պարագայ՝ «**միւսներին էլ բերես նրա պահպանութեան ու շարունակութեան**, ըստ շնորհների. որ տրւած է քեզ Աստծուց» եւ այլն[3]. խօսքեր, որոնք յանձին այդ տիկնոջը մատնանշում են մի առաքելուհու:

Ակներեւ է՝ թէ սրբակրօն **Թեւանուին**[4], այդ եռանդոտ դստեր ազդեցութիւնը մեծ էր Կիլիկիայի արքունեաց եւ աւագանու վրայ եւ ապացոյց իր ուշիմութեան ու ձեռնհասութեան, կամ երկնապարգեւ «շնորհների» ըստ կոնդակի, մինչ իր առաքինազարդ դշխուհի քոյրը[5] չորս տարուց ի վեր արդէն ննջում էր արդարոց քունը[6] եւ ինքն նրա տեղը գրաւել էր արքունեաց մէջ: Ինքն էլ մի ճետ ազատ Լամբրունի եւ սերտ փարւած եկեղեցու միութեան գաղափարին իր պապի հօրեղբօր պէս[7]. իր համբաւն հասել էր մինչեւ Պետրոսի աթոռը, որ իրեն պատւում էր ինքնայօժար մի գրով. ինչ որ եզակի բան է հայ կնոջ պատմութեան մէջ, նկատելով, որ սոսկ մի իշխանուհի էր Մարիւնը: Կոնդակին իր տւած պատասխանը չունենք: Դիտելի է եւս. որ կիլիկեցի հայուհուն եկեղեցու մէջ վերստացած պատիւն է[8], որ ցոյց է տալիս այդ տիկինը:

---

1. **Հյպ.** 545. Թագուհէ սեռական է: — 2. Աստ՝ 68, 173: — 3. Գրն. Ա. 411: — 4. Աստ՝ 173: — 5. Աստ՝ 161: — 6. Աստ՝ 85: — 7. Աստ՝ 178: — 8. Աստ՝ 151:

Հռոմի հետ յարաբերութիւնները պակաս չեն նաեւ մեր թագուհիների կողմից: Այսպէս 1317-ին Յովհաննէս ԻԲ մի թուղթ գրեց Օշին արքայի կենակցին՝ ***Յոհաննային***[1], յորդորելով շահել Հայերին[2]: Կայ մի ուրիշն էլ առ այրի ***Մարիւն*** թագուհուն ու խնամակալին[3], որ 1372-ին զգալով Դ Կոստանդնի գահի տատանումը, խորհեց ապահովել այն ի նպաստ իրեն: Եւ դեսպաններ ուղարկեց Հռոմ, Նէապոլիս ու Վենետիկ, խնդրելով նոյն իշխանութիւններից փեսայացնել իրեն Բրունսուիկի Օթոն իշխանը, եւ նրան յանձնել Հայոց թագաւորութիւնը, որով ինքն էլ վերստին բոլորելու է դշխուհու պսակը: Գրիգոր ԺԱ պապն հաւանեց իր խնդրանքն եւ այդ իմաստով մի թուղթ էլ ունի գրած առ Փիլիպպոս իշխան Տարենտային[4]: Սակայն հայրապետի միջնորդութիւնը չրաւեց եւ տիկինը չունեցաւ Անձեւացեաց ***Հեղինէ*** տիկնոջ յաջողութիւնն ու բախտը[5], որով գահն անցաւ վերջին Լեւոնին[6]:

7.- ***Միջնորդութիւն***.- Բարբարոս ցեղերի Հայաստան արշաւանքների շրջանում, մեր իշխանները յաճախ մատնւում էին դժւարին կացութեան եւ կարօտում էին ողոքելու բռնաւորներին: Բայց ի՞նչպէս գործ դնել այդ: Անձամբ գնալը նշանակում էր ծուղակի մէջ բռնւել ու կորչել: Դրա համար հարկ էր լինում երբեմն այդ փափուկ պաշտօնն յանձնել տիկնանց, որոնք գիտէին ճարտարութեամբ եւ իմաստութեամբ գլուխ բերել այն:

Յուսուփը 851-ին հզօր մի բանակով մտաւ Հայաստան, մտադիր լինելով ձերբակալել եւ ջնջել Վասպուրականի տէր՝ Աշոտին, եւ նրա քեռուն՝ Բագարատ Բագրատունու՝ Տարօնի իշխանին, որոնք հզօր սիւներն էին հայ ազատութեան[7] եւ ապա նւաճել ամբողջ երկիրը: Հասաւ, բանակ դրեց Արծրունեաց Ադամակերտ ոստանում եւ հրաւիրեց Աշոտին՝ որ իմանալով նրա չար միտքը, իր գնդով հեռացաւ Մարդոստանի կողմերը: Այնտեղից ողոքական մի թուղթ գրեց արաբին եւ նրա հետ պատգամաւոր յղեց իր մօրը՝ ***Հռիփսիմէին***, քոյրը՝ յիշեալ Բագարատի[8], եւ այրին՝ Բ Դերենիկի[9], «որ իմաստուն կին էր խօսքի եւ յիրս, եւ յոյժ խոհեմ, միանգամայն եւ աստւածասէր», ճշմարիտ մի Բագրատունի եւ յանձնւած պաշտօնի յարմարագոյն անձը: Գնաց, պարգեւներով ներկայացաւ բռնաւորին, խնդրելով խաղաղութիւն հաստատել իր որդիների ու Վասպուրականի հետ: Ցաջողեց համոզել նրան «եւ նրա պարգեւներն ընդունելով կատարեց խնդիրը»: Պատանդներն ընդունեց եւ տիկնոջը «մեծ պատւով»

1. *Աստ*՝ 69: 2. ***Զմչ. Գ***, 316: — 3. ***Աստ***՝ 278: — 4. ***Մխ***. 544, 560: — 5. ***Աստ***՝ 285: — 6. ***Աստ***՝ 278: —
7. *Աստ*՝ 215: – 8. ***Աստ***՝ 215: — 9. ***Աստ***՝ 136:

վերադարձրեց. Բայց վազրի հետ չի կարելի բարեկամանալ, ինչպէս տեսնելու ենք յետոյ, որ բռնեց ու գերի տարաւ Բագարատին իր ազգատոհմով հանդերձ[1]։

Յուսուփն, որ սպանեց Հայերի ձեռքով, յաջորդեց Բուղան, որ եկաւ պաշարեց Աշոտին, Թոռնաւան գաւառի Նկան ամրոցում։ Նրա զինակիցների վատութիւնն ստիպեց իշխանին անձնատուր լինել թշնամուն եւ գնալ տարագիր։ Իսկոյն Վասպուրականի իշխանութիւնը ձեռք առաւ նրա եղբայրը՝ Գուրգէնը, որ իր ազատների հետ չտապեց ապաստանելու Որսիրանից գաւառի Թւա գիւղի վերեւում գտնուած լերան հովիտների մէջ։ Բուղան հետապնդեց նրան։ Արծրունին ուզեց կրկնել եղբօր առաջին փորձը եւ մօրը պատգամաւոր յղեց բռնաւորին խաղաղութիւն խնդրելու, խոստանալով հնազանդութիւն եւ հարկատուութիւն։ Հռիփսիմէն գնաց «կանգնեց զօրավարի առաջ, խօսեց նրա հետ բատ պատշաճի»։ Կեղծաւորութեամբ հաւանութիւն յայտնեց ոստիկանը, մինչեւ ձերբակալէր Գուրգէնին, իր մօտ պահեց տիկնոջը, մինչեւ «ընդարձակի» եւ օր բատ օրէ ռոճիկ տալով «բատ արժանի մեծ տիկնոջն՝ Հռիփսիմէին»։ Գուրգէնը ի վերջոյ հարկադրուեց պատերազմել նենգաւորի հետ եւ յաղթեց։ Այն ժամանակ Բուղան սուտ երդմամբ յաջողեց իր մօտ բերել Արծրունուն, որ կապեց ու գերեց նրան եղբօր մօտ Սամառայում։ Դառնացաւ դեսպանուհու մայրական սիրտը եւ չուզելով յետ վերադառնալ առանց իր որդուն, «կոծելով եւ աշխարելով» նրանց հետեւեց կամաւոր գերութեամբ[2]։ Հայուհու ճակատագի՛րը։

Ատրպատականի ոստիկանն՝ Ափշինը, իր իշխանութեան ներքեւ անխլիրտ ձերբակալելու համար Սմբատ Ա Բագրատունուն, 877-ին պահանջեց ու ստացաւ պատանդներն, որոնց մէջ եւ արքայորդին՝ Աշոտն, ու թագաւորի Սահակ եղբօր զաւակը՝ Սմբատը։ Վերջինի մայրը, պատմիչից անանուն թողնուած, չհանդուրժեց իր սիրասուն որդուց զրկուելը։ Եւ երբ մի օր ոստիկանը Դւին եկած՝ իր տեղն էր վերադառնում, տիկինն չտապեց հասաւ նրան, իր հետ տանելով ոսկի, արծաթ ու շատ բաներ։ Ծունկի իջաւ նրա առաջ «արտասուաթոր կականմամբ», յիշեցնելով իր այրութիւնը եւ «զաղէկոտոր խնամոն», որ ունէր զաւակի վրայ։ Ճմլեց արաբի սիրտը նրա պերճախօս ու համոզիչ լեզուից, ընդունեց պարգեւները, յանձնեց որդուն եւ ուղարկեց տուն[3]։ Այսպէս այդ տիկնոջ պատգամաւորութիւնն աւելի արդիւնաւոր եղաւ եւ հասաւ նպատակին քան Սմբատի արքայական հզօր ձայնը, որի զաւակը մնաց այնտեղ դեռ մի ժամանակ։

---

1. Արծ. 128-31։ — 2. Նոյն՝ 146-54, 160-69։ — 3. ԹՀ. կթ. 227, 234։

Հ. Չամչեանը գրում է, թէ Խաչիկ կաթողիկոսի մահուանից յետոյ *Մարիամ* թագուհին, դուստր Գագիկ Աբասեանի» Կարուց արքայի եւ չատ սիրելի ու մեծարող Եւդոքիա կայսրուհու, 1065 թւին «բազում աղերսանօք» խնդրել եւ համոզել է նրան, կայսեր հաւանութիւնն առնելու նոր հայրապետի ընտրութեան համար եւ հասել է փափագին Գրիգոր Վկայասէրի կաթողիկոսացմամբ[1]. Սակայն հայ թագուհին չի տեսնում նոյն պատմիչի նշանակած ծանօթ աղբերաց մէջ եւ առել է անանուններից. Հ. Ալիշանը նոյնպէս չի գտել այդ տեղեկութիւնն, որով ընտրութեան հետամուտ է լինում տարտամօրէն «Գագիկի եւ իր դշխուհու՝ (կամ դուստր) ***Մարիամը***[2]», ուր թագուհին ***Գորանդուխտն*** էր, եւ զաւակը՝ ***Մարեմը***[3]: Շնորհալին[4] նրա կենսագիրը[5], Վարդանը[6] ու Յայսմաւուրը[7] միայն Գագիկին ընծայում են այդ գործը: Վերջապէս հարցական է մնում արքայադստեր կատարած այդ միջնորդութիւնը, որի «թագուհին» էլ պիտակ անուն է թւում ինձ[8]:

Վիրքը 1249-ին խորհեցին ապստամբել թաթարների դէմ, որ իշխում էին նրանց եւ Հայոց: Նրանք իմացան ու մեծ մի ջարդ պատրաստեցին քրիստոնեաներին: Նրանց գլխաւորներից մէկը՝ Զաղատան, որ բարեկամ էր Զաքարեան Աւագի, սպառնացող վտանգն իմացնել տուեց եւ միանգամայն աշխատեց համոզել իր ազգակիցներին հրաժարուել այդ չարիքից: Բարեսիրտ թաթարին օժանդակելու շտապեց Աւագի մայրը՝ ***Խորակը***[9] կամ ***Խօշաքը***: Գնաց նրանց մօտ եւ «երաշխաւոր եղաւ իր որդու համար միամտութեան առ նոսա» եւ թէ ինքն իսկ շուտով պիտի գար իրենց մօտ, ինչպէս կատարեց էլ եւ վկաների բերանով հաստատեց իր հաւատարմութիւնը: Տիկինը մեծ մի գործ կատարեց, զսպելով թաթարների վրէժխնդրութիւնն եւ փրկելով որդուն ու երկիրը կոտորածից[10]:

8.- ***Պատանդութիւն.***- Հայուհին քաղաքական կեանքի մէջ մինչ այժմ յիշուած պատուաբեր մասնակցութիւնների հետ, ունեցաւ դժնդակ մի բաժին էլ: Տղամարդկանց պէս եւ կամ նրանց հետ պատանդ գնալ օտար իշխանների մօտ, երաշխաւորելու համար իր ամուսնու, որդու, եղբօր կամ հօր անկեղծութիւնը կնքուած դաշինքներով կամ յանձնառութիւններով: Նա սովորաբար գտնում էր այնտեղ իր աստիճանի պատշաճ մեծարանքը, սակայն եւ այնպէս օտարութիւն ու պանդխտութիւն էր այն իր համար, որը տանում էր յօժարութեամբ ի սէր իր սիրեցեալների եւ աշխարհի եւ ոչ զերծ ապրելով միշտ կեանքի վտանգներից:

---

1. *Չմչ. Բ*, 989: 2. ***Շն. Պրգ.*** 28: — 3. ***Աստ***՝ 123: — 4. ***Շն. Զափ***. 544: — 5. ***Մոփ. ԺԴ***, 17: — 6. ***Վրդ.*** 102: 7 ***Յուլ.*** 30: — 8. ***Աստ***՝ 121: — 9. ***Աստ***՝ 201: — 10. ***Կիր.*** 179-80:

Արաբներն երբ Ը դարում զօրացան Հայաստանի մէջ. Մուշեղ Մամիկոնեանը Թէոդորոս Ռշտունին եւ բոլոր իշխաններն սխալեցին խոնարհեցնել իրենց գլխերն ու հնազանդեցին նրանց. որ մեծ կողոպուտ ժողովեցին մեր երկրից եւ պատանդ տարան Ասորեստան, գլխաւոր իշխաններին «եւ շատ կանանց, ուստերին եւ դուստերին», 1765 հոգի. Յետոյ հայերն երբ նորից ապստամբեցին Յունաստանի թելադրութեամբ արաբները խժդժաբար կոտորեցին իրենց բոլոր պատանդները[1]. Վաշտերին յատուկ է եղել մինչ հզօրների վրէժը տկարներից լուծելու

**Ափշին ոստիկանն 877-ին հետապնդում էր Բագրատունի Սմբատ Ա արքային, որ խուսափում էր նրա զօրութեան առջեւ: Արաբը գնալով պաշարեց Կարսի ամրոցն, ուր ապաստանել էին ճգնասուն թագուհին[2], նրա նուէր. դուստրն՝ Եգերացիների արքայի, եւ ամուսինը Մուշեղ որդու, «եւ այլ կանանց ազատազնի այրերի»: Բերդի պահապանն Հասան Գնթունին տեսաւ, որ փրկութիւն չկայ ոչ մէկ կողմից, բանակցեց ոստիկանի հետ, յանձնեց դղեակը եւ նա շնորհեց բոլորի կեանքը, իր հետ Դւին տանելով միայն թագուհուն, նուէր եւ մի քանի տիկիններին, որոնց պատւով պահեց մինչեւ հաշտութիւն կնքեց Սմբատի հետ ու վերադարձրեց: Եւ դարձեալ պատանդ ուզեց նրա երէց դուստրին ու Սահակ եղբօր դուստրին, որոնց փոխարէն արքան տուեց իր որդուն՝ Աշոտին, եւ եղբօրորդուն՝ Սմբատին, որր նախապէս տեսանք[3] եւ իր յիշուած եգերացի նուէր, որոնք այդ պանդխտութիւնն յանձն առեցին, անշուշտ, խնայելու համար երկու օրիորդների պատիւը: Նուէր յետոյ վերադարձաւ Աշոտի հետ[4], եւ Սմբատը կանխեց ազատեց իր մօրն իսկ[5]:**

**Յուսուփ ոստիկանը, անագորոյն ու տմարդի քան նախորդը, ուզեց եւ յաջողեց իր ծուղակի մէջ բռնել Սմբատ արքային սուտ երդմամբ, ձերբակալեց բանտեց նրան, ապա պահանջեց ուրանալ եւ նրա մերժման վրայ չարաչար տանջանքով նահատակեց 914-ին[6]: Նրա որդին Աշոտը վրէժխնդիր գտնուելով խորտակեց, սասանեցրեց արաբներին եւ նստեց հայրենի գահի վրայ[7]: Յաջորդեց մեր ազատների ընտանի պառակտումն[8], որ նորից զօրացրեց հայրենեաց թշնամիներին եւ ստիպեց Աշոտին գնալ կայսեր օգնութիւնը խնդրելու[9], թողնելով Հայաստանը համանուն հօրեղբօրորդուն, որ կրում էր իր հանգուցեալ հօր՝ Շապուհի[10] սպարապետական սուրը: Ժամանակը շատ փափուկ էր եւ Աշոտի տեղապահը պէտք ունէր մեծ զգուշութեամբ ու յարգանքով վարուելու չար ոստիկանի հետ, որը բաւական չհամարեց նրա հլու ընթացքը պահանջեց «մեծ եւ**

1. Սեբ. 234, 237: – 2. Աստ՝ 168: — 3. Աստ՝ 293: — 4. ՑՀ. կթ. 225-27, 228-29, 236: 5. Աստ՝ 293: — 6. ՑՀ. կթ. 293-300: — 7. Նոյն՝ 304-7: – 8. Նոյն՝ 321-25: 9. Նոյն՝ 355-57: 10. Աստ՝ 212:

բարեպաշտ տիկնոջը՝ սպարապետի մօրը եւ նրա երկու քոյրերին», պատմիչի անհոգութեան հետեւանքով երեքն էլ անանուն են մնացել.- եւ ուղարկեց Ատրպատական. «ի դիպահոջ գնոսա կացուցեալ ըստ պայմանի պատանդաց»: Այդ տիկնոջ հայրենի տոհմը չգիտենք, իսկ իր դուստրերն անշուշտ տարբեր էին իրենց երեք քոյրերից, որոնք իրենց հօր կենդանութեանն արդէն ամուսնացած[2] եւ հեռու էին ծնողների յարկից: Այնտեղ յետոյ հրաւիրեց նաեւ իրենց եղբայրը, որ բռնաւորը. պառակտելու համար Բագրատունեաց ոյժը. Նրա սիրելիների ներկայութեամբ թագաւոր կարգեց եւ դուռ բացեց հետագայ եղբայրադաւ խազմերի երկու Աշոտների միջեւ[3] եւ որոնց ակամայ պատճառ էին եղել սպարապետի մայրն ու քոյրերն իրենց պատանդութեամբ ստիպելով հարազատներին հաւանելու բռնաւորի կամքը:

Ռուբէնը՝ մեծն Լեւոնի եղբայրը, յաջորդելով հօրեղբօրը[4], հետզհետէ ընդարձակում էր տէրութիւնը, գրաւելով նաեւ Անտիոքի իշխանի գաւառներից: Բոհեմոնդ Գ անկարող դիմադրելու նրա զօրութեանը, համակամեց ու լուռ մնաց, մինչեւ մի օր (1185-ին) Ռուբէնը – կարծում եմ ծպտուած քան յայտնի  նոյն քաղաքը գնաց: Բարեպաշտ **Ռիթայի** այդ անդրանիկը դրժեց իր ստացած մայրենի գեղեցիկ դաստիարակութիւնն եւ հեռու իր կրտսեր եղբօր զգաստութիւնից[5], ապրում էր «պարապելով վաւաշոտ ցանկութիւններով եւ պոռնկական խորհրդով»: Եւ երեւում է թէ Կիլիկիայի հայ միջավայրի մէջ բաւական յագուրդ չգտնելով իր ախտերին, գնաց Անտիոք[6] «ուտել եւ ըմպել պոռնիկ կանանց հետ»[7], որոնք յանկուցիչ էին նաեւ արեւմտեան հզօրներին եւս[8]:

Ճիշտ ժամանակն էր: Բոհեմոնդն իմացաւ, սարդի պէս յարձակւեց ախտի ոստայնով բռնուած այդ ճանճի վրայ, ձերբակալեց ու բանտարկեց, մինչ նրա ընկերները մազապուրծ իրենց տներն էին փախչում: Անտիոքի իշխանն իր որսն ազատելու համար, փրկանք պահանջեց Սարւանդիքարը, Թիլն ու Ճկերն եւ հազար դահեկան եւ դրանց իբր երաշխիք պատանդներ ուզեց: Ռուբէնը դիմեց իր քեռուն՝ Բակուրանուն, Պապեռոնի տիրոջը[9], որ իբրեւ պատանդ յղեց «քրոջն (իր), եւ մօրն՝ Ռովբինուն եւ իր այլ ազգականներին», մինչեւ քեռորդին հետզհետէ կատարեց նրա բոլոր պահանջները եւ Բեհեմոնդը «ազատեց պատանդներին»[10]: Այդպիսով Ռիթան քաւեց որդու անառակութիւնը, որ այդ խրատից զգաստացաւ եւ վաղահաս մահւան մօտ – ոչ աւելի վաղ  կրօնաւոր դարձաւ ու թաղւեց Դրազարկի մէջ[11]:

---

1. Ցհ. կթ. 339. 363-64: — 2. Աստ՝ 60, 211: — 3. Ցհ. կթ. 366-68, 372-76: — 4. Աստ՝ 96: — 5. Աստ՝ 95: — 6. Տրգ. կիլ 264  7. Սմ. Տրգ. 104: — 8. Տրգ. Կիլ. 264: — 9. Աստ՝ 95: — 10. Տրգ. Կիլ. 264-65: — 11. Վհր. 212-13:

9 - **Դաւադրութիւն** - Ամէն ազգերի եւ մեզ մօտ եւս սովորական են եղել քաղաքական դաւերն իշխողների գահի կամ կեանքի դէմ: Երբեմն արդար. հասարակութեան շահի համար. եւ յաճախ անիրաւ. որոնց մէջ երեւում են. բարեբախտաբար քիչ անգամ. հայուհին էլ: Յիշեցինք **Փառանձեմի** դաւակցութիւնը Մամիկոնեան Վասակի հետ. նրա եղբօր Վարդանի սպանութեան մէջ[1]. Տեսանք եւս. որ նրա պատճառն անձնական էր երկու դաւադիրների կողմից եւս. սակայն նրանք իրենց նպատակին հասնելու համար քաղաքական մի հանգամանք տուեցին խնդրին. ստեղծելով իրենց գոհի դիտաւորութիւնը դաւելու Արշակի անձին ու թագաւորութեանն եւ այդպիսով նրա գործակցութիւնն էլ շահելով:

Տեսանք դարձեալ Պապի որդու Գ Արշակի օրով Հայոց գահի բաժանումը եւ նրա հաստատուելը յունական կողմն Եկեղեաց մէջ[2]: Իր եղբայրը՝ Վաղարշակը. որ պատւով իր «երկրորդն» էր կամ կէս թագաւորը[3], շուտով վախճանուեց եւ աներր՝ Սահակ ասպետը[4], որ արքայի հետ էր, օգտուելով թերեւս նրա երիտասարդութիւնից, իւրացրել էր փեսայի պատուի նշանակները կամ «արքունական զարդը»: Հեզաբարոյ Արշակն երեւում է աչքը փակել էր այդ յանդգնութեան վրայ, որ սակայն թագուհին՝ **Վարդանդուխտը**, չներեց,- որը Խորենացին համարում է Բաբիկ Սիւնեցու[5] դուստրը, մինչ մենք Մամիկոնեան Մանուէլի զաւակը տեսանք Փաւստոսի հետ[6].- եւ անդուլ գրգռեց ամուսնուն Բագրատունու դէմ, որ այդպէս «հանապազ հրապուրւում էր իր կնոջ կողմից», սկսեց ինքն էլ «չարամտութեամբ նայել» եղբօրն աներոջը: Սրա ազգականներն եւս Սպեր Գաւառից, յայտնի չէ որի թելադրութեամբ, իր մասին «քսութիւն սուտ» հասցրեցին արքայի ականջին, որ բոլորովին պղտորուած, «չարչարեց նրան» կամ նեղը դրեց:

Սահակը զգաց, որ իրեն այլեւս տեղ չկայ Արշակի մօտ եւ գլխին մեծագոյն մի փորձանք դեռ չեկած, փախաւ գնաց պարսկական կողմը Խոսրովի մօտ, որ նրան ընդունեց ցնծութեամբ եւ նրան սպարապետ կարգեց եւ այդպէս Արշակը զրկուեց քաջ մի օգնականից: Նոյն ասպետն ապա պատերազմի դուռ բացեց երկու թագաւորների միջեւ, զարկեց Արշակի բանակին եւ փախուստի մատնեց նրան, որ յետոյ հիւծախտից վարակուեց ու մեռաւ, հինգ տարի յետոյ իշխելուց բոլոր Հայոց եւ երկու ու կէս արեւմտեան բաժնի վրայ: Նրա գահի հետ մեծն Մանուէլի դստեր տիկնութիւնն էլ մայր էր մտնում եւ իրենց կուսակից նախարարները գնացին յարեցին Խոսրովին[7]:

---

1. Աստ՝ 183-84: — 2. Աստ՝ 91-92: — 3. Փաւս. 256: — 4. Աստ՝ 54-55: — 5. Խոր. Գ. խա: — 6. Աստ՝ 54-55: — 7. Խոր. Գ, խդ, խդ, խզ, խը:

Սրա նման խակապէս քաղաքական էր Ե Լեւոնի դէմ լարուած դաւն էլ, որի մէջ երեւում է նաեւ Դ Կոստանդինի կինը: Դաւատրն էր Օշինի Նղրեցու[1], անունն անծանօթ.- Օշինդուխտ ասենք.- Պապեռոնի Հեթումեան ճիւղից[2], որով եւ տոհմակից էր ամուսնուն, որ Նղրեցի Հեթումի որդին էր[3]: Կոստանդինն աւելի իր անձն ու հարստութիւնն էր սիրում քան գահը,- որի հարազատ ժառանգը չէր,- եւ աշխարհի. ութամեայ թագաւորութիւնից յետոյ դաշնագրւեց Բաբելոնի սուլթանի հետ, մեր երկիրն նրան յանձնելու, այն պայմանով որ ինքն ու ստացուածքն անցնէին Կիպրոս: Դաւն իմացւեց եւ գաղտնապէս Լեւոն Լիւսինեանին հրաւիրեցին Հայք, Տիւրոսի տիկնոջ՝ **Ջապլունի** թոռանը[4], ստանձնելու իր հօրեղբօր՝ Բ Կոստանդինի գահը եւ գալուց առաջ խողխողեցին դաւադրին 1373-ին[5], որին անմասն էր իր յաջորդը: Հասաւ Լեւոնն[6] եւ արքունի գանձը կողոպտուած գտաւ: Բուն գողից, որ պարոն Վասիլն էր՝ Թորոսի որդին, ամբաստանելով այրի թագուհին, նրա հետ բանտարկւեց, քննւեց եւ անմեղ եղաւ[7]: Լեւոնն աւելի առաջ գնաց իր մեծանձնութիւնն դժբախտ տիկնոջ հանդէպ եւ նրա սուգն սփոփեց՝ ամուսնացնելով իր սիրելի Մատթէոս կապպացու հետ, որին տէրութեան[8] ասպետ ու դիւանապետ կարգեց: Հայոց նախկին թագուհուն ուրիշ բան չէր մնում, բացի երախտագէտ լինելուց նոր արքային, սակայն ճիշտ հակառակը պատահեց:

Այդ շրջանում մատնութիւնն ու սպանութիւնը թագաւորների առաքինութեան կարգն էր անցել Հայոց մէջ: Կարող էին մի թագաւորին գահազուրկ անել, եթէ իսկապէս վնասակար էր, բայց ոչ, պէտք էր սպանութեան հաճոյքը վայելել: Իսկ քաղաքական ոճիրներն ազգերի քայքայման կարապետներն են, որ գուժում էին հայկական ազատութեան վերահաս վախճանն էլ: Այդ հոգուն զոհ գնաց Լեւոնն ինքը, վերջին պսակաւորը, որի գահակալութեան սկզբից սկսեց դաւն նրանց կողմից «ովքեր չէին ուզում քաղաքը (Սիսն ու տէրութիւնն) մնար քրիստոնեաների ձեռքում»[9], այլ հաւատքի թշնամիների, որոնց լուծը հաճելագոյն էր հայերին: Այս էր պատճառը եւ զուր է ու պատմութիւնից դուրս՝ կրօնական խնդիր ենթադրել արդէն լայնախոհ Կիլիկիայի մէջ[10]: «Դաւաճանութեան գլուխն էր» ազգի հոգեւոր պետը՝ Ե Կոստանդինը, - ի՜նչ խայտառակութիւն,- վերոյիշեալ Վասիլը եւ Օշինդուխտն իր ամուսնու հետ[11], ա՜յսպէս փոխարինելով իրենց ընդունած բարիքներին: Դրանց գործակիցն էր նոյն տիկնոջ եղբայրն՝ Աշոտը, որը Լեւոնի գալուց առաջ փախել էր դէպի Բաբելոն եւ իր հաւատքը վաճառելով եղել էր «ամն մեծ իշխան»: Նրան գրեցին՝ սուլթանի բանակով գալ եւ գրաւել

1. *Դրդ*. 119: 2. ***Մխ***. 411-13: — 3. ***Անդ***՝ 413. ***Դրդ***. 59: — 4. ***Աստ***՝ 69: — 5. ***Դրդ***. 68: — 6. ***Աստ***՝ 279: 7. *Դրդ* 105, 109-11: — 8. ***Նոյն***՝ 130: — 9. ***Նոյն***՝ 116: — 10. ***Աստ***՝ 290: — 11. ***Դրդ***. 130:

Կիլիկիան եւ թագաւորել: Բայց նա, որ լաւ գիտէր իր ազգի նկարագիրը, չհրապուրուեց այդ կոչից եւ գործն յանձնեց սուլթանին, որ յղեց Բուղրեքիրին եւ Միսր պաշարուեց:

Դաւադիրները վախեցան այդ զօրավարից եւ նրա պաշտօնակիցն՝ Հալպա Մելեք ամիրային, հրաւիրեցին նրան մտնելու համար քաղաքը եւ նա շտապով հասաւ: Կորովի Լեւոնեանը քաջապէս դիմադրեց թշնամիներին, ամրանալով բերդի աշտարակի մէջ: Այն ժամանակ դաւադիրները՝ կաթողիկոսն ու Օշինդուխտն էլ միասին, խորհեցին իրենք իսկ վերջացնել բարբարոսների գործը եւ Մատթէոսին մի քանի հոգով ուղարկեցին սպանելու թագաւորին: Լեւոնն արդէն վիրաւոր եւ անկողնում, նրանց յարձակման աղմուկից վեր վազեց, զինւեց եւ աշտարակի գաղտնի անցքից փախաւ ստորին յարկը: Դաւաճանները նրան չգտնելով, բերդի գրաւման աւետաբեր թուղթն յանձնեցին Կապպացուն տանելով ամիրային: Եւ երբ աշտարակից պարանով իջեցնում էին նրան, պարանը կտրւեց եւ անզգամը գահավէժ ջախջախւեց[1]: Այս էլ անտես արդարութեան տեսանելի հատուցումն էր նրան եւ Օշինի դստեր, որ երկրորդ անգամ սեւ այրութեամբ ծածկւում էր: Վերջը Լեւոնը լքւած բոլորից եւ անյոյս փրկութիւնից, անձնատուր եղաւ թշնամիներին[2]:

Երեք ծանր հարւածներ կրեց Հայաստանը անցեալի մէջ, մեր աւագանու անհանճար մէկ մասի երեսից: Արշակունեաց գահի մատնութիւնը Պարսկաստանին[3], Բագրատունեացն Յունաստանին՝ Վեստ Սարգսի եւ ուրիշների ձեռքով[4] եւ Ռուբինեաններին ինչպէս տեսանք: Առաջին դաւը նւազ վնասաբեր եղաւ ազգին, որ օտար բռնութեան ներքեւ չարունակում էր պահել իր ազնւական դասակարգը, ներքին ոյժն ու կենսունակութիւնը: Երկրորդ դաւին յաջորդեց հին ազատանու մեծագոյն մասի ջնջումն ու ցրումը: Իսկ երրորդն ամենից աղէտաբերն եղաւ, Լեւոնի իշխանութեան հետ հողը դնելով յաւերժաբար Ռուբինեանց գահը: Ազգի նորակազմ ազնւականութիւնը, կիսակենդան ազատութիւնը, քաղաքակրթական բարգաւաճումն եւ դրանց հետ հայուհու հինաւուրց մեծութիւնն էլ:

---

1. Նոյն՝ 119-32: — 2. Նոյն՝ 140-44: — 3. Աստ՝ 185: — 4. Աստ՝ 66, 127:

# ԳԼՈՒԽ ԺԵ

## Քաջութեան մէջ

Հայուհին իր ընդարձակ մասնակցութեամբ ընկերական ու քաղաքական կեանքում. առիթներ էր ունենալու անշուշտ ի գործ դնելու իր սրտի կորովը եւ իր կանացի փափկութեան հետ առնացի քաջութիւնը զուգելու գեղեցիկ հանդէսը պիտի տար ազգին. ճակատելով, երբ հարկը պահանջէր վտանգների դէմ. ի պաշտպանութիւն իր անձին. սիրելիներին, գաւառին կամ հայրենեաց, որոնց հովանաւորութիւնն իրեն էր յանձնուած: Բաւական թւով ու պէսպէս օրինակներ պահել է մեզ պատմութիւնն հայ դիւցազնուհիների, որ նկատելու ենք այս գլխում, որպէսզի համոզուենք թէ մեր հին քոյրերն այս մասի մէջ էլ գիտակցելով պսակներ բոլորեցին իրենց ճակատի շուրջը. մրցելով այրերի հետ այս առնական ասպարէզի մէջ եւ գերազանցելով նրանցից որոշներին:

1.- **Բերդերի մէջ**.- Հայ աշխարհի եւ իշխանութիւնների ապահովութիւնը ներքին կամ արտաքին թշնամիներից հաստատուած էր իր ամրութիւնների վրայ: Եթէ սրանք կարողանային դիմադրել յարձակումների ժամանակ շահ էր նորանոր ուժեր հաւաքելու. զարկելու կամ լքելու, հեռացնելու թշնամուն գաւառից կամ աշխարհից: Այնտեղ վերեւում էր ուրեմն զօրականի ապաւէնը, վտանգի կամ կռւի պահին եւ նրանց վրայ հրամանատար կանգնած էր սուրը ձեռքին նոյն ինքն իշխանը: Յաճախ պատահում էր, որ այդ պաշտօնն ստանձնէր հայ տիկինը, երբ զանազան պատճառներով իրեն վիճակւէր աշխարհի կամ գաւառի պահպանութիւնը կամ առաջնորդութիւնը, ինչպէս տեսանք նախորդ գլխում:

Խորենացին աւանդութեամբ պատմում է, թէ երբ Սմբատ Բագրատունին լսում է Սանատրուկ արքայի որդիների կոտորածն Երւանդի ձեռքով եւ Արտաշէս մանկան ազատւելը[1], «վերցրեց իր երկու դուստրերին՝ **Սմբատանոյշին** եւ **Սմբատուհուն**, թողեց Բայբերդի մէջ, արս քաջս թողնելով ամրոցի վրայ»: Եւ ինքը մի քանի հոգով գնում գտնում է Արտաշէսին, որ գաղտնապէս փախցնում է Պարսկաստան Դարեհ արքայի մօտ: Երւանդը զայրացած, պայքարում է նրա բերդի դէմ, որը նւաճում է եւ երկու քոյրերին տանում բերդարգել է անում պատւով, մինչեւ վերադառնում է Սմբատը հարւածում է գահի յափշտակողին եւ թագաւոր է դարձնում Արտաշէսին, որ այդ անւամբ երկրորդ է կոչւում[2]:

---

1. Ասա՝ 287: 2. Խոր. Բ, լէ, լը, խզ, խէ:

Բայց մենք ունենք պատմական ստոյգ օրինակներ: Տեսանք **Փառանձեմին** Արտագերս ամրոցի մէջ իբրեւ Հայոց թագուհի[1]: Բայց միայն այդ հանգամանքով նա այդտեղ չէր գտնւում. այլեւ իբրեւ գլուխ «մետասան հազար սպառազէն պատերազմողների» ու պաշտպան բերդին. դէմ առ դէմ կանգնած Պարսկաստանի ահեղագոր ու համայնաջինջ բանակի հետ եւ տասնչորս ամիս պատերազմական վիճակի մէջ ապրելով: Յանդգնութիւնը, քաջութիւնը, պայքարելու եւ յաղթելու հոգին, Փառանձեմի լեռնական եւ սիւնեցու նկարագրի մէջ էր եւ դա ապացուցեց Բագրեւանդում, Արշակի ու մրցակցի դէմ[2]: Դուստրն էր այն Անդովկի, որ Տիրանի նենգաւոր գերութիւնից յետոյ[3], գնաց Բիւզանդիոն, կայսերական բանակը շարժեց, բերեց եւ խորտակեց Պարսկաստանի զօրութիւնը եւ ստիպեց Ներսեհին հաշտութիւն խնդրել եւ արձակել Հայոց արքային[4]: Դրա զաւակն էր ուրեմն, որ սուր ի ձեռին կանգնեց Արտագերսի պարիսպների վրայ եւ պարսիկներն ի հեճուկս իրենց անհամար բազմութեան, աշխատեցին եւ «բերդը չկարողացան առնել» նրա ամուր ճանկերից եւ բնաւ չէին էլ կարող վերցնել, եթէ նրանց օգնութեան չհասնէր ուրիշ ահաւորագոյն մի թշնամի՝ համաճարակ մի ախտ, որ երեւում է թէ առաջ եկաւ ամբոխի խռնութիւնից, որ երկնային մի պատուհաս թւաց պատմիչին: Սոսկալի էր հարւածը: Մէկ ժամւայ մէջ հարիւր, երկու եւ մինչեւ հինգ հարիւր միասին անչնչանում էին եւ նոյն ինքն ուրախութեան տաճարի մէջ, թագուհու ահարեկ աչքերի առջեւ: Մի ամիս չանցած Արտագերսն անմարդացաւ եւ միայն Հայոց տիկինը մնաց, երկու նաժշտով, դիակների մեծ մի գերեզմանի մէջ, սարսափի եւ յուսահատութեան մատնւած:

Մի օր էլ յանկարծ իր դիմաց արձանացաւ մի անձ: Ո՞վ, որպի՞սի դէմք ամրոցի այդ ահաւոր ամայութեան մէջ: Բոլոր մարմնով դողաց Փառանձեմը: Ժամանակի հայր մարդպետն էր, արքունի բարձր պաշտօնատարներից մէկը[5] եւ սրտով թշնամի Արշակունեաց տոհմին, որ հայրենեաց այդ անտէրութեան ժամանակ գաղտնապէս գնացել միացել էր Պարսկաստանի հետ: Ներեր ու նիզակներ այլեւս չնչմարելով ամրոցի աշտարակների վրայ եւ իր պաշտօնի շնորհիւ տեղեակ բերդի ծածուկ անցքերին, գիշատիչ առնետի դունչը մօտեցրել եւ զգացել էր այնտեղ կատարւած զարհուրելի ողբերգութիւնը եւ յանդգնօրէն ներս սողաց վերջին անգամ բանալու համար սեւ սիրտը: Սկսեց ծանրապէս թշնամաբար խօսել Հայոց մեծ տիկնոջ հետ «իբրեւ մի բոզ» անւանել եւ Արշակունի տոհմն որպէս փատախորհուրդ եւ պատճառ աշխարհի կորստեան, յարելով թէ «իրաւի անց ընդ ձեզ այդ, եւ այլ գի անցցէ»: Թափեց թոյնն ու գնաց

1. *Աստ* 277: — 2. *Աստ* 42, 50, 137, 183: — 3. *Աստ* 144: 4. *Փաւս.* 54-58: — 5. *Աստ* 21:

*կռուեց. մի օր օձիքը յանձնելու համար Մուշեղի ձեռքը. որ իր շան լեզուն պիտի ընդարմացնէ եւ հայրենապաշտ ուղեղը պայթեցնէ Եփրատի սառուցեալ կոհակների մէջ*[1]:

*Փառանձեմը իր անսահման դժբախտութեան վրայ քամեց այդ դառն բաժակն էլ եւ զգաց. որ ամէն ինչ վերջացա՛ծ էր: Ելաւ ամրոցի աշտարակի վրայ. նայեց իր Հայաստանին: Մնացէ՛ք բարեա՛ւ. թագ. փառք. հայրենիք. եղաւ իր վերջին հառաչը. մինչ իր գեղեցիկ աչքերից մարգարտանում էին ջերմ կայլակներ: Յետոյ վար իջաւ. մօտեցաւ բերդի երկաթեայ ծանր դռանը. գողդոջուն ձեռքերով քաշեց շղթան. բացեց այն եւ պարսիկներր ներս խուժեցին*[2]*: Անգովքի դստեր բախտի արեւը մայր էր մտնում: Պարտուեց սպարապետուհին. բայց ոչ փառութեամբ. եւ իր բոլոր զօրքերի սպառուելուց յետոյ նման հաւատարիմ մի հրամանատարի. որ պատնէշից անբաժան. բանակի վերջին ընկնողն է լինում:*

*Փոխադրւում ենք Թ դարը. որում Հայքն անդադար պայքարի մէջ էին նենգաւոր ու խուժդուժ արաբների հետ: Դիոնեսիոս դել-մահրեցին պատմում է. թէ 829-ին Քուրդան կոչուած արաբ ցեղը սարսափ էր գցել Ճեզիրայի եւ Հայաստանի մէջ: Հասան անունով մի արաբ. քրիստոնեաների բարեկամը. զարկեց ու ցրեց նրանց եւ իրենց պետը՝ Մահդին. մեսիա կարծուած. ապաւինեց Տարօնում. որի իշխանը՝ Սահակ Բագրատունին՝ Աշոտի որդին. բռնեց նրան եւ սպանեց: Յետոյ պատերազմի գնաց Տայայէն կոչուած Տաճիկների դէմ. որից Քուրդաններն օգտուելով. եկան դարան լարեցին Սահակի ընտանիքի դէմ. որ այլակրօն մի կին զգացրեց այդ: Իշխանի կենակիցը.- անունն անծանօթ.- նրա կրօնաւոր եղբայրը. եւ ժողովրդի մի բազմութիւն ապաւինեցին բերդի մէջ. եւ պաշտպանողական դիրք բռնեցին. տիկնոջ առաջնորդութեան ներքոյ:*

*Թշնամիները հասան. մահ սփռեցին ամրոցի չուրջը. եւ սկսեցին քարերով հարուածել այն: Տիկնոջ եղբայրը սրբոց մասունքը բռնած աղօթում էր երկրպագութեամբ եւ իր բարեպաշտ քոյրը իրեն անդադար յորդորում էր աղօթքի. ինքն էլ նրա հետ միացած: Նա ունէր ստնդեայ մի մանուկ. որին Աստուծոյ առջեւ դրեց. ասելով. «Քրիստո՛ս. գոնէ այս մանկան համար. որ մկրտութեան անմեղութիւնն ունի. օգնի՛ր ծառաներիդ»: Մինչ այն՝ թշնամիները բերդի դուռն այրելով. ներս մտնելու վրայ էին: Այդ ժամանակ ուրիշ մի վանական նիզակը ձեռքին դուրս խոյացաւ պարսպից. վերջին յուսահատական մի փորձ անելու: Հասաւ թշնամիների գլխաւորի առջեւ. խոցեց սպանեց նրան. անվնաս վերադարձաւ բերդի մէջ. եւ բարբարոսներն ապշած ոչ մի վնաս*

1 *Փաւս.* 169-71, 191: — 2. *Նոյն՝* 171:

չհասցրին նրան: Երեկոյ եղաւ եւ ամբողջ գիշերն անքուն անցկացրին ու հսկեցին ներսում:

Աւաքինի մանկամարդ տիկինը խորհելով, որ բերդի անկումով իրեն վիճակուած էր անարգ մի վախճան, որոշեց այդ պարագային ինքզինքը մահուան վտանգին ենթարկել: Մտաւ զինատուն եւ ոսկեզօծ մի սուր վերցրեց, յուսալով որ նրա փայլից հրապուրուած, թշնամիներն սպանէին իրեն: Անշուշտ այն յանձնելուց առաջ գործածելու էր եւս, արարներին աւելի գրգռելու համար իր դէմ: Բայց նրանք յանկարծ բերդի պաշարումը թողեցին ու սկսեցին կողոպտել ամէն կողմ: Մինչ այն Սահակը լսելով բերդականաց աղաղակը, զօրք ուղարկեց նրանց օգնութեան, այնպէս, որ երբ թշնամիները նորից յարձակուեցին ամրոցի վրայ, իրենց դիմաց սրեր ու քարեր գտան: Հետեւեալ օրն իշխանն էլ հասաւ իր գնդով, կոտորեց ու թաղեց ձեան կոյտերում[1]: Փրկութիւնը կատարուած էր եւ Տարօնի տիկինը պատւով գլուխ էր հանել պաշտօնը:

Նոյն դարի կէսից յետոյ Վասպուրականի բազմախումբ ազատանին իրար հետ անդադար մրցման ու պայքարի մէջ էին: Նրանցից Գ Դերէնը[2] կասկածով լի էր իր տոհմակից՝ Գագիկ Ապումրւանի[3] դէմ, բանսարկուների թելադրութեամբ: Համաձայնեց իր քեռորդու՝ Արծրունի Հասանի հետ, պատուիրելով ձերբակալել նրան եւ իրեն բերել: Դաւադիրը գնաց Ճախուկ ամրոցն, ուր Գագիկն էր եւ ընդունուեց իբրեւ ազգականի: Գիշերն երբ ննջում էին, Հասանը «սուսերամերկ, վառեալ փոքր գնդաւ, մոմեղինօք վառելովք» յանկարծ խուժեց նրա սենեակը, շղթայեց ու ձայն տուեց Դերենիկին, որը փութով հասաւ եւ յղեց նրան «սպառազէն պատրաստութեամբ դէպի Վանտոսպ, տիկին Վասպուրականի մօտ», իր կենակցին ու մեզ ծանօթ **Սոփին**[4], պատուիրելով «զգուշութեամբ պահել», մինչ ինքը մեկնում էր «դէպի Ճւաշ գաւառը ձմեռելու յաւանին Մառական[5]»: Արծրունեաց տէրն իր երկար բացակայութեան ժամանակ ոստանի եւ ամրոցի պահպանութիւնը վստահել էր այդ կնոջը, բայց բագրատունի բազկին, որ իր մահից յետոյ եւս վարելու էր քաջաբար նոյն պաշտօնը[6]: Սոփին այդտեղ իր ձեռքերում ունէր իր քեռորդուն[7], որ փակեց, իշխելով նախ սրտին, որ քաղաքականութիւնն էր պահանջում ամրացնել այդտեղ եւ ապա «ամրոցի», որի «ի մետաղս» կամ ներքին բանտի մէջ պահեց կալանաւորը, մինչ իր անխոհեմ ամուսինը

1. Միք. Աս. Գ, 50-52: — 2. Անդ՝ 29: — 3. Անդ՝ 62: — 4. Անդ՝ 43: 5. Արծ. 253-54: 6. Անդ՝ 279: — 7. Անդ՝ 59:

գնում էր փնտռելու իր մահը, որ բացեց արգելարանի եւ արկածախնդրութեան դուռն Ապումրուանի առջեւ, եւ որոնք թանկ գինի արժէին նրան:

Տեսանք նոյն Դերենիկի անդրանիկ զաւակին՝ Աշոտին, յետոյ փեսայանալն, այդ կայանաւորի **Սեղա** դստեր: Երիտասարդ իշխանազեան մի օր եղաւ գնաց Աւշին ոստիկանի հրաւէրին,- անտեսելով քեռուն՝ Սմբատ արքային, որ արգելեց հաղորդակցել հայրենեաց թշնամու հետ,- եւ իրեն տեղապահ թողեց Վանի մէջ մանկամարդ զուգակցին՝ «տիկինն Վասպուրական Խոսու», իսկ ամբողջ պահպանութիւնն յանձնեց ակէացի քաջամարտիկ Յիսէինին: Բագրատունի գահակալը սաստիկ բարկացած, գրեց Անձեւացեաց Գուրգէն իշխանին եւ Ապումրուան քեռորդուն, գնալ տիրել եւ իրենց սեփականութիւնը դարձնել Վասպուրականը: Նրանք գնացին պաշարեցին Վանն, ուր Սեղան ճակատած իր հօր դէմ, երեսուն օր դիմադրեց նրան, մինչեւ սպառեց պաշարն ու ջուրն եւ «ակամայ կամս» քաղաքն ու բերդն յանձնեց ծնողին[4], լինելին եւ առանց ակնածութեան կատարելուց յետոյ Վասպուրականի տիկնոջ պարտականութիւնը, որի ձայնը մոռացրեց իրեն ախոյեանի հայրութիւնը: Յետոյ դարձաւ Աշոտը, բանտարկւեց, ազատւեց ու նորից տիրեց աշխարհին աներոջ կորստեամբ[5]:

Նոյն իշխանը մի պայքար ունեցաւ նաեւ իր հօրաքրոջ եւ ուրացող Վասակի որդու[6], վերոյիշեալ Հասանի հետ, որ արկածախնդիր մի երիտասարդ էր[7] եւ գրաւել էր Սեւանի բերդը, որ Աշոտի բանտարկութեան ժամանակ Ապումրւանը յափշտակել եւ իրենն էր տւել[8]: Սա միանգամայն ծածուկ հակառակութեամբ լցւած Աշոտի դէմ եւ ձայնակից Աւշին ոստիկանին, սկսեց դաւ նիւթել: Եւ երբ նա մի օր գտնւում էր Փարակ գաւառի Պղւանս գիւղի մէջ, նենգաւորը գինեց սրիկաների ձեռքերը, եւ նրանց գլուխն անցած, գնաց պաշարեց գիշերով իշխանի իջեւանը: Հասանն աճապարեց ելաւ տանիքի վրայ անձամբ կատարելու համար դաւը: Սակայն իր չար բախտից փլեց տանիքը, եւ դաւաճանն ընկաւ իր յարած ծուղակի մէջ ու բերւեց Աշոտի առջեւ, իսկ դաւակիցները չփոթւելով բարձրացած աղմուկից խուճապահար փախուստի դիմեցին: Իշխանը նենգաւորին կապեց, տարաւ Սեւան բերդի հանդէպ, ուր պահապան նստել էր միւս որդու հետ. նրա մայրն եւ իր հօրաքոյրը,- որ կարող ենք **Աշոտուհի** կոչել իր հօր անունով,- եւ պահանջում էր բացել եւ իրեն յանձնել այն, որպէսզի խնայէր կալանաւորին: Տիկինը վստահ իր քաջութեան վրայ, բայց ոչ եղբօրորդու խոստումով,

---

1 Աստ՝ 44-45 – 2. Աստ՝ 62: - 3. Անդ: - 4. Արծ. 262-63: 5. Աստ՝ 62: — 6. Արծ. 250: 7. Նոյն՝ 308 եւն: 8 Նոյն՝ 309:

որի նկարագիրը ծանօթ էր իրեն, մերժեց առաջարկը եւ «բանադրանքի ձեւով չցանկացան բերդը տալ

Կացութիւնը շատ ծանր էր եւ Սմբատ արքայի ականջին հասաւ. որ ստիպեց ու յետ այնուհետ Յովհաննէս կաթողիկոսին՝ պատմիչն իսկ. Նա գնաց համոզեց «տիկնոջն» ամրոցի բուն հրամանատարին. յանձնել գլխաւորն ու փրկել որդուն. Երդումն ընդունեց նաեւ Աշոտից. ողջ արձակելու Հասանին եւ տիկինն իջաւ բերդից. Իսկ երդմնադրուժ իշխանը մեծ խակութիւն գործեց այդտեղ: Անյաղթ հայրապետին եւ իր Գագիկ եղբօր ձայնին. չարամտաց խորհրդով երդմնազանց եղաւ ու փորեց Հասանի աչքերը. դժբախտ մայրը կուրացրեց որդուն եւ ամրոցը միանգամայն: Տեսնելով այս կաթողիկոսը դառնացած. ձեռք առաւ հոգեւոր սուրը. բանադրեց Աշոտին ու մեկնեց թախծութեամբ: Իսկ կոյրը «գրկւած զգալի լոյսից. ոգու աչքերը բացւեցին», խորհրդածում է Թովմայի չարունակողը. իսկոյն կրօնաւոր դարձաւ ու սրբութեամբ ապրեց մինչեւ մահը: Վասպուրականի տէրն էլ չկարողացաւ վայելել ոչ երդմնազանցութիւնն եւ ոչ իշխանութիւնը. յաջորդ տարին իսկ յանկարծահաս ցաւով մեկնեց աշխարհից ծաղիկ հասակում[1], ինչպէս առիթ պիտի ունենանք տեսնելու մեր ԺԵ գլխում:

Մեծ Հայոց սահմանագլխին ու Եփրատի ափերի վրայ կառուցւած կար Կարկառ բերդաւանը, ուր բնակւում էր Շնորհալու եղբայրը՝ Վասիլը[2]: Սա 1149-ին օգնութեան էր գնացել Եդեսիայի Յոսլին Բ իշխանի, ընդդէմ Իկոնիայի Մասուտ սուլթանին, որ ասպատակում էր նրա սահմանները: Երկուսն էլ խուսափում էին հանդիպել նրա հզօր զօրութեանը, սպասելով փոթորկի անցմանը նւազագոյն վնասով: Վասիլն իր բացակայութեանն ամրոցի պահապան էր թողել ամուսնուն՝ Մարեմիկին[3] ու զաւակներին: Մի օր էլ խորհեց պաշար տանել «բերդի կարիքների համար», որ կարօտելու վրայ էր, միասին առնելով Յոսլինի զօրքերից չորս հարիւր հոգի եւ սկսեց առաջանալ դէպի Կարկառ: Հանձթի տէրը Խլիճասլանը՝ սուլթանի որդին, որ դարանակալ նստած էր, հասաւ ընկաւ նրանց վրայ եւ ձերբակալեց բոլորին: Տարաւ Կարկառի բերդի առջեւ եւ պահանջեց իրեն յանձնել այն: «Վասիլի կինն եւ որդիներն», որ իրենց մօր հրամանից կախւած էին, զգացին, որ իրենց դիմադրութիւնն անպայման իշխանի կորուստը պատրաստելու էր, որով ցաւ ի սիրտ որոշեցին անձնատուր լինել, եւ «երդում առնելով բերդն տւեցին»: Ապա ընտանեօք տարւեցին սուլթանի առջեւ, որ մեծանձն գտնւեց նրանց հանդէպ, եւ «անվնաս եւ մեծ պատւով» ուղարկեց ի Սամուսատ, ուր Վասիլին մի երկիր շնորհեց իշխելու համար[4]:

---

1. Յհ. կթ. 239-42. Արծ. 308-10, 279: — 2. Աստ՝ 98: — 3. Աստ՝ 66: 4. Ուռ. 501-2. Տրգ. Կիլ. 223:

*Տեսանք Լամբրոնու նենգութեամբ գրաւումը Լեւոն արքայից՝ Խորհելով, որ նրա օրինաւոր տէրերը կարող էին մի օր նոյն խաղն իր հետ կատարել, որոշեց ամրոցի պահպանութիւնն յանձնել հաւատարմագոյն ձեռքերի եւ «տուեց իր զաւակների մօրը՝ տիկնաց տիկին» **Ռիթային**[2], որ հաստատուեց մնաց ամրոցում իբրեւ պահապան ու բնակիչ եւ իբրեւ Հեթումեան ծնունդ՝ ժառանգ իր հօրեղբօրորդու՝ Հեթումի, գղեակի՛ բնիկ տիրոջ, այնտեղ կրթելով թոռներին էլ[3]: Տիկինը պահեց այն այնչափ, որ ապրեց մինչեւ յետոյ հարազատ ժառանգին անցաւ[4].*

*Բոլոր սրանք մեր տիկինների բերդապահութեան յիշւած օրինակներն են. վկայելով, թէ եղել են եւ բազմաթիւ անյիշատակներ, բատ որի մէջ յիշատակութիւնը կախուել է պատմիչների յօժարութիւներից կամ պատմութեան յարմարութիւնից:*

*2.- **Ճակատի վրայ.-** Դիեակը պահանջում էր հայ տիկնոջից սրտի եւ կամքի ամրութիւն: Ստոյգ է, բայց միգուցէ երաշխաւորում էր կեանքի ապահովութիւնը եւ նա հրամանատար էր այնտեղ ոչ մարտիկ, ընդհակառակն մեծագոյն արիութիւն պէտք էր կուռի ասպարէզի մէջ, ուր հարկ էր կանգնել մահւան դէմ ճակատ առ ճակատ. Եւ այնտեղ էլ հայուհին երբեմն հանդիսացել է, թէպէտ իր քաղաքակիրթ կնոջ հանգամանքը չէր ներում իրեն սովորական դարձնել մուտքը ռազմի ամէնի ու տմարդի խառնուրդի մէջ, որում հայ այրն անգամ ի հարկէ ու դժկամութեամբ է մտել սովորաբար[5]: Հարկն էր ուրեմն, որ զինում էր հայ կնոջ բազուկն էլ, երբ նրա հոգին ընդվզում էր, ու մղում էր իրեն անձի կամ հասարակական շահի պաշտպանութեանը եւ որի մի քանի օրինակները պահել է մեզ պատմութիւնն ի պատիւ նրա աւելի ներքին մարդուն, քան արտաքին բռնադատ զօրութեանը:*

*Կրտսերն Կիւրոսն երբ* 401 *թւին Հայաստանից անցնում էր, իր Արտաշէս եղբօր դէմ կռւելու համար, նրա բանակին միացաւ Հայոց արքայորդին՝ Տիգրանը եւս իր գնդով եւ իր հետ տանելով նաեւ իր կնոջն, որին նախապէս հանդիպեցինք[6], «որպէսզի տեսնի, ասաց, ինչ որ ես կարող եմ անել»: Եւ այդ արի հայուհին պատերազմի շրջանին չքաժանուեց կենակցի կողքից, կանգնած նետերի եւ նիզակների դէմ, զուցէ եւ նրանց պատասխանելու վիճակի մէջ, այնքան, որ պարսիկ արքային հիացում պատճառեց եւ նա հրապարակով «Տիգրանին նուիրեց բազմաթիւ գոհարներ, խնդրելով որ կնոջը տայ, պատերազմին քաջաբար իր ամուսնուն հետեւելու համար[7]»: Մի պատիւ, որին արժանացող ուրիշ օտարուհիներ չեն յիշւում այդ առթիւ:*

---

1 *Աստ՝* 63-64: 2. *Կիր.* 157: — 3. *Աստ՝* 95: — 4. *Աստ՝* 64: — 5. *Հմմտ. աստ՝* 37: — 6. *Անդ*: — 7. *Քսեն. Կիւր Գ. ա. Ը. դ:*

Մեր նախարարները 450 ին վերադառնում էին Տիզբոնից, կեղծ ուրացութեան դիմակն երեսներին Պատմիչն ասում է. բոլոր մարդը մի փոթորիկի պէս եկաւ հասաւ եպիսկոպոսների ժողովին, որոնք անտեղեակ նրանց ծածուկ ծրագրից, իսկոյն զինեցին իրենց վիճակներին. «զրգեցին ժողովեցին արանց եւ **կանանց** բազմութիւն՝ շինականների եւ ազատների ... եւ բոլորին Քրիստոսի զինուորներ անուանեցին», ամէն գնով ճակատելու համար մազդեզական կրօնի դէմ, որը մտադիր էր խաւարեցնելու Լուսաւորչի լոյսը. Պայմանաւորուեցին իրար հետ, ամէն մարդ կռուելու էր անխտիր, եղբայրը եղբօր դէմ, որդին հօրը, հայրն որդու, որ հեռացել էր Աւետարանից: Ամենից ուշագրաւը՝ «կինը կռուելու էր ամուսնու դէմ», որից բաժանել էր իր աստուածասէր սիրտը[1]: Խօսքից գործի անցան եւ մի բանակ կազմեցին, «ոչ միայն քաջ այրերի, այլեւ **քաջասիրտ կանանց**»,- որոնք աղջիկների նման մեծագոյն համարձակութիւնն ունէին խառնուելու ընկերութեան մէջ[2]. - «ամէնքը զինուած եւ սաղաւարտով, սուրը մէջքին եւ վահանը ձեռքին[3]»:

Ի՞նչ էր պատահելու, եթէ մեր իշխանները իսկապէս ուրացած լինէին եւ փորձէին ձեռք տալ, վնասել եկեղեցիներին: Այդ հայ ամազոնները զարդի համար սաղաւարտն չդրեցին ու սուրը չբռնեցին, այլ պիտի մտցնէին այն իրենց օտարացած ամուսինների եւ ազգակիցների սրտերում եւ տապալելու ու տապալուելու էին գետին: Եթէ վերցրին զէնքը, ուրեմն տեղեակ եւ յօժար էին նրա գործածութեանն եւս: Մինչեւ այդտեղ հասնելու պէտք չեղաւ բարեբախտաբար, բայց ցոյց տուեցին, թէ իրենց չէր պակասում հասնելու կարողութիւնն ու կամքը եւ այս արդէն բաւական է նրանց քաջութեան վկայութեան համար: Սուրը տեսանք նաեւ Տարօնի մի կնոջ ձեռքում[4]:

Մենք խնամիական կապեր ունեցանք Աղուանից աշխարհի հետ, որ դրացիութեամբ, քաղաքական եւ ընկերական հաղորդակցութեամբ, լեզուով, բարքով եւ միջին դարում այնտեղ իշխող Բագրատունի տոհմով էլ մեր աշխարհի մի նահանգի պէս էր եւ վերջը խառնուեցին բոլորովին մեր ցեղի հետ: Հետեւաբար իբրեւ հայուհիների վրայ նայելու ենք ինչպէս կատարեցինք արդէն[5] մեր ամուսնացած աղուան հարսներին: Դրանցից մէկն էր **Շահանդուխտը**՝ դուստրը Վարազ Տրդատ իշխանի, Թ դարում, թերեւս մեր ծանօթին իսկ[6], որ (այդ պարագայում) իր քրոջից՝ **Սպրամից**, յետոյ հարս էր գալիս, իր իսկ վկայութեամբ՝ «Թորգոմեան տան մէջ» մի հեծելագնդով: Հասնելով Բազաց կամ Սիւնեաց սահմանները՝ մի պարեխի վրայ, որը կանգնած էր ձորի վերեւ,

---

1. *Հմմտ. աստ*՝ 36-37: 2. *Աստ*՝ *Ե*, 2: — 3. *Եղշ*. 43-44: — 4. *Աստ*՝ 301: 5. *Աստ*՝ 170, 197, 230:
6. *Աստ*՝ 230:

չրջապատւեց խամակլալցիներով, որոնք հրապուրւած նրա գեղեցկութեան համբաւից, որ նախանձ չէր ենթադրում, ասում է պատմիչը, «այլ իրր օդի լոյսի տարր եւ յանսօր չողից կերպարանք ստացած» եկել էին առեւանգելու նրան եւ սկսեցին կոտրել հեծեալզօրքին

«Այս յաւ համարեցի, յարում է օրիորդը, գայլապատառ այլազգիների ձեռքով կորչելու փոխարէն, իմ Քրիստոսի համար գահավէժ մեռնել»: Ցիչում է Աստւածածնին ու Հռիփսիմէ կոյսին, իրեն Աստծուն է յանձնում, խաչակնքում եւ «գարձնելով երխարի երեսանակը թռաւ քարից», ասում է. հասնում է խոր ձորի յատակը, ինքն ու ձին անվնաս մնալով «աներեւոյթ զօրութեամբ», որին միացնելու ենք իր սրտի քաջութիւնն ու հեծելութեան մէջ ճարտարութիւնն էլ[1]: Թշնամիները հիացած թողնում ու հեռանում են: Օրիորդը չնորհակալ է լինում իրեն փրկողին եւ այնտեղ ուխտում է մնալ մինչեւ մահը: Զլսելով ծնողների թախանձանքներին, որ կանչում էին իրեն, մի մատուռ ու մի խցիկ է կառուցում նոյն ձորի մէջ եւ կրօնաւոր է դառնում եւ ապա փախճանւում է ռահերորդութեամբ [illegible] Ծամթեւի եկեղեցուն[2]:

Շիրակը եւ իր չքնաղ ոստանը հեծեծում էին բարբարոսների ճնչման ներքեւ եւ քաղաքի բնակիչներն 1124-ին ազատւելու մի հնար խորհեցին: Միաբանւեցին Վրաց Դաւիթ Գ թագաւորի հետ, դռները բացեցին՝ ներս թողեցին նրան, որ ձերբակալեց Անիի տիրոջ՝ Աբլսուար ամիրային որդիների հետ ու գերի տարաւ, քաղաքն յանձնելով Օրբելեան Աբլհեթին եւ նրա որդուն՝ Իւանէին: Աբլսուարի անդրանիկը՝ Փատլուն, որ նախապէս Խորասանի ամիրապետի մօտ էր գնացել, լսելով դաւը՝ մի բանակ կազմեց ու եկաւ պաչարեց ոստանը, որ մի տարի տոկաց նրանց բուռն յարձակումներին, փոխադարձ հարւածներ տալով:

Մի օր կուի սաստկութեան պահին պարսպի վրայ հայ քաջաց մէջ երեւաց «մի կին», որ բացատրութիւնից դատելով, ազնուական լինելու չէր, այլ պարզ քաղաքացի, «առնացի սրտով»: Եւ իրեն յարմար զէնք առնելով քարերն ուժգնօրէն ու մեծ յաջողութեամբ վարում էր «հալածում էր մարտնչողներին», որ պատւարներից վեր էին մագլցում: **Այծեամ** էր նրա անունը, ասում է Սամուէլը, «ըստ իր արժանի արագութեան», որով պայքարում էր, «ոչինչ էր համարում նետերի խոցերը, որ վիրաւորում էին արտաքուստ» իր մարմինը: Ցայտնի չէ, թէ այդ վէրքերից մահւան փաւքն էլ ժառանգե՞ց, այդտեղ, Անիի այդ քաջերի դուստրը: Ոստանի պարիսպները

1 Հմմտ. տստ՝ 116: — 2. Օրբ. 119-20:

հաւատարիմ մնացին Այծեամին ու գինակիցներին, մինչեւ դժբախտաբար հասաւ նոր եւ անողոք մի թշնամի՝ սովը, որ հարկադրեց անձնատուր լինել[1]:

Կիրակոս վանահայր Ս. Ստեփանոսի 1473-ին խօսում է մի յիշատակարանի մէջ իր նախնի՝ Հեթում զօրապետի մասին, որ ապրում էր Դ Կոստանդնի ու Լեւոն վերջին թագաւորների օրով: Իր կենակից ու գործակիցն էր **Զարմանուհին**, քաջակորով մի հայուհի, որ չէր համակերպել Լեւոնի գերութեանը (1375-ին) եւ հայ ազատութեան կորուստը[2]: Մի գիշեր գաղտնի յարձակւելով Եգիպտացիների բանակի վրայ, «մեծ կոտորած կատարեց Հեթումը եւ ձերբակալեց սուլթանի որդուն»: Այդտեղ ոմն՝ Գրիգոր մատնիչը, սուլթանի խորհրդով սպանում է Հեթումին ու ազատում է կալանաւորին: Ուզում է դաւել նաեւ տիկնոջը՝ որն աւելի զգուշաւոր էր քան այրը, խոյս է տալիս Կոկիսոնի եւ Ուլնիոյ լեռների վրայ եւ այնտեղ թափառում է հինգ տարիներ, որ չեն յաջողում չիջուցանել սրտի կրակը: Ապա հաւաքելով երեք հարիւր լեռնականներ, «չառ ընդ իր որդուն գնում է Կապան», Կիլիկիայի գաւառը, որի մասն էր Զեթունը, «եւ ազատեց ազգն (այսինքն նոյն գաւառացիներին) այլազգիների ձեռքից վաթսուն եւ հինգ տարում» եւ որ անկասկած կառավարեց եւս:

Այս քաջութիւններր գրել էին ըստ տեղեկատւի՝ Ս. Կարապետի եւ ուրիշ երկու վանքերի յիշատակարանների մէջ[3], ծանուցանելու մեզ, թէ մեր ամէն պարծանքների վրայ մի զօրապետուհի էլ պարգեւել է հայ ազգին պատմութիւնը: Հ. Ալիշանը կասկածով նայեց այս տեղեկութեան, որովհետեւ իր մասին լռութիւն է Կիլիկիայի ժամանակագրութեան մէջ[4]: Բայց խորհում եմ, թէ ժէ դարի անազան խմբագրութիւնից կարելի չէ պահանջել անցեալի բոլոր դիպւածների ծանօթութիւնը, մանաւանդ նրանց, որ ծածկւած էին առանձին յիշատակարանների ու դիւանների մէջ: Որով կարող ենք վաւերական ընդունել յիշեալ տիկնոջ ընծայւած արիական գործը:

3.- **Գազանների դէմ**.- Եթէ Անիի ու Կապանի զոյգ դիւցազնուհիները կռւեցին մարդակերպ գայլերի հետ, կայ հայ մի կին էլ, որ ճակատել է չորքոտանի մի գայլի դէմ: Երբ Շահաբասը գրաւեց Երեւանը, նրա իշխանը կարգեց Ամիրգունա խանին: Այնտեղ մի տաճիկ այգի տնկեց եւ նրա պահապանը կարգեց մի հայի՝ Սարգիս անունով, Կոտէի գաւառից, կնոջն ու ստնդեայ որդու հետ: Այրը, ցերեկը գնում էր աշխատելու բերդի վերեւում եւ կինը դարմանում էր այգին ու պարտէզը: Սա մի օր ըստ սովորութեան մանկանը բնակարանից իջեցրեց հնձանում եւ առանց ախելու դուռը, պարտէզի գործին անցաւ:

---

1. Սամ. 125-27: – 2. Աստ՝ 298: 3. Մեղ. 5 Յնր. 1870: 4. Միխ. 542:

Այդ ժամանակ հնձանում մի գայլ մտաւ եւ ուզում էր պատառոտել տղային Մայրը խելով դուռն փակելը գազանի ետեւից. դող կարծելով այնտեղ գնաց Տեառն անուանինին եւ ճիչ արձակելով. բռնեց նրա երկու ականջներից ու քաշեց. ազատելու համար մանկանը. որ գայլը չէր թողնում բերնից եւ երեքն անբաժան կառչած մնացին իրար հետ. մինչեւ վերջն. ապա ճիչ թափեց կինը. գազանը քաշեց մինչեւ դուռը ոտքով բացեց այն եւ ձայն արձակեց դրացի կանանց. որոնցից երկու քաջասրտեր՝ զինուած հատոցով եւ բահով. փութացին ու սպանեցին անասունը. Մայրը կասկածով մանկան ողջ մնալուն գազանի ժանիքներում. երբ երեսը բացեց ու տեսաւ նրա անմեղ. ժպտալն. ուրախութիւնից նւաղեց եւ «հազիւ ուշքի բերեցին». ասում է Սարգիս՝ պատմիչը (1631)-ին:

Կան հայուհու արիութեան ուրիշ զանազան յիշատակներ եւս. որոնց մէջ խառնուած է վիշտն էլ եւ այդ պատճառով իսկ պահելու եմ յաջորդ գլխի համար.

## ԳԼՈՒԽ ԺԶ

### Տառապանքների մէջ

Գնանք. բարձրանանք այժմ. ծանր քայլերով ու բարախուն սրտով. հայուհու գողգոթայի՛ վրայ: Նրա կենցաղը չեղաւ եղ՛ւկ՝ առաքինութեան. բարութեան. իմաստութեան եւ քաջութեան գործերի ներդաշնակ ու յարատեւ մի հիւսուածք. ինչպէս իր սեռակիցներինն էր. ուրիշ մեծ. հզօր ու անդորր ազգերի մէջ. այլ յաճախ բզկտուեց տառապանքների ու չարչարանքների փշերից: Չեմ խօսում ամուսնական կամ ծնողական կեանքի մէջ պատահած հասարակ նեղութիւնների ու ցաւերի մասին. որր տեսանք արդէն[2] եւ որոնք յատուկ էին ընդհանուր մարդկութեան: Այլ նրանց - եւ աւել դառնագոյնին.- որոնց բացառաբար ենթարկուած էր հայ կանացի դասը: Հայաստանը. ի բնէ «ածու փոքր եւ թւով չատ փոքր սահմանով եւ զօրութեամբ թոյլ[3]». ընկել էր աշխարհագրական չատ աննպաստ պայմաններում. իր վրայ էր հրաւիրում յաճախ մերձաւոր կամ հեռաւոր հզօրագոյն ցեղերի տիրապետական կամ ընչաքաղց ցանկութիւնը:

---

1. Զք արկ Ա. 58: — 2. Աստ՝ 41-45, 49-59, 80-82, 84-85: — 3. Խոր. Ա. գ:

Յանցաւոր էր այդ աշխարհը՝ քաղաքակիրթ, բարգաւաճ եւ ազատ երկիր լինելու պատճառով եւ Ասորեստանը, Պարսկաստանն, արաբները, թաթարները եւ նրանց մրցակից կամ յաջորդ բարբարոսները, հայ պատմութեան մէջ մեր դահիճների մի երկար շղթայ են կազմում, որ քաջալերուած նաեւ մեր ներքին պառակտումներից եւ անխորհուրդ անջատումից քրիստոնեայ աշխարհից[1], ասպատակում, կողոպտում, անարգում, սպանում եւ գերում էին: Յաճախ կրկնւում էին այս աղէտները, բայց յարատեւ չէին անշուշտ, ապա թէ ոչ, մեր նկարագրած ազգային շէն ու գործունեայ կեանքը գոյութիւն չէր ունենալու երբեք: Իսկ այդ անօրէնութիւնների անպակաս եւ անվրէպ զոհն էր միշտ հայուհին, մատնելով թշւառութեան, կամ շատ անգամ կրելով իր վրայ, նիւթականից աւելի, բարոյական ու երկարատեւ մահը, մինչ սուրը շուտով վերջ էր դնում այրերի վշտակրութեանը: Եւ իրաւամբ բացագանչում էր պատմագիր կաթողիկոսն, ազգի ամենից աւելի մի նեղ շրջանում, թէ «ոչ գտաւ յուծեալ կապարան զստերաց երկրի մերում, եւ ոչ թօթափեալ փոշի գլխոյ[2]», այն դուստրերի, որոնք արժանի էին բովանդակ երջանկութեան, մեծարանքների ու փառքերի:

1.- **Նեղութիւններ եւ մահ**.- Սկսում եմ նկարագրելով հայուհու կեանքի մէջ պատահած այն վշտերի կամ դառն վախճանի, որ ենթարկւում էր նա անգութ ձեռքերի միջոցով, իր երկրի ու տնում իսկ: Բայց փորձելու եմ արագութեամբ անցնել եւ անցկացնել ընթերցողներին այդ կեղեքիչ տեսարանների առաջից: Վեր ենք բարձրանում դէպի Դ դարը, ուր Պարսկաստանի մոլեգին արքան՝ Շապուհ Բ-ն, զբաղուած է աւերելու եւ քանդելու անտէր մնացած հայ աշխարհը[3]: Ասպատակ սփռում, հաւաքում է անհամար ժողովուրդ Զարեհաւանի մէջ, ուր բացում է վայրագ եւ իր ազգի համար հաճելի մի հանդէս, բոլոր չափահաս այրերին կոխոտել տալով ծանրամարմին փղերի երամակի ոտքերով, եւ պարսիկի այլանդակութեամբ «ամէն կիներին եւ մանուկներին ցից հանել տալով», այնպէս որ սպանուածների թիւը՝ «հազար հազարներ եւ բիւր բիւրեր[4]» էին: Արքայից արքայի մեծութեան վայե՛լ մի հանդէս:

Վարդանանց անհաւասար պատերազմը, աւարտուած բարոյապէս ի նպաստ մեզ եւ նիւթապէս ի վնաս, ազատանիի մի մասի կորուստով եւ տարագրութեամբ միւսին, յեղաշրջեց հայ տիկնանց դասի հեշտ կեանքը[5] եւ նրանց առջեւ բացեց կարօտի եւ դանդաղ մարտիրոսութեան երկար մի շրջան: Եղիշէն նրանցից ճանաչած ու պանծացրած հինգ հարիւրի համար վկայում է, թէ այդ տխուր պայմանի մէջ իրենց հոգեկան բարձրութեամբ[6] կարողացան տոկալ նիւթական նեղութիւններին: Նրանց

1. **Աստ**՝ 144-45: 2. **Յհ. կթ**. 286: 3. **Աստ**՝ 277: 4. **Փաւս**. 176: 5. **Բ**, 3-8, **Ե**. 3 6. **Աստ**՝ 158:

բոլոր գանձերն ու երեւելիների հարուստ զօղերն անգամ արքունին գրաւեց եւ չյիշեցին ընաւ իրենց նախկին փափկութիւնները. այլ ապրում էին շինականների նման, մանաւանդ թէ «նրանք աւելի եւս համբերութիւն յանձն առեցին վշտերի դիմաց»:

Թէպէտ դեռ պահում էին իրենց ձեռնասուն նաժիշտներին, բայց ապրելակերպով եւ հանդերձանքով նրանցից չէին տարբերւում: Գետնի վրայ էին ննջում խոտեղէն անկողնով, փոխանակ կակուղ գահոյքների: Այլեւս ոչ օծառ կամ անուշահոտ իւղեր, մազերի յարդարում կամ կերպասի ոսկեհուռ զգեստներ, ոչ ճոխ ճաշեր եւ չքեղ սպասներ: Նրանց պալատներն ու դղեակները տապալւել էին պարսիկների ձեռքով եւ բուրաստաններն ու գինի բերող այգիները՝ յքւած ու չորացած: Համադամ կերակուրների փոխարէն խոտերով ու կորեկի հացով էին սնւում եւ գահաւորակների փոխարէն բոբիկ եւ հետիոտն էին գնում աղօթանոցները, «խնդրելով ուխտին, որ կարողանան համբերել մեծ նեղութեանն»: Զարչարակից եղան հեռաւոր հարազատների ու «վարդապետները մխիթարիչ եղան» նրանց[1]:

Նրանց տառապանքների սաստկագոյն շրջանը տեւեց 451-ից 457 թւականը, որի ընթացքում թագաւորեց Պերոզը, իմաստուն քան Յազկերտը, արձակեց մեր իշխանների կապանքը, նրանց արքունի ծառայութեան կոչեց եւ ռոճիկ կարգեց նրանց ի Հրեւ եւ նրանց կանանց՝ Հայաստանի մէջ, մինչեւ 463-ին, որ աքսորականներին առաջնորդելու էր իրենց տները[2]: Նրանց պանդխտութեան այդ երկրորդ մասի մէջ եւս հայ տիկնայք շարունակում էին սնել իրենց ձեռագործով եւ սահմանւած ռոճիկը յղում էին «որպէս մխիթարութիւն» իրենց հեռաւոր սիրելիներին: «Անարիւն ճիգռանց նմանեցին, ոգում է աղու Եղիշէն, որ երգի քաղցրութեամբ առանց կերակրի մնացին»: Եւ յարում է, թէ ի հեճուկս իրենց տառապանքներին ու վշտերին «ոչ ինչ կարողացաւ նրանց թուլացնել երկնաւոր առաքինութիւնից: Արտաքնապէս երեւում էին իբրեւ ազատորներ եւ չարչարւած այրիներ, եւ իրենց հոգիները զարդարւած էր երկնաւոր սիրով[3]»: Եւ այս ամէնն արդիւնք էր իրենց ստացած նուրբ դաստիարակութեան[4]:

Հինգերորդին յաջորդող բոլոր դարերի մէջ ունեցանք մի Եղիշէ, աւելի կամ նւազ պերճախօս, հայուհու թշւառութիւնը պատմող, որոնց թւարկութիւնն երկար է լինելու: Բաւականանում եմ յիշել մի քանի ցայտուն պատահարներ միայն: 1317-ին Ապուսայիտ կամ Պուսայիտ խանի թագաւորութեան առթիւ թաթար զօրագլուխների միջեւ կռիւ ծագեց: Այդ շարժումների ժամանակ շատ հայ գաւառներ, վանքեր ու եկեղեցիներ ոտնակոխ եղան եւ աւարի մատնւեցին, ասում է Սարկաւագ գրիչը, եւ

1 Եղչ 155-56 Փրպ. 331-32: 2. Փրպ. 332: — 3. Եղչ. 157-58: — 4. Աստ՝ Ա. 3:

քրիստոնեաների բոլոր անասուններն ու ստացվածքը բնաջինջ կողոպտեցին. մինչեւ «այր եւ կին բոլորովին մերկ խայտառակ թողնելով», ինչ որ Ադամից մինչեւ հիմա լսված չէր, ասում է[1]. Անամօթ եւ անլաջ բարբարոսներն այդ ամօթն էլ կրել պարտադրեցին Հային եւ Հայուհուն.

Լենկթեմուր թաթար բռնաւորը 1403-ին գնաց Սեբաստիայի վրայ. որը Բայազիդ Բյուրիսի սուլթանի՝ ասպետները չօգնեցին՝ ամրոցը [illegible] խոստման վրայ քաղաքացիները բացեցին դռները, որի փոխարէն յաջորդեց կողոպուտն եւ կոտորածը. «կանանց ձիերի պոչին կապել եւ արշաւել» հրամայեցին եւ «որդիների եւ դուստրերի» անթիւ բազմութիւն հաւաքելով մի դաշտավայրում, անգթաբար կոխոտեցին «իբրու զորայս կամնասայլից[2]»: Գազանացած մարդկութիւնը սահման չունի իր կիրքի ու գործերի մէջ, թէպէտ խուժդուժ լինի, թէպէտ քաղաքակրթութեան դիմակով ծածկուած:

Գրիգոր Տղան Երուսաղէմի ողբի մէջ նկարագրելուց յետոյ նրա գրաւումն 1187-ին Սալահեդինի ձեռքով կրած չարիքները, անցնելով յիշում է նաեւ ուրիշ քրիստոնեայ աշխարհների տառապանքները նոյն թուրքմանների կողմից, այն է՝ կողոպուտն, աքսորն ու սովամահ կորուստն օտարութեան մէջ: Եւ բացում է սրտաճմլիկ տեսարաններ, որ եթէ Լեւոնի քաջութիւնը խնայեց Կիլիկիային այդ առթիւ, սակայն բարբարոսների միւս յարձակումների ժամանակ կրկնւեցին նաեւ Հայ ժողովրդի մէջ, որոնց պատկերն իսկ թերեւս փոխադրում էր քերթողն օտար գաւառներում: Նրանից մի մասը քաղում եմ այստեղ: Ժողովրդի հետ մեծատներն էլ, ասում է, մատնւում էին յոյժ չքաւորութեան, այնպէս որ ոչ միայն ազնուական այրերը, այլեւ «Տիկիններն, որ ճոխ տներ ունէին,- Եւ մետաքսներով չքեղանում էին,- Հացակարօտներ էին երեւում,- Իրենց անձերին ծածկոյթ էին խնդրում: ... Ամօթ էին զգում մուրալու,- Այլ սովին դիմանում էին: - Մուրեալք ի ցաւս ախտանային,- Այստեղ եւ այնտեղ մեռնում էին: -Մանկունքն ի մայրն հայէին, - Միթէ կեանքի հնարքներն առնէ՞ին: - Մարքն ի տեսոյն խորովէին,- Արագ ըզկեանս վճարէին.- Հարքն ի գորով տղայոց լային, - Աղիողորմ ճչում էին ի տեսանելըն զոր սնուցին - Դառըն կարեօքըն ցաւագին. – Ընդ մեռանել մանկանց նոցին Ինքեանց հոգիքըն քաղէին»:

Այդ ճգնաժամին անշուշտ, այրի կանանց վիճակը դառնագոյն էր, որ ողբերգուն յատկապէս նկարագրում է. « Որբեւայրիները անցեալ մնային - Դառըն վշտի հարուածից.- Աղիողորմ նայում էին – Որ ի նոսայն իսկ հայէին.- Եւ որ գթով հայցնում

1. Հւք. չկա: 2. Մծփ. 64-65:

էին Լալով պատասխանում էին - Իրենց ցաւերին դեղ չէին գտնում. Բժիշկի ծախսերին դրամ չունէին. - Եփուած սրտերով խորովում էին. - Ողբերգական ձայնով լացում էին.- Երբ ճանապարհն անցնում էին Մահը ժամանում էր նրանց որդիներին - Աչքերը դէպի երկինք էին բարձրացնում.- Յիսուս Քրիստոսին էին նկատում - Եւ մեն մենակ գերեզման Ջէր պատահում. այլ երկուսով.- Մէկը միւսով էին թաղում.- Որդիներին իրենց մօր գիրկն էին դրում: - Ողջո՛յնր ձեզ հետ. ասում էին. հայրերն.- Հապա ձեր յետեւից գալու ենք. - Տղաները մահը տեսնում էին - Եւ ահից տագնապում էին. ... - Քոյրերն եղբայրներին համբուրում էին. - Միմեանց գիրկն էին ընկնում.- Ցաւակցարար այս էին ասում - Գնացէք, մենք շուտով ձեզ մօտ ենք գալու: Եւ նրանց խօսքը սուտ չէր լինում.- Այլ հաշտապ կատարում էին: ... - Ոմանք միմեանց համբուրում էին - Եւ անցնելու ճանապարհի մօտ.- Եւ շուտափոյթ անցնում էին. - Ասում էին՝ Ահա թշնամին գալու է: - Իսկ միւսները միասին լացում էին.- Վերջին ողջոյնն էին պահանջում»[1]: Եւ այս ողբոգորմ տեսարանը դադար ունէր, ասացինք, մեր աշխարհում, բայց ոչ վերջ, ոչ ազգիս եւ ոչ ողբերգութեների համար:

Անցնում ենք 1605 թւականին, ուր Սարդար Ջղալ օղլին Կոստանդնապոլսից գնում է դէպի Վան, բանակ է կազմում, կռւում է Շահաբասի հետ, պարտւում եւ փախչում է Նորից Վասպուրականի ոստանը: Ամբողջ նահանգը աւերում ու կողոպտում է, որին սովկալի մի սով է յաջորդում, այն չափով, որ ստիպում է ուտելու անխտիր ամէն տեսակ անասուն: Հայրերը վաճառում էին իրենց զաւակն երկու կոբեկ հացի համար եւ որ աւելի սովկալին է՛ «մայրն որդուն կերաւ», գրում է մի ականատես՝ Կարապետ երէցը: Սովից մեռնում են «հազար հազարներով եւ բիւր բիւրեր», եւ մնացեալները ցրւում եւ կորչում են, անդարձ, հեռաւոր վայրերում[2]:

Մեր մինչ այժմ յիշւած օրինակներն մեր ազգի եւ հայ կնոջ համախումբ տառապանքների դրւագներն էին եւ յատուկ մեր անտէրութեան եւ օտար տիրապետութեան շրջաններին: Բայց նման վշտեր հանդիպում էին երբեմն նաեւ հայ թագաւորութեան օրով եւ այն ժամանակ հասարակութեան մարտիրոսութեան մասնակից էր արքունիքն էլ նիւթապէս եւ աւելի շատ բարոյապէս: Թէ ինչպիսի՛ ալիքներ էին փոթորկում այնժամ մեր իշխողների՝ թագաւորի ու թագուհու սիրտն ու կեանքը, յիշենք իբր օրինակ՝ Բ Լեւոնի եւ Կեռանի պարագան:

1266-ին Եգիպտացիներն ասպատակելով Կիլիկիա, այրեցին Սիսն ու Մսիսն, տիկնոջ քաջարի տագրը՝ Թորոսը, սրախողխող զգետնեցին կռւում[3] եւ իր ամուսինը դեռ

1 Գրչ 928 Ս Ղպր. էջ 621-24: — 2. Առք. 297: — 3. Աստ՝ 172:

գահաժառանգ գերի տարան Եգիպտոս. Նոյն տարում ազատեց «Աստծու խնամքով երկաթի բովից հանեց» ու պատւով դարձաւ իր որդի եւ ազգի ուրախութեամբ. Այդ ուրախութիւնն երկար չտեւեց, որովհետեւ 1274-ին Եգիպտոսի Պնդուխտար սուլթանն հարիւր հազար մի բանակով յարձակւեց Կիլիկիայի վրայ: Բոլորովին անպատրաստ գտնելով հայերին. «նրանց ցիր ու ցան արեց և բոլոր քաղաքներն եւ գիւղերը թէ դաշտային եւ թէ լեռնային հրկիզեց», եւ այր ու կին կոտորեց, փոքր տղաներին ձիերի կոխան դարձրեց, եւ «աղջիկներին եւ մանուկներին» գերի տարաւ իր աշխարհը. Նրա համայնաջինջ ճիրաններից գերծ մնացին լոկ քարանձաւներն ու բերդերը: «Եւ այս աղէտն եւ կսկիծն ինչպէ՞ս կարող եմ գրելով բացատրել», բացագանչում է Կոստանդ յիշատակագիրը[2]: Ո՞վ կարող է պատմել մանաւանդ փոթորիկը Լեւոնի ու Կեւանի զգայուն սրտերի, որոնց արքայական պսակները, դեռ հազիւ չորս տարի առաջ բոլորուած, ներկւում էին ազգի արեամբ եւ համակւում էին սեւ սգով:

Բայց այդ չափով չվերջացաւ աղէտը. Լեւոնի հօրեղբայրն 1280-ին ասում է, թէ մի Աւետարան է գրել «յոյժ տրտմութեան ժամում», որովհետեւ Եգիպտացիներն երեք անգամ «հրձիգ զամենայն Կիւլիկիա արարին, զորս հուրն անչէջ կիզեսցէ զնոսա[3]»: Այսպէս **Թեւանուի** նըրազգաց դստեր տիկնութեան առաջին տարիներն եղան սարսափի եւ արտասուքների մի շրջան, ոչ միայն արտաքին թշնամիների պատճառով, այլ ներքին պառակտումների, ինչպէս 1274-ին պատմում է Թորոս սարկաւագը, թէ այդ տարւայ իսկ «բազում երկպառակութիւն եղաւ ի սատանայէ ի զօրս Հայոց, ուստի ոմանք ապստամբեցին թագաւորի դէմ չար խորհրդով, որ չարութեամբ սատկեցին[4]»: Լեւոնն աւելի փորձառու, իմացաւ մերթ զէնքով եւ մերթ քաղաքագիտութեամբ իր սահմաններից հեռու պահել օտար թշնամիներին էլ[5]: Անկասկած այդ ցաւերն եւս կրծեցին չուտով փափկասիրտ դշխուհու կեանքը[6], որին նախախնամութիւնը խնայեց տեսնել նաեւ այն աղէտներն, որ հասնելու էին յետոյ իր զաւակների գլխին:

Եւ Կեռանի նման ուրիշ քանի՛ ազնւազուն հոգիներ, թագուհիներ եւ տիկիններ, թէ Կիլիկիայում եւ թէ մեծ Հայաստանում, բարբարոսների ամբարշտութիւնից իրենց ժողովրդի հետ ողջակիզւեցին վշտի խարոյկի վրայ, իրենց ոսկի եւ ականակուռ թագը վերածելով փշէ պսակի:

2.- **Անարգութիւն**.- Նւազ ծանր էր հայուհու համար տառապանքը կամ մահն ինքնին,- քիչ յետոյ փաստերը խօսելու են,- քան դաւը նրա պարկեշտութեան դէմ. որ

---

1. *Հւք. յշա.* 1268, 1269: — 2. *Անդ*՝ 1274: — 3. *Անդ*՝ 1280: — 4. *Անդ*՝ 1274: 5. *Զմչ. Գ.* 277-79: 6. *Աստ*՝ 85:

նիւթին եւ աւելի յաճախ արտաքին անասնաբարոյ թշնամիները գործում էին. մինչ կային նրա պատւին նախանձայոյզ պաշտպաններ էլ[1]. Մի քանի օրինակ տեսնենք.

Ծանօթ են Ներսէսի մեծագործութիւնները հայ աշխարհի բարեզարդութեան համար. որոնց դէմ ատամ էին կրճտում Արշակն ու Պապը: Վերջինս ի վերջոյ թունալի մի բաժակով խաւարեցրեց այդ արեւը նոյն ինքն արքունի հիւրամեծար սեղանի վրայ եւ քանդեց նրա կառուցած որբանոցները. այրենոցները. հիւանդանոցներն ու կուսաստանները[2]. որոնք առաջին անգամն էին երեւացել հայ հողի վրայ եւ նրա տւած քաղաքակրթական մեծ փայլը: Եւ որ աւելի խորշելի է. ինքը՝ Պապը. մակութիւնից ապականւած[3]. նոյն մենաստաններում հաւաքւած կոյսերին «հրաման էր տայիս պղծութեան խառնակութիւնը[4]». մրցելով չնաբարոյ հեթանոսների հետ: Իր ոճիրները քաւեց Տերենտի ընթրիքի ընթացքում. իր արիւնը խառնելով բաւած տաչտի գինու հետ[5]:

Նախապէս տեսանք. թէ ինչպէս Սմբատ արքան յանդիմանում էր իր քեռայրին՝ Դերենիկին. իբրեւ դարանակալ իր ազատների կանանց համեստութեանը[6]. որին հանդուրժում էին երկիւղից նրանց թուլասիրտ այրերը եւ որին վերջ դրեց իր չարաչար վախճանը: Բայց այն տապալեց Ռուբինեան քաջն՝ Բ Թորոսի[7] վատ եղբայրը՝ Մլեհը[8]. «այր գազանամիտ. չարաբարոյ եւ անողորմ». բռնակալ Կիլիկիոյ եւ կատարեալ մի սրիկայ. որ եպիսկոպոսների ատամները թափում էր. ուր ոսկի կամ արծաթ կար կողոպտում էր. եւ «պարկեշտ եւ համեստ կանանց խայտառակում էր». ասում է պատմիչն. «անամօթ լրբութեամբ»: Սակայն 1175-ին լուծեց այդ չարիքների վրէժն. իր իսկ իշխանների ձեռքով. որոնք «միաբանելով սպանեցին նրան Սիս քաղաքում. իրենց բարքերը անհանգստացնելու համար[9]»:

Գեղեցիկ ու չքնաղ Անիի[10] վախճանն հասել էր: Ջարմաղանը 1236-ին դեսպաններ ուղարկեց այնտեղ. պահանջելով հնազանդել իրեն. իսկ քաղաքացիները վստահ իրենց պարիսպներից. արհամարհեցին ու կոտորեցին նրանց: Կատաղեց թաթար բռնաւորը եւ գալով պաշարեց ոստանը. որ ստիպւեց ի վերջոյ անձնատուր լինել եւ բոլոր բնակչութիւնը սրի ու գերութեան մատնեցին: Դիակները դիզւեցին. քարերի դերբուցների նման եւ քաղաքը քանդւեց: Եւ այդ ամէն չարիքների հետ՝ «պարկեշտ եւ ողջախոհ կանայք մատնւեցին խայտառակ ճակաճան եւ վաւաշոտ մարդկանց». եւ քաղաքում բնակւող հաւատաւոր կոյսերը «պղծւեցին պէսպէս պոռնկութիւններով եւ

1. Աստ՝ 126-27: – 2. Աստ՝ 167: – 3. Աստ՝ 91: — 4. Փաւս. 228: — 5. Նոյն՝ 233. աստ՝ 144: — 6. Աստ՝ 44: — 7. Աստ՝ 101: — 8. Աստ՝ 95: — 9. Տրգ. Կիլ. 257, 260: — 10. Աստ՝ 187:

ապականեցին անկարգութեամբ», եղկելի կերպով վախճանեցին. ի՞նչ տխուր պատկեր

Սոսկալի էր Լենկթեմուրի առաջին ասպատակութիւնն էլ 1387 թւին, որի ժամանակ հարիւր հազարով թափւեցին մեր աշխարհի վրայ, անբաւ աւերումներով ու կոտորածներով, որոնց հետ «տղաներին ձիերի ոտնատակ էին տալիս, կանանց խայտառակում էին, նրանց մանուկներին գերի էին տանում», ասում է սարսափով յիշատակագիրը[2]:

3.- ***Ապաստանարաններ***.- Եթէ բռնութիւնը յաճախ դարանում էին հայ կնոջ կեանքի կամ պատւին, Հայաստանը շատ տեղեր նրան ընծայում էր բնական եւ արւեստական պատսպարաններ, այսինքն լեռներ, այրեր ու բերդեր, որոնց վերջինն ուրիշ ազգերի մօտ իշխանութեան ու զօրութեան կենտրոններ էին, իսկ մեր բազմավտանգ աշխարհի մէջ աւելի քան այդ «ամուր ապաստանի», մանաւանդ տոհմիկ կանանց համար՝ ըստ Եղիշէի[3]: Նրանք տոկում էին թշնամիների յարձակումներին, բայց ոչ երկարատեւ պաշարման պարագայում, որի հետեւանքը սովն էր: Նմանապէս լեռներն ապահովում էին նրանց, մինչեւ այնքան, որ իրենց թաքստոցները ծածուկ էին մնում: Բայց շատ անգամ նրանց ապաւինած ամրոցն էլ մատնւում էր անագորոյն թշնամիների ձեռքը եւ վիճակակից էր լինում միւս թշւառներին: Յիշենք մի քանի դիպւածներ:

Քսենոփոնը իր նահանջի ժամանակ[4], Տայոց աշխարհից էր անցնում: Բնակիչները նկատելով, որ այդ օտար զօրագունդը պիտի կորզէր իր բոլոր ուտեստը եւ ձմրան խորքում իրենց սովի մատնէր, նախապէս ամրացել էին, միասին տանելով իրենց ամբողջ պաշարը: Յոյները նրանց նշմարեցին մի բարձրութեան վրայ մի բազմութիւն արանց, կանանց եւ անասունների, որոնց դէմ կռւելու մղեց իրենց քաղցը: Վայրը դժւարին էր եւ ստիպւեցին յարձակւել ջոկատներով եւ երեք անգամ յետ մղւեցին նրանց քարէ կարկտի խորտակւած սրունքներով ու կողերով: Բայց ամէն հնարք ի գործ դրեցին, որով մօտեցան գրաւելու բարձունքը: «Այն ժամանակ, գրում է ատտիկեցի զօրապետը, պարզւեց ահւոր մի տեսարան: Կանայք նախ վար էին նետում իրենց տղաներին եւ ապա իրենք էին նետւում եւ ամուսինները նրանց էին հետեւում», եւ կոտորւում էին ժայռն ի վայր, յարձակողների ձեռքը չընկնելու համար, այնպէս որ մնացին քիչ անձեր միայն ու գերի բռնւեցին[5]: Այդքան արիասիրտ էր ուրեմն հայ կինն այդ ժամանակից, կռւելու եւ ապա խզելու համար իր կեանքը, որպէսզի չմատնւէր թշնամիներին:

---

1 Կիր. 138-40: — 2. ***Հաւ. յիշ.*** 1389: — 3. ***Աստ՝*** 12-13: — 4. ***Աստ՝*** 111: 5. ***Քսեն. Ընկ. Դ. է:***

Աւելի ապահով ու հանգիստ էին ամրոցները, բարձրակառոյց եւ անառիկ պալատները, որ ազնուականութիւնն նրանց էր ապաւինում: Տեսանք որ Արտագերսը տասնեօթ հազար հոգի կարողացաւ պատսպարել ու կերակրել տասնչորս ամիս եւ անձնատուր լինելուց յետոյ պարսիկներն ինն օր աշխատեցին կրելու «Հայոց թագաւորի գանձերը», որ պէտք է իմանալ, անշուշտ պաշարն էր, որ բնակիչներից սպառելուց յետոյ, ինքն անսպառ էր մնում: Եւ Լամբրոնը խարէութեամբ միայն գրաւեց Հեթումեանների ձեռքից[3]: Դրանց նմաններն - եթէ ոչ հաւասարներ - Հայաստանը շատ ունէր ու յիշում են նրանցից հետեւեալները:

Մանուէլ Մամիկոնեանն ու նիզակակիցներն երբ պիտի ճակատէին պարսիկների ու Մերուժանի դէմ[4], խորհելով, որ պատերազմը կարող էր նաեւ տարբեր ելք ունենալ, խոհեմութիւն համարեցին **Զարմանդուխտ** թագուհուն, նրա երկու պատանի զաւակներն եւ «իրենց կանանց հետ միասին» ուղարկել Վարազ կոչուած մեծ լերան ամրոցը, որպէսզի յանկարծ թշնամիների ձեռքը չընկնէին: Ցաղթանակը չահեցին[5] եւ նոյն դղեակը պէտք չունեցաւ ցոյց տալու իր ամրութիւնը:

Վարդանանց մարտը ձախողելով, Հայաստանն ասպարէզ եղաւ Պարսկաստանի արշաւանքներին: Վասակը նրանց առաջնորդն էր դարձել, աշխատում էին համոզել հայերին խոնարհել թշնամիների լծի ներքեւ: Բայց շատերն անվստահ նրանց խոստմանը, մեծ բազմութեամբ «արանց եւ կանանց» հարսների եւ կոյսերի «հասել էին ապահով անրնակ վայրերին եւ լեռների անխար շատ տեղերին», ուր քարանձաւներ կային ապաստանելու, իսկ ազնուական դասից շատերը աշխարհի կենտրոնական մասի բերդերը գրաւեցին եւ ուրիշները Խաղտեաց ու Տմորեաց ամրութիւններում եւ Արձախոյ թանձրախիտ անտառներում ապաւինեցին, զրկանք տանելով պառկելով գետնի վրայ, անտրտունջ համբերելով «խստաբուտ կերակուրներին» եւ չյիշելով «սովորական խորտիկներն», մինչեւ անցաւ քաղաքական երկարատեւ փոթորիկը[6]:

Աշոտ պատրիկ Բագրատունին է դարում, երբ Մամիկոնեան Գրիգորի ու Դաւթի կողմից հալածուած գնալու էր Ասորեստան՝ բողոքելու Մրուան իշխանին, Դարինից բերդի մէջ հաւաքեց «գերդաստանը կազմող մարդկանց բազմութեանը», նոյնպէս «իր տիկնոջն եւ բոլոր ընտանիքին», ամրոցին պահապաններ էլ թողնելով[7]: Եւ նրանք այնտեղ անվնաս մնացին իր բացակայութեան շրջանին:

---

1 Աստ՝ 277. 2. Փաւս. 171: — 3. Աստ՝ 64: — 4. Աստ՝ 127: — 5. Փաւս. 252, 254: — 6. Եղչ. 97: — 7. Ղեւ. 119:

Եթէ այդ ամրութիւնները պահպանեցին իրենց ազատութիւնները, բայց եղան ուրիշներ էլ, որ չունեցան այդ պարծանքը: Իր բարդ հանգամանքներով մեծապէս ուշագրաւ է պաշարումը Բիւրական ամրոցի, ուր 883-ին ապաստանել էին Նսրը ոստիկանի ահից Սահակը՝ դրան եպիսկոպոս հայրապետը, մի քանի եկեղեցականներով եւ ժողովուրդը «բազում կանանց եւ մատաղ մանուկների» եւ ծերունիների հետ, նոյնպէս զինուորականներ, որ փութացին բերդի պաշտպանութեան: Արաբները իրենց ամբոխով եկան պաշարեցին այն եւ առաջին օրը հանդիպեցին բուռն ընդդիմութեան: Պաշարեալները կասկածելով իրենց ապահովութեանն, ուզեցին նախ զօրանալ հոգեպէս, ուստի յաջորդ առաւօտ եպիսկոպոսից խնդրեցին Ս. Հաղորդութիւնը: Նա նախ նրանց խրախուսեց, ապա պատարագեց: Մինչ բոլորը եռանդագին աղօթում էին, Ս. խորհուրդը բոլորին բաշխեց «ըստ սակի յետին թօշակի»: Վերսկսեց թշնամիների յարձակումը ու տեւեց եօթն օր, նոյն հակառակ արդիւնքով նրանց համար: Մինչ կղերական դասը աղօթում էր անդադար, զօրանում ու զօրացնում էր պաշարուածներին:

Այն ժամանակ առաջ անցաւ մատնութիւնը: Ներքին զօրականներից ոմանք, «ողորմութիւն եւ հաւատ ուրացած», բերդը յանձնեցին արաբներին, որոնք վեր բարձրացան ու գլխատեցին բոլոր եկեղեցական եւ աշխարհական այրերը, բացի քչերից, աւելի քան երկու հարիւր հոգի, նրանց գլուխները ոստիկանին տալու համար: Իսկ «երեխաներին սպանելով եւ կանանց գերի վերցնելով» գնացին, մինչ նրանց լացն ու պաղատանքն առ Աստուած՝ ազատելու «անօրէն գերիչների անարգել պղծութիւններից», ասում է պատմիչը, «բոլոր լսողների սիրտը տոչորում էր»: Երբ հասան Նսրի առջեւ, Աստուած շարժեց նրա սիրտը, եւ գերիներին արձակեց: Իսկ դղեակի մատնիչներն, որ մեծ վարձատրութեան ակնկալիքով էին եկել, արժանաւոր հատուցում ստացան սպանւելով բռնաւորի միջոցով[1]:

Սրա վիճակակիցն եղաւ Սիւնեաց Երնջակ բերդն էլ, որտեղ 914-ին ապաւինել էին առաքինակրօն տիկնայք՝ **Շուշանը**, Սմբատ Սիւնեաց իշխանի մայրը, նրա կենակիցը՝ **Սոփիան**, իր ստնդեայ տղայով, Սահակ եղբօր կինը[2] եւ ուրիշ ազնւական «արք եւ կանայք»: Զարասէր Յուսուփ ոստիկանը, նենգութեամբ կալանաւորելուց յետոյ Ա Սմբատին[3], յարձակւեց նոյն դղեակի վրայ եւ սկսւեց կատաղի մարտը ներսից ու դրսից: Բռնաւորն այնտեղ Հայոց հաւատացեալ արքային բարձրացրեց մարտիրոսութեան պատւին[4] եւ կռւին ամրոցի պարտութեամբ ու բերդի բնակչութեան չատերի

1. ՅՀ. կթ. 425-41: — 2. Աստ՝ 158: — 3. Աստ՝ 295: — 4. Աստ՝ 96:

կոտորումով վերջացաւ. Իսկ մեծ տիկիները ձերբակալուեցին եւ գերի տարուեցին, որոնց դեռ պիտի հանդիպենք յետոյ.

Մանուէլ Կոմնենոս կայսրը 1159 թւին մեծ բանակով եկաւ մտաւ Կիլիկիա եւ նստեց Մսիս քաղաքի մէջ: Նպատակն էր վրէժ լուծել Յունաստանի մեծ հակառակորդից՝ Ռուբինեան Բ Թորոսից, որ ծանր վնասներ էր պատճառել նրանց[2]: Հայոց իշխանը գուշակեց նրա միտքը եւ խոյս «ամրացրեց իր կնոջն, որդուն եւ գանձը Տաճիկ քարում», որն աւելի բախտաւոր եղաւ քան նախկին երկուսը ու պահեց իր մօտ ապաւինածներին: Իսկ իշխանն իր գնդով թափառում էր Տաւրոսի դժուարամատոյց կողմերում, մինչեւ կայսրը խաչակիրների միջնորդութեամբ հաշտուեց նրա հետ[3]:

1387 թւին Թեմուրլանկի ասպատակութիւնների ժամանակ Մշոյ ժողովուրդն ահաբեկւած փախել էր Սասնոյ Խութ լեռան անտառները: Անօրէն թաթարները դիմեցին նրանց դէմ խուճապի մատնելով: Փախուստի մէջ տեսնւեց մի մանկամարդ էլ նոյն գաւառից, «սրբասէր եւ երկիւղած», մայրենի լանջի վրայ սեղմելով եօթնամեայ մի մանուկ «յոյժ պատւական եւ բաղձալի եւ դէմք կերպարանացն իբրեւ գերեսս հրեշտակի»: Տեսաւ, որ թշնամիները մօտեցան իրեն եւ չհանդուրժելով իր «ցանկալի» զաւակի կորստեանն եւ ինքն նրանց ձեռքը մատնւելու եւ անարգւելու գաղափարին, ահաւոր մի որոշում ուեց: Ամրացրեց գորովագութ սիրտը, վերցրեց մի սուր եւ մորթեց սիրոյ պտուղը, յետոյ վազեց բարձրացաւ բարձր մի ժայռի վրայ, գահավէժ վար թռաւ եւ աւանդեց հոգին, աչքերն երկինք սեւեռած եւ «գոհութեամբ փառաւորելով յանուն Յիսուսի Քրիստոսի[4]», որի համար գոհեց աղիքն ու անձը:

Թեմուրլանկը յետոյ արշաւեց Վանի վրայ, ուր ապստամբ Եզդի ամիրանն էր եւ որ քրիստոնեաների բազմութեամբ ամրացաւ քաղաքի բերդում: Յետոյ հարկադրւեց յանձնել բերդը գազանին, որ հրամայեց «կանանց եւ մանուկներին գերութեան վերցնել» եւ այրերին՝ հայ թէ օտար, բերդից ցած գցել, այնպէս որ ամրոցի շրջակայքն արեամբ ու դիակներով ծածկւեցին: Եւ «ո՞վ է կարող պատմել գերիների թւից եւ անմեղ սպանւածներից», բացագանչում է պատմիչը[5]:

Հերթն եկաւ պարսիկ Սքանդար Թագաւորին, որ 1430-ին սկսեց իր ասպատակութիւններն եւ գնաց Արճիշու վրայ: Քաղաքի բազմութիւնը կանխեց ապաստանելով «լեռներում ու բլուրներում, վիմերի ծերպերում եւ ծակերում»: Թշնամիները հասան, պաշարեցի նրանց, կոտորեցին ինչքան կամեցան, «եւ զկին եւ զորդի ի հարանցն յափշտակեալ, գերի առեալ տանէին[6]»:

---

1. ՑՀ կԺ 298, 302-3: 2. Աստ՝ 326-27: 3. **Տրգ. Կիլ.** 238-39: — 4. **Մծփ.** 25-26: — 5. **Նոյն՝** 30: 6. **Մծփ.** 91:

*Թէ այդ մարդակերպ հրէշների օրով ինչպիսի սարսափի եւ խուճապի մէջ էր անդադար ապրում հայն ու հայուհին, լաւ զգացնել է տալիս Աւետարանի մի ընդօրինակող 1392 թւին. գրելով. թէ նոյն տարում յանկարծ հասնում է Լէնկթիմուրի վերադարձի համբաւը. Լուրը լսելով «ձեռներս թուլացան, ասում է, միտքս խառնուեց. ամենայն անդամներով դողում էի»: Եթէ մի ազատմարդ այսպէս է, ինչ էին զգում ուրեմն հայ կինը, աղջիկն ու մանուկը: Հերիք է նկատել, թէ համբաւը միայն բաւական էր, որ բոլորը «փախան դէպի լեռներն եւ առապարներն եւ դէպի երկրի ձորերը», երանի էին տալիս մեռելներին[1], որոնք մի անգամ մեռան, մինչ թշուառ կենդանի հայութիւնը մեռնում էր անդադար սարսափի մահով, որ կրծում էր առանց սպառելու.*

*Վերջին ու ծանրագոյն փորձն ազգիս համար.- չեմ ուզում յիշել եւ յիշեցնել թարմագոյնն ու դառնագոյնը.- Շահաբասի հրամանով այրարատեան հայութեան դէպի Պարսկաստան փոխադրութիւնն եղաւ 1605-ին: Ուզեցին Գառնոյ բնակչութեանն էլ միասին տանել, որոնք փախան որքան որ յաջողեցին եւ իբր հազար հոգի ապաւինեցին մի բարձր այրում: Պարսիկներն այնտեղ բարձրացան, ներս մտնելով սկսեցին կոտորել տղամարդկանց, պառաւներին ու ստնդեայ մանուկներին: Իսկ «կանայք, տղաներն եւ աղջիկները», երբ տեսան, թէ գերի էին տարուելու ու մատնուելու նրանց անբանութեանն, լաւագոյն համարեցին մահուամբ փրկել իրենց պատիւը: Եւ նորոգուեց այնտեղ Քսենոփոնի նկարագրած տեսարանը[2]: «Նրանցից շատերը, ասում է պատմիչը, պատում էին երեսը փակեղով եւ իրենց ձորձով», չտեսնելու համար անդնդի սարսափը, ցած էին նետւում եւ ջախջախւում էին: Իսկ մնացածները հետեւեցին իրենց սեւ բախտին՝ դէպի Պարսկաստան[3]:*

*Այսքան էր մեր աշխարհի ամրութիւնների օգնութիւնը, որ ընծայում էին հայ ժողովրդին, բարբարոսների յարձակումների ժամանակ, երբեմն բաւական ու երբեմն անչափ մեծագոյն զօրութեան առջեւ:*

*4.- **Տարագրութիւն.**- Հայուհին, ձերբակալուած իր տնից կամ թագստոցից եւ իր մատաղութեան եւ գեղեցկութեան շնորհիւ ազատուած նիւթական մահից, գնում էր բարոյական ծանրագոյն մի մահուան: Անջատուած, - ընդհանրապէս յաւերժաբար իր տնից, աշխարհից ու սիրելիների գրկից, մուտք գործած մեծամասնաբար իբրեւ ստրուկ կամ հարճ բարբարոս յարկերում, ուրացած կամ մոռացած հայրենի սուրբ կրօնը, կամ մատնուած անարգութեան եւ իրական ու դժնդակ մահերի. քիչ անգամ վայելելով հայրենիք վերադառնալու մխիթարութիւնը: Ամրացնենք մեր սիրտն ականատես լինելու*

---

1. ***Հաւ. յշտ***: — 2. *Աստ*՝ 317: — 3. *Դաւր.* 37:

*համար նրա կեանքի այդ կեղեքիչ դրուագին եւս. որպէսզի լաւագոյնս ճանաչենք նրա տառապանքների անեզր սահմանները.*

*Սկսենք Տիգրան մեծի օրերից. որ իր պատերազմների մէջ թեւաթափ եղած Լուկուլլոսը. գրում է Պլուտարքոսը. ինքնակամ յանձնեց նրա յաջորդին՝ Պոմպէոսին. որ նրան հինայեց եւ 61 թւին (Ք.ա.) իբրեւ գերի քան պատանդ վերցնելով միասին Հռոմ տարաւ. նրա համանուն եւ հօր դէմ ապստամբ որդուն՝ Տիգրանին. նրա կնոջն՝ որ Պարթեւ արքայի դուստրն էր. իրենց դստեր եւ հայր Տիգրանի կանանց ում՝* ***Զօսիմէի*** *հետ. որ իր պարտուած ամուսնուն էր ներկայացնում: Իր յաղթանակի զարդերից դարձրեց այդ հայ խմբակին. ուրիշ բազմաթիւ ազնւազգի գերիների հետ*[2]*: Մի օր էլ յանկարծ հռոմէական քմահաճ մի սուր բանտի մէջ խզեց Հայոց արքայորդու կեանքը. գրում է Ապպիանոսը*[3]*. ուր անմեղ կանանց վախճանը յուռթեան մէջ է ծածկւել:*

*Յիշենք Վարազի ընդունելութիւնը Տիրան արքայի կողմից*[4]*: Բարեկամական դիմակով եկող այդ պարսիկը թագաւորի ծածուկ մի դաւաճանն էր. որ փոխադարձ հրաւիրեց իր ճաշին եւ այդտեղ կալանաւորեց նրան: Զերբակալեց նաեւ տիկնոջն ու որդուն՝ Արշակին. գնաց Դալարիս գիւղը. այնտեղում խարեց Տիրանի աչքերն. աչարեկ դչխուհու եւ զաւակի ներկայութեամբ եւ երեքը միասին տարաւ Պարսկաստան. որ մնացին մինչեւ պարսիկների եւ յոյների համաձայնութեամբ արքայորդին հօր տեղ թագաւոր կարգւեց ու վերադարձաւ ծնողների հետ*[5]*: Այսպէս այդ (անանուն) թագուհին աքսորակիցն ու չարչարակիցն եղաւ ամուսնուն. գուցէ ականատեսը նաեւ նրա դժնդակ վախճանի. որ խեղդամահ եղաւ իր իսկ որդու հրամանով. որպէս պատիժ իր թոռան՝ Գնէլի. ցուցաբերած հոգածութեանն ու պաշտպանութեանը*[6]*: Այսպէս հատուցում էր Տիրանը. երկու մեծ հովւաց սպանութեան փոխարէնը*[7]*:*

*Թողեցինք* ***Փառանձեմին*** *Արտագերսի սեմի վրայ անձնատուր պարսիկներին*[8]*. ուստի տարւեց դէպի Պարսկաստան: Գնանք նրա ետեւից - տեսնելու համար նրա բազմածուփ կեանքի դառնագոյն վերջաբանը.- մինչեւ Տիզբոնի յայնատարած հրապարակը. որտեղում Շապուհն իր արքայական փառքի արժանի մի տօնախմբութիւն է պատրաստել պարսիկ աւագանու, զօրքի ու ժողովրդի համար. նպատակ ունենալով հանդիսապէս եւ ամբողջ Արեաց աչքի առջեւ «թշնամանս առնել ազգին աշխարհին Հայոց եւ թագաւորութեանն» յանձին նրանց դչխուհուն: Պարսկական հին ու նրբամիտ քաղաքակրթութիւնը այնտեղ կազմել էր մի տեսակ «հրապոյրս մեքենայից». որ գցեց*

---

1. *Աստ՝* 47: 2. *Պլտ. Դ.*, 285-6, 303-4: — 3. *Ննտ. Բ*, 478: — 4. *Աստ՝* 118: — 5. *Փաւս.* 52-53, 65: — 6. *Խոր. Գ. իր. աստ՝* 30: — 7. *Աստ՝* 182: — 8. *Աստ՝* 302:

Հայոց տիկնոջը եւ մեծ արքան իր պաշտօնեաներին արձակեց նրա վրայ. պարգեւով «անտանական» մի աւարան, որում եւ մեռաւ չարաչարապէս հայ գահը: Այս եղաւ վերջը մի կնոջ, որ դարի նշանաւորագոյն կանացի դէմքն հանդիսացաւ իր ամբողջ կենցաղովը Գեղեցկութեամբ, նախկին պարկեշտութեամբ, բարձր աստիճանով, ամուսնական արկածներով, քինախնդրութեամբ, քաջութեամբ եւ այդ եղերական վախճանով: Ու Պարսկաստանը հրճւում էր այդ անարգութեամբ անպարտ Հայաստանի, որ ընդունած նախատինքը դարձնելու էր նախատողին, քրիստոնէական քաղաքակրթութեան անշէջ ջահն ի ձեռին ընթանալով դարերի միջից, կանգնեցնելով հետզհետէ նորագոյն եւ ազնուագոյն գահեր, յարուցանելով պանծալի յաջորդներ Արշակի ու Փառանձեմի եւ ընծայելով մեծարելի հանճարներ մարդկութեան, ուր Երանը մնալու է յաւերժաբար խորասուզուած իր հոգեւոր, մտաւոր ու բարոյական աննշոյլ, անթափանց աղջամուղջի մէջ, պահելով լոկ նիւթական եւ աննշան մի գոյութիւն բարգաւաճ աշխարհի առջեւ մինչեւ Ի դարը եւ դեռ ո՛վ գիտէ ե՛րբ:

Բայց Շապուհը չգոհացաւ Հայոց թագուհու ջախջախմամբ: Իր հեղեղաստատ ապստամբութեան ահից հայ նախարարներից շատերը- բացի Արտագերսի մէջ ապաստանածներից[3] - թողնելով «իրենց կանանց, որդիներին եւ ընտանիքին» ցրուել էին: Սեւ սասանեանն առաջնորդութեամբ իր գնդով, երկու հայ ուրանեակների Մամիկոնեան Վահանի ու Մերուժան Արծրունու, հաւաքեց մեր ազատների ու նախարարների կանանց այդ խումբը, տարաւ Զարեհաւանի ասպարէզի մէջ, ցնծութեան նոր մի հանդէս էլ այնտեղ կազմելով իր բանակի առջեւ: Նրանք «հոլանել» (գլուխն ու երեսը բացել կամ հանդերձը թեթեւացնել) եւ ասպարէզի երկու կողմը շարել տուաւ: Եւ ինքն արքայից արքան հեծած, աւելի անրան քան որի վրայ նստած էր, արշաւում էր այդ ամօթխած ու շիկնած եղկելիների առջեւից եւ աչքին հաճելի թւածները մի բառ միոջէ արքունի խորանն էր տանում: Մարդկային արժանապատուութիւնը ընդվզո՛ւմ է այդտեղ: Եւ օրեր տեւեց այդ լպիրշ տեսարանը, որ սահմանուած էր անարգելու հայ ազնուականութիւնն իսկ: Յետոյ բաժանել ու փակել տուեց տարարախտ տիկիններին Հայաստանի զանազան կողմերի բերդերում, պատուիրելով բերդապահին սպանել նրանց եթէ իրենց ամուսիններն անձնատուր չլինէին[4]: Այդպէս վարւեց հայ տկար եւ ազնիւ սեռի հետ տէրը մեծն Պարսկաստանի, որի գազանային ամբարտաւանութիւնը խորտակելու է Մուշեղի վաղակաւորը, ձեռք է գցելու նրա կանանոցի եւ աւետարանական ու քաղաքակրթական վրէժխնդրութեամբ «ողջ եւ անարատ»

1. *Փաւս*. 173-74: - 2. *Աստ*՝ 42-43, 49-50, 183, 301: - 3. *Աստ*՝ 277: 4. *Փաւս*. 176-77.

վերադարձնում է պարտուած վիրացին։ Նրանք մասնակից չէին Տաճատի գործած չարիքներին. ինչու՞ պատժւեցին. մարդ էին. ինչու՞ անարգւեցին. Նրանց անարգողը նախ եւ առաջ ինքն էր անարգելու. իջնելով պարսկական աստիճանին։

Յունական մի ընթացք ցուցարերեց Տաճատ Սիւնեաց նկատմամբ. ի քէն Անդովկի առած հարւածին[2]. Նրանց բոլոր չափահաս այրերին կոտորել տւեց «կանանց ոտանեն» եւ մանր մանուկներին ներքինացնելով դէպի Պարսկաստան տարան[3]. Նման. բայց նուազ ծանր եւ խիստ համար մի վրէժ կրեց Սիւնիքը 450-ին եւս հայերից։ Երբ Վասակը. ուխտազանցութեան դրօշը պարզեց իր աշխարհի վրայ. Վարդանանքն տեխւեցին այնտեղ յարձակւել։ Պաշարեցին ուրացողին ու նրա բանակին. աւերեցին նրանց գաւառները եւ «հեռաւոր վարեցին տղամարդկանց եւ փափկասուն կանանց» դէպի գերութիւն. քաւելու համար իրենց իշխանի եւ այրերի մեղքը. Եւ նրանց անպարտ եւ ողորմ տեսքն արցունք էր խլում հայ կղերի աչքերից. ասում է պատմիչը[4]։

Ե դարի վերջն ենք։ Վահան Մամիկոնեանը գլուխ է բարձրացրել Պարսկաստանի անիրաւութիւնների դէմ. հաւատարիմ զինակից ունենալով իր ազգակից[5] եւ իր ու եղբայրների կրթական խնամքը վայելած[6] երկու Կամսարական հարազատներին՝ Ներսեհի ու Հրահատի։ Հազարաւուխտր մինչ հետապնդում էր նրանց թոյլ գնդին. Տաղագոմի մէջ հանդիպեց հայ մի խմբի. որոնց մէջ կային նոյն Կամսարական կանայք էլ։ Թշնամիները կոտորեցին խմբին. խնայելով միայն երկու մանկամարդ տիկնանց. տանելով իրենց բանակը։ Զօրագլուխը հրճւեց խորհելով թէ «ուրեմն նոքօք հաստատ կարող եմ որսալ եւ ըմբռնեմ Վահանին». բաժանելով նրանցից երկու զինակիցներին։ Եւ խորագէտ մարդը. հրամայեց պահել երկու տիկիններին «ըստ քրիստոնէական օրէնքի… սրբութեամբ եւ ամենայն զգուշութեամբ»։ Ցղեց Բասենի դղեակը՝ Բողբերդ. խստիւ պատւիրելով բերդակալին՝ յարգել նրանց պարկեշտութիւնը։ Յետոյ ստէպ հրաւէր էր ուղարկում նրանց ամուսիններին. գալ հնազանդել Պարսկաստանին եւ վերցնել կենակիցներին։ Բայց այն քաջերը չուզեցին մատնել հայրենի դատը սրտի սիրելիների համար. եւ վստահ աստւածային խնամարկութեան նրանց վրայ. սրերը չդրեցին պատեանում մինչեւ վերջին յաղթանակը[7]։ Թէ որպիսի անձկութեամբ երկու հայուհիներն անց կացրին իրենց բանտարկութիւնը մինչ այդ օրը. իրենք միայն գիտեն[8]։

Անցնում ենք արաբական արշաւանքների սկիզբը։ Այդ նորեկ գայլերը 670-ին յարձակւեցին Հայաստանի վրայ. որոնց առաջ վազեց Թէոդորոս Ռշտունին.

---

1. Աստ՝ 126. 2 Աստ՝ 301: 3. Փաւս. 177: — 4. Եղշ. 61-62: — 5. Աստ՝ 56: - 6. Փրպ. 338: — 7. Նոյն՝ 444-45. 447-51: — 8. Աստ՝ 38-39:

անողաչապան թողնելով իրենց յետեւ Դուինի առանը Արաբներն արագարար կարեցին անցան Հայերի թիկունքը. Հասան քաղաքը. գրաւեցին ամրոցը. Անզէն մնացած այրերին կոտորեցին եւ «կանանց եւ մանուկներին քշեցին դէպի գերութիւն» երեսուն եւ հինգ հազար հոգի. «Բազում փափկասուն կանայք», ասում է պատմիչը, որոնք նեղութեան փորձը չունէին, «սատակ ծեծուած թշնամական նախատինքներով եւ քաշելով հրապարակում», ողբ ու կական էին բարձրացնում: Հայ նախարարները լքուած թշնամու զօրութեան դիմաց, տեսնում էին իրենց ընտանիքների գերութիւնը եւ անկարող լինելով փրկելու նրանց, ողբում էին «իրենց կանանց եւ մանուկների համար», որ քշւեցին դէպի Ասորեստան[1] եւ որոնց վերադարձը չի յիշատակել պատմիչը:

Բուղան 853-ին եկաւ աւերեց մեր աշխարհը: Ձերբակալեց մի խումբ հայ իշխանների, որոնց մէջ էին նաեւ Վասակն եւ Աշոտ Սիւնիքն՝ որդիները Փիլիպպէ իշխանի եւ «մեծ տիկինն նրանց մայրն» (անունն անծանօթ) եւ տարւեց դէպի Դւին եւ այնտեղից շղթայուած հասաւ Սամառա, Ջափր ամիրապետին: Բռնաւորը բոլորին հրամայեց իրենց հաւատն ուրանալ, որին չատերն ընդդիմացան եւ նահատակւեցին: Ընդհականակը Սիւնի եղբայրներն եւ ուրիշները թուլացան առ երես եւ ապա վերադարձան հայրենիք[2]: Յովհաննէսը չի ասել թէ ինչ ընթացք կամ վախճան ունեցաւ Սիւնեաց տիկինը, մինչ Օրբելեանը պատմում է նրա վերադարձը որդիների հետ[3], թէպէտ ուրիշ տեղում նրանից որեւէ յիշատակ չունենք:

Յետոյ նոյն Աշոտի այրին՝ **Շուշանն**, էլ երկու հարսների հետ գերուած տեսանք Յուսուփ ոստիկանի ձեռքում[4]: Նրանք դէպի Դւին տարւեցին, որ արաբների կայանն էր եւ մնացին այնտեղ «չատ նեղութեամբ եւ տառապանքներով» եւ իրենց ոգեպահիկն մատների վաստակով հայթայթելով: Տիկին Շուշանն ու Թոռնիկը վախճանւեցին չժուժելով վշտալի բանտարկութեանը: Տմարդի բանտապահները նրանց դուրս գցեցին եւ տեղի ազգայինները գթութեամբ վերցրին ու թաղեցին արժանապէս քաղաքի մայր եկեղեցու դրան առջեւ, իսկ միւս երկու ներերին տարան եւ բանտարկեցին Ատրպատականում[5], յետոյ վերադարձան, նշում է Սիւնեաց պատմիչը. յայտնի չի ինչպէս, ի ցնծութիւն իրենց ամուսինների[6] եւ նրանց երէցը՝ **Սոփիան**, այնուհետեւ տարիներով կառուցում ու գործում է դեռ[7]:

Արիւնռուշտ Յուսուփը քաջալերուած Ա Սմբատի տկարութիւնից, ձերբակալում ու կոտորում էր մեր ազնուականներին: Այդ ժամանակ «կանայք նոյնպէս պատուական

1. Ղեւ. 9-11: 2. ՅՀ. կթ. 160-66, 170: — 3. Օրբ. 124-25: – 4. Աստ՝ 319: 5. ՅՀ. կթ. 303-4. 6. Օրբ. 141: -- 7. Աստ՝ 196, 319, 229-30:

*տիրուհիներ» բռնելով գերիներից. ծանր նեղութիւնների մատնեցին Որոնները խաւարչտի բանտերի մէջ. դրեթէ քուրձ հագած եւ օրապահիկ հացի կարօտ. որոնները լքի մեռնում էին եւ «գերեզման էին լինում իրենց մանուկների». որոններն էլ դառն մահերով վերջացնում էին իրենց օրերը: Եւ նրանց այդ մարտիրոսութիւնը չատ երկար տեւեց*

*Թուրքերի* 1048-*ի դէպի Հայաստան ասպատակութեան առթիւ Արիստակէսն ողբում է քաղաքների քանդումը եւ այրերի կոտորածը. իսկ «կանայք. ասում է. գերի էին տարւում». կաթնասուն երեխաները քարերին էին զարկւում եւ «կոյսերը հրապարակում խայտառակւում էին»: Աւելացնում է թէ «չի չատ կանայք վիժում էին մանուկներին»: Նաեւ չէն Արծնիի մէջ «հովասուն եւ բարեկազմ կոյսերն եւ կանայք ընկնում էին խայտառակութեան մէջ եւ ոտքով տարւում էի դէպի գերութիւն»*[2]: 1054-*ի արշաւանքների ժամանակ կրկնւում են նոյն չարիքները Խորձենի ու Հանձիթի մէջ «կոյսերը խայտառակութեան մէջ էին ընկնում. նորահարսներն բաժանւած տղամարդկանցից եւ մատնւած դէպի գերութեան»*[3]: *Եւ* 1064-*ի Անիի գրաւման առթիւ Ալփասլանի կողմից. տոհմով ու գեղով պատկառելի տիկինները գերի տարւեցին դէպի Պարսկաստան. նրանց հետ քշելով նաեւ անթիւ «լուսատեսիլ մանուկներ եւ վայելուչ աղջիկներ»*[4]: *Այսպէս. այդ շրջանում իրար էին յաջորդում հայուհու ծանրածանր փորձանքները:*

*Յովհաննէս Կոմնենոսը (հայ գրիչը կոչել է Պեռպեռօժէն)* 1136-*ին արշաւեց Ռուբինեան Լեւոն իշխանի դէմ. գրաւեց հինգ քաղաքներ իրենց ամրոցներով: Ձերբակալեցին «Լեւոնի կինն. որդիներն եւ դուստրերը». որ հարկադրւեց ինքը նոյնպէս անձնատուր լինել եւ կայսրը նրան չղթայակապ. ընտանիքի հետ. դէպի Կոստանդնուպոլիս յղեց ու բանտարկել տւեց: Իր որդիներից մէկը՝ Թորոսը՝ (Բ). ճարտարութեամբ ազատւած* (1145-*ին). եկաւ Կիլիկիա եւ հետզհետէ տիրեց իր հայրենիքին: Յետոյ Բիւզանդիոնից իր Ստեփանէ եղբայրն էլ փախաւ. մինչ հայրը մեռաւ բանտի մէջ*[5]*. իսկ մօր ու քոյրերի վախճանը չենք իմանում: Դրա եւ ուրիշ վնասների որպէս վրէժ՝ Թորոսը* 1157-*ին միացաւ Անտիոքի Ռինալդ իշխանի հետ. յարձակւեց Կիպրոսի վրայ. քաղաքներ եւ գիւղեր աւեր դարձրին. եկեղեցիները խայտառակեցին եւ բազմաթիւ երեւելի մարդկանց ու եկեղեցականների ձեռքերը. ոտքերն ու քթերը կտրեցին ու վերադարձան: Մի ասպատակութիւն. որ հայ գրիչը*

---

1. *Յհ. կթ.* 285-86: — 2. *Լաս.* 48, 50, 57: — 3. *Նոյն՝* 65: — 4. *Ուռ.* 149: 5. ***Տրգ. Կիլ.*** 214, 221, 236:

սահմանում է «իբրեւ այլազգիների վրայ» փոխանակ ասելու «իբրեւ այլազգիներ»: Եւ այդ Թորոսին գովել են որպէս «այր բարեպաշտ եւ ողորմած»[2]. Երեւում է թէ անհաշտ յատկութիւնները հաշտեցրել էր միմեանց հետ:

Նոյն իշխանն ու Լամբրոնի տէր՝ Օշին Բ. նախանձում էին միմեանց. Վերջինն անկարող էր մնալ հակառակորդին. 1165-ին թուրքերի հետ միաբանեց ու բերեց Ատանայի վրայ, գրաւեց ու շատ կոտորած կատարեց, գրում է մի ժամանակակից. «որ ասում էին թէ հինգ հարիւր կոյս աղջիկ տարան, թողնենք անթիւ ուրիշներին»[3]: Եթէ «ասէին», ուրեմն կարող է անճիշտ կամ չափազանցուած լինել: Սակայն ստոյգ է թէ Լամբրոնն իր մեծութեան հետ ունեցաւ իր տէրերի, ոմանց կողմից, նաեւ խակ գործեր, որոնց վրէժը մի օր պիտի հատուցէր դժբախտաբար, իր իսկ կորստեամբ եւ անչքացմամբ[4]:

1374-ին երբ Սիսը պաշարուած էր եգիպտացիների կողմից[5], այդ նեղ օրերին մեր վերջին պսակաւորը՝ Լեւոնը, հիւր եղաւ Հայոց նախկին եւ բարեպաշտօն[6] թագուհուն՝ ***Մարիունին***, որ տասնեւինը տարի խաղաղութեամբ թագաւորելով իմաստուն եւ քաջ Գ. Կոստանդնի հետ, բնակւում էր պատուով իր «ապարանքում» նոյն ոստանի մէջ եւ «ընդունեց (Լեւոնը) տիկնոջ կողմից բազում մեծարանքով եւ պատուով»[7]: Ինչպէս ինքն էլ ազգի հետ միասին պատուել էր նրան նախապէս[8]: Ի հեճուկս քաջարի արքայի ճիգերի շնորհիւ տեսանք քաղաքի անկումը թշնամիների ձեռքով մատնութեամբ դաւադիրների[9], որից յետոյ ինքը՝ Լեւոնը, կինը՝ Մարգարիտ Սուասոնեանը, զաւակները եւ իրենց հետ «Նախկին Հայոց Թագուհին», որ անցած էր, բայց ազգի կողմից մեծարուած մի թագաւորութիւն էր ներկայացնում միշտ, գերի տարուեցին դէպի Հալէպ: Լիւսինեանն իր ընտանիքով որոշուած էր Եգիպտոս գնալ ամիրապետի մօտ: Մելէք ամիրան աւելի մարդասիրութիւն ցուցաբերելով Մարիունին, հարցրեց՝ թէ որտե՞ղ էր ցանկանում բնակւելու եւ ըստ նրա յօժարութեան Լեւոնի զօրապետ՝ Սոհիէր Դուլկարտ կոմսի ու ***Ֆիմի*** կնոջն[10] հետ համաձայնեց գնալ Երուսաղէմ[11], ուր թագուհին երեք տարի ապրեց եւ վախճանուեց հայրենեաց վտարանդի պանդխտի մահով: Իր գերեզմանն ընտրելով Հայաշունչ Ս. Յակոբի[12] «դրան առաջ»: Իսկ որտե՞ղ աւարտեց Ֆիմին իր կեանքը:

---

1. ***Տիգ. Կիլ.*** 236: — 2. ***Աստ՝*** 101: - 3. ***Միխ.*** 81: 4. ***Աստ՝*** 64-65: 5. ***Աստ՝*** 299: 6 ***Աստ՝*** 163. 7. ***Դրդ.*** 132: - 8. ***Աստ՝*** 278: 9. ***Աստ՝*** 299: — 10. ***Աստ՝ ԺԸ. Ա. Ժ.*** 2: 11. ***Դրդ.*** 148, 153: 12 ***Հյպ.*** 542:

*Սարաաքեյի Թեմուրլանկը 1400 թ-ին գնաց նաեւ Սեբաստիայի վրայ: Քաղաքն ընդդիմացաւ: Նա պաշարեց, գրաւեց ու յանձնեց Իլդրում Պայազիդին, որի զօրքը ջարդեց այրերին, «կին եւ տղայ գերի տարան» եւ քաղաքն ու երկիրն հրի ճարակ դարձրին[2]. Թաթարներն 1430-ին արշաւեցին նոյնպէս Վանի վրայ եւ բոլոր գաւառներից «անթիւ եւ անհամար կանանց եւ որդիներին» Հայոց, վերցրին ու տարան դէպի Խորասան եւ «ճիչն ու եղուկը ուլեց մեզ», ասում է պատմիչը[3]: Երբեմն էլ ձերբակալում էին կանանց խմբեր իրենց կեղտոտ խորամանկութեամբ եւ դարձեալ վաճառում էին հայերին ծանր գներով, կողոպտելուց եւ բոլորովին սնանկացնելուց յետոյ ժողովրդին[4]:*

*Առաքել սարկաւագը 1586-ին համառօտ նկարագրելով թուրքերի եւ պարսիկների ընդհարումները, հաղորդում է՝ թէ նրանց պատճառով տուժողները մեր ազգակիցներն էին: Կարսից Արեւանայ երկիրը գերի են տարւում «վաթսուն հազար այր եւ կին եւ այլ թիւր մեծի եւ փոքրի, մեռածի եւ կորածի չգիտենք, բայց միայն Հայրն գիտէ»: Յետոյ 160 հազար հայ գերի նոյնպէս քշւում են դէպի Եգիպտոս եւ այնտեղ «Եգիպտոսում հաւի նման վաճառում էին՝ այր ու կին, ծեր ու երեխաներ այլազգիներին»[5]:*

*Ուրիշ գերութիւնները թւում է մեզ Առաքելը Պարսկաստանի ձեռքով: 1600-ին Ալլահվերդի խանն Ա Շահարասի հրամանով աւերում է Արծկէի երկիրը: Զափահաս արուներին կոտորում, իսկ «որդիներին, դուստրերին եւ կանանց աւար եւ գերի վերցնելով» տանում է[6]: Յիշեցինք Արարատի ժողովրդեան համախումբ վտարանդութիւնն էլ դէպի Պարսկաստան՝ նոյն անագորոյն շահի[7] հրամանով եւ առաջնորդութեամբ Ամիրգունա խանի[8]: Նրան յաջորդեց Ջուղայի բնակչութեանը՝ Թահմազղուլի բէգի ձեռքով եւ այնտեղ պարսիկ զօրքն, ում ցանկանում էին, «թէ կանանց, թէ աղջիկներին, թէ երեխաներին», վերցնում ու գնում էին եւ նրանց օրինաւոր տէրերը չէին կարող ընդդիմանալ[9]: Նոյն շահի համանուն թոռան օրով էլ պարսիկներն այնտեղ տարագրուած հայերին «թէ տղայ, թէ աղջիկ, թէ հարս» տներից բռնութեամբ քաշում տանում էին արքունիք «թագաւորական ծառաների» կարգն էին խառնում ու մահմեդականացնում[10] էին: Մարդկային իրաւունք բնական օրէնք ու նման բաներ անծանօթ էին այդ բարբարոսներին: Նմանապէս Ջաղալի փաշայի զօրքը մեծ աւառութիւն կատարեցին Գեղարքունի գաւառի մէջ, «կանանց եւ տղաներին» գերեվարեցին, որպէսզի նրանց տէրերը փրկանք տալով վերադարձնէին: Զմեռ էր, երբ*

1 *Աստ՝* 320 2. ***Հւք. յլա***: -- 3. *Մծփ.* 92: — 4. *Նոյն՝* 77-78: — 5. *Բ. Սրգ. Ա*, 667: — 6. *Դաւր.* 22:
7. *Աստ՝* 321: - 8. *Աստ՝* 309: 9. *Դաւր.* 31, 44: — 10. *Նոյն՝* 51:

այդ անօրէնութիւնն էին գործադրում Բեռնակիր անասուններ յոգնած ճանապարհին միայն. ասում է պատմիչը, եւ նրանց բեռները տուեցին տղամարդկանց. կանանց ու տղաների չալակը. այնպէս որ դժբախտ կանայք չալակով այդ բարբարոսութեան. նստում էին ձեան վրայ ու մեռնում էին թշուառաբար[1].

Բացի այդ խմբական կամ հաւաքական գերութիւններից՝ հայուհին ենթարկւած էր նաեւ անհատական առեւանգութիւնների. Այսպէս 1638-ին մինչ թաթարները փախչում էին Պարսկաստանի պատճառով, նրանցից երկու հոգի հասնում են Նորագաւիթ կոչւած գիւղը: Այդ պահին հանդիպում են Ղզլար անունով մի կնոջ, որը Սեւո Զաքարիա անունով մի վաճառականի ամուսինն էր եւ գրացու տունն էր գնում: Նրան առեւանգում ու առնում են իրենց ձիերի վրայ, իսկ կինն ինքզինքը վար է գցում: Երկրորդ ու երրորդ անգամ վեր են առնում եւ քաջարի հայուհին համենայն դէպս ճողոպրում է: Վայրագները ձանձրացած, սրերով խոցոտում ու փախչում են. հետապնդողների երկիւղից, որոնք հասնում ու նրանցից մէկին սպանում եւ միւսին գերում են: Իսկ վիրաւոր Ղզլան ապրում է հինգ օր, ընդունում է վերջին թօշակն (հաղորդութիւն) ու վախճանւում է[2]:

Պարսկաստանի Հիւսէին շահն 1699-ին գեղադէմ աղջիկներ էր հաւաքում իր կանանոցի համար: Ներքինիները գտել եւ նրանց հետ խառնել էին նաեւ երեք հայ կոյսեր: Մէկը Քանաքեռից Մարճան անունով, դուստրը Յովհաննէս երէցի, միւսը Բեկզատա՝ Կարբիից, Սարգիս քահանայի զաւակը, եւ երրորդը Շահզադան, դուստրը Բլրուլ Աստուածատրի «բարեպաշտ եւ երկիւղած քրիստոնեայի», որի կոյսն էր նոյնպէս «պարկեշտ եւ համեստ, հարկաւոր եւ սրբաբերան, որպէս եւ իր մայրն Թուստիանէ», որ Շահարասի օրով նոյն վտանգին էր ենթարկւել, չարչարւել էր ու չէր գնացել եւ մօրը համբաւի հետեւանքով եկել էին այժմ տանելու դուստրը: Բռնադատեցին այն ժանւարը (պատգարակի տեսակ) մտնելու, որ ընդդիմանում էր եւ այնպէս հարւածեցին նրան, որ բազուկը կոտրւեց եւ նրան բռնաւորի առջեւ տարան, որ արհամարհեց նրան եւ իր ծառաներից մէկին կնութեան տւեց: Այդ անչնորհ ամուսինը բարեբախտաբար չուտով մեռաւ եւ աղջիկն ազատւեց: Իսկ միւս երկու ընկերների վախճանի մասին պատմիչն անտեղեակ է[3]:

5.- **Վկայուհիներ.**- Եթէ այդ բոլոր սրտաճմլիկ տեսարանների մէջ, որ հաւաքեցինք մեր պատմութեան էջերից, հայ կինը ներկայանում է իբրեւ սովական մի զոհ մարդկային վայրագութեան, ստորին կրքերի, քաղաքային հաչիների կամ ցեղային

---

1. Դաւր. 62: — 2. Նոր. վկ. Բ, 110: — 3. Զք. սրկ. Բ, 138-40:

տանյութեան. կան նաեւ առիթներ որտեղ կարողացա նաեւ ազնուականացնել ու նուիրել իր գոհր մարդեղէն գոյութեան գերագոյն նպատակին. իր ջինջ ճակատին բոլորելով խոստովանողների կամ մարտիրոսների յուսափայլ պսակը: Եւ որքան բազմաթիւ են նրանք, որ այդ փառքերի արժանացան եւ թուան հասան այնտեղ, ուր ցանկացան եւ որի համար ապրեցին ու մեռան: Ես պիտի թուեմ այստեղ նրանցից ինձ ծանօթներին եւ նրանց կենսագրական տեղեկութիւններ համառօտ կերպով, որոնց ընդարձակ ցուցադրութիւնը վկայաբանութիւններին է պատկանում, ոչ ներկայ աշխատութեան.

Եթէ իմ այս երկասիրութեան մէջ հետեւէինք աւանդութիւններին, մեր երիցագոյն վկայուհին համարելու էինք Սանատրուկի դստեր՝ ***Սանդուխտին***, որին նախապէս ակնարկեցինք[1], եւ նրա ազգականուհիներին ***Ոգուհի*** եւ ***Զամանդուխտ***, որ երեքի էլ կենսագրական ծանօթութիւնները չեն գոհացնում պատմութեան պահանջները[2] եւ որոնցից հազիւ Սանդուխտը յիշատակուել է հայ տօնացոյցում: Այդ պատճառով մեր ուշադրութիւնը կենտրոնացնենք իսկապէս պատմական անձանց վրայ, հետեւելով նրանց ժամանակի կարգով:

Տեսանք Դ դարի հայ տիկնանց անարգումն ու բանտարկութիւնը Պարսկաստանի կողմից[3], ուստի ուշադիր լինենք նրանց չքեղ յաղթանակին էլ: Վահան ու Մերուժան ուրացողները,- առաջինն այլադէմ եղբայրը հայրենանուէր սպարապետի՝ Վասակի[4],- չար քան ընիկ մոխրապաշտները, այլափոխեցին Շապուհի հրամանը նրանց մասին եւ պատուիրեցին բերդապահից մահու սպառնալիքով «նրանց մազդեզական օրէնքի դարձնել»: Բայց ոչ պարսիկների զօրութիւնն եւ ոչ մահը կարող էին չիջուցանել նրանց սրտերից Լուսաւորչի յոյսը եւ «ոչ մի ոք» նրանցից թուլացաւ իր ամրութիւնից: Կարող էին անարգել ու ջախջախել նրանց մարմինը, բայց ոչ նուաճել կամքը: Այն ժամանակ սկսեց նրանց իրական մարտիրոսութիւնը եւ պարսիկ բերդակալները, ասում է պատմիչը, «չարամահ սպանում էին բոլորին բերդում», որտեղ բանտարկուած էին, ընծայելով հայ եկեղեցուն, նրա այդ առաջին շրջանի ազգային վկայուհիների փառաւոր ու առօրինակօրէն անտեսուած մի խումբը:

Այդ օրերին Վանի բարձրաբերձ ղղեակի վերաթռիչ աշտարակից յանկարծ գլխիվայր կախուած տեսնուեց մի կին, ծածկուած իր քրիստոնէական պարկեշտութեամբ միայն: Մէկն էր նոյն ամրակուռ նահատակներից՝ ***Համազասպուհին***, «քոյրաթիւ» (քրոջ աստիճանի վրայ եւ ազգական) յիշուած ամբարիշտ Վահան Մամիկոնեանի եւ Ռշտունեաց տիկինն[5], որ բարձրանում էր այնտեղ նոյն անարժան տոհմակիցների

---

1. Աստ՝ 145   2. ***Կար. խնդ.*** 122-26: — 3. ***Աստ***՝ 323: — 4. ***Փաւս.*** 160: — 5. ***Աստ***՝ 132:

հրամանով. «որովհետեւ յանձն չի առնում պահել մազդեզական օրէնքները» եւ այնտեղ էլ կնքեց կեանքը: Իր հոգուն քան մարմնի անսասան գեղեցկութիւնն ու մարտիրոսի հանգամանքն այնտեղ բերեց խունկ հետաքրքիր ու կարեկից մի ամբոխ «որովհետեւ իբրեւ սքանչելի ինչ երեւոյթ աշխարհին», ասում է պատմիչը: Նրանց մէջ խառնուեց ցուարեկ մի կին էլ, որի կերպը տարբերում էր նրան ուրիշ հետաքրքիրներից: Տիկնոջ մանկութեան դայեակն էր[2], որ մնաց այնտեղ գամուած ու յարագին, մինչեւ սանի մարմինը քայքայուեց եւ ոսկորները վար թափուեց, որը հաւաքեց գթով - վկայուհու այդ թանկագին նշխարներն իր պարեգօտու գոգի մէջ ու տարաւ[3]: Արծրունեաց պատմիչը, երեւում է տեղական մի աւանդութիւնից վերցրած, որովհետեւ հները չեն յիշատակել, Ս. Ներսէսի ձեռքով նրանց հանգչեցուած է նշում Ջորի վանքի մէջ, Հռիփսիմեանց վկայարանի ներսում իսկ[4]: Համազասպուհու մահուան եղանակն ընդհանրացրեց Մովսէսը նաեւ միւս տիկինների վրայ[5]:

Յետոյ անօրէն Վահանին վրէժխնդիր պիտի կանգնի իր իսկ որդու՝ Սամուէլի, հայրենանախանձ դաւչոյնը, եւ Մերուժանին՝ Բաբիկ Սիւնու Նիգակը[6], մաքրելով Մամիկոնեան ազնիւ զարմի անուան վրայ գցուած այդ արատը: Մինչ Ոչտունի վկայուհու ամուսինը՝ Գարեգինը, որ զինակից էր բունագահ Վարազդատին[7], վիրաւոր ընկնելու է ու խողխողուի Մանուէլի գնդից մի սպայի ձեռքով, վիճակելով կենակցի պէս եղերական, բայց անփառունակ մի վախճանի[8]:

Աղւանցի պատմիչը նկարագրում է հոների յարձակումն Ե դարում Հայաստանի հիւսիսային կողմերը եւ գերութիւնն Ուտի գաւառի բնակիչների, որոնց մէջ կար նաեւ ազնուական տիկին **Թագուհի** բագնացին, որ զօրավարն այնտեղ սիրահարւում է, «որովհետեւ յոյժ գեղեցիկ էր» եւ ուզում է կնութեան առնել: Տիկինն մերժում է եւ «ծաղրում էր լկտի բարբարոսին», որ «մոլեգնած սրտմտութեամբ առլեցուն», հրամայում է նրան սպանել տանջանքով եւ սրով: Պատմիչն ուզում է, որ նրա նահատակութեան տեղում ծագած երկնային լոյսից, այնտեղ, պետք քրիստոնեայ դարձած լինի[9]: Նոյն դարի մեր միւս սիրելի խոստովանողուհին՝ **Շուշանիկին**, տեսնելու ենք մեր ԺԸ գլխի մէջ:

Վարդանակերտի պատերազմից[10] անցել էր հինգ տարի: Արաբների զօրագլուխ Մահմատը՝ հանգուցեալ Սահակ Գ կաթողիկոսին երդուեց չնեղել հայերին եւ չարունակում էր պահել երդումը: Աբդլ Մելիք ամիրապետին յաջորդեց որդին՝ Վլիթը,

---

1. *Անդ*: — 2. *Աստ*՝ 7: — 3. *Փաւս*. 177-79. *հմմտ. աստ*՝ 164-65: 4. *Արծ*. 68: 5. *Խոր. Գ. լգ*: 6 *Փաւս*. 179, 254: — 7. *Աստ*՝ 278: — 8. *Փաւս*. 242-43: — 9. *Կղն*. 74-75: 10. *Աստ*՝ 213:

*որ առաջին տարում իսկ (705) նորոգեց ու հրամայեց Մահմատի՝ հայ նախարարների ջնջման հին ծրագիրը՝ Բագրատունի Սմբատ կիւրապաղատը օգնութիւն խնդրեց կայսրից, որի զորքը պարտուեց եւ Մահմատը նենգութեամբ հրաւիրեց ու մեծ ջարդ տուեց մեր իշխաններին, այնպէս որ «անժառանգ առնէին գաւառս ի նախարարացն». եւ Սմբատն իր զինակիցների հետ ապաստանեց Յունաստանի կողմերը*[1]: *Հաւանօրէն այդ առթիւ էր, որ Կամսարական Վահանի դուստրը՝* ***Շուշանն*** *էլ, գերի տարուեց դէպի Խառան:*

*Բայց Մահմատ չնորահացուրկ եղաւ եւ իրեն յաջորդեց Արդլ Ազիզը, որ խոհեմ մի քաղաքականութեան հետեւեց: Փախստական աւագանուն հրաւիրեց վերադառնալ*[2], *որոնք սկսեցին վերաշինել աւերուած երկիրը: Դրանցից էր եւ Գագիկ Կամսարականը, որ մինչ 706 թ. ին նորոգած ու շինած եւ կատարում էր Վարդանակերտի եկեղեցու նաւակատիքը, հոգեւոր ցնծութեան այդ ժամանակ հնչեց «յուր աւետաց» թէ Շուշանը, - որ Չամչեանը նոյն Գագիկի քոյրն է համարում*[3] *,- «զխոստովանող անունն ժառանգեաց, վասն Քրիստոսի Աստուծոյ չարչարեալ ի Խառան Միջագետացն», ինչպէս տեղեկացնում է Արշակունեաց գաւառի եպիսկոպոսաց գաւազանագիրը*[4]: *Անանուն մի պատմիչ ասում է թէ 705-ին արաբները «Շիրակի տիրոջը տարան Ասորիք», որը Հ. Ալիշանը կասկածելով Վահանին է կարծում իր դստրի հետ*[5], *որ մի տարի բանտարկութիւնից յետոյ, իր հոգեւոր յաղթանակով հրճւանք էր պատճառում բարեպաշտ հայութեանը, մինչ հօր վախճանն անյայտ է մնում:*

*Յիշեցինք Վասպուրականի տիկնոջ* ***Հոփսիմէի*** *ինքնակամ գերութիւնն իր որդիներին հետեւելով*[6]: *Գերութեան մէջ էր նաեւ նրա ազգականը*[7] *«տիկին* ***Հրանուշը****» Վահան ամուսնու ու Գրիգոր որդու հետ*[8], *որոնք միասին դէպի Պարսկաստանի Սամառա քաղաքը տարուեցին եւ ամիրապետի հրամանով բանտարկուեցին: Յետոյ նրա սպառնալիքների ներքոյ Արծրունիները դիմեցին ուրացութեան, բացի իր հետ գերի եւ ազգակից միւս Գրիգորից, որ իրենց Յովհաննէս եպիսկոպոսի ու Գրիգոր քահանայի հետ հաստատուն մնաց հաւատքի վրայ եւ խոստովանողական մահուամբ վախճանուեց*[9]: *Դրանց հետ պատերազմակից հանդիսացան Հոփսիմէն,- ի պարծանք իր սրբակրօն գլխուհի քրոջը, եւ ի յանդիմանութիւն իր եղբօր Բագարատի*[10] *եւ միւս վատ Արծրունեաց,- եւ իր տոհմակից՝ Սմբատ Բագրատունի սպարապետի, որոնք նախամեծար համարեցին հոգու կեանքը քան մարմնի եւ բանտի մէջ միասին ընդունեցին*

---

1 *Ղեւ.* 29-35 2. *Նոյն՝* 35-36: — 3. *Չմչ. Բ*, 382: — 4. ***Ար.*** 56: — 5. *Շիր.* 5: — 6. ***Աստ՝*** 293: — 7. *Աստ՝* 59-60: 8. ***Արծ.*** 155-56: — 9. ***Նոյն՝*** 176-77, 179-82: — 10. ***Աստ՝*** 168-69:

խառնափնդրայ պատկր: Իսկ թուրանրթերն՝ սխալով իրենց գերութեան վերերորդ տարուց, վերադարձան իրենց աշխարհը . որոնց հետ համանօրէն Հրանուշն էլ եւ որի մասին գնալուց բացի ուրիշ տեղեկութիւն չի տալիս մեզ պատմիչը:

Գր. Անաւարզեցու Յայսմաւուրն (1293-1307), որի հնագոյն օրինակն Օչին արքայի համար գրուածն է, մայիսի 5-ին առաջ է բերում ***Վարդենի*** կուսանի վարքը, առանց նշանակելու ժամանակն ու գաւառը, եւ հայութեան միակ փաստը տալով անունը, որ յետոյ ընդօրինակում են ուրիշներն էլ: Այդ չնորհալի «կոյս եւ կրօնաւորն», որ բարեկեցիկ ընտանիքի զաւակ է թւում, նստած իր տան մէջ «յուռթեամբ եւ մեծ ճգնութեամբ» ստայնանկում էր եւ ինչ որ շահում էր կարօտեալներին էր բաշխում: Տնից դուրս էր գալիս միայն եկեղեցի գնալու համար եւ իր գեղեցկութեամբ մի երիտասարդի ուշադրութիւնը գրաւեց, եւ ճանապարհի վրայ միշտ նրան էր սպասում ու շատ նեղութիւն էր պատճառում անձամբ, միջնորդներով ու խօսումներով: Տաղտկացաւ Վարդենին եւ մի օր ադախնուն յղեց եւ իր մօտ կանչեց երիտասարդին, որն իր նպատակին հասած կարծեց:

[illegible] իրեն: Երիտասարդը բացեց իր սիրտը: Վարդենին հարցրեց. «Ինձանից ի՞նչ բարիք ես տեսել, որ այդչափ սիրում ես ինձ»: Նա պատասխանեց. «Քո աչքը գայթակղեցնում է ինձ եւ բորբոքւում եմ ցանկանալով քեզ»: Երբ պարկեշտուհին այս լսեց, իսկոյն սոսկալի մի որոշում ուեց. ոստայնի «բարաբը» կամ կկոցը[3], որ բռնել էր խրեց իր երկու գեղեցիկ աչքերի մէջ, կուրացրեց եւ ընկաւ երեսի վրայ: Նահատակ ոչ օտարի, այլ իր իսկ ձեռքերով, ինչ որ աւելի դժւար է մարդկային բնութեան: Երիտասարդը սարսափած, զղջաց իր անմտութեան համար եւ խղճի խայթից գնաց նւիրւեց անապատական կեանքին: Իսկ առաքինի հաւատաւորը, խաւարած աչքերի փոխարէն աւելի պինդ սեւեռեց հոգու աչքերը դէպի վեր, խստագոյն կրօնաւորութեամբ անցկացնելով կեանքը եւ վախճանւելով ընդունեց սրբուհու թաղումը վանականների ձեռքով, մեր այդ հայազգի Լուկիային: Իր հանգստեան օրն հրաշքներ էլ եղան, ասում է կենսագիրը[4]:

ԺԴ դարին հանդիպում ենք խառաբաստացի ***Եղիսաբեթին***, որ տաճկանալով՝ անկանոն մի կեանք էր վարում, բայց ներքնապէս պահելով քրիստոնէութիւնը եւ անսպասելի կերպով յայտնեց մի օր երդման մէջ: Այլազգիներն երբ լսեցին այդ, հաշիւ պահանջեցին եւ նա հոգեկան զօրութիւն զգալով այլափոխւած խոստովանեց իր հաւատքը: Այլազգիները նրան տարան Վանի հրամանատար Ամիրազդնի կնոջ՝ Փաշա

---

1. Արծ. 234: — 2. Նոյն՝ 226-28, 234: — 3. Աստ՝ 248: — 4. Գրչ. թ. 710 Ս. Ղզր:

խաթունի տղէն, որ թուրքման էր եւ չար բնութեամբ», որի խոստումներն ու սպառնալիքները չզօրեցին իր կրօնից վերադարձնելու հայ Մագդաղենացուն. Այն ժամանակ անգութ թուրքմանուհին հրամայեց քարկոծել նրան, որի պատճառով վախճանուեց վկայաբար 1391 թուին[2]:

Մոկացի **Թամարը**, յետոյ **Գոհար** կոչուած, Թումայի ամուսինը, եւ «գեղեցիկ երեսով եւ պայծառ գոյնով», մի քրդի ուշադրութիւնը գրաւեց, որը ուզեց սպանել նրա ամուսնուն ու խլել կնոջը. Նրանք երբ իմացան, փախան դէպի Աղթամար ու մնացին այնտեղ հինգ տարի: Մի օր էլ (1397-ին) երբ հարկաւոր պիտոյքների համար Ոստան գնացին, քրդերը ճանաչեցին Գոհարին, բռնեցին ու սկսեցին աղաղակել՝ թէ նա անցեալում տաճկացած էր: Սուտ վկաներ էլ գտան ու տարան յիշեալ Փաշա խաթունի առջեւ: Կանանց դահճուհին Եղիսաբեթի պայմանն նրա առջեւ էլ դրեց ու մերժուեց: Դրան յաջորդեց տասն օր բանտ եւ ապա քարկոծում: Միայն թոյլ տուեց քրիստոնեաներին պատւով թաղել նրան[3]:

Թեմուրլանկի 1387 թուին Վանի մէջ կատարած կոտորածի եւ աւերումի ժամանակ[4], մի կին **Ցիմար** անունով անտէր մնացած, հրաւէր ստացաւ մի քրդից եւ գնաց աղախնութիւն անելու նրա կնոջը: Քիչ յետոյ մեռաւ քրդուհին եւ Ցիմարը գրաւեց նրա տեղն ու մայր եղաւ երկու զաւակների: Քրդի ազգականներն սկսեցին մեղադրել նրան, որ կնոջը քրիստոնեայ է թողել եւ նրա թոյլտուութեամբ ստիպեցին հայուհուն ուրանալ: Նա մերժեց: Նրանց ճնշման ներքոյ յանձն առաւ միայն երեք քար նետել դէպի քրիստոնեաների աղօթատունը: Քսան տարի կինը մնաց այդ տան մէջ խղճի խայթով, ապա գնաց Մակու իր հայրենի հաւատքն համարձակ պաշտելու համար: Իրեն խորհուրդ տուեցին՝ թէ որտեղ որ կարծիք էր տուել ուրացութեան, այնտեղ պէտք էր գնալ պաշտելու իր կրօնը: Նա վերադարձաւ Վան, սկսեց յաճախել եկեղեցի: Իր վրայ հրաւիրեց տաճիկների ուշադրութիւնն ու ցասումը, որոնք նրա առաջարկութեամբ իսկ, քարկոծեցին ու նահատակեցին նրան 1418 թուականին[5]:

Բարերդի մէջ կար **Շնորհաւոր** անունով պարկեշտ մի կին, ամուսին ու զաւակների մայր, որին մի տաճիկ աչք էր դրել եւ սկսեց հետապնդել: Նա մերժեց ու ստիպուեց իմացնել եղբօրը: Անամօթը մի գիշեր կնոջ տունը մտաւ գաղտնապէս եւ նրա եղբայրը, որ դարանակալ նստած էր, դաշունահարեց նրան: Տաճիկի ազգականները հասան եւ Շնորհաւորը ինքզինքն ամբաստանեց իբր սպանող: Նրանք կապած նրան Բարերդի ամիրայի մօտ տարան, որը դատաւորին յղեց ու մահապարտութեան վճիռ

1 **Նոր. վկ.** Ա. 128: — 2. **Նոր. վկ.** Ա. 114-15: — 3. Անդ՝ 127-29: — 4. Աստ՝ 320: — 5. **Նոր. վկ.** Ա. 142-44:

տալու: Իր պարկեշտութեան պաշտպանութիւնը մի ոճիր էր այդ մարդկանց համար: Այդպէս էր ուսուցանում նրանց յմրոնած արդարութիւնը: Նրան առաջարկեցին ուրանալ. որպէսզի ազատէր եւ երբ մերժեց. այլազգիները նրան իրենց սրերով խողխողեցին: Այս եղաւ 1494-ին[1]:

Երկրորդ մի յիշատակարան 1554 թուականից տեղեկացնում է՝ թէ «սիլիմրիլի **Խոսումին** նահատակեցին[2]». առանց յայտնելու՝ թէ ո՛վ էր այդ Հոփսիմէն. ո ւր. ինչո ւ եւ ո՛ւմ ձեռքով սպանուեց:

Վայոց ձորի գաւառից **Աղիզ** որրացին, դուստր **Խաչիկի**. 1669-ին Նախճաւանի իշխանի առջեւ բերուեց իր խօսնայրի կողմից մայր եղած լինելու ամբաստանութեամբ: Սրանց բարոյականութիւնն էլ Շնորհաւորի դատաւորների պահանջածի հակառակ ծայրն էր: Իշխանի եւ հայ աղջկայ միջեւ մի բանավէճ սկսեց. որը վերջացաւ դատողին ուրիշ բարոյալից առաջարկութեամբ՝ կամ տաճկանալ կամ մեռնել: Ազիզն ընտրեց վերջինը եւ բարբարոսի հրամանով տաճիկները գանակոծելով նրան. տարան կախեցին մզկիթի աշտարակից կենդանի եւ վերստին պահանջեցին ուրանալ եւ կամ մէջքի պարանը կտրելով գահավիժել: Պնդեց հայուհին արիաբար իր հաւատքի հաստատութեան վրայ: Այն ժամանակ սրի մի հարուածով չւանին՝ նրան տապալեց ու ջախջախեց ի պարծանք իրեն եւ ամօթ իր դահիճներին: Իսկ տեղի քրիստոնեաները վկայական մի թաղում կատարեցին նրան[3]:

Գողթանի Շադկերտ գիւղի տանուտէր էր նշանակւած Մալխասն, անզգամ եւ անիրաւ մի մարդ. որ գիւղացիների պահանջներից ազատւելու համար. գաղտնի գնաց Նախճաւանի իշխան՝ Մահմատ Ռզա խանի, Մարթուզա Ղուլի որդու հետ նշանեց իր դստեր՝ **Թամամին**, որ հրաւիրուեց իշխանի մօտ գնալու: Աղջիկն ու մայրն. որ անտեղեակ էին այդ բանին, սարսափեցին եւ լաց ու կոծ արին: Տաճիկները բռնի Երեւան տարան կոյսին, որի գեղեցկութիւնը խօսայրը տեսնելով, նրան զարդարեց թանկագին զգեստներով ու պատրաստեց հարսանիքի համար: Թամամը չէր ուտում. չէր խմում եւ խորհում էր փախչելու: Տնից դուրս ելնելու միակ ելքը բարձր պատուհանն էր. եւ ստորեւ քարեր, որոնց վրայ նախընտրեց մեռնել քան ապրել ուրացութեամբ: Խաչակնքեց, ընկաւ եւ ուշաթափ եղաւ: Սթափւելուց յետոյ. ելաւ ճանապարհ ընկաւ. խառնուեց թուրք մի կարաւանի եւ հասաւ Եղավարդ: Մտաւ քրիստոնեայ մի տան մէջ. մի քահանայի կողմից ընդունեց Ս. Խորհուրդներն ու պատրաստուեց անխուսափելի մահւան: Գիւղի տաճիկ տէրը՝ Ուղուրլուն, լսելով, հրամայեց հեռանալ ուր որ ուզում

1. *Նոր. վկ. Բ*, 13-15: — 2. *Անդ*՝ 59: — 3. *Անդ*՝ 150-51:

էր. իսկ վատ հայ ուստատէրը՝ Սահակը. փութաց զգացնել իշխանին. եւ նա հրամայեց նրան՝ սպանել կոյսին. Նրան օգնական տալով երկու տաճիկ. Գնացին կապեցին. հեռացրին գիւղից. մերկացրին զարդերից եւ Սահակը տաճիկների սռնապանները բաց անելով. նրանցով խժդժաբար խեղդեց աղջկան ու թաղեց. Յաջորդ օրն եկաւ անզգայ հայրը. նոյն Սահակի հետ հանեց կոյսի մարմինն ու փոխադրեց Եղավարդ. որտեղ մարտիրոսի մեծահանդէս յուղարկաւորութիւն կատարեցին. գնելով եկեղեցու որմի ներքեւ. Եւ պատմւում է գերեզմանի վրայ լոյս է իջել: Այս պատահեց 1691 թւականին[1].

Խամուրայ վիճակից. ուրացեալ մի մօր բարեպաշտ զաւակն էր **Խանումը**. որ մայրը ընդդատում էր հետեւել իր օրինակին: Կոյսն ընդդիմացաւ եւ խոյս տւեց: Զար կինը բռնել տւեց նրան թուրք խուզարկուների միջոցով եւ երբ Արածանուց անցնում էին. աղջիկը ջուրը նետւեց ազատւելու համար եւ կիսախեղդ գնաց ընկաւ Մանազկերտի ափի վրայ: Անզգամ մօրն յաջողեց ձեռք գցել եւ վերստին ստիպեց առանց հասնելու նպատակին: Այն ժամանակ խելագար մեզերայնր Նրան չէյխերին յանձնեց. որոնք բռնացան. չարչարեցին եւ յօշոտելով անմեղ մարմինը գազաններին գցեցին: Իսկ մի գիշեր հայերը գթով հաւաքեցին վկայուհու նշխարներն ու հողին յանձնեցին[2] (1755-ին): Բռնութիւնը գլացաւ նրա արժանաւոր թաղումն էլ լոյսի մէջ:

Կարնոյ Դւնիկ գիւղից եւ Զուրիկեանց տնից լոյս տեսաւ **Վառվառը**. չորեքտասանամեայ. «գեղեցիկ տեսլեամբ եւ նազելի. համեստ եւ երկիւղած Աստուծոյ». որ խօսեցեալ էր չինակից մի երիտասարդի: Իրենց դրացի այլակրօն մի երիտասարդ էլ սիրահարւած էր նրան: Երբ լսեց՝ թէ պիտի հարսնացնէին. գնաց ամբաստանեց գիւղի թուրք իշխանին՝ թէ կոյսն վաղուց խոստացել էր թրքանալ եւ ամուսնանալ իր հետ: Մի սուտ բաւական էր այդ արդարասէր իշխանների մարդկային ամէն իրաւունք ոտնակոխ անելու համար: Եւ նա հաւաքեց կրօնակիցներին. յանձնարարելով գնալ եւ բռնել աղջկան. կրօնափոխ անել եւ գրպարտչին տալ: Կոյսն երբ լսեց վտանգը. վազեց եկեղեցի. աղօթեց. լացեց. ընդունեց Ս. Խորհուրդներն ու պատրաստւեց պատերազմի: Այլազգիներն եկան բռնեցին ու տարան Կարնոյ բդեշխի առջեւ. որի ամբաստանութիւնն եւ ապա ուրացութեան առաջարկը մերժեց Վառվառն եւ յանձնւեց մոլլային. որ ամէն հնարներով փորձեց համոզել նրան. բայց իզուր: Այն ժամանակ մերկացնել եւ բրածեծ անել տւեց նրան արեամբ չափ եւ կիսամեռ բանտարկեց: Յետոյ վարսերից կախել տւեց իր պարտէզի լճակի վրայ. մինչեւ ծնկները մխւած սառուցեալ ջրի մէջ. ուր մնաց մի օր

1. Նոր վկ. Բ. 175-78: - 2. Անդ՝ 211-15:

ու գիշեր Աղօթ յօժարեցին կրկին ձայնում էն. Հրացեալ պայտեր յանցելի վրայ եւ հունկ չանթացած մի ապառաժ գիրկին

Դաշինք զարմացած նրա հաստատամտութեան վրայ. վերադարձրեց բդեշխին. որ նրան յանձնեց ուրիշ մոլլայի. որի անօգուտ փորձից յետոյ սահմանեցին նրան քրիստոնեայ թողնել եւ ամուսնանալ թուրքի հետ եւ բռնի տարան նրա տուն. որին դիմադրեց կոյսը. ճարտարութեամբ փախաւ ու գնաց Կարին եւ պահուեց Մարիամ անունով բարի մի կնոջ տան մէջ: Թշնամիները ձեռք գցեցին ու նահատակեցին աղջկայ եղբօրը՝ Գասպարին: Մի օր էլ այլազգի մի կին՝ Մարիամի դրացին, կասկածելով մտաւ նրա տունը. տեսաւ Վառվառին ու մատնեց թուրքերին, որ բռնեցին եւ երկուսին էլ բանտեցին: Մարիամը՝ զաւակների մայր, երբ հոգում էր նրանց մասին. քաջարի կոյսը սրտապնդեց նրան մեռնելու Յիսուսի համար: Յետոյ տարեցին բդեշխի առջեւ. որը տեսնելով նրանց անխորտակելի հաւատքը՝ մահուան վճիռ տուեց եւ կախեցին միասին եկեղեցու դրան դիմաց 1810 թւին[1]:

Ահա գեղեցիկ մի շարք մեր վկայուհիների, որոնց առաքինութեան եւ հաւատքի ամրութեան դէմ բախուեցին ու խորտակուեցին բռնութիւնք, չարութիւնք, չարչարանքն ու մահր գլխովին: Որոնք իմացան ըմպել քաջութեամբ դառնութեան բաժակը, իրենց արտօսրը, բողոքն ու արիւնն աւանդելով յաւիտենական արդարութեան ձեռքը: Ի՛նչ պարծանք ազգիս համար այդ պայծառ հոգիները, որ - պիտի կրկնեմ - մեզ մօտ իշխող նախապաշարեալ կարծամտութիւնք չիմացաւ պատուել արժանապէս[2], եւ սահմանել նրանց հանդէսի եւ փառքի օրերը մեր տօնացոյցի մէջ, նման ուրիշ սրբուհիների, որ տօնում ենք: Թող յիշուեն ու մեծարուեն նրանք գոնէ իմ ընթերցողների կողմից, յիշեցնելով նրանց՝ թէ ո՛րքան բարձր էր կրօնը, առաքինութեան ու սրբութեան յարգն յաչս մեր հին հայուհիների, որոնց գովեստն յանձնենք մեր սրբազան քերթողին[3]:

«Ճշմարի՛տ որթոյն Քրիստոսի շառաւիղք - Եւ ողկո՛յզք ճմլեալք երկնաւոր մշակին, - Կոխեցայք ճգնութեամբ ի հնձա՛նըս ձեր,- Ձի ուրախ յինքը՛ք անմահական բաժակաւն: - Ծինուածք երկնաւորք ի յերկրի հաստատեալք - Եւ արձանք լուսեղէնք ի յերկինըս կանգնեալք.- Ինքեա՛նք եղին եւ այլո՛ց ցուցին - Ջճանապարհս ցանկալի գթերին Երուսաղէմի: - Վասն ձեր, երանեալք նահատակք,- Ջօ՛րք հրեշտակաց անմարմին զուարթնոցն – Ի յերկնից ի յերկի՛ր հեղան, եւ մարդիկ Խառնեցան ի գունդս գինուորաց Քրիստոսի Աստուծոյ»:

1. *Նոր վկ. Բ*, 272-85: 2. *Աստ*՝ 145-46: — 3. *Կոմիտաս կաթողիկոս*:

## ԳԼՈՒԽ ԺԷ

### Սգոյ մէջ

Ապրում. գործում. արգինաւորում է մարդը: Բայց մի օր է գալիս. որ հարկ է լինում մահկանացուն իր հարկը տալ բնութեան. մի վարագոյր գցել արեւի դէմ շողացող աչքերի առջեւ. եւ նրանց տեսութիւնն մի ուրիշ կողմ դարձնել. թողնելով սուգը վշտահար կամ որբացած սրտերին: Տիեզերական մի օրէնք. որից չէին կարող խուսափել հայն ու հայուհին եւս: Ինչ որ դրա մէջ հետաքրքրում է մեզ. ցաւը չէ. որին հանդիպեցինք տեղ-տեղ[1]. այլ այն կրելու եւ արտայայտելու եղանակն հայ կնոջ կողմից. որ արժանի է առանձին ուշադրութեան. իբրեւ ազգագրական նիւթ եւ նրա կենցաղի անպակաս ու կարեւոր մէկ դրւագը: Մահն իր սարօք կարօտում է յատուկ եւ ընդարձակ ուսումնասիրութեան. որ կատարել եմ եւ դեռ անտիպ է. իսկ այստեղ առաջ եմ բերելու այն մասերը միայն. որ պատկանում են հայուհուն:

1.- ***Մեռելոց հետ.*** - Ականատես եղանք Արշակունի Գնէլի անիրաւ սպանութեանը[2]: Արշակը երբ լսեց թէ իր հրամանը կատարուած էր. կեղծեց իբր թէ անմեղ է. ըստ պատմիչի. եւ պատւիրեց «մեծ կոծ եւ աշխար (ողբ) դնել» սպանւածի դիակի շուրջ: Գնաց. նստեց ինքն էլ «աշխարանին» կամ «կոծատեղում»[3] մէջ. եւ «լալիս էր իր հօրեղբօրորդու վրայ»: Այդ առթիւ ազնւականներն ոչ թէ սովորական գահոյքի վրայ[4]. այլ գետնին էին նստում ռամկի պէս. ինչպէս նկարագրում է Ագաթանգեղոսը. գրելով թէ ***Գայիանէն*** լսելով ***Հռիփսիմէի*** մահւան լուրը «իջնելով նստեց գետնի վրայ. լացում էր[5]»: ***Շուշանիկն*** էլ ամուսնու ուրացութիւնն երբ իմացաւ. «գետին ընկաւ»[6] որպէս սգոյ նշան: Գնէլի պարագային մեծագոյն դերն նրա մանկամարդ այրու՝ ***Փառանձեմինն*** էր. որ ըստ սովորութեան ժամանակին մտած կիսամերկ վիճակի մէջ. որ բոլորովին հեթանոսական գոյն ունէր. «կոծում. բարձրաձայն ճչում. ողբում էր ալիողորմ արտասուքով գոյժը». ամենքին լացեցնում էր: Երիտասարդի դիակից աւելի այդ գեղանի սգաւորին էին դարձել շրջապատի աչքերը եւ յատկապէս երիտասարդ թագաւորինը. որ դեռ ամուրի հրապուրւած նրա փայլով. այնտեղ իսկ «ցանկանում եւ աչք էր դրել նրան կնութեան առնել». ինչպէս եւ կատարեց[7]: Նոյն ցաւով էր տառապում. նախապէս եւ աւելին. Գնէլի դաւադիր Տիրիթն էլ այդտեղ. որ անմտութիւնն ունեցաւ - գէթ ըստ պատմիչին. - մեռելի մօտ իսկ մանկամարդի ականջին շշնջալով թէ շատ մի

1. ***Աստ***՝ 80. 84-85: — 2. ***Աստ***՝ 42-43: — 3. ***Մնդ***. 176: — 4. ***Աստ***՝ 15: — 5. ***Ագթ***. 160: – 6. ***Սոփ. Թ***. 12:
7 ***Աստ***՝ 42-43:

չարչարուիր. եւ քեզ սիրեցի եւ սպանել տուի ամուսնոյդ քեզ ատելու համար: Փրկել կարծելով նրա, իր կորուստը պատրաստեց: Իսկ Արշակը զարմացած, իր զղջումն էր յայտնում կատարած սպանութեան համար, «ծափ զծափի հարեալ» ու խոստովանելով իր կրած խաբկանքը[2]:

Բոլորովին տարբեր հանգամանք ունի սուգը Մամիկոնեան տիկնոջ՝ **Դստրկանն**[3], ամուսնու պապի՝ Ս. Սահակի մահուան առթիւ, որ հրաժարուելով հայրական աթոռից[4], առանձնութեան մէջ ապրեց ու կնքեց իր մահկանացուն: Մեծ յուղարկաւորութիւն կատարուեց արժանի մի սրբի, մասնակցութեամբ իր պաշտօնեաների եւ յիշեալ տիկնոջ իր ընտանիքի կողմից, որոնք ենթադրւում է բացակայ էին այդ ժամանակ: Երանելին թաղեցին, ասում է պատմիչը, «Հանդերձ աստուածասէր իշխանակնաւ միով, որ անուանեալ կոչէր Դուստր, որ էր կին Վարդանայ»: Այստեղ չի լսւում տիկնոջ ողբը կամ կոծը, այլ հետեւում է թափորին Բագրեւանդից մինչեւ Տարօն, «սաղմոսներով եւ օրհնութեամբ եւ հոգեւոր բառերով», որ հնչում էին բոլոր բերաններից[5]:

Սիւնեաց իշխանն՝ Աշոտը, երբ մեռաւ[6], նրա զուգակիցը՝ **Շուշանն**, անձամբ դիազարդեց այն «արքունական ձեւով», գրում է իրենց պատմիչն, որի աղբիւրն յայտնի չէ եւ աշխարհաժողով բազմութեամբ ու փողերգութեամբ «տարեալ հանգոյց» նրա մարմինը Տաթեւի եկեղեցու դռան առջեւ, իր սուգին ներկայ ու մասնակից ունենալով Սմբատ Ա թագաւորն եւ իշխաններն եւս[7]:

Նոյն արքայի քոյրը՝ **Մարիամը**, մատաղ հասակում ամուսնուն՝ Վասակ Գաբուռուն[8], կորսնցրեց եւ սիրտ ամրացնելով ինքը պճնեց նրա դին «թագաւորական զարդերով», արժանի մեծն Աշոտի փեսային եւ ապա «անհուն անբոխով եւ անչափ աղաղակներով եւ ողբերգական պարուք (խմբերով) փողերով եւ քնարահարներով», Զաքարիա կաթողիկոսի հետ տարաւ թաղեց հայրենի դամբանում[9]:

Նրա երէց քոյրը՝ **Սոփին**, Վասպուրականի տիկինը, ինքն էլ կանխեց ողբալ դեռ հազիւ քառասնամեայ[10] կենակցի տխուր վախճանը[11]: Գոյժը դեռ իրեն չհասած, տարածուեց քաղաքում եւ բոլոր ժողովուրդն սուգի մէջ մտաւ եւ կոծ արեց, որոնց ողբերից տիկինն իմացաւ իր դժբախտութիւնը: Սկզբից չուզեց հաւատալ: Սաստկեց եւ ըստ սովորութեան իսկոյն սգով պատեց իր անձն ու պալատն, որի հանգամանքները

1. Անդ: – 2. Փաւս. 120-21: 3. Աստ՝ 92: — 4. Աստ՝ 144: – 5. Կոր. 25. 6. Աստ՝ 218: 7. Օրբ. 134-35: 8. Աստ՝ 61: – 9. Օրբ. 126: 10. Արծ. 256: — 11. Աստ՝ 43-44:

տանելու էնք սարեւ եւ սրբեր յորինեց. Յետոյ երկց որդին Աշոտը գնաց բերեց հօր մարմինն Հերից. ուր մահը գտած էր նրան եւ թաղեցին Աղրակի Ս. Խաչ վանքի մէջ[1]:

Նոյն տիկնոջ քեռաթոռն եւ իր վիշեալ որդու Աշոտի հարսը՝ **Սեդան**. երկու ծանր սուգ ունեցաւ[2]. Մէկն իր հօր սպանութեամբ՝ ամուսնու կուսակիցների ձեռքով. որի ցաւալին յուղարկաւորութիւնն իրեն վիճակուեց. որ բախտի հակառակութեամբ խզում էր կենակցի շղթաներն եւ իր առջեւ բացում էր Վասպուրականի տիկնութեան դուռը[3]. Ապումրւանի դուստրը չկարողացաւ երկար վայելել այդ սին մխիթարութիւնը. Մինչ զուգակիցն օգնութեան էր գնում քեռուն՝ Սմբատ արքային. Վանից հազիւ էր դուրս եկել. սաստիկ մի խիթ զգաց եւ չլսելով ազատանու խորհուրդներին. առաջ գնաց մինչ Նախճաւան. ուր դժնդակ ցաւը քառասուն օր տանջեց նրան եւ հուսկ նրա քսանիննամեայ կեանքը խզեց[4]: Նոր կսկիծ ու նոր սուգ Սեդայի համար. որ վերստին ամրացրեց սիրտը. վազեց ամուսնու մօտ. ողբաց եւ «վերցնելով նրա դին. տարաւ հանգչեցնելու» վերոյիշեալ Ս. Խաչի մէջ[5]: Աշխարհի փառքերի վարագոյրը փակւում էր նաեւ իր առջեւ. որ իր տիկնութեան գահը յանձնում էր **Մլքէին**. իր ազգականին ու նիրոջն եւ ապագայ թագուհուն[6]: Մէկի արեւմուտքը միւսի արեւելքն էր լինում:

Մահեր եւ սուգեր. կրկնում եմ. ամենի համար են անշուշտ: Բայց մեր տիկիններից մէջ կան. որոնց կեանքը սուգերի մի շարք եղաւ եւ յաճախ դառն սուգերի: Դրանցից էր մեծն Լեւոնի մայրը՝ **Ռիթան**. որի ամուսնական կեանքի առաջին մասն իսկապէս ողբերգութիւն եղաւ: Իր կորովի տագրը՝ Թորոս Բ. 1151-ին գլուխ բարձրացրեց յոյների հակառակ. երբ լսեց նրանց պատրաստած դաւն իր անձի դէմ: Սկսեց կռուել նրանց հետ ու գրաւել նրանց գաւառները: Ռիթայի հօրեղբայրն՝ Օշին Բ. իշխան Լամբրոնի. ի բնէ յոյների բարեկամ ու զինակից. նոյնութեամբ էլ մնաց: Նոյն տարում քաղաքականութեան պահանջով նրանց հետ էլ Թորոսի դէմ կռուելով Մսիս քաղաքի առջեւ. կորսնցրեց իր եղբօրն ու Ռիթայի հօրը՝ Սմբատին[7]: Ծնողի մահը տագերոջ սրերով. առաջին եւ անշուշտ շատ դառն սուգ եղաւ այդ տիկնոջ սրտին:

Շատ բարի մի ծաղիկ չէր իր ամուսինն՝ Ստեփանէն. որ միեւնոյն ժամանակ զօրք հաւաքելով. եղբօրից անկախաբար եւ նրա կամքին հակառակ. կռւում էր նրա բարեկամ Խլիճասլանի դէմ[8]: Իսկ 1165-ին խաբւելով յոյների նենգաւոր կոչից. զոհ գնաց նրանց ատելութեանը. բռնւելով ու խժդժաբար խաշւելով եռացած կաթսայում[9]: (Ասւած չի թէ այդ խաշւածից արդեօք խաշողները կերա՞ն): Այսպէս Ռիթան երկրորդ հարւածն էր

1. Արծ. 299-301: — 2. Նոյն՝ 257: 3. Աստ՝ 62: — 4. Աստ՝ 305: — 5. Արծ. 279: — 6. Աստ՝ 62-63:
7. Աստ՝ 60: 8. **Տրգ. Կիլ.** 234-35: — 9. Անդ՝ 251:

ընդունում իր որդին, որից երկու տարի յետոյ յաջորդեց երրորդը՝ իր մեռած տղերոջ Թորոսի մահը. «Մեծախորհուրդ եւ առատաձեռն» ինչպէս փառեկու էր նաեւ հայրին եւ նրա որդիների հանդէպ եւ որի փոխարէն. Ոսկեան իր գլխոյ զգաց նրա եղբօր՝ Մլեհի, ամեհի բռնակալութիւնը, որ նախ գաղտնաբար ջնջել տուեց Թորոսի անմեղ մանկան՝ Ռուբէնին[2], որ ապագային կարող էր խոչընդոտել իրեն: Ապա զարկեց Ստեփանէի զաւակների դէմ, ստիպելով իրենց մօրն ապաւինել իր եղբօր մօտ[3]. Նրա սուգն ամփոփեց, երբ զաւակներին տեսաւ Ռուբինեան գահի վրայ.- թէպէտ անդրանիկի խակութիւններն էլ որոշ ժամանակ իրեն վրդովեցրեց[4].- եւ ամբողջովին փարատեց, երբ համբուրեց կրտսեր թագապսակի օծեալի ճակատը, որի վրայ հանգչելու էր Հայաստանի փառքը:

Վշտահար մի կին եղաւ նաեւ **Մարիունն** արքայամայրը, որ բաւական տարիներ վայելելուց յետոյ, բարեպաշտ ու հզօր ամուսնուն՝ Պաղտինի, կենակցութիւնն ու մայրութեան քաղցրութիւնը[5], իրեն էլ հասան սեւ օրերը: Մարաջախտը Դ Լեւոնի կողմից պատգամաւոր գնաց Եգիպտոսի սուլթանին՝ բողոքելու Հալեպի Ալթունպուղայ ամիրայի դէմ, որ դաշինքները գրժելով յարձակւել էր Կիլիկիայի վրայ: Երբ անցնում էր Հալեպից, կասկածոտ թշնամին նրան բռնեց եւ բանտարկեց եւ գրաւեց նրա Նղիր դղեակը: Թշւառ իշխանն եօթն ամիս հեծելուց յետոյ բանտում, այնտեղ վախճանւեց 1336-ին: Մարիունը, որ հարկադրւեց նախ աճարեկւած խոյս տալ ու զրկւել սեփական ամրոցից, դառն արտասուքով ընդունեց լծակցի անշնչացած մարմինն էլ[6]: Նրա սիրտը նորից ալեկոծւեց 1344-ին տեսնելով սպանութիւնն իր փեսայի եւ **Ֆիմիկի** ամուսնու՝ Բոհեմոնդի, եւ նրա տագերոջ՝ Կոստանդին Բ արքայի[7], որի գահի վրայ խսկոյն նստեց իր որդին՝ Կոստանդին Գ, եւ սպեղանի դնելով մօր ցաւերին: Դիւրին է երեւակայել իր ի բնէ զգայուն դստեր[8] վիշտն էլ, որ երեսուն տարի պահեց իր այրութիւնը:

Տեսանք որոշ հայ ծնողների զգացած սուգն իրենց մանուկների կորստի համար, ինչպէս դրան յաջորդող սփոփանքն էլ[9]: Կսկիծը չատ աւելի խոր էր անշուշտ, որ պատճառում էր չափահաս զաւակների մահը, ինչպէս Զորտւանէլեանների հանդիպածները, որոնց նկարագրութիւնը հասցրել է մեզ Արիստակէս յիշատակագիրը կենդանի գոյներով: Զանազան մանուկներ կորսնցնելուց յետոյ, որոնց անունները հրաւիրում է կարդալ «ի դպրութեան կենաց», Վիգէն ու **Մելքսեթի** մնացին, ասում է, երեք զաւակներով՝ Զորտւանէլ, **Կատան** եւ Վասակն: Ժամանակին կազմեցին, առաջին

1. Աստ՝ 101: — 2. Տրգ. կիլ. 258: — 3. Աստ՝ 95: — 4. Աստ՝ 296: - 5. Աստ՝ 68-69, 102: 6. Հւբ. յլտ. 1337: - 7. Աստ՝ ԺԸ, Ա, Ժ, 2: — 8. Աստ՝ 102: — 9. Աստ՝ 85:

երկուսի ընտանեկան երջանիկ բոյներն էր, որ մահը շուտով պիտի քանդէր։ Նախքան այդ 1165 ին ուրիշ մի աղէտ եկաւ նրանց գլխին. յարձակման ուերման ու գերութեան ենթարկելով նրանց գաւառը. «Եւ այն էր սկիզբն թանձրամած սուգի, որ ունեցել էինք մենք եւ նրանք». խորհրդածում է գրիչը. Քիչ յետոյ նոյն ամսուայ մէջ, մահը խլեց որդեգրող ծնողների գահաժառանգը, գեղեցիկ երիտասարդը՝ Զորուանէլը[1], որ թողեց «չառաւիղ ազգի յուսածաղիկ զաւակն, եւ իր ծնողների մխիթարութիւնը»

Իր մեկնելու մխիթարանքից յետոյ, իսկ «աղէտս տարակարծ գիպուածքի եւ պատճառ անրաւ կոծի», որ կատարեցին զանազան կողմերից հաւաքուած ազատների, տիկինների, ծառաների եւ աղախինների ամբոխը եւ «Հօր եւ մօր ողբն եւ նրա ամուսնու (Վանինէի) չենք կարող գրելով նկարագրել», ասում է Արիստակէսն, ինքն իսկ վարանած նրանց վշտի սաստկութեան առջեւ։ Հաւաքուեցին քահանաների, կրօնաւորների ու վարդապետների մի բազմութիւն եւ «զպսակաւ գգեղեցիկ մարմին նորա պայծառ եւ պատուական հանդերձանքով», տարան հանգչեցրին Վանադիր ուխտի իրենց հայրենի տապանատան մէջ։ Տարաբախտ ծնողներն այնուհետեւ իրենց յոյսը դրեցին մանուկ Վասակի եւ որբացած թոռների վրայ։

Զգուշութեան համար, այդ բոթն ծածուկ պահեցին փափկասիրտ Կատայից, որ յղի էր Սադուկ ամրոցի մէջ։ Դեռ մի տարի չէր անցել այդ ծանր սգից, երբ առաքինի ու շնորհալի մանկամարդը[3] զոհ գնաց իր մայրական պարտականութեանը[4]։ Նոր աղէտ եւ աղիողորմ ողբեր տեղի վրայ, ապա եկեղեցու պճնումը «պայծառ հանդերձանքով», եւ ամփոփումն Ս. Փրկիչ մենաստանի մէջ։ Գոյժն հասաւ Սասուն՝ ծնողների ականջին, որոնք «անհնար սուգի տրտմութեան մէջ ընկղմեցին եւ նորոգեցին կեղեքումն առաջին վէրքերի եւ այրումն ի վերայ այրման»։ Մանաւանդ մոռացան առաջինը, ասում է տեղեկատուն, «սրան խիստ համարելով», որ իրենցից հեռու վախճանուեցին, եւ «չտեսան նրա մահը»։ Շատ օրեր ողբացին, եւս աւելի մայրն, որի աչքերի լոյսն էր Կատան[5] եւ ապա ամոքեցին իրենց վիշտը հաւատքի ուժով, որ այնքան զօրաւոր էր իրենց հոգում[6]։

Անձամբ նկարագրում է իր սուգն 1241-ի արձանագրութեան մէջ, ժուժկալ բայց ազդու բառերով, Վերին Խաչէնի տիկինն՝ **Արզու խաթունը**[7], որ իրար մօտ էր չարել երեք գերեզմաններ «իմ տղամարդն (Վախտանգը), եւ իմ զաւակների, Հասանի իմ անդրանիկին, եւ Գրիգորի, որ ի Տէր կէսօրւան վախճանուած, իմ մեղքերի համար,- ասում է քրիստոնէական խոնարհութեամբ, որ յատուկ է իր պէս բարեպաշտ հոգիներին[8].-

1 *Աստ*՝ 39-40 2. *Աստ*՝ 135-36: — 3. *Աստ*՝ 132-33: — 4. *Աստ*՝ 80: — 5. *Աստ*՝ 86: — 6. *Հյդ*. 393-95:
7 *Աստ*՝ 22 8. *Հմմտ. աստ*՝ 202:

Աստուածն ինձ խրատեց եւ բարձեց իմ գլխի վրայ երկու փայլուն պսակն. անդրանիկս մեռնելով բարբարոսների պատերազմի մէջ՝ «քրիստոնէական հաւատքի համար» եւ կրտսերն երեք տարի յետոյ «ի Տէր կոչուեց... առ ի անմխիթար թողնելով իրենց թշուառ մօրը[1]»: Աւելի ծանր է եղել որդիների կորստեան հարուածը. քան կենակցինը եւ այդ դառն կսկծի մէջ էր. որ ամրացրեց արխնատ սիրտն ու կառուցեց Դարի եկեղեցին[2].

Լուռ է գրիչը. համր են գրաւոր աղբիւրներն եւ մի գերեզմանիկ ինքն է խօսում Շիրակի գեղեցիկ եւ ողբացեալ ոստանում. բացելով ու բացելով մեր առջեւ յերդացած խոցը առհմիկ ու մանկամարդ մի մօր. որ իր դեռափթիթ ծաղիկը՝ մի դստրիկ.- գուցէ անդրանիկը. թերեւս միամօրը.- մահուան փոթորիկից բեկուած. ընկած գետնի վրայ. չի ուզել յանձնել կոյսի ցուրտ սպիտակութեանը: Այլ դնում է. վշտից թուլացած ձեռքերով դուրս է քաշում իր զարդերի արկղից՝ չողչողուն ոսկեզրուագ տիկնունի քօղը. որով նազում էր չքեղասէր ընկերութեան առջեւ[4]. որ համարում է արժանաւորագոյն պատանքն իր սիրոյ: Մայրենի ջերմ արտասուքով թրջում է աշխարհի ունայնութեան այդ խաւարած դիմակը. ամփոփում է նրա մէջ անգին գոհարիկը. միասին ծրարելով իր տիկնութեան փառքը. վայելչութիւնն ու ցնծութիւնն էլ եւ այնպէս հանգչեցնում է այն փոքրիկ փոսի մէջ. ինչպէս երբեմն իր օրօրոցի. իրր օրօր՝ աղի մի երգ երգելով նրա վրայ. որտեղ եւ գտնուեց մեր օրերում. ինչպէս գետեղել. դրել էր այն սգաւոր մայրիկը[5]: Ուրիշ մի մայր իր պատանեակի հետ միասին թաղել էր նրա սիրած խաղալիքները. վէգերով լի մի անօթ[6]:

2.- **Կոծ եւ ողբ**. - Մենք պէտք է մտնենք մեր նիւթի մանրամասնութիւնների մէջ. եւ սրա համար վերադառնանք աշխարանը. որպէսզի լաւագոյն կերպով տեսնենք այնտեղ ունեցած հայուհու կարեւոր դերն ըստ մեր հին բարքերի:

Ննջեցեալը նախ լւացւում էր եւ եթէ կին մարդ էր. իր սեռակիցների ձեռքով. ինչպէս եղաւ Ս. Շուշանկան[7]: Ցետոյ դիազարդում էին այն. հագցնելով լաւագոյն հանդերձները. ինչպէս յիշուած տեսանք Վասակ Գաբուռի. Զորտւանէլիի ու Կատայի վրայ[8]: Ապա հաւաքւում էին սգաւորները դիակի շուրջ: Վշտի առաջին նշանը. որ սիրեցեալի կորուստը դնում էր հայ կնոջ վրայ առաջին վայրկեանից իսկ. զգեստի փոփոխումն էր. ինչպէս կատարեց՝ **Փառանձեմը**[9]. որ վկայում է Մանդակունին եւս այս առթիւ. «պատռուած հանդերձներ» եւ նրանց փոխարէն «քուրձ զգենուլ[10]»: Կամ ուղղակի հանելով սովորական հագուստը եւ փաթթւելով «առիգածի» կամ մի

1. *Արգ*. 204: — 2. *Աստ*՝ 224: — 3. *Աստ*՝ 17: — 4. *Աստ*՝ 116: — 5. ***Ասպ.*** 13 ապր. 1917: 6. *Անդ*: - 7. ***Սոփ. Թ***. 46: - 8. *Աստ*՝ 339, 342: — 9. *Աստ*՝ 338: — 10. *Մնդ*. 176:

սփածանելու մէջ. այնպէս որ մերկ էին մնում ուսերն ու բազուկները «ուսերով մերկանալը» բառ նոյն բեմբասացին[1] եւ դրա հետ Փառանձեմը «մերկատիզ» էլ էր կամ բաց բազուկներով, որով երեւում էին ողբասացներն «անամօթապէս խզացեալք մերկանդամք[2]», այսինքն խուժինք մասամբ ի տես դրած:

Այս կերպը շարունակում է նաեւ ապագային, որով Շնորհալին իբրեւ ազաւոր մի կնոջ այսպէս է առել տալիս Եղեսիային. «Գլուխը քողից մերկանալով-իմ զարդի ծածկոյթը պատռեմ[3]». Իսկ Վաղարշապատի ողբի մէջ Օրբելեանն «Զմայրն լուսոյ Հայկայ զարմին, նկարագրում է «Մերկ խայտառակ բազմոցի վրայ.- Անձամբ զցեց քուրձը խաւարին[5]»: Այդ վիճակի մէջ էին գտնւում ննջեցեալի բոլոր ընտանիքը, նոյնիսկ Փառանձեմի նման գեղատեսիլ մանկամարդերն էլ, տարօրինակ մի հակասութեամբ իրենց սովորական ամրածածուկ կեանքի հետ[6]: Դրա համար Մանդակունին պահանջում էր, որ եկեղեցու պաշտօնեաների խումբը չմտնէր «մերկանդամ խայտառակների դասի մէջ»[7]: Այդտեղ միանգամայն «կանայք հերարձակ» են[8]: Ինչպէս Փառանձեմն էլ ունէր «արձակեալ մազեր[9]»: Դերենկան մահր ողբում էին կանայք «բաց գլխով» փողոցների մէջ[10] եւ 1449-ին Մերտնի մահտարաժամից կոտորածների վրայ ողբացող հայուհիները՝ «որոնները հերարձակ, որոնները սեւազգեստ եւ կէսք հրապարակ» կամ կիսամերկ էին[11]:

Այդ ձեւով զգեստաւորման նպատակն էր անշուշտ, նախ անշքացնել մարմինը եւ ապա դիւրացնել կոծերը, որ խառնւում էին ճիչեր, աղիողորմ ձայներ եւ ողբերի հետ: Այսպէս Փառանձեմը «մազերը փետում, ճչում էր կոծելիս[12]» եւ Մանդակունին դատապարտում էր «վարսի փետումը եւ մազերի կտրելը[13]»: Նոյնն երեւում է նաեւ Եղեսիայի եւ էջմիածնի ողբերի եւ բոլոր միջնադարեան մատենագրութեան մէջ: Եւ աւելի խորշելի մի տեսարան, «կանայք, ասում է յիշեալ բեմբասացը, կանչեր հերարձակ՝ այտերը ցնում են (կամ պատռում են եղունգով), ստինքները կեղեքեն (նոյն կերպով), խզում ու կոծում մոլելով» եւ դրա հետ «եղիճ (որով խայթում էին իրենց մարմինը), արիւն (ցտելով) եւ մոխիր» գլխի վրայ[14], վերջինս շատ սովորական[15], այնպէս որ Հայրապետը վրդովւում էր տեսնելով այդ «անամօթ կանանց հերարձակ, արիւնաշաղախ

1. Նոյն՝ 175 2. Փաւս. 120. այդպէս, ոչ «մերկատիտ» Գամ. արգ. 300: - 3. Մնդ. 177: -- 4. Ողբ, 21 5 Օրբ Ողբ. 25: — 6. Աստ՝ 14-15: — 7. Մնդ. 177: — 8. Նոյն՝ 176: — 9. Փաւս. 120: — 10. Արծ. 299 11. Հյպ. 576: - 12. Փաւս. 121: — 13. Մնդ. 181: — 14. Նոյն՝ 276: — 15. Նոյն՝ 175, 176:

*խղերգն եւ մախրազմները։ Այս բոլորին ակնարկում էր Փաւստոսը ասելով թէ՝ կոծ մոլութեան գիակին ջալյում էին» Գնէլի*

*Անցնում ենք Թ դար, ուր Դերենիկի մահուան առթիւ «կուրծք ծեծող ճակատահար ճայթմանցն եւ բարձրաճիչ աղաղակներով» փողոցներում ողբացող կանանց «հնչեաց զուռն զարզառու» **Սոփի** տիկնոջ, որ աւելի ուժ իր անձին ու վշտին, բուռականացաւ գլխին մոխիր ցանելով ու ծածկելով թուխ «արկանելոք», եւ երեսը գետնին դրած լացում էր լուռ*[3]*։ Սգաւոր Եղեսիան ասում էր. «Քարերով ծեծում կուրծքս սրտի.- բախեմ իմ երեսն ապտակով»*[4] *եւ Էջմիածինն «Կուրծքը ուժգին բախում էր քարերով.- Արեան առուներն էին իջնում.- Մոխիր կուտակում էր բլրի նման.- Ձեռքերով ցանում էր իր գլխին»*[5]*։ Միջին դարը հնարեց նաեւ կանանց մազերի կտրելը. յիշուած է ՅՀ. Գաւնեցու կողմից՝ «մազերի կտրումը»*[6]*։ Մերտնոյ վերոյիշեալ ողբասացը «որոշները ծամերը կտրուած» էին տեսնում*[7] *եւ Ն. Քուչակն ասում էր սիրականին. «Ես կը մեռնեմ քեզ համար, դու ծամդ կը կտրես»*[8]*։*

*Երբ ցաւի առաջին սաստկութիւնը մեղմանում էր, յաջորդում էին ողբերը։ Դրա համար հրաւիրում էին արուեստով պատրաստուած յատուկ **եղերամայրեր, եղանակամայրեր, ձայնաւորներ** կամ **լալկաններ***[9] *կոչուած կանայք, որոնց գլխաւորը լինում էր մեռելի կինը կամ մայրը, որ լաւագոյնս ճանաչելով նրա կեանքը, այնտեղից կամ մահուան հանգամանքներից հանում էր ողբերի նիւթն ու ասում էր եղերամայրերին։ Ինքը շարադրում էր եղանակով եւ միւսները կրկնում էին նոյնպէս եղանակով, - գուսանների արածի նման*[10] *սրա համար ինքը կոչւում էր **մայր ողբոց**։ Այսպէս Գնէլի դիակի շուրջ **Փառանձեմի** «ի ձայնարկուքն ամենայն եղեւ նա մայր ողբոցն» եւ երբ իմացաւ Տիրիթի դաւը*[11]*, զայն նիւթ առաւ, եւ «ձայնարկուքն ամենայն ի ձայն ողբոցն սկսան **նուագել** զիրսն տրփանացն Տիրիթայ, զակն դնելն (նուրին), զքսութիւնն, զհնարս մահու նիւթել, զսպանումն, ձայնիւքն մրմնջոցն ի վերայ սպանելոյն ի մէջ կոծոյն բարբառէին գեղգեղեալ խանդաղատութեամբ*[12]*» եւ Մանդակունին ասում էր թէ «**այդ երգով** նմանւում էք Հրէից եւ հեթանոսներին*[13]*»։*

894 *թւին Դւինի երկրաշարժից կոտորածների համար նոյնպէս «աղիողորմ ձայներ երգեցիկ կոյսերի եւ սեւազգեստ կանանց եւ արանց վշտահար հեծութեամբ զգածելոց մինչեւ երկինք բարձրանալով հասնէր» ըստ պատմիչին*[14]*։ Դերենիկի համար*

---

1. *Նոյն՝* 177: — 2. ***Փաւս.*** 121: — 3. ***Արծ.*** 299-300: — 4. ***Ողբ.*** 21: 5. *Որբ. Ողբ.* 26: 6. *Գ.ն. Խր.* 147: — 7. ***Հյպ.*** 576: - - 8. ***Քուչ.*** 53: — 9. ***Ոսկ. Պօղ. Ա,*** 380. ***Փաւս.*** 121. ***Մնդ.*** 181: 10. ***Աստ՝*** 271-72: — 11. ***Աստ՝*** 339: — 12. ***Փաւս.*** 121: — 13. ***Մնդ.*** 176: - - 14. ***ՅՀ.*** *կթ.* 205:

ողբասացները ասում էին «Վա՜յ, կորաւ մեծանուն իշխանն եւ անտերունչ մնաց երկիրս Հայոց»[1]: Իսկ իր կենակիցը Սոփին, երեւում է մասնաւորապէս զարգացած՝ քրոջը նման՝ եւ անբաւական ռամկական ողբերով, կոչում է «զզուեալս ազոյ, ողբոց յօրինէ կարգս», խմբերի է բաժանում եւ դաս առ դաս «զթագաւորացն Իսրայէլի նուագել տայ զողբս[2]» որոնցից յայտնի է Դաւթի յօրինածը Սաւուղի վրայ[3]: Գէորգ կաթողիկոսի եւ Սիւնեաց Աշոտ իշխանի մահուան (897-ին) «ողբերգական կանայք կականում էին ասելով. Մի՛ եկ եւ մի՛ լսու այսպիսի տարի երկրի վրայ որչափ ազգ մարդկան է[4]»: Էջմիածինը՝ «Կանանց երամը ճչալով լացում էին- Նա չուրջը պարում էին[5]»: Մերոնոյ վերոյիշեալ աղէտի առթիւ էլ ողբերն անպակաս էին. «յերեկօրեայ երգ տրտմութեան... հաւախօսին լալկան կանայք եւ արշալոյսին ողբերգուներր պարելով[6]» կամ բազմախումբ: Եւ 1506-ին Ամասիայի երեք նահատակների համար «բազմաթիւ կանայք հաւաքուեցին Լալկան ողբերգուներ.- Շատ լացեցրին բոլորին - Մինչ սար ու ձոր լացեցին[7]»:

Վշտի այդ արտաքին սաստիկ ցոյցերն առհասարակ հեթանոսութեան մնացորդներ էին, որոնց չէին հանդուրժում եկեղեցական հայրերը: Մեծն Ներսէսը Հայաստանի բարեկարգիչը[8], ջնջեց այդ եւ իր կենդանութեանն «ոչ ոք չէր համարձակւում, ասում է պատմիչը, անյուսութեամբ՝ արտաքոյ կարգի կանոնի եկեղեցու՝» լացել, կոծել կամ ողբալ մեռելների վրայ: Իսկ իր մահւանից յետոյ նորից նորոգւեցին[9], այնպէս որ Մանդակունին հարկադրւեց ինքն էլ պատերազմ բացել նրանց դէմ, ինչպէս տեսանք վերեւում իր կծու բացատրութիւնների մէջ: «Որովհետեւ ամենայն, ասում է, սատանայական է եւ հեթանոսական, որ անմիտ կանայք բարբառում են ցոյց տալով կեղծաւորութիւն», որովհետեւ շատերն իբր սովորոյթ կատարում էին եւ ոչ ճշմարիտ ցաւով, «եւ կռապաշտերը գործում են քրիստոնեաների վրայ», ողբալով, կականելով, ճչալով ու մարմինը կոծելով անյուսաբար[10]: Սակայն սովորութիւնն աւելի բնաւոր ու յաղթող մնաց քան հայրերի ձայնը: Ապա միջին դարում յատուկ ողբեր էլ շարադրեց ու դրեց սգաւորների բերանը, դիւրացնելու համար նրանց գործը եւ որոնք տեսնւում են գրչագրերի մէջ: Նարեկացին վկայում է նրանց արւեստականութեան իր օրերից իսկ, ասելով թէ «ըստ ձայնից կողկողանացն եւ գրանիցն յարմարութիւն հանդերձեն, ի նոյն գիր բերեալ զաւարտմունս տանցն», այսինքն տներն աւարտելով նոյն յանգով. «ովքեր, ասում է, առաւել սաստիկ մորմոքեալ ճմլեցուցանեն զաղէտս կարեացն սրտին ըղձից առ արտասուացն բղխմունս[11]»:

---

1. Աստ՝ 244-45 -- 2. Արծ. 299. 300: — 3. Բ. Թագ. Ա, 19-27: — 4. Կղն. 270: — 5. Օրբ. Ողբ. 26: — 6. Հյպ 576. 7. Անդ՝ 590: — 8. Աստ՝ 316: — 9. Փաւս. 229: — 10. Մնդ. 176: — 11. Նրկ. 61:

Գրաւոր ողբերից աւելի յուզիչ են յետնագոյն գործերում շարադրուածները, որոնց մէջ երբեմն մայրը զաւակի հետ է խօսում եւ երբեմն զաւակը մօր հետ, կամ երկուսը խօսակից են լինում, իրար բացելով իրենց կսկիծը: Եւ նրանց մէջ խտանում են կեանքի ու սիրելիների կարօտ մնացող աչքերի հառաչանքները, մայրենի վշտակոծ սրտի մորմոքները, մահուան խռովիչ ու ցաւագին պատկերները, անպտուղ անցեալի վրայ զղջումները, աշխարհի ունայնութիւնների դէմ բողոքները, առաքինութեան յորդորները, վերջին ողջոյնները եւ աղաչանք անմխիթար չմնալու. Եւ բանաստեղծական ներշնչմամբ ու արուեստով, դրանց հետ հիւսում են ծով-ծով աչեր՝ որ մարում են, սիրուն բերաններ՝ որ փակւում են, բլբուլ լեզուներ՝ որ լռում են, ոսկի աղաւնիներն՝ որ թռչում են մայրերի ափերից, քաղցրաձայն արտուտիկներն՝ որ երկինք են վերանում, կարմրացած խնձորներ՝ որ գետին են գցւում, գեղեցիկ ծաղկած նռնենիներ՝ որ տերեւաթափ են լինում, կանաչ վարդենիներ եւ անուշահոտ վարդեր՝ որ խամրում են եւ ուրիշ ինչ որ ցաւը, սէրն ու բնութիւնը թելադրում էին: Այդ ողբերը պիտի կարդացուեն ամբողջութեամբ, նիւթիս առանձին ուսումնասիրութեան մէջ[1]:

Մեր եղերամայրերի հիւսած անսպառ եւ սպառիչ ողբերն ու կոծերը պէտք ունէին վերջ դրուելու: Եւ դրա համար միջամտում էին ննջեցեալի ընտանիքների բարեկամ ու մեծարուած անձերը, որ իրենց մխիթարական խօսքերով ամոքում էին նրանց կսկիծը եւ դադարեցնում էին այն արտաքին ծանր ցոյցերը: Դրանք յիշում է Մանդակունին, ասելով թէ սատանան այնպէս է կաշկանդում սգաւորները, որ «ոչ տայ խոնարհիլ ի բանս ***մխիթարչացն*** եւ ***սփոփողացն***[2]»: Բայց սրանք շատ անգամ յաղթում էին սատանային: Այսպէս Դերենիկի սուգի, ժամանակ «ի մէջ կացեալ» եպիսկոպոսներ եւ վանականներ, «արթնացնում էին կնոջ (***Սոփեա***) եւ ուրիշ կոծողների մտքում Աստուծոյ երկիւղն եւ մի քիչ փարատում էին սգոյ աղէտի դառնութիւնը»: Նաեւ գնաց Աշոտ արքան «մխիթարելու իր դստերն եւ թոռներին[3]», թէպէտ կեղծ Շապուհը նրան մեռած է նշանակում նախքան փեսան[4]:

Կանանց մխիթարիչ էին լինում ընդհանրապէս իրենց սեռակիցները, որոնց տուած սփոփանքն էին յաճախ իրենց ցաւերի յիշատակութիւնը, զգացնելու համար սգաւորներին թէ իրենց պէս եւ աւելի ծանր ցաւահարներ էլ կային, ինչ որ աւելի եւս մորմոքում էր նրանց: Այդ շաղակրատանքը մանր է թւում Մամբէին: Մէկը ասում էր թէ իմ եղբայրն աւելի մատաղ մեռաւ քան այս, դեռ նոր էր հարս բերել եւ անզաւակ մեկնեց աշխարհից: Մի ուրիշ կին՝ թէ ամուսինս մեռած է, քոյր եւ եղբայր չունեմ.

1. ***Աստ***՝ 338: — 2. ***Մնդ***. 174: — 3. ***Արծ***. 301, 257: — 4. ***Աստ***՝ 43:

միամօր մի որդեակ ունէր ծաղկի պէս թառամեց մանուկ հասակում. առագաստ չմտաւ. այս աշխարհի վայելչութիւնը չտեսաւ՝ Ուրիշներն աւելի յուզիչ դիպուածներ էին պատմում. խրատմը դիտել տալով մեր մատենագրին. «Եթէ արժանի լինի այսպիսի խօսքերով մխիթարութիւն ասել. ես չգիտեմ»: Ոչ էլ մենք գիտենք. որ նոյնը տեսնելու ենք դեռ այսօր շարունակուած.

3.- ***Ուղարկաւորութիւն***.- Սրա մէջ էլ իր բաժինն ունէր հայ կինը եւ նկատեցինք վերեւում ***Դուստր, Շուշանի, Մարիամի*** ու ***Սեդա*** տիկնանց հետեւեյն իրենց ննջեցեալների դագաղին մինչեւ գերեզման[2]: Ժ դարը դրա հետ ուրիշ մի ժառանգութիւն պահել էր հեթանոսութեան շրջանից՝ յուղարկաւորական պարը. Թափորին ընկերակցում էին փողեր. փանդիռներ ու վիներ[3] եւ նրանց ձայնով ընթանում էին ամբոխն ու սգաւորները. այս վերջիները «կռծր պարով կաքաւելով. վիրաւոր բազուկներով. երեսները պատուածներով. այրեր եւ կանայք պղծութեամբ. ճիւաղութեամբ պարերով դէմ ընդ դէմ հարկանելով». որ է քայլելով իրար հանդէպ. «եւ կամ ծափեր հարկանելով». որ այդ շրջանում ցաւի նշան էր մեզ մօտ[4]. իսկ Ժ դարում եւ յետոյ յիշուած իբր ուրախութեան[5]: Ներսէսը խափանեց եւ այս. սահմանելով «լոկ արտասուքով եւ ըստ արժանի սաղմոսներով եւ օրհնութեամբ. կանթեղներով եւ մոմերով» յուղարկաւորել, ինչ որ տեւեց մինչեւ իր մահը միայն[6]: Բայց Մանդակունին իր մանր նկարագրութեան մէջ չի յիշել պարը. որ հաւանօրէն ջնջել էր Ե դարը. մինչ նուագարանները. կոծն եւ ողբը մնացին միշտ կանանց մասնակցութեամբ հանդերձ:

Այսպէս ըստ Խորենացուն. Արտաշէսի դագաղի եւ կային «ձայնարկու կոյսեր, սեւազգեստ եւ աշխարհիկ կանայք[7]» եւ Տրդատի դագաղի հետ մի անծանօթից յիշւում են նոյնպէս «ողբասաց կոյսեր[8]»: Այս տեղեկատուները հեռու այդ թագաւորներից. ցոյց են տալիս իրենց ժամանակի սովորոյթը. որ շարունակւում է յետոյ: Որով երբ Աշոտ Ա արքայի մարմինն դէպի Բագարան էին տանում. «այնտեղ տեսնւում էր. ըստ պատմիչի. կոյսերի. ողբերգակ եւ արտօսրաթոր կականումն եւ աշխարական տիկնանց եւ տանտիկինների» ու ամբոխի[9]: Շնորհալին ողբում էր. որ Եդեսիայի կոտորածների տագնապի պատճառը «Եւ ոչ կոծով յուղարկաւորում էին[10]»: Գր. Տաթեւացին վկայում է՝ թէ «ամենեքեան առհասարակ, այր եւ կին, ծեր եւ տղայ, արտասուելով ընթանում են դէպի գերեզման» մեռելի հետ[11]: Եւ 1704-ին գրուած մի մաշտոցի մէջ նկարուած է

---

1. Մմր. 42: 2. Աստ՝ 339-40: — 3. Աստ՝ 266, 269: — 4. Աստ՝ 339: — 5. Նրկ. 388. աստ՝ 263-64: — 6. Փաւս 229 — 7. Խոր. Բ. կ: — 8. Ալր. 392: - 9. Յհ. կթ. 181: — 10. Ողբ. 53: — 11. Քրզ. ձմ. 249:

քահանայաթաղը. ճանապարհի վրայ, որում դեռ կան երկու սգացողներ իբր օրինակ. մի այր ու մի կին, վերջինս գլխաբաց ու մազերը կտրելով[1]

4.- **Սուգ**.- Թաղումից յետոյ սկսւում էր սգոյ խսկական շրջանը, որի տեւողութիւնը, փոփոխական է եղել ըստ վայրերի, անձերի ու ժամանակի. եւ որ հայ կնոջ համար, մանաւանդ գզայուններին, դարձել է բարոյական մեռելութեան մի վիճակ, երբեմն աւարտւած խրակունով: Վասպուրականի տիկինը՝ **Սոփին**, ուխտեց, որ սուգը չպիտի վերջանար, մինչեւ քաջարի որդիներից մէկը, իր կենդանութեան կամ գերեզմանի վրայ աւետիս բերէր, թէ հօր արեան վրէժը լուծել էր[2]: Իր հարսը՝ **Թամար-Մլքէն**, կենակցի՝ Գագիկի, մահւան առթիւ «երեք տարի սգով մնաց, մինչեւ ապա թագաւորեց որդին՝ Ամիրա Գորգին[3]»:

Եղիշէի բացատրութիւնն իր նկարագրած տիկնանց համար՝ թէ «արտաքնապէս երեւում էին իբրեւ սգաւոր եւ չարչարւած այրիներ[4]», ակնարկութիւն է այն անչուք եւ անձուկ կենցաղին, որ անց էին կացնում նրանք[5]: Ըմբռնելու համար սգաւոր հայուհու հոգեկան վիճակը, հերիք է նայել նրա թուխ հանդերձին, որը ծածկում է մարմինն, իր վշտի առաջին օրից: **Սոփին** լսելով ամուսնու մահւան լուրը, խսկոյն «սեւ զգեստներ հագաւ[6]»: Հանդիպեցինք Դւինի սպանւածների համար «սեւազգեստ կանանց եւ արանց», նոյնպէս եւ Մերտնոյ մէջ[7]: Զորաւանեանները իրենց սիրելիների կորստի համար «անմիջապէս սգոյ հանդերձները զգեցեալ ի թխութիւն դառնային[8]»: Գր. Տղայի ողբի մէջ Երուսաղէմի համար ասում է. «բեհեզեայ սեւ զգեստ հագաւ» եւ ողբասացը՝ թէ «Նստեց տնում որպէս այրին, - Ծածկելով դէմքը սեւով[9]»: Եւ որովհետեւ սգոյ զգեստը բաւական ծախս էր պահանջում, ըստ Յհ. Երզնկացու[10], կային այրիներ, որ նստում էին «պատռւած հանդերձներով[11]»: Իսկ ոմանք իրենց մարմինն աւելի տանջելու նպատակով, մազեղէն էին հագնում ըստ Առ. Բաղիշեցու. «Քուրձ հագիր, եկեղեցի.- Այրի եղաւ յանկարծակի[12]»:

Սգաւորների հետ իրենց բնակարանն էլ սեւով պիտի ծածկւէր, դուրս վտարելով արեգակի լոյսը: **Սոփին** խցեց իր պալատի պատուհաններն ու «խաւար ձեռագործ» սփռեց ներսը, իսկ սենեակների կամարաձեւ ոսկեհուռ զարդերը սեւով փոխանակեց[13]: Արիստակէսը հաստատում է՝ թէ մեռելոցի համար «խաւարում փակւեն[14]»: Շնորհալու

1. **Գամ. տրգ**. 371: — 2. **Արծ**. 300: — 3. **Կնդ**. 412: 4. **Եղչ**. 158: 5 **Աստ**՝ 312: 6. **Արծ**. 300: 7. **Աստ**՝ 346, 343-44: — 8. **Հյպ**. 395: — 9. **Տղ. Ողբ**. 550, 54: 10. **Յհ. Եզ. Խր. Ի**: 11. **Լստ**. 76: 12. **Աչղ**. 174: — 13. **Արծ**. 299: — 14. **Լստ**. 77:

Եղեկիայի օրհի մէջ ասում է թէ. «Նստեմ աղօթք համար մթին անում. Որպէս աղաւաղի օրէնք[1]» Եւ Տաթեւացին տեսնում էր դեռ «մթում» կամ «խաւար տնում» բնակւելը

Այդ թախծալից վայրի կամ կենդանի գերեզմանացման մէջ այրին. «Հրաժարւած կենցաղային ամէն վայելչութիւններից», ինչպէս **Սոփին**. կամ ըստ Արիստակէսին նստած «անշուք. անզարդ. մերկացւած ամենայն գեղեցկութիւններից. . անկեալ ի պատուոյ[4]». որ վայելում էր յաճախելով ընկերութեան մէջ. «տխուր դէմքով[5]». կամ ինչպէս այրիացած Երուսաղէմն ասում էր. «Նստեցի միայն տան մէջ յոփն. - Դնելով իմ ձեռքը ծնօտին[6]». մնում էր մինչեւ սովորական սգոյ վերջը. որի մէջ զգայուն հոգիները հալւում էին. երբեմն իրենք էլ իրենց ցաւի բովի մէջ: Այս տիկին Սոփին «ոչ ժուժեալ սրտի նեղութեանը». եօթ ամսից յետոյ՝ ըստ մի անծանօթի. կամ քսան՝ ըստ Թովմայի. վախճանւեց ու գնաց հանգչելու ամուսնու մօտ[7]: Եղան եւ ուրիշ զօրաւոր ու բարձր սրտեր. որ իրենց մնացած օրերը նւիրեցին իրենց հոգու խնամքին. այրութեան հանդերձը փոխանակելով հաւատաւորի սքեմով. կամ իր տնում ապրելով նոյն կեանքը. ինչպէս տեսանք մի խումբ մեր ազնւաշուք տիկիններից[8]: Աւելի ծանր էր պայմանը չքաւոր այրիների համար. զրկւած ոչ միայն կենակցից. այլ եւ հոգեպահիկ հացից. որոնց համար քրիստոնէական գթութիւնն «այրենոցներ» չինել տւեց Ս. Ներսէսը. ուր նրանք «հանգիստ եւ դարման» էին գտնում եւ որ յետոյ անագորոյն Պապը ջնջեց[9]: Եթէ ապագային հաստատւեցին ուրիշները. ինձ անծանօթ են մնում. մինչ անհատական օգնութիւնները բարեսէր անձերի կողմից անպակաս են եղել միշտ[10]:

5.- ***Ցիշատակներ***.- Սգաւորները միայն ողբալով չէին գոհանում. այլ ջանում էին զանազան բարի գործերով. մեկնող սիրելիների անունը կապւած պահել իրենց անւան հետ եւ միանգամայն նպաստել նրանց հոգեպէս: Մեր Ժ եւ ԺԱ դարերի մէջ տեսանք այդ նպատակով կառուցւած եկեղեցիներ ու վանքեր, դրամական ու կալւածական պարգեւներ նոյն սրբավայրերին, սպասներ ու գրքեր. ապահարկութիւններ. հիւրանոցներ եւ այլ հանրօգուտ շինութիւններ. որոնց որոշների նպատակն էլ նշանակեցինք եւ շատերն էլ զանց արեցինք համառօտութեան համար. որովհետեւ բոլորին էլ մէկ էր. օգուտ հոգիներին: Իսկ խաչքարեր ու կոտակներ պատարագների. հոգեւոր պաշտամունքների եւ ողորմութիւնների՝ ննջեցեալների հանգստի համար. սփռւած Հայաստանի աւերակների մէջ. թիւ չունեն:

1. ***Ոդր***. 22: — 2. ***Հրց***. 670: — 3. ***Արծ***. 302: — 4. ***Լստ***. 76: — 5. ***Ոդր***. 14: — 6. ***Տղ. Ոդր***. 569: — 7. ***Արծ***. 302, 257: — 8. ***Աստ***՝ 158-63, 167-175: — 9. ***Փաւս***. 77, 228. ***աստ***՝ 316: — 10. ***Աստ***՝ 208-9:

Նշանաւոր է մանաւանդ Դափեան Գրիգորի առատաձեռնութիւնն ի յիշատակ վաղամեռիկ ամուսնու՝ **Ասփայի**, որ իր պարգեւների հետ նկիրում է համարեա թէ ինքն իրեն իսկ[1]: Բիշկէն կամ Պեշգէն Օրբելեանը, «անուած սրբութեամբ», ինչպէս ասում է յիշատակագիրը, «մեծու հուն՝ պարոն **Վախախի**[2]», գրկի մէջ եւ վաղաժամուշամ կենակցի **Փաչայի**, կորստեան դառնութիւնը ճաշակած, որպէս սրտի սփոփանք 1338-ին «մեծ տարփանքով» գրել է տալիս «ոսկեծաղիկ բազմածախ անգին եւ անհամեմատ» մի Աւետարան, նախ «վարժումի եւ վայելքի ներհուն եւ սրբազան իր մտքերի համար» եւ իր միածնին եւ ապա ընծայում է այն «ի յիշատակ Քրիստոսի աղախնու գերեզմանին եւ յոյժ չքնաղագոյն Փաչային», որ հանգչում էր Տաթեւի գերեզմանատան մէջ «մատաղ հասակում»: Տեսանք սրանից աւելի գորովական յիշատակը **Մելքսեթի** տիկնոջ, իր սիրական դստեր **Կատայի** շիրմին նուիրած[3]: Այս օրինակները բաւական թող համարուեն, ըմբռնելու համար այն սիրալից հոգին, որ զանազան եղանակով գործում էր հայուհու մէջ կամ հայուհու հետ մահուան տխուր բեմի վրայ:

6.- **Դամբարաններ**.- Սրանք էին անշուշտ ամենքին յատուկ, խակական ու մնայուն յիշատակարանները, մեծագոյն խնամքով պատրաստուած ազնուականների, որոնք ունէին իրենց հայրենի սեփական տապանատներն էլ մի մենաստանի կամ եկեղեցու սուրբ հովանու ներքեւ եւ որտեղ այրերն ու կանայք գնում էին խնդրելու իրենց վերջին հանգիստը: Ո՞վ կարող էր թւել անթուութիւնն նրանց մահարձանների, որոնք մեծ մասամբ քանդուած ու ջնջուած էլ են: Իբր օրինակ յիշենք այդ շիրիմներից ամէնից պերճախօսն ու անեղծը Հաղբատի մէջ, որտեղ ննջում են Աղուանի իշխող Կիւրիկեան Բագրատունիներն եւ որի քարերի վրայ խօսում են նոյն տոհմի աւնական ու կանացի անունների մի խումբ[4]:

Տիկնայք են եղել, որ իրենց սիրտը կապել են որեւէ յատուկ դաստակերտի կամ նախասիրած մի տեղի հետ եւ այնտեղ էլ ուզել են հանգչեցնել իրենց նշխարները, յաւէտ անբաժան մնալու համար իրենց երկնած կամ սիրած այդ նուիրական յիշատակներից: Այսպէս **Կատրանիդէ** թագուհին իր շիրիմը շինել էր Անիի իր կերտած կաթողիկէի մօտ[5], բաժանուած երկու մասերից, արտաքինը փոքր մի մատուռ եւ ներքինը տապանատուն, իր եւ ամուսնու գերեզմանների չափով, ինչպէս գտաւ Մառը նրա աւերակների մէջ[6]: Պահլաւունի Ապլղարիպ մարզպանի[7] կինը՝ **Շուշանը**, ուզեց հանգչել իր դուստրի հետ Ծաղկոցաձորի այրերից մէկում, որտեղում գտնեց[8], ամուսնու ու զաւակների

---

1. **Անդ**՝ 40: — 2. **Անդ**՝ 228: — 3. **Հւք. յշա**: - 4. Երգ. 22-23: - 5. **Անդ**՝ 220: 6. **Ասպ** 13 ապր. 1917: — 7. **Անդ**՝ 223: — 8. **Ասպ**. 13 ապր. 1917:

տապանատնից հետո: Աշոտ Ողորմածի դուստր **Հռիփսիմէն**, թաղուած տեսանք Մաղարդայի ուխտին նուիրուած իր կառուցածքի մէջ[2]: Սիւնեաց տիկինը **Մարիամը**, դրել է՝ թերեւս ըստ իր կտակի Շողագայի իւրաշէն մենաստանում[3] եւ Վաչուտեան **Մամա խաթունը** Տեղերի իր դաստակերտ եկեղեցում[4]. Ուրիշ երեք տիկնայք՝ **Շուշանիկ** ու **Խորիշահ** կրօնաւորներն եւ **Մարիւնը** պանդխտներն՝ Երուսաղէմում, այնտեղ էլ վախճանւեցին ու թաղւեցին[5]:

Եւ նրանց դամբարանների պաղ քարերից որպիսի՜ ջերմ հառաչանքների արձագանքը հնչում է հողի մէջ պառկած կամ նրանց հողը թրջող սրտերի, որոնց բազմութիւնից կոչում եմ այստեղ որոշները միայն, որ խօսում են նոյն ինքն հայուհիների տապանների վրայ եւ կամ նրանց բերնից:

Նրանցից կան, որ պատմական ձեւով շարադրուած են եւ հնագոյն է յիշեալ երուսաղէմականների առաջինի խճանկարը յատակի վրայ. **«Այս դիր է երանելւոյ Շուշանկան մաւր Արտաւանայ, հոռի ԺԸ[6]»**, որի համառօտութեան մէջ ցոլանում է իր առաքինի կեանքը, ծանրութիւնը, եւ իշխանական պատիւն, որից հրաժեշտ էր տուել նախքան մահը:

Կարծես բողոքի ծածուկ մի ձայն է ամուսնու անիրաւութեան դէմ[7]. Սիւնեաց պատմիչի մօր տապանագիրն 1286 թւականից - գուցէ շարագրութիւնը որդու - այսպէս. **«Այս յարկ տապանի եւ դիր դամբարանի մեծահաւատ կնոջ Արուս խաթունի դստեր Սադունի եւ ամուսնու Տարսայիճ իշխանին[8]»**, որ շեշտում է նրա յանդիմանութեան դրժման համար:

Հայրենի մեծութիւնը քարոզւում է նոյն իշխանի երկրորդ կնոջ դամբարանի վրայ Նորվանի մէջ, որտեղ համարեա թէ դիտմամբ անտեսուած է կենակցի անունը **«Զկնի թւում թագազարմ արքայուհին է, Մինա խաթունն՝ դուստրը մեծ կողմնակալի Աղւանից Ջալալի[9]»** (1298):

Նոյն շունչը թրթռում է նաեւ Հետագայի մէջ. **«Աշխարհաշէն դշխոյափառ պարոն Թամթա խաթունը՝ մայր Բուրթելի յիշեցէք. ՉԿԱ[10] թւին»** (1312): Նոյն Տարսայիճի եղբօր Ելիկումի կինն էր, դուստրը «Գրիգոր Մարծանեանց, որ Մամիկոնեան ազգի համբաւն ունէր[11]», եւ չգիտենք ինչի՞ մէջ էր կայանում իր

1. *Շիր*. 53: — 2. *Աստ*՝ 196: — 3. *Աստ*՝ 231: — 4. *Աստ*՝ 225: — 5. *Աստ*՝ 168, 171, 327: — 6. *Լուսանկարէ*: — 7. *Աստ*՝ 50: — 8. *Սոփ*. 235: — 9. *Ազ. Հնդ*. 1916, 88 *տատ*՝ 103: — 10. *Սոփ*. 192: — 11. *Օրբ*. 292. *տատ*՝ 8:

աշխարհաշինութիւնը, որի հետքը կամ յիշատակը չգտայ եւ այն ինչ որ կան միայնակ չեն արդարացնում այդ տիտղոսը։

Իր կրկնակ անունները, հայրենի փառքն ու կենակցի փայլուն անունը[1] ցուցադրում է Խաչէնի ծանօթ տիկինն այս տողերիս մէջ Հաղբատում. *«Մամքան Շուշանիկն է, քոյրը՝ Հաղբատի Զարեհ իշխանի, թոռն՝ Բաղաց թագաւորի, Խաչէնի Ջալալ իշխանի կինը[2]»։*

Հակադրութիւն է երկու հզօր անունների եւ նրանց փափկասուն հարազատի բնորած կենցաղի[3] մէջ՝ Հետեւեալն Սանահինում. *«Ծգնաւորը պարոն Նրջհիան է[4], պարոններ Զաքարէի եւ Իւանէի[5] քոյրը»։*

Բնութեան երգը ցաւի հետ խառնուում է մի ուրիշ տապանագրի մէջ՝ Մաքիկ գրչից. *«Այս է հանգիստ գեղեցիկ ծնունդ ծաղկածին ծաղկափթիթ Աննա խաթունի փոխեց ի Քս. ՉԻԶ ամին[6]»*։ Մեզ աւելի ծանօթ քան անծանօթ մի ազատի դստրիկն է անչուշտ, որ հանգչում է Սիւնեաց Լոր գիւղի մէջ՝ 1277 թուականից։

Ընդհակառակն պարզութիւն է բուրում այս տողից. «*Թվ. ՉՁԲ. Այս է հանգիստ Խաւչին, դուստր Դոփենց պարոն Վահրամի[7]»* (Եղեգիս Վայոց ձորի)։ Ցիշատակր թւում է մի կոկոնի, որ դեռ չփթթած խամրել է (1333 թւին)։ Բայց Դոփեանց անունն իսկ մեծ էր այդտեղ եւ անկարօտ ուրիշ բանի։

Սա միւս տապանագրի մի մասի մէջ խօսում է նոյն ինքն, ննջեցեալը տոհմային մեծութեան հետ զգացնելով իր վիշտը, վաղ բաժանուելու համար արեւից ու սիրական զաւակներից. *«Այս է հանգիստը Սոփիայի Քրիստոսի աղախնու, կնոջ Վահրամի Պահլաւունի իշխանաց իշխանի, դստեր Տիգրանի Հայոց մարզպանի՝ տեառն Անձեւացեաց մեծն Վասպուրականի: Կիսաւրեա առ Աստուած փոխեցա եւ թողի զաւակս իմ արտում. աղաչեմ յիշեցէք ինձ, եւ Աստուած ձեզ ողորմի. Թ. ՆԿԴ[8]»* (1015-ին, Մարմաշէնի մէջ)։ Ռազմագոռ ամուսնուց բաժանուելը իրեն չի մտահոգել, ինչպէս մատղաշ զաւակներից, որոնց տխրամած ու թաց բիբերն իր ետեւ սեւեռած էր թողնում։

Մի ուրիշը Խծկոնի մէջ, որ գուցէ մեզ ծանօթ անուններից մէկն է, հոգու աչքերը դարձրած տէրունական զոհին, սպասում է նրան, որ պիտի գայ ցրելու մահուան խաւարը. *«Ես Թամարս, որ կամս առաջի սուրբ զենարանիս Աստուծոյ եւ սպասեմ գալստեան տեառն[9]»։*

---

1. *Աստ*՝ 103, 227։ — 2. *Երզ*. 54. *աստ*՝ 161։ — 3. *Աստ*՝ 171։ — 4. *Վրիպակ է «պատրոնուհի Նանէ» ընթերցւածն ի Հյպ*. 444։ — 5. *ՄՆՀ*. 30-31։ — 6. *Ազ. Հնդ*. 1897, 162։ — 7. *Անդ*՝ 1916, 65. *աստ*՝ 33։
8. *Շիր*. 149։ — 9. *Ազ. Հնդ*. 1916, 130։

Տապանագրերից որոշներն աղօթական ձեւ ունեն. օրինակ. **«Քրիստոս Աստուած, ողորմեա Շուշանին, քո աղախնուն[1]»**, որ կենակիցն էր Ապլղարիպ մարզպանի[2], թաղուած Մագկոցաձորի շուշանների բոյրերի մէջ:

Տաղաչափեալ եւ աւելի ճոխ է հետեւեալ մաղթողականը Տարսոնի մէջ. **«Որ վասն անչափ սիրոյ քոյին - Բանդ ի կուսէն առեր մարմին, - Աղաչանաւք Աստուածածնին - Թող զյանցանս զԱլիծին, - Որ եւ հանգեաւ ի մեծ թուին - Չկ հնգին. - Յորժամ գայցես յաշխարհ կրկին՝ - Յարո զսա փառաւք քոյին. ամէն[3]»**: Այդ թւականը (1316) չի յարմարւում մեզ ծանօթ Ալիծներին, բացի տարսոնացի կոյսից, որ անթւական է, եւ յայտնի մի դէմք էր դարձել[4]. գուցէ ինքն է այդտեղ:

Այն անունները, որ իրենց ընդարձակ ու հանրածանօթ գործունէութեամբ եւ կամ արքայական տոհմով յայտնի էին ամենին, կամ գոնէ տեղի վրայ, պարզապէս դրոշմւում էին քարերի երեսին, առանց որեւէ յաւելածի կամ բացատրութեան. նրանք իրենք իրենց բացատրում էին: Օրինակ՝ **«Մամա խաթունն է[5]»**, կամ աւելի կարճերը - **«Նանա.- Ռուսուդան.- Բաւրինա.- Փուրթուխան.- Թամար Թագուհի[6]»**, անդամներ Կիւրիկեան տանը[7]:

Վիշտ, կարօտ, հառաչանք, արտասուք՝ ամոքւած հաւատքի բալասանով: Ահա ինչ որ բխում են հայուհու դամբանից եւ մեր առջեւ նկարում են այս կենցաղի հրապոյրների անկայունութիւնն եւ միանգամայն նրանց պահպանութեան անզօր բաղձանքն ու ճիգն, որ յատուկ է մարմնապատ այս բնութեան ու մնալու է մինչեւ նրա նիւթեղէնի աննիւթացման ցանկալի վայրկեանը:

## ԳԼՈՒԽ ԺԸ

### Օտար պալատների մէջ

Սկսած վաղագոյն ժամանակներից, աշխարհավար քաղաքականութեան պահանջներից մէկն է եղել, ամուսնական կապեր հաստատել օտար արքայական կամ իշխանական հզօր տոհմերի հետ, եւ այդպէս բարեկամութիւն եւ թիկունք շահել: Մեր նախնիքն եւս զանց չէին արել այդ օգտակար միջոցը, որ տեսնելու ենք հնուց գործադրւած եւ աւելի յայտնապէս Արշակունեաց օրով՝ պարթեւների ու պարսիկների

1. *Անդ*՝ 87: 2. *Աստ*՝ 351· — 3. ***Մխ***. 272: — 4. ***Աստ***՝ 253: — 5. ***Աստ***՝ 225: — 6. ***Երզ***. 22: — 7. ***Աստ***՝ 56, 221-22:

հետ. Բագրատունեաց ժամանակ՝ արաբների եւ աւելի վերջ թաթարների հետ. երբեմն յոյների. իսկ ընդարձակագոյն չափով՝ արեւմուտքի. երբ խաչակրութեան ասպետները Կիլիկեան Հայաստանում. և նրանց մեջ Անտիոքում. Եդեսիայում. Ցոպքում եւ այլ կողմեր. հիմնելով արքայական եւ իշխանական գահեր եւ դիրքեր եւ օգտակարագոյն ընծայելով իրենց կցորդութիւնները հայերի հետ:

Այդ խնամիութիւններն, որոնցից միայն յիշուածները գիտենք եւ որոշները նախապէս ակնարկեցինք. մի տեսակն էին հայ ազնուականների միջեւ կատարուածին. որ նկատեցինք[1]. բայց աւելի բարդ. քան որին հայուհին այնտեղ էր գնում բնակելու այլալեզու. այլարարոյ եւ երբեմն այլակրօն յարկերի մէջ. ուր ստիպուած էր յարմարուելու միջավայրի հետ. որով դժուարանում էր իր դերը:

Փոխադարձաբար օտարուհիներն եւս մտնում էին երբեմն հայ պալատներից ներս. որոնցից միասին բերելով իրենց եղծ բարքերն էլ կամ նեղութիւն պատճառելով: Այսպէս **Սաթենիկը** դուստրն Ալանաց արքայի. որ իր գեղեցկութեամբ չահել էր Բ Արտաշիսի արքունիքը[2]. հայ վիպասանութեանը նիւթ տուեց - եթէ այն չկերտեց իր անպարկեշտ զգացումն առ Արգաւանը[3]: Մեծն Տիգրանն իրեն կին ունէր Պոնտոսի Միհրդատ արքայի դուստրը՝ **Կլէոպատրային**[4]. եւ աները պաշտպանելու համար հռոմայեցւոց դէմ՝ իր գահը ցնցեց[5]: Իր համանուն որդին փեսայացաւ պարթեւների Փրայատ Գ թագաւորին[6], եւ նրան ապաւինած հօրը դէմ ապստամբութեան դրօշ պարզեց[7], եւ աւարտեց տխուր վախճանով[8]:

Սասանեան Գ Շապուհն իր քրոջը՝ **Զրուանդուխտին**, հարսնացրեց մեր Գ Խոսրովին եւ ճեղքեց Հայոց թագաւորութիւնը[9]: **Որմիզդուխտը**, Բ Շապուհի քոյրը. կնութեան տուեց ուրացող Մամիկոնեան Վահանին, կամակից եղաւ նրա դաւերին հայ հայրենեաց դէմ եւ միասին պատժեցին մահուամբ իրենց իսկ զաւակի՝ Սամուէլի[10]. ձեռքով: Ընդհակառակն **Արուս** խաթունը, այլազգի, բարեպաշտ ու տառապեալ ամուսին հանդիսացաւ Օրբելեան Տարսայիճին[11]: Սմբատ Ա Բագրատունին իր Մուշեղ որդուն կին բերեց ափխազների Դատա արքայի դստերը (քրիստոնեայ). նրա երկրից մի բաժին գրաւելու նպատակով, ինչ որ սակայն զէնքով միայն յաջողեց կատարելու[12]: Եւ Յովհաննէս Սմբատ արքան ամուսնացաւ Կոստանդնուպոլսի Ռոմանոս Արգիրոս կայսեր եղբօր դստեր հետ[13]:

---

1. Աստ՝ Գ, 11, 12: — 2. Աստ՝ 34: — 3. Աստ՝ 371: Խոր. Ա, լ. Բ, խթ: — 4. Աստ՝ 111: 5. Պլտ. Գ, 556 եւն: — 6. Աստ՝ 322: — 7. Սնտ. Բ, 474: — 8. Աստ՝ 322: — 9. Փաւս. 261-62: 10. Նոյն՝ 160, 179. աստ՝ 331: - - 11. Աստ՝ 50: — 12. Շպհ. 80-83: — 13. Զմչ. Բ, 910:

կրօնական լայն թմբռնողութիւնը, որ նախ Հայրապետական աթոռն եւ ապա Կիլիկիային մօտեցրեց արեւմտեան աշխարհին[1], աւելի լայնօրէն բացեց Հայուհիների առջեւ նրանց արքունիքների եւ նրանց դուստրերի առջեւ մեր պալատների դռները՝ եւ Թուրինեաններից սեմից ներս մտան բազմաթիւ ու բազձալի հարսներ, տաւն եւրոպացի ոփկնայք կամ թագուհիներ եւ երեք էլ հայ իշխանական տների մէջ, որոնց ցուցակը կազմել է Հ. Ալիշանը[2]: Նրանք բերեցին իրենց վարքի նրբութիւնները, կրօնասիրութիւնը, երբեմն էլ ախտերն եւ նպաստեցին Կիլիկիայի Հայոց սովորութիւնների եւրոպականացմանը, որին ակնարկում է Լամբրոնացին Լեւոնին գրած թղթի մէջ[3]: Եւ իրենց երակների մէջ հայկականի հետ եւրոպական արիւնն էլ կրում էին մեր հայածին իշխողներից՝ Թորոս Բ-ն եւ եղբայրներն՝ Ստեփանէն ու Մլեհը, Զապէլ թագուհին ու Գ Լեւոն արքան[4]:

Բայց թէ այս եւ թէ նախորդ օտարուհիներն, ինչ տոհմից ու կրօնից էլ լինէին, իրենց խառնւածքով ու դաստիարակութեամբ կապ չունէին մեր ազգի հետ, պարզ բառով՝ հայեր չէին: Ուրեմն աւելորդ եմ համարում նրանցով զբաղւելու, բայց եթէ պատահարար, որովհետեւ մեր աշխատութեան ծրագրից դուրս են մնում, բացառութիւն կազմելով աղւանուհիներն, ինչպէս մի ուրիշ տեղ ասացինք[5]:

Իսկ մեր հայուհիներն ուր որ գնացին, իրենց ազգային նկարագիրը միասին տարան եւ նրանով ապրեցին ու գործեցին, յաճախ օգտակար կերպով ծառայելով նաեւ իրենց հայրենի աշխարհին: Այս պատճառով յօժարութեամբ հետեւում էինք նրանց, նկատելու համար իրենց գործունէութիւնն Հայաստանի սահմաններից դուրս եւս, ուր հրաւիրեցին իրենց կամ մեր աշխարհի չահը, կամ իրենց համբաւաւոր բնական ու բարոյական ձիրքերը[6]: Այո, մեծապէս ուշագրաւ է, որ օտար իշխող տոհմերն իրենց աչքերը դարձնէին հայ ազգի դուստրերի վրայ եւ հրապուրւած նրանց վայելչութիւնով, կամ նրանց հարց ազնւականութիւնից ու զօրութիւնից, տանէին նրանցով զարդարէին իրենց յարկերը: Դրանցից ինձ ծանօթ են յիսուն եւ ութն անձեր: Երեսուն եւ եօթն հարսնացել են քրիստոնեաներին եւ քսան եւ մէկն այլազգիներին: Ջհաչւելով նրանց զաւակներն, որոնք թէպէտ բաժին ունէին հայութիւնից եւ իրենց մայրենի դաստիարակութիւնից, որ որոշ կարեւորութիւն ունէր նրանց կեանքում, բայց հայրերի տոհմին էին պատկանում: Այս պատճառով էլ մենք յիշելու ենք նրանց, առանց զբաղւելու նրանց կենսագրութեամբ, բայց միայն ուր հարկաւոր է:

---

1 Աստ՝ 290-91. 2 Մխ 371. -3. Լմբ. Թղթ. 239-41: — 4. Աստ՝ 66-67, 46, 69: — 5. Աստ՝ 307: -- 6. Աստ՝ 133.

Մեր այս վերջին գլխի մէջ չենք կարող նախորդների ոճին հետեւել. այդ հայուհիների նկարագրական տեղեկութիւնները բաժանելով զանազան նիւթերի: Որովհետեւ օտար արքունիքներում նրանք նախ փոքրաթիւ էին, ուստի չեն կարող նկարագրական բաւական պաշար հայթայթել մեզ ըստ նիւթերի: Եւ երկրորդ՝ նրանց համար կարելի չէր ապրել ազգային կենցաղով, այլ ինչպէս ասացի, պիտի յարմարուէին իւրաքանչիւրն իր յատուկ վայրի հետ, որով իրար իսկ աննման ընթացքով ու բարքերով: Սրա համար ստիպուած ենք նրանց իւրաքանչիւրի կենսագրութիւնն անջատաբար գրել, որոշներինը համառօտ եւ որոշներինն ընդարձակ, ըստ չափի պատմական տեղեկութիւնների, որ հասել է մեզ: Պարզապէս այս գլխում հաւաքական նիւթ համարելու ենք՝ ***օտար պալատների մէջ*** գտնուելու եւ գործելու պարագան:

Եւ խօսելու ենք նախ քրիստոնեաներին գնացած հարսերի մասին, որոնց կեանքն աւելի ճոխ եւ ուշագրաւ է, նրանց ապրած միջավայրն ինքնին ընծայելով նրանց գործելու եւ փայլելու ազատութիւնն եւ դիւրութիւնը, թէպէտ ոչ միշտ այն յաջողութիւնն ու երջանկութիւնն էլ, որ աւելի դիւրին գտնում էին հայրենի աշխարհի մէջ: Ապա յիշատակելու ենք հեթանոսներին հարսնացածներն, որոնց կենցաղը շատ անձուկ եւ աղքատ եղաւ՝ գրեթէ ինչպէս նոյն տոհմերին յատուկ կանանցն էր[1], զուրկ լինելով գործունէութեան այն զանազան ասպարէզներից, որ շնորհում էր իրենց քոյրերին հայ աշխարհն ու քաղաքակրթութիւնը, կամ միւս քրիստոնեայ երկրներ իրենց չափով: Աւելացնենք եւս, որ թէ մէկ եւ թէ միւս դասակարգի հայուհիների ոմանց այնտեղ անցկացրած կեանքն աւելի տառապանք եղաւ քան վայելք:

## Ա.- ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ՅԱՐԿԵՐԻ ՏԱԿ

**Ա.- Բիւզանդիոնի գահի վրայ.-** Սկսում ենք հնագոյն ու պայծառագոյն արքունիքից, որին մեր ազգն ընծայեց եօթը կայսերուհի եւ որոնց առաջին վեցը թէպէտ ծագմամբ ու հայրենիքով հայեր,- այն տոհմերից, որոնք արաբական բռնութիւնից փախել ու յարել էին կայսերութեան կամ հաստատուել նրա սահմանների մէջ,- բայց յաճախ մօր կողմից, ծննդավայրով, դաստիարակութեամբ, որոշները թերեւս լեզուով ու բարքերով էլ յունացած էին աւելի կամ պակաս չափով եւ հայկական զուտ նկարագիրը չէր, որ տարան կայսերական գահի վրայ: Յիշում ենք նրանց մեր ազգի զաւակ եւ պատմութեան առջեւ մեր ցեղի ներկայացուցիչ ծանուցուած լինելու համար:

---

1. *Յառաջ.* 1 էջ:

1.- Առաջին հայ կայսրուհին եղաւ **Մարիամը**։ Կոստանդին Զ. հազիւ ութեւտասնամեայ մի պատանի. 788-ին արդէն կայսր էր այնտեղ. յաջորդելով իր հօրն եւ նշանուած մեծն Կարոլոսի դստեր՝ Ռոտրուդայի հետ. ու պսակումը մօտ։ Իր մայրն Իրենէն. իշխանասէր եւ որդու վրայ տիրապետող մի կին. չուզեց. որ զաւակն այդ ամուսնութեամբ քաղաքականապէս զօրանար եւ լուծեց նշանը։ Թէոփանէսը պատուիրակ յղեց հիւսիսային Հայաստանի կողմերը եւ Փիլարետ կոչուած ճոխ ու բարեգործ մի հայի թոռը՝ Մարիամը, զարմանալի գեղեցկութեամբ. բերել տուեց ու բռնի պսակեց որդու հետ։ Կոստանդինը հպատակուեց։ Մի զաւակ էլ ունեցաւ **Եւփրոսինէ** անունով. բայց սիրտը չկապուեց բռնադատեալ կենակցի հետ։

Իրենէի դաժան վարմունքն որդու հետ. ապստամբութիւն առաջ բերեց Հայաստանի կայսերական բանակի եւ այլոց մէջ. նոյն կայսրուհու դէմ. որ հարկադրուեց մեկուսանալ մի պահ. յետոյ դարձեալ հաշտուեց որդու հետ եւ վերստացաւ նախկին պատիւը։ Կոստանդին ինքն էլ սկսեց տարապայման խստութիւններ գործադրել. որով ոչ սիրելի դարձաւ հպատակներին. մանաւանդ 792-ի բուլղարական ձախորդ պատերազմից յետոյ։ Իր ազգականների կողմից դաւ գործադրուեց եւ ըմբոստութիւն հայկական բանակից, որոնք չարաչար պատժուեցին։ Իրենէն աշխատում էր նոյնպէս ատելի ընծայել զաւակը, իր դիրքն ամրացնելու նպատակով։

Երիտասարդ կայսրը սաստիկ սիրահարուեց մօր մի նաժիշտին՝ Թէոդոտէին. եւ նրան առնելու համար որոշեց արձակել Մարիամին, որ քաջալերեց իր կախարդ մայրն էլ։ Սրա համար մի պատրուակ էր պէտք եւ լուր տարածեցին՝ թէ հայուհին փորձել էր թունաւորել ամուսնուն։ Կայսրը խուզեց նրա վարսերը եւ փակեց մի կուսանոցի մէջ (795-ին). Այսպէս վերջանում էր Մարիամի կայսերական վրդովեալ փառքը. որը միայն եօթ տարի տեւեց. մի արքունիքի մէջ. ուր իր առաքինութիւնն բնաւ յարգ չունէր։ Կոստանդինը ձեռնարկեց ամուսնանալ Թէոդոտէի հետ, որի դէմ ըմբոստացան Տարասիոս պատրիարքն ու կղերը։ Բայց նա արհամարհեց նրանց եւ հասաւ նպատակին։ Պատրիարքը լռեց եւ միւսները վերջացրին բանտի կամ տարագրութեան մէջ։ Այս ամէնը մի նոր զէնք եղաւ չարասիրտ մօր ձեռքին, որ երկու տարի յետոյ դաւադիր բարձր զօրականներին կաշառեց. ձերբակալեց եւ որդուն ստիպեց Կոստանդնուպոլիս վերադառնալ. երբ փախչում էր հրամայեց քնած ժամանակ փորել տալ նրա աչքերը։ Այսպէս էր Կոստանդինը քաւում իր անիրաւութիւնը հայուհու դէմ։ Իսկ մայրը հինգ տարի միահեծան կառավարելուց յետոյ տապալուեց դաւադրութեամբ եւ իր յաջորդին՝ Նիկեփորի հրամանով գնաց ապաշխարելու չարութիւնները Լեսբոսի դառն

միայնութեան մէջ ուր եւ մահացաւ ու որդերի կարգը դասւեց բարեպաշտ յոյների կողմից[1].

2.- **Թէոդոսիա**, երկրորդ հայուհին, դուստրն էր արքունի գանձապետ Կամսարական Արշաւիրի, եւ ամուսնացած Արծրունի Լեւոն իշխանի հետ, որ Վարդի որդին էր, հայկական բանակի զօրավարի եւ սպարապետ կայսերական արեւելեան բանակի եւ որին Թէոդոսիան պարգեւեց չորս կորիւններ՝ Սմբատ, Բարսեղ, Գրիգոր ու Թադէոս: Կայսերական գահի վրայ նստում էր յիշեալ Նիկեփորն, ընչաքաղց եւ յոռի նկարագրով, որի օրինակին հետեւեց Լեւոնն էլ իր վարած նահանգի մէջ, նւիրւելով գրօսանքների ու հեշտութեան: Սարակինոսները քաջալերւած յարձակւեցին եւ նրան փախուստի մատնեցին, որին որպէս պատիժ, կայսրը կանչելով նրան աքսորեց: 811-ին բուլղարների դէմ մարտի մէջ ընկաւ Նիկեփորն եւ իր յաջորդը՝ Միքայէլ Հռանգաբէն, աքսորեալին վերադարձրեց եւ նորից հաստատեց նախկին պաշտօնին: Բայց նա ապերախտ գտնւեց իր բարերարի հանդէպ: Նրա վստահութիւնն արդարացնելուց յետոյ, 812-ի Սարակինոսների դէմ պատերազմի մէջ, յաջորդ տարին բուլղարական մարտում նենգութեամբ նպաստեց թշնամիների յաղթանակին եւ ապա Միքայէլի դէմ գրգռեց իր զօրաբանակը, որ իրեն կայսր հռչակեց եւ իսկոյն յարձակւեց Բիւզանդիոնի վրայ, ուր Միքայէլը հրաժարւեց գահից՝ խափանելու համար ներքին պատերազմը. մազերը խուզեց ու մտաւ մի մենաստան: Հետեւեալ օրը Լեւոնն ընդունեց կայսերական պսակը Ս. Սոփիայի մէջ եւ Արշաւիրի դուստրը դառնում էր կայսրուհի: Յետոյ իր մէկ նենգաւոր ու ձախող դաւով Բուլղարիայի Կրում արքայի կեանքի դէմ անբաւ վնասների եւ աւերումների պատճառ եղաւ Լեւոնն եւ որոնց վերջ դրեց անողոք Բուլղարինի յանկարծահաս մահը միայն, որին յաջորդեցին երկու արիւնալից պատերազմներ եւս պարտութեամբ բուլղարացիների: Ապա եկաւ երկար անդորրութեան մի շրջան, որ կայսրին մղեց պատկերների պաշտամունքի վէճի մէջ, ինքը պատկերամարտ կատարեց, հրաժարեցնել տալով ուղղափառ Նիկեփոր պատրիարքին եւ ուրիշ բռնութիւններ գործադրելով:

Բացի այդ թերութիւններից՝ պատմութիւնը մեր Արծրունի կայսեր վարչութեանը շատ է գովում: Բայց անդորր մահ իրեն պահւած չէր: Նրան գահ բարձրանալուն մեծապէս նպաստել էր Միքայէլ Թոթովն եւ նա մեծ պատիւների էր հասել իր կողմից: Յանդուգն եւ անդուռ բերան, անդադար կսկծեցնում էր կայսրին ու կայսրուհուն: Լեւոնը նրան զգացնել տւեց թէ պարտական էր պատւել իրեն, որ գիտէր

1. Լըբոյ, ԺԲ, գ. 66. Հմնգ. ԺԲ, 583. Ի, 938:

եւ պատժել: Նրան արեւելք ուղարկեց քննելու այնտեղի զօրագնդերը: Բայց կասկածելով ապստամբութիւնից, յետ կանչեց, կշտամբեց եւ յոյսերի հակառութեանն ենթարկեց: Իր դաւադրութեան փաստեր ի յայտ եկան եւ ողջ այրելու դատապարտուեց: Ծննդեան նախորդ օրն էր: Միքայէլը մահւան էր տարւում եւ կայսրը նրան էր հետեւում: Թէոդոսիան իմացաւ, տագնապած հասաւ, ամուսնու ոտքն ընկաւ ու գոչեց. «Սպասի՛ր իշխան, վաղը ընդունելու ես Փրկչի մարմինն եւ արիւնը: Այսպիսի տմարդի տեսարանո՛վ ես պատրաստւում դրան: Յարգի՛ր այս սուրբ օրը, մի՛ պղծիր այն այդպիսի սարսափելի տանջանքով: Եթէ Միքայէլը յանցաւոր է, ներել չեմ խնդրում, յապաղիր իր պատուհասն եւ թող մի թշուառի աղաղակները մեր ուրախութեան երգերի սոսկալի նախերգանքը չլինեն»: Կայսրը յուզւած նրա խօսքերից եւ արցունքից յետաձգեց սպանումն ասելով կնոջը. «Ահա կատարում եմ կամքդ: Դու հոգուս փրկութիւնն ես խորհում, բայց կեանքս վտանգում ես: Գուցէ այս խղճահարութիւնդ աղէտաբեր է լինելու քեզ ու զաւակներիդ»:

Եւ այդպէս էլ եղաւ: Միքայէլի դաւակիցները մեծ տօնի յաջորդ առաւօտ վաղ խառնւած կղերական դասի մէջ, նրանց տարազով, պալատի մատուռը մտան, ուր ներկայ էր կայսրը եւ յանկարծ իրենց դաշոյններն հանած՝ յարձակւեցին նրա վրայ: Պաշտպանեց անձն որքան կարողացաւ ու խողխողւեց եւ իսկոյն Միքայէլը կայսր հռչակւեց: Թէոդոսիան իր չորս զաւակներով ու կայսեր դիակի հետ մի նաւակ դրւեց ու տարւեցին Պրոտէ կղզին: Որդիները ներքինացւեցին, որի ցաւից կրտսերը՝ Թէոդոսը մեռաւ, եւ միւսներն իրենց մօր հետ փակւեցին մի մենաստանում[1]: Արշաւիրի դստեր արեւը մայր էր մտնում:

3.- Տեսանք վերոյիշեալ հայազգի Մարիամ կայսրուհու դուստր **Եփրոսինէին**, որ նրա պէս րանի հաւատաւոր եղաւ: Ապա երկրորդ ամուսինը յիշեալ Միքայէլ Թոթովին եւ նրա մահից յետոյ, վարիչ ու խնամակալ նրա Թէոփիլոս որդուն ու յաջորդին: Սա արդարասէր մի երիտասարդ, հազիւ գահ բարձրացած, առաջին գործն եղաւ, պատժել Լեւոն կայսրի դաւադիրներին մահւամբ, անունկնդիր նրանց բողոքին՝ թէ ի նպաստ իր հօր, ուստի եւ իրեն իսկ գործել էին եւ իր փառասէր մօրացուին դարձրեց իր նախկին վանական կեանքին: Վիպական մի ձեւ է տւել իր ամուսնութեան: Մօրացուն ուզելով նրան մի հարս գտնել, թեկնածուների մի բազմութիւն հաւաքեց պալատի մէջ՝ կայսերութեան գեղեցկագոյն օրիորդներից, ընտրութիւնը թողնելով Թէոփիլին, որ նախամեծար համարեց Իկասիային եւ սրա անհաճոյ մէկ խօսքի վրայ մտափոխւելով

1 Լբոյ, ԺԲ, գ. 67. ԺԳ, գ. 68. Հմնգ. ԻԲ, 29. Վրդ. 77:

ընտրեց **Թէոդորային**: Նա ծնուել էր Պափլագոնիայում, Սեւ ծովի եզերքում (կայսրութեան սահմաններում), եւ ըստ յոյն պատմիչների, դուստրն էր Մարինոսի եւ եղբօրդուստրը ժամանակակից անուանի Մանուէլ զօրավարի, որ Վարդան է կոչում «Մամիկոնեան»[1]: Ամուսնութիւնն օրհնեց արքունիքի մատուռի մէջ եւ կայսրուհու պսակն ընդունեց Թէոփիլոսի ձեռքից: Ապա մեծ թափօրով գնացին դէպի Ս. Սոփիա եւ գեղեցիկ պարգեւներ բաշխեցին պատրիարքին, կղերին ու բոլոր ծերակուտին:

Առաքինազարդ մի կայսրուհի եղաւ Թէոդորան, շնորհիւ իր բարեպաշտ մօրից՝ **Թէոկտիստէից** ստացած դաստիարակութեանը: Նա չմոռացաւ իր տոհմակիցներին էլ եւ նրանց իր շուրջը հաւաքեց մեծամեծ պատիւներով ու պաշտօններով: Մանուէլ հօրեղբայրը բռնեց զօրավարութեան սուրը: Մայրը նշանակւեց սենեկապետ տիկին դշխուհու: Վարդ եղբայրը **Կեսարի** աստիճան ընդունեց եւ Պետրոնասը եղաւ պատրիկ ու հրամանատար կայսերական պահակների: Իսկ ինքը մեծ խնամքով դաստիարակեց իր հինգ դուստրերին՝ Թեկղիին, Աննային, Անաստասիային, Պուլքերիային ու Մարիամին, հեռու պահելով պատկերամարտերի մոլութիւնից, որից վարակւած էր իրենց հայրը, թէեւ այդուհանդերձ ինքը պատկերապաշտ էր, սիրող ուղղութեան ու խստարարոյ: Կայսրուհին մի օր մեծ նաւով վաճառք էր բերել տուել իր հաշւին: Թէոփիլոսն իմացաւ, յոյժ սիրելով հանդերձ, նաւն ամբողջ վաճառով այրել տւեց, անարժան համարելով այդ գործը դշխուհուն:

Թէոփիլոսն իշխեց տասներկու տարի, բաւական վրդովեալ վարչութեամբ սարակինեան պատերազմների պատճառով, որոնց մերթ յաղթեց ու մերթ պարտւեց: Իր յաղթանակները չահեցնող եղաւ Թէոդորայի հօեղբայրը՝ Մանուէլը, Թէոփոբոսի հետ: Բայց հայ զօրավարը քիչ մնաց կայսրի անտեղի կասկածի զոհ դառնալ, ինքն որ 835-ի ճակատամարտի մէջ փրկել էր նրա կեանքը, եթէ չփախչէր տէրութիւնից, ուր յետոյ նորից հրաւիրւեց իր զգաստացած իշխանի կողմից, եւ 838-ին երկրորդ անգամ ազատեց նրան մահից, որ վերջը ջղային զառանցքի տկարութեան ենթարկւեց 842-ին: Եւ երբ մօտ էր աւանդել հոգին, բարեպաշտ Թէոդորան նրան համբուրել տւեց Փրկչի եւ Ս. Կոյսի պատկերները, որոնց հակառակորդ էր եղել: Մեռաւ եւ իր կտակով կայսրուհին պետութեան վարիչ եղաւ, մինչեւ իր եռամեայ Միքայէլ որդու արբունքի հասնելը: Իրեն խորհրդական ունեցաւ Թէոկտիստոսը, Մանուէլ ու Վարդ եղբայրները:

Բանակն ու ժողովուրդն ուզեցին գահը Մանուէլին տալ, որ առաքինի զօրավարը մերժեց եւ վարչութիւնը թողեց իր եղբօր դուստրին, որը յաջողեց իմաստուն

---

1. Վրդ. 77:

մի առաջնորդ հանդիսանայ. Հետեւող ու նախանձայոյզ ուղղափառ հաւատքի, եկեղեցականների ու ծերակուտականների մի ժողով գումարեց. պատկերների պաշտպան ու միանգամայն հակառակ կողմերից, առանց Յովհաննէս պատրիարքին, որ կատաղի թշնամի էր պատկերներին: Ազատօրէն վիճեցին խնդրի մասին. հակառակ փաստերը հերքուեցին, ճշմարտութիւնն ընդունուեց բոլորի կողմից: Պատրիարքը փակուեց մի մենաստանում ապաշխարելու եւ նրա տեղը Մեթոդիոսը նստեց: Այսպէս Թէոդորան թաղում էր մի աղանդ, որ հարիւր քսան տարի ապրել էր եւ եկեղեցուն ու կայսրութեանը վրդովմունք էր պատճառել: Փառասէր եւ ապիկար Թէոկտիստոսի դրդած ու վարած պատերազմներն Ապագիայի, Կրետէի եւ Ասիայի մէջ ձախողուեցին. բայց Սկլաւոնցիները, հաստատուած Պեղոպոնէսի մէջ, յաջողութեամբ նուաճուեցին: Խազիրցիները խնդրեցին կայսրուհու օժանդակութիւնը եւ ընդունեցին քրիստոնէական կրօնը Կիւրեղիի միջոցով (847-ին), որ երկրորդ անգամ քարոզիչ գնաց բուլգարների համար. նրանց Բոգորիս արքայի խնդրանքով, որի տենչանքը յարձակուելու կայսրութեան սահմանների վրայ, Թէոդորան իմաստութեամբ խափանեց եւ նպաստեց նրան եւ ազգին ընդունելու Աւետարանի լոյսը:

Միքայէլ կայսրն 854-ին արդէն յիսուն տարեկան, անձնատուր էր եղել չուայտութեան, - որ ստացաւ արբշիռ մականունը - ականջը խցելով մօր ու խնամակալների խրատների դէմ: Սիրահարուած էր արքունի գանձապետի դստեր՝ Եւդոքսեային, բայց մօր ստիպման ներքոյ ամուսնացաւ ուրիշ համանուն մի օրիորդի հետ, սակայն առանց բաժանուելով նախորդից: Իր ցոփութիւնը գայթագղութեամբ եւ աղմուկով լցրեց արքունիքը եւ նենգաւորներն ասպարէզ գտան պղտոր ջրում որսալու: Վարդը, որ ցանկանում էր կայսերական գահը, ձեռնարկեց ջնջել նախ նրա պաշտպաններին: Սկսեց առաջին անգամ դաւել իր հօրեղբօր դէմ, ստիպելով խոհական իշխանը հեռանալ պալատից իր տան մէջ, որը յետոյ նա մենաստանի վերածեց եւ այնտեղ էլ մահացաւ բարեպաշտութեամբ: Իսկ Վարդը չարունակեց չարութիւնը, սպանելով Թէոկտիստին: Թէոդորան դառնացած եղբօր դէմ, գնաց յանդիմանութեան շանթեր թափեց նրա գլխին: Եւ զգալով որ իր դերը վերջացել էր, կանխեց հրաժարուելով խնամակալութիւնից եւ պալատից մեկնեց, ի խնդութիւն չարագործի եւ իր իսկ անարժան որդու, քոյրերից երեքին նրա մօտ ուղարկեց, իսկ մօր ամենասիրելիին՝ Պուլքերիային, փակել տուեց մի կուսանոցում, դառնացնելու համար ծնողին: Յետոյ փորձեց մօրն եւ միւս քոյրերին էլ բռնի հաւատաւոր դարձնել, բայց պատրիարքը չընդունեց: Այն ժամանակ նրանց զրկեց բոլոր պատիւներից, հասարակ դասակարգին հաւասարեցնելով (856-ին). եւ Թէոդորան

ապրեց խոնարհութեամբ ու բարեպաշտութեամբ Մահից յետոյ սրբերի կարգին արժանանալով:

Միքայէլն եւ երկու քեռիները չարիք չմնաց որ չգործէին: Նրանց օրով ու կամքով Փոտի հերձուածն էլ եղաւ, որը յոյն եկեղեցուն բաժանեց հռոմէականից. Բայց արդարութիւնը վերջը նրանց էլ հասաւ: Արքունի պաշտօնատար Բարսեղի սուրը տապալեց նախ Վարդին եւ յետոյ կայսրին, մի ճաշի ժամանակ, նրա մօր ու քոյրերի աչքերի առջեւ եւ յափշտակեց գահն 867-ին: Սա կոչւում էր **Մակեդոնացի** եւ ըստ աւանդութեան հայազգի եւ բուն իսկ Արշակունի տոհմից[1]:

4.- 912 թւականից Կոստանդնուպոլսի կայսրն էր նոյն Բարսեղի թոռն ու Զ Լեւոնի որդին՝ Կոստանդին Է Ծիրանածինը[2], դեռ պատանի: Օգտւելով նրա խակութիւնից, երկու հզօրագոյն պաշտօնատարները՝ Լեւոն Փոկաս սպարապետն եւ Ռոմանոս Լեկապէն ծովակալն, աչք դրին գահի վրայ: Վերջինը՝ որդին հայազգի Թէոփիլակտոսի անունով գինւորի, որ Բարսեղ կայսրի կեանքը փրկելով, պատւի էր հասել, աւելի խորագէտ քան յոյն մրցակիցը եւ Զոյէ՝ մայր կայսերուհու էլ սիրականը, յաջողեց գրաւել արքունիքի վստահութիւնն եւ հրաւիրւեց պաշտպան լինել պատանի կայսրին: Պալատ մտնելուց յետոյ, ջանացաւ եւ ինքնակալի սիրտը կապեց իր **Հեղինէ** դստեր հետ, որ հանճարով ու գեղեցկութեամբ միասին էր զուգւած: Պսակն էլ կատարւեց (919-ին) եւ Ռոմանոսն ստացաւ **կայսերահայր** տիտղոսը: Ճարտարութեամբ ջրեց Փոկասու, Զոյէի եւ այլոց դաւերն իր դէմ եւ յիսուն տարեկան կայսեր կողմից նախ **Կեսար** կոչւեց եւ քիչ յետոյ կայսերական պսակն էլ ընդունեց: Այնուհետեւ տէրութեան իսկական գլուխն ինքն էր, եւ առաջին գործն այն եղաւ՝ իր ընտանիքի աստիճանները բարձրացնել: Թէոդորա կնոջը տւեց **Աւգոստուհի** տիտղոսն եւ Քրիստոփոս անդրանիկին կայսր պսակեց:

Իր փեսան ներքին դառնութեամբ տեսնում էր այս ամէնն եւ վախենում էր բողոքելու: Ուրիշ պալատականները դաւեր գործեցին, բայց ձախողեցին: Ռոմանոսի կինը մեռաւ 922-ին եւ նրա տեղ կայսերուհին պսակեց իր նունն ու Քրիստոփոսի ամուսնուն Սոփիային, սրանց չքնաղագեղ դստեր՝ Մարիամին եւս 927-ին ամուսնացրեց Բուլղարիայի Պետրոս թագաւորի հետ: Յետոյ **Աւգոստոս** տիտղոսը տւեց իր միւս երկու որդիներին ու մէկ թոռանն էլ, փեսային նրանց ստորեւ կարգելով: 931-ին մեռաւ Քրիստոփոսն եւ այրին հարկադրւեց արքունիքից հեռանալ: Հեղինէն 939-ին առաջին անգամ մայր եղաւ Ռոմանոս որդու ծնունդով, որ պապը հինգ տարեկան հասակում

1. Լըբոյ, ԺԳ, գ. 69, 70: — 2. Ցն. Պորփիւրոգեննետոս:

պսակից Իտալիայի Հուգոն թագաւորի ապօրինի դստեր՝ Բերթայի հետ. եւ ամուսնութիւնից հինգ տարի յետոյ վախճանւեց:

Ռոմանոսը թագաւորել էր 25 տարի եւ արդէն ծերացած. եւ օրինաւոր կայսեր Կոստանդնի համբերութիւնն սպառւած. ուստի խորհեց տապալել նրան: Յաջողեց մի մտերիմ անձի կողմից նրա Ստեփան որդուն համոզել՝ գահը հօրից յափշտակելու. որ վերջացաւ ծերունու գահընկեցութեամբ եւ աքսորւելուն. որին մասնակից էր Կոստանդնի որդին եւս: Այդ գործով երկու եղբայրներն աւելի դարձան ժողովրդին. որ փարւեց օրինաւոր կայսրին եւ նա նոր սկսեց իշխել Հեղինէի հետ. փոփոխելով պալատական ու պետական պաշտօնէութեանն էլ: Այս նոր յեղափոխութեան նախապատճառն ու վարիչը համարւում է Ռոմանոսի խորագիտութեան ժառանգորդ դուստրը, որ նախամեծար համարեց իշխել եւ միայնակ առաջնորդել իր անկորով եւ ուսումնասէր ամուսնուն՝ քան գործակցութեամբ իր եղբայրների: Մի ամբաստանութիւն նրանց մասին բաւական եղաւ կասկածոտ կայսրին. նրանց բռնելով ու փակելով մօտաւոր մի կղզում եւ բռնի կղերականացնելով: Կոստանդինն այնուհետեւ նւիրւեց ուսման բարգաւաճմանը քան պետական գործերին, որոնց աւելի ուշադիր զբաղւում էր Հեղինէն, արքունի սենեկապետ՝ Բարսեղի հետ, պաշտօններն անարժաններին վաճառելով:

Իրենց որդին՝ Ռոմանոս Բ, 948-ին դեռ իննամեայ՝ կայսրի կոչում ստանալով ամուսնացաւ մի պանդոկապետի դստեր հետ, որի անսովոր գեղեցկութեամբ տարւել էր: Հայրը գիջեց եւ հարսին Թէֆանօ անւանեցին: Յաջորդեցին պատերազմներ՝ յեղյեղուկ բախտերով: Ինը տարի անցել էր գահաժառանգի ամուսնութիւնից եւ իր կինը տապակւում էր կայսրուհու գահը բարձրանալու տենչից: Դիւային մի գաղափար ունեցաւ եւ Ռոմանոսին էլ համոզեց: Կաշառեցին տաճարապետին եւ թունաւորեցին կայսրին. որ իսկոյն չմեռաւ, բայց անբուժելի մի տկարութեան մատնւեց եւ յաջորդ տարի գերեզման իջաւ. գահը թողնելով որդուն: Պանդոկապետի դուստրը չբաւականացաւ կայսրուհու կոչումով: Նա ուզեց մայր կայսրուհին եւ նրա դուստրերը պալատից հեռանային, որոնց ներկայութիւնն յանդիմանութիւն էր իր նւաստ ծագմանը: Ռոմանոսնստրկաբար հնազանդւեց կնոջը եւ հրամայեց նրանց մի վանք մտնել: Գոռոզ Հեղինէն զայրացաւ եւ այնպիսի մի կշտամբանք տեղաց որդու գլխին. որ նա սմքեց եւ թոյլ տւեց նրան պալատում մնալ, բայց ոչ քոյրերին, որոնք արտասւագին հեռացան: Իսկ հայազարմ կայսրուհին սրտի դառնութիւնից մի տարի

յետոյ Հոգին յանձնեց (961-ին) չքեղ յուղարկաւորութեամբ, որ որդու վերջին նուէրն եղաւ նրան[1]։

5.- Հայածին Զմչկիկ կայսրը[2], որ Բիւզանդիոնի կարովի եւ ուղղամիտ իշխողներից մէկը հանդիսացաւ, 971 թւին իրեն հարսնացրեց յիշուած Կոստանդին ու Հեղինէ հայազգի զոյգի հինգ դուստրերից՝ **Թէոդորային**, որ գեղեցիկ չէր, բայց պարկեշտութեամբ եւ առաքինութեամբ նշանաւոր էր։ Այս ամուսնութիւնը մեծ ուրախութիւն պատճառեց յոյներին, որոնք կապուած էին մնում Կոստանդնի տան հետ։ Զմչկիկը կարճ թագաւորութիւն ունեցաւ, 975-ին զոհ դառնալով մի դաւադրութեան։ Եւ ժամանակն անցկացրեց պատերազմներով, որի պատճառով Թէոդորան առիթ չունեցաւ ցոյց տալու իր անձն արքունական կամ պետական գործերում[3]։ Եւ մենք իր մասին ուրիշ ոչինչ գիտենք։

6.- Նախայիշեալ հայազգի կրտսերն Ռոմանոսի որդին՝ Ը Կոստանդինն էր, եւ սրա դուստրը՝ **Զոյէն**։ Հայրն արու զաւակ չունենալով, օրհասի պահին գահն առաջարկեց վաթսունամեայ Ռոմանոս Արգիրոսին, պայմանով որ արձակէր իր օրինաւոր կնոջը՝ Հեղինէին, եւ ամուսնանար իր քառասունութամեայ դստեր՝ Զոյէի հետ։ Ռոմանոսը վարանեց, բայց կենակցի պնդման վրայ, որ որոշեց կուսանոց մտնել, զիջեց, ամուսնացաւ ու կայսր կոչուեց (1028-ին)։ Իր նոր կինը, նկարագրով փառասէր, օգտուելով ամուսնու տկարութիւնից, իր ձեռքը վերցրեց արքունիքի գործերը։ Դուրս հանեց կայսրի ընտանիքին։ Նախանձից դրդուած հալածեց իր կրտսեր եւ առաքինի քրոջը **Թէոդորային**, որ արդէն առանձնացած էր ապրում։ Կայսրի բացակայութեան ժամանակ ձերբակալեց գահին դաւադրող՝ Կոստանդին Դիոգենէսին, որն անձնասպան եղաւ։

Ռոմանոսը ծեր, սառն եւ հիւանդ մարդ, պաղեց կնոջից, որ փոխարէնը նրան ատում էր։ Սիրահարուեց արքունի սենեկապետի եղբօրը՝ Միքայէլին եւ նրան շուտով գահ բարձրացնելու համար՝ թոյնով մօտեցրեց կայսրի մահը եւ հուսկ բաղանիքում խեղդել տուեց (1034-ին)։ Իսկոյն սեղեխին (տարփածուին) հագցրեց կայսերական հանդերձը, նստեցրեց գահի վրայ եւ ինքը նրա մօտ եւ նրան մեծարել տուեց իբր կայսր, նոյն գիշերը կատարելով իրենց ամուսնութիւնն էլ։ Միքայէլը (Դ) լուսնոտ էր եւ արտաքին գեղեցկութիւնից բացի ուրիշ ոչ մի յատկութիւն չունէր, ուստի Զոյէն փորձեց վարչութիւնն ամփոփել իր ձեռքերի մէջ։ Բայց քան իրեն խորամանկ հանդիսացաւ արքայի եղբայրը՝ Ցոհան սենեկապետն, կայսրին եւ կայսրուհուն կարգադրեց կալանաւորի վիճակ արքունիքում։ Ապա յափրացած իր զօրութիւնից, փափագեց իր

1. Լըբոյ, ԺԳ, գ. 73. ԺԴ, գ. 74։ — 2. Աստ՝ 211։ — 3. Լըբոյ, ԺԴ, գ. 75։

վրայ վերցնել պատրիարքութեան պատիւն էլ առանց յաջողելու: Մինչ այն, Զոյէն չէր ննջել. Նա ուզեց թունաւորել նրան իր բժշկի ձեռքով. բայց ձախողեց 1039-ին մեր մայրաքաղաքն Անին գրաւելու փորձը Միքայէլի կողմից՝ Պահլաւունի Վահրամը ջնջել ուեց յոյների հարիւր հազարանոց բանակը:

Կայսրը մեռաւ 1041-ին, Ցոհանի թելադրութեամբ իրեն յաջորդ նշանակելով եղբօրորդուն՝ Միքայէլ Կալափատին, եւ որդեգիր Զոյէին: Մահուանից յետոյ կայսերուհին վարանում էր թագը դնել նրա գլխին, առելով ամուսնու ամբողջ զարմը, մանաւանդ որ նրա յաջորդն սկսել էր արդէն ցոյց տալ յոռի նկարագիր: Բայց նրա երդման պատճառով զիջեց: Միքայէլը հազիւ պսակւած սկսեց ապերախտ լինել իր հօրեղբօրը, նրան փակելով մի վանքում եւ միւս ազգականների դէմ անգթանալով, բացի Կոստանդին հօրեղբօրից, որին իր խորհրդական դարձրեց: Նրա թելադրութեամբ կայսերուհուն գիշերով փոխադրել ուեց Իշխանաց կղզին ու վարսերը կտրել ուեց: Առաւօտեան ժողովուրդն իմացաւ, զայրացաւ ու խուժեց պալատը՝ պահանջելով կայսերուհուն: Միքայէլը նրան իսկոյն բերել ուեց, հագցնել տալով պատւոյ տարազը, ցոյց ուեց ամբոխին, որ քարերով ու նետերով պատասխանեց: Կայսրն ուզեց հրաժարւել, բայց կուսակիցներն ընդդիմացան, կռւեցին ժողովրդի հետ եւ շատ կոտորեցին: Ամբոխն յաղթեց, յարձակւեց եւ աւերեց պալատը: Միքայէլն ու Կոստանդինը փախան Ստուդեան վանքը եւ վանականի զգեստ հագան: Զոյէն եւ իր քոյրը՝ Թէոդորան, միասին կայսերուհի հռչակւեցին: Երկու փախստականներին բռնեցին, կուրացւեցին եւ իրարից անջատ մենաստաններում զցւեցին:

Երկու դշխուհիների իշխանութեան ներքոյ պետութիւնն անցկացրեց կարճ, բայց շատ խաղաղ շրջան: Իսկ չարանախանձ Զոյէն չհանդուրժեց իր բարեպաշտ քրոջ վայելած մեծագոյն սիրոյն՝ ժողովրդի կողմից եւ խորհեց տապալել նրան: Աւագանու առջեւ դրեց երկու կանանց իշխանակցութեան անտեղութիւններն, առաջարկելով նրանցից միայն մէկի իշխանութիւնն, ամուսնութեամբ մի գահակից ընտրելով: Թէոդորան միշտ սիրող իր կուսական վիճակն, ամուսնութեան պարտականութիւնը քրոջը թողեց, որ 62 տարեկան հասակում վերստին ամուսնացաւ իր ընտրած Կոստանդին Մոնոմաքոսի հետ (1042-ին), հանդուրժելով պալատում նրա Սկլերէնէ հարճին, որ իր հետ Աւգոստա տիտղոսն էր կրում: Նոր կայսրը թոյլ եւ հեշտասէր մի մարդ, վատնեց տէրութեան գանձը եւ ունեցաւ երկար պատերազմներ՝ շատ ձախողութիւններով: Նրա օրով էր, որ Անին եւ նրա իշխող՝ Գագիկը, հայերի մատնութեամբ ընկան Ցունաստանի

*ձեռքը*[1] (1041-*ին*)։ *Նոյնպէս Միքայէլ Կերուլարիոս պատրիարքը նորոգեց եւ յաւերժացրեց Փոտի փորձած յունական հերձուածը հռոմէական եկեղեցուց*[2] (1053-*ին*).

*Զոյէն մի տարի առաջ արդէն մեռել էր եւ կայսրը նրան սրբերի կարգն էր դասել։ Մի պատմիչ, որ չատ դիւրագին տեսանք յոյների մօտ միջին դարում*[3]*. Երկու տարի յետոյ աշխարհից մեկնեց Մոնոմաքոսն եւ ս. իրեն յաջորդ նշանակելով Նիկեփորին. Բայց զօրականներն եւ աւագանին նորից պահանջեցին օրինաւոր ժառանգին՝ Թէոդորայի գահակալութիւնը, որ երկրորդ անգամ յոգնած գլխին փշոտ պսակը դրեց, որ նրան մի տարի յետոյ գերեզման տարաւ, թողնելով պետութիւնն անորդութեան մէջ*[4]։

7.- *Ուրիչ կայսերուհի էլ ունենք եւ աւելի յօժարութեամբ ենք յիշատակում, որ հայ ծնւեց, ապրեց հայ հողի վրայ եւ գնաց պճնելու յոյն արքունիքը։ Դա* ***Ռիթա - Մարիամն*** *է, Բ Լեւոնի դուստրն*[5]*, որ վախճանել ու գահը թողել էր անդրանիկին՝ Բ Հեթումին։ Անդրոնիկոս Բ կայսրը Կոստանդնուպոլսի՝* 1295-*ին իրեն գահակից հռչակեց իր որդուն՝ Թ Միքայէլին, եւ նոյն տարում ուզելով ամուսնացնել նրան, բախեց այլ եւ այլ դռներ առանց յաջողելու։ Այն ժամանակ դեսպաններ յղեց Կիպրոսի արքունիքը հարսնացու բերելու, պատուիրելով, որ ձախողելու պարագային անցնեն Կիլիկիայի արքայական տունը։ Այդպէս էլ եղաւ։ Դեսպաններն եկան հասան Սիս ոստանը, ուր գտան չնորհագեղ եւ առաքինի* ***Կեռանի*** *երկու մօրամոյն (մօր նման բարեձեւ) դուստրերին՝* ***Ռիթային*** *ու* ***Թիֆանոյին****, տասնեւեօթ տարեկան խեղեփներ*[6] *(մի ամբողջի երկու կտորից մէկը), մէկը քան միւսը չքնաղ։*

*Նրանց անդրանիկ եղբայրը՝ Հեթումն, որ վանական խարազի ներքեւ իր աշխարհը կառավարում էր, հաճութեամբ ընդունեց առաջարկութիւնը, յուսալով իր տէրութիւնը զօրացնել այդ խնամութեամբ։ Դեսպանները չկարողացան ընտրութիւն կատարել երկու գոհարների միջեւ եւ խնդրեցին երկուսին էլ տանել, ընտրութիւնը կայսրը կատարելու համար եւ ապահովել միանգամայն երկու քոյրերի ապագան։ Մեծահանդէս եղաւ նրանց ճանապարհ դնելու առիթով հայերի կողմից։ Ճանապարհին Ռիթան հիւանդացաւ եւ իջեցրին Հռոդոս կղզում դարմանելու համար։ Մոլեռանդ դեսպաններն երկու քոյրերին էլ ստիպեցին հրաժարւել հայ ծէսից, կրկին անգամ դրոշմեցին նրանց, անունները փոխեցին, առաջնեկին* ***Քսենէ*** *եւ երկրորդին* ***Թէոդորա*** *անւանեցին։ Մեծ ընդունելութիւն եղաւ Ոսկեղջերի մէջ, երբ հասան օրիորդները։*

---

1. *Աստ*՝ 57, 299: — 2. *Աստ*՝ 363: — 3. *Աստ*՝ 358-59, 362-63: — 4. *Լըբոյ, ԺԴ, գ*. 77, 78. 5. *Աստ*՝ 69: — 6. *Աստ*՝ 79:

Տեսնելով նրանց գեղեցկութիւնն եւ արժանիքով հաւասար. կայսրր Ռիթա-Քսենէին ու եղ նախամեծարութիւնն իբրեւ անդրանիկ եւ երեւելի շուքով կատարեցին հարսանիքն եւ **Աւգոստա** պատուի տւչութիւնր (16 յնր. 1296): Իսկ Թիֆանօ Թէոդորան սահմանւեց հարսնութեամբ՝ Կոմնենեան մեծանուն ընտանիքի պայազատ Յովհաննէս Դուկաս Անգեղոսին. որին երբ հասնելու էր գնում. նախանձոտ մահը ճանապարհին նրան իրեն հարսնացրեց եւ թաղւեց Թեսաղոնիկէի մէջ. պանդուխտ միանգամայն իր հայրենի եւ հարսանեկան երկրներից:

Ռիթայի տիկնութիւնն սկսեց ու շարունակեց փոթորկի մէջ. նախ Վենետիկի ու Գենուացոց ներքին արիւնալի կռիւներով. որ իբր դաշնակից մտել ու հաստատւել էին Կոստանդնուպոլսի մէջ եւ ապա Թուրքերի յարձակումներով[1]: Դրանց վրայ աւելացաւ իր իր հայրենի աշխարհի վրդովմունքն էլ: 1297-ին Հեթումն եւ հարազատ՝ Թորոսը, գնացին «իրենց քրոջը՝ Ռիթային, տեսնելու», Կիլիկիոյ կառավարութիւնր թողնելով իրենց Սմբատ եղբօրն, որ փոխանորդութիւնր վերածեց տիրապետութեան եւ թագաւոր անգամ պսակւեց[2]: Երկու ուղեւորները վեց ամսից երբ վերադարձան. փոխանակ իրենց եղբօր գրկին, իրենց դիմաց ցցւած գտան նրա նիզակները: Վազելով վերադարձան հայցելու Անդրոնիկոսի օգնութիւնը, որ չուզեց պատերազմի մտնել, այլ դրամով միայն օժանդակեց: Եւ մինչ նրանք գնում էին Թաթարներից օգնութիւն խնդրելու, Սմբատը հասնելով ձերբակալեց նրանց: Թորոսին սպանեց եւ Հեթումի աչքերը խարեց[3]: Փառասիրութիւնը խլել էր նրա սրտից ծնողական քաղցր աւանդները: Նրա խժդժութեան դէմ վրէժխնդիր եղաւ միւս եղբայրը՝ Կոստանդինը, յաղթեց բռնակալին բանտարկեց եւ ինքն ստանձնեց վարչութեան ղեկը (1298-ին): Քիչ յետոյ յանկարծ բացւեցին Հեթումի աչքերն եւ կրկին տիրացաւ գահին (1300-ին), բռնեց Կոստանդնին, եւ Սմբատի հետ յղեց քրոջ մօտ[4]. վրէժ չխնդրեց, այլ վտանգը հեռացրեց: Առաքինի Բ Լեւոնի անդրանիկն էր, որ գործում էր: Այսպէս Ռիթան սատարեց իր հայրենիքի խաղաղեցմանն եւ հարազատների մէջ ծնւած նախանձը չիջուցանեց:

Չորս զաւակների մայր եղաւ: Անդրոնիկոսի, Մանուէլի, Աննայի եւ Թէոդորայի: Դուստրերն ամուսնացան յետոյ կրկին անգամ: Աննան երկու իշխանների հետ եւ քոյրը բուլղար երկու թագաւորների հետ[5]: Անդրոնիկոս գահաժառանգն իր պապի աչքի լոյսն էր: Ստացաւ լաւ դաստիարակութիւն: Ունէր գեղեցիկ կերպարանք եւ ազնւաբարոյ նկարագիր: Բայց յետոյ զոհ գնաց պալատականների չար ազդեցութիւններին եւ

---

1. Լրրոյ. ԺԸ. էջ 370-79: 2. Հյպ. 517: — 3. **Սմ. Տրգ**. 126-27: — 4. Զմչ. Գ. 297: — 5. Լըրոյ. ԺԹ. էջ 232:

*անձնատուր եղաւ գւարճանքների ու հեշտախտութեանը, որի հետեւանքով պապը պաղեց նրանից*[1]*: Նրան ամուսնացրեցին գերմանուհի Իրենէի հետ՝ Բրունսուիկեան տոհմից, բայց նա յարեց ուրիշ մի կնոջ էլ, որ իր հետ ունէր նաեւ ուրիշ սիրականներ եւ նախանձոտ զինուած զարանակալներ դրեց նրա տան շուրջը: Մի գիշեր եղբայրը՝ Մանուէլը, գնաց փնտռելու նրան նոյն տան մօտերը: Պահակները նրան մի տարփածու կարծելով, յարձակուեցին ու մահարեր վիրաւորեցին: Սխալն իմացւեց, երիտասարդին պալատ տարան, որ արքունիքի հեծութեան մէջ աւանդեց հոգին:*

*Նրա հայրը՝ Միքայէլը բնակւում էր Թեսաղոնիկէի մէջ: Թուրքերի դէմ զանազան պատերազմներ էր մղել եւ բոլորն էլ ձախողել էր, իր վատ խորհրդականների պատճառով: Թէ այս պարագան եւ թէ պետութեան տագնապալի կացութիւնն ընկճել ու խանգարել էին նրա առողջութիւնն, որի պատճառով մայրաքաղաքից հեռու էր ապրում: Կրտսեր որդու մահւան բօթը չանթի պէս հասաւ իրեն եւ ուժ օրւայ ընթացքում նրան գերեզման տարաւ*[2] (1320-*ին*)*: Իսկ մօր վիշտն այդ երկու ծանր կորստների համար պատմութիւնը մեզ է թողնում գուշակել* ***կնոջ*** *այդ զգայուն դստեր սրտում:*

*Անդրոնիկոսն ատելի դարձաւ բոլորին, առաւել եւս պապին, որ որոշեց գահը թողնել իր Կոստանդնի որդու ապօրինի մէկ զաւակին՝ Միքայէլ Կաթարին: Նրան վերցնելով կրթեց պալատում, թէպէտ բնաւ ուշիմութիւն չէր ցուցաբերում: Անդրոնիկոսը ներքնապէս դառնացաւ եւ սկսեց մեծ յարգանք ցուցաբերել պապին՝ հաճեցնելու նպատակով, բայց նա արհամարհոտ լռութեամբ էր պատասխանում եւ մի օր մերժեց նրան տեսնելու: Իշխանի խորհրդականները խորհուրդ տւեցին սպանել կայսրին, բայց նա չընդունեց: Նոյնպէս ոստանից փախչելու խորհրդին նաեւ հաւանութիւն չտւեց: Կայսրը նրան դատաստանի կանչեց, բայց նրա կուսակիցներից վախեցած, ներեց ու հաշտուեց նրա հետ: Ապա ուզեց նրանց բաժանել նրանից: Անդրոնիկը փախաւ Ադրիանուպոլիս, բանակ կազմեց եւ զօրքն ուզում էր յարձակւել մայրաքաղաքի վրայ. Իշխանն ընդդիմացաւ, բայց յետոյ համաձայնեց. Կայսրը սարսափած՝ դարձեալ հաշտուեց թոռան հետ, որը վերադարձաւ որտեղից որ եկել էր: Կոստանդնուպոլսից հասած մի չար լուր ստիպեց նրան նորից շարժել բանակն իր պապի դէմ, բայց զօրքն յոգնած ու նեղւած, պահանջեցին իշխանից հաշտութիւն խնդրել եւ վերադառնալ: Ճանապարհին Անդրոնիկը ծանր հիւանդացաւ:*

---

1. *Անդ*՝ 224-27: — 2. *Անդ*՝ 230-32:

Իր մայրը՝ Ռիթան, բնակւում էր Թեսաղոնիկէում, ուր իր հանգուցեալ ամուսնու հետ էր արդէն: Մեր սկեսրայրը կասկածոտ նաեւ նրա նկատմամբ, իր Կոստանդին որդուն, իրը փարիչ ուղարկեց այնտեղ, պատուիրելով բռնել եւ իր մօտ յղել կայսերուհուն: Տիկինն զգաց իր տագերոջ դիտաւորութիւնն եւ փախաւ, ապաստանելով մի եկեղեցում: Ընկաւ Աստուածամօր պատկերի առջեւ եւ երդուեց, որ այնտեղից չպիտի դուրս գայ: Կոստանդինը հասաւ եւ փորձեց համոզել նրան, բայց անօգուտ: Այն ժամանակ իր զօրականներին հրամայեց բռնի դուրս քաշել եւ նետել մի նաւի մէջ, որ բացեց առագաստը դէպի Բիւզանդիոն: Այս լուրն աւելի եւս խռովեց Անդրոնիկի հոգին: Ցաջորդ գարնանը մի նոր բանակ կազմեց եւ սկսեց տիրել զանազան քաղաքներ: Իր կուսակիցներն յաղթեցին ու ձերբակալեցին Թեսաղոնիկէի մէջ իր Կոստանդին հօրեղբօրը: Թուրքերը միացել ու զօրացրել էին ծեր կայսրի բանակը, որը սակայն չտոկաց Անդրոնիկի զօրութեան դէմ եւ կայսրն ստիպուեց դարձեալ հաշտութիւն խնդրել: Իսկ թոռն աւելի մեծահոգութիւն ցոյց տուեց եւ առաջարկեց իր բանակն ու գրաւած վայրերն պապին վերադարձնել, խափանելու համար քաղաքական պատերազմը: Ծերն սքանչացաւ թոռան անշահախնդրութեան վրայ: Երկու նաւ պատրաստել տուեց եւ Ռիթայի մօտ պատգամաւոր ուղարկեց շնորհակալ լինելու նրա հպատակութեան համար եւ ընդունելու նրա երդումը: Տիկինն հասաւ որդուն, գրկախառնուեցին ու լացեցին, մէկն իր ամուսնու եւ միւսն իր հօր կորստի համար, նրանք այդ դէպքից յետոյ իրար չէին տեսել: Վերադարձան Կոստանդնուպոլիս եւ Անդրոնիկը մեծարանքով մտեցաւ ու հաշտուեց պապի հետ:

Ցաջորդեցին նոր պատերազմներ օտարների հետ եւ յաղթանակներ Անդրոնիկէին, որ պապի փափագով 1324-ին կայսր պսակուեց: Եւ այրի մնալով, երկու տարուայ [illegible] Սաւոյիոյ տնից: Խռովասէր քուները դարձեալ չարացրեցին ծեր կայսրին թոռան դէմ, ստիպելով նրան երկրորդ անգամ զէնք վերցնել իր անձի պաշտպանութեան համար: Գնաց գրաւեց զանազան քաղաքներ ու Բիւզանդիոնը՝ կայսերական գահի հետ, զրկելով պապին իշխանութիւնից, բայց ոչ պատւից[1]: Ցետոյ նա իրեն նուիրեց վանական կեանքին:

Անդրոնիկոսը 1330-ին ծանրապէս հիւանդացաւ Թրակիայի մէջ: Իր մայրը կասկածելով արքունական մեծ պաշտօնեայի՝ Կանտակուզէնի հարստահարութիւնից, որին կարող էր ենթարկուել որդու մահից յետոյ, մտածեց մի կուսակցութիւն կազմել Սիւրկիանէս պալատականի գործակցութեամբ եւ Թեսաղոնիկէի բոլոր բնակիչներից

1. Լըբոյ, ԺԹ, 234-85:

*պահանջեց իրեն իրենց տիկին ճանաչել ու հնազանդութեան երդում կատարել: Սակայն որդին առողջացաւ եւ իր ծրագիրը խանգարուեց, գործակիցը դատապարտուեց իբրեւ հայրենեաց մատնիչ, մինչ Իրինայի անունը ծածուկ մնաց պատշաճութեան համար*[1]*: Կեղծաւոր ու բանսարկու մի անձ էր յիշեալ պալատականը եւ ծեր կայսրի հրամանով բանտի դատապարտուած: Երբ յետոյ Անդրոնիկը նրան արձակեց, Իրինան վշտացաւ այդպիսի վնասակար մարդու ազատութեան համար եւ գանգատուեց, որ այդ մասին իր խորհուրդը չէր հարցրել*[2]*: Շահրպահանջեց, որ յետոյ ինքն նրա օժանդակութեանը դիմէր:*

*Ինչպէս տեսանք, Բ Լեւոնի այդ դստեր կեանքը, բիւզանդական արքունիքում, աւելի չարչարանք եղաւ քան վայելք: Մասնակցեց նախ ամուսնու դժբախտութիւններին եւ ապա տանջուեց սկեսրայրի իր որդու հանդէպ հետեւողական խիստ եւ անիրաւ վարմունքի համար: Անդրոնիկոսն ընդհակառակն վշտացրեց մօրը, ցուրտ ու անտարբեր վարմունքով նրա հանդէպ եւ հեռու պահելով նրան պետական գործերից: Յոգնած իր մշտավրդով կենցաղից, 1333-ին այս աշխարհը թողեց Թեսաղոնիկէի մէջ*[3] *«բարի ճգնութեամբ յոյների ամենամեծ թագուհին», ինչպէս ասում է հայ մի գրիչ*[4]*, 55 տարեկան հասակում: Եւ Նիկեփոր Գրեգորասն մի դամբանական խօսեց ի մխիթարութիւն կայսեր, որ յիշուած է նրա պատմութեան մէջ:*

***Բ. Նիկիայի գահի վրայ.*** *- Երբ խաչակիրները 1204-ին տիրեցին Կոստանդնուպոլսին, Ալեքսիս Գ կայսեր փեսան՝ Թէոդոր Լասկարիսը (Լաչքար), փախաւ Բիւթանիա եւ յեղյեղուկ բախտով սկսեց իր համար մի նոր իշխանութիւն կազմել: Տէր դարձաւ Նիկիային, որտեղում գահը հիմնեց եւ հաւաքւեցին յոյն աւագանու ու կղերի մնացորդներն էլ: 1206-ին հանդիսապէս կայսր պսակուեց ու սկսեց հետզհետէ քաջութեամբ կամ ճարտարութեամբ տիրել Ասիայի ծովեզերքն, այնպէս որ 1222-ին իր գաւազանի ներքեւ արդէն գրաւել էր ամբողջ արեւմտեան փոքր Ասիան եւ հիմնեց Նիկիայի կայսրութիւնը, որ տեւեց մինչեւ 1284 թւականը՝ չորս կայսերներով:*

*Երբ մեռաւ իր ամուսինն Աննա Կոմնենեանն, որ նրան տւեց երեք դուստր, «այն ժամանակ կայսրը հայ կին առեց, որի հետ յետոյ տարաձայնութիւն ունենալով, ուղարկեց Կիլիկիա՝ իր հայրենիքը», եւ Իտալիայի Ռոբերտ իշխանի քրոջ հետ ամուսնացաւ (1213-ին), գրում է Գէորգ ակրոպոլսեցին*[5]*: Մերժուած այդ հայուհին մեծն Լեւոնի եղբօր՝ Ռուբէնի կրտսեր դուստրը՝* ***Ֆիլիպն*** *էր, որ հարսնացրեց նոյն ինքը Լեւոնը*[6]*. եւ «կին եղաւ յոյների թագաւորի՝ Լաչքարէի», ասում է Ռուբինեան*

---

1. *Լըբոյ, ԺԹ*, 413-22: — 2. *Անդ*՝ 392-93: — 3. *Անդ*՝ 456-57: — 4. ***Հյպ.*** 545: — 5. ***Փամ. Բզզ.*** *ԺԲ*, 11: — 6. ***Տրգ. Կիլ.*** 311:

պատմութիւնը. «եւ մի որդի ծնեց Կոստանդին անունով. բայց մեծութեան չհասաւ, այլ մահացաւ երբ փոքր էր[1]»: Ցիլիպի այդ ամուսնութիւնը նուազ ծաղրական չեղաւ քան իր նախորդը[2]: Ի՛նչ էր այդ բաժանման պատճառը եւ ի՛նչպէս աւարտեց այդ տարարախտ տիկինն իր օրերը կամ ո՛ւր թաղեց իր հառաչանքները, անյայտ է մնում: Գուցէ աշխարհից մեկնելուց առաջ խոյս տուեց զգւանքով նրա բեմից էլ, որ այլեւս այնտեղ չի տեսնւում:

Գ. **Ցոյն տներում**.- Եկեղեցական հերձւածից յետոյ անծանօթ, իսկ միջին դարում շատ յանցառ են հայերի ամուսնութեան օրինակները յոյների հետ, յիշեալ կայսերական խնամութիւններից բացի: Ոչ անշուշտ կրօնական հակառակութեան պատճառով[3], գոնէ Կիլիկիայում ուր մարել էր այն, եւ Ռուբինեան արքունիքում Հռոմն ունէր «մուտք եւ ելք, իշխանութիւն եւ պատիւ, ռոճիկ եւ սէր, եւ անընտրողաբար հաւասար հայերի ընդունելութիւն[4]», այլ հաւանօրէն Կիլիկիայում յոյն իշխանական տոհմերի նւազելու համար: Այսպէս բացառութիւն է Կիլիկիայի Տարեգրքերի յիշած մէկ օրինակը: 1263-ին մի կռւում, ասում է, քաջ է հանդիսանում «Բակուրի եւ Կոստանդնի» եղբայրը՝ Սմբատը, «որ ազգով յոյն էր … հօր զարմով Հեթում արքայի» եւ որ նոյն թագաւորահայրը՝ Կոստանդինն, առատ պարգեւներով վարձատրում ու դարձնում է իր տունն «իր եղբօր եւ մօր՝ տիկին **Շահանդուխտի** մօտ[5]»:

Զարմով ազգական է, որով այդ տիկինն էլ լինելու է, ըստ իս, համանուն ծանօթ դստերը լամբրոնացի Ա. Կոստանդնի, որ իր անւանակից արքայահօր հետ երկու եղբայրների թոռներն էին ուղիղ գծով եւ Հեթումի հօր ամուսինն էր նոյն Կոստանդնի քոյրը՝ **Աւիծը**[6], ուրեմն կրկնակի ազգականներ: Մենք նախապէս տեսանք Շահանդուխտին 1274-ին իր մէկ զաւակի հետ[7], որ սակայն ուրիշ երկու որդի էլ ունէր, յիշւած այստեղ Տարեգրքից, որոնք գուցէ անծանօթ էին միւս յիշատակագրին: Եւ յոյն հօր ծնունդ էին, որ հայկական Կիլիկիայի սահմանակից մի իշխան է թւում եւ յայտնի է Լամբրոնացիների առանձին ընտանութիւնն յոյների հետ[8], որ այդ խնամութիւնն ստեղծեց: Իսկ տիկինը ճշմարիտ սիրող իր հայրենի ազգին, որդիների հետ է կապել տոհմային անուններ եւ ի հարկին օգնութեան է յղում հայրենի աշխարհին:

Այդ իշխանուհին եւ որդիները միանգամայն անյիշատակ են մնում Հ. Ալիշանի մօտ Կոստանդնի զարմի մէջ եւ այլուր չգտայ նրանց ուրիշ հետքը, 1274-ի յիշատակարանից բացի, որ անծանօթ էր նոյն հօրը:

---

1. **Պատմ. Ռբ.** 209. ամուսնութիւնդ կը յիշէ եւ **Տոհմք,** 445, 453: — 2. **Անդ**՝ 64: — 3. **Անդ**՝ 291-92: — 4. Լմր թղթ. 258: 5. **Տրգ. Կլ.** 341-62: — 6. **Անդ**՝ 68: — 7. **Անդ**: — 8. **Անդ**՝ 67:

Դ.- **Գուգարաց տան մէջ**.- Հայաստանի ու Վրաստանի միջեւ գտնւում էր Գուգարքի նահանգը, որ երբեմն Հայոց եւ աւելի յաճախ Վրաց իշխանութեան է ենթարկւել եւ ժողովուրդը նոյն ազգից էր. Բ Արշակի օրով ապստամբել էր մեզնից եւ Մուշեղ Մամիկոնեանը նուաճեց նրան[1], իսկ Վարդանանց ժամանակ դարձեալ Վրաստանի մասն էր.

1.- Ե դարի կէսին յայտնի մի դէմք է «Վրաց աշխարհից Աշուշա բդեշխը», նոյն նահանգի տէրը կամ «բդեշխն Վրաց Աշուշայ[2]», տարբեր դարի սկիզբն ապրած համանուն «իշխանէն տաշրացւոց[3]», որ կարող է տոհմակից լինել, նկատելով որ Տաշիրքը կից ու խառն էին Գուգարքի հետ: «Այր խելացի եւ խորհրդական[4]», զինակցում է ու բախտակցում է Հայոց, ոչ միայն քրիստոնէութեան պատճառով, որ հալածւած էր նաեւ իրենց աշխարհի մէջ, այլ որովհետեւ «Արծրունեաց ազգից կին ունէր, որ մեծն սեպուհ Մամիկոնեանի քենին էր» Հմայեակի[5], որ **Անուշվռամն** էր Վասակի դուստրը[6]:

Աշուշան ուղեկից ու խորհրդական էր Վարդանանց՝ Պարսկաստանի մէջ, ուր եւ պատանդ մնաց ուրիշների հետ մինչեւ պատերազմից յետոյ, որի պատճառով չկարողացաւ մասնակցել: Բայց նրան վիճակւելու էր ուրիշ կարեւոր պաշտօն՝ մեր աշխարհի օգտին: Աւարայրի ճակատամարտից չորս տարի անցել էր: Անօրէն Վասակ Սիւնին նենգութեամբ բռնել եւ Պարսկաստան էր տարել Հմայեակի երեք մանր զաւակներին[7] «որպէս մահապարտի որդիներ», որպէսզի ջնջւէին: Աշուշան փափագեց փրկել նրանց ու վերականգնել Մամիկոնեանների նւազած տունը, որի տէրերը՝ Վարդանն ու հարազատներն ընկել էին քաջաբար: Բացեց իր գանձն եւ կուրացրեց Պարսից ընչաքաղց աւագանուն եւ մանաւանդ Միհրներսեհ հազարապետի մշտակոյր աչքերը եւ արքայից խնդրել տւեց ու ստացաւ երեք մանուկների ազատութիւնը:

Ինչքա՜ն մեծ եղաւ բդեշխի, կնոջն եւ մանաւանդ քենու՝ **Ձուկայի** ուրախութիւնը, երբ բերեց զաւակներին թափեց նրա մայրենի կարօտ ու դողահար գրկի մէջ[8]: Տեսանք թէ ինչպէս Աշուշայի յարկի ներքեւ էլ սնւեցին ու դաստիարակւեցին այդ կորիւնները[9], որոնք Հայաստանի փրկիչն էին հանդիսանալու: Եւ այդ մեծ բարերարութեան մէջ ակներեւ է հայ բդեշխուհու ազդեցութեան բաժինը եւ Գուգարքի իշխողի հետ նրա լծակցութեան արդիւնքը:

---

1. *Փաւս*. 159, 211: — 2. *Փրպ*. 134, 148: — 3. *Կոր*. 20: — 4. *Փրպ*. 148: — 5. *Անդ. վիպակաւ գրւած «Վարդանայ»*: — 6. *Նոյն*՝ 15, 335, 572. *աստ*՝ 93: — 7. *Աստ*՝ 87: — 8. *Փրպ*. 323-25, 335: — 9. *Աստ*՝ 93:

2 - Աշուշային յաջորդեց իր որդին՝ Վազգէնը, որ արատաւորելու էր իր հայրենի եւ մայրենի անունն ու իր պատիւն «լկտի ու անառակ վարքով», որ նրան առաջնորդելու էր չարիքների մեծագոյնին եւս: Իր իշխանութեան առաջին տարիները մեզ անծանօթ են. նոյնպէս չգիտենք թէ ե՞րբ կապեց կեանքն իր մօրաքրոջ տագերոջ դստեր՝ Շուշանկանի հետ. Գուցէ իր բարեպաշտ հայրն եղաւ այդ մամիկոնեան մարգարիտն իր տուն տանող, նոյն տոհմին իր կատարած երախտիքի փոխարէն: Շնորհալի ծնունդ Աւարայրի անմահ նահատակի եւ «աստուածասէր» Դստրկան, որոնցից ստացաւ խորհրդաւոր Վարդենի կոչումը, որին յետոյ ընկերութիւնը զուգեց սպիտակափայլ Շուշանիկն էլ: Այդ կրկնագեղ ծաղիկը պատուաստեց Գուգարաց դժնիկի վրայ: Առաջին տարիներն մի կերպ անցան: Սրբասէր տիկինը «բարեպաշտօն եւ երկիւղած Աստծուն իր մանկութիւնից» եւ վշտահար նրա անկարգ ընթացքից, անդադար աղօթում էր նրա զգաստութեան համար[1]: Ճիշտ իր հակապատկերը, որ կարող էր սաղմոսերգուի հետ կրկնել առ Աստուած թէ «իմ մանկութիւնից ատեցի եւ անարգեցի մեղքն. եւ քո օրէնքները սիրեցի[2]»: Երեք որդիների եւ մէկ դստեր[3] մայր եղաւ, որոնց դաստիարակութեան մէջ էր որոնում իր դառնացած սրտի սփոփանքը[4]:

Սիրող ու նախանձայոյզ հայրենի աւանդութիւններին, որոնց մէջ սնուել եւ աճում էր «ոչ թողից զաւանդութիւն հարցն իմոց լուսաւորչացն Հայոց[5]», Վրաստանի մէջ ուզեց հիմնել մի հայ վառարան եւ բդեշխութեան Ցուրտաւ ոստանում հաստատեց իր ազգի ծէսը, որով իր բարեպաշտ հոգին աղօթեց միշտ իր մեծ պապի՝ Սահակի, նուիրագործած բարբառով: Եւ նոյն ծէսն այնտեղ երկար մնաց: Այնպէս որ տեղի եպիսկոպոսներից մէկը՝ Մովսէսը, 606 թուին «հայալեզու իշխանութիւն» է անուանում դեռ այդ քաղաքի առաջնորդութիւնը, վկայելով թէ այնտեղ էր սովորել ինքն էլ «դպրութիւն հայերէն եւ վրացերէն[6]»:

Աբրահամ կթղ. 608-ին Վրաց Կիւրիոն կթղ. գրելով, յիշում է նոյն «զպաշտօնն հայերէն՝ սրբոյ Շուշանկան զկարգաւորեալն», որ իբր թէ Կիւրիոնը վտարել էր, յարելով թէ «մեզ մահու չափ եւ եւս չարագոյն թուաց այդ գործը»: Նա դրան պատասխանում էր թէ «մեր պաշտօնը չէ փոխելը», այլ որովհետեւ նոր եպիսկոպոսն երկու լեզուներին էլ տեղեակ է, «երկու լեզուի դպրութեամբ կատարում է պաշտօնն[7]»: Նորութիւնն այդ էր. վրացերէնը հայերէնի հետ: «Շուշանիկից, մինչեւ այստեղ», յարում է, եղել են այնտեղ զանազան եպիսկոպոսներ «հայեր եւ որոշները վրացի էին՝ հայերը կրթուած գիտուններ

1. Սոփ. Թ. 11 2. Անդ՝ 25 3. Անդ՝ 13: — 4. Ասա՝ 93 — 5. Սոփ. Թ, 20: — 6. Գր. Թղթ. 113, 110:
7. Անդ՝ 164, 166.

եւ վարդապետներ». նաեւ վրացիների հետ խնամի դարձած հայ ազնուականները «սուրբ Շուշանիկի մօտ էին գալիս[1]»: Աբրահամի անհաւան պատասխանից, յետոյ իր շրջագայականի մէջ կրկնում էր՝ թէ Կիւրիոնը «զպաշտօնն հայերէն, որ սրբոյն Շուշանկան էր կարգաւորեալ, հակառակ մեզ խրոխտացեալ՝ ի բաց փոխեաց», հայերի անջատման պատճառով քաղկեդոնացիներից[2]: Ստո՞յգ էր այդ ամբաստանութիւնը, թէ պտուղ նախապաշարման, երբ միւս կողմից հերքւում է եւ հերքումն անկեղծ է թւում: Բայց Վարդանի ազգասէր զաւակի կարգադրութիւնն արդէն տեւել էր աւելի քան մէկուկէս դար, ինչոր պարծանք էր իր համար եւ արդիւնք էր իր սրբութեան եւ համբաւի, որ թողել էր վրացիների մէջ եւ չարունակում էր պահպանել նրա գործը, մինչ մեր հետագայ հայուհիներն իրենք իսկ ընդունեցին իրենց օտար փեսայի ծէսը[3]:

Սակայն նախախնամութիւնն այն սահմանել էր Գուգարքի տիկնութիւնից աւելի բարձր մի պատուի՝ երկնքի տիկնութեան, որ նրան հասցնելու էր անգիտակցաբար նոյն ինքն իր անարժան ամուսինը՝ Վազգէնը, որ իր յիշեալ անկարգութիւններին որպէս լրացում, գնաց Պարսից դուռն եւ ընդունեց մազդեզական կրօնն էլ «իր կամքով եւ ոչ հարկադրանքով եւ կամ բռնութեամբ»: Ի՞նչ աւելի սոսկալի հարուած կարող էր լինել Հաւատքի ախոյեանի դստրի սրտին, քան տեսնել ամուսնու դարձը Պարսկաստանից ուրացութեամբ սեւ կեղտն երեսին եւ նրա հետ նաեւ պարսիկ երկրորդ մի կին, յանձին Պերոզի զոքանչին: Լաց եւ աղօթք իր ու զաւակների համար, որոնցից ուստերին ուրացնելու էր չարը եւ դստերին կնութեան էր տալու պարսկան գարշութեամբ: Վարդենին երես դարձրեց վատչւէր կենակցից[4], որ գազանացաւ եւ նրա դահիճը դարձաւ: Քաշեց, բրածեծ արեց, նախատեց նրա աստուածասէր հայրերին, որ պարծենում էր սրբուհին ասելով «ես նրանց զարմն եմ»: Եւ իր հոգեւոր պատերազմի մէջ ամուր, հաւաքեց թանկագին հանդերձներն ու զարդերը, ուղարկեց ուրացողին, որ այլեւս իրեն չէին պատկանում, որպէսզի իր պարսկուհուն հագցնէր եւ ինքը հեռացաւ պալատից «կրօնաւորի զգեստ» հագած եւ իր մխիթարութեան ապաւէնն եկեղեցին դարձնելով: Այնտեղ էլ հասաւ գազանը: Սրբավայրի մէջ, նոյնիսկ, նրա վրայ տեղաց նոր եւ արիւնալի հարուածներ ու քարշանք, լաց ու ճիչ պատճառելով ներկայ ժողովրդին էլ եւ նրա բնակարանը բանտը սահմանեց:

Երկա՛ր տեւեց առաքինուհու բանտի կեանքը, որտեղում մերկ մարմնով քուրձ էր հագել իր ընտրութեամբ, կարծես թէ քիչ էր իր տանջանքներն եւ նրա վրայ անչուք մի պարեգօտ, բոբիկ եւ ոտքից մի շղթայ պատին ամրացած: Մի շղթայ էլ Յիսուսի լուծը

1. Գր. Թղթ. 178: — 2. Անդ՝ 194: — 3. Հմմտ. աստ՝ 368: — 4. Աստ՝ 37:

կրող փափուկ պարանոցի շուրջ, ոսկէ քառամանեակի փոխարէն[1], որը յետոյ վերցրին իր տագերոջ աղաչանքով: Մաշկեայ մի բարձիկ, որով իր յոգնած գլուխը հանգստացնում էր, մօտը փոքրիկ մի աղօթանոց ու խաչ, որոնք սփոփում էին իր հոգին եւ գարեհաց ու ջրի մի կուժ կազմում էին իր հողեպահիկը: Երանելին այդ տառապանքը վեց տարի կրեց, մխիթարիչ ունենալով Աստծուն, կարեկից ու բարեսիրտ տագերոջն՝ Ջոջիկին ու դրան եպիսկոպոս՝ Յովհանին:

Յաջորդեց Վազգէնի քառամեայ բացակայութեան մի շրջան, որում Գուգարաց տիկնոջ բանտն ուխտավայր դարձաւ բարեպաշտների կողմից, որ բոլորին օժանդակում էր սրբուհին աղօթքով, բարի խորհրդով ու հիւանդների բժշկութեամբ: Այդ շնորհքը պարգեւել էր իրեն երկինքը: Հասաւ անզգամը ու գայրացած նրա ամէն յարաբերութիւնները խզել տուեց արտաքին աշխարհի հետ: Կախարդ մի կնոջ ձեռքով աշխատելով նաեւ բաժանել նրան իր հաւատքից, բայց ի զուր: Եւ Պարսկաստանի արքային աւելի հաճոյ լինելու համար, հասաւ այն վատութեան, որ ծանուցեց նրան՝ թէ տիկինը «դուստր Վարդանին է, որ ընդդիմացաւ Պարսից արքային», եւ նա էլ անարգում է թագաւորի աստուածներին, այս պատճառով տանջում եմ նրան: Տանջում էր, բայց չպիտի յաղթէր:

Եկաւ եօթներորդ տարին մի հիւանդութեամբ, որ ազդարարն եղաւ վերին կոչման: Այդքան տարի իր փափուկ մարմնի տոկալն իսկ մի հրաշք էր արդէն: Նոր ուխտագնացութիւն սկսեց եկեղեցականների, ազատների ու Վրաստանի տիկինների, որոնք խնդրում էին նրա վերջին օրհնութիւնը եւ իբր նշխար իր երկաթեայ շղթաներից,- որոնց մեծարանքը սովորական էր հայերի մօտ ու յիշւում է Դ դարից՝ նաեւ համբուրելը[2]: - «Ես դրան արժանի չեմ, պատասխանեց Վարդենին, բայց Աստծու կամքը լինի, արէք ինչպէս որ կամենում էք»: Ապա բարձրացնելով հիւծւած բազուկներն, ամէնին օրհնեց, իր տագերոջ՝ Ջոջիկն ու ներն էլ միասին, մինչ ծնրադիր իր առջեւ արտասւում էին յուզումով, գոհացաւ Փրկչից հետեւեալ համառօտ եւ ազդու աղօթքով, որ միանգամայն հանդէս է բերում իր մաքի ծանօթ բարգաւաճութիւնը[3]:

«Գոհանում եմ քեզնով, Քրիստոս, որ արժանի արիր իմ անարժանութիւնը կատարել քո տէրութեան հաճելի լինելու: Եւ այժմ պահիր հաւատացեալներին քո ամենազօր աջովդ եւ իմ չարչարանքներն ի հաճոյս քեզ, բարեխօսութեամբ հարցն իմոց քո անունը սիրողների, որովհետեւ բոլորը փառաւորեցին քո սուրբ անունը: Եւ ես քո շնորհով աւանդում եմ իմ հոգին»: Իր երկրաւոր կեանքի վերջին վայրկեանին անգամ

---

1. Աստ՝ 139: 2. Սոփ. Ը, 17. Հմմտ. աստ՝ Է, 2: — 3. Աստ՝ 238-39:

*այդ ազնուական հոգին չի մոռանում իր մեծ հայրը, Աւարայրի նահատակը, Ս. Սահակին եւ նրա նախնիքն, որոնց արեան, հաւատքի ու լեզուի էլ ժառանգն էր եւ նրանց յիշատակով միշտ ապրեց: Աղօթեց, փակեց աչքերը եւ գնաց միանալու յաւերժօրէն իր Փրկչին ու սիրելիների հետ. Նրա փափագի համեմատ մարմինը հանգչեցրին այնտեղում ուր առաջին անգամ գանակոծուեց, «մեծ տօն» կատարելով ու կրկնելով ամէն տարի*[1]*:*

*Ջունենք մի վկայաբանութիւն այնքան իրական, բնական ու գորովիչ ինչպէս սրբուհունն, որ գրուել է ճարտար մի ականատեսի միջոցով եւ ուրիշների անիմաստ երեւակայական խանգարումներից զերծ է մնացել: Հեղինակը չի խօսում, բայց Վարդանի դստեր այդ երկար մարտիրոսութիւնը ծածուկ չէր կարող մնալ Հայաստանում, մանաւանդ նրա կորովի հօրեղբօրորդիներից, որոնք նոյն հայածանքի ու կրօնական պայքարի մէջ էին Պարսկաստանի հետ եւ չէին կարող օգնութեան հասնել իրենց տարարախտ ազգականուհուն: Այդ հոգեկան վիճակը մեզ զգացնել է տալիս Ղազարը, պատմելով՝ թէ Վրաստանի արքան՝ Վախտանգն ապստամբութեան դրօշ պարզելով Պարսկաստանի դէմ, մեծ ուրախութիւն Հայաստանին, միանգամայն «սպանեց անօրէն բդեշխին՝ Վազգէնին*[2]*»: Ապացոյց՝ թէ Շուշանիկի դաժան նսեմ կեանքն ամբողջութեամբ յայտնի էր պատմիչին ու հայերին:*

*Ե.- **Վրաստանի գահի վրայ.**- 1.- Միջին դարում մինչ Բագրատունիներն իշխում էին Անիին, նրանց մէկ ճիւղն էլ տիրում էր Վրաստանում, ուղիղ յաջորդութեամբ մինչեւ Բ Դաւիթն, որին փոխանորդում է Գուրգէն Ա, նրա հօրաքեռորդին ըստ կաթողիկոս պատմագրի*[3]*, կամ եղբօրորդին ըստ Վարդանի*[4]*: Այս երկրորդ պարագային ուղիղ գիծը հասնում է մինչեւ Թամարին, վերջին ժառանգը նոյն տոհմից, ԺԲ դարի վերջերը, որտեղ Բրոսսէտը հասցնում է աւելի վաղ մինչեւ Բագարատ Բ*[5]*: Դրանցից մէկին կենակից տրուած էր ուրիշ հայասիրտ եւ հայալեզու մի Բագրատունի՝ Սոփին, որ Մրենի արձանագրութեան մէջ (Շիրակում) իրեն կոչում է «մեծն Աշոտ շահնշահի դուստրը Հայաստանի եւ Վրաստանի թագուհին*[6]*»:*

*Այդ թուականին ու շրջանում Վրաստանի թագաւորն էր յիշուած Գուրգէնի որդին՝ Բագարատ Բ* (958-994)[7]*, որի ամուսինը Սոփին է լինում: Մի դարի ընթացքում ի՞նչքանով հայ էին մնացել դրանք, բացի իրենց անուններից, չգիտենք: Այդ պայմանի մէջ մեր հայուհին չէր կարող թագուհի լինել եւ «Հայաստանի»: Այս բառով ուրիշ բան չի անում, բացի չեշտել ու պարծենալ իր ազգով, նրա անունը վրացականից էլ առաջ*

---

1. ***Սոփ. Թ***, 11-17: — 2. *Փրպ*. 358-59: — 3. *Յհ. կթղ*. 387: — 4. ***Վրդ***. 32: — 5. *Բրոս. Ա*, 281: 6. *Ն. Սրգ*. 197: — 7. *Բրոս. Ա*, 281:

դասելով. Վրաստանի արքունիքում նա ամբողջ հոգով կապւած է ապրում իր հայրենի տոհմի հետ. արձանագրելով հօր՝ Աշոտ Ողորմածի գեղեցիկ անունը եւ Արամանայ ու Մրենոյ եկեղեցիներում (Շիրակում) երկու կտակ է կատարում իր եւ եղբօր «Գագիկ շահանշահի արեւշատութեան» համար[1]. իսկ ամուսնու անունն անգամ չի յիշել այնտեղ: Ինչպէս Վրաց պատմութիւնն էլ լռութեամբ է անցել նրա գործերի վրայից[2]: Աշոտի դուստրն ամուսնութեամբ փոխել է բնակութիւնն ու վիճակը. բայց ոչ ազգն. որ ծնեց ու դաստիարակեց նրան:

2.- Նոյն արքունիքին հարս գնաց հայ Օրբէլեան մի օրիորդ էլ. Տարսայիճի կրտսեր դուստրը՝ **Մամքանը**. որ հարազատներն իրենց հօր մահից յետոյ կնութեան տւին Դաւիթ Զ արքայի Մանուէլ եղբօրն: Տարսայիճն ինքն էր սնուցել ու թագաւոր դարձրել (1272-ին) նրանց հօրը՝ Դեմետրէ Բ-ին. որ նոյն իշխանի խնամքին յանձնել էր իր տղայ զաւակներին էլ. Դաւիթին եւ նրա ապագայ փեսացուին՝ Մանուէլին[3]: Մամքանի եղբայրն ու պատմիչը. Նորավանքի Ս. Խաչի յիշատակարանի մէջ (1294-ից) իր հարազատների հետ խնդրում է յիշել նոյն «բարի» քրոջն էլ[4], որի ամուսնութեան յիշատակութիւնը կանխել է քան այդ: Այդ տիկնոջ զուգակիցն իր եղբօր գահակալութեան օրով պատմւում է թէ մի անգամ թաթարների պատւիրակ է գնացել[5] եւ բացի սրանից իր կամ կնոջ մասին ուրիշ տեղեկութիւն չունենք:

Զ.- **Ափխազիայի գահի վրայ**.- Վերեւում յիշւած Գագիկ շահնշահի դուստրի զաւակն **Մարիամն** էր, որ նոյնպէս պանծացնում է իր ցեղը նոյն Մարմարաչէնի արձանագրութեան մէջ. ինքն իրեն կոչելով «Ափխազիայի եւ Հայաստանի թագուհին, դուստրը մեծ Սենեքերիմի (Արծրունի) եւ թոռը Հայոց արքայի՝ Գագիկի[6]»: Այդ տիկինն ըստ այդ արձանագրողի ժամանակակից էր Մարմաշէնի հօր՝ Սոսթենեսի, որ առաջնորդ էր նշանակւած 1033 թւին[7]: Իսկ Ափխազները՝ մի աշխարհ եւ ազգ էր Կովկասեան լեռներից այն կողմ, կոչւած Լազկիք[8] կամ Սարմատացւոց աշխարհ[9], սահմանակից Վրաստանի՝ Սեւ ծովի եզերքին եւ յոյն դաւանութեամբ, որին այդ պահին իշխում էր Վրաստանի նախայիշեալ Բ Բագարատի թոռը՝ Սմբատը[10]:

Նոյն աշխարհի անւամբ կամ աւելի որոշապէս Ափխազիա էր կոչւում նաեւ Վրաստանի հարաւային մէկ մասը, սահմանակից մեր Վանանդին[11] եւ Տաշոյց[12], -ուստի «Լիպարիտն Ափխազաց» բացատրութիւնը[13], - որի առաջին թագաւորը թւում է նոյն

---

1. Ն *Սրգ*. 197. 194: 2. *Բրոս*. **Ա**, 281, 285, 286: — 3. **Օրբ**. 311-12: — 4. **Նոյն՝** 358: — 5. **Բրոս. Ա**, 621: 6. ***Շիր*** 149: 7 *Անդ*՝ 152: — 8. **Շպհ**. 80: — 9. **Ասղ**. 172, 252: — 10. **Նոյն՝** 252: — 11. **Ջու**. 109: 12 *Լատ* 6: 13. *Օրբ* 275:

Սմբատի եղբայրը՝ Բագարատ Ա[1], յիշւել է իբր ժամանակակից Մարիամի հօր՝ Սենեքերիմի[2], որ Բարսեղ Բ կայսրից մեծարւեց կիւրապաղատութեամբ եւ վախճանւեց 1015 թւին[3]. Նրան յաջորդեց որդին՝ Գուրգէնը կամ Գէորգն[4], որի կենակիցն եղաւ ըստ Վարդանի անորոշ եւ Ջւանշիրի յայտնի վկայութեան, երկրորդ ամուսնութեամբ՝ - Մարիամը[5], հօր կողմից Արծրունի եւ մօր կողմից Բագրատունի[6]: Բարսեղ կայսրն ուզեց բաժանել այն հողաբաժինները, որ շնորհել էր նրա հօրը, բայց երիտասարդ թագաւորն հազիւ 21 տարեկան, «մանկական տեսքով հպարտանալով» ըմբոստացաւ, գրգռելով յոյներին իր դէմ[7]: Եւ զանազան ընդհարումներում ծանր կորստներ կրեց նրանցից, մինչեւ հուսկ հարկադրւեց հպատակել կայսրին եւ իր երեքամեայ որդուն՝ Բագարատին, պատանդ տալ նրան[8]: Այս բոլոր ցաւագին պատահարներին ականատես էր մանկամարդ՝ Մարիամը, անկարող սանձելու ամուսնու թափը, որին փութաց վերջ դնել մահը, տասնամեայ կարճ մի թագաւորութեան, դժխուհու խնամքին թողնելով յիշւած որդու հետ՝ Դեմետրէ երէցը նախորդ կնոջից եւ երկու դուստր էլ երկրորդ ամուսնութիւնից[9]:

Բագարատը (Բ) երեք տարուց յետոյ պատանդութիւնից վերադարձից յետոյ եւ երկու տարի եւս ապրելով հօր հետ, յաջորդեց նրան ութամեայ հասակում (1025 թւին), փոխանակ իր խորթ երէց եղբօրն եւ անշուշտ իր մօր հնարագիտութեամբ: Բուն ժամանակն էր ի յայտ բերելու իր հայ հանճարը՝ Սենեքերիմի դուստրը, որ դեռ առոյգ հասակի մէջ էր եւ իբրեւ մատաղ որդու խնամակալը, իր ձեռքը վերցրեց երկրի վարչութեան ղեկը, - հետեւելով այդ մասում իր համազգի միւս կորովի սեռակիցներին[10],- եւ ամուսնուն հակառակ ու խոհական քաղաքագիտութեամբ փութաց միանգամայն խաղաղել եւ ապահովել գահը: Գնաց Կոստանդնուպոլիս համոզիչ լեզւով նորոգեց սկեսրայրի կնքած ու խզւած բարեկամութիւնը կայսրի հետ, «եւ բերեց խաղաղութեան դաշինքը եւ իր որդու կիւրապաղատութեան պատիւը» եւ սկեսրայրից աւելի նրբութեամբ մի ամուսին՝ Հեղինէին, բերեց զաւակին, կայսերական տոհմից, որ կարճակեաց էր լինելու: Այս յաջողութիւններին չհանդուրժեց Բագրատունի խորթ եղբայրը՝ Դեմետրէն, եւ գահն իրենն անելու նպատակով դիմեց Բիւզանդիոնին, որտեղում սակայն խոհեմութեամբ պահեցին այն անպատասխան[11]: Խորագէտ հայուհին հաստատուն հիմքերի վրայ էր կառուցել իր շէնքը:

---

1. Ասղ. 276. Լստ. 4: — 2. Ասղ. 277: — 3. Նոյն՝ 276. լստ. 4, 5: — 4. Ջու. 110. Լստ. 5: 5. Վրդ. 82. Ջու. 111, 112: — 6. Աստ՝ 60: — 7. Լստ. 6: — 8. Ջու. 110-11: — 9. Անդ:— 10. Աստ՝ ԺԴ. 2, 7: 11. Ջու. 111:

Յետոյ մի անգամ էլ դշխուհին պատւով երեւում է քաղաքականութեան բեմի վրայ: Տասնեւինը տարի էր անցել որդու թագաւորութիւնից, երբ նա գնաց գրաւեց Տփղիսն. այն պահին որտեղում նրա տէրը՝ Ջաֆր ամիրան մեռել էր: 1044 թուականն էր եւ Գագիկ Բ Բագրատունին նենգութեամբ գերի էր բռնւած յոյների միջոցով: Անեցիք շփոթմութեան մատնւած. խորհում էին յանձնել ոստանը Գագիկի աներորդուն Դաւիթ դունեցուն կամ Բագարատին[3]: Այդտեղ առաջ անցաւ դարձեալ արքայամայրը. որի յեզուն ու չուքը նրա նոր յաղթանակի պատճառ դարձաւ եւ «ետուն զքաղաքն Անի բնակիչք նորա ի թագուհին Մարիամ»: Այդտեղ Բագարատի զօրագլուխը՝ Լիպարիտը. խորհրդակցութեամբ ուրիշ ազատների. փորձեց թագաւորեցնել Դեմետրէին (թերեւս Անիի վրայ). եւ նրան հրաւիրեց յունական զօրքի հետ. բայց «չյաջողեց» Անկասկած նրա ծրագիրն եղծեց Սենեքերիմի նրրամիտ դուստրը: Յոյները մեկնեցին թեկնածուի հետ եւ Վեստ Սարգիսն ոստանի ինը բերդերը Բագարատին յանձնեց. մէկը միայն իրեն պահելով[4]:

Մինչ այն. Պետրոս Գետադարձ ու հայ մատնիչները բանակցում էին կայսրի հետ. քաղաքն ու նահանգն նրան վաճառելու համար: Յարմարուեցին ու կնքեցին դաշինք[5]. որի առջեւ հարկ եղաւ Մարիամին եւ որդուն նոյն տարում ոստանը յանձնել յոյներին[6]. չխանգարելու համար իրենց բարեկամութիւնը նրանց հետ եւ որին 21 տարի յետոյ տիրելու էին արաբները: Ապա Բագարատը վարչութիւնը թողնելով իր Գորգի որդուն. գնաց Մոնոմաքոս կայսրի մօտ, որ քաղաքական ծածուկ հաշւով. նրան իր մօտ պատւով պահեց երեք տարի: Այս անգամ ասպարէզ իջաւ Մարիամի մօրամօրն դուստրը՝ **Գորանդուխտը**,- թերեւս հիւանդացած կամ վախճանւած լինելով մայրը. - գնաց աղաչեց կայսրին եւ հանդիսապէս վերադարձրեց եղբօրն իր գահին. որ նա երբ մեռաւ. թողեց յիշեալ Գորգի որդուն. որ արդէն իշխանակից ունէր իրեն կենդանութեան օրով[7]:

Իր այրիութեան եւ միանգամայն իշխանական զօրութեան մէջ էր Մարիամն. երբ 1033-ին արձանագրում էր Մարմաշէնի մէջ եւ որի մէջ իր մայրենի պապի քրոջ պէս[8]. ինքն իրեն անրաժան է զգում իրեն կեանք տւող ազգից եւ միանգամայն նրան եւս թագուհի է հռչակում: Այդ հոգիով նպաստներ է կտակում յիշեալ Սոսթենէսի՝ իր Բագրատունի պապի եւ նրա կենակցի համար[9]: Յիշատակում է իր հօրն էլ եւ Սոփիայի պէս իր վրացի դարձած ամուսնու անունը ծածկում է խորհրդաւոր մի լռութեամբ.

---

1. Նոյն՝ 112: 2. Աստ՝ 297 3 Լաստ 42: — 4. Զու. 112. — 5. Լաստ. 42 — 6 Ուռ. 96 աստ՝ 367 — 7 Զու. 112. 114 8. Աստ՝ 377 9 Աստ՝ 102:

*որպէսզի ներկայում եւ ապագայում Ախալցխայի իրենով փառաւորուած գահի վրայ իր ազգի ու տոհմի փայլուն դրոշմը միայն տեսնէին իր ճակատին:*

*է-. **Օրբէլիների տան մէջ**.- Այս վրացի տոհմը, յետոյ խառնուած մեր ազգի մէջ եւ անուանի հանդիսացած, նոյնպէս իր նախընթաց խնամութիւններն ունեցաւ հայ ազնուականութեան հետ:*

1.- *Շիրակի տիրութիւնը փոփոխակի անցնելով արաբներին ու վրացիներին,* 1161-*ին վերջնականապէս Գէորգի թագաւորի ձեռքով վիճակւեց Օրբելեան Սմբատի որդուն՝ սպասալար ամիր Իւանէին*[1], *որի «իշխանութիւնն ու երկիւղն» հասնում էր նաեւ ուրիշ կողմեր, գրում է մի յիշատակագիր* 1172-*ին*[2]: *Նրա կենակիցը՝ **Թուսուգան Բագրատունին**, Աղւանից Կիւրիկէ Գ արքայի դուստրն*[3] *էր, որ այդ կերպով գոհունակութիւնն ունեցաւ իր հայրենի աշխարհի մէջ ապրելու իբրեւ տիկինն նրա, գործելու եւ զարդարելու իր նախնիների դաստակերտները*[4]: *Իսկ իր դուստրը՝ **Խութլու խաթունին** հարսնացրեց Վայոց ձորի տիրոջ՝ Պռօշին*[5]: *Երջանիկ էր տիկինն իր ապարէզի մէջ, որ դժբախտաբար չտեւեց մինչեւ վերջ ամուսնու անխոհեմութեան պատճառով:*

*Իւանէն* 1177-*ին միացաւ ազգակից իշխանների հետ Գէորգի թագաւորին գահից իջեցնելու եւ իշխանութիւնը նրա եղբօրորդուն եւ օրինաւոր ժառանգին՝ Դեմնային, որի խնամակալն էր ինքը, տալու համար: Դաւը յայտնի դարձաւ մատնութեամբ: Գէորգին ամրացաւ Տփղիսի բերդի մէջ: Դաւադիրներից որոշները հետզհետէ բաժանւեցին ու յարեցին արքային, զօրացնելով նրա կողմն եւ սկսեցին դէմ գնալ Իւանէին, որն ստիպւած ապաստանեց Լոռէի մէջ: Դեմնան դասալիք եղաւ եւ ապաւինեց հօրեղբօրը, որ հրաւիրեց նրա խնամակալին եւս զինաթափ լինել, երդւելով հաշտւել հետը: Հաւատաց սպասալարն ու գնաց նրա մօտ եւ հազիւ հասած Գէորգին բռնեց ու փորեց աչքերը: Նոյն խժդժութեամբ վարւելով նաեւ գահաժառանգի հետ: Իւանէի եղբօրը, որդուն եւ ազգականներին կոտորեց. «նաեւ կանանց ջնջել ու կորստի մատնեց», անճիտելու համար ամբողջ տոհմը*[6]: *Բարեբախտաբար Թուսուգանն ազատւել է, որ* 1181-*ին Սանահինի գաւթի կառուցման մասնակից է լինում, իսկ* 1185-*ին արդէն հանգչում է իր գերեզմանում*[7]: *Այս նոյնը համարեցինք համանուն հաւատաւորի հետ*[8]:

2.- ***Այդ կոտորածից ազատւեց Իւանէի եղբօր Լիպարիտի որդին՝ Ելիկումը**, որ մտաւ Պարսկաստանի ծառայութեան մէջ եւ սիրելի դարձաւ նրանց: Եւ չուզելով*

---

1. *Օրբ*. 279: — 2. ***Հյթ***. 382: — 3. *Աստ*՝ 56: — 4. *Աստ*՝ 194, 221-2: — 5. *Աստ*՝ 107, 207: 6. *Օրբ*. 280-85: — 7. *Աստ*՝ 222: — 8. *Աստ*՝ 170:

*ուրացութեամբ փեսայանալ սուլթանին. ինչպէս առաջարկում էին. խնդրեց եւ Երնջակի բերդը. Ճաշակն ու Նախջաւանի մէկ մասը ստացաւ իբր իշխանութիւն։ Իր հին հայրենիքը՝ Վրաստանն. այլեւս իր համար չէր եւ Հայաստանն իր նոր հայրենիքը դարձրեց. Հոգեպէս կապուեց Սիւնեաց Ստեփանոս եպիսկոպոսի հետ Յետոյ ուզելով ամուսնանալ. հարսնութեան խնդրեց **Խաթունին**. դուստրը նոյն եպիսկոպոսի քրոջ. որ ճաշկեցի Արաս անունով ազատի կինն էր. Այդ միութիւնից ծնուեց Լիպարիտը՝ Ապա Ելիկումն օգնութեան գնալով սուլթանի որդուն Գանձակի մէջ. մահացաւ կռւում եւ Խաթունն ու մանուկն անտէր մնացին։ Քաղաքացիները նրանց պահեցին Նախջաւանի մէջ «որպէս պատանդի». անշուշտ նրա հօր իրենց դէմ մարտակցութեան պատճառով։ Բայց յետոյ մի տաճիկ «բռնաբարելով Խաթունին. իր տան մէջ փակեց եւ իր կինը դարձրեց»։*

*Մանուկն աւելի քան տասը տարի մնաց այնտեղ. մինչեւ Զաքարէ եւ Իւանէ սպասալարները փնտռեցին եւ իմացան նրա գոյութեան մասին եւ եպիսկոպոսին զգացնել տուին. որ գնաց քաղաքի մօտ. բարեկամների հետ համաձայնեց։ Եւ մի գիշեր մօրն ու պատանեակին պարիսպից իջեցրին եւ տարուեցին Վայոց ձոր։ Մայրը ծածկուեց .- գուցէ ուղղակի դէպի անապատ ուղղեց քայլերը[1]. - իսկ տղան գնաց Իւանէի մօտ. որ պատուեց նրան եւ ուզեց փեսայացնել իր **Թամթի** (կամ Թամթա) դուստրին. - որին ուրիշ յարկ էր պահուած։ - Իր տան գործակալը՝ Բուբան. աւելի արթուն գտնուեց. համոզեց Լիպարիտին ու կապեց իր դստեր՝ «ամենօրհնեալ եւ գեղեցիկ» **Ասփայի** հետ. որի համար Իւանէն զայրացաւ. ապա լռեց. թողնելով երիտասարդին Սիւնեաց կողմերի իշխանութիւնը։ Այդ ամուսնութիւնից ծնուեցին հինգ որդի. որոնցից մէկը Տարսայիճն էր. Սիւնեաց պատմիչի հայրը[2]. իսկ Ասփան վախճանուեց 1263-ին[3]։ Այսպէս Օրբէլեան տոհմը. հաստատուում էր ու չաղուում էր հայերի հետ շնորհիւ մեր Խաթունին եւ Սիւնեաց խաւարած աշխարհում վառում էր նոր ու պայծառ մի ճրագ։*

*Վրացիների հետ խնամութեան համեմատաբար ցանցառ օրինակներն են սրանք. որ եկեղեցական բաժանումից[4] յետոյ ենք գտնում. որ երեւում է թէ բնական արգելք էր կազմում ընտանեկան միութեան։ Արդէն քաղկեդոնացիների հետ ամուսնութեան արգելքներ էլ եղել են մեզ մօտ. թէպէտ ոչ միշտ յարգուած[5]։ Կիլիկիան կրօնական արգելքը բոլորովին վերցրեց ու միացաւ արեւմտեան եկեղեցու հետ[6]. ուստի իր խնամիական կապերն էլ աւելի բազմաթիւ են արեւմտեան իշխանների հետ։*

1. *Աստ*՝ 171։ 2. *Օրբ*. 287-91. - 3. ***Օրբ***. 305։ — 4. *Աստ*՝ 144։ — 5. *Աստ*՝ 372։ — 6. *Աստ*՝ 290-91։

Ը.- **Երուսաղէմի գահի վրայ**.- Այնտեղ քրիստոնեայ թագաւորութիւնը հաստատուեց 1099 թուականին, երբ առաջին խաչակիրները գրաւեցին այն արաբներից եւ իրենց եւրոպացի քաջ պետին՝ Գոփրեդին, եւրոպացի ազգով, թագաւոր կարգեցին: Մի գահ, որ կանգուն մնաց 88 տարի, մինչեւ Սալահատինը տապալեց այն: Այդ շրջանին Հայաստանն երեք թագուհի ընծայեց Ս. քաղաքին. **Արտա, Մորփիա եւ Ռիթա**:

1.- Գահակալութեան երկրորդ տարում մեռաւ Գոփրեդն եւ ազատանին նրա յաջորդն ընտրեց եղբօրն ու Եդեսիայի կոմս Բալդուինին (Ա)[1], որին հրաւիրեց ու մեծ ընդունելութիւն կազմակերպեց եւ նոյն տարուայ ծննդեան տօնին թագաւոր պսակուեց:

Նրա՛ կենակցի հայազգի **Արտայի**[2], կոմսական պսակը կորսնց[illegible] արքան հետզհետէ ազատեց Պաղեստինի քաղաքներն այլազգիների ձեռքից: Եգիպտոսի թագաւորն, որին պատկանում էր Պաղեստինը, գայրացած՝ հզօր զօրութեամբ յարձակուեց Բալդուինի վրայ, որ թէպէտ իրենից աւելի թոյլ, բայց յաջողեց ջախջախել ու ցրել նրա բանակը: Իր անձն ապահով զգալով, արձակեց զօրքերը: Թշնամիներն օգտուեցին այդ անխոհեմութիւնից: Նորից կազմուեցին ու խուժեցին Բալդուինի վրայ, որ մահացու հարուած ընդունելով իր սակաւաթիւ զօրքերի վրայ, մազապուրծ փախաւ, հասաւ Երուսաղէմ, զօրացաւ ու նորից սկսեց իր յարձակումները[3]:

Արքան մարմնեղ ու բարձրահասակ մարդ էր, ասում է Տիւրոսի եպիսկոպոսը՝ Վիլլերմոսը: Մազերն ու մօրուքը թուխ, սպիտակամորթ, արծուաքիթ, ծանրաբարոյ եւ հանդարտախօս, բայց ստրուկ հեշտախտութեան[4], ի դժբախտութիւն Արտայի: Ամուսնութիւնից եօթ տարի յետոյ (1104-ին) արձակեց, ասում է նոյն պատմիչը, իր օրինաւոր կնոջը՝ հակառակ եկեղեցական կանոններին, «առանց ծանուցելու պատճառը, առանց համոզման եւ առանց խոստովանութեան» կնոջը, եւ բռնադատեց հաւատաւոր դառնալ Ս. Աննայի մենաստանի մէջ, որտեղում երբեմնի Պրոպատիկէ աւազանն էր: Այնտեղ երեք կամ չորս աղքատ կանայք եւս կային, նուիրուած հոգեւոր կեանքին, որոնց կենցաղը դիւրին դարձրեց արքան Արտայի պատճառով: Արձակման մասին զանազան զրոյցներ կային: Ըստ որոշների՝ թագաւորի նպատակն էր աւելի ազնուական եւ հարուստ մի կին ունենալ, դարմանելու համար իր տնտեսական անձկութիւնն եւ ըստ ուրիշների՝ որպէս թէ թագուհին թերանում էր ամուսնական հաւատարմութեան նկատմամբ: Այս վերջին պարագային՝ որպէս ապաքէն նախ Բալդուինն ինքն իրեն պէտք էր արձակէր: Մինչեւ իսկ պատմիչների անմիաբանութիւնը չի ապահովում հայուհու յանցաւոր լինելը:

---

1. Աստ՝ Հմ. Ժ, 1: — 2. Աստ՝ 400: — 3. Հմնք. Ե, 864-66: — 4. Վիլլ. 402-3:

*Սակայն յայտնի է, որ Արտան չհաշտուեց մենաստանի որմերի հետ, թէպէտ սկզբից կրօնաւորութար եւ պատուով ապրեց այնտեղ: Պատրւակելով խնդրեց գնալ Կոստանդնուպոլիս իր ազգականների մօտ, որպէս թէ կուսանոցի համար նպաստ հաւաքելու: Այդպէս մեկնելուց յետոյ «կատարեց, ասում է նոյն պատմիչը, անպարկեշտ ու անմաքուր գործեր: Վանական զգեստը հանեց, անձնատուր եղաւ ամէն անցորդի, չակնածելով ոչ իր պատուից եւ ոչ արքայական բարձրութիւնից, որ ունեցաւ[1]»: Իսկ Բալդուինը շարունակեց իր յաղթանակներն ու տիրապետութիւնը: 1113-ին խնդրեց Սիկիլիայի ամենափարթամ այրի կոմսուհու՝ Ադելայդի ձեռքը: Նրա հետ երեք տարի կենակցեց: 1116-ին ծանրապէս հիւանդանալով ու մահանալուց կասկածելով զղջաց եւ ըստ իրեն ասուած խորհրդին նրան արձակեց[2], ապացոյց՝ այն որ Արտան ապրում էր դեռ, ուստի երկրորդ պսակն անվաւեր էր համարուած: Իսկ երկու տարի յետոյ արքան խսկապէս մեկնեց աշխարհից:*

*Ստո՞յգ է Տիւրոսի եպիսկոպոսի տուած տեղեկութիւնը նրա հայ կենակցի վերջին այպանելի վարքի մասին, թէ նախորդ ամբաստանութեան պէս արդիւնք է հակառակասէր գրողների, որոնց պատճառն էր նրա փախուստը: Ի՞նչպէս նրա բարեպաշտ հայրը՝ Թորոս Ա-ն, որ այդ շրջանին իշխում էր Կիլիկիայում[3], կարող էր թոյլտալ այդպիսի մի նախատինք իր տոհմին եւ անուանը: Արդարեւ անհաւատալի է թւում այդ պատմուածը: Հայ բարքերի դէմ երգիծական նպատակ է ցոյց տալիս նաեւ ԹՀ. Վիտրեցու պատմածը՝ թէ Թորոսն իր դուստրը տալու համար պայման էր դրել փեսային՝ աճեցնել մօրուսը, որ սովորական էր հայերի մէջ եւ նա մի օր յուր է ուղարկում աներոջը թէ պարտականմնալով ստիպուած է սափրել այտերը: Թորոսը չտապում է 33,000 բիզանդ ոսկի յղել եւ աղաչել, որ դուստրին խնայի այդ նախատինքը[4]: Այս երգիծանքը կերտող միջնադարեաններից ամէն խեղում կարելի էր ակնկալել եւ մենք վերապահութեամբ ենք լսելու դրանք:*

2.- *Վիլլերմոսը պատմում է՝ թէ Եդեսիայի կոմսը՝ Բալդուին (Բ), որդի Ռեթելի կոմսի Հուգոնի, եւ փառաւոր ու բոլորի կողմից գովուած մի մարդ, բարեպաշտ, իր ժողովրդի քաջ առաջնորդ եւ երկիւղալի թշնամիների համար, լինելով ամուրի՝ ամուսնացաւ (1102-ին) մեծ օժիտ ունեցող* ***Մորփիայի*** *հետ, որը Մելետենոյ կոմսի՝ Գաբրիէլի դուստրն էր, որ «ազգով, լեզուով ու հանդերձով հայ էր եւ հաւատով յոյն[5]», - Մտ. Ուռհայեցիից* ***Խաւրիլ*** *կոչուած յունական հնչիւնով.- եւ որ 1096-ին* ***Խլիճասլանի*** *յարձակման ժամանակ «ամենայն քաջութեամբ կանգնելով ընդդէմ սուլթանին», ամօթահար իր աշխարհը վերադարձրեց[6]:*

---

1. *Վիլ.* 451-52:  2. *Նոյն՝* 506·  3. ***Աստ՝*** 101: — 4. ***Միխ.*** 47, ծն. 4: — 5. ***Վիլ.*** 437: — 6. ***Ուռ.*** 306:

*Մեր առջեւ ունենք ուրեմն հարազատ հայ մի ընտանիք եւ յանձին Մորփիայի՝ զուտ մի հայուհի*

*Առաջին խաչակրութեանը մասնակցել էր Բալդուինն, որին վիճակուել էր Եդեսիան, յաջորդելով վերոյիշեալ համանուն ազգականին, երբ Երուսաղէմի թագաւորն եղաւ նա. 1104-ին Բալդուինն եւ իր զինակիցները յարձակում կրեցին Սարակինոսներից Նրանց նախ յաղթեցին, յետոյ պարտուեցին: Եդեսիոյ կոմսը գերի ընկնելով նրանց ձեռքը, տարուեց Մուսուլ: Այնտեղ չորս տարի մնաց եւ մեծ փրկանքով ազատուեց (1108-ին): Այդ բոլոր արկածներում, որ վերջինները չեղան, Մորփիան տառապեց հոգեպէս ամուսնու հետ, բայց իր տագնապները հեշտութեամբ մոռացաւ, երբ 1118-ին Երուսաղէմի թագաւորը՝ Բալդուին Ա վախճանուելով, նրա հրամանով Ս. քաղաքի գահի վրայ գնաց բազմելու ամուսնու հետ, որ յաջորդ տարում զատկի օրը գլխին հանդիսապէս ընդունեց թագը Բեթղեհէմի մէջ:*

*Սկսած իրենց միութիւնից, հետզհետէ նրանց ամուսնական յարկը զարդարեցին չորս դուստրներ, որոնք յիշւում են **Մելիսանդ** որ մի օր նստելու էր հայրենի ու մայրենի աթոռի վրայ՝ Անգերսի[1] կոմսի՝ Փուլկիի հետ. **Ալիծ**՝ որ հարսնութեան գնալու էր Անտիոքի Բոհեմոնդ իշխանին. **Հոտիերտ**, որ կեանքը կապելու էր Տրիպոլսի Ռայմոնդ Ա կոմսի հետ[2] եւ վերջինն **Իւէտը** (կամ **Ճաւիէ**)[3], որ հիմնելու ու մտնելու էր Բեթանիայի Ս. Ղազար կուսանոցը, վկայ հանդիսանալու այն բարեպաշտութեանն, որ իշխում էր հայրենի տանմէջ եւ որի կարեւորագոյն բաժինը պատկանում էր անկասկած իր հայածին մօրը:*

*Բալդուինը հազիւ էր սկսել իր նոր պաշտօնը, հարկադրուեց Ազոտի եւ ապա Անտիոքի մօտ ընդհարումներ ունենալ արաբների ու Սարակինոսների հետ, որոնց խորտակեց ու ցրեց: 1122-ին երբ նորից ընդհարւում էր նրանց դէմ, յանկարծահաս յարձակում կրելով գերի բռնուեց ու բանտարկուեց Խարբերդի ամրոցում: Երուսաղէմն ի լուր այդ դժբախտութեան մեծ վիշտ ապրեց: Քիչ յետոյ իմացուեց, որ ծպտւած յիսուն հայեր մտնելով բերդը պահակազունդը կոտորել եւ ազատել էին իրենց փեսայ թագաւորին ու միւս գերիներին. բայց այլազգիներն իսկոյն վերադարձել ու պաշարել էին բերդը: Այն ժամանակ ասպետների մի բազմութիւն շտապեցին զօրք հաւաքել Եդեսիայից եւ Անտիոքից եւ մինչ շտապում էին օգնութեան հասնելու, լսեցին բերդի անկումը, հայերի կրած կոտորածն եւ արքայի փոխադրութիւնը Խառանի ամրոցը: Ցուսաբեկ վերադարձան Երուսաղէմ, որտեղ ստիպուեցին ճակատել Ասկաղոնի Սարակինոսների դէմ, որ եկել ու պաշարել էին Ցոպպէին, պղտոր ջրում որսալու*

---

1. Angers: — 2. **Հնգ. Հյք. Ա**, 177: — 3. **Անդ**:

նպատակով. բայց ծանր հարուած ընդունեցին ու կորակոր փախուստի դիմեցին: Իսկ վենետական տորմիղը Դոմինիկոս Միքիէլի դքսի առաջնորդութեամբ ծովից հասաւ ու խորտակեց մահմեդականների նաւերը, որ փախուստի էին դիմում: Մորփիան ամուսնու գերութեամբ համակուեց նոր վշտով, մինչեւ նա փրկանքով երկու տարուց յետոյ վերադարձաւ (1124), եւ շարունակեց իր պատերազմները, այլազգիներին խոպառ հալածելու համար քրիստոնեաների սահմաններից: 1131-ին էլ կնքեց իր կեանքը: Մեռնելուց առաջ հագնելով Ս. Գերեզմանի եկեղեցու կանոնականաց համազգեստը եւ թաղուելով նոյն տաճարի մէջ: Այս ամէնը մեզ աւանդում են Վիլյերմոսն եւ ուրիշներ[1]:

Հոգեպէս ու քաջութեամբ բարձր մի կենակցի էր վիճակուած Մորփիային, մինչ իր գործունէութեան ու վախճանի մասին ոչինչ ենք իմանում պատմիչներից:

3.- Երուսաղէմի երրորդ - բայց տիտղոսաւոր - հայ թագուհին մեծն Լեւոնի երէց դուստրը՝ **Ռիթան** էր: Բրիէնի կոմսերից նշանաւոր է Յոհանը՝ Բ Եղւարդի երրորդ որդին, որ որոշ ժամանակ փոխանորդաբար վարելուց յետոյ հայրենի գաւառը, Ս. քաղաքի թագաւորութեան պարոնայքը նրան հրաւիրեցին իրենց հանգուցեալ Լիւսինեան Գուիդոն արքայի մանկամարդ դստրի՝ Մարիամ թագուհու փեսայութեանը: Գնաց հասաւ Յոհան Ակքովի (յետոյ կոչուած Աքքա կամ Ս. Յոհան Ակրայի եւ այժմ Ակրա), Սիւրիայի քաղաքը, ուր այդ շրջանում Երուսաղէմի խախտուած գահն էր հաստատուած: Ընդունեց նախ ամուսնութեան եւ յետոյ արքայութեան պսակները Տիւրոսի մէջ 1210 թուականին: Մարիամը հազիւ երկու տարի ապրեց նրա հետ ու մեռաւ:

Յոհանը խորհելով նորոգել դշխուհու գահը, անտեսեց բոլոր լատին արքունիքները եւ հայեացքը դարձրեց Հայոց հզօր Առիւծի տանը, ուր ծաղկում էր Ռիթան: 1214-ին, ասում է Կիլիկիայի Տարեգիրքը, «յետոյ Լեւոն թագաւորն իր դուստր Ռիթային Երուսաղէմի թագաւոր Ճւանին, որ սկայաձեւ եւ աստուածապաշտութեամբ կատարեալ, քաջամարտիկ եւ արիագոյն պատերազմում միայն էր»: Առաջս Հիւանդանոցի ասպետների առաջնորդն նաւերով եկաւ «Աքքայի գետաբերանն՝ Տարսոնի եւ ամուսնութեան պայմանը կապեցին մայստրն եւ թագաւորը (Լեւոն) եւ առնելով տարան պսակեցին Աքքայում[2]»: Ռուբինեանը դստրին արքայավայել ճոխութեամբ օժիտ տուեց[3]: Հերակլես կայսրի պատմիչն՝ **Ստեփանին**, կոչում է հարսնացուն[4], որ երկանուն է թւում, մինչ Եռնուլն անանուն է թողնում[5]: Մեր օրիորդը հօր կողմից անտեսւած, մօր մեղքերի պատճառով[6],

---

1. **Պատմ. Խչկ.** Ա. 443-44 եւն. Գ. 409, 443 եւն. Դ. 254, 614 եւն. **Հմնգ. Ե.** 866-68. **Սխ.** 47. ծն. 5: — 2. Տրգ. Կիլ. 306: 3. Աստ՝ 34. 4 **Հրկլ.** 313 եւն: — 5. **Եռն.** 411: — 6. **Աստ՝** 46:

իր երջանկութիւնը գտնելու չգնաց Ակքայի այդ վաթսունվեցամեայ իշխող կենակցութեան մէջ:

Յոհանը մեծութեան եւ իր գահի նախկին փառքին տենչացող, իր շուրջ հաւաքեց թագաւորների եւ իշխանների մի բազմութիւն, մեծ ասպատակութիւն կազմելու համար Եգիպտացիների դէմ, որ Երուսաղէմը գրաւած էին պահում: Երկար ժամանակ պաշարեց նախ Դամիաթա քաղաքը (1219-ին), որ Եգիպտոսի մուտքն իր առջեւ բացում էր. բայց նախանձն, որ իր զինակիցներն ունեցան իր հանդէպ, խափանեց նրա ծրագիրը: Նոյն տարում մի նոր բախտախնդրութիւն ձեռնարկեց: Երբ նրա աները՝ մեծն Լեւոնը, վախճանուեց, գահը թողնելով կրտսեր **Զապէլին**, Յոհանը մտածեց, որ յաջորդութեան իրաւունքը պատկանում էր նրա անդրանիկին՝ Ռիթային: Հետեւաբար Կիլիկիայից գահի վրայ բազմեցնել ուզեց իրենց դեռարբոյս որդուն՝ Կոստանդնին եւ ինքը խնամակալ լինել նրան: Այս նպատակով խնդրելով եւ ընդունելով նաեւ Ոնորիոս Գ պապի հաւանութեան գիրը, սակայն չհասաւ նպատակին[1]: Ըստ Սանուդոյին Յոհանն անձամբ գնաց Կիլիկիա այդ գործի համար եւ մինչ խորհում էր կնոջն էլ այնտեղ բերել, թագուհին մեռաւ եւ տասնհինգ օր յետոյ նաեւ որդին, ինչպէս գրում է Հերակլի պատմութիւնն եւս, որի տարբեր մէկ ընթերցուածն ասում է դուստր մանուկ Եռնուլի հետ եւ Ռիթան որպէս թէ խափանելու համար նրա գահակալութիւնը, մտածում է թունաւորել նրան: Թագաւորն իմանալով զայրացած կօշիկի խթանով այնքան հարւածում է կնոջն, որ մեռնում եւ ինքը ձեռնունայն վերադառնում է[2]: Սակայն պատմիչների անմիաբանութիւնն խսկ անհաւատալի է թւում երկու կողմին վերագրուած այդ անգթութիւնը: Միջին դարը հաճոյք էր զգում վէպեր ստեղծելու մէջ: Երկու տարի յետոյ թագաւորն երրորդ անգամ ամուսնացաւ: Եգիպտացիների դէմ իր պատերազմը շարունակեց, որը իր անյաջողութեամբ վերջացաւ: Եւ իր ծերացած սրտի վերջին մխիթարութիւնն եղաւ Բիւզանդիոնի թագն իր գլխին ընդունելը 1230-ին եւ իր յաղթանակը Նիկիայի նախանձոտ յոյն կայսեր Յհ. Վատակեսի դէմ, որի պտուղն երկար չկարողացաւ վայելել, վախճանուելով 1236 թւին[3]:

Թ.- **Կիպրոսի գահի վրայ.**- Երուսաղէմի պանդխտական գահն 1192-ին Ակքոյից փոխադրուեց Կիպրոս, ուր յաջորդաբար իշխեց պատմութեան մէջ նշանաւոր անգլիացի Լիւսինեան տոհմը մինչեւ 1489-ը, եւ որի գահակալները կրում էին կզզու եւ միանգամայն Երուսաղէմի թագաւորութեան տիտղոսները: Երկու հայուհի եւս սրան նւիրեց Կիլիկիան, **Թեֆանոյին** եւ **Յիմիին**, իսկ երրորդն էլ **Զապլոււն**, իբրեւ տիկին

1. ***Սխ.*** 525: — 2. ***Հրկլ.*** 349, 344. ***Եռն.*** 427: — 3. ***Հմնգ. Ը***, 13-15:

*Տիրոսի եւ ապրելով Կիպրոսի մէջ: Նրա կենսագրութիւնը ճոխ է օտար պատմիչների մօտ եւ հայուհու ժիր գործունէութեան կատարեալ ծանօթութիւնն է տալիս մեզ Վերջապէս Կիպրոսի մէջ ապրեց ու գործեց չորրորդ հայուհին էլ՝ **Ֆիմին**[1]. միւսների առհմակիցը.*

1.- *Յիշեալ Լուսինեաններից էր Ա Հենրիկն. որ իննամսեայ էր. երբ կորսնցրեց հօրը՝ Հուգոյին. եւ մնաց զանազան խնամակալների ձեռքում. մինչեւ* 1229-*ին ամուսնացաւ Մոնտսերրատի մարքիզի դստեր՝ Ալիսի հետ: Իբլինացի Յոհաննի հետ միացաւ՝ ընդդէմ Փրեդերիկ Բ կայսրի. որի մասին յետոյ խօսելու ենք: Մի պատերազմ. որ նախ ձախողեց. յետոյ յաջողութեամբ վերջացաւ:* 1232-*ին կենակիցը վախճանուեց եւ հինգ տարի յետոյ* (1238-*ին*). *իրեն ամուսնութեան խնդրեց մեր Ա Հեթումի քրոջը՝ **Ստեփանիին**[2] կամ ռամկօրէն **Թեֆանոյին** եւ «նրան թագուհի պսակեց». ասում է Հերակլի պատմութիւնը:* 1246-*ին մի նաւատորմիղ օգնութեան յղեց Ասկաղոն. Հիւանդանոցի ասպետներին. Սարակինոսների դէմ. որոնց տորմիղը փոթորկից ցամաք գցուեց ու խորտակուեց գիշերով, հարկ չթողնելով քրիստոնեաներին բախուելու նրանց հետ:*

*Թեֆանոն կարճակեաց եղաւ եւ չգիտենք երբ կնքեց մահկանացուն: Ծանօթ են թագաւորի երրորդ ամուսնութիւնն* 1250-*ին*, *որ մեր օրիորդի հետ պսակուելուց տասներկու տարի յետոյ էր եւ արքայի մահը՝* 1253-*ին*[3]*: Նոյն տիկնոջ եղբայրն՝ Յոհաննէս արքեպիսկոպոսը,* 1263-*ին յիշում է մահուանից յետոյ «զերջանիկ քոյրսն մեր **զԹեֆանաւ** արքայուհի զԿիպռաւսայ». եւ **Կալամանին**, որին յետոյ պիտի հանդիպենք:* 1266-*ին նորից «զԹեֆանաւ դշխոյ Կիպռաւսայ», նրան յանձնելով ընթերցողների աղօթքին*[4]*:*

2.- *Հեթումի ժամանակագրութեան յրացուցիչն*[5] *տեղեկութիւններ ունի* 1287 *թուականից «Այս տարում պր. Թորոսի քոյրն ամուսնացաւ Կիպրոսի թագաւորի հետ*[6]*»: Այդ Թորոսն այդպէս սոսկարար յիշուած իբրեւ յայտնի դէմք. անկասկած Բ Լեւոնի որդիներից մէկն էր. իշխանակից եւ ապա եղբօր՝ Բ Հեթումի. յաջորդը: Նրանց եօթը քոյրերից երկուսը վաղամեռիկ եղան*[7]*, իսկ երեքի կեանքը ծանօթ է*[8]*: Մնում են **Ֆիմին*** (*ծն.* 1266-*ին*) *ու **Սպիլն*** (*ծն.* 1276-*ին*), *որոնց ընկերական վիճակի մասին տեղեկութիւն չունենք եւ նրանցից մէկն անկասկած արքայուհին էր: Բնականաբար առաջինն. որ այդ թուականին արդէն քսանեւմէկ տարեկան էր, մինչ երկրորդը հազիւ տաս տարեկան եւ բնական կարգով դեռ անյարմար էր ամուսնութեան:*

---

1. *Աստ՝* 172: 2. ***Միս.*** 75. 3 ***Հրկլ.*** 360, 361, 367, 386, 392-401, 408, 433, 439, 441: — 4. ***Հաբ. յշ*:**
5. ***Աստ՝*** 79-80: 6 ***Ժմ Օշնի,*** 100: — 7. ***Աստ՝*** 80: — 8. ***Աստ՝*** 69, 368:

Իսկ Կիպրոսի գահի վրայ այդ ժամանակ նստում էր Հենրիկ Բ-ն. որ 1285-ին յաջորդեց իր հանգուցեալ եղբօրորդուն՝ Յոհաննուն. միամեայ թագաւորին. Հետեւեալ տարւայ վերափոխման տօնին. Տիւրոսի մէջ. պսակւեց արքայական թագով[1]: «Անգրծովեան տոհմերն» ոչ Լիւսինեանց եւ ոչ Ռուբինեանց ազգահամարի մէջ այդ Հենրիկի կինը յիշւած չէ[2]. ուստի մեր ժամանակագրի այդ տեղեկութիւնն ոչ միայն չի հերքւում. այլ արժէքաւոր է: Նոյն ինքն Հենրիկի մէկ կտակագրի մէջ (1306-ից) իրր հաստատու նշանակւած են՝ իր մայրը. քոյրերն ու ազգականները. իսկ կինն եւ որդիներն ոչ[3]: Ակներեւ է. որ Զիմին նախքան ամուսինն անզաւակ մահացել էր: Ամուսինն. որ Կիլիկիայում աքսորւած էր (1310-ից). ազատւելուց յետոյ կրկին ամուսնացաւ[4] եւ իր տկարութեան պատճառով անզաւակ թողեց երկրորդ կնոջն՝ **Կոստանդիայի**ն էլ. ինչպէս վկայում է նրա եղբայրն՝ Արագոնիի Յակոբ թագաւորը: Բայց տիկինն. որ Հենրիկից յետոյ դեռ մանկամարդ էր. երկրորդ անգամ ամուսնացաւ մեր Դ Լեւոնի հետ[5]. նրան եւս անժառանգ թողեց:

Թորոսն իր քրոջը Հենրիկին տալու ժամանակ, նրա **Մարկրիտ** քրոջ հետ էլ ինքն էր ամուսնացել[6]: Կիպրոսի այդ տէրը լուսնոտութեամբ վարակւած ու անդորրութիւն սիրող. չատ զբաղւեց երուսաղէմեան սահմաններով. որոնք իր համար տագնապի աղբիւր էին, ուստի ամփոփւեց կղզու մէջ, սիրոյ վարչութիւնը յանձնելով իր քեռուն՝ Փիլիպպոս իբլինացուն: Սակայն Կիպրոսի մէջ Սարակինոսների սուլթանը՝ Քելաւուն, իրեն հանգիստ չթողեց: 1287-ին գրաւեց նրա մնացած քաղաքներից Լաւոդիկէն եւ երկու տարուց յետոյ Տրիպոլիսը: Հենրիկը համակերպւեց իր բախտի հետ եւ թշնամու հետ տասնամեայ զինադադար կնքեց[7]: Բայց իր ողբերգութիւնն այդպիսով չվերջացաւ:

**Ժ.- Տիւրոսի տան մէջ.** – 1. – Նոյն թւականին՝ յիշեալ Փիլիպոսի պաշտօնը Հենրիկը յանձնեց իր կրտսեր եղբօրը՝ Ամորիկին կամ Ալմերիկոսին. որ Տիւրոսի (կամ Սրոյ) իշխանն էր. հին Փիւնիկի նշանաւոր քաղաքներից մէկը էր. Սիրիոյ ափերի վրայ. եւ այնտեղ էր նստում[8]: Քաղաքը 1124-ից եգիպտացիների ձեռքից գրաււած մի կոմսութիւն էր՝ Երուսաղէմի թագաւորութեան ներքոյ եւ տէրերը փոփոխական: Սուրբ քաղաքի վախճանը հետզհետէ մօտենում էր եւ արքան օգնութեան կոչ յղեց արեւմուտք. որ միայն Նիկողոս Դ պապը պատասխանեց նրա կոչին, պատրաստեց ու յղեց վենետիկեան մի տորմիղ: Հենրիկին խրախուսեց Ս. քաղաքի արքայութեան մնացորդը Սիրիոյ մէջ խսպառ չկորցնել: Բայց իզուր. 1291-ին քրիստոնեաների մի անխոհեմ

---

1. Մաս. Ա, 475, 480: — 2. Տոհմք. 444, 445: — 3. Մաս. Բ, 101: — 4. Բուս. 249: 5. Մաս. Գ, 718. ստտ՝ 46: — 6. Պատմ. Սբ. 212. Տոհմք, 445. ստտ՝ 69: — 7. Մաս. Ա, 481-84: — 8. Մաս. Ա. 485:

վարմունք բաւական եղաւ Քելաւունին խզելու զինադադարը եւ սկսեց մի բանակ ուղարկել գրաւելու նախկին արքայանիստն՝ Ակքոն։ Ինքը մեռաւ եւ որդին՝ Մելիք Աշրաֆ Խալիլը, շարունակեց արշաւանքը։

Ամորիկը բերդում ամրացած էր, իսկ քրիստոնեաներն իրար հետ անմիաբան. ջանում էին որքան հնարաւոր էր դիմադրել։ Ամորիկը եղբօր մօտ չտապեց, որը վտանգուած քաղաքին օգնութեան գնաց, բայց նրա փրկութիւնից յուսահատուած, գիշերով մեկնեց Կիպրոս եւ Ակքոն ընկաւ եգիպտացիների ձեռքը։ Կայֆան անձնատուր եղաւ, տիւրացիները լքելով իրենց քաղաքն, անցան Կիպրոս։ Սիդոնը նրանց օրինակին հետեւեց. Բերութը նոյնպէս ընկաւ թշնամիների հարուածներից։ Կարմեղեան լեռան բերդն ու Տորտոս կղզիները նմանապէս նուաճուեցին։ Այս բոլոր անկումներն արագաբար իրար յաջորդեցին եւ Երուսաղէմի թագաւորութեան սոսկ անունը մնաց Կիպրոսի գահի վրայ[1]։ Հենրիկը «շատ խոհական անձնաւորութիւն, արդար թագաւոր ու բարի քրիստոնեայ», ինչպէս վկայում է Բուստրոնը[2]. համբերաց այդ բոլոր ձախորդութիւններին, որոնք նպաստեցին իր վարկաբեկութեանը, մինչ կրտսերն՝ Ամորիկը, գնալով շահում էր ժողովրդի սէրը։

Չգիտենք 1293 թուականին արդեօք **Յիմի** թագուհին դեռ ապրո՞ւմ էր, երբ Կիպրոսի արքայական տնում երեւաց երրորդ հայուհին՝ **Զապլունը** (կամ Զապէլ), նոյն թագուհու քանամեայ կրտսեր քոյրը[3], հարսնութեան գալով նոյն Ամորիկին[4] եւ տիտղոսաւոր տիկին նուաճուած Տիւրոսի։ Նրան մի կարեւոր դեր էր պահուած նոյն արքունիքում։ Պսակը շքեղութեամբ կատարուեց Սսոյ մէջ[5]։ Եւ այս առթիւ իր եղբայրը՝ Հեթումը, որ կրօնաւոր դառնալով գահից հրաժարուել եւ թողել էր Թորոս եղբօրը, նոյն հարազատի ժախանձանքով, նոր քեռայրի եւ ուրիշ հայ եւ եւրոպացի իշխանների, կրկին յանձն առաւ աշխարհիկ իշխանութիւնը, նուաճելով որոշ իշխանների լարած դաւն իր դէմ[6]։ Զապլունն Ամորիկի յարկը զարդարեց հինգ կորիւններով՝ Հուգօ, Հենրիկ, Գուիդոն, Յոհան, Բոհեմոնդ[7] (կամ Պեմունդ) եւ **Ագնէս** աղաւնով[8], որ յետոյ իր Թորոս քեռու զաւակի՝ Գ Լեւոնի հետ. նստելու էր Ռուբինեանց գահի վրայ եւ նրա **Անուշ** զուգակցու հետ, որ խամրեց դեռարուսիկ[9]։

Սակայն Տիւրոսի նախկին տէրը դրանով չբաւականացաւ։ Թագաւորն հիւանդ եւ անկարող էր կառավարելու եւ Ամորիկի թելադրութեամբ իսկ աւագանին 1306-ին գլուխ բարձրացրեց եւ պահանջեց տէրութեան վարչութիւնն յանձնել եղբօրն։ Կիլիկիայի

---

1. Անդ՝ 495-98։ 2. Բուս 135։ 3 Աստ՝ 84։ — 4. **Ժմ. Օշնի**, 100. **Պատ. Ռբ.** 212. Դրդ. 27։ — 5. Զմչ Գ. 293։ 6 **Ժմ. Օշնի**, 100-1։ 7 Դրդ. 27։ — 8. Բուս. 184։ — 9. **Հյպ.** 545։

արքայի դուստրն ու քոյրը ծածուկ բաժին չունէր արդեօք այդ գործի մէջ, որ ամուսնու եւ իր համար ապահովում էր ներկայում գործնական եւ ապագայում իրական մի թագաւորութիւն. Հենրիկն ընդդիմացաւ, բայց վերջիվերջոյ հարկադրուեց տեղի տալ[1] դաշինքով, որի պատճէնը մինչեւ հիմա մնում է[2]: Ամորիկը իր պատուի համար հանդէսներ կազմակերպեց եւ ապա առեւտրական մի դաշինք կնքեց Վենետիկի հետ[3]: Զար քուները նրան գրգռեցին արքայի դէմ, գրպարտելով թէ նա աշխատում էր վարչութիւնը նորից իր ձեռքը վերցնել եւ կասկածոտ Ամորիկը հսկողութիւն հաստատեց նրա բնակարանի շուրջ[4]:

Այստեղ ասպարէզ է գալիս Հեթում պատմիչը, Կոռիկոսի տէրն եւ Հայոց սպարապետը, - հուսկ վանական յատին մի մենաստանում Կիպրոսի մէջ[5], - նոր կերպարանքով: Մաքերասը, յոյն ժամանակագիրը ԺԵ դարի, նրան նկարագրում է «մի չար մարդ, Հայաստանից աքսորւած» Հեթում արքայի դէմ կատարած ապիրատութիւնների եւ նրա ու Թորոս եղբօր միջեւ նիւթած բանսարկութիւնների պատճառով եւ թէ Բ Հենրիկն ընդունել ու խնամել էր նրա կնոջն ու զաւակներին[6]: Նոյն իմաստով, բայց աւելի մեղմօրէն է խօսում նրա մասին Բուստրոնն, ասելով թէ նա Հեթում արքայի հակառակորդ եւ «Հայաստանից փախստական, եկաւ Կիպրոս եւ եղբայր եղաւ Պիսկոպիայի» մենաստանին[7]: Մեր պատմութեան մէջ չունենք - եւ աւելի այնտեղ էր գտնելու – նրա նենգութիւնների, աքսորի կամ փախուստի յիշատակութիւնը եւ կիպրական կարկատան է թւում այդ ամէնը:

Արդ ըստ Մաքերասի, Կոռիկոսի տէրն է լինում Ամորկանին գրգռողն եղբօր դէմ եւ ըստ Բուստրոնին, նա Տիւրոսի նախկին տիրոջ խորհրդակիցներից մէկն էր եւ գնաց Հռոմ որպէս դեսպան ու թագաւորի պատուիրակների հակառակը վկայեց, որ հասել էին բողոքելու կղեմէս Ե-ին թէ Ամորիկ միայն արքայի անունն էր թողել եղբօրը: Հեթումը թէպէտ մեծարուեց բոլորի կողմից, բայց Հենրիկի իրաւունքը պապի կողմից տրուեց: Մինչ այն Ամորիկը իր հսկողութիւնն եղբօր վրայ աւելի խստացրեց, մինչեւ ստիպեց նրան մի երկրորդ դաշնագրով իրեն թողնելու ցկեանս կղզու վարչութիւնը[8], այս եղաւ 1307 թւին: Իսկ յաջորդ տարին արքայի կողմնակիցների դէմ աւելի խիստ դարձաւ եւ գլխաւորներին՝ Փիլիպոսին[9] ու Բաղին իբլինացիքն աքսորեց Հայաստան[10]:

Նոյն տարւայ մէջ մեծ ողբերգութիւն պատահեց Կիլիկիայում: Թաթարների Պիլարղու խանը մի ստւար բանակով այնտեղ եկաւ չար նպատակով: Հեթում արքան,

---

1. Բուս. 138-40: — 2. Ալ. Մաս. Բ, 101: — 3. Անդ՝ 102: — 4. Բուս. 140-41: — 5. Աստ՝ 99-100: 6. Մաք. 38: — 7. Բուս. 162, 141: — 8. Բուս. 151-53. Մաս. Բ, 110: — 9. Աստ՝ 389: — 10. Բուս. 158-60:

այդ ժամանակ լոկ գահի խնամակալ. զգալով վտանգն օգնութիւն խնդրեց իր քեռայր՝ Ամորիկից Թամարն երբ լսեց. փութաց նենգութեամբ հանել նպատակին. Բարեկամութեան դիմակով Հեթումին. նրա եղբօրորդուն՝ Լեւոն Գ արքային. Օշին սպարապետին եւ ուրիշներին հրաւիրեց իր մօտ եւ բոլորին խողխողեց: Հեթումի եղբայրներն՝ Օշինն եւ Ալինախը վրէժխնդրութեամբ լցւած եւ Կիպրոսից հասած օգնութեամբ զօրացած (1000 զինւոր եւ 300 ձի). պատրաստւում էին պատժել դաւաճանին. որն զգալով վտանգը. շուտով հեռացաւ եւ Օշինը հայրենի գահին նստեց: Եղբայրը՝ Սմբատը. որ Կոստանդնուպոլիս էր վտարւած[1]. երբ աղէտալի լուրը լսեց. կամեցաւ որսալ պղտոր ջրում. ուստի հաւաքելով յոյներին. գնաց պետութիւնը գրաւելու: Հասնելով Գաստրիայի նաւահանգիստը. իմացաւ եղբօր թագաւորելը. զգաց. որ աւելորդ ու վտանգաւոր էր առաջ տանել իր արշաւանքը: Բիւզանդացիներին արձակեց եւ գնաց Փամագոստա. ուր Ջապլունն ընդառաջ գալով ուրախութեամբ ընդունեց իր խեռ եղբօրը: Տարաւ Նիկոսիա. հիւրընկալեց իր տնում. ծանօթացրեց աւագանուն ու թագաւորին: Այդպիսով նրան հեռու պահեց Կիլիկիայից ու մարել տւեց տիրապետական ցանկութիւնն. որ բոյն էր դրել նրա սրտում[2]: Մեր հայուհին Կիպրոսում նստած. ծառայում էր նաեւ իր հայրենիքի շահերին եւ բոցերի վրայ ջուր էր թափում. մինչ կրտսեր քոյրը՝ **Թիթան**. նոյն օժանդակութիւնը նախապէս մատուցել էր հայրենի տանը Կոստանդնուպոլսից[3] եւ այդ ժամանակ թւում է ծածուկ աշխատանք է տարել Սմբատը:

Հետեւեալ տարում (1309) Օշինի արքունիքում ծանօթ մի հայուհի էլ երեւաց. բազմամեայ պատկառելի մի մայրապետ: Արքայի հօրաքոյր **Ցիմին** Կիպրոսի կուսանոցի[4] առաջնորդը: Եկել էր միջնորդելու. գործակցութեամբ միւս եղբօրորդու՝ Ալիխանի հետ միասին. որպէսզի Օշինը քաղցրութեամբ ու պատւով պահէր յիշւած երկու իբլինացի ազնւականներին. որոնցից Փիլիպոսն իր թոռան՝ **Մարիամի** ամուսինն էր[5]. Հասաւ նպատակին[6]: Այդպիսով կատարելով իր բազմածուփ ու բազմարդիւնք կեանքի վերջին գործն եւ հաւանօրէն գտնելով վերջին հանգիստն էլ մայրենի աշխարհում[7]:

Ամորիկն իր յաղթանակը լրացնելու համար, բնակութիւնը փոխադրեց արքունի պալատում ու գրաւեց եղբօր ստացւածքը: Եղբօր կուսակիցներից ուրիշ չորս ազդեցիկ ասպետներ եւս խարէութեամբ աքսորեց Հայաստան[8]: Ապա մտածեց՝ թէ հանգիստ

---

1 Աստ՝ 368. 2. Բուս. 156-57. 161-62: — 3. Աստ՝ 368: — 4. Աստ՝ 172: — 5. Աստ՝ հմ. ժր: — 6. Բուս. 161· 7. Աստ՝ 173. 8. Բուս. 181, 183:

իշխելու համար, հարկաւոր էր հեռացնել նաեւ արքային եւ այս միտքն իրագործելու համար իր գործակիցն ընտրեց կնոջը. Զապլոնը 1309-ին (հոկտ.) Նիկոսիայից մեկնեց երկու սպասների եւ իր չորս զաւակների ուղեկցութեամբ եւ երեք նաւերով հասաւ Կիլիկիա. Այնտեղում միաբանուած Հեթում պատմիչի հետ, խնդրեց ու համոզեց իր եղբօրն՝ Օշինին, ընդունել Հենրիկ թագաւորին իբր կալանաւոր: Յետոյ խոկոյն վերադարձաւ Փամագոստա եւ նամակով ամուսնուն հաղորդեց, որ ինքն սպասելու է այնտեղ մինչեւ տագերօջ մեկնելը[1]:

Յաջորդ (1310-ի) յունուարի վերջին գիշերն էր: Ամորիկն իր միւս եղբօր ու մի քանի մարդկանց հետ մտաւ թագաւորի բնակարանն, որտեղ նա ննջում էր. Հենրիկի քոյրերը սարսափեցին եւ մայրը՝ Զապլը, նուաղեց: Ստիպեց թագաւորին անկողնուց հանեցին եւ խուլ նրա բողոքներին, զգեստները հագցրին, մի հեծեալ ջոկատով առաջնորդեցին դէպի ծովեզր, նաւ նստեցրին ու տարան Այաս: Այնտեղ էր եկել Հայոց արքայի կողմից եւ երեսուն հեծեալներով Կոռիկոսի երիտասարդ տէրն՝ Օշինն, որ յաջորդել էր կրօնաւոր ծնողին՝ Հեթումին: Հենրիկը խոժոռ հայեացքով նայեց նրան, իբրեւ իր թշնամու զաւակին, եւ լուռ հետեւեց նրան: Ընդառաջ եկաւ Օշին արքան, ազնուութեամբ ու քաղցրութեամբ ընդունեց եւ յետոյ փակեց նրան Լամբրոնի ամրոցում, որ արդէն արքունի ստացւածք էր եղել[2]: Բոլոր արտաքին հաղորդակցութիւնը խզեց եւ յաճախ նրան ստիպում էր նրան հաւանելու Ամորիկի մնայուն վարչութիւնը: Մարտ ամսին պապի աւագերէցը՝ Ռայմոնդը, որպէս դեսպան Կիպրոս եկաւ եւ մեծ պատւով ընդունեց իշխանի կողմից եւ նրան համոզեց հաշտուել իր հարազատ արքայի հետ: Այդ նպատակով գնաց Կիլիկիա, համոզելու նաեւ Հենրիկին:

Բայց Ամորկանն՝ այդ նոր Աբեսաղոմի չհատակութեան վախճանը հասել էր արդէն: Եկաւ յունիսի 5-ի երեկոն: Նա ընթրիքից յետոյ, որ մի քանի ասպետներ եւ իր բարերարեալն ու մտերիմը՝ Սիմոն մոնտոլիփացին էլ մասնակից էին, երբ հիւրերը ցրւեցին, այս վերջինս միայն մնաց իշխանի մօտ եւ յանկարծ մի դաշոյն հանելով տասն հարւածներով խողխողեց նրան ու փախաւ: Առաւօտեան երբ իշխանն ուշացաւ դուրս գալու իր սովորական ժամին, բախեցին սենեակի դուռն եւ ձայն չկար: Գնացին որոնելու նրան Զապլոնի սենեակում: Նա կասկածեց թէ գուցէ փախել էր, լսելով որ մի նաւատորմիղ էր հասնելու եւ ի նպաստ Հենրիկին էր գործելու: Ապա արեան հետքեր նշմարեցին: Վազեցին ու Ամորիկի սենեակի դուռը խորտակեցին եւ նրան գետնի վրայ արեան մէջ ընկած գտան[3]: Դիւրին է երեւակայել Զապլոնի, զաւակների ու սպասաւորների սարսափը, լացն ու կոծը[4]:

---

1. Նոյն՝ 184-85: — 2. Աստ՝ 67: — 3. Ըստ Մաքերասի՝ ճեմիշին մէջ, 39: — 4. Բուս. 188-99:

Դուանանին փնտռեցին ու չգտան, որովհետեւ փախել էր Նիկոսիայից: Մի անձի վկայութեամբ՝ թէ նրան տեսել էր «Տիւրոսի Աստուածածնի» (ըստ Բուստրոնի՝ «Ս. Ղազարի[1]») մէջ Հենրիկի միջոցով վերաշինուած կուսանոցի պատուհանին: Ամբոխը այնտեղ խուժեց, պահանջելով չարագործին: Մարգարիտ իշխանուհին մայրապետն էր, Ցիմեայի ապգականուհին եւ յաջորդը նրա վախճանից յետոյ[2]: Հարստահարութիւններ, մենաստանի կառուցածի ու հրդեհի մտնելու սպառնալիքը եւ մանր խուզարկութիւն նրա մէջ, դադահար արեցին բոլոր կոյսերին: Մարգարիտը պապի նուիրակի պաշտպանութիւնը խնդրեց եւ փոթորիկը հանդարտեց՝ ասում են Ամադին[3] եւ Բուստրոնը[4]: Յաջորդ օրը փառաւոր մի թաղում կատարեց Ամորկանի համար, որ չորս տարի րունակալել էր: Իսկոյն վարչութիւնը յանձնուեց սպանուածի եղբօրն ու կամակատարին՝ Գուիդոնին[5]: Միանգամայն արքայի մօր եւ նրա հակառակորդ ազատների մէջ պայման կնքուեց, որ Հենրիկը ներելու էր նրանց[6]: Մինչ այն, Ջապլունն ամրացաւ իր պալատում, նախապէս եղբօր ուղարկած մարդկանց հետ, գրում է Ստ. Լիւսինեանը[7]:

Իսկ արքայի կուսակիցներն ու փամագոստացիները նրա վերադարձը պահանջեցին եւ այդ նպատակով պատուիրակ յղեցին ի Հայս: Օշինը պատասխանեց՝ թէ իմացել էր քեռայրի, քրոջն ու քեռորդիների սպանութեան լուրը եւ եթէ պատուիրակը կարողանար մի նամակ բերել Ջապլունից, որ վկայէր իր եւ զաւակների ողջութիւնը, կալանաւորին նրան կը յանձնէր: Դեսպանը գնաց ու վերադարձաւ բերելով ցանկացած վկայութիւնը[8]: Մինչ գործի կարգադրութիւնը, տիկին Ջապլունը կասկածելով փամագոսացի ասպետների վրէժխնդրութիւնից, որոնք ամուսնու զրկանքներին էին ենթարկել, պապի նուիրակի պալատը գնաց զաւակների հետ, տանելով թանկագին իրեղէններ: Առիթից օգտուելով, ասպետների խումբը դիմեց նուիրակին, խնդրելով օգնական կանգնի իրենց, եւ տիկնոջը գրել տայ իր եղբօրն, որ թագաւորին չուտով ազատի սպառնալով, որ եթէ նրան վնաս հասնէր, տիկնոջն ու զաւակներին բռնի տանելու էին Կիլիկիա եւ սպանելու էին Հայոց արքային ազգականների աչքերի առջեւ: Բոլորը միասին պահանջեցին, որ Ջապլունն ու տագրն աշխատեն Հենրիկին ողջ առողջ վերադարձնել, որովհետեւ իրենք պատճառ դարձան նրա աքսորմանը: Գուիդոնն ստիպուեց գիջել եւ հաշտուեց մօր հետ[9]:

---

1 Նոյն՝ 211: 2 Աստ՝ 172 3 Ան. 144: — 4. Բուս. 211: — 5. Նոյն՝ 198. Դարդելէ վրիպակաւ Ամորիկ գրուած. 37. 6 Մաս Բ. 112: 7 Լիւս. 55: — 8. Բուս. 199-203: — 9. Բուս. 207-10:

Նիրակի միջնորդութեամբ հաշտութեամբ ձեռք մեկնեցին նաեւ մայր թագուհին ու Զապլոնը, որ փափագ յայտնեց զաւակներով ի Հայս վերադառնալ թագուհին որդուն ազատելու համար. հակառակ խորհուրդ տուեց խոստանալով նրան իբր գումար պահել - իր մօքում անշուշտ որպէս պատանդ - եւ զաւակներին իբրեւ իր զաւակներ. Առաջարկեց գրել եղբօրն՝ արձակել կալանաւորը. Զապլոնը խոստացաւ, բայց չկամութեամբ դանդաղեց. Այն ժամանակ թագուհին գրեց, - որ անհամբեր որդուն էր սպասում - յանուն ամբողջ Կիպրոսի եւ իր հետ կնքեցին այն բոլոր պարոններն ու բարձրաստիճան կղերը: Իսկ Տիւրոսի տիկինը մերժեց, պատճառելով թէ կնիք չունի. Բայց նոյն նպատակով ու ծածուկ մի նամակով երկու պատուիրակ յղեց եղբօրը, որի հետ համաձայնել էր, որ իրեն զաւակներով գաղտնապէս փոխադրէր Կիլիկիա եւ աքսորականին չարձակէր: Դեսպանները թագուհու նամակը տարան Օշինին, որ նախ չուզեց նրանց ընդունել, յետոյ առնելով ու կարդալով քրոջ թղթերը, խստութեամբ խօսեց դեսպանների հետ եւ երկդիմի խոստմամբ արձակեց: Հենրիկի կուսակիցներն յուսահատ, որոշեցին Զապլունին բռնի տանել Կիլիկիա, որպէսզի կակղէր իր եղբօր սիրտը: Խոհեմ թագուհին զգուշացրեց նրանց բռնանալուց եւ փորձեց ինքն իսկ նորից համոզել նունին յօժարակամ գնալ, աւագանու հետ խոստանալով, որ եթէ գնար եւ ազատէր արքային, ինչպէս բանտարկել էր, ողջ եւ առողջ կը վերադարձնէին իրեն էլ եւ բնակեցնելու էին Նիկոսիայի արքեպիսկոպոսարանի մէջ. հակառակ պարագային բռնի պիտի տանէին իրեն: Տիկինն երդմամբ յանձն առաւ գործել այդ պայմանների համեմատ եւ մեկնել երեք օրից: Բայց կրկին նրա դանդաղելը, զանազան պատճառներով, տեսնելով եւ պապի նուիրակի խորհրդով, որ պարգեւներ էր ընդունում տիկնոջից, պաշտպանելու համար նրա դատը, ասպետներն ստիպեցին նուիրակին՝ Ռայմոնդին, ինքը չտապով գնալ Կիլիկիա նոյն նպատակով, որի հետ Զապլունն իբր իր փոխանորդն առաջարկեց ամուսնու խոստովանահօրը՝ Հ. Դանիէլ փրանկիսկեանին եւ մեկնեցին[1]: Մինչ Օշինը վարանում էր ընդունել նրանց խնդիրն, առարկելով դժուարութիւնները, նուիրակն նրա առջեւ դրեց Կիլիկիայի վրայ համախումբ մի յարձակման հաւանականութիւնը: Հայոց արքան նախ այդ սպառնալիքի դէմ խոժոռեց, յետոյ տեսնելով նրա հնարաւորութիւնը զիջեց եւ արձակման պայմանագիրը կնքեց[2], որի բնագիրը Մաս Լատրին առաջ է բերում[3] եւ Զապլունին ու նրա որդիներին ապահովում էր Կիպրոսի մէջ այլ եւ այլ իրաւունքներ եւ ազատութիւն:

---

1. Բուս. 212-19, 223: — 2. Նոյն՝ 227-29: — 3. Մաս. Բ, 111:

վախճանուեց Գաբրիելն եւ Բալդուինն (Ա) հրաւիրուեց գրաւելու Ս. քաղաքի գահը, որով Ուռհան կոմսութիւնից անցաւ թագաւորութեան, որ նախապէս տեսանք նրան գժբախտութեան մատնուած[1]:

2 - Յիշեալ առաջին Խաչակրաց մասնակցողներից էր նաեւ Յոսլէն Կուրտենացին, ծնունդ տեղի իշխող եւրոպացի ընտանիքի: Ապա զինակցեց նոյն Բալդուինին եւ նրա Երուսաղէմի թագաւոր ընտրուելուն յաջորդեց նրան Եդեսիայի կոմսութեան մէջ: Արաբների դէմ իր տարած յաղթանակներով շահեց **մեծ** տիտղոսը: Ձախողութիւն էլ ունեցաւ: Երկու անգամ թուրքերը նրան գերի բռնեցին, վերջին անգամ Բալդուինի հետ: Եդեսիայի հայերն, յիսուն հոգի, վանականի տարազով մօտեցան բերդին, ուր բանտարկուած էր, խաբեցին թուրքերին, յարձակուեցին եւ ազատեցին իշխանին: Աւելի ուշ ազատուեց թագաւորն էլ:

Երեք անգամ այդ իշխանը յիշատակւում է ամուսնացած: Վերջին կինն էր վերոգրեալ Ա Կոստանդնի դուստրը, անծանօթ մեր մատենագրութեան մէջ եւ յիշուած Վիլլերմոսի կողմից առանց անուան,- **Կոստանդիա** կարող ենք անուանել,- նրա համանուն (Յոսլէն) որդին ծնուած նշանակելով «քրոջից իր տէրութեան մէջ հզօրագոյն մարդուն՝ Հայ Լեւոնի[3]», որ նոյն Կոստանդնի որդին էր: Իշխան Յոսլէն 1131-ին երբ պաշարել էր Հալէպը, նրա աշտարակներից մէկը փլեց եւ ծանրօրէն վիրաւորեց նրան եւ ապա գերեզման տարաւ: Կոստանդնի դուստրը ամոքեց իր վիշտը, տեսնելով որդուն յաջորդելով հօրը, թէպէտ նա իր երկրորդ ամուսնութիւնից երկու որդի ունէր արդէն: Հայուհու ազդեցութիւնն զգալի է այդ յաջողութեան մէջ եւ ապացոյց՝ թէ տիկինը կենդանի էր. - Ափխազեթի դշխուհու պարագան կրկնում էր[4]. - մինչեւ դուստրն՝ **Ագնէսը**, ժառանգեց Երուսաղէմի դշխոյական գահն Ա Ամորիկի հետ:

Հօրը պատուի հետ նրա քաջութիւնն էլ ստանձնեց կրտսեր Յոսլէն, բայց ոչ նրա առաքինութիւնը, անձնատուր լինելով պագշոտութեան եւ արբեցութեան որով եւ չկարողացաւ պաշտպանել Եդեսիան Մուսուլի սուլթանի դէմ. որ պաշարեց ու գրաւեց 1142-ին: Թշնամիներին քաղաք առաջնորդողը մի հայ բնակիչ էր, որին պատժել վնասել էր իշխանը: Յաջողեց նա վերագրաւել Եդեսիան եւ դարձեալ կորսնցրեց 1148-ին ինքն էլ գերի ընկնելով եւ երկու տարի յետոյ Հալէպի մէջ մեռնելով թշուառաբար[5]: Որդու այս բոլոր արկածներին ականատե՞ս էր արդեօք մայրը, չգիտենք:

1. Հմնգ. Ե, 864-65: — 2. Աստ՝ ԺԸ, Ը, 1: 3. Վիլ. 610: 4. Աստ՝ 379: 5. Վիլ. 437, 443 եւն. Կաղ. 408, 409 եւն. Ընտ. 297-99:

***ԺԲ.- Բիբլոսի տան մէջ.-*** *Հինգերորդ խաչակրութեան* (1217-*ին*) *քաջամարտիկներից մէկն էր Բերտրանդն. որդի Հուգոնի եւ կոմսը հին Բիբլոսի կամ միջնադարեան Գիբելետի*[1] *Փիւնիկէի մէջ. որ* 1109 *թւին գրաւեց ու դարձաւ առանձին պարոնութիւն: Յիշեալ Բերտրանդը մի որոշ ժամանակ նաեւ Տրիպոլսի կոմսութեան վարիչ կարգւեց. ինչպէս տեսնելու ենք յաջորդ համարի մէջ: Այս է մեր բոլոր իմացածն իր մասին: Դիւկանգն նրա ամուսնուն նշանակում է* ***Դոլետին***[2]*. որ «Անդրծովեան տոհմերն»* ***Անոյշ***[3] *է անւանում եւ եղբորդուստր կամ քեռադուստր* (niesse) *Լեւոնի Հայոց արքայի. ինչ որ Դիւկանգ ուզում է երկրորդ իմաստով հասկանալ*[4]*: Իսկ Հ. Ալիշանը վերածում է Դոլետին ու կոչում է «****Տալիթա*** *դ. Ստեփանէի*[5]*». որով նոյնպէս մեծն Լեւոնի քոյրը: Սակայն մեր մատենագրութեան մէջ անծանօթ է եւ շատ անհաւանական է արքայի քոյր*[6] *լինելն եւ քեռադուստր ունենալը: Եւ ինչո՞ւ չլինի նրա եղբօր «դստերաց» մէկը.- յոգնակիդ Վահրամին է*[7]*.- ինչպէս նշանակեցինք նախապէս*[8]*: Մայր եղաւ Հիւգոնի*[9] *եւ իր կենսագրութիւնն աղքատ է մնացել ամուսնու պէս:*

***ԺԳ.- Անտիոքի տան մէջ.-*** *Քաղաքը* 1098-*ին Խաչակիրների ձեռքով ազատւելով Սելջուկների լծից, կազմեց առանձին մի իշխանութիւն իր նահանգով հանդերձ եւ տրւեց Տարենտոնի նորմանդ իշխանին՝ Բոհեմոնդին եւ սերունդներին իբր ժառանգութիւն: Աշխարհագրական տեսակէտից Կիլիկիային աւելի մերձաւոր էր Անտիոքն: Այս պատճառով Հայոց աւելի օգտակար ու բաղձալի էր խնամիական կապեր ունենալ նրա հետ:*

1.- *Նախ մեծն Լեւոնն իրեն կնութեան վերցրեց Գ Բոհեմոնդի աներորդու դուստրը՝* ***Զապլունին***[10]*: Ապա ձերբակալեց եւ բանտարկեց նոյն իշխանին. որ նախանձում էր իր սահմանների մէջ նրա կատարած տիրապետութեան դէմ. նրան բացայայտելով իր դէմ լարած թակարդում: Յետոյ հաշտւեցին. դաշնադրւեցին եւ վաղահաս մահւամբ իր եղբօրդստեր՝* ***Ալիծի*** *ամուսնու՝ Հեթումի*[11]*. նրան ամուսնացրեց նոյն իշխանի երէց որդու՝ Ռայմոնդի*[12] *հետ: Սա* 1187-*ին Երուսաղէմի թագաւորի օգնութեան էր գնացել Սարակինոսների դէմ. պատերազմը ձախողել եւ ինքը խոյս էր տւել*[13]*: Ապա հօր ծերութեան պատճառով Անտիոքի*[14] *վարիչն էր եղել: Իր այդ պատւի*

---

1. Biblos, Biblium *կամ* Gibelet: — 2. Dolet: — 3. Douce: — 4. ***Լեռ.*** 323, 487: — 5. ***Միք.*** 371: — 6. *Հմմտ. աստ՝* 95: — 7. *Վհր.* 212. *աստ՝* 95-6: — 8. *Աստ՝* 66-7: — 9. ***Տոհմք.*** 465: — 10. *Աստ՝* 46: — 11. *Աստ՝* 60-61: — 12. *Հրկլ.* 212, 228-29. *Եռն.* 320-21. ***Փամ. Աբ.*** 209: — 13. ***Հրկլ.*** 46, 46-5: — 14. *Նոյն՝* 207 *եւն:*

*մէջ էր, երբ 1194-ին ամուսնացաւ իր հօր ժառանգած Ռուբէնի՝ դստեր հետ[2]. Իսկ 1199-ին վախճանւում է խնամակալութեամբ՝ ըստ հրատարակին Հերակլի պատմութեան՝ եւ նախքան հայրը:*

*Այդ կարճատեւ ամուսնութիւնից յետոյ երկրորդ անգամ այրիացած դժբախտ Ալիծը, 17 տարեկան, իր յոյսը հաստատեց նորածին մանկան՝ Ռուբէն Ռայմոնդի վրայ, որի աչքն էր Անտիոքի իշխանութիւնն ըստ դաշինքով: Սկեսրայրը Լեւոնի, վերադարձրեց* ***Ալիծին զաւակի հետ. իսկ մանկան հօրեղբայրը՝ Բոհեմոնդը, օգտուելով հօր ծերութիւնից, փորձեց յափշտակել Ռուբէնի իրաւունքն, որին պաշտպան կանգնեց Կիլիկիայի գահակալը, պատերազմով հալածեց յափշտակիչին եւ քաղաքը յանձնեց եղբօր դստերին[4]: Սրան ակնարկում է Ռուբինեանց պատմութիւնն էլ, երբ ասում է թէ Լեւոնը «առեալ զԱնտիոք՝ ետ նմա (Ալիծի) եւ որդւոյ իւրոյ[5]»: Այդտեղ հայուհին իսկապէս տիկին ու վարիչ եղաւ նոյն իշխանութեան, իբր մանկան խնամակալ: Բայց Հայոց անժառանգ արքան Անտիոքից աւելի իր գահի համար ցանկացաւ եղբօր գեղեցիկ թոռանը եւ Ալիծն ուրախութիւնն ունեցաւ նրան նախապէս պսակուած տեսնելու Հայաստանի թագով: Բայց բախտի բերմամբ ձախողւեց[6]: Սրա փոխարէն, երկրորդ անգամ համբուրեց որդու ճակատն 1216-ին, բոլորուած՝ Լեւոնի հրամանով Անտիոքի իշխանական պսակով[7]:***

***Ալիծն, որ իր կրկնակ ամուսնութեամբ ծառայեց հօրեղբօր քաղաքական շահերին, ստիպւեց երրորդ անգամ էլ կնքել ի նպաստ որդուն, Կոռիկոսի տիրոջ՝ Վահրամ մարաջախտի հետ, -որի հօր ազգութիւնն անծանօթ է[8] - եւ որ առնելու համար Ռուբէնի մայրը, արձակեց «զօրինօք ամուսինն իւր[9]» եւ վերադարձրեց նրան եղբօրը՝ Լեւոնին, որ տէր էր Բերդկանի: Յետոյ (1220-ին) Ռուբէնն ու Վահրամը միաբանուած, եւ իրենց հետ խառնելով Տարսոնից ուրիշ իշխաններին էլ, փորձեցին «Զապէլին արտաքսել, որ դուստրն էլ Լեւոն թագաւորի», որ մի տարուց աւել էր ինչ գրաւել էր հայրենի գահն եւ տիրել Կիլիկիային: Բայց թագուհու ապագայ սկեսրայրը՝ Կոստանդին պայլը, ջախջախեց նրանց եւ գնացին ամրացան Տարսոնի մէջ: Հասաւ կորովի խնամակալը, բռնեց դաւադիրներին ու բանտարկեց, ուր սխալուած իրենց երազներից՝ մեռան[10], (Ռուբէն 1222-ին): Արդեօք կամակի՞ց էր Ալիծն իր հօրեղբօր դստեր դէմ լարուած այդ դաւին, չենք իմանում: Մինչ ստոյգ է, որ իր երրորդ ամուսնութիւնն իր համար աղբիւր եղաւ կրկին ծանրագոյն կսկիծների, կորսնցնելով միանգամայն զաւակին ու նոր ամուսնուն եւ իր դեռ առոյգ հասակում դատապարտւեց յաւերժ այրիութեան:***

---

1. *Աստ*՝ 296: — 2. ***Մխ.*** 441: — 3. ***Հրկլ.*** 46, ծն. 4. *Նոյն*՝ 313 եւն. *Եռն.* 321-22: 5. ***Պատմ. Ռբ.*** 220: — 6. *Աստ*՝ 286: — 7. ***Տրգ. Կիլ.*** 306-8: 8. *Մխ.* 334: 9. *Աստ*՝ 53-54: 10. ***Պատմ. Ռբ.*** 209-10:

Այդ պատահարների մէջ Ալիծի դերը սոսկ կրաւորական չենք համարելու. այլեւ ներգործական, ինչպէս Անտիոքի վարչութեան մէջ: Խորագէտ ու գործօն Ռուբինեանց սերնդից էր նա եւ ճարտարութիւնն հանդէս է բերում հետեւեալ պարագայի մէջ եւս. Իր մայրը՝ **Զապէլը**[1]. անզաւակ եղբօրից ժառանգել էր Տորոն բերդը. որին տիրացաւ Սաւնհեղինն: Եւ երբ աւելի քան քառասուն տարի յետոյ (1229-ին) քրիստոնեաներն ազատեցին այն դաշինքով եւ Տեւտոնեան ասպետներր գրաւել էին ուզում. Ալիծը պահանջող կանգնեց եւ թէպէտ միայնակ էր մնացել. բողոքեց Երուսաղէմի բարձրագոյն ատեանին. ուր Բ Փրեդերիկ պայլն. իբրեւ կայսրի փոխանորդ. ասպետների կողմը բռնեց: Հայուհին կարողացաւ խաղալ նրա հետ էլ. Տորոնի վիճակի ճորտերին ապստամբեցնելով կայսրի դէմ. որ այդպէս ակամայ համոզուեց՝ թէ տիկինն իրաւունք ունէր եւ նրան վերադարձրեց դղեակը[2]: Անտիոքի իշխանուհու վերջին ու կարեւոր գործն եղաւ Երուսաղէմի հիւանդանոցի նպաստը. որ տեսանք[3]:

2. - Նոյն Անտիոքի Բոհեմոնդ Ե իշխանի որդին էր հայրանունն Բոհեմոնդ Զ. որ 1251-ին դեռ պատանի. յաջորդեց հանգուցեալ ծնողին՝ մայրական խնամակալութեան ներքեւ. իբրեւ իշխան նոյն քաղաքի եւ կոմս Տրիպոլսի: Հետեւեալ տարին ասպետական աստիճանն ընդունեց Գաղիոյ ս. Լուդւիկ արքայից[4]: Իսկ 1254-ին ամուսնացաւ մեր Ա Հեթումի դստեր՝ **Սպիլի** հետ[5], ինչպէս յիշում է ու կոչում է տիկինը Ռուբինեանց տեղեկատուն էլ[6]. եւ որ ամուսնուն պարգեւեց Բոհեմոնդ[7] Է եւ երեք դուստրեր. **Զապէլ**՝ մեռեալ ամուրի. **Լուկիա**՝ ամուսինը Նիկիայի տուսեցւոյ ծովակալի Սիկիլիոյ. **Մարիամ** կին Նիկոլի, պարոն Ս. Ոմերի, որոնք անզաւակ մնացին[8]:

1256-ին՝ Սպիլի եղբօր ձիաւորութեան առթիւ հայրն՝ Հեթումը. «կոչեաց զփեսայն իւր զՊեմունդ բրինձն անտիոքայ եւ կոմս Տրապոլսոյ. գալ առ ինքն հանդերձ կենակցաւն իւրով»: Հանդէսը կատարուեց նոյեմբերի 15-ին Սսիսի մէջ. « եւ ուրախացաւ թագաւորն ուրախութիւն մեծ՝ հանդերձ հարբն իւրով եւ ամենայն զարմիւքն եւ ժողովն որ եկեալ էին[9]»: Երեք տարի յետոյ Բոհեմոնդի եւ նրա իշխանների մէջ գժտութիւն ծագեց եւ աներն երկու հարիւր հոգով գնաց Տրիպոլիս. հաշտեցրեց ու վերադարձաւ[10]: Իսկ տիկնոջ եղբայրը՝ Լեւոնը. 1263-ին գովում է նրան իբրեւ «զնմանութիւն ծնողին (Զապէլի) բերելով յինքեան՝ զաստուածասէր բըընձէսն Զապիլ՝ որդւովք իւրովք[11]»: Ընդ հակառակն ամուսնու կեանքն ոչ մի ուշագրաւ բան ունի. որ 1268-ին կորսնցրեց

1. **Աստ՝** 67: — 2. **Սիս.** 524: — 3. **Աստ՝** 208: — 4. **Հրկլ.** 440: — 5. **Նոյն՝** 442. **Տրգ. Կիլ.** 323. **ԺԺ. Օշնի.** 98: — 6. **Պամ. Ռբ.** 211: — 7. **Հրկլ.** 446: — 8. **Ընա.** 166: — 9. **Տրգ. Կիլ.** 325: — 10. **Տրգ. Կիլ.** 329: — 11. **Հւք. յշա:**

*մէջ էր, երբ 1194-ին ամուսնացաւ իր հօր թագաւորած Ռուբէնի դստեր հետ, իսկ 1199-ին փոխանում է խնամակալութեամբ՝ բառ հրատարակին Հերակլի պատմութեան եւ նախքան հօրը:*

*Այդ կարճատեւ ամուսնութիւնից յետոյ երկրորդ անգամ այրիացած դժբախտ Ալիծը, 17 տարեկան, իր յոյսը հաստատեց նորածին մանկան՝ Ռուբէն Ռայմոնդի վրայ, որի ակն էր Անտիոքի իշխանութիւնն բառ դաշինքով: Սկեսրայրը Լեւոնի, վերադարձրեց Ալիծին պաւակի հետ իսկ մանկան հօրեղբայրը՝ Բոհեմոնդն, օգտուելով հօր ծերութիւնից, փորձեցյափշտակել Ռուբէնի իրաւունքն, որին պաշտպան կանգնեց Կիլիկիայի գահակալը, պատերազմով հալածեց յափշտակիչին եւ քաղաքը յանձնեց եղբօր դուստրին[4]: Սրան ակնարկում է Ռուբինեանց պատմութիւնն էլ, երբ ասում է թէ Լեւոնը «առեալ զԱնտիոք՝ ետ նմա (Ալիծի) եւ որդւոյ իւրոյ[5]»: Այդտեղ հայուհին իսկապէս տիկին ու վարիչ եղաւ նոյն իշխանութեան, իբր մանկան խնամակալ: Բայց Հայոց անժառանգ արքան Անտիոքից աւելի իր գահի համար ցանկացաւ եղբօր դեղեցիկ թոռանը եւ Ալիծն ուրախութիւնն ունեցաւ նրան նախապէս պսակուած տեսնելու Հայաստանի թագով: Բայց բախտի բերմամբ ձախողեց[6]: Սրա փոխարէն, երկրորդ անգամ համբուրեց որդու ճակատն 1216-ին, բոլորուած՝ Լեւոնի հրամանով Անտիոքի իշխանական պսակով[7]:*

*Ալիծն, որ իր կրկնակ ամուսնութեամբ ծառայեց հօրեղբօր քաղաքական չահերին, սախպւեց երրորդ անգամ էլ կնքել ի նպաստ որդուն, Կոռիկոսի տիրոջ՝ Վահրամ մարաջախտի հետ, -որի հօր ազգութիւնն անծանօթ է[8].- եւ որ առնելու համար Ռուբէնի մայրը, արձակեց «զօրինօք ամուսինն իւր[9]» եւ վերադարձրեց նրան եղբօրը՝ Լեւոնին, որ տէր էր Բերդկանի: Յետոյ (1220-ին) Ռուբէնն ու Վահրամը միացած, եւ իրենց հետ խառնելով Տարսոնից ուրիշ իշխաններին էլ, փորձեցին «Զապէլին արտաքսել, որ դուստրն էլ Լեւոն Թագաւորի», որ մի տարուց աւել էր ինչ գրաւել էր հայրենի գահն եւ տիրել Կիլիկիային: Բայց Թագուհու ապագայ սկեսրայրը՝ Կոստանդին պայլը, ջախջախեց նրանց եւ գնացին ամրացան Տարսոնի մէջ: Հասաւ կորուի խնամակալը, բռնեց դաւադիրներին ու բանտարկեց, ուր սթափուած իրենց երազներից՝ մեռան[10], (Ռուբէն 1222-ին): Արդեօք կամակի՞ց էր Ալիծն իր հօրեղբօր դստեր դէմ լարուած այդ դաւին, չենք իմանում: Մինչ ստոյգ է, որ իր երրորդ ամուսնութիւնն իր համար աղբիւր եղաւ կրկին ծանրագոյն կսկիծների, կորսնցնելով միանգամայն զաւակին ու նոր ամուսնուն եւ իր դեռ առոյգ հասակում դատապարտուեց յաւերժ այրիութեան:*

---

1. *Աստ*՝ 296: - 2. ***Սիս.*** 441: — 3. ***Հրկլ.*** 46, *ծն.* — 4. *Նոյն*՝ 313 *եւն.* *Ըռն.* 321-22: — 5. ***Պատմ. Ռբ.*** 220:
6. *Աստ*՝ 286: - 7. ***Տրգ. կիլ.*** 306-8: — 8. ***Սիս.*** 334: — 9. *Աստ*՝ 53-54: - 10. ***Պատմ. Ռբ.*** 209-10:

Այդ պատահարների մէջ Ալիծի դերը սոսկ կրաւորական չենք համարելու. այլեւ ներգործական ինչպէս Անտիոքի փոխանորդութեան մէջ Խորապէս ու գործօն Ռուբինեանց սերնդից էր նա եւ ճարտարութիւնն հանդէս է բերում հետեւեալ պարագայի մէջ եւս. իր մայրը՝ **Զապէլը**[1]. անդաւակ եղբօրից ժառանգել էր Տարոն բերդը. որին տիրացաւ Սալէհեդդինն. Եւ երբ աւելի քան քառասուն տարի յետոյ (1229-ին) քրիստոնեաներն ազատեցին այն դաշինքով եւ Տեւտոնեան ասպետները գրաւել էին ուզում. Ալիծը պահանջող կանգնեց եւ թէպէտ միայնակ էր մնացել. բողոքեց Երուսաղէմի բարձրագոյն ատեանին. ուր Բ Փրեդերիկ պայլն. իբրեւ կայսրի փոխանորդ. ասպետների կողմը բռնեց: Հայուհին կարողացաւ խաղալ նրա հետ էլ. Տարոնի վիճակի ճորտերին ապստամբեցնելով կայսրի դէմ. որ այդպէս ակամայ համոզուեց՝ թէ տիկինն իրաւունք ունէր եւ նրան վերադարձրեց դղեակը[2]: Անտիոքի իշխանուհու վերջին ու կարեւոր գործն եղաւ Երուսաղէմի հիւանդանոցի նպաստը. որ տեսանք[3]:

2. - Նոյն Անտիոքի Բոհեմոնդ Ե իշխանի որդին էր հայրանունն Բոհեմոնդ Զ. որ 1251-ին դեռ պատանի. յաջորդեց հանգուցեալ ծնողին՝ մայրական խնամակալութեան ներքեւ, իբրեւ իշխան նոյն քաղաքի եւ կոմս Տրիպոլսի: Հետեւեալ տարին ասպետական աստիճանն ընդունեց Գաղիոյ ս. Լուդուիկ արքայից[4]: Իսկ 1254-ին ամուսնացաւ մեր Ա Հեթումի դստեր՝ **Սպիլի** հետ[5], ինչպէս յիշում է ու կոչում է տիկինը Ռուբինեանց տեղեկատուն էլ[6]. եւ որ ամուսնուն պարգեւեց Բոհեմոնդ[7] Է եւ երեք դուստրեր. **Զապէլ**՝ մեռեալ ամուրի. **Լուկիա**՝ ամուսինը Նիկիայի տուսեցւոյ ծովակալի Սիկիլիոյ. **Մարիամ** կին Նիկոլի, պարոն Ս. Ոմերի. որոնք անզաւակ մնացին[8]:

1256-ին՝ Սպիլի եղբօր ձիաւորութեան առթիւ հայրն՝ Հեթումը, «կոչեաց զփեսայն իւր զԲեմունդ բրինձն անտիոքայ եւ կոմս Տրապոլսոյ. գալ առ ինքն հանդերձ կենակցաւն իւրով»: Հանդէսը կատարուեց նոյեմբերի 15-ին Սսի մէջ, « եւ ուրախացաւ թագաւորն ուրախութիւն մեծ՝ հանդերձ հարբն իւրով եւ ամենայն զարմիւքն եւ ժողովն որ եկեալ էին[9]»: Երեք տարի յետոյ Բոհեմոնդի եւ նրա իշխանների մէջ գժտութիւն ծագեց եւ աներն երկու հարիւր հոգով գնաց Տրիպոլիս. հաշտեցրեց ու վերադարձաւ[10]: Իսկ տիկնոջ եղբայրը՝ Լեւոնը. 1263-ին գովում է նրան իբրեւ «զնմանութիւն ծնողին (Զապէլի) բերելով յինքեան՝ զաստուածասէր բրինձէսն Զապին՝ որդւովք իւրովք[11]»: Ընդ հակառակն ամուսնու կեանքն ոչ մի ուշագրաւ բան ունի. որ 1268-ին կորսնցրեց

---

1. Աստ՝ 67. 2. *Միս*. 524: 3. Աստ՝ 208 4. *Հրկլ* 440: 5 Նոյն՝ 442. *Տրգ. կիլ*. 323. *Ժմ. Օշնի*. 98: 6. *Պտմ. Ռբ*. 211: 7 *Հրկլ*. 446: 8. *Ընտ* 166. 9 *Տրգ. կիլ* 325: — 10. *Տրգ. կիլ*. 329: — 11. *Հւք. յշտ*.

*Անտիոքն Եգիպտոսի Փնտուխտար (կամ Բիբարս Ա) սուլթանի ձեռքով. ամփոփուեց Տրիպոլիի մէջ եւ մեռաւ 1274 թուին, այն է իրենց ամուսնութիւնից քսանչորս տարի յետոյ*

*Սպիլ այրի մնալով, առաջին գործն եղաւ զաւակին յղել եղբօր՝ Լեւոնի մօտ, որ արդէն գրաւել էր հայրենի գահը եւ ապահով դարձնել ուզեց. Եւ դեռ անչափահաս կամ անբաւական գտնելով՝ վարչութեան ղեկը ձեռք առնելու, հարկադրուեց ինքը բռնել այն, իրեն օգնական դարձնելով Տորտոսի եպիսկոպոսին՝ Բարթողոմէոսին*[2]*, որի դէմ սակայն մեծ դժգոհութիւն ունէին ասպետները: Մի ժամանակ յետոյ եպիսկոպոսը մեկնեց եւ Սպիլը միայնակ վարեց իշխանութիւնը:* 1287 *թուականին իր սրտին նոր ու ծանր մի հարուած հասցրեց, կորցնելով գրկից իր ժառանգին: Բայց Հեթումի դստեր համար չէր լքումը: Պարտականութեան զգացումն ամրացրեց նրա սիրտը, սթափուեց, կանգնեց ու կրկին մխրճուեց վարչական գործերում:*

*Ըստ տեղական սովորութեան, երիտասարդ Բոհեմոնդի մահուամբ իր երէց քրոջը՝ Լուկիային կամ Լուկիանային էր վիճակւում իշխանութիւնը, ոչ իրենց մօրը: Բայց Տրիպոլսեցիք նախամեծար համարեցին ու խնդրեցին տիկնոջ առաջնորդութիւնը՝ քան նրա դստերն, որ հեռաւոր եւ անծանօթ էր իրենց: Մերժեցին հնազանդել վերջինի նշանակած փոխանորդին՝ բիբլոսցի Բերտրանդին եւ Հայոց փեսային*[3]*, եւ հնազանդութիւն խոստացան Սպիլին, որ յանձն առաւ յարգել նրանց քաղաքապետական կազմը: Այս ներքին պայքարներից օգտուելով Եգիպտոսի Քելաւուն սուլթանը, եկաւ պաշարեց ու գրաւեց Լաւոդիկէն, որ Անտիոքի (յետ որոյ Տրիպոլսի) իշխանութեան էր պատկանում: Լուկիան չզգաստացաւ եւ յաջորդ տարին անձամբ եկաւ Ակքով*[4]*, օգնութիւն հասցնելու Տրիպոլսեցիներին, որ նոյնպէս պաշարուած էին եւ առնական կորովով ձեռք առաւ այդ գործի առաջնորդութիւնը, սրտապնդելով ու զօրացնելով մարտնչողների բազուկը: Բայց իր եւ եւրոպացիների միացեալ դիմադրութիւնը չքաւեց Եգիպտացիների մեծագոյն զօրութեան դէմ, որոնք գրաւեցին քաղաքը* (26 *ապր.* 1289), *եւ անտիոքեան նախկին իշխանութիւնից Սպիլի ձեռքը մնաց Բիբլոսը միայն*[5]*: Իսկ ասպետները դժգոհ տիկնոջ վարչութիւնից, պատճառելով իր սուգը եւ խնդրեցին ուրիշին յանձնել պաշտօնը: Նա գաղտնաբար գրեց Բարթողոմէոսին գալ կրկին: Ասպետները յայտնաբերեցին թուղթը, բողոքեցին իշխանուհուն: Ապա խորհուրդ կազմեցին եւ իրենց վերցրին կառավարութիւնը*[6]*, վերջ դնելով մօր ու դստեր*

---

1. ***Հրկլ.*** 446: — 2. ***Նոյն՝*** 466: — 3. ***Աստ՝*** 402: — 4. ***Աստ՝*** 386: — 5. ***Մաս. Ա,*** 482-84. ***աստ՝*** 401: — 6. ***Պամ. Խչկ. Հայկականք, Բ,*** 780, 800:

մրցակցութեանն։ Ուրիշ տեղեկութիւն չունենք տիկնոջ մասին, որի որդին Անտիոքի ակրութեան վերջին իշխանն եղաւ եւ ինքը վերջին իշխանուհին, իսկ իր այրի նուն՝ Մարգարիտն անցաւ Գաղիա[1]

**ԺԴ. Մարակլէայի տան մէջ.**- Անտիոքի քաղաքի, բայց ոչ իշխանական տոհմի հետ կապել է իր անունը նաեւ **Ակսան**, դուստր սիր Պաղտին սպարապետի ու **Շուշանայի**[2], որին հանդիպում ենք 1221-ի մի յիշատակագրի մօտ. «տիկինն Ակսայ գփոխեալն առ Քրիստոս», եւ նրա հետ որդին՝ «զսիր Մանուէլ զգունդստապլ Աստուծոյ քաղաքին Անտիոքայ»[3]. ուստի յայտնի է, որ տիկինը հարսնացած էր օտարին։ «Անդրծովեան ընտանեաց» մէջ յիշւում է Ռինալդ Բառլացի[4] ազնուականը, որ Սիրիայի Մարակլէա աւանի տիրոջ տիտղոսն էր կրում, լինելով խնամակալը նոյն իշխանութեան տհաս ժառանգի՝ Մեյլուրի. եւ որ նրա տէրն էլ մնում է, յայտնի չէ ինչպէս, որով 1241-ին նոյն աւատն ընծայում է Անտիոքի Բոհեմոնդ Ե իշխանին, անշուշտ իր համար մեծագոյն շահեր ապահովելու նպատակով։ Իր ամուսինը նշանակւում է այնտեղ **Ակսան**[5], ոչ սովորական մի անուն մեր կամ օտարների մօտ, որ ես նոյն անձն եմ համարում մեր սխալագիր կամ սխալաձայն Ակսայի հետ։

Ակներեւ է այդտեղ Ռինալդի եւ որդու՝ Մանուէլի, փարումն Անտիոքի իշխանութեան, որի սպարապետութեան հասած էր որդին եւ հայրն ի նշան երախտագիտութեան նոյն՝ քաղաքի հետ էր կապում Մարակլէայի բախտը, երբ հայ կենակիցը քանի տարուց աւելի արդէն վախճանւած էր։ Բառլացի տոհմի մէջ Դիւկանգը չի յիշել ոչ տիկնոջ ազգը եւ ոչ որդուն, որը մենք գիտենք հայ յիշատակագրից, որ լուսաւորում է այս պատմական կէտը։

**ԺԵ.- Յոպպէի տան մէջ.**- Նշանաւոր էր միջին դարում Իբլինացիների տոհմը, որ խնամիութեան կապեր էլ ունեցաւ Երուսաղէմի (ապա Կիպրոսի) թագաւորութեան հետ։ Նրանք այդ կղզում եւ Սիրիայում ԺԳ դարում մեծ ազդեցութիւն ունեցան՝ աւելի քան թագաւորները, իշխելով զանազան քաղաքների մէջ, ինչպէս Յոպպէ, Սիդոն, Բերութ, Արսուֆ եւ այլն։ Եւ յաճախ պայլեր կամ վարիչներ տւեցին Երուսաղէմին եւ աւելի Կիպրոսին, որի սկար պետութեան նեցուկներն հանդիսացան, անհաւատների եւ արեւմտեան քրիստոնեաների սպառնալիքների դէմ։

Բալիան զաղիացին, եղբայրը Կառնուլոնի[6] Գուլիելմ կոմսի, միւս ասպետների հետ գնացել էր Երուսաղէմ եւ սուրբ քաղաքի թագաւորը՝ Փուկը[7], Ռամլայի մօտ,

---

1. Հրկլ. 466, ծն. 1։ 2 Աստ՝ 193։ – 3. **Հւք. յշ**։ — 4. Renaud Barlais: — 5. **Ընա.** 518. Agasse, հասարակ իմաստով անծեղ կը նշանակէ։ — 6. Chartres: — 7. Fouques, **Թգ.** 1131-44:

Յոպպէի եւ Ասկաղոնի մէջ, կառուցեց Իբլին ամրոցը, կասեցնելու համար Ասկաղոնացիների արշաւանքը եւ այդ նպատակով այն յանձնեց Բալիանին եւ իր սերունդներին, որ կոչւեցին նոյն բերդի անուամբ[1]. Հայկական Կիլիկիան եւ Իբլինացիները շատ մտերմութեամբ էին նայում իրար եւ զանազան խնամիութիւններ էլ կնքւեց իրենց միջեւ, նրանց իշխանութեան տակ եղած գրեթէ բոլոր քաղաքներում հարուներ գնալով մեր ազգից, որոնց բարի համբաւը դուռ էր բացում միւսների համար:

[illegible] որի մօրս էր յիշեալ Բալիանի: Իր հայրը 1228-ին վախճանւեց, իրեն թողնելով Իբլինի իշխանութիւնը: Գերմանիայի կայսրը՝ Փրեդերիկ Բ. 1231-ին իր Հռ. Փիլանգիերի սպարապետի առաջնորդութեամբ տորմիղ ու զօրք յղեց եւ յանկարծ գրաւեց Բերութը: Նրա տէրը՝ Յոհանը, մեր փեսացուի հօրեղբայրը, վազեց Կիպրոս, Ա. Հենրիկից[2] օգնութիւն խնդրեց, նաւեր ու զօրք վերցնելով մեկնեց (1232-ին): Տիւրոսից անցնելու ժամանակ հարւածեց Լոնգոբարդացիներին, որ պարանել էին իր դէմ: Հասաւ, պաշարեց իր քաղաքը եւ յաջողեց ազատել: Լոնգոբարդացիները գիշերով Տիւրոսից յարձակւեցին Յոհանի զինակիցներին խուճապի մատնեցին Կասալ Իմբերտում եւ վիրաւորեցին նրա երեք զաւակներին, որ քաջարար կռւում էին: Այնտեղ մեր փեսացուն, դեռ շատ երիտասարդ, այնպիսի քաջութիւններ գործեց, որ «յետոյ իր կեանքում միշտ գովքի արժանացաւ» ասում է Բուստրոնը:

Պատերազմը շարունակւեց եւ Հենրիկ արքան դրամի կարիք զգաց: Երիտասարդ Յոհանը վաճառեց Ակքովի մէջ ունեցած մեծ կալւածը եւ դրամը փոխ տւեց թագաւորին[3]: Իսկ 1249-ին գնաց մասնակցելու ս. Լուդւիկի կազմած խաչակրութեանը: Մասուրի ձախողւածից գերի բռնւած նոյն արքայի հետ, միասին էլ ազատւեց եւ խորհուրդ տւեց,որ Խաչակիրները չթողնեն Երուսաղէմն: Իբր 1251-ին կոմս անւանեց Յոպպէին եւ Ասկաղոնին: 1254-ին պայլ կարգւեց Երուսաղէմի թագաւորութեանն, որ երկու տարի յետոյ յանձնեց իր համանուն հօրեղբօրորդուն: Իսկ 1256-ի պայմանագրի մէջ կոչւում է «տէր Ռամլայի»:

Քաղաքականից աւելի մեծ է իր գրական համբաւը: Պատերազմի դադարից յետոյ, անձնատուր եղաւ «անդրծովեան» օրէնքների քննութեանը: Լայն ու խորաթափան մի միտք եւ վիճելու յոյժ ճարտար, անդրծովեան նշանաւորագոյն օրէնսգէտը հանդիսացաւ: Այդ շրջանում յօրինեց Երուսաղէմի անսիզքը, որն իր

---

1. Տոհմք. 448: — 2. Աստ՝ 387-8: — 3. Բուս. 81-89, 92:

մահուանից յետոյ էլ մնաց նոյն թագաւորութեան օրինագիրքը. Թողեց նաեւ Կոնրադի օրով ս քաղաքի մէջ պատահած չփոթութիւնների պատմութիւնը.

Զգիտենք թէ ե՛րբ կատարուեց իր ամուսնութիւնը մեր Կոստանդին պայլի դստեր եւ Հեթում Ա արքայի քրոջ՝ **Մարիամու** հետ[3], ինչպէս աւանդում է Թադէոս վարդապետը[4], որի մերձաւոր ազգականն է թւում: Այս հաշւով Յոհանը քենակալ է դառնում իր տիրոջ Հենրիկ արքային, որ փեսայացած էր Մարեմի քրոջ՝ **Թեֆանոյին**[5]: Այս իշխանն օրինագրքերի մէջ պատմում է Հայոց նոյն պայլը կամ աներն իր խորհրդին են դիմել, ժառանգական մի խնդրի կարգադրութեան համար[6], բայց առանց ակնարկելու ազգականութեանը թէպէտ այդ յուսթինը չի հերքում թէ արդէն կար: Մեր յիշատակարաններում Մարիամը կոչւել է միշտ Յոպպէի կոմսուհի տիտղոսով, ուստի կարելի է հետեւցնել՝ թէ այնտեղ իսկ հարս գնաց, որով եւ 1251-ից կամ Յոհանի կոմսութիւններից յետոյ: 1256-ին կը դառնայ մասնակցելու իր եղբօրորդու՝ Լեւոն դահաժառանգի ձիավարութեան հանդէսին, որ նախապէս տեսանք[7], որ հրաւիրել էր Հեթումը «նաեւ զզունթէս Ճաֆուն»[8], որը Յոպպէի կոմսուհին էր:

1262-ին իրեն նորից տեսնում ենք Կիլիկիայում, որ եղբայրն՝ Յովհաննէս արքեպ. յիշում է իրեն, «բարեսէրն **Կալամառի** զունդէս Ճաֆուն, որ զմագաղաթ ճառիս չնորհեաց, կրսէ, կրսերիս իւր»[9]: Ոչ առաջինի պէս ուրախ, այլ տխուր մի դարձ էր այդ. ինչպէս գրում է Կիլիկիայի տարեգիրք՝ «Կեռամառի ... տրտմութեան պատճառով եկել էր իր հօր՝ Կոստանդնի մօտ»: Այդ տրտմութեան պատճառը քաղաքական տագնապներ էին եղել, որոց այդ ժամանակ ենթարկւած էր Կիլիկիան Խարաման սուլթանի պատճառով եւ որոնց մասին խօսում է նոյն Տարեգիրքը[10]: Նրանք բերեցին ուրեմն Յոպպէի տիկնոջը մասնակցելու իր ընտանեկան ցաւերին եւ կարծես թէ փակելու համար նախ աչքերը ծերացած ծնողի, որ մահացաւ հետագայ փետրւարին եւ ապա իրենները, որովհետեւ «հասեալ նմա օր մահուն՝ վախճանեցաւ ի բերդն Լամբրուն», որ այդ թւականին արդէն դուրս էր իր բնիկ տէրերի ձեռքից[11], «եւ թաղւեց Սկեւռայի սուրբ ուխտի մէջ»[12], մինչ իր ամուսինը կնքում էր իր մահկանացուն երեք տարի յետոյ (1266-ին):

Մայր եղաւ հինգ զաւակների[13], որոնց երէցը՝ Գուիդոնը, յաջորդեց հօրը, իսկ միւսներն թւում է յարել են իրենց մայրենի տոհմին, որով Յովհաննէս արք. 1266-ին

---

1 Հրկլ 203. 305 եւն Պատմ. գրկ. ԻԱ, 447-50: — 3. Աստ՝ 47-48: — 4. Սիս. 75: — 5. Աստ՝ 387-8: — 6. Պատմ. խչկ. Օրէնք. Ա, 220. 7 Աստ՝ 404: — 8. Տրգ. Կիլ. 325: — 9. Հաբ. յշա.: — 10. Տրգ. Կիլ. 336-42: 11 Աստ՝ 65. 12 Տրգ Կիլ. 344: — 13. Սիս. 102:

*խնդրում է յիշել նոյն (վախճանեալ) կոմսուհուն եւ զաւակներից երկուսին՝ **Մարեմին** ու Ֆիլիպին: Միւս զաւակը՝ **Մարգարիտը**, Կիպրոսի կուսանոցի մայրապետն էր եւ որանց եղբօր Հեթումի որդին՝ Ռեմունդը, անհեռկալ է յիշում Հայոց՝ հանին պատկանած ազգին*

***ԺՁ.- Սիդոնի տան մէջ*** *- Իբլինացիների իշխանութեան տակ եղող վայրերից մէկն էր նաեւ հին Սիդոն (ապա Սայիտ) քաղաքը Սիրիայում, որի առաջին տէրն եղաւ Բալիանը, Յովհաննու հօրեղբօրորդին եւ նրան յաջորդեց զաւակը՝ Յուլիանը: Սա դեռ պատանի, 1252-ին ամուսնացաւ յիշեալ Մարիամու եղբօր՝ Հեթում Ա. արքայի դստեր՝ **Ֆիմայի** հետ, որ ըստ Հ. Ալիշանին հազիւ տասնչորս տարեկան էր[4]: Այս ամուսնութեանը վկայում է Թուրինեանց տեղեկատուն՝ թէ «Ֆիմին եղեւ կին Ճուլիան Սայիտոյ տիրոջն»[5]: Մինչեւ մեզ հասած է այդ խնամխութեան դաշնագիրը, կնիքով ու ձեռագրով հարսի հօրը, որ նրա օժիտը սահմանում է 25.000 սառակինեան բիզանդ ոսկի, հատուցանելի մեծ մասամբ դրամով եւ մի մասն էլ գոհարեղէն եւ այլ զարդերով[6]:*

*Ֆիմին հարսնութեան էր գնում սրտի մէջ տանելով իր ցանկալի մօր **Զապէլի** սուգը, վախճանուած մի քանի ամիս առաջ: Սուգ, որ նախաբանն էր լինելու հետագայ ցաւերի: Սիդոնի պաշտպան ու խնամարկու էին Գաղիայի ս. Լուդւիկ թագաւորն ու Հեթումը: Սակայն Հալպայի նախանձոտ սուլթանը՝ Մելիք էլ Նասր Յուսուֆը, աւելի յանդուգն ու նենգաւոր, Ֆիմայի ամուսնութեան յաջորդ տարին եկաւ պաշարեց քաղաք, գրաւեց, աւերեց, կոտորեց ու գերեվարեց: Հասաւ եւրոպացիների սուրը արքան, բայց ուշացած, նորոգեց քաղաքի աւերուածները եւ ստիպեց մեկնել իր երկիրը:*

*Յաջորդեց անդորրութեան մի շրջան, որի ընթացքում Ֆիմին կեանք ու նախնական կրթութիւն տուեց երեք զաւակներին: 1256-ին իրեն էլ ամուսնու հետ միասին ներկայ ենք տեսնում Սսիսի մէջ՝ հօր հրաւէրով եղբօր հանդէսին[7]: Յետոյ եկաւ թաթարական տիրապետութիւնը, որ քրիստոնեաների հետ հաշտութեամբ սկսեց. սակայն սիդոնացի ասպետների մի անխոհեմ վարմունքը նրանց դէմ, կայծ եղաւ նոր մի հրդեհի եւ Քիթ բուղա զօրավարն յարձակւեց եւ երկրորդ անգամ աւերեց Սիդոնն, որի ծովեզերքի անառիկ բերդը մի անգամ եւս ապաւէն ընծայեց Յուլիանին, եւ ընտանիքի դողահար սրտերին: Երիտասարդ իշխանը տեսաւ, որ այդ քաղաքը պահպանելն իր կարողութիւնից վեր էր: Նորանոր փորձանքներից ազատւելու համար, իր տէրութիւնը վաճառեց Տաճարական ասպետներին, ինչպէս գրում է Կիլիկիայի տարեգիրքը. «որ եւ*

---

1. ***Հւք. յշա***: — 2. *Աստ*՝ 394: — 3. ***Սիս.*** 102, 132: — 4. ***Ցշկ. Բ***, 470: — 5. ***Գամ. Ռբ.*** 211. *նոյնպէս **Ժմ.** Օշնի*, 98. ***Տոհմք*** 445: — 6. *Պաւ. Ա*, 134: — 7. ***Տրգ. Կիլ.*** 325 *աստ*՝ 404-5:

*յետոյ կորոյս զՍայիտն՝ խաղով ի Ֆուս կոր եւ գնեցին խաչազգեստքն Դամփլիլիք ». Այս վաճառումը 1260-ին կատարուեց, որը մեծ հակառակութիւն առաջ բերեց Ֆիմայի հօր՝ Հեթումի եւ նոյն ասպետների միջեւ: Յուլիանի տունն այսպէս քանդուած եւ Տաճարականների հետ ինքն էլ անշուշտ շահել էր աներոջ բարկութիւնը. որ Հեշտութեամբ չէր ներելու: Իրեն ուրիշ ապաւէն չէր մնում քան նոյն ասպետների մօտ, որոնց ընկերութեան մէջ մտաւ: Դրանով էլ չբաւարարուած, ուզեց իր մխիթարութիւնն որոնել մի մենաստանի առանձնութեան մէջ եւ մտաւ Երրորդութեան կարգը. ուր եւ վախճանուեց 1275-ին Տրիպոլում[3]:*

*Սիդոնի կորստով գործնականապէս վերջացած էր Ֆիմիի տիկնութիւնն էլ: Եւ փոխանակ հետեւելու գասալիք եւ անտուն ամուսնուն, զաւակներով դարձաւ հայրենի յարկը, ինչպէս յիշատակագրում է իր հարազատ՝ Լեւոնը, 1263-ին, այսպէս. «Աստուածասէր եւ բարեփառ կայսերածին ծիրանածնունդ՝ աստուածապահ քաղաքին Սայիտոյ տամ[4] Ֆիմի, դուստր բարեպաշտ թագաւորին Հեթմոյ, յաղագս սատանայական պատերազմացն եկն յաշխարհս կիլիկեցւոց առ հայրն իւր եւ աստուածասէր եղբարքն պր. Լեւոն եւ պր. Թորոս, ուստերովք իւրովք եւ դստերովք»: Եւ մաղթում է գթածաբար, որ Աստուած «զըստ մարմնոյ եկեալ փորձութիւնն եւ զտրտմութիւնն ի բարին եւ յուրախութիւն աւարտեսցէ[5]»: Իր զաւակները մնացին Հայքում, որ իրենց քեռին՝ Յովհաննէս արք. խնդրում է յիշել. «զՊալիան եւ զՃուան եւ զհեզանազն **Մարկրուն**[6]», որոնց միջինը վախճանուեց ջրայեղց, բազմապատկելով զգայուն մօր կսկիծը, իսկ միւսներն ամուսնացան. Պալիանը Բիբլոսի[7] տիրոջ **Մարիամ** դստրի հետ, որ քոյրն է թւում նոյն քաղաքի պարոնի՝ Գուիդոնի, եւ Մարկրունն այս վերջինի հետ[8]: Իսկ իրեն մօր այնուհետեւ վարած բարեպաշտ ու բարեգործ կենցաղը ծանօթ է մեզ[9]: Ինչպէս եւ միջնորդութիւնն ի նպաստ կիպրացի աքսորեալների Կիլիկիայում[10] եւ տեսնելով իր կորանցրած քաղաքի վերջին անկումն էլ Եգիպտացիների **ձեռքը**[11]:*

***ԺԷ.- Բերութի տան մէջ.-*** 1.- *Նոյն Ֆիմեայի քոյրը **Մարիամն** էլ հարսնացաւ Իբլինացւոց. ինչպէս գրում է Ռուբինեանց տեղեկատուն՝ թէ «Մարիայն եղեւ կին Կի տը Պլնին[12]». որ է Գուիդոն Իբլինացի, թոռն Յոպպէի մեզ ծանօթ տիրոջ Յոհաննու[13] համանուն հօրեղբօր. որ տեսանք վերեւում եւ որ առաջին տէրն եղաւ Բերութի, ուր հաւանօրէն նստելու էր թոռն էլ: Այս ամուսնութիւնը հաստատում է նաեւ*

---

1 Տրգ. Կիլ 321: 2. Հրկլ. 445. — 3. Նոյն՝ 467. աստ՝ 172: — 4. Տես. բառդ աստ՝ 122: — 5. Հւք. յշտ: 6. Բ. Սրգ. Ա. 164: 7. Աստ՝ 402: — 8. Տոհմք. 456. Ընա. 167. աստ՝ 412: — 9. Աստ՝ 160, 172, 194 եւն: 10. Աստ՝ 391-92. 11. Աստ՝ 389-90: — 12. Փամ. Ռբ. 211: — 13. Աստ՝ 406:

*Անդրծովեան տոհմերը», կրկնելով ապա՝ թէ «Գուիդոն, որդի Բալուինի Իբելինացու, սենեկապետ Կիպրոսի, ամուսնացաւ Հայաստանի Հեթում արքայի դստեր Մարիամու հետ», որ եղբօրորդին է լինում Կիպրոսի դշխուհի* ***Թեֆինոյի***[1]*, որով եւ Գուիդոնի խնամին նոյն արքունիքի։ Ունեցան երկու զաւակներ՝ Թորոս ու* ***Զապէլ***[2]*։ Բացի այս մեր այդ փեսայի կեանքի մասին տեղեկութիւնները պակասում են։ Իսկ Մարիամը 1263-ին պարզապէս յիշուած է Լեւոն եղբօր կողմից. «իմ կրտսեր քոյր Մարիամ*[3]*», որի մասին նոյնպէս պատմութիւնը համր է։*

2 - *Իրենց յիշեալ որդին՝ Թորոսն, իր կարգին պսակւեց ուրիշ մի հայուհու հետ, Սարւանդիքարի տիրոջ՝ Հեթումեան Օշինի դուստր՝* ***Զապէլի*** *հետ եւ որդի ունեցաւ Լեւոն եւ* ***Դիֆա***[4] *կամ* ***Ռիթա****։ Իսկ Թորոսի յիշեալ* ***Զապէլ*** *քոյրը բոլորովին հայացաւ, կին գնալով Կոռիկոսի տիրոջ՝ Հեթում պատմիչին եւ ծնեց Կոստանդին, Լեւոն, Պաղտին եւ դուստր Դիֆա*[5] *կամ թերեւս նոյնպէս* ***Ռիթա****։ Օշինից եկաւ մեծ ծանօթ անխիղճ բռնաւորը, որ սպարապետ կարգեց իր եղբօրը՝ Կոստանդինին*[6]*, եւ ապա երկուսը միասին մահւան մատնեցին*[7]*։*

3.- *Վերոյիշեալ Գուիդոնի համանուն հօրեղբօր ու Կիպրոսի գունդստապլի հինգ որդիներից էր Բալիանն, որ անդրանիկը լինելու իրաւունքով տէրն էր Բերութին եւ նոյնպէս Կիպրոսի սենեսկալը։ «Անդրծովեան տոհմերի» անծանօթ հեղինակն ասում է թէ այս «Բալիանն ամուսնացաւ* ***Ալիծի*** *հետ, դուստրը Լամբրոնի տիրոջ՝» Գ Հեթումի եւ* ***Թեւանուի***[8]*։ Ունեցան չորս զաւակներ՝ Գուիդոն,* ***Մարիամ, Զապէլ*** *ու* ***Մարգարիտ****։ Իբրեւ ամուսնու հաւատարիմ ընկեր Ալիծը հետեւում է նրան եւ 1287-ին նրան տեսնում ենք Կիպրոսում «սենեշալես Կիպրոսի» տիտղոսով*[9]*։*

***Կսկիծով ականատես եղան 1291-ին իրենց քաղաքի՝ Բերութի անկմանն Եգիպտացիների ձեռքով***[10]***։ Դրա փոխարէն 1307-ին Բալիանը կոչւում է Գալիլիայի***[11] ***իշխան, որ պարզ մի տիտղոս էր այնուհետեւ։ Իսկ 1310-ին ուրիշ հինգ ասպետների հետ պատանդ մնաց Հայոց մօտ, մինչեւ Կիպրոսի թագաւորն՝ Հենրիկ Բ գործադրեց մեր Օշին արքայի պայմանները***[12]***։ Եւ որովհետեւ Ամորկանի դաւադրութեան մէջ այս վերջինի կողմն էր եղել եւ պահանջել էր նոյն թագաւորի հրաժարումը վարչութիւնից***[13]***, վերադարձին բռնակալի միւս կուսակիցների հետ բռնուեց ու գլխաբաց եկաւ, ծնրադրեց***

---

1. ***Աստ***՝ 387-88։ — 2. ***Տոհմք***, 445, 449։ — 3. ***Հւք. յյա***։ — 4. Diffa։ — 5. ***Տոհմք***, 449։ — 6. ***Սխս***. 340։ — 7. ***Աստ***՝ 45։ — 8. ***Աստ***՝ 47։ — 9. ***Աստ***՝ 191-2։ — 10. ***Աստ***՝ 312։ — 11. ***Մաս. Ա***, 110։ — 12. ***Նոյն***՝ 113, 114. ***սաս***՝ 317։ — 13. ***Աստ***՝ 65։

*իր օրինաւոր տիրոջ ու քեռորդու առջեւ. Թագաւորին խնդրեց ու բանտարկեց Կերինի ամրոցում[1]. մինչեւ ներումն ընդունեց արքայի մեծանձնութիւնից[2].*

*Իսկ Այլծր 1310-ին դեռ ապրում է Կիպրոսում եւ ականատես է ամուսնու կրած նեղութիւններին, որոնք վշտացնում են նրան եւ առաքելական թղթերն ստանում է «իր կեանքի մխիթարութեան համար[3]» եւ գրիչը խնդրում է յիշել այն «իր բոլոր նախնիներով ու ծնունդներով», որոնց մասին ուրիշ տեղեկութիւն չունենք:*

***ԺԼ.- Արսուրի տան մէջ.-*** *Նոյն Բալիանի կրտսեր եղբայրներից էր Փիլիպոսը. տէր Արսուրի (այժմ Արսուֆ):* 1286 *թուին Կիպրոսի սենեսկալութեան մէջ[4] եղբօրն յաջորդեց, կամ իբրեւ վարիչ Երուսաղէմի թագաւորութեան, որ Հենրիկ Բ նրան կարգեց, բնակելով Սիրիայում[5] եւ ըստ «Անդրծովեան տոհմերին» նաեւ Կիպրոսի գունդստապլ էր[6]: Նրա այդ յաջողութիւններն արդիւնք էին իր նկարագրի, որը սահմանում է «խորհրդական, հասուն, անկեղծ, իմաստուն եւ հաստատուն մի մարդ[7]»: Երբ Հենրիկը կորսնցրեց Սիրիան[8], Փիլիպպոս Բալիանի հետ անցաւ Կիպրոս եւ շարունակեց սենեսկալութիւնը:* 1306 *թուականին արքայի եւ Ամօրկայի կնքած պայմանագրում[9] երկու եղբայրներն էլ նշանակուած են անդամ տասն ասպետների խմբին, որ արքային «ընկերելու» պաշտօն ունէին[10]:*

*Փիլիպպոսն էլ Հայոց փեսայ էր, ամուսին ունենալով ըստ «Անդրծովեան տոհմերի» գրածին՝ «**Մարիամը**՝ դուստրը պարոն Վահրամի» Կոռիկոսի տիրոջ ու Հայոց մարաջախտի, որի հետ սակայն չկարողացաւ երկար կենակցել, որովհետեւ հայուհին մեռաւ:* 1309-*ին արդէն նրա տեղը գրաւել էր Բիբլոսի[11] տիրոջ՝ Գուիդոնի, համանուն դուստրը՝ **Մարիամը**, որ միանգամայն Սիդոնի հայազգի տիկնոջ **Ցիմայի** դստեր՝ **Մարկրունիի**, զաւակն էր[12], որն ունէր հայու մի նշոյլ, մի հայուհու յաջորդելու համար եւ զաւակներ էլ տուեց Փիլիպպոսին:*

*Ամօրիկի դաւի մէջ[13] Փիլիպպոսն իր եղբօր հակառակ ուղղութիւնն ընդունեց, փարելով Հենրիկին, որ «միշտ հետեւում էր նրան, իր այդ քեռու խորհուրդներին, մեծարում էր միշտ նրան՝ թէ հասակի եւ ազգականութեան եւ թէ անձի բարութեան ու քաջութեան համար[14]»: Այս պատճառով էլ աքսոր առաքուեց բռնաւորի կողմից եւ յետոյ վերադարձաւ արքայի հետ[15]:*

---

1. *Բուս.* 151, 239-40:  2. *Աստ՝* 396-7: — **3. *Աստ՝* 242: — 4. *Ընտ.* 370, 687, 688: — 5. *Աստ՝* 389: — 6. *Տոհմք.*** 449:  7. *Բուս.* 135: – 8. *Աստ՝* **390: — 9. *Աստ՝* 390: — 10. *Մաս. Բ*, 102: — 11. *Աստ՝* 402: —**
12. *Տոհմք.* 449, 465- *Բուս.* 161:  13. ***Աստ՝* 390-91 *եւն*: — 14. *Բուս.* 135: — 15. *Աստ՝* 391-92, 396-97:**

*Իբր ծանօթութիւն նշում եմ, որ Հ. Ալիշանն Իբլինացի Հարանիից առաջների նկատմամբ տարբերում է իմ ասածներից. Վերոյիշեալ Բալիանի կինը **Զապէլին** էր նշում, որը դուստրն էր (անծանօթ) Մանիշոյ տիրոջ՝ Օշինի, փոխանակ սրա եղբօրդստեր Ալիծին[1]. Այս վերջինը տալով բուն այս Փիլիպպոսին փոխանակ Մարիամուն[2], եւ այս Փիլիպպոսի հօր համանուն հօրեղբօր՝ Փիլիպպոսի՝ Կիպրոսի[3] պայլին, որ մեռել էր 1228 թուին[4], ինչպէս տեսանք այլուր[5]: Բայց դրանով նախ հեռացաւ այս տեղեկութիւնների բուն աղբիւրներից: Եւ երկրորդ, եթէ Մարիամու հայրը՝ Վահրամը, 1226-ին դեռ մարաջախտ էր[6], ուրեմն ծերունի չէր եւ իր փեսան, իր համար որդու աստիճանի վրայ էր եւ իր դուստրից յետոյ անցած երկրորդ ամուսնութեան եւ երեք զաւակների հայր լինելով, դժւար թէ 1228-ին մեռած լինէր: Ուրեմն Մարիամու ամուսինը մեր նշած Փիլիպպոսն է եւ Բալիանինն՝ Ալիծը:*

***ԺԹ-. Մորֆայի տան մէջ.*** *- Մաքերասը ԺԵ դարում հետեւեալ տեղեկութիւնն է տալիս մեզ. «**Մարիամ** օրիորդը, դուստրը Տիւրոսի իշխանի (Ամորիկի), ամուսնացաւ Կանտակուզենեան Մանուէլի հետ, ինքնիշխան Մորֆայի տիրոջ եւ եղբայրը Կոստանդնուպոլսի կայսեր[7]»: Երկու վրիպակ կայ այստեղ: Նախ՝ Մանուէլը կրտսեր որդին է ծանուցած եւ ոչ եղբայրը Յովհաննէս Ե կայսեր, որին վերջինս այցելութեան գնաց 1357-ին ու իբր մի տարի մնաց[8]: Երկրորդ՝ Ամորիկը միայն երկու դուստր ունէր տարբեր անուններով ու վիճակներով, որ յայտնի են մեզ[9], ուրեմն նա չէր կարող Մանուէլի աները լինել: Դարդէլն ուղղում է այս վերջին սխալը, գրելով թէ 1367-ին Կիպրոսի Պետրոս Ա արքան Մորֆայի կարեւոր կենտրոնի՝ Մոթոնի մէջ, ուր իշխանական աթոռն էր, գտաւ «իր արիւնակից ոմն կին, որ կոչում էր տիկին **Զապէլ** Լիւսինեան, դուստրը քաջակորով Հայոց Գուիդոն թագաւորի[10]», որ Ամորկանի ու մեր **Զապլունի** որդի՝ Գուիդոնն էր[11]: Տեսանք, որ վերջին տիկնոջ զաւակներն իր հետ փոխադրուեցին Կիլիկիա եւ հայացան բնակութեամբ, կեանքով ու գործունէութեամբ[12]: Հետեւաբար յանձին Գուիդոնի դստեր մենք ունենք իրապէս մի հայուհի եւ Հայոց արքայի զաւակը, որ կենակից էր գնացել Մանուէլ կայսերորդուն եւ տիկին Մորֆայի:*

*Դարդէլը շարունակում է պատմել՝ թէ Զապէլն ընդառաջ ելաւ յիշեալ Պետրոսի, մեծարելով ու գեղեցիկ նուէրներ ընծայելով նրան ու հետեւորդ պարոններին: Եւ երկու խնդիր մատուցեց արքային: Առաջինն, որ իր Յոհան հօրեղբօր որդին Լեւոնը – միակ*

---

1. ***Սիս.*** 85, 371: — 2. ***Անդ՝*** 371: — 3. ***Անդ՝*** 334: — 4. ***Հրկլ.*** 365: — 5. ***Աստ՝*** 406-7: — 6. ***Սիս.*** 485: — 7. ***Մաք.*** 39: — 8. ***Լըբոյ. Ի***, 377-78: — 9. ***Աստ՝*** 390-91: — 10. ***Դրդ.*** 60-61: — 11. ***Աստ՝*** 399: — 12. ***Աստ՝*** 398-9:

մնացորդն իր ռոճի կառաւածից   Կիպրոսից իրեն ուղարկի. որպէսզի երբ ինքը վախճանուէր. նրան ժառանգ կարգէր իր մեծ հարստութեանն. (ապացոյց թէ ինքն անորդի էր). եւ միանգամայն ճոխութեամբ ամուսնացնէր այնտեղ: Երկրորդ՝ Կիպրոսի մէջ նրան փոքր մի աւան շնորհէր. որպէսզի եթէ յանկարծ ամուսինը վախճանուէր. իր համար մի կայան ունենար այնտեղ: Պետրոսը հաւանեց եւ նրա պապի՝ Ամորկանի[2] աւանից[3] մի բաժին տուեց. որը տարեկան տասներկու հազար արծաթ դահեկան էր հասոյթն: Իսկ Լեւոնի ամուսնութեան համար կղզու իշխաններից Կիրմաւրոսի հետ համաձայնեցին նրա Կատարինէ դստեր համար: Արքան Կիպրոս վերադարձաւ եւ Լեւոնը դեռ Մոթոն չմեկնած Պետրոսն սպանուեց իր ազատանու միջոցով: Խնամակալ ընտրուեց Յոհան Լիւսինեանն. որ ջնջեց նախորդի շնորհներն: Ուստի Լեւոնը մնաց Կիպրոսում եւ ամուսնացաւ Սուասոնեան այրի Մարգարիտի հետ[4]:

Սպանուած արքային յաջորդեց եղբայրը՝ Պետրոս Բ. որի թագադրութեան տօնին Ջապէլը գնաց, իր հետ տանելով «մեծամեծ ընծաներ եւ ճոխ պարգեւներ»: Հանդէսից յետոյ նորապսակ թագաւորին յիշեցրեց եղբօր պայմանն աւանի համար, որը նա նոյնպէս մերժեց Յովհաննի խորհրդով: Ջապէլը պնդեց իր իրաւունքի վրայ, բայց իզուր: Այն ժամանակ սրտնեղած, տարած պարգեւները չյանձնեց եւ նաւարկելու դիւրութիւն չունենալով, մնաց այնտեղ Լեւոնի մօտ ամբողջ ձմեռը: Այդ յապաղումը նպաստեց նրան: Երկար հետամուտ եղաւ ու յաջողեց նուէրներով ու միջնորդներով համոզել Պետրոսին տալու իր աւանից մի մասն, որը տարին երեք հազար ոսկի դահեկան էր հասոյթը: Իսկ ինքն այն Լեւոնին թողեց. իր հօրեղբօրորդուն եւ Հայոց ապագայ թագաւորին ու մեկնեց Մորէա[5]: Իր տատի՝ Ջապլունի. եւ հօրը կամքն ու կարողութիւնն էր, որ գործում է այդ տիկնոջ մէջ. յօգուտ իր ազգականի ու հայրենի տանը:

Եւ Մոթոնում. հայ Ջապէլի գահի վրայ, Ս. Մարկոսի առիւծի թեւերի ներքեւ, մի օր գալու եւ բազմելու է վերածնուած հայ հանճարն՝ առաջնորդութեամբ մեծ Սեբաստացու, որ տասներկու տարի յետոյ, հարաւից շնչող խորշակը կրկին հալածելու է դէպի հեռու հիւսիս. ապնջական անդորրութեան մէջ մի կղզու, որ հանդիսանալու է աշխարհի առջեւ մի Հայաստան՝ լոյսի վառարան:

---

1 Անդ:   2. Աստ՝ 389:   3. Աստ՝ 399: — 4. Աստ՝ 327: — 5. Դրդ. 61-66

*Եկեղեցին միշտ աններող է եղել օտար կրօնների կամ դաւանութիւնների հետեւողների հետ խնամիութիւններ եւ օրէնքով արգելել է, որ սկզբից մեզ մօտ կային. Այսպէս Ց՟Հ. Մանդակունին Ե դարում պնդատում էր, թէ որոշներն «Աստուծոյ թշնամեաց» հետ սիրահարւում էին, ամուսնութիւն կնքելով հրեաների, հեթանոսների ու հերձուածողների հետ*[1]*: Պարտաւայի ժողովն (771-ին) քահանաներին պատւիրեց, որպէսզի քրիստոնեաները «չկատարեն հեթանոսների հետ ամուսնութիւններ», որովհետեւ այդ «ամուսնութիւն չէ, այլ անօրէն եւ պիղծ խառնակութիւն*[2]*»: Նոյն արգելքը շատ անգամ կրկնեցին նաեւ մեր յաջորդ վարդապետները՝ Դաւիթ որդի Ալաւկայ*[3]*, Մխիթար Գօշը*[4]*, Մովսէս Երզնկացին*[5]* եւ ուրիշներ, խիստ պատիժներ էլ կարգելով: Մանդակունու «հերձւածողների» կարգը դրեց Աբրահամ կթղ. քաղկեդոնացիներն էլ, այսպէս պատւիրելով. «այլեւ ամուսնութեամբ ամենեւին հեռանալ» նրանցից*[6]*: Նոյն ձեւով մտածում էր նաեւ Անանիա կթղ. Մոկացին եւ Բագրատունի Աբաս արքային արգելել տուեց նրանց հետ ամուսնութիւնն իր իշխանութեան մէջ*[7]*: Ապացոյց՝ թէ ուրիշներ, ինչպէս եւ Յունաստան եւ Վրաստան գնացող հարսներն, որոնց տեսանք, չէին ճանաչում կամ յարգում այդ խտրութիւնը եւ որը յետոյ բոլորովին ջնջւեց Կիլիկիայում*[8]*: Ուրեմն այստեղ նշելու ենք այլակրօնների հետ կատարւած խնամիութիւններն միայն:*

***Արդարեւ այդ վերջին խորշելի ամուսնութիւններում անգամ օրէնքները կորցնում էին իրենց ոյժը, երբ ասպարէզ էին գալիս քաղաքական շահերն եւ ստիպում էին մեր իշխաններին նրանց հակառակ գործելու: Այսպէս Դ դարում եւ նոյնպէս յետոյ Հայաստան եկած պարսիկ կանանց*[9]*, մինչդեռ Պարսկաստան կամ ուրիշներին հարս գնացած հայուհիները չեն յիշւում մինչեւ արաբական տիրապետութեանը, որ ստիպողական դարձրեց խնամիութիւնները, նախ նրանց եւ ապա յաջորդ այլազգիների հետ: Բացի մեր յիշածներից, ամիր Սարգսի որդին՝ Խաւռասն, երկու անգամ ամուսնացել է պարսիկ ազնւական ու քրիստոնէացած կանանց հետ, Խուժլու խաթունի եւ Զմրուխտ խաթունի հետ*[10]*: Զմոռանանք Հեթումի արաբ հարճին եւ Զաքարեան Աւագի, Սմբատ գունդստապլի եւ Հեթումեան Սմբատի օտար կանանցն էլ*[11]*: Եւ եթէ արեւմտեան քրիստոնեայ արքունիքն ու պալատներն իրենց լուսաւոր կրօնով, նրբութեամբ, շուքով եւ ընծայած պատւով հրապոյր ունէին մեր օրիորդների համար, որ նրանց սեմերից ներս***

1. Մանդ. 161: — 2. Կան. Ժա: — 3. Կան. Ի: — 4. Դատ. 178. Առկ. 105: — 5. Մ. եզ. Խր: — 6. Արր. 1897, 132: — 7. Գր. Թղթ. 195: — 8. Աստ՝ 355: — 9. Աստ՝ 355: — 10. Նիւթ. 17: — 11. Աստ՝ 48, 51:

էին մնում. ընդ հակառակն զզուանքով էին գնում հեթանոսների յարկերը, որտեղ պակասում էին հոգեկան ու բարոյական մխիթարութիւն նրանց զգայուն սրտերի եւ կարող էին կրկնել Եսթերի հետ «Ատում եմ անօրէնների փառքն եւ զարշում եմ նրանց անկողնուց»:

Այդ գոհողութեան փոխարէն՝ նրանցից շատերը յաջողեցին օգտակար հանդիսանալ իրենց ազգին եւ որոշները քաղաքականապէս էլ փայլեցին. մինչ ուրիշներ որեւէ ազդեցութիւն չունեցան բնաւորների անզգայ սրտերի վրայ, եւ աննշան մնացին նրանց յարկերում կրօնական ու քաղաքակրթական զամբարաններում: Իսկ ո՞վ է կարող թուել ամբողջ այն անանուն հայ մանկամարդերի ու կոյսերի անունները, որ գերութեամբ կամ յափշտակութեամբ գնացին փակուեցին եւ անյայտացան նրանց. անպարկեշտ կանանոցների մէջ[1]: Չի կարելի մօտենալ նրանց. այլ միայն տեսնենք նրանց, որ պաշտօնապէս կնութեան գնացին եւ յիշուած են եւ կամ որոնց կենսագրական տեղեկութիւնները փոքր ի շատէ մեզ հասել են:

***Ա.- Հեթանոսական շրջանում***.- Կատարեալ լինելու համար մեր աշխատութիւնը, ստիպուած ենք յիշելու նախ այն հայուհիներին, որ մեր քրիստոնէութիւնից առաջ պատմւում են օտարներին հարսնութեան տրուած եւ որոնք կամ գոնէ յիշուածները, շատ քիչ են թւով, սակայն վկայելով թէ այսպիսի խնամիութիւններն սկսել են շատ վաղուց: Ես չեմ մօտենալու նրանց, որ պատմութեան ապահով հովանին չունեն իրենց վրայ եւ որոնք մինչեւ հին Եգիպտոս են տանում մեզ խարխափելով: Կան եւ կանայք, որոնց մասին գրուածներն եթէ չենք կարող ճշտել, բայց իրենք գոնէ յիշուած են որպէս հայ:

1.- Այսպէս գուտ աւանդական է այն տեղեկութիւնը, թէ Տիգրան Ա իր քրոջը՝ Տիգրանուհուն, կնութեան է տուել Մարերի Աժդահակ արքային եւ կատարել է տիկնութիւնը փառքով մինչեւ Աժդահակի[2] սպանութիւնն, որ ասւում է՝ թէ նա խաղաղութեամբ մահացել է[3]:

2.- Խորենացին Ա Արտաշէսի դստերը՝ ***Արտաշամին***, ամուսնացնում է Վրաց Միհրդատ բդեշխի հետ, նրան յանձնելով հիւսիսային լեռների ու Պոնտոսի ծովի կողմնակալութիւնն էլ[4]: Բայց մենք չունենք այս տեղեկութիւնների վաւերացուցիչ արտաքին աղբիւրներ:

3.- Ընդհակառակն ստոյգ է՝ թէ մեծն Տիգրանն սկսելով իր աշխարհակալութիւնը, պարթեւների ձեռքից խլեց բացի ուրիշ տեղերից՝ եւ միջին

1. Աստ՝ 4, 321-29: 2. Խոր. Ա, իր, իթ. ասա՝ 280: — 3. Քսեն. Կիւր. Ա, ե: — 4. Խոր. Բ, ժա:

*Աշոցստանք կամ Աշոցստականք. ասում է Սամարանք։ Եւ այդ ավանդութիւնն ունի ամրացնելու համար իր դուստրերից մէկին* ***Տիգրանդուխտ*** *անուանենք կնութեան տուեց նոյն աշխարհի Միհրդատ արքային. ինչպէս գրում է Դիոնը. նոյն թագուհին կոչելով «Տիգրանի փեսայ».*

4 *Պատմական է դարձել նոյն հայ աշխարհակալի որդու՝ Արտաւազդի խնամխութիւնը պարթեւների հետ. Նա յաջորդելով իր հօրն, եւ բարեկամացած էր հռոմէացիների հետ. եւ այդ պատճառով թշնամացած պարթեւների հետ. որոնց արքան Որոդէսը իր բանակի մէկ մասով յարձակւեց Հայաստանի վրայ եւ միւս Սուրէնի գլխաւորութեամբ յղեց հռոմէացի զօրավարի՝ Կրասոսի դէմ։ Սա նեղը ընկած. իրեն օգնութեան կանչեց Արտաւազդին. որը պատասխանեց՝ թէ ինքը կարօտ էր նրա օժանդակութեանը։ Հռոմէացին դաւնութեամբ կուլ տուեց այդ մերժումը եւ քիչ յետոյ սպանւեց թշնամիներից։ Մինչ այն Հայոց արքան ստիպւեց հաշտութիւն կնքել հզօր ախոյեանի հետ եւ իր քրոջը - սրան էլ* ***Տիգրանանոյշ*** *կոչենք - կնութեան տուեց նրա Պակոր որդուն։ Սրան յաջորդեցին երկուստեք խնջոյք եւ ընդունելութիւններ։ Բայց քիչ յետոյ Որոդէսը նախանձելով Սուրէնի յաջողութեանն, սպանեց նրան։ Ինքն էլ իր որդուն կորսնցրեց եւ ապա կեանքն էլ Փրայատ որդու ձեռքով*[3]*։ Եւ Տիգրանի դուստրը այրի դարձաւ։*

5. *Միջնադարեան վկայարանութիւններից գիտենք եւ հին պատմութիւններում անծանօթ ու ստուգելի է մնում* ***Մարիամի*** *անունն. որ երեւում է հայ քրիստոնէութեան սեմի վրայ. Յակոբ Մծբնացու օրով նշանակւած «Հայոց նախարարի դուստրը կին տուեց Ոստայեցիների քրմապետին» Միջագետքի մէջ. որ տէրն էր աշխարհի։ Մարիամին յաջողւեց ամուսնուն հաւատքի բերել. տալով Մարութա անունը եւ այնտեղ եկեղեցի ու քահանայութիւն կարգեց։ Երեք որդի ունեցան. որոնցից մէկը յաջորդեց հօրը եւ երկուսն եղան «թագաւորութեան զօրավարները»։ Փափագեց. աղօթեց եւ ընդունեց իր անդրանիկ որդու զաւակին՝ Մարութա Աստծուն նւիրելու շնորհքը. որ մինչեւ եպիսկոպոսութեանն էլ հասաւ։ Բազմարդիւն քարոզներից ու հովւութեան կատարելուց յետոյ վախճանւեց սրբութեամբ։ Գալով Մարիամին. թաղեց ամուսնուն. ուխտի գնաց Երուսաղէմ. առատ ողորմութիւն տուեց եւ վերադառնալով «իր վանքը գնաց. որ նախապէս կառուցել էր եւ կրօնաւոր դարձաւ» մինչեւ իր*

---

1. *Ստ. Աշխ. ԺԱ, ժգ*, 15։ — 2. *Առ. Սնտ. Բ*, 455։ — 3. *Պլտ. Դ*, 106, 112, 138-40։

*վախճանը ու իր թոռան ձեռքով թաղուեց*[1] *Այսպիսով Մարխանը ճշմարիտ առաքելուհի հանդիսացած է լինում. Եթէ կարողանայինք իր անձը կամ վարքը պատմականօրէն նկարագրել, որը սակայն անստուգութեամբ է շրջապատուած, յատուկ սրբերի կենսագրութիւնների, որոնց մէջ ոչ ստոյգ տեղեկութիւններ շատ կան:*

***Բ. - Արաբ տներում.*** *Յայտնի են արաբների ասպատակութիւններն ու տիրապետութիւնը մեր աշխարհի վրայ է դարից սկսած*[2]*: Շատ դառն եղաւ նրանց լուծը*[3]*: Սակայն մեր մի քանի իշխանները կարողացան նուրբ քաղաքականութիւն վարել եւ նոյնիսկ թագաւորական գահեր էլ հիմնեցին նրանց օրով: Այդ յաջողութեան մէջ հայուհին էլ բաժին ունի: Նրանց հետ ամուսնանալով դիւրին դարձրին մեր իշխանների գործը:*

1. - *Արաբ ոստիկաններից էր Մրուանը՝ Մահմետի որդին, որ 742 թւին եկաւ, քաղցրութեամբ ընդունեց նախարարներին եւ Բագրատունի Վասակի որդուն՝ Աշոտին, պատրիկ դարձրեց հայ աշխարհի վրայ: Նրա այդ պատիւը նախանձի պատճառ եղաւ Մամիկոնեան Սմբատի որդիների՝ Գրիգորի ու Դաւթի համար, որոնք այդ պատճառով «յոյժ խեռութեամբ» էին ապրում Աշոտի հետ: Մրուանը լսեց ու բանտարկեց նրանց Եմանի մէջ*[4]*: Այսպիսով պառակտում ստեղծուեց երկու տոհմերի միջեւ: Նորընտիր Վլիթ ամիրապետն ազատ արձակեց նրանց: Սկսեցին շարունակել իրենց բռնութիւնը նախ Վասպուրականի, ապա Աշոտի դէմ, դաւելով նրա կեանքին, որի համար Դաւիթն սպանուեց արաբների ձեռքով: Իսկ Գրիգորը փորձեց միաբանել հայ նախարարներին նրանց դէմ եւ ի վրէժ եղբօրը գիշերով յարձակուեց, ձերբակալեց Աշոտին եւ աչքերը կուրացնել տուեց: Ինքն էլ յետոյ մեռաւ որովայնի հիւանդութեամբ*[5]*:*

*Անցան տարիներ եւ Մրուանին յաջորդեցին ուրիշ խուժդուժ իշխաններ: Եզատի օրով հայ նախարարները վերստին գլուխ բարձրացրին արաբների դէմ, նախաձեռնութեամբ նախ Մամիկոնեան Արտաւազդի եւ երկրորդ անգամ նրա տոհմակից՝ Մուշեղի: Յաջողութեամբ կռուեցին, ապա պառակտուեցին ըստ սովորութեան, քաշուեցին իրենց գաւառներն ու սկսեցին անջատաբար պատերազմել, այդ պատճառով թուլացան, պարտուեցին (772-ին) եւ ընկան զանազան իշխաններ, որոնց մէջ եւ յիշեալ Մուշեղը*[6]*:*

*Վարդանը շարունակում է այս պատմութիւնը, գրելով թէ նոյն Մուշեղը թողեց երկու որդի եւ դուստր, որ յետոյ ապաւինեցին Վասպուրականում: Մեհրուժան*

---

1. *Վկր. Բ.* 17 *եւն*: 2. *Աստ՝* 126: — 3. *Աստ՝* 41, 212-13 *եւն*: — 4. *Ղեւ.* 112-13: — 5. *Ղեւ.* 118-24: — 6. *Նոյն՝* 127-29, 137-51:

Արծրունին Համազասպ ու Սահակ նահատակների եղբայրը. որ նրանց փախածնից ուրացութեամբ ազատուել էր  րանեց. ազանեց նոյն երկու եղբայրներին իրենց հօր փոխարէն, որ պատճառ էր եղել ազէտալի ապստամբութեան Քայլերից մէկն որի անունը դժբախտաբար անծանօթ է մնացել, որին կարելի է **Մուշեղզուխտ** անուանել, տեսաւ իր հայրենի գաւառի եւ իշխանութեան խաւարումը եւ Բագրատունի ու Արծրունի մեծ տոհմերի թշնամութիւնն իր տան դէմ եւ առանկան զատողութեամբ յանդուգն մի գաղափար ունեցաւ դրա փրկութեան համար: Ը դարի վերջում եւ Թ ի սկզբին Մանազկերտի մէջ ապրում ու գործում էր Ջահապ արաբը Խիզախ մամիկոնուհին խորհեց չահագործել նրան ի նպաստ իր ծրագրին եւ «ետ զինքն յամուսնութիւն» նրա՝ Եւ այդ կերպով «Թիկունս առնելով գնա», արաբն սկսեց ասպատակել ու գրաւեց Արշակունեաց մէկ մասը. որը տիկնոջ հայրենիքն էր «եւ խորհէր տիրել ի ձեռն կնոջն բոլոր աշխարհին»:

Բայց Բագրատունիները քնած չէին եւ նրանցից երկու եղբայրներ՝ Աշոտ Մսակերն ու Շապուհը, կանգնեցին Մուշեղզուխտի խորամանկութեան դէմ: Յարձակւեցին եւ գրաւեցին Շիրակը, Աշոցքն ու Տայքն, որ նոյնպէս մամիկոնեան ստացւածք էին եւ ի դերեւ հանեցին Մուշեղի դստեր վրէժխնդրութեան ծրագրիր: Ջահապը չլքեց: Գնաց ու նստեց Դւինում իր Արդլյա (կամ Արդլմելեք) որդու հետ. Պատրաստւեց եւ հինգ հազարանոց մի բանակով յարձակւեցին Բագրատունի եղբայրների դէմ, որոնք հինգ հարիւր զինւորով ջարդեցին նրանց մեծ մասը եւ Շապուհը գնաց մինչեւ Դւին, մեծ աւար վերցրեց: Թշնամու զորքերը հետապնդեցին նրան եւ քաղաքացիները քաջալերւած սպանեցին Արդլմելեքին[2] եւ զորքը փախուստ ցրւեց: Այդպէս Մամիկոնեան արի դստեր հաշիւներն ու ճիգերն ջնջւեցին: Կրկնեց մանաւանդ թէ կանխեց - Անձեւացի **Հեղինէի** խորագէտ փորձը, բայց չունեցաւ նրա բախտը[3]. յայտնի չէ թէ յետոյ ի՛նչ արեց: Ջահապի տնից ուրիշ մարտիկներ են յիշւում Վարդանից յետոյ, բայց ինքն էլ անյայտ է մնում:

2. – Նոյն Աշոտի իշխանութեան սկզբին Հայաստանում կար ոմն՝ Սեւադա, ըստ պատմիչների «պարսիկ տոհմից»[4], կամ աւելի հաւանօրէն «Ջահապի տնից»[5] կամ «տաճիկ»[6] եւ համարւում էր Աբդըլ Համիդի[7] որդին: Նա 821-ին Հայաստան ասպատակեց եւ «աշխարհն աւարի վերցրեց» եւ ամրացաւ Սիւնեաց կողմերում: Այն ժամանակ Վասակ Սիւնին հրաւիրեց պարսիկ Բաբանին (կամ Բաբիկ), որ եկաւ եւ

---

1. Նոյն՝ 162-63: — 2. Վրդ. 76-78: — 3. Աստ՝ 285: — 4. ԲՀ. կԹ. 145: — 5. Վրդ. 79: — 6. Կղն. 263: — 7. Հայ Բգր. 46:

Զարարայի որդուն՝ Մուշէին, որ այն ժամանակ տիրում էր Արզն գաւառին եւ Աղձնեաց հարաւային կողմերին, որ մօտ էր Տարօնին: Քաղաքականութեան պահանջն ուժեղ մղել էր Բագրատունուն կնքելու այդ խնամիութիւնն երկիւղալի դրացու հետ

Յետոյ Հայաստան եկաւ Աբուսեթն եւ Հայաստանի վերակացութիւնն յանձնեց Մուշէին: Նա ուզելով ամիրապետի աչքը մտնել, մոռացաւ ազգականութիւն եւ ամուսին, բարեկամութիւնը թշնամութեան փոխեց Բագրատի հետ եւ նրա դէմ պատերազմեց, որը իր կորակոր պարտութեամբ վերջացաւ եւ այդտեղում տեսանք իր հայ ազատնու մարդասէր եւ հաշտարար մեծ գործը[2]: Նրա ձախողուածը դարմանելու համար 851-ին եկաւ Աբուսեթի որդին՝ Յուսուփն[3], որ բարեկամութեան դիմակով իր մօտ կանչեց Բագարատին, նրա ազգականներին եւ այլ իշխանների հետ, շղթայեց ու յղեց Սամառա, իսկ ինքը հանգիստ նստած ձմեռում էր Մշոյ մէջ, սպասելով գարնանն՝ որպէսզի աւերակ դարձնէր Հայաստանը: Սասունցիները լսելով իրենց իշխանի գերութեան լուրը, լեռներից վար թափուեցին, պաշարեցին Մուշն ու կոտորեցին արար զօրքը: Յուսուփը սարսափահար փախաւ, մտաւ եկեղեցու գմբէթի մէջ: Սասունցիները հասան, վեր բարձրացան եւ նիզակի հարուածով տապալեցին նրան[4]:

Գալով Բագարատին, այնտեղ արարական սպառնալիքների ներքոյ, այն քաղաքականութեամբ որ փեսայ էր դարձրել Մուշէին, ընդունեց նաեւ մահմետական կրօնը, գայթագղութեան օրինակ լինելով միւս գերիներին էլ[5]: Եւ իր վարմունքն արդարացնելու նպատակով հնարեց ծուռ մի վարդապետութիւն՝ թէ բռնութեան տակ կեղծ ուրացութիւնը ներելի է: Բայց Արծրունեաց պատմիչն ստիպուեց հերքել առանձին մի գլխով[6], իր տոհմակիցներին զգուշացնելու համար: Տարօնի տէրն իր միւս քոյրերի քաջութիւնն[7] անգամ չունեցաւ այդտեղ, ոչ էլ Աշոտղուխտի զոհը կարողացաւ պահել իրեն այդ աղէտներից:

4. - Ափշինն, Աբուսեճի որդին, Պարսկաստանի ապստամբութիւնը նուաճելուց յետոյ, որի համար ամիրապետի կողմից էր ուղարկուած, աչքը դարձրեց Հայաստանի վրայ եւ նամակներով սկսեց հայ իշխաններին հպատակութեան հրաւիրել: Նրան առաջին դիմողն եղաւ Վասպուրականի երիտասարդ տէրն՝ Աշոտ Արծրունին, որի դէմ Սմբատ Ա արքան զայրացած գրաւել տուեց նրա աշխարհը: Այս լուրը հասաւ արաբին, որ զօրք տուեց Աշոտին եւ յղեց տիրանալու իր իշխանութեան: Եկաւ եւ խաղաղութեամբ վերջացաւ

1. Աստ՝ 215: — 2. Աստ՝ 215-16: — 3. Ըստ ԹՀ. կթ. 149՝ նոյն ինքն Աբուսեթ: — 4. Արծ. 129-33: — 5. Նոյն՝ 177: - 6. Արծ. 182: — 7. Աստ՝ 168, 332:

*գործը մինչեւ յետոյ ինքն ու եղբայրները գալով բռնեցին ու բանտարկեցին՝ եւ որի փոխանակ տեսանք նախապէս*[1]

*Սմբատ արքան տեսնելով Աֆշինի երկիւղալի զօրութիւնը եւ ինքն անօգնական մնացած իր իշխանների կողմից՝ նրա դէմ ճակատելու համար, հարկադրուեց հաշտութիւն կնքել նրա հետ, «ակամայ կամօք» նրան տալով խնդած պատանդներն եւ իր Շապուհ եղբօր անանուն մի դուստրին* ***Շապուհուհի*** *անուանենք «նրա կնութեանը»*[3]*, ըստ Արծրունեաց պատմիչի՝ «անօրէն ամուսնութեանը»*[4]*. Աֆշինն, «խռովասէր այր, խաղաղութեան ատող, անյագ առ արբումն արեան մարդկանց», իր կողմ ունենալով Արծրունի եղբայրների հպատակութիւնը, խորհեց յափշտակել Վասպուրականը եւ մի բանակով յարձակուեց*[5]*: Նրանք ամուր կողմեր փախան եւ երկիրն արարները գրաւեցին: Ապա այն յանձնեց Սափի անունով ուրացող մի յոյնի, եւ դիմադրողները բռնւում ու կոտորւում էին*[6]*: Տեսանք նրանցից մէկի՝ Արշակ Վարաժնունու մահից փրկութիւնը Շապուհուհու միջնորդութեամբ*[7]*: Սակայն տիկինն չկարողացաւ ամոքել բռնաւորի գազանութիւնն իր ազգակիցների դէմ. այնպէս որ նա վերստին փորձեց ձեռք գցել Սմբատ արքային, բայց չյաջողեց*[8]*: Յետոյ երբ պատրաստւեց երկրորդ յարձակման նրա դէմ, մահացու մի ախտ զգետնեց նրան 898-ին եւ ազատեց մեր աշխարհը*[9] *Բագրատունեաց դուստրի հետ:*

5.- *Վերջերս Յ. Քիւրտեանը հրատարակեց կենսագրական տեղեկութիւններ մահմեդականների հետ ամուսնացած երեք հայ կանանց մասին: Ես այստեղ նրանցից միայն մէկի մասին կը գրեմ, որովհետեւ արաբ պատմիչներն անմիաբան են երկրորդի հայութեան մասին եւ երրորդն* ***ԺԹ*** *դարի չատ անազան է մեր նիւթի համար:*

*Արաբ Ջալալեդին էլ Սուիուտի պատմելով, Բաղդադի խալիֆա՝ Ալ Կայիմ բի - Ամրիլլահի վարքը, ասում է թէ «Նրա մայրը գերեալ հայ մի հարճ էր՝* ***Բադր ու՛դ Դուժա*** *(որ Խաւարի լիալուսին է) կամ ըստ որոշների* ***Կադր ու՛դ Նադա*** *(Յօղակաթ) անուամբ»: Մի ուրիշ պատմիչ, Արուլ Փարաջ Բար Հէբրայոս, վկայում է նոյնպէս թէ «այս կինն ազգով հայ էր», որ նախորդ վկայութեան համառօտ ձեւն է: Տոհմի՞կ էր այդ հայուհին թէ ռամիկ, ե՛րբ եւ ի՛նչպէս գերի գնաց, մտաւ իբր հարճ Ալ Կադր Բիլլահ խալիֆայի արքունիքն: Այդ խալիֆան իբր Ժ դարու կէսին ծնւած, 991-ին յաջորդեց իր գահազուրկ եղբօրն եւ մեռաւ 1031 թւականին: Բար Հէբրայոսը նրան գովում է իբր ժուժկալ ու խաղաղասէր մարդ եւ մեր հայուհին, գոնէ այդ խնդրով, բախտաւոր էր, որով*

---

1. *Արծ.* 261-64: 2. *Աստ՝* 61: – 3. *ՅՀ. կթ.* 227: — 4. *Արծ.* 271: — 5. *Աստ՝* 211: — 6. *Արծ.* 268-71: — 7 *Աստ՝* 211: 8. *ՅՀ կթ* 233: – 9. *Նոյն՝* 237. *Արծ.* 272:

*կարողացաւ նաեւ տիրել նրա սրտին, եւ ժառանգ կարգել տալ - եթէ սակայն անդրանիկ չէր արդէն իր իսկ զաւակն Ալ Կայիմ, որ ծնուել էր 1000 թ.ին*

*Թէ՛ արքունիքի անդորր միջավայրը եւ թէ մանուկանց հայ մօր խնամքոտ առաջնորդութիւնն, այդ պետի մէջ պատրաստել էին շատ զօրեղի մի անձ, ինչպէս վկայում է Իբն ալ Ասիրը գրելով «Վայելուչ էր, գրաւիչ տեսքով, կենցաղով ժուժկալ, բարեպաշտ, ջերմեռանդ, գիտուն, ամբողջովին Աստծու վրայ վստահ, ողորմասէր, համբերող. Մշտապէս էր գրաւոր զարգացման մէջ եւ գրելու ճարտար: Անյապաղ արդարութեան ու բարեգործութեան մէջ, բոլոր խնդիրները քննող եւ յօժար կատարելու ինչ որ հայցէին իրենից»: Նրա բարութիւնից օգտուեցին Սելջուկներն եւ սկսած 1058-ից խառնակութիւն տիրեց նրա տէրութեան մէջ մինչեւ նրա մահը (1075-ին):*

***Յիշուած 1058 թուականին, գրում է Բար Հեբրայոսը, ձերբակալեց եւ աքսորեց Հաղիսաւ եւ Եգիպտոս Մուստանսիր խալիֆան նաեւ Բաղդադի տէրը հռչակուեց: Իր մայրը դեռ կենդանի, ստիպուեց ծածկուել եւ թագաւորից բաներ յղեց որդու դաւաղիրներից՝ Բասասիրին, թէ «Անուաղութիւնից մեռնում եւ խնդրում եմ, որ գթաս ինձ»: Նա մեծանձնութեամբ բերել տուեց տիկնոջը, նստեցրեց պալատի սենեակներից մէկում եւ նրա սպասաւոր կարգեց երկու նաժիշտ: Միանգամայն սահմանեց տալ նրան օր ըստ օրէ հարկաւոր սնունդ: Այսքան են այս հայուհու մասին հասած տեղեկութիւնները[1]:***

6. - ***Դւինի արար իշխողն՝ Աբլսուարը, 1072 թուականին Անին Ալփասլանից գնեց եւ նրա ամիրան կարգեց իր մանկահասակ թոռանը՝ Մանուչէին[2]: Նա այնտեղ 38 տարի (1072-1110) իշխեց եւ յետոյ քաղաքը ժառանգութիւն թողեց իր սերունդներին[3]: Սա իրեն ամուսին վերցրեց կատարյին «Բագրատունի տնից»[4], ամուսնութիւն, որի պարագաներն անյայտ են: Կատան ձեռներէց եւ ազդեցիկ մի կին, յաջողեց արաբ կենակցի մէջ առաջացնել հայասէր զգացումներ: Մանուչէն զօրացրեց Անիի պարիսպներն եւ ամրութիւնները: Խաղաղասէր հոգով այնտեղ հաւաքեց հայ իշխաններին եւ մասնակցեց քաղաքի Բարսեղ արքեպիսկոպոսի ընտրութեանը կաթողիկոսութեան համար[5]: Կորովի մի երիտասարդ էր, եւ լսելով, որ Ղզիլ սկիւթացի ամիրան յարձակուել ու սպանել էր իր եղբօրը Դւինում, գնաց զօրք գումարեց Պարսկաստանի կողմերում, զարկեց, սպանեց թշնամուն եւ քաղաքը Պարսկաստանին յանձնեց[6]:***

---

1. ***Անհա.*** **1937. *պր.* 59-60: — 2. *Վրդ.* 103: — 3. *Ճիր.* 98: — 4. *Վրդ.* 123: — 5. *Նոյն՝* 103-104: — 6. *Նոյն՝* 113:**

*Կատայի հետ ամուսնութիւնից ծնեց Ապլսուար. «այր անարի եւ կնամարդի», իր ծնողների նմանութիւնից հեռու, որ ուզեց Անին վաճառել Կարսի ամիրային: Լսելով այս լուրը Հայաստան հրաւիրեցին Վրաց Դաւիթ Գ արքային. նրան յանձնեցին քաղաքը Նա ձերբակալեց եւ իր հետ տարաւ Ապլսուարին որդիների հետ, որոնք այնտեղ մնացին ու մեռան*[1]*: Որդիներից մէկն՝ Փատլունն, որ նախապէս Խորասանում էր, իմանալով հօր հետ պատահածը, վերադարձաւ, պաշարեց ու գրաւեց Անին*[2] *եւ խաղաղեցրեց երկիրը. գրաւեց Դւինն ու Գանձակն էլ*[3]*: Իր ուրիշ մի պատանի եղբայրը, անունն անծանօթ, տեղեկանալով որ պապը քրիստոնեայ ու թագաւորազն էր, «իր հոգին չարժեց Քրիստոսի սիրով»: Գնաց Սեպուհի մօտ, մկրտւեց ու կրօնաւոր դարձաւ Դրազակի մէջ եւ այնտեղ էլ վախճանւեց*[4]*: Այդպիսով Կատան իր մահւանից յետոյ էլ չարունակում է ազնւացնել այդ լիրբ արաբներին:*

*7. - Զաքարեան Զաքարէ եւ Իւանէ եղբայրներն անցած հայ ու վրացի զօրքերի գլուխ պայքարում էին օտար թշնամիների դէմ եւ պահում ու պայծառացնում էին իրենց գրաւած բաժինն Հայաստանում: Ուզում էին գրաւել նաեւ Բզնունեաց Խլաթ քաղաքն արաբների ձեռքից եւ երբ Իւանէն մօտեցաւ նրա պարսպին, ձին մի խորխորատի մէջ ընկաւ եւ իրեն վայր գցեց: Թշնամիներն իսկոյն յարձակւելով ձերբակալեցին ու ներս տարան: Զաքարէն սպառնաց նրանց, որ եթէ եղբօրը վտանգ հասնէր, քաղաքն անմարդաբնակ էր դարձնելու: Նրանք դողացին եւ հաշտութիւն խնդրեցին եւ միանգամայն Իւանէի դուստր՝* ***Թամթային****, ամուսնութեան տալ Կուզ (կամ Աւադ Նեմջեդին) սուլթանին: Երեւում է թէ Զաքարեանները չահ ունէին համաձայնւելու, եւ Իւանէն զաւակին յղեց սուլթանին, - գուցէ դէպի Իկոնիոն, - եւ «Կուզի կինն եղաւ»*[5]*:*

*Բայց այդ օրիորդի ճակատագիրն էր շրջել հեթանոսների խորշելի յարկերում: Գանձակեցին յարում է, թէ յետոյ կին եղաւ նաեւ Դամասկոսի Աշրափ սուլթանի*[6]*, ուր Վարդանն ուզում է, որ տրւած լինի եւ ուղղակի Խլաթի Աշրափ իշխանին*[7]*: Կիրակոսը պատմում է, թէ «շատ օգուտ եղաւ կնոջը սուլթանի տուն գալը», եւ շատ դիւրութիւն ընծայեցին իրենց քրիստոնեայ հպատակներին, մանաւանդ Տարօնի, որի մենաստանների հարկերը թեթեւացրին կամ բոլորովին ջնջեցին*[8]*: Բարիքներ, որ ակներեւ է մեր հայուհու փրկարար ազդեցութիւնն այդ բռնաւորների սրտերի վրայ:*

*Նրա ասպարէզն այդտեղ չվերջացաւ: Թաթարները զօրացած, 1225-ին յարձակւեցին Խորասանի սուլթան Ջալալեդինի վրայ: Հալածեցին նրան, որ փախաւ Աղւանք ու գրաւեց*

---

1. *Նոյն՝* 119: 2. *Ասո՝* 307: 3. *Վրդ.* 120: — 4. *Նոյն՝* 123: — 5. *Կիր.* 80: — 6. *Անդ*: — 7. *Վրդ.* 138. *Կիր.* 119: 8. *Կիր.* 80-81:

*Գանձակ քաղաքն Անգաւ Կոտայից գաւառը, ուր Իւանէն չհամարձակուեց ընդհարուել նրա մեծ զօրութեան դէմ: Յետոյ յառաջացաւ դէպի Խլաթ, պատերազմեց Աշրաֆի հետ ու գրաւեց քաղաքը: Այնտեղ մնացել էր Թամթան, որ սուլթանն «նրան իր կնութեան վերցրեց», կամ աւելի ճիշտ «գերեց» եւ Ջալալեդինը գնաց աւերեց Ալադին սուլթանի գաւառները: Նա օգնութիւն ուզեց Կիլիկիայի հայ ու ծովեզերեայ եւրոպացի զօրքերից, որոնք եկան ու ջախջախեցին սուլթանի բանակը եւ ամօթահար վերադարձաւ Ազւանք: Այնտեղ թաթարները կրկին յարձակուեցին ու փախցրեցին նրան մինչեւ Ամիթ: Հասան այնտեղ, կոտորեցին նրա զօրքը եւ իրեն էլ միասին[2]: Այդտեղ Թամթան երկրորդ անգամ գերի ընկաւ թաթարների ձեռքը, որոնք նրան իրենց խանին յղեցին եւ մնաց այնտեղ «գյոյով ամս», երեւի իբրեւ պարզ գերի[3], մինչեւ նորից վերադարձաւ Խլաթ, ուր նրան տեսանք պատւով[4]:*

***Գ. – Թաթար տներում*** .- *Այդ ցեղի տիրապետութիւնը մեր աշխարհում սկսեց ԺԳ դարում եւ բաւական երկար տեւեց եւ ինչպէս արարների, նաեւ սրանց զօրութեան առջեւ մեր իշխաններն ստիպուած խոնարհուեցին: Բայց դրանց հետ կատարուած խնամխութիւնը չատ ցանցառ է, դատելով գոնէ մեզ ծանօթներից, որոնք երեք են միայն:*

1. *Նրանց հպատակ եղած մեր իշխաններից էր Խաչէնի աստուածասէր տէրն՝ Հասան Ջալալն[5], որ յայտնի չէ ի՛նչ հարկադրանքի մէջ, իր դուստրին Ռուզուքանին, կնութեան տուեց նրանց Չարմաղու մեծ իշխանի որդուն՝ Բուրանուին: Նրանց կողմից* 1261-*ին ոստիկան եկաւ չարասէր Արղունը: Նուաճեց ու կողոպտեց Վրաստանն, որ ապստամբել էր: Ձերբակալեց ու նեղում էր նաեւ Ջալալին, որի նախանձայոյզ կրօնասիրութիւնը լսել էր: Նրա կարողութիւնից վեր հարկեր պահանջեց, նպատակ ունենալով ուրացնել նրան եւ տարաւ դէպի Խզուին:*

*Իր դուստրը լսեց հօր գլխին կախուած վտանգը, եւ դիմեց ոստիկանի տիրոջ՝ Հուլաւու (կամ Հուլաւ) խանի կնոջ միջնորդութեանը, ազատելու համար հօրը: Անօրէն Արղունն իմացաւ եւ վերին հրամանը դեռ չհասած՝ կանխեց ու գազանաբար յօշոտել տուեց առաքինի ու բարեպաշտ իշխանին, որ այդպէս հաւատքի մի նահատակ հանդիսացաւ[6]: Իսկ իր դստեր վախճանն անյայտ է մնում: Կու՞լ տուե՞ց այդ դառն բաժակը, թէ վրէժխնդիր եղաւ հօր մահուանը, չգիտենք:*

2. – *Տեսանք այլուր[7] Զաքարեան եւ Օրբելեան տոհմերի պայքարն իրար դէմ, որ աւարտեց Օրբելեան Սմբատի յաղթանակով, որ չահեց «մեծ Խոջա սահիպ դիւան»ի*

---

1. *Նոյն*՝ 119, 161: — 2. *Նոյն*՝ 119-21: - - 3. *Նոյն*՝ 161: — 4. *Աստ*՝ 283: — 5. *Աստ*՝ 103: — 6. *Կիր*. 142, 228-30: - 7. *Աստ*՝ 284:

օգնութեամբ. որը գիտնականն էր եղել Աբաղա խանի եւ յաջորդել էր նրան ու իր ձեռքում ունէր նրա տիրութեան բոլոր գաւառները: Սմբատն իր երախտագիտութիւնը ցուցաբերելու համար իր բարերարին, կրկնեց իր անիրաւութիւնը Զաքարեան Աւագի դստեր **Խոշաքի** դէմ, որի իշխանութիւնը յափշտակել էր եւ նրան կնութեան առեց Խոջային. Այս պատահեց 1269-ին եւ մենք դժբախտ հայուհու մասին աւելի տեղեկութիւն չունենք, բացի այն որ կենակից գնաց դժոխային մի գիտնականի, որ թոյնով սպանել էր յիշեալ Հուլաւու խանին եւ նրա ամուսին՝ Տոզուզին (կամ Տաւուսին), երկուսն էլ սիրող ու պաշտպան քրիստոնեաներին[1]: Իսկ ինչպէս վարուեց արդեօք Խոշաքի հետ. Աստուած միայն գիտէ:

3. Յետ դառնանք մի պահ դէպի 1236 թուականը, ուր թաթարները դեռ նոր են սկսել իրենց արշաւանքը: Զաքարեան հզօրների սուրը բռնել է Իւանէի որդին՝ յիշուած Աւագը, որը սակայն զուրկ է նրանց կորովից, թէպէտ նոր թշնամիներն էլ բազմամբոխ եւ զօրեղ են: Աւագը սարսափած նրանց ասպատակութիւնից, գնաց ամրացաւ Կայեան բերդում: Թաթարներն եկան պաշարեցին այն եւ հրաւիրեցին իշխանին գալ իրենց ծառայութեան ու չվախենալ: Նա կասկածոտ անոնց խոստման վրայ եւ նրանց վստահութիւնը գրաւելու նպատակով, մեծ վատութիւն կատարեց. «նրանց իր դուստրը տուեց եւ բազում ինչք», իսկ նրանք փոխարէնն աւելի խստացրին պաշարումը: Պատմիչը չի ասում, թէ դուստրը, - որին կարող ենք **Աւագուհի** անուանել, - ո՛ր թաթարին է տուել, ոչ էլ այն որ իրենից պահանջեցին , այնպէս որ թւում է ինքնակամ է տուել, որպէս թէ իր զաւակը չլինէր: Արդէն ինքն էլ խիստ բարոյականի տէր մի անձ չէր[2]: Յետոյ յաջողեց շահել նրանց խանի պաշտպանութիւնը եւ Անիի կործանման մէջ նրանց գործակիցն էր[3]: Յետոյ այլեւս չի տեսնուում պատմութեան բեմի վրայ իր երէց դուստրը[4], մինչ կրտսերը՝ Խոշաքը, հօր մահուան ժամանակ դեռ «երեխայ» կամ մանուկ[5], յետոյ բախտակից պիտի լինէր քրոջն, ինչպէս տեսանք:

**Դ. – Թուրք տների մէջ** - Միջին դարում թուրքական ցեղերն իրենք եւս մրցակից էին թաթարներին եւ մեր երկիրն ստիպուած էր երբեմն նրանց ոտքերի էլ կոխան լինել եւ հայուհին սրտի դառնութեամբ գնալ եւ սպասաւորել նաեւ նրանց:

1. Մեծն Լեւոնի իշխանների մէջ էր «պարոն կիռ Վարդը,» տէր զանազան բերդերի[6], եւ Սմբատ պատմիչից կոչուած «Ատոմայ թոռն[7]», որ Հ. Ալիշանը բացատրում է՝ «որդի կամ թոռ» Պապռայի տիրոջ սիր Ատանայի[9], ինչ որ հաւանելի չէ, որովհետեւ Սմբատը զատում է Ատոմը վերջինից, եւ ժամանակակից է դնում Վարդին, ուստի սա

1 Մաղ 31-33 Օրբ. 306-7: 2. Աստ՝ 24: — 3. Կիր. 138: — 4. Նոյն՝ 136-38: — 5. Նոյն՝ 181: — 6. Սմ Տրգ 112. Սիս. 47. 7 Սմ. Տրգ. 119: — 8. Սիս. 313: — 9. Աստ՝ 9:

չէր կարող նրա թոռը լինել, Արեամբ եւ անուամբ զուտ հայ էր ուրեմն Վարդն. որի օրով Իկոնիայի գահի վրայ նստեց Ալահադին՝ Սելջուկեան թուրքերից, ուսումնասէր ու շինարար մարդ, կամ ինչպէս Սմբատն է ասում՝ «այր իմաստուն եւ առաջարաչի». որ երկրի բարգաւաճման հետ զուգեց աշխարհակալութեան բաղձանքն էլ. եւ տիրեց Իսաւրիայից մինչեւ Սելեւկիա:

Այս վերջինիս սահմանակից էր Վարդի երկիրը. Ալահադինը պահանջեց ու ստացաւ նրա Կալոնորոս բերդը եւ նրա հետ նաեւ «զդուստր նորա ի կնութիւն՝ յոչ կամաց» հօրն ու զաւակի: Հաւանական չէ, որ այդ օրիորդը, որ կոչում ենք *Վարդուհի* - տեսնուած եւ այնպէս խնդրուած լինի իրենանուորից. այլ հայուհիների համբաւն էր, որ պահանջել էր տալիս նրանց: Ուրեմն Վարդի դուստրը բռնի կերպով գնաց Ալահադինին, «եւ վասն քրիստոնէութեանն չհանգեաւ ի հետն աղջիկն[1]». այսինքն չհամակերպուեց իր վիճակի հետ ու խոժոռ նայեց միշտ այն հեթանոսին, ինքն իսկ այդպէս դժբախտ ապրելով:

Կոստանդին պայլը խոհեմութեամբ դաշինք կնքեց նրա հետ եւ Կիլիկիան նրա հարկատու դարձաւ: Նա խորհելով թէ դիւրին էր կուլ տալ մեր նոր Հայաստանը, ձեռնարկեց (իրր 1222-ին) իր ասպատակութեանց ու գրաւման՝ հնոյն մէջ: Սակայն քիչ յետոյ Ջալալեդինը զօրացաւ աւելի եւ սկսեց կրծել նրա գրաւած երկրներն, որով ձախողեց նրա ծրագիրը Կիլիկիայի վերաբերեալ: Ո՞ւր եւ ի՞նչպէս վերջացրեց տարաբախտ Վարդուհին, պատմութիւնը լռում է:

2. - Աղթամարի աթոռի վրայ նստեց Զաքարիա Ա (1301-ին), որ իմացաւ խոհեմութեամբ եւ իմաստութեամբ վարուել տիրապետող թուրքերի հետ. մանաւանդ «Ալի փաշայի եւ նրա նմանների», որ խրոխտանում էին քրիստոնեաների դէմ եւ յաջողեց մինչեւ իսկ ապահարկ անել մենաստանները: Իր քեռորդին՝ տէր Ստեփանոսը, որ յանդուգն ու բախտախնդիր մի անձ էր եւ քեռու հակառակ քաղաքականութեանն էր հետեւում: Այլազգիներին դէպի իրեն քաշելու համար, բարեկամացաւ նրանց հետ եւ իր քեռորդուստր **Շամշա խաթունին** «տարաւ այլազգիներին», անշուշտ նրանց պետերից մէկին, «խառնելով կաթը նրանց արեան հետ». այսինքն նրան մայր դարձրեց նրանց զաւակներին: Այդպիսով համարձակութիւն տալով նրանց խուժելու ներս ու տիրելու «գեղեցիկ եւ անառիկ կղզոյս Աղթամարայ», ասում է յիշատակագիրը, սուգ եւ տրտմութիւն պատճառելով վանքերին եւ եկեղեցիներին: Զաքարիան վշտահար վախճանուեց 1326-ին: Իսկ «քիչ ժամանակից յետոյ» մեռան նաեւ Ստեփանոսն ու քեռաղուստրը, «բարձան յաշխարհէս եւ չոգան անդ՝ ուր ճշմարիտ դատախազքն եւ քննողքն եւ պահանջողք բանից, գործոց եւ խորհրդոց» են[2]:

---

1. *Սմ. Տրգ.* 119: — 2. *Արծ.* 365:

3. Նշանաւոր է Իպրահիմ սուլթանը (1642-48) իր փառաշուքութեամբ, որ այդ տխուր հետ միացնում էր գեղխութիւն, անգթութիւն եւ վարչական թուլութիւն, որով կորցրեց պետական երկրներից եւս: Մի օր երբ շրջում էր Սկիւտարի մօտ, փափագեց իր հարճերի մէջ ունենալ մի կին ամենից բարձր ու գէր: Որոնել տուեց եւ իր պատուիրակները գտան հսկայ Հայկուհի անունով մէկին, - այսպէս անուանենք նրան, - եւ տարան պալատ: Այդ նոր հարճն, այնպէս կարողացաւ շահել սուլթանի սիրտը, որ յաղթեց իր մրցակիցների ամբոխին: Խնդրեց ու ստացաւ սուլթանից Դամասկոսի վարչութիւնը, որ կատարեց մի պատուիրակի ձեռքով: Իպրահիմը չկարողացաւ առանց նրան մնալ: Սակայն նախանձոտ մայր սուլթանուհին չհանդուրժեց հայուհու այդ տիրապետութեան, որ հետզհետէ զօրանում էր արքունիքում: Մի օր նրան ճաշի հրաւիրելով խեղդել տուեց նրան: Լուր տարածեց՝ թէ կաթւածահար էր եղել, որ հաւատաց սուլթանը եւ անմխիթար մնաց նրա կորստեան համար[1]: Այս եղաւ այդ հայուհու վախճանն:

**Ե. – Պարսիկ տների մէջ.** Սասանեանների անկումից յետոյ, Պարսկաստանը մերթ զօրանում էր բնիկ կամ օտար իշխողների ներքեւ, ասպատակում ու տիրում էր, փոփոխակի հարուածելով ու հարուած ստանալով միւս տիրապետող ցեղերի հետ: Եւ հայուհին ստիպուել է երբեմն դրանց հետ էլ կապել իր կեանքը:

1. – Վերեւում յիշեցինք Բաբան պարսիկի ընծայած օգնութիւնը Սիւնեաց տիկնոջ Վասակայ[2]: Վերջինս վախճանուեց նոյն տարում եւ Բաբանը կնութեան վերցրեց նրա դուստրը, որի անունն յայտնի չէ եւ կարող ենք **Վասակդուխտ** կոչել: Հինգ տարուց յետոյ (826-ին) Սիւնեաց Բաղք գաւառն ըմբոստացաւ եւ իրենց ազատարարն նրանց դահիճը դարձաւ: Եկաւ կոտորեց գաւառը, կին ու մանուկ միասին: Յաջորդ տարին նոյն աւերը գործեց նաեւ Գեղարքունիքում, տասնհինգ հազար կոտորածով, եւ այրեց Մաքենեաց նշանաւոր մենաստանը: Եւ այս բոլոր վայրագութիւնների մէջ Սիւնեաց օրիորդը չկարողացաւ ողոքել այդ «անօրէն» գազանը, որ քսան տարի (817-837) Հայաստանի հետ վրդովեց Ատրպատականն եւ ուրիշ կողմերը[3]: Հուսկ հայ մի քաջին վիճակուեց տալ նրա դասը: Սահլ Բագրատունին, որ 837-ին յաջողեց ձերբակալել նրան եւ յանձնեց Ափշինին[4], ազատելով վիրագից աշխարհն ու Սիւնեաց օրիորդին, եթէ դեռ ողջ մնացել էր նրա ճիրանների մէջ:

2. Հայաստանի մեծագոյն պատուհասներից մէկն եղաւ Ալփասլան սուլթանը, եղբայրն ու յաջորդը սելջուկեան Տուղրիլի, որ հազիւ գահ բարձրացած, մեծ մի

1. Համմ. Ժ, 75-6: 2. Աստ՝ 419: — 3. Կղն. 263-64: — 4. Վրդ. 79:

բանակով սկսեց իր արշաւանքն 1064 ին Նա հասաւ Աղւանս եւ մահուամբ ու գերութեամբ ծածկեց այն եւ որպէս փառք իր անօրինութիւններին նրանց արքային՝ Բագրատունի Բ Գիւրիկէի դուստր *Գիւրիկուհի* անունք կնութեան խնդրեց. «որ յաղագս աչին տուեալ եղեւ» Ի՛նչ սոսկալի վիշտ ու սրտաճմլիկ տեսարան՝ այդ Հայ օրիորդի բաժանումն հայրենի յարկից եւ մեկնումն ատելի ծակցութեան խուժդուժ բռնաւորի հետ։ Դրա փոխարէն Ալփասլանն «արար սէր եւ խաղաղութիւն յաւիտեան»․ ասում է պատմիչը. եւ մեծ պատւով ու նուէրներով յղեց Գիւրիկէին դէպի Լոռէ՝ իր քաղաքը։ Թէեւ վայրագը, կարողացաւ գնահատել մեծութիւնն ու յարգն իր ընդունած պարգեւի, որ երեւում է թէ կարողացաւ նուաճել նրա սրտի ըմբոստութիւնը։

Ապա բռնաւորը Վրաստան անցաւ եւ արեամբ ողողեց այն, առանց խնայելու վիճակի ու սեռի։ Յետոյ եկաւ մտաւ մեր աշխարհը եւ «զաստուածասաստ բարկութիւնն Հեղոյր ի վերայ տանն արեւելից. եւ արբուցանէր զմաղձն դառնութեան իւրոյ ամենայն ազգին Հայոց ... եւ լցաւ ամենայն տունն Հայոց արեամբ. սրով եւ գերութեամբ[1]»։ Պաշարեց Շիրակի չքնաղ ոստանը, որ քսան տարի առաջ նենգութիւնն յանձնել էր Յունաստանին[2], եւ ուր հաւաքուած էր հայ ազնուականութիւնն էլ բիւրաւոր քաղաքակիցների հետ։ Ժողովուրդը սարսափի եւ յուսահատութեան մատնուեց եւ կռուողները քաջաբար դիմադրեցին ու թշնամին որ մեկնելու եւ հեռանալու էր, եթէ ոստանի պահապան հոռոմ իշխանները վատ անմիաբանութեամբ չքաջալերէին այն, որ վերադարձաւ, գրաւեց քաղաքը, եւ այնպիսի ահաւոր մի ջարդ կատարեց, որի նկարագիրը չի կարելի կարդալ՝ առանց հոգու ալեկոծութեամբ։ Ախուրեան գետը, որ շրջապատում էր ոստանի պարիսպը, կարմիր ներկուեց[3]։ Ո՞ւր էր, ի՞նչ էր անում կամ մանաւանդ ո՞ր անկիւնում խորովում էր իր անչէջ կրակով Գիւրիկէի դուստրը յսելով իր հայրենիքի աւերումը։ Գաղտնի՛ք։

3. - Զաքարիա սարկաւագը խօսում է աստապատեցի *Փօզալ* անունով հայ մանկամարդի մասին, որ Շահաբասի դէպի Պարսկաստան վարած ժողովրդի մէջ էր, որ առիթ ունեցանք յիշելու[4]։ Այրի մնալուց յետոյ չխորհեց կրկին ամուսնանալ։ Էինելով գեղատեսիլ մի կին, ինքզինքը վարձակութեան տուեց։ Երբ մի օր Շահը Ջուղայի փողոցներում շրջում էր, ամբոխի մէջ նշմարեց նրան ու հրապուրուեց։ Մի ներքինի յղեց քաղաքի աւագներին ու պահանջեց նրան՝ իրեն հարճ դարձնելու համար։ Առաջին անգամ երբ իր առջեւ տեսաւ «խելագար ապուշ մնաց», չափազանց սիրեց եւ իր հետ էր տանում երբ մի տեղ գնար։ Շատ էր ուրախանում, երբ նա պարում էր իր առջեւ[5]։

---

1. Ուռ. 145-46։— 2. Աստ՝ 367— 3. Ուռ. 148-49. Լաս. 110-11։— 4. Աստ՝ 135։— 5. Աստ՝ 265։

*Այդ միջոցին մէջ Գօզալը պահում էր քրիստոնէական հաւատքը եւ մինչեւ իսկ երբեմն եկեղեցի էր գնում. բայց խիղճը նրան տանջում էր այդ անկանոն կեանքի պատճառով եւ ցանկանում էր ազատուել. Երբ շահը գնաց Բաղդատը գրաւելու (1623-ին), այդ անգամ Գօզալն Սպահան մնաց. Յարմար առիթ էր. Հաւատաւորի զգեստ հագաւ, գնաց մտաւ մի կուսանոց եւ սկսեց ապաշխարել: Շահը վերադարձաւ եւ մինչ մի օր ձի հեծած անցնում էր քաղաքում, հանդիպեց նրան, ճանաչեց եւ ասաց. «Ով րոզ, միթէ դու Գօզալը չե՞ս»՝ Հայուհին պարզաբանեց նրան իր հոգեկան վիճակը: Շահարան զգացուեց եւ նրան իր պալատը բերել տուեց: Գօզալը լացելով ու վշտով գնաց, կարծելով թէ իր նախկին կեանքին է վերադառնալու: Ընդհակառակն շահը վարձատրեց նրա վերստացած առաքինութիւնը: Նրան ազատութեան մի թուղթ տուեց, որպէսզի ոչ ոք նրան չնեղացնէր: Նոյնպէս յիսուն ոսկի եւ առատ պաշար իր բնակութիւն հաստատած կուսանոցի համար: Հայուհին այնուհետեւ երջանիկ էր:*

*Մի օր հանդիպեց Վաղարշապատի Յովհաննէս վարդապետին եւ յայտնեց՝ թէ քաղաքի քահանաները գլանում են իրեն Ս. խորհուրդն իբրեւ մեղաւորի: Վարդապետը բարկացաւ քահանաների վրայ: Յաջորդ օրն մի արեղայի պատարագ մատուցանել տուեց եւ երբ աւարտուեց Գօզալին կանգնեցրեց բեմի առջեւ՝ ի տես հաւատացեալներին, քարոզեց ապաշխարութեան մասին եւ հաղորդեց հաւատաւորը, որ շարունակեց զղջական կեանքը՝ մինչեւ վախճանուեց*[1]:

4. – *Տահաքասը* 1600-*ին, երբ Հայաստան եկաւ, Երեւանի նահանգին իշխան կարգեց Ամիրգունա խանին*[2]: *Զաքարիան նրան արիասիրտ մի մարդ է նկարագրում, պատերազմների մէջ քաջ, շինարար ու քրիստոնեաներին սիրող: Այնպէս որ հազիւ պաշտօնն ստանձնեց, շինեց ու բազմացրեց քաղաքը գեղեցիկ տներով, պարտէզներով ու ջրերով: «Այլ եւ սիրեաց զազգս Հայոց», միշտ յաճախում էր նրանց յարկերը եւ ճաշակից էր լինում*[3]: *Հաւանօրէն այդ այցելութիւնների առթիւ էր, որ ճանաչեց* ***Հուսիկեան*** *հայուհուն,* ***Աճապխանի*** *քոյրը, որին նախապէս հանդիպել ենք*[4], *«մեծազգի» տան զաւակներ, եւ այն կնութեան առաւ*[5]: *Հինգ տարուց յետոյ նոյն իշխանին վիճակուեց Այրարատի բնակչութեան տարագրութիւնը դէպի Պարսկաստան, որին չատերը ընդդիմացան եւ նա իր ցեղի բնազդով թոյլ տուեց իր զօրքին ամէն տեսակի խժդժութիւն հայերի վրայ*[6]: *Իր հայ կինն այդտեղ ոչինչ կարողացաւ անել վերին հրամանի դէմ:*

1. *Զք. սրկ. Ա.* 33-36: 2. *Դաւր* 19: — 3. ***Զք. սրկ. Ա.*** **45-47: — 4. *Աստ՝* 173-74: — 5. *Զք. սրկ. Ա,* 54:**
6. *Աստ՝* 328:

Պարսիկ այդ իշխանը պատմւում է խոցւելով մեռնում, եւ կամ սպանւում է իր որդու՝ Թահմազի ձեռքով, որ յայտնի չէ՝ որ կնոջ զաւակն էր

Այսպէս ուրեմն այլակրոն այդ յարկերը մեր փափկասուն ու փափկասիրտ օրիորդների համար եղան՝ քիչ բացառութեամբ՝ հեծութեան եւ արտասուքի հովիտներ, ուր նրանք զրկուած իրենց բնական հոգեկան մխիթարութիւնից, ականատես հեթանոսական բարքերի ու լկտութիւնների, յաճախ անբաւական՝ իրենց զոհողութեամբ սուրն հեռու պահելու հայրենի սիրելի աշխարհի գլխից եւ նրա հետ թերեւս իրենք՝ նրա դուստրերն էլ արհամարհուած եւ այպանուած, խորովեցին, մաշւեցին ու մարեցին մահացուցիչ լռութեան մէջ այն անմատոյց մորիների:

1. **Չք. սրկ. Ա**, 62-63:

Լիովին տեսանք ինչ որ հարկաւոր էր. կամ մանաւանդ ինչ որ անցեալը թողել է մեզ. հին Հայ կնոջ ծանօթութեան համար եւ կնքում ենք մեր աշխատութիւնը. Իր տիպոսի ու յառաջաբանի մէջ նշեցի, թէ հայուհուն որոնելու եւ ներկայացնելու էի միայն պատմութեան մէջ, որովհետեւ այնտեղ միայն կարելի էր գտնել ճշմարիտ Հայ կնոջը, մեր հին քաղաքակրթութեան պատրաստած հարազատ հայուհուն: Եւ այնտեղ նրան ստուգապէս տեսանք իր բարոյական բարձրութեան վրայ, ուր դարերով մնաց անխախտ իր կենաց բոլոր պայմաններին, պատահածներին եւ յեղաշրջումներին, իր ցնծութեան ու ցաւալի օրերում անխտիր:

Դիտարկեցի դարձեալ, թէ մեր ազնուական դասակարգի ջնջումն եւ ազգի բազմադարեան ստրկութիւնն իրենից մեծազօր եւ անքաղաքակիրթ ազգերի, անչուք եւ նուաստացուցիչ դարձրեց Հայ կնոջ նկարագիրն էլ[1]: Եւ որովհետեւ պատմութեան մէջ ենք թափառում, այնտեղ է տանում մեզ տեսնելու, եւ ոչ միայն մեր օրերին, նրա անկումն էլ անգլիացի ուղեւորը՝ Կոռնել Լըբրուէնը, որ 1704 թւին հանդիպում էր Նոր Ջուղայում եւ այնտեղ գտաւ ու նկարագրեց նախկին այրարատեան հայուհու[2] նոր ու խորթ կերպարանքն, որը նկարագրում եմ, որպէսզի ընթերցողները տեսնեն դրա եւ հնի համեմատութիւնն, որոնք անհունի չափ հեռու են միմեանցից:

Տղամարդիկ եւ կանայք, ասում է ուղեւորն, այդ պարսկական հայաքաղաքում հագնւում են պարսիկի նման եւ կանանց ձեւը մանրամասնօրէն բացատրում է: Նրանք այդ նոր տարազի հետ երեսի ստորին կէսն էլ ծածկւած էին պահում մի բերանակապով, բոլորովին չգրւած մեր հին կենդանագրերում, կարծես թէ բերանն ու լեզուն ամօթալի բաներ լինէին, - մերն է այս դիտողութիւնը,- կամ թէ այն պատշաճօրէն գործածելու անկարող էին, ճարտարաբան եւ իմաստուն հին հայուհիների[3] այդ յաջորդները: Անգլիացին յարում է, թէ աղջիկների հագածն էլ շատ նման էր կանանց, բացի գլխանոցից ու բերանակապից[4], ուր հին Հայ կինը մեծագոյն ազատութիւնն էր վայելում ընկերութեան մէջ քան կոյսը[5]:

Երկու սեռերն էլ շատ մատաղատի ամուսնութեան պատճառով, - որ հնուց կար[6] եւ հետզհետէ ընդհանրացել էր ազգի մէջ, - դեռ անտեղեակ կենցաղական պահանջներին, ծնող են դառնում, շարունակում է Լըբրուէնը, զաւակների՝ որոնց դաստիարակութեանն

---

1 *Աստ՝* 4, 6: 2. *Աստ՝* 321: 3. ***Հմմտ. աստ՝*** **213-15, 292-94, 379-80 *եւն*: — 4. *Լըբ. Ա*, 233-34: — 5.** *Աստ՝* 14, 113: 6. *Աստ՝* 28-30:

աննշոյլ պարզութեան մէջ, ձեր սէրը ճրագ, ձեր ժպիտը վարդ վառելու այնտեղ եւ ձեր պարտականութեան գիտակցութեամբ չէն, անդորր ու գութ պահեցիք այն երջանկացուցիք եւ երջանկացաք. Ձեզ՝ որ խնամքոտ գթով ու նուիրումով պատրաստեցիք եւ ընծայեցիք Հայ Հայրենիքին անհամար ընտիր հոգիներին, արքաներին, իշխաններին ու տիկնանց, քաջերին, գիտնականերին, հոգիներին եւ հոգեւորականներին, հանճարներին, տաղանդի անձերին, սրբերին եւ սրբուհիներին, ձեր ընդունածը տալով նրանց հաւատարմութեամբ ու լիութեամբ եւ յաւերժացրեցիք ձեր ցեղի գոյութիւնը, քաղաքակրթութիւնն ու մեծութիւնն, որոնց նուիրեցիք ձեր սիրտն ու տուիեցիք նրանց սրտերին, սգով հոգի մէջ գնելով նրանց, որ մահւան բռնութիւնը տարաժամ կորզեց ձեր եւ ազգի գրկից.

Ձեզ՝ որ ազնուական շուքով ու ձեր սեռի պատւով հանդէս եկաք Հայ ընկերութեան առջեւ, ձեր բարգաւաճանքը, իմաստութիւնն ու ճարտարութիւնը նուիրեցիք նրա օգտին ու բարձրացմանը, գորովալի ձեռքով սպեղանի դրեցիք նրա գանազան ցաւերի վրայ եւ դարման կարօտութիւնների, կերտեցիք ու պճնեցիք Հայ աշխարհն ու սրբարանները, կանգնեցիք ու մեծարեցիք եկեղեցում եւ հանդուրժեցիք կամ ձեր մաքի լոյսով դիմադրեցիք օտարամուտ տգէտ նախապաշարումը ձեր սեռի հանդէպ, պահելով այն միշտ իր բարձրութեան վրայ.

Ձեզ՝ որ առնական բազկով բռնեցիք արքունի կամ իշխանական լքեալ գաւազանը եւ մայրական գթով պահեցիք եւ առաջնորդեցիք ձեր խնամքին յանձնուած ժողովրդին, մերթ առիւծացաք նրանց անօրէն թշնամիների դէմ, գէնքը ձեռքին կանգնելով ձեր պարիսպների, աշտարակների կամ ճակատի վրայ եւ մերթ մեծ ոգով ողորմութեան ձեռք կարկառեցիք նոյն խաւարամիտներին, ամրացրիք տատանեալ գահերը, ձեր ողոքիչ ձայնով բացեցիք հզօրների սրտերի պողպատեայ դռները, կամ ձեր անձերը գրաւական դրեցիք անդորրելու համար նրանց կասկածախռով մտքերը,

Ձեզ՝ որ ձեր վիճակի հետ զուգեցիք սրբութեան սէրը, հրեշտակների հետ մնջեցիք ձեր շնորհները պարգեւողի հանդէպ, կամ երեւելի մեծութիւններն ու վայելքը փոխանակեցիք աներեւոյթի հետ եւ ժամանակաւորը մշտնջենաւորի, ձեր պալատները խրճիթների վերածելով, կերպասեայ ոսկեշող պատմուճանը՝ խորգի, բազմախորտիկ սեղաններն՝ անսւաղութեան, եւ ցնծուն զրոյցները՝ մշտամրմունջ աղօթքների,

Ձեզ՝ որ հրաժարեցիք ու տարաք կանգնեցիք հայրենի սահմաններից դուրս, մեծապանծ, նրբապահանջ ու բազմազան արքունիքներում, հայկական գեղը, գգաստութիւնն ու գործունէութիւնը, եւ նրանց փայլով նւաղեցրեցիք ձեր գլխին դրւած ականակուռ պսակների շողն եւ կամ բարձրացաք անձնուրացութեան վշտատոչոր

սեղանի վրայ. փրկելու համար ձեր վտանգեալ հայրենիքը. տառապեցիք՝ ամոքելու նրա անհուն տառապանքը եւ խմացաք ամենուրեք բարձր բռնել Հայաստանի անունը որ անջինջ պահեցիք ձեր սրտում. լեզւին ու գործում եւ ցանկալի ընծայեցիք մերձաւորներին ու հեռաւորներին.

Ձեզ՝ որ Յիսուսի մաքուր դրօշմը ճակատներիդ եւ կառչած նրա նշանին, հայրենի հողին կամ օտարութեան մէջ միայնակ կամ գունդագունդ զոհւեցիք չարագործերի կրքերին, մոլեռանդութեան, անգթութեան եւ ձեր հաւատքի ու պարկեշտութեան նախանձով պայքարեցիք. կախաղան բարձրացաք, չարչարւեցիք, խոցւեցիք քարերով ու սրերով. ձեր ձիւնաթոյր մարմինները կարմիր ներկեցիք, մարեցիք շղթաների կարծրութեան մէջ, անվեհեր թռաք անդունդներից վար, խաւարեցրիք ձեր կախարդիչ աչքերը, փրկելու համար ձեր պատիւն ու սրբութիւնն եւ յաւերժացաք երկնքի ու երկրի առջեւ.

Ձեզ բոլորիդ՝ որ պատում է պատմութեան լոյսը կամ մոռացութեան մռայլը, փառքը կամ անշքութիւնը, թող հասնի՝ ուր եւ ընկաք ու հանգչում էք, մի քարի ներքեւ կամ մայր հողի թաքուն ծոցում, ձեր ցեղի սքանչացումն ու սրտագեղ անսահման, անվախճան երախտագիտութիւնը եւ թող ձեր կեանքն հանդիսանայ հայերին ու խրախոյսը վերածնութեան ձեր սեռի եւ ազգի դէպի լոյս եւ դէպի մեծութիւն, ո՜վ սիրասուն դուստրեր անմա՛հ Արարատի:

*Արս* Արսուանչ. ԺԲ դ. *Պատմ. եկեղեցեաց եւ վանորէից Եգիպտոսի.* Վենետիկ, 1895

*Ագթ* Ագաթանգեղոս. Դ-Ե դ. *Պատմութիւն* Վենետիկ, 1862:

**Ազ. Հնդ.** *Ազգագրական հանդէս.* Տփղիս:

*Ալու* Դաւիթ գանձակեցի կամ Ալուկայ որդի. ԺԲ դ. պատասխանիք հարցմանց. գրչ. 511 Ս. Ղազարու

*Աղձ.* Սիմէոն եպ Աղձնեաց. *Վասն գինոյ խմողաց* եւն. գրչ. 633 Ս Ղազարու:

*Աճռ.* Հ. Աճառեան. *Հայերէն արմատական բառարան.* Երեւան, 1926 եւն:

*Ամմ.* Ամմիանոս Մարկեղինոս. Դ դ. *Պատմութիւն* (լտ.). Պարիս, 1855:

**Այր.** Հ. Ղ. Ալիշան. *Այրարատ.* Վենետիկ, 1890:

**Անգ.** Ամիրդովլէթ. *Անգիտաց անպէտ.* Վիեննա, 1927:

*Անլ.* Enlart, L'Art gotique et la Renaissance en Chypre. Պարիս, 1899:

*Անծ.* Անծանօթ նկարագրող հարսանեաց. *Բզմ.* 1889, 232:

**Անհտ.** — *Անահիտ.* հանդէս Պարիսի:

*Անյղ.* Դաւիթ Անյաղթ. *Մատենագրութիւն.* Վենետիկ, 1833:

**Աշղ.** Տրդատ եպ. Պալեան. *Հայ Աշուղներ.* Զմիւռնիա, 1911:

*Ապր.* Մխիթար ապարանեցի, ԺԵ դ. *Գիրք ուղղափառաց.* գրչ. 334 Ս. Ղազարու:

**Առ Աբ.** Յհ. Երուսաղէմցի, Զ դ. *Թուղթ առ Աբաս կթղ. Աղուանից.* Վղրշպ. 1896:

*Առ. Սիւն.* տես *Ցով. զզս:*

**Առկ.** — Մխիթար Գօշ, ԺԲ դ. *Առակք.* Վենետիկ, 1854:

*Ասղ.* - Ստեփ. տարօնացի Ասողիկ, Ժ դ. *Պատմ. տիեզերական Պտրբրգ.* 1885:

**Ասպ.** *Ասպարէզ,* լրագիր Փրեզնոյի:

**Արեւ.** *Արեւելք,* լրագիր Կ. պոլսի:

*Արծ.* — Թովմա Արծրունի, Թ դ. *Պատմութիւն տանն Արծրունեաց.* Կ. պոլիս, 1852:

**Արր.** — *Արարատ,* ամսագիր էջմիածնի:

**Արց.** Մակ. եպս. Բարխուտարեանց, *Արցախ.* Բագու, 1895:

**Բզմ.** - *Բազմավէպ հանդիսարան,* ամսաթերթ Վենետկոյ:

*Բուս.* F. Bustron. ԺԵ դ. *Historia de Cipro.* Պարիս, 1884:

*Բսմ.* - Կ. Բասմաջեան, *Հայ. արձանագրութիւնք Անւոյ* եւն. Պարիս, 1931:

*Բ. Սրգ.* — Հ. Բ. Սարգիսեան, *Մայր ցուցակ հայ. ձեռագրաց Ս. Ղազարու.* Վենետիկ, 1914:

*Բրկ.* — Brocardus, ԺԴ դ. *Veridica Terre Sancte.* Վենետիկ, 1519:

Բրոս. M. Brosset. *Histoire de la Géorgie* Պետրբրգ 1849

*Բցտ չրկ* Հ. Գ. Աւետիքեան. *Բացատրութիւն չարականաց* Վենետիկ. 1814

*Գեղունի* Գեղարուեստական հանդէս Վենետկոյ

Գեւ եպ. խր. Գեւորգ եպիսկոպոսի. ԺԴ դ. *Խրատ վասն պսակի* գրչ. 1372 Ս. Ղազարու:

Գյկ Հ. Գեյլեր. *Հետազօտութիւն հայ դիցաբանութեան* Վենետիկ. 1897

Գլն Կղ. Գալանոս. ԺԷ դ. *Միաբան. Հայոց ու. եկեղ. ընդ մեծի ու. եկեղ. Հռոմայ.* Հռոմ. 1650:

Գոշ. *I. Goschler, Diction. de la Théologie catholique.* Պարիս. 1858 եւն:

Գռն. *Ագ.* Յոհ. Գառնեցի. ԺԴ դ. *Ագօթամատոյց.* Վենետիկ. 1911:

Գռն. *Խր.* Նորին՝ *խրատ ոգեշահ ամենայն մարդոյ.* գրչ. 640 Ս. Ղազարու:

*Գր. Թղթ.* *Գիրք Թղթոց.* Տփղիս. 1901:

*Գր. Մագ.* M. Leroy, Grég. Magistros եւն. Բրիւքսել. 1935:

Գր. Տղ. Գրիգոր կմղ. Տղայ. ԺԲ դ. *Նամականի.* Վենետիկ. 1865:

*Գրչ. արր.* Գար. եպ. Յովսէփեան. *Գրչութեան արուեստը.* Վղրշպ. 1913:

*Դաստ.* Հ. Վ. Հացունի. *Դաստիարակութիւնն հին Հայոց քով.* Վենետիկ. 1923:

*Դաւր.* Առաքել դաւրիժեցի. ԺԷ դ. *Պատմութիւն.* Վղրշպ. 1884:

*Դիւ.* F. Macler, *Nouvel Archive.* Պարիս:

*Դտս.* Մխիթար Գօշ. ԺԲ դ. *Դատաստանագիրք.* գրչ. 1237 Ս. Ղազարու. եւ տպ. Վղրշպ. 1880:

Դրդ. Յհ. Դարդէլ ԺԴ դ. *Ժամանակագրութիւն Հայոց.* Պտրբրգ. 1891:

Դրմբ Daremberg et Saglio. *Diction. des antiq. Grecques et romaines.* Պարիս. 1877 եւն:

Եղշ Եղիշէ. Ե դ. *Մատենագրութիւնք.* Վենետիկ. 1859:

Եպփ. ծննդ Եպիփանի ճառ ի ծնունդ Փրկչին. ի Հյկ. բռ:

Եռն. *Chronique d'Ernoul et de Bernard le trésorier.* ԺԴ դ. Պարիս. 1871:

*Երգ.* Հ. Վ. Հացունի. *Երգմունք հին Հայոց մէջ.* Վենետիկ. 1932:

*Երզ.* Ռոստոմ բէկ Երզնկեանց. *Տեղագրութիւն Հաղբատայ.* Վղրշպ. 1886:

Եւս. ժմ. Եւսեբիոս կեսարացի. Դ դ. *Ժամանակագրութիւն.* Վենետիկ. 1818:

Եփր. Ս. Եփրեմ. Դ դ. *Մատենագրութիւնք.* Վենետիկ. 1836:

Եփր. պհց. եւ ապշ. Նորին՝ ճառեր պահոց եւ ապաշխարութեան, յիշեալ ի *Հյկ. բռ*:

*Զգօն.* Ընծայեալ Յակ. Մծբնացւոյ. Կ. պոլիս. 1824:

*Զեն.* Զենոբ Գլակ. Է դ. *Պատմութիւն Տարօնոյ.* Վենետիկ. 1832:

*Զրթ.* *Զուարթնոց* հանդէս Պարիսի. 1930:

Զք. արկ. Զաքարիա սարկաւագ, ԺԷ դ. Պատմութիւն. Վղրշպ. 1870

Զքր. Զաքարիա կթղ. Թ դ. Ճառք. գրչ. 919 Ս. Ղազարու

Ընտ. Du Cange. *Les familles d'outre-mer*. Պարիս, 1869

Թլկ. Յհ. Թլկուրանցի ԺԵ դ. Վասն Յովհաննու Մկրտչի. գրչ. 171 Ս. Ղազարու:

Թոր. աղբ. Գար. եպ. Սրուանձտեան. Թորոս աղբար. Կ. պոլիս, 1879.

Թ. Տրցյց Թէոդիկ. Տարեցոյց:

Ժմ. Օշնի. Ժմնկգր. Հեթմոյ ի Նկրգ. Ժամագրին Օշնի. Արտ. արք. Սիւրմէեան. Անթիլիաս. 1933.

Ժող. Զագայ. Սահմանք ժողովոյն Զագայ, ի 1270. ի Ղլտճեան, Կանոնագիրք Հայոց. Տփղիս, 1913:

Լալ. Եր. Լալայեան. *Album*, յուշանկարք երկու հատոր. Տփղիս:

Լբր. Cor. Le Brun, *Voyage par la Moscovie en Perse* եւ ն. ամ 1704. Ամստերդամ, 1718:

Լբրոյ. Ch. Le Beau, *Histoire de Bas-Empire*. Պարիս, 1756:

Լիւս. Stef. Lusignan. ԺԶ դ. *Corografia*. Բոլոնիա, 1572:

Լծ. Յոբ. Գրիգոր տաթեւացի, ԺԵ դ. Լուծումն Յոբայ. ամ 1407. գրչ. 1301 Ս. Ղազարու:

Լմր. Թղթ. Ներս. Լամբրոնացի, ԺԲ դ. Թուղթ առ Լեւոն. Վենետիկ, 1865:

Լմր. Պտ. Նորին՝ Մեկն. խորհ. Պատարագին. Վենետիկ, 1847:

Լոյս. Հանդէս Կոստանդնուպոլսի:

Լստ. Արիստակէս Լաստիվերտցի, ԺԱ դ. Պատմութիւն. Վենետիկ, 1844:

Լօր. J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam. Պարիս, 1919:

Խղք. – Գար. արք. Յովսէփեան, Խաղբակեանք կամ Պռօշեանք. Վղրշպտ. 1928:

Խոր. – Մովսէս Խորենացի, Ե դ. Մատենագրութիւնք. Վենետիկ, 1865:

Խսր. Ժմ. -- Խոսրով անձեւացի, Ժ դ. Մեկնութիւն աղօթից ժամերգութեան. Կ. պոլիս, անթուական:

Խսր. Պտ. — Նորին՝ Մեկնութիւն աղօթից պատարագին. Վենետիկ, 1869:

Ծրծ. Թղթ. — Զաքարիա ծործորեցի, ԺԳ-ԺԴ դ. Պատմ. Թղթոյ տէր Յովհաննու Սիւնեաց եպս. գրչ. 13 Ս. Ղազարու:

Կադ. — Radolfus Cadomensus, ԺԲ դ. ի Պատմ. Խչկ. Գ:

Կար. խնդ. — Հ. Վ. Հացունի, Կարեւոր խնդիրներ հայ եկեղ. Պատմութենէն. Վենետիկ, 1927:

Կ. եզ. խր. — Կիրակոս եզնկացի, ԺԳ դ. Խրատ գրչ. 96 Ս. Ղազարու:

Կիպ. — Բակուրան, Կիպրոս կղզի. Կիպրոս, 1903:

Կիր    Կիրակոս գանձակեցի. ԺԳ դ *Համառօտ պատմութիւն*. Վենետիկ, 1865

Կղբ    Եզնիկ կողբացի. Ե դ *Եղծ աղանդոց* Վենետիկ, 1826

Կղն    Մովսէս Կաղանկատուացի. Է դ. *Պատմութիւն Աղուանից աշխարհի*. Մոսկուա 1860.

Կմխ.    Գրիգոր կամախեցի. ԺԶ-ԺԷ դ. *Ժամանակագրութիւն*. Երուսաղէմ, 1915:

Կնդ. կամ Կնդ. Աղ.    *Կոնդակ Աղթամարայ, ի Բզմ*. 1859:

Կող.    Հ. Ս. Կողեան. *Կամսարականները*. Վիեննա. 1926:

Կոր.    Կորիւն. Ե դ. *Պատմութիւն Ս. Մեսրովպայ*. Վենետիկ, 1833:

Համմ.    J. de Hammer. *Histoire de l'Empire Ottoman*. Պարիս, 1839:

Հայ Բգր.    Յ. Մարկուարտ. *Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնը*. Վիեննա, 1913:

Հեր.    Հերոդոտոս, Ե դ. Ն. Ք. *Պատմութիւն* (յն.). Պարիս, 1858:

Հմնգ.    *La Grande Encyclopédie*. Պարիս:

Հյկ. կամ Հյկ. բռ.    *Բառգիրք հայկազեան լեզուի*. Վենետիկ, 1836:

Հյկ. դրմ. – Կ. Բասմաջեան. *Հյկ. ընդհ. Դրամագիտութիւն*. Վենետիկ. 1936:

Հյկր.    Հ. Ղ. Ալիշան. *Հայկարանք*. գրչ. Ս. Ղազարու:

Հյպ.    Նորին՝ *Հայապատում*. Վենետիկ, 1901:

Հյրն.    *Հայրենիք ամսագիր՝ Բոստոն*:

Հնդ. ամս. — *Հանդէս ամսօրեայ*. Վիեննա:

Հնդ. հյգ. — *Հանդէս հայագիտութեան*. Մարբուրգ:

Հնխ.    Հ. Ղ. Ինճիճեան. *Հնախօսութիւն Հայաստանեայց*. Վենետիկ, 1835:

Հրկլ    *Histoire de Eracles empereur* եւն. ի Պատմ. Խչկ. Բ:

Հրց    Գր. Տաթեւացի. *Գիրք հարցմանց*, ամ 1397. Կ. պոլիս, 1729:

Հւք. յշտ.    *Հաւաքումն յիշտկրց. նախնեաց*. գրչ. Ս. Ղազարու:

Ղեւ.    Ղեւոնդ. Ը դ. *Պատմութիւն*. Պտրբրգ. 1887:

Ղրմ. Պս.    Յակոբ Ղրիմեցի. ԺԵ դ. *Յաղագս պատկի ամուսնացելոց*. գրչ. 70 Ս. Ղազարու:

Ճաշ.    Հ. Վ. Հացունի. *Ճաշեր եւ խնճոյք հին Հայաստանի մէջ*. Վենետիկ, 1912:

Մաղ.    Մաղաքիա աբեղայ. ԺԳ դ. *Պատմութիւն վասն ազգին նետողաց*. Պտրբրգ.1870:

Մամ.    Յովհ. Մամիկոնեան. Է դ. *Պատմութիւն Տարօնոյ*. Վենետիկ, 1832:

Մաս.    Mas Latrie. *Histoire de l'île de Chypre*. Պարիս, 1861:

Մարկ.    *I viaggi di Marco Polo*, ԺԳ դ. Վենետիկ, 1847:

Մաք.    L. Macheras. *Chronique de Chypre*, ամ 1458. Պարիս, 1882:

Մրր. – Մամբրէ վերծանող. *Ճառք*. Վենետիկ, 1833:

*Մգ. Թղթ.* Գրիգոր Մագիստրոսի թղթերը. ԺԱ դ. Ալեքսանդրապոլ 1910

*Մ. եպ. խր.* Մովսէս եզնկացի ԺԴ դ. *խրատ.* գրչ. 986 Մ. Ղազարու

*Մեկ. Մտ.* Տես Յհ. եզ. *Մտ.*

*Միխ. Աս.* Միխայէլ ասորի *Ժամանակագրութիւն.* Երուսաղէմ. 1871.

*Միք. աս.* J.B. Chabot. Chronique de Michel le Syrien. ԺԲ դ. Պարիս. 1899-1910.

*Մխ. Ժմնկ.* Մխիթար այրիվանեցի. ԺԳ դ. *Ժամանակագրութիւն.* խմբ. 19 Մ. Ղազարու.

*Մծփ.* Թովմա Մեծոփեցի. ԺԵ դ. *Պատմութիւն Լանկթամուրայ.* Պարիս. 1860.

*Մմր.* Տես Մրր.

*Մնղ.* Յհ. Մանդակունի. Ե դ. *Ճառք.* Վենետիկ, 1860:

***Մնզ.*** *Մանզումէի Էֆքեար*, յլագիր Կ. պոլսի:

*Մնկ.* Վհր. եպ. Մանկունի. *Այրիվանք կամ Գեղարդոյ վանք.* Վղրշպտ. 1871:

*Մնս.* J. Mansi, *SS. Conciliorum nova Collectio.* Փլորենտիա, 1759 եւն:

*Մշկ.* Բարսեղ մաշկուացի. *Մեկն. Աւետր. Մարկոսի.* ամ 1325. Կ. պոլիս, 1826:

***Մշտ.*** — ***Մաշտոց.*** գրչք. Խ. Ղազարու:

***Յհ. եզ. Խր.*** Յովհ. եզնկացի. ԺԳ-ԺԴ դ. ***խրատք.*** գրչ. 1447 Մ. Ղազարու:

***Յհ. եզ. Մտ.*** Տես Շն. ***Մտթ.***

*Յհ. եզ. Քեր.* Նորին՝ ***Մեկնութիւն քերականի.*** գրչ. 174 Մ. Ղազարու:

*Յհ. կթ.* Յովհաննէս կաթող. Ժ դ. ***Պատմութիւն Հայոց.*** Երուսաղէմ, 1867:

***Յճխ.*** — ***Յաճախապատում ճառք.*** Ե դ. Վենետիկ, 1838:

***Յշկ.*** Հ. Ղ. Ալիշան, ***Յուշիկք հայրենեաց Հայոց.*** Վենետիկ, 1920:

***Յտկ. զգս.*** Առաքել եպ. Սիւնեաց. ԺԵ դ. ***Վասն յատկացուցանելոյ զգաստ.*** գրչ. 363 Մ. Ղազարու:

***Նիւթ.*** Գ. արք. Յովսէփեանց, ***Նիւթեր եւ ուսումն. հայ արուեստի եւ մշակ. պատմ.*** Երուսաղէմ, 1935:

*Նհպ.* — Հ. Գ. Նահապետեան, ***Աւերակք Այրարատեան աշխարհի***, լուսանկարք երկու հատոր՝ ի Ս. Ղազար:

***Նոր վկ.*** — Մանանդեան եւ Աճառեան, ***Հայոց նոր վկաները.*** Վղրշպտ. 1902:

*Ն. Սրգ.* — Հ. Ն. Սարգիսեան, ***Տեղագրութիւնք ի փոքր եւ ի մեծ Հայս.*** Վենետիկ, 1864:

*Նրկ.* — Գր. Նարեկացի, Ժ դ. ***Մատենագրութիւնք.*** Վենետիկ, 1840:

*Նստ.* — Ղ. Վ. Փիրղալէմեան, ***Նօտարք Հայոց.*** Կ. պոլիս, 1883:

***Շիր.*** — Հ. Ղ. Ալիշան, ***Շիրակ.*** Վենետիկ, 1881:

*Շհխ.* — Յհ. եպ. Շահխաթունեան, ***Ստորագր. կաթողիկէ էջմիածնի.*** էջմիածին, 1842:

Շհպ. Կանոնք ժողովոյն Շահապիվանի. 117 թուին գրչ. Մ. Ղազարու

Շն. Բրձ. Ն. Շնորհալի. ԺԲ դ. Պատճառ Բարձրացուցեանց գրչ. 511 Մ. Ղազարու

Շն. Մտթ. Նորին Մեկնութիւն ս. Աւետ. որ ըստ Մատթէոսի. Կ. պոլիս. 1825

Շն. Նմկ. Նորին՝ Նամականի. Վենետիկ. 1838:

Շն. Չափ. Նորին՝ Բանք չափաւ. Վենետիկ. 1830:

Շն. պրգ. Հ. Ղ. Ալիշան. Շնորհալի եւ պարագայ իւր. Վենետիկ. 1873:

Շպհ. Կեղծ Շապուհ Բագրատունի. Պատմութիւն. Էջմիածին. 1921:

Ողբ. Ներս. Շնորհալի. ԺԲ դ. Ողբ Եդեսիոյ. Տփղիս. 1829. եւ գրչ. 928 Մ. Ղազարու:

Ոսկ. Մտթ. Յհ. Ոսկեբերան. Յաւետարանագիրն Մատթէոս. թրգ. Ե դ. Վենետիկ. 1826:

Ոսկ. Պօղ. Նորին՝ Մեկնութիւն թղթոցն Պաւղոսի. թրգ. Ե դ. Վենետիկ. 1826:

Ուղղ. Հ. Վ. Հացունի. Ուղղագր. եւ առոգան. հայրենի. Վենետիկ. 1933:

Ուռ. Մատթէոս ուռհայեցի. ԺԲ դ. Ժամանակագրութիւն. Վղրշպտ. 1898:

Չմչ. Հ. Մ. Չամչեան. Պատմութիւն Հայոց. Վենետիկ. 1784:

Չօպ. Ա. Չօպանեան. La Roseraie d’Arménie. հտ. Բ. Պարիս. 1923:

Պաւ. Sebast. Paoli. *Codice diplomatico del s. ordine milit gerusalemitano*. Լուկկա. 1733:

Պլտ. -- Պլուտարքոս. Ա դ. Զուգակշիռք. Վենետիկ. 1834:

Պղ. Օր. Պղատոն. Տրամախօսութիւն, Յաղագս օրինաց եւ Մինովս. Վենետիկ. 1890:

Պտմ. Աղ. Պատմութիւն Աղեքսանդրի մակեդոնացւոյ. թրգ. Ե դ. Վենետիկ. 1842:

Պտմ. բզզ. *Corpus Iscriptorum historiae byzantinae*. Վենետիկ. 1729:

Պտմ. գրկ. *L’Histoire littéraire de la France*. Պարիս. 1865 եւն:

Պտմ. եկ. Եւսեբիոս կեսարացի. Դ դ. Պատմութիւն եկեղեցւոյ. Վենետիկ. 1877:

Պտմ. Լմբ. Սամ Սկեւռացի. ԺԳ դ. Պատմ. վարուց Ներսէսի եպիսկոպոսի. ընդ Սամ. 224

Պտմ. Խչկ. *Recueil des Historiens des Croisades*. Պարիս. 1844 եւն:

Պտմ. Ռբ. Պատմութիւն ազգին Ռուբինեանց. ԺԳ դ. ընդ Սամ. 204:

Պտմ. տրզ. Հ. Վ. Հացունի, Պատմութիւն հին հայ տարազին. Վենետիկ. 1924:

Ջալ. Սրգ. արք. Ջալալեանց. Ճանապարհորդ. ի մեծն Հայաստան. Տփղիս. 1842,1858:

Ջու. Ջուանշիր. Պատմութիւն Վրաց. Վենետիկ. 1884:

Սամ Սամուէլ անեցի. ԺԲ դ. Ժամանակագրութիւն. Վղրշպտ. 1893:

Սրբ. Սեբերիանոս եմեսացի, Ճառք. թրգ. Ե դ. Վենետիկ. 1830:

Սեբ. Սեբէոս. Է դ. Պատմութիւն ի Հերակլն. Կ. պոլիս. 1851:

Սեդր. Ար. Վ. Սեդրակեան. Հնութիւնք Երնջակու. Վղրշպտ. 1872:

Սիոն — Ամսագիր Երուսաղեմի

Սիպ — Հ. Կ. Սիպիլեան. Դասաւորութիւն Ռուբինեան դրամոց Վիեննա, 1892

Սիս. — Հ. Ղ. Ալիշան. Սիսուան Վենետիկ, 1885

ՍՀմ. դստ — Առաքել եպս. Սիւնեաց. ԺԵ դ. Սահմանագր. դաստ. նորածնեալ մանկանց. գրչ. 940 Ս. Ղազարու

Սմ. Տրգ — Սմբատ սպարապետ. ԺԳ դ. Տարեգիրք. Պարիս, 1859:

Սմ. Օր — Նորին՝ Օրինագիրք. գրչ. 107 Ս. Ղազարու:

ՍՆՀ. — Խս. Յարութիւնեան. Սանահին. Տփղիս, 1898:

Սնտ. — Յ. Վ. Սանտալճեան, *Histoire documentaire de L'Armɑnie*. Հռոմ, 1917:

Սուիդ. — Suidas. *Lexicon*. Ժ դ. Փրանկֆուրտ, 1857:

Սոփ. — Սոփերք հայկականք. Վենետիկ, 1853 եւն:

Սսկ. — Հ. Ղ. Ալիշան. Սիսական. Վենետիկ, 1893:

Ստ. Աշխ. — Ստրաբոն. Ա դ. Աշխարհագրութիւն (յն.) Պարիս, 1853:

Ստր. Ա. Վ. — Ստ. Վ. Մխիթարեանց. Ստորագրութիւն Այրի վանաց ս. Գեղարդոյ. Վղրշպտ. 1873:

Սրգ. -- Սարգիս Վրդ. ԺԲ դ. Մեկնութ. եօթն թղթոց կաթողիկէից. Կ. պոլիս, 1744:

Վալտ. -- Walter Bachmann. *Kirchen und Moscheen in Armenien und Kurdistan.* Leipzig, 1913:

Վիգ. — Vigouroux, *Dictionnaire de la Bible*. Պարիս, 1895 եւն:

Վիլ. — Willermus, *Historia rerum in part. Transmarinis gestarum*, ԺԳ դ. ի Պտմ. խչկ. Ա:

Վիմ. տրգ. — Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր. Պտրբրգ. 1918:

Վկք. — Վարք եւ վկայաբանութիւնք սրբոց. Վենետիկ, 1874:

ՎՀր. --- Վահրամ րաբունի, ԺԳ դ. Պարիս, 1859:

Վստ. — Գիրք վաստակոց. Թրգ. իբր ԺԳ դ. Վենետիկ, 1877:

Վրդ. — Վարդան վրդ. ԺԳ դ. Հաւաքումն պատմութեան. Վենետիկ, 1862:

Վրդ. Ճնթ. — Վարդան վրդ. Վասն չնութեան գրչ. 1533 Ս. Ղազարու:

Վրդ. Քրզ. — Վարդան վրդ. Քարոզ գրչ. 526 Ս. Ղազարու:

Վցր. — Ս. Բարսեղ, Ճառք վասն վեցօրեայ արարչութեանն, Թրգ. Ե դ. Վենետիկ, 1830:

Տակ. — Կոռ. Տակիտոս, Ա-Բ դ. Տարեգիրք. Վենետիկ, 1872:

Տաշ. Ցցկ. — Հ. Տ. Տաշեան, Ցուցակ հյր. ձեռագրաց մատեն. Մխիթ. ի Վիեննա. Վիեննա, 1895:

Տեա. Առ. — Ներս. Լամբրոնացի, ԺԲ դ. Մեկնութիւն Առակաց Սողոմոնի. գրչ. 1627 Ս. Ղազարու:

Տղ. ողբ. Գրիգոր Տղայ. ԺԲ դ. Բան ողբերգ. վասն առմանն Երուսաղեմի. գրչ. 928 Ս. Ղազարու

Տոհմք. Les Lignages d'outremer ի Պատմ. Խչկ. Lois.II

Տուռ. Tournefort. *Relation d'un voyage du Levant.* Լիոն. 1718:

Տրգ. Կիլ. Տարեգիրք Կիլիկիոյ. գրչ. 1308 Ս. Ղազարու:

Տրց. Հիւ. Տարեցոյց ազգ. հիւանդանոցին Կ. պոլսի:

Ցցկ. Հլպ. Արտ. արք. Սիւրմէեան. Ցուցակ հայ. ձեռագրաց Հալէպի. հտ. Ա. յԵրմ. 1935. Բ. ի Հալէպ, 1936:

Փաւս. Փաւստոս բիւզանդացի. Դ դ. Պատմութիւն Հայոց. Վենետիկ, 1832:

Փիլ. Փիլոն Հեբրայեցի. Բանք երեք. Թրգ. Ե դ. Վենետիկ, 1822:

Փիլ. Ճռ. Նորին՝ Ճառք. Վենետիկ, 1892:

Փիլ. Մնց. Նորին՝ Մնացորդք ի Հայս. Վենետիկ, 1826:

Փրպ. Ղազար փարպեցի. Ե դ. Պատմութիւն Հայոց. Վենետիկ, 1873:

Քուչ. Նահապետ Քուչակի երգերը. ԺԶ դ. Տփղիս. 1905:

Քսեն. Կիւր. Քսենոփոն, Դ դ. Ն. Ք. Կիւրամարգ (յն.) Պարիս, 1625:

Քսեն. Նհջ. Նորին՝ Արշաւան Կիւրոսի եւ նահանջ բիւրուն. անդ:

Քրզ. ամ. – Գր. Տաթեւացի. Քարոզք ամարան. ամ 1407. Կ. պոլիս, 1741:

Քրզ. ձմ. – Գր. Տաթեւացի. Քարոզք ձմերան. Կ. պոլիս, 1740:

Օձն. – Յովհաննէս կթղ. օձնեցի. Ը դ. Մատենագրութիւնք. Վենետիկ, 1833:

Օրբ. Ստեփ. եպս. Օրբելեան. ԺԳ դ. Պատմութիւն տանն Սիսական. Մոսկուա, 1861:

Օրբ. Ողբ. Նորին՝ Ողբ ի Ս. Կաթողիկէն. Տփղիս, 1885:

ԾՆԹ Այն չեղագիր կոչումները, որ չեն նշանակուած ցուցակիս մէջ, Աստուածաշնչից են:

Սղագրութիւնք. արք արքեպիսկոպոս դ դուստր եղ եղբայր եպ եպիսկոպոս թգ թագաւոր թգհ թագուհի իշ իշխան կ կին կթ կաթողիկոս կյս կայսր կսհ կայսերուհի հ հայր հտ հաւատաւոր մ մայր նհտ նահատակ ո որդի սլտ սուլթան սպր սպարապետ սրկ սարկաւագ վրդ վարդապետ ք քոյր քհ քահանայ


Աբաս Բագր. ո. Աշոտոյ Ա թգ 212
Աբաս Բագր. ո. Սմբատայ խոստով. 419-20
Աբաս թգ. Բագրատունի 96, 415
Աբաս թգ. Կարուց 169, 200
Աբաս թգ. Կիւրիկեան 35, 45, 56, 63, 129, 170, 236, 286-7
Աբաս Ճահկեցի 382
Աբաս ո. Կիւրիկէի Բ թգ. 56
Աբդլ Ազիզ արաբ զօրավար 332
Աբդլլայ ո. Ջահապի 419
Աբդլ Համիդ արաբ 419
Աբդլմէլէք արաբ զօրավար 214
Աբդլ Մելիք ամիրապետ 331
Աբդլմսեհ Արծրունի 67, 79, 99, 121, 135
Աբլաւոս անձնապահապետ կայսեր 50
Աբուլ Փարաջ Բար Հեբրէոս 422
Աբրահամ Ա կթ. 374-75, 415
Ագաթանգեղոս պատմիչ 132, 144, 164, 263, 338
Ագնէս թգհ. կ. Ամորկան Ա Երուս. 401
Ագնէս թգհ. կ. Լեւոնի Գ 70, 390
Ադելայդ թգհ. կ. Բալդուինի Ա 384
Ազարմիդուխտ թգհ. դ. Խոսրովու Բ Պարսից 272
Ազիզ դ. Աղւորի 195
Ազիզ կ. Գորգի քհ. 104
Ազիզ մ. Գրիգորի 195
Ազիզ նհտ. դ. Խաչկայ արքայցւոյ 335
Ազիզ պաշտօնեայ Նրջսի 207
Ազիզ սան Պռօշեանց 207
Ազիզբէկ իշ. Եղիվարդի 122, 162, 195, 204, 209, 232, 235, 276
Ազնաւուր բագիշեցի 240
Աթաբակ ո. Հասան Ջալալի 50, 103, 227
Աթանագինէս ո. Յուսկան կթ. 31, 41, 156, 257
Աթայ մելիք 210
Աժդահակ թգ. Մարաց 280.416
Ալահադին, Ալայեդդին կամ Ալադին սլտ. Իկոնիոյ 59, 425, 426
Ալեքս Ա. կյս. Բիւզանդիոնի 66
Ալեքսիս Գ կյս. Բիւզանդիոնի 371
Ալթունպուղայ ամիրա Հալպայ 341
Ալի արաբ ո. Ապուլմսարայ 44
Ալի փաշայ 427
Ալիծ դ. Պաղտին մարաջախտի 80, 102, 122
Ալիծ թգհ. կ. Լեւոնի Դ 46, 65, 69
Ալիծ կ. Բալիանի՝ տիրոջ Բերութի 68, 122, 173, 194, 243, 411, 412
Ալիծ կ. Բոհեմոնդի Գ 385
Ալիծ նու Թանգերի 204
Ալիծ տարսոնացի կոյս 253, 354
Ալիծ կ. Հեթմոյ, Ռայմոնդի եւ Վահրամայ 31, 61, 62, 67, 96, 208, 286, 402-3
Ալինախ կամ Ռուբէն ո. Լեւոնի Բ թգ. 79, 85, 392
Ալիշան Հ. Ղ. 33, 61, 79, 98, 169, 173, 205, 214, 236, 243, 244, 283, 284, 290, 294, 309, 332, 356, 372, 398, 409, 413, 426
Ալիս թգհ. կ. Հենրիկի Ա 388
Ալլահվերտի խան պարսիկ 328
Ալ Կադր Բիլլահ 422
Ալ Կայիմ բի-Ամրիլլահ 422
Ալփասլան սլտ. սելճուկեան 326, 423, 428
Ախատել այր Ռուզուքանայ 246
Ախնի թոնդրակեցի 27, 189
Ակաց կ. Սիր Լիկոսի 68, 100-1, 122
Ակաց կ. Ստեփանոսի ո. Թորոսի 104
Ակաց. կ. Օշինի Գ լամբրոնացւոյ 68, 161
Ակսայ կամ Ակսա կ. Ռինալդի բառլացւոյ 406
Ահմատ արաբ զօրավար 212
Աղան Արծրունի 93, 206
Աղբերանց կ. Գերգի 83
Աղբուղա Ա Զաքարեան 122, 201
Աղբուղա Բ Զաքարեան 233
Աղեքսանդր թգ. մակեդոնացի 126
Աղուանք 54, 56, 124, 307
Աղուէթ խաթուն վանեցի 240
Աղուտ կ. Սմբատայ Համազասպեանց 108, 198
Աղսարթան ո. Աբասայ թգ. Կիւրիկեան 45, 63, 97, 287
Աղւոր հ. Ազիզի 195
Աճապխան կամ Աթանասիա կ. Յովհաննու երեւանեցւոյ եւ հւտ. 173, 174, 430
Ամադի պատմիչ 172, 173, 394
Ամադին չահուռնեցի սպր. 228, 275
Ամադին ո. Վարհամայ չահուռնեցւոյ 199
Ամբրոսիոս եպ. Մեդիոլանու 154
Ամէկ կ. Սարգսի 167
Ամիր Երկաթ Պահլ. ո. Ապուղամրի Գ 99
Ամիր Հասան Պռօշեան 125
Ամիր Սարգիս 415
Ամիրա Գորգի ո. Գագկայ թգ. Արծր. 349
Ամիրազդին փարիչ Վանայ 333
Ամիրզունայ խան պարսիկ 309, 328, 430
Ամիրտոլէթ բժիշկ 26
Ամելքայ դայեակ Խորիշահի դ. Մարծպանայ 8
Ամմիանոս պատմիչ 50
Ամփիկրատ հռետոր աթենացի 111
Ամփիոն դիւցազն 269
Ամորիկ Ա թգ. Երուսաղէմի 401
Ամորիկ թգ. Կիպրոսի 46, 67

